ՑՊԱԳՐՈՒԹԻՒՆ [illegible]ԵԱՆՑ:

# ՔՆԱՐ ՀԱՅԿԱԿԱՆ:

ԽՄԲԱԳՐԵՑ

Մ. Մ. ՄԻԱՆՍԱՐԵԱՆՑ։

*Ազգային տարրերից ամենահզօրը*
*եւ կենդանապահը լեզուն է։*

---

*Չար մարդիկ երգ չ՚ունին:*
*Շիլլեր:*

---

*Սիրտ ուր [illegible] նոցա,*
*Ով երգ է երգում.*
*Երգը չար մարդկանց*
*Չի զուարճացնում.*
*Գէօտէն:*

Ս. ՊԵՏԵՐԲՈՒՐԳ:
ВЪ ТИПОГРАФІИ О. И. БАКСТА, НЕВСКІЙ, 71.
1868.






Մանկտիք. զիս Հայոց հողն ու ջուրն սնուցել,
Ես այն հողն ու ջուր սրտով եմ սիրել.
Հայրենեաց հարուստ է հողն, ջուրն անուշ,
Քանց օտար վարդ, քաղցր հայրենեացն փուշ։

Ձեզ կ'ասեմ մանկտիք սիրուն, նազելիք,
Որոնց է բնական Հայոց աշխարհիկ,
Մի ուրանայք զերկիրդ և զազգդ սիրուն.
Ծառն արմատով ծառ, տուն հիմամբ է տուն։

Հ. Ղեւոնդ Ալիշանեան։

**ԲԱԶՄԵՐԱԽՏ ՄՕՐՍ**

# ԵՂԻՍԱԲԷԹ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ

**ԱՆՄՈՌԱՆԱԼԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ ՆՈՒԷՐ:**

*Ծնաւ մարտին* 1807 *թուականի, հանգեաւ ՚ի Տէր* 23 *մայիսի* / 4 *յունիսի* 1865 *թուականի, յիսուն և ութ տարեկան հասակի; եթող երեք զաւակ. Միքայէլ*—35 *տարեկան, Արշակ-Նիկողայոս*—25 *տարեկան և Վառվառա* 20 *տարեկան հասակի; թաղեցաւ Տփխիսու Վէրայի գերեզմանատանը, եկեղեցւոյ արևմտեան կողմը։*

**ՇԻՐԻՄԻ ԱՐՁԱՆԱԳԻՐԸ.**

*Կենաց ձայնիւ վերջին փողոյ*
*Կոչեա զիս, Տէր. յայսմ հողոյ;*
*Ընդ իմաստուն սուրբ կուսանաց,*
*Մուծ զիս ՚ի տուն քոյ հարսանեաց։*

---

*Քանի որ քեզ միտ ենք ածում—սրտներիցս արիւն է վազում,*
*Ամեն գիշեր մեր կողինքը դառն արցունքով թացվում,*
*Քաշած ցաւերդ եօթնագլխեան վիշապի պէս խայթում,*
*Հազար տեղից սրտներս ծակում, հազար վէրքեր բացանում։*
*Բայց և այնպէս տափերն կանանչ, սարերն ամեն ծաղկել են;*
*Ամեն բաղչում վարդ, մանուշակ, ռեհան, սմբուլ բացվել են.*
*Ափսոս, մեր բախտի օրերումն թառամեցար մեր մեղքէն,*
*Բազմավաստակ, անմխիթար, անգին մայր մեր Եղիսաբէթ ջան։*

# ՅԱՌԱՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ:

---

Երբ որ իմաստութեան սէրն
Մէկ ազգի միջին տարածուեց,
Իմացիր, երկնային Տէրն
Գթած, նորա բախտը բացուեց:

Սէյեադ:

Երգը այտայտում է (exprimer, выражать, յայտնել) մարդկային «զգացմունքը» բառերով (խօսքերով) և ձայնով (le son, звукъ), ուրեմն երգը պարունակում է իւր մէջ երեք տարր (առաջանիւթք, սկզբունք, éléments, элементы, основныя составныя части), այն է. զգացմունք, խօսք և ձայներ: Այս տարերաց ամէն մէկը պարունակում է իւր մէջ դաստիարակական (մանկավարժական) և զարգացողական զօրութիւն, ույժ:

Կանոնաւոր դաստիարակութիւնը և կրթութիւնը պիտոյ է զարգացնէ մարդուս ամենայն հոգևոր և մարմնաւոր զօրութիւնքը և ընդունակութիւնքը կանոնաւոր, մանկավարժական պահանջմանց համապատշաճ կերպիւ; զգացմունքը, զգացման ընդունակութիւնը մարդկային ընդունակութեանց մինն է; կանոնաւոր երգեցողութիւնը, զարգացնելով, կանոնաւոր ուղղութիւն տալով մարդուս զգացման ընդունակութեանը, ներգործում է դաստիարակական, պեդագոգիկական կերպիւ, վասն որոյ կանոնաւոր երգեցողութիւնը մանկավարժութեան դաստիարակական միջոցներից մինն է: Դաստիարակական առողջ կանոններին յարմարեալ երգեցողութիւնը քնքուշացնում, ազնուացնում, սրբացնում է մեր, թէ ուրախ, թէ տխուր և թէ առ Ամենաբարձրեալն ունեցած զգացմունքները: Ներսէս Լամբրոնացին ասում է. «ազգումն երաժշտական եղանակին . . . ., ընդոստուցեալ զարթուցանէ զմիտս ամենեցուն առ ի տենչումն շնորհին. քանզի չիք ինչ որ զկամս մեր յեղաշրջէ յուրախութիւն

կամ ի տրտմութիւն, որպէս զերգոցն ձայն, յորժամ որպէս պարտըն է՝ լինիցի; վասն այսորիկ և եկեղեցական աւանդութիւն ընկալաւ զայն»։

Հին յոյները, կամենալով ցոյց տալ կանոնաւոր երգեցողութեան և ազգու բանաստեղծութեան թովչարար (magique, магическій, чарующій) ներգործութիւնը և զօրութիւնը մարդկային սրտի և զգացմանց վերայ, ասումէին, թէ երբ բանաստեղծ Օրփէոսը [1]) երգումէր և մի և նոյն ժամանակ նուագում տաւղի վերայ (la harpe, арфа), ծառերը, գետերը, ծովի ջրերը և վայրենի անասունները դադարումէին շարժիլ և հիացած լսումէին Օրփէոսի նուագերգութեանը։ Քրիստոսի ծնունդից ետոյ, 1—5 դարու Գերմանացիք, Բրիտանիացիք և այլ հիւսիսային ազգերը ունէին առանձին բանաստեղծներ և երգիչներ, Բարդ անունով, որոնք, պատերազմից առաջ, պատրաստումէին, վառում, բորբոքում պատերազմողների զգացմունքը և քաջութիւնը ազգային երգերով։ Այժմեան եւրոպացւոց զօրաց մէջ էլ, ամեն մէկ հարիւրը (companie, рота) ունին իւր երգիչները, որոնք, զօրքը գնալու ժամանակը, անդադար երգումեն և այդպէս դիւրացնում ճանապարհի աշխատութիւնը, լքումը։ Հին Եբրայեցւոց մէջ բոլոր սաղմոսները և համարեա թէ հին կտակարանը երգելով էին ասում և ինքը Դաւիթ մարգարէն ամենապատուական և երևելի երգիչներից մինն էր։ Սաւուղ թագաւորը, իւր ամենատրտում ժամերին, կանչումէր իւր մօտ Դաւիթ սաղմոսերգուին, որ իւր քաղցր երգեցողութեամբ թեթևացնէ նորա վիշտերը և տանջանքը։ «Դաւիթ և որդիքն Իսրայէլի խաղային առաջի Տեառն, տաւղօք, և նուագարանօք զօրութեամբ, և երգօք, և քնարիւք, և սրնգօք, և թմբկօք, և ծնծղայիւք և փողովք»։ «Ղևտացիքն սաղմոսանուագք, տաւղօք, և քնարիւք, և սրնգօք կային յարևելից կողմանէ սեղանոյն և ընդ նոսա քահանայք ճ և ի հարկանէին փողս, և եղև ձայն ի հարկանել զփողսն, և յերգել զաղմօսն և ամբառնալ զձայնսըն

1) Օրփէոս (Orpheus, Orphée, Орфей) առասպելի ասուածով, կեցաւ 1330 տարի Քրիստոսից առաջ; ժամանակից գտնուեցաւ Արգոնաւորդաց արշաւանին, ճանապարհորդեց Եգիպտոս, ուր տեղ օձը կծեց նորա Եւրիդիկկա կնոջ կրունկը և մահ պատճառեց; իջաւ դժոխք պահանջել Պլուտօնից իւր կինը, և այլ զանազան առասպելք են պատմում Օրփէոսի մասին։

միաբան առնելով օրհնեցէք զՏէր և բարձրացուցէք զձայնան փողովք և ծնծղայիւք և գործեօք երգոյն»։

Պարզկահպատակ արհեստաւորները, մանաւորապէս որմնադիրները (գաղատոռ, каменьщикъ, le maçon), միշակութեան ժամանակ, ունին միշտ մի երգիչ, որին լսելով, շինումեն իւրեանց գործը։ Հաւատարաւր անձինք, չգիտենալով որ և իցէ օտար, բայց երևելի երգչի լեզուն, ամբողջ շտապումեն միայն նորա քաղցր ձայնը և կանոնաւոր երգեցողութիւնը լսելու; բայց որքան սրտառուչ է լինում մեզ, որքան մեր ցնծութիւնք կատարեալ սահմանի է հասանում, երբ որ նորա երգի լեզուն էլ հասկանալի է լինում մեզ։ Նոյնը այս վեհ և սրտաշարժ զգացմունքները հասանումեն կատարեալ սահմանի, երբ որ այդպիսի պատուական ձայնով և կանոնաւոր կերպիւ երգած երգը մեր ազգային, մեր պատուական լեզուաւ սած և գրած երգն է։ Ո՞ր հայն կարողացել է լսել առանց արտասունքի, առանց հոգւոյ և բոլոր զգացմանց ամենասաստիկ գրգռմունքի, երբ որ նորա առաջև երգել են. «Տէր կեցո՛ դու զՀայս», «Մայր Արաքսի՝ ափերով», «Ափսոս քեզ Հայոց խեղճիկ ժողովուրդ», «Ցերեկու ձեռքին երկու մոմ», և այլ մեր երգերից ամենապատուականները։

Երգի դաստիարակական երկրորդ նշանակութիւնը։

Կան զգացմունքներ, որոնց լինելութիւնը մինչև անգամ վնաս է բերում, որոնց պիտոյ է ամենայն կերպ հեռացնել, ոչնչացնել և ոչ թէ գրգռել, վասն որոյ պիտոյ է ամենայն կերպ զգուշութիւն գործ դնել, որ միմիայն ամենավայելել, այսինքն, աստուածպաշտական, ազգասիրական, երախտագիտական, որդեսիրական և եղբայրսիրական, միով բանիւ, միմիայն ազնիւ զգացմունքը գրգռվին, աճին, զարգանան կանոնաւոր կերպիւ, իսկ բոլոր անվայել և վնասակար զգացմունքը հեռի լինին մեզանից, գոնեա մանուկներից։

Այս պատճառաւ պիտոյ է, որ երգեցողութեան նիւթը, առարկան լինի վայելուչ և վայելուչ խօսքերով, կանոնաւոր հայերէն լեզուաւ արտայայտած, գրած լինի։ Դաստիարակները և ծնողքը մեծ ուշադրութիւն պիտոյ է ունենան, որ հայ մանուկները լսեն և երգեն միայն այնպիսի երգեր, որոնց և պարունակութիւնը և երգելու ձևը, ձայնը ընտրելագոյն են։ Բայց երգի պարունակութիւնը արտայայտվումէ բառերով; երբեմն, սկսելով սովորել որ և իցէ երգ, հանդիպումէ այնպիսի բառերին, որ նորան անծա-

նօթ են, երեխան պիտոյ է սովորի այդ բառերը, ծանօթանայ այն
առարկաների կամ գաղափարների հետ, որոնք անուանակոչվումեն
այս կամ այն բառով, վասն որոյ երեխան, սովորելով երգ, սովո-
րումէ նոր բառեր և ծանօթանում նոր առարկաների հետ։ Սորա-
նից երկու հետևանք կայ. ա) երեխան, հայրենի լեզուաւ ասած եր-
գը սովորելով, սովորումէ մի և նոյն ժամանակ իւր հայրենի լեզուն,
սովորումէ առանց քերականութեան, գործնականապէս, պրակտիկա-
կան կերպիւ, այդ բառերը համաձայնելը, պատշաճաւոր կերպիւ
գործածելը, բ) որքան նոր բառ սովորեց երեխան, այնքան նոր
առարկայի կամ գործողութեան հետ ծանօթացաւ, նշանակումէ, այն-
քան նորա մտաւոր գիտութիւնը հարստացաւ, նորա խորհելու, երե-
ւակայելու, համեմատելու և այլ ընդունակութիւնքը նոր նիւթով,
նոր առարկաներով, նոր գաղափարներով հարստացան և, համեմա-
տաբար, սկսեցին շարժիլ, գործել (agir, дѣйствовать, բանիլ, բան
անել, ներգործել)։ Որքան որ այսպիսի հետևանքները շատ են,
այնքան էլ զգուշութիւն պիտոյ է, որ երեխայի երևակայելու, խոր-
հելու, համեմատելու և այլ ընդունակութեանց գործողութեան հա-
մար առաջած նոր նիւթը լինի առողջ, ազնիւ, ընտիր և պիտանի,
և համապատշաճ երեխայից հասակի և հասկացողութեան։

Երգեցողութեան դաստիարակական երրորդ նշանակութիւնը
կամ հետևանքը։

Ինչպէս որ խոհեմ կերպիւ, երեխայի հասակի կամ հասկա-
ցողութեան համապատշաճ ընտրած երգը, երգի բնագիրը (le text,
текстъ) հասանումէ իւր վերոյիշեալ նպատակին, նոյնպէս էլ երգե-
ցողութեան ձայները զարգացուցանումեն երեխայից տեսանելու (նա-
յելու, հայելու) և լսողական (լսելու) ընդունակութիւնքը, երբ
որ երգեցողութեան դասաւորութիւնը լինումէ երաժշտական խա-
զերով, նոտաներով։ Նայելով նոտաներին, երեխան սովորումէ որ-
քան որ և իցէ ժամանակ նայել մէկ կէտին, զննել նորա դրութիւնը
և նշանակութիւնը, խորհել թէ ինչպէս պիտոյ է այդ խազի նշա-
նակութիւնը յայտնել, մեկնել ձայնով։ Բայց գլխաւոր նշանակու-
թիւնը այն է, որ երգելը զարգացնումէ մեր լսելիքը (ouïe, слухъ)
լսելու ընդունակութիւնքը։ Ձայների (le son, звукъ) զանազանու-
թիւնքը, նոցա զանազան աստիճանների (ելևէջ, le ton, тонъ) բարձ-
րանալը և նուազելը, ցածրանալը, բոլոր նոցա ընդմիջական (inter-
médiaire, միջնորդական, ընդհատական, промежуточный) փոփոխմուն-

քը (passage, пассажъ, переходъ), կամ դաշնակաւոր բարձր և ցած փոփոխութիւնքը, երկարութիւնը, կարճութիւնը—բոլոր այս սաստկապէս կանոնաւոր կերպիւ դաստիարակում է լսելիքը, զարգացնում է մարդկային ընդունակութիւնը զգալի հասկանալու, նուրբ և ճիշդ ճանաչելու ձայների զանազանութիւնքը, նոցա ճշդութիւնը և այսպէս ազնուացնում է մեր լսելու և զգալու ընդունակութիւնքը և ճաշակը:

Ինչպէս երեխան սկսում է սովորել լեզուն ոչ թէ գրքից, այլ լսելեաց միջնորդութեամբ, բերանացի, լսելով ինչպէս մայրը անուանակոչում է այս կամ այն առարկան կամ գործողութիւնը, նմանապէս էլ պիտոյ է որրորոցից սկսած սովորցնել երեխային ազգային երգերն միմիայն լսելեաց միջնորդութեամբ: Բայց պիտոյ է աշխատել, որ երգի ձայնը լինի ախորժ երեխայի համար: Բաց երբ որ երեխան մեծանում է, սկսում է խօսել, այն ժամանակ պիտոյ է նայել ոչ թէ միայն ձայնի քաղցրութեանը, այլ և, որ երգի պարունակութիւնը, բովանդակութիւնը մօտ լինի երեխայի հասկացողութեանը և գրգռէ նորա հետաքրքրութիւնը: Այս երկրորդ աստիճանի դաստիարակութեան ժամանակ, լաւ կը լինէր որ մինը երգելիս, միւսը որ և իցէ երաժշտական մեքենայի վերայ (պիանօ, ջութակ և այլն) ածէր, որ երեխայի լսելիքը առաւել կանոնաւոր ձայնի և երգեցողութեան սովորէին: Ութը տարեկան հասակից երեխաներին պիտոյ է երգել տալ ի միասին, կազմելով նոցանից երգեցկաց դասեր (le choeur, хоръ): Հմուտ մանկավարժ երգեցողները խորհուրդ են տալիս, դադարեցնել երեխաներին երգել տալը այն ժամանակին, երբ որ, հասակի աճեցման պատճառաւ, երեխայոց ձայնը փոխվում է, մինչև որ ձայնը իւր բնական զօրութիւնը առնայ:

Գերմանիայի մէջ երգեցողութեան դասատուութիւնը մանկավարժութեան գլխաւոր տարրերից մինն է համարվում և ամենայն երեխայ սովորում է երգեցողութիւն: Այն տեղ գերդաստան չկայ և կարելի է ասել մինչև մարդ չկայ, որ չ՚ունենայ Աստուածաշունչ և Երգարան: Գերմանիոյ երգեցողութեան պեդագոգ վարժապետներից ամենահռչակաւորը և երևելին Լուդվիգ Էրկն է: Նորա շարադրութիւնքը կարող են լինիլ գաղափար ամենեցուն, որոնք որ կամենան այս մասին աշխատել մերայնոց համար: Էրկի տպագրութիւններից ամենատարածեալքը հետագայքն են.

1) Մեթօդիկական (méthodique, методическій) սկզբունքը, որոյ առաջին տպագրութիւնը եղաւ 1834 թուականին։

2) Ժողովածուք երգոց ուսումնարանների համար, առաջին անգամ տպ. 1839։

3) 100 Schullieder.

4) Liederkranz für Schule, Haus und Leben.

5) Sängerhain für Gymnasien.

6) Singvögelein für Schule, Haus und Leben.

7) Deutscher Liedergarten für Mädchenschulen.

8) Frische Lieder für Gymnasien.

9) Blätter und Blüthen für den Schulgebrauch.

10) Mehrstimmige Gesänge für Seminarien.

11) Deutscher Liederschatz für Seminarien und Gymnasien.

12) Schiller's Lieder für Schule und Haus, և այլք։

Ցանկալի էր, որ մեր հայազգի երիտասարդքը, որոնք Գերմանիայի վարժապետական դպրոցներումն են պարապում, կանոնաւոր կերպիւ իմաստասիրէին այս հարցը և, հայրենիքը վերադառնալուց, տարածէին ամենայն կերպիւ մեր ազգի մէջն էլ Էրկի նման գրած կանոնաւոր ազգային երգեցողութեան սկզբունքներ; իսկ մինչև այն ժամանակ մեր հանդիսագրութիւնը աշխատէր տարածել, թէ այս և թէ մանկավարժութեան միւս խնդիրներին (հարցերին) վերաբերեալ տեղեկութիւնքը, առնելով պատրաստ նիւթ (պիտոյ է միայն կանոնաւոր ընտրողութիւն) «Ուչիտել» (Учитель) և «Դետսկի սադ» (Дѣтскій садъ) մանկավարժական ամսագիրներից։ Ուչիտել ամսագրի մեզ համար պիտանութեան մասին մենք մանրամասն, առաջարկութիւն արինք մերայնոց դեռ 1862 թուականին, նոյեմբեր ամսին, Տփխիսու «Մեղու Հայաստանի» լրագրի թերթերում և Լաբուլէի հայ տպագրութեան կից ռուսաց գրականութեան ընտիր մատենից ցուցակի մէջ։

Այժմ նոյնը կարող ենք կրկնել «Дѣтскій садъ» ամսագրի համար, որը հրատարակվումէ այժմ երրորդ տարին։ Առաջին 1866 թուականինը, 8 ծալ, ե. 368— , արժէ 3 մանէթ; երկրորդ— 1867 թուականինինը—8 ծալ, ե. 456, արժէ 3 մանէթ 50 կոպէկ։ Երրորդ այս 1868 թուականինը, մի և նոյն գինը ունի։ Նմանապէս խորհուրդ ենք տալիս «Натуралистъ» ամսագիրն իմաստասիրել և նորա մէջ եղած նիւթերից մեր ազգի համար ամենապիտանիքը և

ամենահարկաւորը հաղորդել ժողովրդեան։ Նա հասարակ առաջարկելով կամ հաղորդելով որ և իցէ առարկայ կամ նիւթ մեր ազգին, պիտոյ է աչաց առաջ ունենանք նոյն իսկ ազգի պիտոյքը, միջոցքը և զարգացումն և այնպէս էլ դոցա համաձայն շարժիլ։ Տնտեսական տեղեկութիւնքը, (домоводство, домашное хозяйство) պարտիզպանութեան (садоводство), հաւապահութեան (птицеводство), անասնապահութիւն (скотоводство), անտառաբանութիւն (лѣсоводство) և զանազան բնական գիտութեանց և արհեստների վերաբերեալ գիտնական տեղեկութիւնք մեր առաջնակարգ պիտոյից մինն է։

Եթէ երգեցողութեան մասին ասածներս վերաբերենք մեր ազգին, պիտոյ է խոստովանինք, որ. ա) երգեցողութեան դասատուութիւնը (ազգային երգերի) շատ ժամանակ չէ որ սկսել են ազգային վարժարաններում; բ) Շատ վարժարաններ կան, ուր տեղ ազգային երգեր չեն ուսուցանում; գ) Կ. Պօլսոյ և Զմիւռնիայի վարժարաններում առաւել են ուսուցանում այդ երգերը, քան թէ Տփխիս, Երևան, Շուշի և այլ տեղեր; դ) Մեր երգելու եղանակը զանազան է. Տաճկաստան, տաճիկի; Վրաստան (Տփխիս) վրաց; Երևան, Շուշի, Ագուլիս և Պարսկաստան—պարսից երգերի եղանակներին նման, այսինքն ինչ ազգի ներգործութեան տակ եղել ենք, նոյն ազգից էլ երգերի եղանակներն ենք վեր առել։ Բայց առաւել ցաւալին այն է, որ ոչ թէ միմիայն նոցա երգերի եղանակներն ենք մեզ սեփականացրել, այլ մինչև անգամ երգերն էլ ևս և բառերը։ Մի քանի գերմանականից կամ ռուսերէնից թարգմանված երգերը, երգումենք բնագրի եղանակաւ, օրօրինակ. «Ուրախացուք ուրեմն, մինչդեռ երիտասարդք եմք», «Ոու ո՛չ հաստատ ի գեղս քոյ», «Վերջին վարդ, վերջին վարդ», «Կրամբամբուլի էս այն օղին է» և այլն; «Թէ իմ ալևոր հերքս սենային» երգումեն ռուսաց երգի եղանակաւ; «Տէր կեցո՛ դու զհայս» Օգինսկիու պօլօնէզի եղանաւ (պօլօնէզ բրիլեան էլ են ասում); «Հայոց աղջիկներ» վրացոց «Ախ դիլաւ, դիլաւ» երգի եղանակաւ։

Վերջի եղանակները բաւականին ծանօթ են ռուսաստանու համալսարաններում եղած ուսանողներին և ժողովրդեանը, ուր որ կենումեն այժմս այն ուսանողները, և շատերին հաճոյ։

Մեր նախորդները զգացել են հարկաւորութիւնը այնպիսի սկզբունքի, ուր որ մեր (թէպէտ ո՛չ սեփական, այլ օտար) երգերու եղանակների խազերը և կանոնը մեկնած լինին ի գիտութիւն

ազգի։ Այսպէս, Գրքոյկ որ կոչի Նուագարան։ Ըստ խնդրոյ յԱկնայ գիւղէն Զերասցոց հանգուցեալ մահտեսի փիլիպպոսի որդի Մահտեսի Մինաս մեծահամբաւ ամիրային։ Ի հովուապետութեան միածնաէջ սրբոյ գահի տեառն Ղուկասու սրբազան կաթուղիկոսի ամենից Հայոց։ Եւ ի վերադիտողութեան սրբոց տնօրինականացն տեղեաց Քրիստոսի, տեառն Պետրոսի շնորհափայլ պատրիարգի, Ի Կ. Պօլիս։ Տպեալ հրամանաւ իսկ և ակնարկութեամբ նորին սրբազան պատրիարգի տեառն Զաքարիա ազգասէր կարգացեալ աստուածաբան րաբունապետի։ Արտահանեցեալ ի կեսարացի Պապաքալեան Գրիգոր դպրէ։ Յամի Ներմարմնութեան Տեառն 1794, և մերոյս ՌՄԽԳ, և օգոստոսի 23։ Ի Մայր դպրատան»։ փոքր 8 ծալ, ե. 432, բովանդակում է իւր մէջ, մեծ մասամբ, հոգևոր երգեր, որոնց հեղինակների անունը չէ ցոյց տուած և Մոսկվայի, Պետերբուրգի և Տիֆլիսոյ եկեղեցեաց մէջ այս երգերի գործածութիւն մենք լսած չենք։ Այս գրքի 161—218 էջերումը «Ազդեցութիւնք ինչ երաժշտական» անուանած հատուածումը հեղինակը աշխատում է տալ սկզբնական կանոնները երաժշտական երգեցողութեան; 219—234 երեսը պարունակում է խաղերով տաղեր, իբրև օրինակ այն խաղերի գործածութեան; 235-ց մինչև վերջը զանազան երգեր, խաղերով, հայերէն և յունարէն (հայ տառերով տպած) երաժշտական խաղերի և երգելու եղանակների մեկնութեամբ։ Այս գիրքը շատ հետաքրքրական է, իբրև ապացոյց, որ մեր հոգևոր երգեցողութիւնը պատկեր է յունաց երգեցողութեան և շատ տաղերի գործածութեան մէջ սեփականացրել է իւրեան յունաց երաժշտական արհեստի անկման ժամանակի ամենայն պակասութիւնքը. և այլն։ Այս պատճառաւ էլ այն տեղերը, ուր տեղ գերիաբար հետևումն յունաց քթի ձայներով լի երգեցողութեան, այդ երգեցողութիւնը այնպէս անախորժ է; իսկ ուր հետևումն հայրապետական մայր աթոռոյ սրբոյ Էջմիածնի երգեցողութեան ձևին, որի մէջ համարեա թէ քթի ձայներ չկան, այլ առաւել կոկորդական ձայներ (gosier, горло), այն երգեցողութիւնը այնքան հաճոյ է և ախորժ։

Վերոյիշեալ երգարանի մէջ կան եւ օրինակներ, նոյն անճոռնի յունաձև երգեցողութեան, զօրօրինակ. «Պատկեր անպարագիր անմատոյց լուսով պարածածկեցեալ»; «Պաշտօն խնկելի խնկապէս բարի լուսափայլեցեալ։ «Զքեզ միշտ օրհնեն զուարթունք երկնից ովսաննայիւ ի բարձունս, ընդ նոսին միշտ բարեբանեալ օրհ-

նարոնեմք ըղքեղ քըրէյ րէ րի րէ րի րէ րի րէ րի րէ րի րէ րի րի րէ րէմ գէ րի րի րէ. րի րէմ րէ րի. րէմ վէ րի րի րէմ րի րի րի րի րէ րէ քի րէ րի րի. րէ րի րէ րի րէ րիս տոու» (եր. 271), կամ . . . . «միշտ ցընծալի ա լէ լէ լէ լէ լէ....» 1)

Նոյն երգարանի մէջ, 147—149 ե. ե. կայ «Նորգ խրատօրէն», Փ տունից բաղկացած։

Ա

Ի գաւաղան որ խնայէ,
Ահա նա իւր զորդին ատէ,
Զի զոր սիրէ խնամով իւրով,
Տալով զպատուէր միշտ խրրատէ.
Ահ ի վախճանիդ թէ խընդացէ,
Արի արա այսպէս ասէ։

Բ

Որ յաճախէ զսէրն ունելով,
Սիրէ ըզնա հարկանելով;
Թէ հարկանէ գաւաղանաւ,
Ո՛չ մեռանի խրրատելով։ Ահ, և այլն։

Գ

Ըզ պարանոց նորին թէքեա՛,
Մինչ մատաղ է, ըզնա զըսպեա՛,
Մի կործրասցի ի հաւանել,
Նա վիշտ անձին մի՛ լիցի նա։ Ահ, և այլն։

Մեր նախորդքը, իւրեանց միամտութեամբ, կարծել են, թէ գանիւք, ծեծով կարելի է մարդ դաստիարակել։ Այս տխուր և վընասակար կարծիքը մինչև այժմս էլ տիրապետումէ համարեա թէ բոլոր հայոց վարժարաններում, շատ սակաւ բացառութեամբ։ Ծեծը կը ստրկացնէ մանուկի հոգին, կը զարգացնէ նորա մէջ կամակորութիւն, երկչոտութիւն, խաբեբայութիւն, ստախօսութիւն, խորամանկութիւն, կարճահոգութիւն, կեղծաւորութիւն և այլ ամենավատ և ամենավնասակար հետևանքներ։ Վարժարանների մէջ ծեծ գործածելը և միմիայն

1) Մենք չունենք հարկաւոր պարագայքը, որ կարողանանք երգի խազերն էլ ցոյց տալ։

դորա օգնականութեամբ կարգ պահպանելը բոլորովին հակառակ հետևանքներ են բերում, քան ինչ որ սպասումէին ծեծ գործածելուց։ Ազգային առաջաւոր և ամենալուսաւոր վարժապետների և դաստիարակների սրբազան պարտաւորութիւնն է մանրամասն քննութիւններ և մեկնութիւններ տալ առ հասարակ մանկական և դպրոցական կարգապահութեան (դիսցիպլինայի) մասին, և այդ քննութիւնքը տարածել բոլոր ազգի մէջ, ամեն ազգային հանդէսների մէջ տպագրելով և առանձին բրօշիւրներով։ Այս հարցը իմաստասիրելը դժուարին չէ, որովհետև բոլոր եւրոպացւոց գրականութեանց մէջ բաւականին հիմնաւորապէս մեկնված և պարզված է։ «Ուչիտել և «Դէտսկի սադ» մանկավարժական ամսագիրներումն էլ բաւական գրված է այս մասին։

Հայոց ազգը սպասումէ իւր Երկ'ին, որ կեանք տայ, իրագործէ հայոց ազգային, զտեալ և ազգային հոգով տպաւորեալ երգեցողութիւնը, թէ հոգևոր և թէ աշխարհական երգոց։ Երանի նոցա, որոնք կ'արժանանան ականատես լինիլ այն ցանկալի ժամանակին, երբ որ բոլոր հայազգի գերդաստանների մէջ գործ կ'ածուի մեր պատուական և ճոխ հայ լեզուն; բոլոր հայերը իւրեանց ուրախութիւնը, նեղութիւնը, պիտոյքը և ցանկութիւնները յայտնում կը լինին հայ լեզուաւ և բոլոր հայոց մանուկների կրթութիւնը, դաստիարակութիւնը և դասատուութիւնը կը լինին հայերէն գրած սկըզբունքներով, գիտութեան իւրեան ժամանակուայ ծաղկեալ և կատարելագործեալ դրութեանը համեմատ; միով բանիւ, երբ որ հայն կը սիրէ հայուն և հայութիւնը, երբ նա կը շարժի միշտ, ամենայն գործոց մէջ, թէ նեղութեան և թէ բաղդի յաջողակ օրերումը, միշտ արդարակորով և համեստ, և այդ ճանապարհաւ էլ կ'արժանանայ պատուոյ և համակրութեան բոլոր լուսաւոր ազգերի։ Ողորմութեամբ Աստուծոյ այս բոլորն լինելու է, միմիայն միշտ միտներս պահենք, որ այսպիսի բարեացը հասնելու ամենակարճ, ամենահաստատ և միակ ճանապարհը ազգային դաստիարակութիւնն է և ազգային լուսաւորութիւնը, վասն որոյ, թող ամենայն հայ. մեծ թէ փոքր, հարուստ թէ աղքատ, աշխարհական և թէ հոգևորական, արու և էգ, բոլորեքեան ըստ չափու կարողութեան, միշտ և անդադար օգնեն ազգային լուսաւորութեան։

—

Մեր տպագրութիւնը յօրինելուս, մենք ունեցել ենք յետագայ աղբիւրները.

1. Գիրք Նորաքաղ, որ կոչի Երգարան։ Հաւաքեալ ի Վ. Ղազարու վարդապետէ ի փառս մօր մերոյ սրբոյն Էջմիածնի։ Ի Հայրապետութեան տեառն Աբրահամու սրբազան կաթուղիկոսին ամենայն Հայոց; ի պատրիարքութեան սրբոյն Երուսաղէմայ և Կ. Պօլսոյ տեառն Գրիգորի և տեառն Յօհաննու աստուածաբան վարդապետացն։ Ի տպարանի Մահտեսի տրուագ Աստուածատրոյ. 'ի թուին Հայոց ռճձզ (1737)։ Արդեամբք և ծախիւք Գանաքեռցի պարոն Փիւանկուլի որդի պարոն Մալխասին։ 8 ծալ, ե. 255։

2) Տաղարան փոքրիկ, շարադրեցեալ 'ի Սիմէօնէ սրբազան կաթուղիկոսէ ամենայն Հայոց յայլ և այլ ժամանակս, որոյ և հրամանաւն այժմ եւ տպեցաւ կրկին ի նպաստ առաջնոյ տպեցելոյն, 'ի թախանձանաց սիրատարի խնդրողացն ի թուին փրկչին ռչհէ (1777) և մերում ռմիզ (1226)։ Ի սուրբ աթոռս Էջմիածնի։ Ի տպարանի սրբոյն Գրիգորի Լուսաւորչին մերոյ։ 32 ծալ, ե. 40. մանր տիպ։

3) Երգարան մի, ճակատագիրը կորած. առաջի երգը գովասանք է Երուսաղէմի.

Ռամլէ է ծովուն մօտիկ,
Երուսաղէմ խիստ խորոտիկ, և այլն։

Երկրորդ երգն հայ տառերով, տաճկերէն, 'ի վերայ սրբոյն Յակոբայ.

Սուրբ Յակոբ պիր վանք տըր ուլու
Ճ'իւմլէմիզից անըն գուլու, և այլն։ 12 ծալ, ե. 64։

4) Տաղարան վայելուչ և գեղեցիկ 'ի զանազան բանաստեղծից առեալ և տպեալ ումա Թուականի մերոյ ի վաղեմնական տպագրարանիս այսմիկ, արդեամբք Եղիա դպրի; իսկ այժմ զրաւեալ գոլով վերստին ի լոյս ածաւ ի Հայրապետութեան տեառն Ղուկասու սրբազան կաթուղիկոսի ամենայն Հայոց և ի պատրիարքութեան երկու աթոռացն սրբոյ Երուսաղէմի և Կ. Պօլսոյ տեառն Յովակիմայ և տեառն Զաքարիայ արհի եպիսկոպոսաց։ Ի տպարանի Պետրոսեան Աստեփաննոսի, որ ի Յակնայ, և արդեամբք նորա։ Տըպագրարանի կապարէից շարաքարդող Մանուէլ դպիր Մարու-

Թայեան, մրհար տաղարանիս Բաղիշեցի Խաչատուր դպիր. Պետրոսեան: Ի ամլէ Թուականիս մերոյ: 12 ծալ, ե. 484:

5. Վերոյիշեալ «Գիրքոյկ», որ կոչի «Նուագարան» և այլն:

6. Բազմավէպ, օրագիր տնտեսական և բանասիրական գիտելեաց. 24 հատոր, 1843—1867 թ. տպագրութիւնք: Վենետիկ, ի տպարանի սրբոյն Ղազարու: 8 ծալ, ե., ամեն տարուանը, մօտ 400 ե. ե.:

7. Զանազան ձեռագիր երգարաններ, տետրակներ և երգոց թերթեր, որ ստացայ այս տեղ Պետերբուրգ պ. Հայրապետ Գէորգեան Մուքիասեանցից (Աշտարխանցի, աւագ սարկաւագի որդի[1]); տեղւոյս աւագ քահանայ Տէր Գրիգոր Տէր Գրիգորեանցից (Նոր-Նախիջևանցի) և աւագ սարկաւագ Մկրտիչ Պողոսեանցից: Սոցա ինձ հաղորդած ձեռագիր և տպած երգարաններից բաւականին երգեր առել է մեր այժմեան ականաւոր բանաստեղծ Ռափայէլ Տէր-Գաբրիէլեան Պատկանեանցը, իւր «Ազգային երգարանը» տպելիս:

8. «Կռունկ Հայոց աշխարհին», ամսագիր բարոյական, բանասիրական, նկարագրական և վիճակագրական: Ա. տարի, 1860 թ. թիւ գ և ժ, ապրիլ և հոկտեմբեր: 8 ծալ:

9. «Մեղու Հայաստանի», լրագիր քաղաքական, բանասիրական և առևտրական: 1862 թ. №№ 47, 48, 49, 50 և 51, նոյեմբերի 24, դեկտեմբերի 1, 8, 15 և 22: Այս համարներումը հրատարակիչ պատուարժան Ստեփաննոս աւագ քահանայ Մանդինեանցի համաձայնութեամբ, մենք տպեցինք փոքր ժողոված ազգային գործածական երգերից, մօտ 56 հատ, հանդերձ համառօտ յառաջաբանութեամբ:

10. Գամառ Քաթիպայի արձակ և չափաբերական շարադրութիւնքը: Ս. Պետերբուրգ: 1855: 8 ծալ, ե. 14:

---

1) Հայրապետ Գէորգեանը է Աստրախանցի; Նորա հայրը Գէորգ աւագ սարկաւագը է Ղզլարցի, Նորա հայր Տէր Յարութիւն Մուքիասեանն է իսկ Երևանցի: Տէր Յարութիւնը ականաւոր երաժիշտ էր, ազգասէր և հայութեան համար անձնազոհ անձն: Երևան, Տիֆլիս, Ղզլար, Մոզդոկ և Աշտարխան նա էր Էջմիածնայ ժամակարգութեան, ժամասացութեան և ընթերցանութեան սովորեցնողը: Յովսէփ կաթուղիկոսից ետոյ, նա էր Ռուսաստանու հայոց մէջ եկեղեցական բարեկարգութիւն ուսուցանողը և տարածողը: Հայոց եկեղեցւոյ աղօթիւք էլ Աստուած նորա հոգուն ողորմի:

11. «Բուրաստան սուրբ Սահակեան»։ Օրագիր բարոյական, բանասիրական և ուսումնական։ Թիւ 7, յուլիս, 1852 Թ. (Բ. տարի)—Կ. Պօլիս։ 4 ծալ, ե. 101—116։

12. Եղիշէի պատմութիւն Վարդանանց։ Կ. Պօլիս, գրատուն Փարիզու; տպագրութիւն Երամեան; 1866 Թ.։ 16 ծալ, ե. 456։

13. Մի հին երգարան, «եկեղեցական» տուած երգարաններից մինը, որոյ առաջին թերթը և ճակատագիրը պակաս են։ 12 ծալ; ե. 383։ Վերջանում այսպէս. «Քանզի մինչև ցը այս վայր որչափ տաղարան որ տպած է, սա հարուստ է և գեր ի վերոյ ամենեցուն»։ Վենետկու հարց Մխիթարեանց տպագրութեանց տառ, այս երգարանի մէջ տպած կան յետագայ ազգային երգերը.

ա) «Տաղ զատկի (կամ Հայոց Զատիկ)»։ Մարտն կուգայր ծաղկըներով։

բ) «Տաղ վարդի և պիւլպիւլի»։ Պիւլպիւլն է հագեր ի յոտքըն կօշիկ։

գ) Կռունկ ուստի կու գաս, ծառայ եմ ձայնիդ։

դ) Գարիպին կեանքն է լալի ողբ երգական։

ե) Գարունն է բացուեր, վարդն ի բաղչանին։

զ) Կիւզէլ մի ես երեկ տեսայ ի քաղաքն յԱնկիւրիայ։

է) Բարձր վայրի լեռնէդ ի վայր ջուրն ի շինուդ մէջն անցանէր, հայ, և այլ երգեր։

14. Երգարան Կեսարացի Գասպասախալեան Գրիգոր դպրի։ Կ. Պօլիս, 1803։ 12 ծալ, ե. 160։

15. Տաղարան Հայաստանեաց սուրբ եկեղեցւոյ։ Կ. Պօլիս։ 1850 Թ.։ 8 ծալ, ե. 365։

16. Ժամագիրք Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ։ Մոսկվա։ 1853 Թ.։ 8 ծալ, ե. 720։

17. Կարգաւորութիւն հասարակաց աղօթից Հայաստանեայց եկեղեցւոյ։ Վենետիկ։ 1845 Թ. 24 ծալ, ե. 467 և 79։

18. Ձայնքաղ շարական։ Կ. Պօլիս։ 1866 Թ. in folio (ամբողջ թերթի վերայ), ե. 447։

19. Ժամակարգութիւն Հայաստանեայց սուրբ եկեղեցւոյ. Սաղմոս Դաւթի, Նարեկի ժամագիրք և Տօնացոյց։ Կ. Պօլիս։ 1849 Թ. in folio (ամբողջ փոքր թերթ), ե. 98, 145 և 112։

20) Պատմութիւն հայերէն դպրութեան ի պէտս ուսման

ազգային վարժարանաց։ Հին մատենագրութիւն։ Հ. Գարեգին Զարբհանալեան։ Վենետիկ։ 1865 թ. 12 ծալ. ե. ժզ և 649։ Շատ պիտանի շարագրութիւն է։

21. Պատմութիւն հայոց դպրականութեան։ Աշխատասիրեց Ստեփան Պալասանեան (փոտուշանցի)։ Հատոր առաջին. բանաւոր դպրականութիւն։ Տպագրութիւն Ներսիսեան Ազգային Հոգևոր դպրոցի (Տիֆլիս)։ Տիֆլիզ։ 1865 թ. 12 ծալ, ե. 259։ Շատ պատուական աշխատութիւն է, արժանի հայազգի երիտասարդների իմաստասիրութեան։ Հեղինակը շատ տեղ հետևել է երևելի գերմանական Շերր գիտնականի կլասսիկական (առաջնակարգ) աշխատասիրութեան և հայեցուածքներին և այս կողմանէ ել արժանի է ազգային գրականութեանը յառաջադիմութիւն կամեցողների և գնահատողների շնորհակալութեան։

22. Կռունկ, ամսագիր կրօնական և բանասիրական գիտելեաց, հրատարակեալ ի Մսերայ մագիստրոսէ Մսերեանց։ Հատոր Ա. 1859, Մոսկվա։ 8 ծալ, ե. 452։ Հատոր Բ. 1860 թ. 404։ Հատոր Գ. 1861—1862 թ. 8 ծալ, ե. 148 և 40։

23. Հիւսիսափայլ, օրագիր ընդհանուր ազգային լուսաւորութեան եւ դաստիարակութեան։ Խմբագիր—տնօրէն Ստեփաննոս Նչայեան Նազարեանց։ Մոսկվա։ 1858 թ. 8 ծալ. ե. 519 և 544։ 1859 թ. ե. 991։ 1860 թ. ե. 488 և 518։ 1861 թ. ե. 512 և 502։ 1862 թ. ե. 286 և 304։ 1863—1864 թ. ե. 780։

24. Նոր երգարան (Քնար հայրենի) կամ բովանդակութիւն ընդհանուր ազգային երգոց մինչև հինգերորդ տարեդարձ ազգային սահմանադրութեան։ 5 երորդ տպագրութիւն։ Կ. Պօլիս, 1864 թ. 12 ծալ, ե. 64, մանր տիպ և 96 խոշոր տիպ։ Գրքի ճակատագիրը նորա բովանդակութիւնից չափից դուրս ճոխ է։

25. «Գուսանք»։ Սայեաթ-Նօվա, լոյս գցած աշխատասիրութէնով Գէորգայ Ախվէրդեան։ Մոսկվա։ 1852 թ., ի տպարանի Վլադիմիրայ Գոտիէ։ Յառաջաբանութիւն իե երես; Թիֆլիզի բարբառի մի քանի յատկութիւններու վրայ (քերականութիւնը և այլն), 41 երես; երգեր խզ, բառերի մանրամասն մեկնութեամբ, 43—172 երես։ Ականաւոր և պատուական աշխատութիւն, որի վերայ շատ տարիներ է անցուցել հանգուցեալ տպագրողը, բժիշկ Ախվերդեանը (ռուսէրէն և առ հասարակ Տիֆլիս կը կոչէին Իւրիի

Փէզօրոմիչ) Տիֆլիզեցի, նախկին աշակերտ Լազարեան ուսումնարանին, եւ այժմ ուսանող Մոսկովայի համալսարանին բժշկական մասին։

26. Լեռնի վիշտը, ժամանակակից վէպք, չորս գլուխ բաժանած, և զանազան բանաստեղծութիւններ Սմբատայ Շահազիզեան։ Մոսկվա։ 1865 Թ. 12 ծալ, Ե. 253։ Մաքուր աշխարհաբառ, գեղեցիկ ոճով և ազգասիրական ոգով գրած բանաստեղծութիւնք։

27. Ազատութեան ժամեր Սմբատայ Շահազիզեանց, աշակերտի 6 դասատան Լազարեան Ճեմարանի արևելեան լեզուաց։ Հատոր Ա։ Մոսկվա։ 1860 Թ. 24 ծալ, Ե. 189։

28. Գրքոյկ կոչեցեալ «Երգարան», ասացեալ ի միաբանէ սրբոյ Էջմիածնի ի Պետրոսէ վարդապետէ Գափանցւոյ ումիա Թուականիս, ի տպարանի Աստուածատուրի, արդեամբք Արիստակէս ամիրայի որդւոյ տիրացու Յոհաննիսի։ Կ. Պօլիս։ Գափանցին մի քանի ժամանակ Անդրիանուպօլսոյ վերատեսուչ էր։

29. Սերովբէ վարժապետի Պատկանեան երգք, ի լոյս ընծայեալ աշխատասիրութեամբ Ռետիքայ Խազէզեանց, ձեռնասուն աշակերտ Տ. Գաբրիէլի Պատկանեան, աշակերտակից Մ. Նալբանդեանց, յետոյ գրագիր Պետերբուրգի հայոց եկեղեցական կառավարութեանց, այժմս վարժապետ Նոր-Նախիջևան, իւր ծննդեան տեղը)։ Մոսկվա։ 1857։ 8 ծալ, Ե. 92։

30. Նոր երգարան, ժողովածու գործածական երգերի, ի լոյս ընծայեաց գրավաճառանոցն Տէր-Միքայէլեան և ընկ.։ Տփխիս։ 1864։ 8 ծալ, Ե. 150։ Գինն է 70 կոպէկ։

31) Armenian popular songs, translated into the english by R. Leo M. Alishan DD. of the Mechitaristic Society. Venice. 1852. Հայոց ազգային երգեր, անգղիարէն թարգմանութեամբ Հ. Ղևոնդի Ալիշանեան։ 8 ծալ, Ե. 85։

32. Թարգմանութիւնք արձակ և ոտանաւոր (չափաբերական) ի Ռուսաց լեզուէ ի Հայ բարբառ, ի Ժուկովսկիոյ, Պուշկինէ, Լերմոնտովայ, Բարատինսկիոյ և Գնէդիչէ Յ. Համազասպեանց։ Переводы въ прозѣ и въ стихахъ съ русскаго на армянскій языкъ, изъ Жуковскаго, Пушкина, Лермонтова и Гнѣдича, И. Амазаспова. Մոսկվա։ 1843 Թ. 8 ծալ, Ե. 109։ Թարգմանիչը Լազարեան ու-

*

տումարանի առաջին աշակերտն էր իւր ընկերակիցների մէջ և փոյթ՝ փութել; այժմ բնակում Աշտարխան, արքունի ծառայութեան մէջ։

33. Մասեաց Աղաւնի, ամսաթերթ Հայաստանեայց։ Փարիզ։ 1856 թ., ե. 288, և 1858 թ. ե. 192։

34. Ազգային երգարան Հայոց։ Ծաղկաքաղ հին և նոր գործածական ամեն պարունակութեան երգերու կամ տաղերու, այբուբենի կարգով։ Աշխատասիրեաց Գամառ Քաթիպա (Ռափայէլ Տէր-Գաբրիէլեան Պատկանեան)։ Պետերբուրգ։ 1856 թ. Յակոբ Իօնսօնի տպարանումը։ 8 ծալ, ե. 203։

35. Գամառ Քաթիպայի (այսինքն, Ռափայէլ Պատկանեանի) բանաստեղծութիւնքը։ Մոսկվա։ 1864 թ. 12 ծալ, ազնիւ թղթի վերայ, cicero տառերով տպած։ Պատուական բանաստեղծութիւն, որը պիտոյ է լինի ամենայն հայու սեղանի վերայ։ Միթէ այսպիսի տպագրութիւնը 10, 20 և առաւել անգամ պիտոյ չէ տպվի։

36. Տեղագիր Հայոց մեծաց Հ. Ղեւոնդեայ վ. Ալիշանեան։ Վենետիկ։ 1855 թ. Folio, ե. 103։

37. Նուագք Հ. Ղեւոնդեայ Ալիշանեան Մխիթարեան վարդապետի։ Վենետիկ։ 1858 թ. ե. 280։ 12 ծալ, մանր տիպ։ Հ. Ղեւոնդի անունը և նորա բանաստեղծութիւնքը այնքան հռչակուած են Հայոց ազգի մէջ, որ մենք ոչինչ նոր ասել չենք կարող, այլ ցանկանալ, որ այսպիսի բանաստեղծութեանց կարդացողները օրէց օր շատանային մեր մէջ։

38. Զանազան երգք հանգուցեալ Ադամայ երեւանցւոյ, Ազբար մականուանելոյ։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Յովհաննիսեանց երեւանեցի։ Մոսկվա։ 1855 թ. 12 ծալ, ե. 28։

39. Զանազան երգք պարոն Յովհաննիսի Կարապետեան աշըգ Շիրին մականուանելոյ։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Յովհաննիսեանց երեւանեցի։ Մոսկվա։ 1856 թ. 12 ծալ, ե. 51։

40. Զանազան երգք պարոն Յովհաննիսի Շահրամանեանց, Նիրանի մականուանելոյ։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Յովհաննիսեանց երեւանեցի։ Մոսկվա։ 1856 թ. ե. 22։

41. Զանազան երգք Պետրոսի Տէր—Յովսէփեան Մադաթեանց շամախեցւոյ, Մէյեադ մականուանելոյ։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Տ—Գէորգեան Յովհաննիսեանց երեւանեցի։ Մոսկվա։ 1857 թ., 12 ծալ, ե. 87։

42. — Նոյն հեղինակի՝ երգերը։ Մոսկվա 1859 թ. 12 ծալ, ե. 156։

43. Երկասիրութիւնք ազգային երգչաց. ի լոյս ընծայեաց Ոսկան Տ—Գէորգեան Յովհաննիսեանց երևանեցի, արդեամբք տ. Յովսէփայ Աստուածատուրեան Խզմիրեանց ղզլարեցւոյ։ Մոսկվա 1858 թ. 12 ծալ, ե. 117։

44. Երկասիրութիւնք ազգային երգչաց։ Ի լոյս ընծայեաց Ոսկան Տ—Գէորգեան Յովհաննիսեանց երևանեցի։ Մոսկվա 1859 թ. 12 ծալ, ե. 85։

45. Քնար հայրենի։ Կ. Պոլիս 1864 թ. 16 ծալ, ե. 56։

46. Տաճար Մուսայից։ Խնդարան ազգային երգոց։ Կ. Պոլիս 12 ծալ, ե. 16։

47. Տաճար Մուսայից։ Խնդարան ազգային երգոց, Կ. Պոլիս 1862 թ. 12 ծալ, ե. 18։

48. Զանազան հատուկտոր ձեռագիր և տպեալ թերթեր և տետրակներ, որ հաւաքել ենք 1859—1868 թուականներին. Տիփլիս, Կ. Պոլիս, Վիեննա, Վենետիկ, Փարիզ, Մոսկվա և Պետերբուրգ։

---

Բնագրի մէջ դրինք. իբրև ծանօթութիւն, կամ մեկնութիւն, բազում և զանազան մատենագրական (bibliographique,, библiографическiй), բառագրական (lexicographique, лексикографическiй), պատմաբանական, աշխարհագրական և կենսագրական տեղեկութիւնք։ 35, 38, 48, 60, 62, 64, 65, 125, 130, 133, 134, 178, 180, 204, 291, 329, 342—344, 354, 361, 395, 430, 431, 434, 440, 441, 443, 485, 499, 508, 520, 536, 581, 585—590 էջերի ծանօթութիւնքը մերն են, իսկ մնացածները, որոնք առաւել շատ են, մենք քաղել ենք այն աղբիւրներից, որոնցից առած ենք բնագրի հատուածները։ Այսպէս. Սայաթ-Նովայի երգերի բառերի մեկնութիւնքը առած ենք պ. Ախվերդեանի գրքից; Սէյեադի, Ջիւար Ադամի, Շէրդ Շիրինի և Նիրանիի երգոց բառերի մեկնութիւնքը, պ. Ոսկան Յովհաննիսեանցի խմբագրութիւններից, և այլն։

Շատ երգերի հեղինակների անունը գտել ենք հարցանելով, զանազան քաղաքներում, զանազան անձանց և զանազան հաւաքու-

գիտ տպագրութեանց մէջ որոնելով։ Գրքի ցանկից և բնագրի
բովանդակութիւնից կարդացողքը կարող են տեսնել, թէ, բացի
քանի մի երգից, որոնց հեղինակների անունը մենք չկարողացանք
ստուգութեամբ իմանալ, բոլոր մնացորդ հատուածների և երգերի
հեղինակների անունները և մականունները նշանակուած են ստու-
գութեամբ; բացի սորանից, մենք աշխատեցինք ցոյց տալ շատ եր-
գերի և բանաստեղծութեանց թարգմանութիւն եղածը։

Աւելորդ չենք համարում ասել քանի մի խօսք բնագրի բո-
վանդակութեան մասին։

Առաջի աչաց ունենալով այն բոլոր երգարանները և տաղա-
րանները, որ մենք տեսած ենք; միւս կողմանէ, նայելով մեր ազգի
ցրուեալ, տիեզերքիս զանազան երկիրներում բնակուելուն, նոցա
երգերի և այլ տեղական զանազանութիւնքը, մենք մտադիր եղանք
ի լոյս հանել այնպիսի տպագրութիւն, որ. ա) ցոյց տայ երգի և
երգեցողութեան դաստիարակական և այլ նշանակութիւնքը և խոր-
հուրդը; բ) հաղորդէ որքան կարելի է լիուլի տեղեկութիւն մեր
ամենահին ազգային երգոց, նոցա պատմութեան և նշանակութեան
մասին, և այլն, և այլն; գ) պարունակէ իւր մէջ որքան կարելի է
լիուլի շտեմարան ազգային քնարերգական թէ հոգևոր և թէ աշ-
խարհական բանաստեղծութեանց, որոնք ունին այժմեան ժամանա-
կը, որ և իցէ նշանակութիւն ազգային գրականութեան մէջ, կամ
ախորժելի են որ և իցէ երկրի հայոց ժողովրդեանը, թէ իւրեանց
ընտիր և վեհ պարունակութեամբ, թէ բանաստեղծական և ոճի
գեղեցկութեամբ, կամ թէ այն պատճառաւ, որ արտայայտումեն
ժամանակի և ժամանակակիցների դատողութիւնքը, իղձը, զգացմուն-
քը, համոզմունքը, և այլն, և այլն; և դ) մենք կամեցանք որ հա-
յոց ազգը ունենայ մի այնպիսի ժողովածու, ուր հաւաքուած լինին
մէկ տեղ զանազան (եթէ կարելի է այսպէս ասել). արևելեան,
արևմտեան, հիւսիսային և հարաւային հայերի երգերը, թէ տե-
ղական բարբառով և թէ ամենեցուն հասկանալի հայերէն լեզուա-
գրած և, նոցա հետ միասին, ազգային կամ հայախօս առածք։
Մենք կարծումենք, որ այսպիսի հաւաքածուն զանազան տե-
ղեր ցրուեալ մեր հայրենակիցներուն մտաւորապէս և բանաստեղ-
ծականապէս կը ծանօթացնէ և կը մօտացնէ իրար հետ և այլ սորա
նման հետևանքներ կունենայ։ Աւելորդ ենք համարում ապացու-
ցանել այն միտքը, թէ որքան անհրաժեշտ, և անյապաղելի և բը-

նպաստիչ կարօտութիւն են զգում մեր այժմեան իւրեանց պատիւը հասկացող, զգացող և հայրենի և ազգային լեզուն իմաստասիրող հայ աշակերտք և երիտասարդները մէկ այսպիսի ժողովածուի, ուր որ միատեղ գումարեալ և ներկայացեալ լինին հայոց լեզուագիտութեան և բանաստեղծութեան տեղական զանազանութիւնքը, և այլն, և այլն:

Որքան և մինչև որ կէտը մենք կարողացել ենք հասանել մեր գաղափարին, թողումք գնահատել անաչառ հասկացողներին և ապագային, որովհետև ամենայն գործ իւր պտուղներից և հետևանքներից կը իմացուի և կը գնահատուի:

---

Բոլոր գիրքը պարունակում է իւր մէջ. 44½ թերթ, 706 տպած երես; 23,500 տպած տողից աւելի:

Եթէ ճիշդ համեմատենք մեր այս տպագրութեան թղթի ազնուութիւնը և տողերի և տառերի որքանութիւնը (միշտ սոցա վրայ է միմիայն հիմնուած բոլոր տպագրութեան և տպարանի հետ ունեցած հաշիւները) միւս ուր տեղ որ և իցէ մասնաւոր անձանց առանձին տպագրութեանց հետ, ոչ թէ միմիայն հայերէնի, այլ և ռուսերէնի, գերմաներէնի և գաղղիերէնի, և այլն, այն ժամանակ կը ապացուցվի մեր այս տպագրութեան ականաւոր դիւրագնութիւնը (արժանութիւնը, թեթևագնութիւնը), այլ տպագրութեանց առաջև, մանաւանդ գերմանացոց տպագրութեանց, որովհետև Գերմանիայ տպագրութեան ծախքը, համեմատաբար, 30 մինչև 35°/o դիւրագին է, քան թէ Պետերբուրգ: Թողումք այլ անախորժ արգելառիթները, որ միշտ անպակաս են այս տեղ և միշտ կից հայ տպագրութեան, գրաշարների և սրբագրողների պակասութեանց և նոցա անկատարելութեանց պատճառաւ:

Տառերը մեր սեփականութիւնն են և Վեննայի Հ. Հ. Մխիթարեանց տառերի մայրերից ձուլած:

# ՄԵՐ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆՔԸ.

---

**Ա. ԱԶԳԱՅԻՆ ԿՐԹՈՒԹԻՒՆ.** *Հրապարակական ընթերցանութիւնք Էդուարդ Լաբուլէի. ա) ինքնակրթութիւն, բ) ազգային կրթութիւն. գ) ազգային կամ ժողովրդական գրատուններ։ Թարգմանութիւն ֆրանսիէրէնից։* Ս. Պետերբուրգ։ 1867 *թ.*, 8 *ծալ*, *ե.* 59։ *Յաւելուած տպագրողի և ցուցակ ընտիր մատենից ռուսաց գրականութեան*, *ե.* 39։ . . . . *Մէկ օրինակի գինն է.* Ս. Պետերբուրգ, 40 *կոպէկ*; Տիֆլիս, 50 *կոպէկ*; Կ. Պօլիս, 2 *ֆրանկ*։

**Բ. ԽՆԱՄԱՏԱՐՈՒԹԻՒՆ ԵՐԵԽԱՅՈՑ ՄԱՐՄՆԱԿԱՆ ԵՒ ԲԱՐՈՅԱԿԱՆ,**—*շարադրութիւն Կոմբի, անգլիացոց թագուհու բժշկի և Էդինբուրգի Բժշկական Համալսարանի անդամի; բաց ի սորանից յաւելուածք տպագրողի. ա) ցուցակ յատուկ անուանց Հայոց; բ) Տիւրք'ի ատսութիւնը բոյսերի, կենդանիների և մարդերի մէջ արական և իգական սեռեր յառաջանալու մասին; գ) Սրոբոցի երգեր; դ) աղիւսակ պարզ տոկոսի, Հարիւրին* 4%, 5% *և* 6%, *մէկ րուբլի դրամագլխից սկսուած մինչև մէկ միլիօն և նոցա շահը մէկ օրից մինչև մէկ տարի*։ Ս. Պետերբուրգ։ 1868 *թ.* 8 *ծալ*, *ե. ժ*, 5, VIII, 276, VI *և* 28։ *Մէկ օրինակի գինն է.* Պետերբուրգ, 1 *մանէթ* 20 *կոպէկ*; Տիֆլիս, 1 *մանէթ* 30 *կոպէկ*; Կ. Պօլիս, 6 *ֆրանկ*։

**Գ. ՔՆԱՐ ՀԱՅԿԱԿԱՆ։**—*Մէկ օրինակի գինն է.* Ս. Պետերբուրգ, 2 *րուբլի* 50 *կոպէկ*; Տիֆլիս, 2 *րուբլի* 70 *կոպէկ*; Կ. Պօլիս, 10 *ֆրանկ*։

*Վերոյիշեալ գնով պիտի վաճառեն և գրավաճառք, որովհետև նոքա ստանումեն* 20% *զիջումն նշանակած գնից*։

Նոյն զիջումն 20% կ'ստանան ամենքեան, որոնք միանգամից կ'առնուն ոչ պակաս քանզ 25 օրինակ ուղղակի մեզանից, Ս. Պետերբուրգում; կամ Տիֆլիս, տպագրողի սեփական տանը, Մեծ և փոքր Վանքի փողոցների անկիւնումը, պօլկօվնիկ (կօլօնէլ) Զաքարիայ Յօհաննիսեան Շահազիզեանցից։

## Վաճառւում է.

Տփխիս, պ. պ. Ս. Ալադաթեանցի և Ա. Էնֆիաճեանցի գրավաճառանոցներում։

Въ Тифлисѣ, въ книжнихъ магазинахъ С. Аладатова и Амбарцума Энфіаджьянца, на Эриванской площади.

Ս. Պետերբուրգ, Իսակովի գրավաճառանոցում, Նեվսկի Պրոսպեկտ, Գոստիննօյի Դվօր, № 24։ Իսակովի միջնորդութեամբ կարելի է ստանալ Վենետկու և Վեննայի Հ. Հ. Մխիթարեանց տպագրութիւնքը ևս, հաշուելով ամեն մի ֆրանկը 40 կոպէկ, գրեանց ճանապարհի ծախսով միասին։

Въ С.-Петербургѣ, въ книжномъ магазинѣ Якова Алексѣевича Исакова, въ Гостинномъ дворѣ, № 24.

Чрезъ посредство Исакова также можно получать армянскія изданія венеціанскихъ и вѣнскихъ Мехитаристовъ, считая каждый франкъ, вмѣстѣ съ пересылкой книгъ, по 40 копѣекъ.

Կ. Պօլիս և Զմիւռնիա նմանապէս կ'ուղարկենք մեր տպագրութիւնքը։

## Մեր հասցէն.

Միքայէլ Մեսրոպեան Միանսարեանցին, Ս. Պետերբուրգ։
Michel Miansaroff. Russie, St. Pétérsbourg, place Michel, maison № 2/3, de Gerbïnne, log. № 5.

Въ С.-Петербургѣ, Михаилу Месроповичу Міансарову, на Михайловской площади, домъ № 2/3, Жербина, кв. № 5.

---

# ՑԱՆԿ։

## ԳԼՈՒԽ Ա:

## ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳԵՐ, ՇԱՐԱԿԱՆՆԵՐ, ՄԵՂԵԴԻՆԵՐ ԵՒ ՏԱՂԵՐ:

## Արեւագալեաց երգեր։



## Ճաշու ժամ։



## Երեկոյեան ժամ։

### Շարական կիրակամտի։



## Խաղաղական ժամ։



## Արարողութիւն պատարագի.



## Շարականք նախատօնակաց։



## Տաղեր, երգեր, նուագներ և այլն։

## ԳԼՈՒԽ Բ։

## ՕՐՈՐՈՑԻ (ՕՐՕՐՈՑԻ) ԵՐԳԵՐ։

## ԳԼՈՒԽ Գ.

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ (ՌԱՄԿԱԿԱՆ) ԵՐԳԵՐ (DIE VOLKSLIEDER, LES CHANSONS POPULAIRES, НАРОДНЫЯ ПѢСНИ):

## ԳԼՈՒԽ Գ։

## ԱԶԳԱՅԻՆ (ՀԱՅՐԵՆԱՍԷՐԱՑ), ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ԶԻՆՈՒՈՐԱԿԱՆ ԵՐԳԵՐ։

*

## ԳԼՈՒԽ Ե.

## ՈՒՍԱՆՈՂԱՑ ԵՐԳԵՐ (STUDENTEN LIEDER, СТУДЕНЧЕСКІЯ ПѢСНИ):



## ԳԼՈՒԽ Զ.

## ԽՆՋՈՅՔԻ, ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ, ՀԱՐՍԱՆԵԱՑ ԵՒ ԵՐԳԻԾԱԿԱՆ ԵՐԳԵՐ։

## ԳԼՈՒԽ Է։

## ՍԻՐՈՅ ԵՐԳԵՐ։

## ԳԼՈՒԽ Ը։

## ՏԽՈՒՐ ԵՐԳԵՐ։

## ԳԼՈՒԽ Թ։

## ԽԱՌԸ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՔ

—

Յ ա ւ ե լ ո ւ ա ծ։

# ՔՆԱՐ

# ՀԱՅԿԱԿԱՆ:

---

Երբ որ զօրաց Տէրն Աստուած օգնել կ՚ուզէ որբ ազգին,
Նորա մէջն կ՚ուղարկէ ազգասիրական հոգին։

Օշըգ Շիլլեր։

—

Հայ անունը ոչ թէ գրամօք, այլ խնամօք կու ճարվի։

Սէյեադ:

# ԵՐԳԵՐ։

---

Երգերի ու զրոյցների մէջ եղած զանազանութիւնը.—Երգերի նիւթը ու տեսակները.—Հայոց վիպասանական երգերը եւ նրանց պատմական նշանակութիւնը.—Ինչպէս կարող էին Հայոց բերանացի աւանդութիւնները Մար-Աբասի գրքումը տեղիք ունենալ.—Դիցաբանական երգեր.—Դիւցազնական երգեր.—Կէս — դիւցազնական ու կէս պատմական — ժամանակ.—Համեմատութիւն Վահագնի ու Տորքի մէջ.—Պատմական երգեր.—Արտաշէս առաջին, Սմբատ Բագրատունի եւ Արտաւազդ Արտաշիսեան.—Պատմական ու դիւցազնական ժամանակների մէջ եղած զանազանութիւնը. Վարդգէս Մանուկ.—Մեր ունեցած հատուկոտոր երգերը ու վիպասանական աւանդութիւնները բաւական են ցոյց տալու հին Հայոց զարգացման երեք գլխաւոր ժամանակները.—«Անձնական» կամ «անհատական» ժամանակը քրիստոնէութեան ազդեցութեան տակ առնում է իր զարգացումը.—Դիւցազնական ժամանակներում կրօնական երգերը բաժանվում են պատմականներից.—Հայոց հին կրօնը երեք գլխաւոր տարրերից է բաղկանում. պարսկական, յունական եւ բուն հայկական.—Հայոց Դիցաբանութեան գլխաւոր անձնաւորութիւնները եւ նրանց տօները.—Օտարազգի գաղթականների աստուածները.—Աստուածների պաշտօն մատուցանելու տեղերը.—Հայոց հեթանոսական կրօնի ազդեցութեան հետքերը քրիստոնէական գրականութեան, լեզուի ու կեանքի վրայ ցոյց են տալի հեթանոսական երգերի յիշատակների գոյութիւնը.—Կրօնական երգերը պատկանում են քնարական բանաստեղծութեան.—Քնարերգութիւնը բանաստեղծութեան ամենաառաջին ծնունդն է, բայց վիպասանական բանաստեղծութիւնից յետոյ է ծաղկում.—Քնարերգութիւնը բոլոր ազգերի սեփականութիւն է.—Աւանդութեան նշանակութիւնը քնարական երգերի մէջ.—Վիպասանական ժամանակներում երգը, պարն ու խաղը ժողովրդի սիրած բաներն են.—Վարձակ երգիչներ ու երգեցուհիներ եւ նրանց նշանակութիւնը.—Ցուցք կամ Ցցոց երգեր.—Եղերամարք կամ Ձայնարկու կուսանք եւ նրանց ողբերի բովանդակութիւնը.—Դրամատիկական բանաստեղծութեան սկզբնական ձեւը երգն է.—Յունաց եւ Հնդկաց դրաման.—Հայկական դրաման վերջանում է այն տեղ, որ տեղից սկսվում է հելլենականը.—Երգերի ձայնակից նուագարանները։

---

Ժողովրդական սկզբնական գրականութիւնը ամբողջ բանաստեղծութիւն է, որ պատմական ժամանակներից առաջ ծնում է ժողովրդի մէջ և շատ դարեր շարունակ նրա հետ աճում ու զարգանում է։ Ազգային հոգեւոր զարգացումը սկսումէ առասպելների

ստեղծուելովը, որոնց բովանդակութիւնից կազմվում է ժողովրդի դիւցաբանութիւնը, բայց, մի և նոյն ժամանակ, և այն առասպելների հետ կազմվում է ազգային լեզուն ու բանաստեղծութիւնը։

Ազգային նախնական բանաստեղծութեան պատմութիւնը պինդ կապուած է ժողովրդի կեանքի պատմութեան հետ; նրա մէջ պարզ երևում է ամբողջ ժողովրդի կրօնական, բարոյական ու մտաւորական դրութիւնը, նրա անցեալ ու ներկայ կեանքը։ Այս պատճառով ժողովուրդը իր բանաստեղծութեան մեծ նշանակութիւն է տալիս, և, իբրև մի սուրբ ժառանգութիւն, բերանացի աւանդում է նրան որդւոց որդի ու ցեղէ ցեղ։

Ազգային նախնական բանաստեղծութիւնը ընդհանուր անունով կոչվում է «Վէպ» կամ «Վիպասանական բանաստեղծութիւն» [1]։ Բայց այս վիպասանութիւնը, ժամանակ անցնելով, իր ամբողջութիւնը կորցրեց և այլ և այլ մասների կամ անդամների բաժանուեցաւ։ Այս անդամների գլխաւորներն են. «երգը» և «զրոյցը»; բայց դրանցմով չեն վերջանում բոլոր վիպասանական աւանդութիւնները։ Ժողովրդի հին կեանքը երևում է նոյնպէս «առածների», «հանելուկների» կամ «առեղծուածների», «երդումների» ու «անէծքների» և, մինչև անգամ, մասնաւոր բառերի մէջ, որովհետև լեզուն մի և նոյն ստեղծական ուժով կազմուեցաւ, որից ծնան առասպելները, աւանդութիւնները այն առասպելների վրայ և բանաստեղծութիւնը, որ առասպելական աւանդութիւնները բացատրելու է ծառայում։

Վիպասանական բանաստեղծութեան գլխաւոր ու էական տարրերը են. երգերը ու զրոյցները, որոնց հիմը մի և նոյն է, և միայն բովանդակութիւնով ու արտաքին ձևով են զանազանվում միմեանցից։

Երգը ժողովրդի արտաքին կամ ներքին կեանքից է վեր առնում իր նիւթը։ Իբրև ազատ բանաստեղծութեան արդիւնք, երգը, շատ անգամ, ազգային աւանդութիւնների վրայ անբնական ու մտացածին բաներ է աւելացնում, բայց դրանից պէտք չէ կարծել որ իրական կեանքի հետ ունեցած յարաբերութիւնը կորցնում լինի։ Որ և իցէ նշանաւոր դիպուած պատմելիս, կամ մի դիւցազնի անձնաւորութիւնը նկարագրելիս, այն դիպուածի ժամանակն ու տեղը

---

[1]) Յունարէն «էպօս», որ բառ առ բառ նշանակում է «Վէպ» կամ խօսք։ Սրանից առաջ եկած են եւրոպական épopée, épique բառերը։

որոշում է, այն դիւցազնին քիչ շատ կենդանի ու ճիշդ գոյներով է նկարագրում: Այս պատճառով մեր նախնիք ազգային երգիչներին «վիպասան» էին անուանում, այսինքն եղած ու պատահած բաները երգող [1]): Բոլորովին ուրիշ է զրոյցը [2]). այն տեղ, հէնց առաջին խօսքերից երեւում է, թէ աւելի կեղծիք կայ քան թէ պատմական ճշգութիւն: Զրոյցի ստեղծած աշխարքը իրական կեանքի հետ շատ քիչ յարաբերութիւն ունի և այդ յարաբերութիւնը քանի գնում՝ կորչում է: Եթէ երգերը անցքերի տեղն ու ժամանակը քիչ շատ ճիշդ կերպով որոշում են, զրոյցների մէջ, ընդհակառակն, անյայտ են մնում գործողութեան տեղը, ժամանակը և նոյն իսկ գործող անձինքը: Նոյն ինքը ժողովուրդը, իբրև իրաւացի քննիչ ու դատաւոր իր գրականութեան մէջ, ցոյց է տալիս իր կասկածը զրոյցների մէջ պատմուած ճշմարտութեան վրայ: Մեր այժմեան զրոյցների կամ հէքիաթների մեծ մասը այս սովորական խօսքերով են սկսում. «Էղել է ու չէ էղել (մի մարդ ու կնիկ է էլէլ)», կամ երբեմն «Կար ու չկար (մի թագաւոր կար)»: Այս խօսքերը՝ եթէ մէկ կողմից բացատրում են առ հասարակ զրոյցների խոր հնութիւնը, միւս կողմից աւելի այն են ցոյց տալիս, թէ ինչ քիչ հաւատ է ընծայում ժողովուրդը զրոյցների մէջ պատմուածներին: Տարակոյս չկայ, որ այս ընդհանուր ձևը մեր զրոյցների մէջ հին ժամանակներից պէտք է մնացած լինի, այնսինքն թէ մեր նախնիքն էլ զրոյցի վրայ մի և նոյն հասկացողութիւնն են ունեցել: Երգերի մէջ էլ կարող են պատմական ու աշխարհագրական անճըշդութիւններ պատահել, բայց այդ անճշդութիւնները անգիտութիւնից են առաջ գալիս: Իսկ զրոյցների մէջ պատմիչը, գիտութեամբ, ժամանակի և տարածութեան բոլոր սահմանները քանդում է, խո-

---

1) «Ասել» մեր հին գրականութեան մէջ նշանակում է շատ անգամ «երգել», որին բոլորովին համաձայն է մեր այժմեան «խաղ ասել» զուրցուածքը, որ նշանակում է «երգ երգել». ինչպէս որ «խօսել» նշանակում է երբեմն «երգել»: Այսպէս էլ «զրուցել» (որի արմատն է զրոյց), նշանակում է մեր հին եւ նոր լեզուներում «պատմել, խօսել; «կը զուրցուի» Պօլսոյ բարբառով նշանակում է «պատմում են, ասում են.» Լեհաստանի եւ Մոլդավիոյ բարբառներում «զուրուցել» ասել է «խօսել»:

2) Զրոյց ընդհանուր մտքով նշանակում է. die Sage, сказаніе; իսկ շրջափակուած մտքով—conte, сказка.

սում է չեղած երկիրների վրայ, պատմում է չպատահած ու չպա-
տահելիք բաներ, և ստեղծում մի չլսուած ու չտեսնուած աշխարք
է բաց անում մեր առաջին։ Պատմական երգերի նիւթը միշտ
ժողովրդական կեանքի պատկանող անձինք ու անցքեր են։ Երգերը
միշտ ազգային են։ Զրոյցը ընդհակառակն՝ մէկ երկրից միւսը անց
է կենում, և, իբրև կեղծիք, ամէնայն տեղ գնում է։ Այս կեղծիք-
ների պատճառով է որ զրոյցների պատմիչները շատ անգամ օտարի
երևակայութիւնից օգուտ են քաղում. սրա համար է որ շատ զրոյց-
ներ ամբողջապէս մտել են մեր մէջ օտար ազգերից, շատերն էլ
գնացել են մեզանից օտար երկիրներ (ի հարկէ այս փոխանակու-
թիւնը պատահում է աւելի դրացի ազգերի մէջ), ոմանք էլ փո-
փոխութիւն են կրել, և գրեթէ բոլորն էլ հեռաւոր երկիրների
վրայ են խօսում։

Իբրև զանազանութիւն երգերի ու զրոյցների արտաքին յատ-
կութիւնների մէջ, պէտք է ասած, որ առաջինները ոտով ու չա-
փով են, որով երգերը հաստատ ու երկար ժամանակ են մնում ժո-
ղովրդեան յիշողութեան մէջ; իսկ երկրորդները, թէև արձակ, բայց
դարձեալ մի տեսակ չափ ունին։ Զրոյցի միջնորդութիւնով վէպը
հետևակ շարադրութեան կամ արձակի է փոխվում, բայց սկիզբները
երկուսն էլ խառն վիճակի մէջ են։ Զրոյցների նիւթը թէև շատ
անգամ երգերի նիւթից հին է լինում, բայց երգը իր արտաքին
ձևով զրոյցից հին է։

Թէպէտ և ժողովրդեան սկզբնական ժամանակների զարգաց-
ման պէս՝ նրա բանաստեղծութիւնն էլ երկար ժամանակ մի և նոյն
անշարժ դրութեան մէջ է մնում, բայց պէտք չէ կարծել թէ նա
ամենևին փոփոխութիւններ չէ կրում. կեանքի մէջ բոլորովին ան-
շարժ ու անփոփոխ բան չկայ ու չէ կարող լինել։ Իրաւ է որ նախ-
նական բանաստեղծութիւնը, լուսաւորեալ ժամանակների անդադար
փոփոխութիւններ կրող բանաստեղծութեան հետ համեմատելով, ան-
շարժ է, բայց այդ անշարժութիւնը գլխաւորապէս այն բանի մէջ
է երևում, որ նոյն բանաստեղծութեան հնագոյն իդէալները՝ վեր-
ջին ժամակները ստեղծուած իդէալների հետ՝ հաւասարապէս հաւա-
նելի են երևում մշակած բանաստեղծութիւն չունեցող ժողովրդնե-
րին. ուրիշ խօսքով, բանաւոր բանաստեղծութեան հին տարրերը
երբեք բոլորովին չեն անհետանում. բայց այդ արգելք չէ նրան
նոր տարրեր ընդունելու։ Ի հարկէ, այս նոր տարրերը միայն այն

ժողովուրդների բանաստեղծութեան մէջ տեղ են գտնում, որոնք իրանց կեանքի մէջ փոփոխութիւններ են կրում ու պատմական ազգ լինելու պատրաստւում են։

Նոյնպէս ուրեմն պատմական ժողովուրդների սկզբնական բանաստեղծութեան մէջ էլ կամաց կամաց նոր իդէալներ են ծնանում, և այն իդէալները ժողովրդի մէջ առաջացած նոր իդեաների կամ կարծիքների, նոր հայեցուածքների հետևանք են։ Արդ ի՞նչ հայեցուածք ունէր, կամ, աւելի պարզ ասենք, ի՞նչ աչքով էր մտիկ տալի սկզբումը մարդս ինքն իր վրայ և աշխարքիս մէջ եղած առարկաների վրայ։ Նա ինքն իրան բոլորովին թոյլ ու տկար է տեսնում իր չորս կողմը եղած բնութեանը հանդէպ, ուստի և սիրտ չարաւ մաքառել նրա հետ, չիմացաւ յաղթել նրան։ Նրա աչքին մի երևոյթի մէջ մարդս տեսնում էր մի կենդանի ու անյաղթելի գոյութիւն, որից դողում ու ակնածում էր. և ահա առաջ ու առաջ նա սկսեց այն կենդանի պատկերացած երևոյթների վրայ խօսել ու երգել, Նրա երգերի առաջին իդէալները «աստուածները» կամ «դիքն» էին, առաջին երգերը աստուածների վրայ ստեղծած առասպելներ էին։ Բայց ահա մարդս սկսում է կամաց կամաց բնութեան հետ մաքառել. Նա կարողանում է արդէն բնութեան իր հանդէպ դրած մի քանի արգելքներին յաղթել; այն ժամանակ նա նշմարում է որ իր մէջ, մարդուս մէջ ոյժ կայ և զօրութիւն, բայց այդ զօրութիւնը կատարելապէս յայտնուելուց ու իրական աշխարքի մէջ երևան գալուց առաջ՝ մարդս սկսում է երգել նրա իդէալական քաջագործութիւնները, որով և իր բանաստեղծութեան իդէալները փոխվում են, աստուածների տեղ ուժեղ ու զօրաւոր մարդիկ—«դիւցազուններ» են բռնում։ Այս դիւցազունների քաջութեան գործքերը բնութեան երևոյթների հետ պատերազմելում և նրանց յաղթելումն են կայանում։ Բայց այս տեղ այս բնութեան յաղթուած երևոյթները ոչ թէ աստուածներ են, այլ չար ոգիներ։ Սակայն մարդկային զօրութեան այս իդէալներին, ուզում եմ ասել դիւցազուններին, մի արտաքոյ կարգի ոյժ են ընծայում, իբր թէ իրանց ունեցած ոյժը աստուածներից կամ գերբնական արարածներից են ստացել, այս պատճառով էլ դիւցազունք, այսինքն «աստուածների ցեղից» կամ երբեմն էլ «կիսաստուած» են ասվում։ Բայց կամաց կամաց աւելի էլ փոխվում է մարդուս հայեցուածքը. նա ինքն իր մէջ գերբնական ոյժ ու զօրութիւն էլ չէ տեսնում, նա զգում է

որ վիթխարի ու յաղթանդամ հսկաների կարողութիւն չունին մարդիկ, համարում է թէ դիւցազուններն էլ մարդիկ են, որոնք շատ անգամ երկայնահասակ չեն ու մարմնաւոր ոյժ չունին, այլ իրանց հոգեւոր զօրութիւնովը շարժում ու առաջ են տանում մարդկային ազգը, այսինքն թէ բուն դիւցազունները պատմական անձինք են։ Եւ ահա հազիւ թէ ժողովուրդը նշմարում է այս անձնաւորութիւնների բոլոր արժանաւորութիւնը, որ իր երեւակայութիւնը արդէն սկսում է նկարագրել նրանց բուն պատկերը։ Երեւակայութիւնը ստեղծում է նոր «պատմական» իդէալներ, բայց սկզբներումը դուրս չեն ձգվում դիւցազնական իդէալները, հապա, ընդհակառակն, երբեւ թէ օգնութիւն են հասնում նրանց. պատմական անձինքը կամ դիւցազուններով են շրջապատվում, և կամ թէ իրանք դիւցազունների են փոխվում, միայն այն զանազանութիւնով՝ որ գերբնական արարածների հետ չեն պատերազմում, այլ բուն պատմական թշնամիների հետ։ Երեւակայութեան ստեղծած այս պատմական անձինքը բուն պատմական անձինքներից շատ աւելի գործքեր են կատարում. ժողովրդական բուռն երեւակայութիւնը շատ անգամ այնպիսի յատկութիւններ է տալիս նրանց, որ ըստ ինքեան չունին, բայց ինքը ժողովուրդը փափագում է որ ունենան։

Սկզբնական բանաստեղծութեան այս տեսակ տեսակ փոփոխութիւններին նայելով՝ երգերն էլ երեք գլխաւոր տեսակների են բաժանվում և են. «աստուածաբանական» կամ «դիցաբանական», «դիւցազնական» և «պատմական»։ Բոլոր այս աստիճաններից անցկացաւ Հայոց բանաւոր բանաստեղծութիւնը. այն անշարժութիւնը, որ իւրաքանչիւր ազգի բանաւոր բանաստեղծութեան սեպհական է, էնդուրումն է երեւում, որ պատմական երգերի հետ՝ երկար ժամանակ մնացին ու երգուեցան դիւցազնական երգերը. ժողովրդեան համար իր դիւցազունները այնքան սիրելի են, որ նա դժուարութիւնով է բաժանվում նրանցից; մինչեւ անգամ պատմական անձինքներին, ինչպէս վերեւը յիշեցինք, դիւցազունների արժանի գործողութիւններ է անել տալի և նրանց կարգը դասում։

Հայոց հին երգերի նախնական գոյութեան և նրանց արտաքին ու ներքին յատկութիւնների վրայ մի փոքրիկ ճաշակ է տալիս մեզ մեր պատմութեան հայրը՝ Մովսէս Խորենացին, որ՝ իր անմահ աշխատութեան մէջ աւանդել է մեզ ազգային յիշատակների մի քանի հատուկտորները։ Այս թանկագին հատուածները երկուսի

են բաժանվում. կան այնպիսիները, որոնք իրանց սկզբնական կերպարանքը գրեթէ անփոփոխ պահպանել են, ինչպէս որ երեւում է նրանց մէջ յիշատակուած դիպուածներից, դարձուածներից և կցկցուն լեզուից; այնպիսիներ էլ կան, որոնք իրանց արտաքին յատկութիւնները կորցրել և ուրիշ փոփոխութիւններ են կրել, բայց նրանց մէջ գտնուած նախնական բառերից երեւում է որ ազգային հին երգերից հանուած ու համառօտուած են։ Առաջինները շատ փոքր են թւով, իսկ վերջինները աւելի են և ըստ մեծի մասին մեր նախնի Հայկազանց են վերաբերում։ Այս հատուածները որքան էլ կիսատ ու թերատ լինին, յայտնի ցոյց են տալիս այն կենդանի համակրութիւնը, որով Հայերը մասնակից են եղել միշտ Հայաստանի պատմական վիճակին։ Ժամանակակիցները իրանց օրովը ապրող նշանաւոր անձինքը ու նրանց գործողութիւնները երգում էին և հետևեալ նորածին սերունդին աւանդում, որն որ, իր հայրերից ու պապերից կտակուած հնութիւնը իբրև մի սուրբ ժառանգութիւն պահպանելով, աւելացնում էր նրա վրայ իր ժամանակի երգերը և յետոյ իր դիզած բանաստեղծական գանձերը զգուշութիւնով աւանդում էր յետագաներին։ Այսպէսով մի սերունդմիւսի հետ պատմական աւանդութիւններով կապուելով՝ երգերը, այս թանկագին պահարանները պատմական աւանդութիւնների, շատ դարեր շարունակ ապրեցան մնացին ոչ միայն հեթանոս՝ այլ և քրիստոնեայ Հայերի բերանում [1]։ Բայց ժողովրդական երգերը՝ որքան էլ հարուստ և առողական լինին, երկրի ամեն կողմերը հաւասար կերպով ոչ ստեղծվում, ոչ էլ պահպանվում են, և այս բանի պատճառը գլխաւորապէս կլիմայի զանազանութիւնն է, որի ազդեցութիւնը մեծ է ժողովրդի զարգացման ու նրա ստեղծական կարողութեան վրայ։ Յունաստանի զանազան գաւառներից աւելի Յոնիայի պարզ երկնքի տակ ծաղկեցաւ բանաստեղծութիւնը. այնտեղ կազմուեցան այն հագներգուների խմբերը, որոնց հայրն ու հայրենակիցը համարվում է Հոմերոս։ Հայաստանում, ինչպէս երեւում է, այս փառքը վայելեցին Գողթն (այժման Ագուլիս) «գինաւէտ գաւառի բնակիչները», և այս շատ բնական ու հաւանական է։ Չյիշելով կլիմայի բարեբար ազդեցութիւնը, Գողթն գաւառը նը-

[1]) Խոր. Գր. Ա. Գլ. ԼԱ. Գր. Բ. Գլ. ՆԹ։ Գր. Մագիստրոս, Թուղթ առ Գրիգոր Մոկաց եպիսկոպոս եւ ուրիշները։

շահաւոր էր հնումը իր առատ ու բուրեհամ գինիներով. յայտնի է թէ ուր կայ գինի, այն տեղ կայ զուարթութիւն, և զուարթութեան հետ միանում է միշտ երգն ու պարը։ Այս բանը հաստատում է Խորենացին, որ իր պատմութեան ընթացքի մէջ մի քանի անգամ դիմում է Գողթնեցոց յիշողութեանը։

Փոքր ինչ վերևը ասածներից գուշակվում է արդէն որ երգերը, բացի վիպասանական նշանակութիւնից, ունին և պատմական նշանակութիւն, և կարծենք թէ դայթակղութեան առիթ չենք տայ, եթէ ասենք թէ Հայկազանց [1]) պատմութիւնը ըստ մեծի մասին ժողովրդական երգերից հանուած ու ազգային աւանդութիւնների վրայ հիւսուած է։ Այս բաղդին վիճակուած է ոչ միայն Հայոց, այլ և բոլոր (մանաւանդ հին) ազգերի սկզբնական ժամանակների պատմութիւնը, որոնց մէջ, քաղաքական պատմիչները, գրականական պատմիչների հետ, որոշ տեսնում են իւրաքանչիւրի առասպելական և դիւցազնական ժամանակները։ Միայն Հայոց պատմութիւնը դեռ ևս առողջ քննութեան տակ ընկած ու մշակուած չլինելով, շատերը մինչև այժմ կարծում են մեզանում, թէ մեր Հայկազուն նահապետները վէթխարի ու յաղթանդամ հսկաներ են եղել և ոչ մեզ նման սովորական մարդիկ։ Սրանով մենք չենք կամենում մի որ և իցէ կասկած ցոյց տալ Հայոց նախնական պատմութեան ճշմարտութեանը վրայ, ամենևին ոչ. այդ հակառակ կը լինէր մեր ասածներին երգերի վրայ, որոնք պարունակում են իրանց մէջ ազգային աւանդութիւններ, այլ միայն յիշել ենք կամենում թէ քննադատի պարտքն է ճշմարտութիւնը զատել այն կեղծիքներից, որ ժողովրդի բուռն երևակայութիւնը իրանից աւելացրել է, և որոնք մեծ նշանակութիւն ունին միայն գրականական պատմութեան համար։ Այս պատճառով ահա այժմ պատմաբանները ազգային երգերը պատմութեան աղբիւրների կարգն են դասում և աշխատում են գտնել նրանց մէջ ժողովրդական ձայնի արձագանքը։ Այս բանը դրանից գրեթէ տասնը չորս դար առաջ հասկացել էր մեր պատմիչների գլուխ՝ Մովսէս Խորենացին, որ, մի պատմական երևոյթի գոյութիւնը հաստատելու համար, ազգային երգերին ու աւանդութիւններին է դիմում։ Բայց, շատ անգամ, երգերի սկզբնական կերպարանքը անփոփոխ պահած չլինելով, առաջի բերան ազգային բանաստեղ-

---

[1]) Հին պատմութեան սկիզբը։

ծութեան հետքերը չեն երևում վեր ի վերոյ մտիկ տուողին։ Միայն խիստ քննութիւնը ցոյց կը տայ մեզ որ Խորենացու Հայկազեան նախահայրերին ու թագաւորներին այստեղ այնտեղ տուած գովեստները հին երգերից հանուած են, որոնցից մի քանիսը ինքը իր ականջովը լսել է վիպասաններից, իսկ մնացածները Մար-Աբաս Կատինայի գրքից է հանել, որ մեր ազգի ծագման աւանդին պատմութիւնը գրելու պատիւն ու պարծանքը ունի։ Այսպէս, օրինակի համար, Երուանդեան Տիգրանի քաջութիւնների վրայ պանծալով խօսելիս, պատմաբանը, Մար-Աբասից առնելով, հոմերական դիւցազունների արժանի ածականներով է գովաբանում նրան, որոնք հին երգերից հանուած լինելուն ամենևին տարակոյս չկայ։ Նոյն յիրաւի, մեր «ամէնից խոհեմ, քաջ ու հարուստ» թագաւորին արժանապէս գովելու բաւական խօսք չգտնելով, վիպասանների տուած գովաանքներին է դիմում ու իր սիրելի թագաւորին «խարտեշահեր, գունեան, մեղրաչի, անձնեայ, թեթևոտն, առոյգաբարձ, գեղեցկոտն» ածականներ տալիս, որոնց վրայ հնութեան կնիքը յայտնի երևում է, որովհետև բոլորն էլ մարդու արտաքին յատկութիւններին, մարմնաւոր ուժի ու գեղեցկութեան են վերաբերում։ Նոյն իսկ նախնական նահապետների ու նրանց շինած կամ բնակած տեղերի անունները, որոնք պատմական նշանակութիւն ունին, յայտնի ցոյց են տալի որ ժողովրդական հնագոյն աւանդութիւններից առնուած են։

Որովհետև որոշ գիտենք, որ հին և մանաւանդ արևելեան ազգերի սովորութեամբ, Հայերն էլ սովորութիւն ունէին իւրաքանչիւր անձի յատկութեանը կամ բախտին համեմատ՝ մի նշանական անուն տալ նոյն անձին (Անուշաւան, Պարէտ, Սուր, Կոռակ, Պերճ, Արբուն, Բազուկ, Սկայորդի), ինչպէս որ շատ տեղերի բնակիչները կամ շինողները նոյն տեղերի անուանակոչութեանը առիթ են տուել (Հարք, Հայկաշէն, Արմաւիր, Մասիս, Կեղարքունի, Փառախոտ, Ջրօլակերտ, և այլն)։ Այս գեղեցիկ հնարքն էին գործ դնում հները նշանաւոր դիպուածները յիշողութեան մէջ պահելու. պատմական անձինքներին ու տեղերին այսպիսի նշանական անուններ տալով, նրանք այն անձինքների ու տեղերի վրայ և նրանց առիթով հիւսուած զրոյցները հեշտութիւնով միտներն էին պահում ու բերանէ բերան անցընելով յետագայ սերունդներին էին աւանդում [1])։

[1]) Խոր. Գր. Ա. Գլ. Զ։

Այս տեղ մի ուշադրութեան արժանի խնդիր է ելնում մեր առաջին, որի վրայ չենք ուզում լռութեամբ անցկենալ։ Ասացինք թէ հայկական հին երգերի մէկ քանի նշխարները Խորենացին իր ժամանակի վիպասանների բերանից է քաղել, մի քանիսն էլ Մար-Աբասից առնելով մեզ աւանդել է։ Բայց ինչպէս կարող էին Հայոց բերանացի աւանդութիւնները, երգերն ու աշխարհագրական յիշատակարանները Մար-Աբասի գրքումը տեղիք ունենալ, մինչդեռ յայտնի է որ նա մեր ազգի ծագման ու Հայկազուն նահապետների յաջորդութեան վրայ տուած տեղեկութիւնները Նինուէի դիւանատան մէջ գտած Ասորեստանեաց կամ Քաղդէացոց յիշատակարաններից է հանել, որ ասորի պատմագրի վկայութեանը նայելով, բոլոր հին ազգերի սկզբնական պատմութիւնը բովանդակում էր և Մեծին Աղեքսանդրի օրովը ու նրա հրամանովը յունարէն թարգմանուած էր։ Այս ուշադրութեան արժանի խնդրի վրայ վեր ի վերոյ նայողը չդանդաղէր անշուշտ Մար-Աբասի՝ հետևաբար և Մովսէս Խորենացու անկեղծութեան վրայ կասկածելու։ Սակայն այս տարակուսական դրութիւնից ազատելու մի հեշտ միջոց կայ. հարկ է միայն իմանալ թէ հին Ասորեստանցիք ինչ ազգ են եղել և ինչ հաղորդակցութիւններ են ունեցել Հայոց հետ։ Ասիայ հին ժողովրդների մէջ Ասորեստանցիք իմաստութիւնով, քաղաքականութիւնով ու գըրագիտութիւնով առաջին ազգն էին։ Այս ազգը Հայոց ոչ միայն ժամանակակից, այլ և դրացի էր ու երկար ժամանակ մերձաւոր ազգերի հետ՝ Հայոց վրայ էլ մի տեսակ աւագութիւն ունէր. մինչև անգամ մեր նահապետները մէկ ժամանակ նրանց կողմից իշխան էին կարգվում Հայաստանի վրայ։ Իբրև պատմական և ուրիշ ժողովրդների վրայ առաջնադէմ ազգ, Ասորեստանցիք աշխարհքիս նշանաւոր դէպքերը գրի անցընելու ու աւանդելու բաղձանքը այն գլխից ունեցել են; նրանց գրականութեան մէջ աշխարհքիս ամենահին դիպուածները գրի անցուցած են, ինչպէս են ջրհեղեղի պատմութիւնը, լեզուների խառնակութիւնը և մինչև անգամ ջրհեղեղից առաջ եղած նահապետների թիւը ու տարիները, որ Աստուածաշնչի աւանդութիւնների գրեթէ նոյն և նման են [1])։ Աչքի առաջ ունենալով

[1]) Մեր առաջ բերածին մի փոքրիկ ապացոյց էլ կարող է լինել Խորենացու Պերոզից մէջ բերած մէկ հատուածը, որ Մեծին Աղեքսանդրի ժամանակ Քաղդէացոց պատմութիւնը գրեց Ասիայ հին դիւանների յիշատակարաններից քաղելով։ Գր. Ա. Գլ. Զ.։

այն չափազանց հաղորդակցութիւնները, որ այս երկու ազգերը՝ Ասորեստանցիք ու Հայերը մէկզմէկու հետ ունեցել են, ոչ մի դժուարութիւն չէ մնում ընդունելու, թէ մի այնպիսի ժողովուրդ իր դրացի և ըստ մասին հպատակ ազգի պատմութեան գլխաւոր մասները իր յիշատակարանների մէջ անցրել է, ժամանակակից դիպուածները տեղն 'ի տեղը պատմելով, իսկ հնագոյն տեղեկութիւնների համար ժողովրդի յիշողութեանը դիմելով։ Իբրև հաստատութիւն մեր ասածներին, բաւական է Մովսէս Խորենացու Մար-Աբասից հանած վկայութիւնը մէջ բերել, որով, ասորի պատմագիրը, Արամի արշաւանքները պատմելիս, որոշ ասում է թէ «'ի փոքունց ոմանց և յաննշանից արանց 'ի գաւառականէն այս գտանի ժողովեալ 'ի դիւանի արքունեաց» [1]։ Նոյն ինքը Խորենացին, Մար-Աբասի առաջ բերած Հայոց աւանդութիւնները ու աշխարհագրական յիշատակարանները Հայաստանի քրիստոնէութեան ժամանակները ժողովրդի մէջ մնացած աւանդութիւնների հետ համեմատելով, ասորի գիտնականին պատմածների ստոյգ ու հաւատարիմ լինելը հաստատում է։

Արդէն ասացինք թէ վիպասանական բանաստեղծութեան հիմը առասպելներն են, որոնք ժողովրդի երևակայութեան ստեղծած գերբնական արարածների վրայ կազմուեցան. այս պատճառով էլ ժողովրդական երգերի մէջ հնութիւնով առաջին տեղը բռնում են առասպելաբանական կամ դիցաբանական երգերը, որոնց մէջ երևում է ժողովրդի ձգտումը դէպ 'ի գերբնականը ու հրաշալին։ Դիցաբանական երգերը արտայայտում են մարդուս՝ բնութեան երևոյթների հետ ունեցած խորհրդաւոր կապակցութիւնը։ Այս տեղ մարդս իբրև թոյլ ու անփորձ արարած՝ իր չորս կողմը եղած ոյժերին կեանք է տալիս, որոնք իրանք իրանց մէջ, երբեմն էլ հսկաների հետ պատերազմում են ու մարդկերանց վրայ տիրում։

Մար-Աբաս Կատինայի հաւաքած ու Մովսէս Խորենացու համառօտած պատմութիւնը մի առասպելական աւանդութիւնով է սկսում, ուր աստուածները համարվում են ամէն բանի սկիզբը և աշխարհքիս բոլոր լաւութիւնների պատճառը։ Ահաւասիկ այն հատուածը, որի իր սկզբնական կերպարանքը կորցրած ու միայն էական մասները պահածը յայտնի երևում է։

---

1) Խոր. Գր. Ա. Գլ. ԺԳ։

«Ահեղք և երևելիք առաջինքն 'ի դիցն, և աշխարհի մեծամեծ բարեաց պատճառք, որ սկիզբն աշխարհի և բազմամարդութեան։ Եւ 'ի սոցանէ հատեալ գատն ազգ սկայիցն, անհեգեդք, յաղթանդամք մարմնով և վիթխարիք, որք յղացեալ անբարտաւանութեամբ ծնան զամբարիշտ խորհուրդ աշտարակաշինութեանն, և 'ի նոյն լինէին 'ի գործ անկեալք, յոր հողմ ահագին իմն և աստուածային շնչեցեալ ի դիցն ցասմանէ, ցրէ զամբարտակն, և մարդկանն անլուր բարբառս իւրաքանչիւր ումեք բաշխեալ, աղմուկ շփոթի 'ի մէջ արկանէին։ Յորոց մի էր և յապետոսթեանն Հայկ, անուանի և քաջ նախարարն, կորովաձիգ և հաստաղեղն» [1])։

Իսկ երբ առասպելական ժամանակներին յաջորդում են դիւցազնական ժամանակները, հայկական հանճարը էլ չէ բաւականանում հին առասպելներով, ուստի և աստուածների հետ իրական անձինքների գործքերն էլ է խառնում։ Այս տեղ արդէն յայտնի երևում է, թէ ինչպէս Հայոց նախնական բրտութիւնը կամաց կամաց անհետանում է և նրա բարքն ու զգացմունքները փոքր առ փոքր փափկանում ու ազնուանում են։ Ժողովուրդը սկսում է ուշադրութիւն դարձնել այն նշանաւոր անցքերի վրայ, որոնք իր կեանքի վրայ ազդեցութիւն են ունենում։ Աստուածների հետ ժողովուրդը սկսում երգել այն դիւցազուններին, որոնք իրանց երևելի գործքերովը առաջինների կարգը դասուելու արժանի են եղել, թէպէտ և պատմաբանները նրանց գոյութիւնը հաստատում են։

Այսպէս ահա հայ երգիչները բանաստեղծօրէն երգեցին Երուանդեան Տիգրանի կրտսեր որդու՝ Վահագնի ծնունդը և նրան նմանեցրին Յունաց Հերակլէսին ու Հարպօկրատէսին, որ նարգիս աստուածաղկից է ծնուել։ Եւ յիրաւի. Վահագն իր մեծամեծ քաջութիւններովը այնքան մեծ անուն հանեց, որ իր մահուանից յետոյ Հայերը աստուածների կարգը դասեցին, Վրացիք էլ արձան կանգնեցին ու զոհեր մատուցանելով՝ երկար ժամանակ պաշտեցին նրան։ Վիպասանները այս ազգային դիւցազնի սիրովը յափշտակուած՝ նրա այլ և այլ քաջութեան գործքերը բանաստեղծական գոյներով նկարագրեցին իրանց երգերի մէջ, որոնք հնութեան ու անխնայ ժամանակին զոհ են գնացել։ Մի հատուած մնաց միայն Վահագնի ծննդեան վրայ, որ շատ հետաքրքիր [2]) է և ցոյց է տալի հին Հայոց

---

[1]) Խոր. Գր. Ա. Գլ. Թ. վերջը։
[2]) Հետաքրքրական։

բանաստեղծական հանճարի գեղեցկութիւնը ու վսեմութիւնը։ Այստեղ հայկական երգիչների երեւակայութիւնը այն աստիճանի վառվում է, որ դիւցազնի մարդկային ծնունդը մոռանալով՝ բնութեան տարրերին է դիմում, ու երկինքին, երկրին և ծիրանի ծովին ցաւից բռնուած նկարագրելով՝ ծուխից ու բոցից ծնուած է համարում նրան։ Այս երգի հատուկտորը, որ սրանից դրեթէ երկու հազար երեք հարիւր տարի առաջ վիպասանների մէկը երգել և մինչև քրիստոնէութեան դարերում երկար ժամանակ պահպանուել է, մեր գրականութեան ամենից հին յիշատակարանը կարող է համարուիլ։ Խորենացին իր ժամանակի Գողթնեցոց երգերից հանել ու մեզ աւանդել է.

«Երկնէր երկին եւ երկիր.
Երկնէր եւ ծիրանի ծով.
Երկն ի ծովուն ունէր
Զկարմրիկ եղեգնիկն.
Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր,
Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր,
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր,
Ապա թէ բոց ունէր մօրուս՝
Եւ աչկունքն էին արեգակունք» [1])։

Դիւցազունների քաջութեան գործքերը, ինչպէս արդէն տեսացինք, գերբնական արարածների հետ պատերազմելումն ու նրանց յաղթելումն է երևում, բայց այս արարածները աստուածներ չեն, այլ չար ոգիներ կամ վնասակար գազաններ, որոնցից դիւցազնը ազատում է մարդկային ազգին։ Այսպէս, ազգային աւանդութիւններին նայելով, Վահագն վիշապների հետ է կռվում ու յաղթում նրանց, որով և իր ժամանակակիցներից «Վիշապաքաղ» ասուելու արժանի եղաւ [2])։ Նոյն աւանդութիւնով հին Հայոց մէջ պատմըվում էր որ իբր թէ Վահագն ձմեռ ժամանակ Բարշամ Ասորեստանցոց աստծու յարդը գողացել է երկնքից և ճանապարհին թափթփած մանր յարդերից Ծիր Կաթինը գոյացաւ, որ այս պատճառով մեզանում «Յարդգող» էլ է ասվում։ Այս և սրա նման շատ զրոյցներ պատմվում էին Վահագնի վերայ, որի անունը այն աստիճանի ժողովրդականութիւն էր գտել Հայոց մէջ, որ մինչև քրիս-

[1]) Խոր. Գր. Ա. Գլ. ԼԱ։
[2]) Խոր. վերը յիշուած գլխումը եւ Ագաթ. եր. 603»։

տօնէութեան ժամանակները նրա յիշատակը երկար ժամանակ անջնջելի մնացել էր ժողովրդի յիշողութեան մէջ։ Մինչև անգամ թարգմանիչները Աստուածաշնչի մէջ Հերակլեսի տեղ Վահագնի անունը գրեն 1), որովհետև, ինչպէս ինքը Խորենացին ասում է, վիպասանները հայ դիւցազնի քաջութիւնները երգելով՝ Հերակլէսին էին նմանեցնում նրան։

Դիւցազնական երգերը փոխվում են պատմական երգերի այն ժամանակ՝ երբ ժողովուրդը պատմական ասպարէզի մէջ ոտք է կոխում, բայց այս պատմական ժամանակին հասնելուց առաջ՝ մի միջին ժամանակ էլ կայ, որ ոչ բոլորովին դիւցազնական է և ոչ պատմական, և այս բանը ինչպէս կեանքի, այնպէս և բանաստեղծութեան մէջ է երևում։ Այս էնդուր համար է, որ ժողովրդի բանաստեղծութեան մէջ անբնական ցայտումն չկայ ու չէ կարող լինել. ազգային զարգացումը մէկ աստիճանից միւսը երբեք յանկարծ ու ընդգալի կերպով չէ փոխվում, այլ աստիճանաբար ու բնական ճանապարհով մինը միւսի հետ է կապվում, ինչպէս որ շղթայի օղակները մէկըմէկու հետ կապվում ու մի կանոնաւոր ամբողջ են կազմում։ Այս փոխադրական միջոցին են վերաբերում հայ վիպասանների Տորք անունով նահապետին վրայ երգածները, որ Վաղարշակի օրով էր ապրում։ Հայկակի Պասքամ Թոռանը որդին էր Տորք, որ դժնահայեաց, տափաքիթ, մարմնով կոպիտ ու դէմքով սաստիկ տգեղ լինելուն համար, ժամանակակիցները «Անգեղեայ» անուանեցին նրան. Վաղարշակ էլ Հայաստանի արևմտեան կողմերի կուսակալ կարգեց նրան ու բոլոր ցեղը «Անգեղ Տուն» անուանեց։ Վիպասանները այնպիսի կարգէ դուրս բաներ էին պատմում այս դիւցազնի ուժին վրայ, որ Խորենացու ասածին նայելով՝ ոչ Սամսոնին, ոչ Հերակլէսին և ոչ հարիւր քսան փղի ույժ ունեցող Ռոստոմ Սագճիկ անունով պարսիկ դիւցազնին են յարմարում 2)։ Օրինակի համար, պատմում են թէ Տորք պինդ ու անտաշ քարեր ձեռքն առած՝ ճեղքում և ուզած մեծութիւնն ու չափը տալիս էր նրանց,

---

1) Գ. Մակաբ. Գ, 19։

2) Ռոստոմը Ֆիրդուսի վիպասանին յիշած Ռուստէմն է եւ Շահ Նամէի գլխաւոր դիւցազուններից մինը։ Միայն պարսիկ վիպասանը իր դիւցազնին «Սագճիկ» մականունը չէ տալի, որի ինչ նշանակութիւն ունեցածը յայտնի չէ։

յետոյ բղխնդներումը քերելով՝ տախտակի ձև էր տալի և դարձեալ բղխնդներումը արձիւններ ու զանազան նկարներ էր գծագրում նրանց վրայ։ Չնայելով որ վէպասանները Տորքին Մխիթարի հասակ ու գերբնական ույժ են ընծայում, այսու ամենայնիւ ոչ նրա ապրած ժամանակը, և ոչ մանաւանդ գործողութիւնները իրաւունք են տալի նրան առաջին կարգի դիւցազունների շարքումը դասելու, որովհետև նրա ուժի փորձը առնողները մրցածին էակներ չեն, հապա իր նման սովորական մարդիկ. նրա թշնամիները բուն դիւցազունների թշնամիների նման՝ գերբնական արարածներ չեն, այլ իրական անձինք։ Այսպէս՝ մի անգամ, ասում է երգը, Պոնտոսի եղերքը թշնամիների նաւերին պատահելով՝ նրանց վրայ է դիմում. բայց նաւերը ութը ասպարէզ տեղ ծովեզերքից հեռանում են, այնպէս որ Տորք չէ կարողանում ետևներիցը հասնել։ Այն ժամանակ վեր է առնում նա բլրաձև քարեր ու նրանց քամակից այնպէս սաստիկ ձգում, որ ծովը պատառվում է ու ալիքները բարձրանալով նաւերի կէսը ընկղմում, միւս կէսն էլ հեռաւոր տեղեր են քշում։ Այս երգիչների այս նկարագրութիւնը զարմանալի նմանութիւն ունի Հոմերոսի իր Ոդիսականին մէջ Կիկլոպեան Պոլիփեմի վրայ երգածի հետ։ Հոմերեան հսկան էլ իր Ոդիսև թշնամու վրայ սաստիկ զայրացած՝

«.... Ի բաց ցատման անդ զաղտեւանն անարի
կորզեաց գլխոյն. արկ առ նաւաւն առ ի զենէն վայրիկ մի,
Ճայյան բոմբեաց, ծով դիզացաւ, յորձանք ալեաց զարձ առին,
Ծովն ալէկոծ վարէր զնաւն եւ մօտ ձգէր ցամաքին....»

Եւ որովհետև Ոդիս իր կծու խօսքերով նրա սիրտը խայթելուց չէր դադարում, այս պատճառով Պոլիփեմ վերստին

«.... Մոլեալ առ միւսանգամ վէմ առաւել ահագին
Շրջանակեաց, թափ ետ ուժգին յաղթաբազուկ կորովին,
Արկ յետ նաւաւն կշիռ ի խելս, գոգցես ի ծայրըն ղեկին
Ծովն ի վիմէն ծփեալ ըզնաւն ի կոյս վարէր ցամաքին» [1]։

Այսպիսի նմանութիւններ շատ ու շատ են պատահում սկըզբնական ազգերի երգերի, զրոյցների և ուրիշ աւանդութիւնների

---

[1]) Ոդիսական, թարգ. Հ. Եղիա Թովմաճեան, Հատ. Ա. Հատներգ. Թ. եր 264—66.

մէջ, և պատճառը յայտնի է։ Արևմտեան ազգերը իրանց գոյութեան սկզբնական ժամանակները՝ իրանց սովորութիւններովը, իրանց հոգևոր կեանքովը միմեանցից այնքան չեն զանազանվում, ուրեմն և նրանց սկզբնական գրականութիւնների մէջ շատ նմանութիւններ կան։ Իսկ երբ ազգերը այնքան առաջ են գնում, որ գրագիտութեան միջնորդութիւնով իրանց գրաւոր գրականութիւնները ունենալու վիճակին են հասնում, այն ժամանակ իւրաքանչիւր ազգի գըրականութիւնը իր սեպհական յատկութիւնները, սեպհական պատկերը կունենայ։

Վահագնի և Տորքի վրայ պատմուած աւանդութիւններից պարզ երևում է, թէ ինչպէս ժողովրդի իդէալները աստիճանաբար փոխվում, ազնուանում են, և թէպէտ երկուսին էլ գերբնական ույժ է տրուած, երկուսն էլ հսկայաձև ու յաղթանդամ են, բայց երկուսն էլ մի և նոյն քաջութեան գործերը չեն գործում. մինը վայրենի գազանների դէմ է կռվում, իսկ միւսը իր նման մարդկերանց հետ. առաջինը, երկրիս վրայ գործած քաջութիւններովը չբաւականանալով, երկինքն է բարձրանում ու, մարդկային ծնունդը մոռացուելով, աստուածանալու պատուին է հասնում. երկրորդը, թէ և նոյնպէս դիւցազն, այսու ամենայնիւ երկրիս վրայ է մնում և մարդկային ծնունդ ունի։ Բայց այս բաւական չէ։ Քանի որ ժողովուրդը զարգանում է, նրա հայեցուածքը նոյնպէս փոխվում է. նա սկսում է վերջապէս ուշադրութիւն դարձնել այն անձինքների վրայ, որոնք իր ամբողջութիւնից դուրս գալով՝ ջանք ու ճիգ են անում ժողովրդներին առաջ տանելու. նա հասկանում է որ այն անձինքը իրանց բարձր նպատակին հասնելու համար՝ արտաքին ու մարմնաւոր ույժ ունենալու կարօտ չեն, այլ ներքին հոգևոր կարողութեան պէտք ունին։ Եւ ահա ժողովրդի այս նոր հասկացողութեան հետ նրա իդէալներն էլ փոխվում են. նա էլ չէ բաւականանում գերբնական արարածների դէմ պատերազմող դիւցազունների հսկայական քաջութիւնները երգելով, նա սկսում է այն անձինքների անունը հռչակել, որոնք իրանց կեանքը ժողովրդեան օգտի և հայրենեաց երջանկութեան համար աշխատելով են անցկացնում։

Մեր թագաւորների մէջ թերևս չկայ մէկը, որ Արտաշէս Երկրորդի չափ սէր ու համակրութիւն վաստակած լինի Հայոց մէջ։ Թագաւորական գահը բարձրանալուց ու Հայաստանի քաղաքական վիճակը ապահովացնելուց յետոյ, Արտաշէս իր բոլոր ուշադրութիւնը

երկրի ներքին բարեկարգութեան վրայ դարձրեց։ Բոլոր Հայաստանը զանազան սահմանների բաժանեց և օտար ազգերի գաղթականութիւններ բերելով՝ անբնակ գաւառները ու լեռները բնակեցրեց։ Վաճառականութիւնը և արուեստները ծաղկեցնելու հոգ տանելով՝ շատ կամուրջներ շինեց և բոլոր գետերն ու ծովակները անթիւ նաւերով լցրեց։ Երկրագործութիւնը առաջ տանելու համար՝ ամէն տեսակ միջոց գործ դրաւ և առհասարակ այնպիսի գործունէութիւն մտցրեց Հայոց մէջ, որ պատմութիւնը ասում է թէ իր ժամանակին երկիր չէր մնացել որ անմշակ լինի, մարդ չէր մնացել որ դատարկ ու անգործ շրջի։ Բաց ի դրանից Արտաշէսի օրովը մեհեաններ շինուեցան, վարժարաններ և մարզարաններ հաստատուեցան, բանաստեղծութիւնը ծաղկեցաւ, (որի սիրելիներից մինն էր Թագաւորի որդին Վրոյր «իմաստուն և բանաստեղծ») և այս բոլոր բարերարութիւնների փոխարէն այնքան ժողովրդականութիւն գտաւ ազգին մէջ, որ իր մահուան լուրը առնելով՝ բոլոր Հայաստանը սուգ մտաւ, շատերն էլ, այսպէսի խելացի ու բարերար թագաւորից յետոյ լոյս տեսնել չուզելով, իրանք իրանց սպանեցին ու Արտաշէսի հետ միասին թաղուեցան։

Արտաշէս թէպէտ մեռաւ, բայց իր քաղցր յիշատակը երկար ժամանակ մնաց ժողովրդի սրտումն ու մտքումը։ Խորենացին վկայում է թէ մինչև իր օրերը Գողթն գաւառի բնակիչները երգում էին Արտաշէսի գործքերը. Երուանդի հետ ունեցած պատերազմը, Արտաշատ քաղաքի շինելը, Ալանաց դէմ տուած պատերազմը և յետոյ նրանց հետ արած խնամութիւնը, որդկերանց ծնունդը, Սաթենիկ տիկնոջ իբր վիշապազունների (այսինքն Մասիսի ստորոտը բնակող Մարաց) կամ աւելի ճիշդ Արգամայ վրայ սէր ձգելը, հետևաբար և ծերունի Արգամայ անպատուիլը ու տնով տեղով ջնջուիլը, Արտաշէսի որդկերանց իր ամուսիններից գրգռուած և մէկզմէկու դէմ ունեցած նախանձը,—այս բոլոր հանգամանքները, վիպասանների երգերից հանելով, մեզ պատմում է Խորենացին [1])։

Սրանցից Արտաշէսի Ալանաց հետ ունեցած խնամութեան վրայ տուած երգը մէջ է բերում՝ մէկ մասը խօսակցութեան ձևով, իսկ միւսը անփոփոխ պահելով՝ այսպէս.

---

[1]) Խոր. Գիր. Բ. Գլ. ԽԹ։

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ,
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց,
Եւ շատ ցաւեցոյց զմէջս փափուկ օրիորդին.
Արագ հասուցանելով ի բանակն իւր» [1]։

Երկրորդ և չորրորդ տողերի մէջ յիշուած «ոսկէօղ շիկափոկ պարանն» այլաբանութիւն է և նշանակում է «կարմիր մորթ, լայ-քա ու ոսկի», որ Ալանաց աչքին շատ յարգի էին, և որոնցից ընծայ ուղարկեց նրանց Արտաշէս, Սաթինիկին առնելու ժամանակ։
Այսպէս էլ հարսանիքի հանդէսի վրայ երգում էին.

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշիսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն»։

Որովհետև, աւելացնում է Խորենացին, երբ, մեր Թագաւորները, փեսայացած իրանց պալատի դուռը հասնում էին, Հռոմայեցոց հիւպատոսների նման ոսկի էին ցրւում; Թագուհիներն էլ իրանց առագաստի մէջ մարգարիտ էին ցանում, սովորութիւն որ մինչև այժմ էլ տեղ տեղ մնացել է [2])։

Բայց եթէ Արտաշէս մեծ համակրութիւն էր գտել ժողովրդի մէջ, պատճառը ըստ մեծի մասին իր հաւատարիմ խորհրդատու ու ազատարարն էր—Սմբատ Բիւրատեան Բագրատունի նախարարը։ Պատմութիւնից գիտենք որ Սանատրուկի մահուանից յետոյ, երբ Երուանդ Արշակունին նրա ցեղը տնով տեղով ջնջելու վրայ էր, Արտաշէս փախչում է Սմբատ Բագրատունու մօտ։ Ծերունի նախարարը հօր պէս է ընդունում Թագազուրկ Արտաշէսին ու հետը միասին Պարսից Դուռը ապաւինում։ Այնտեղ իր անձնական քաջութիւններովը Սմբատ շուտով Թագաւորի ուշադրութիւնը իր վրայ է դարձնում, որ, կամենալով վարձատրել նրան, կատարում է

---

[1]) Խոր. Գր. Բ. Գլ. Ծ։
[2]) Նոր Ջուղայի մէջ մինչեւ այժմ էլ փեսան ու հարսը եկեղեցուց տուն դառնալիս, եթէ հարուստ են, ազգականներից երկուսը ձեռքերը երկու սկուտեղ փողով լիքը՝ դիմաւորում են նրանց տան առաջին, եւ մէկը փեսի՝ իսկ միւսը հարսի գլխին է ցանում սկուտեղի մէջ եղած փողը. Լ. Մին, Սէպք Հայ. եր. 36.

նրա մեծ խընդիրքը ու շատ զօրքով Հայաստան է ուղարկում, որ Սանատրուկի թագը Երուանդից յետ առնէ ու Արտաշէսին թագաւորեցնէ Հայոց վրայ։ Այնուհետև Նորապսակ թագաւորը առանց իր բարերարի խորհրդին ոչինչ չէր անում, ոչ պատերազմի, ոչ խաղաղութեան ժամանակ։ Տարակոյս չկայ որ Սմբատի պէս անձնաւորութիւնը չէր կարող ազատ մնալ ազգային երգիչների նկատողութիւնից, որոնց խօսքերը բոլորովին համառօտում է Խորենացին, այս ծերունի նախարարի բնաւորութիւնը ու յատկութիւնները նկարագրելիս. «Քանզի, արդարև, ըստ առասպելին, ոչինչ հեռի 'ի ճշմարտութենէն (էր քաջն Սմբատ). որ ունէր հասակ անդամոց համեմատ քաջութեանն, և առաքինութեան ոգւոցն որպորդ, և գեղեցկութեան աչերք վայելչացեալ. սակաւ ինչ արեան նիշ ունելով յաչսն՝ որպէս դրակոնտիկոն 'ի վերայ ոսկւոյ և 'ի մէջ մարգարտոյ ծագէր. և 'ի վերայ շքոյ անձին և մարմնոյ՝ զգոյշ յամենայնի, և ուշութիւն յաջողուածոց ունէր ի մարտս առաւել քան զամենայն ոք» 1)։

Սմբատի անունը ու համբաւը աւելի հռչակուեցաւ մանաւանդ այն ժամանակ, երբ Կասպից երկրումը յանձն առած արշաւանքը յաջող կերպով գլուխ տարաւ, որի պատճառով Արտաշէսի անդրանիկ որդին՝ փառասէր Արտաւազդը կամենում է սպանել նրան ու Հայոց զօրքերի սպարապետութիւնը խլել նրանից, ինչպէս որ նրանից առաջ նոյն Արտաւազդը, աչք ունենալով Արգամ Մուրացան իշխանի երկրորդական գահի վրայ, մատնում է նրան Արտաշէսին, որ իբր թէ Արգամայ միտքը թագաւորական իշխանութեան հասնել է։ Այս պատճառով Արտաշէս բոլոր պատիւները խլում է նրանից ու Արտաւազդին տալիս, որ և սպանեց նրան. թէպէտ և այս Արգամայ սպանութեան պատճառը ըստ մասին կարծվում է այն սէրը, որ Սաթինիկ ցոյց էր տուել Մուրացան նախարարին, որովհետև երգը ասում է՝ թէ

«Ցենչայ Սաթինիկ տիկին տենչանօ՝ զարտախոյր խաւարտ
Եւ զտից խաւարծի ի բարձից Արգաւանայ» 2)։

Սմբատ. հասկանալով Արտաւազդի դիտաւորութիւնը և ճանաչելով

1) Խոր Գր. Բ. Գլ. ԾԲ։

2) Երգի մէջ «Արգամ» անունը աղաւաղուելով «Արգաւանի» է փոխուել։

նրա բնաւորութիւնը, առանց տրտնջելու, քաշվում է Մարաստանի կողմերը, հրաժարուելով բոլորովին Հայոց զօրքերի սպարապետութիւնից, որ Արտաւազդ շտապում է իրան սեպհականելու. և ահա այս պատճառով մեծ խռովութիւններ ծագեցան Թագաւորի որդկերանց մէջ: Բայց Սմբատ շուտով առիթ ունեցաւ ցոյց տալու իր հաւատարմութիւնը ու անյիշաչար բնաւորութիւնը: Հռովմայեցոց կայսրը Դոմետիանոս, սաստիկ զայրանալով Արտաշէսի վրայ, որ էլ չէր կամենում իր հարկատւութեան պարտքերը ճանաչել, շատ զօրք է ուղարկում Հայաստան: Արտաշէս Հռովմայեցոց առաջը առնելու համար՝ իր որդկերանց ձեռքը զօրք է տալիս, որոնք թէ և երկար ընդդիմանում են թշնամուն, բայց վերջապէս վտանգի մէջ են ընկնում: Այս միջոցին Սմբատ, որ թէպէտ ծերացած՝ բայց դեռ երիտասարդի պէս էր պատերազմում, հալածում է թշնամիներին, որոնց, ինչպէս երգը ասում է, Դոմետ անունով մէկը առաջնորդում էր [1]), և Թագաւորի որդկերանց մահից ազատում:

Երգերը, Թագաւորների ու իշխանների այս անաչառ դատաւորները, որքան մէկ կողմից գովասանքով խօսում են Արտաշէսի ու Սմբատ Բագրատունու վրայ, միւս կողմից այնքան աւելի սև գոյներով են նկարագրում Արտաշէսի որդու ու յաջորդի—Արտաւազդի մոլի ու նախանձոտ բնաւորութիւնը, որի պատճառը նրա մանկութիւնից վիշապազունների ձեռքը մնալն են համարում երգերը, և այս հանգամանքը մի այլաբանական ձևով յայտնում են, իբր թէ ծննդեան ժամանակ

«Վիշապազունք գողացան զմանուկն Արտաւազդ,
Եւ դեւ փոխանակ եդին»:

Նախանձու և ատելութեան բոցը այնպէս սաստիկ վառուել էր Արտաւազդի սրտումը, որ սա, չբաւականանալով Արգամայ ու Սմբատի գլուխը բերած չարիքներովը, չբաւականանալով և եղբարց մէջ ձգած կռիւներովը, մինչև անգամ իր հօր փառքի վրայ էլ նախանձեց: Որովհետև արքայորդին, իր հօր մահուան ժամանակ եղած կամաւոր մահերը տեսնելով, կատաղած կանչեց մեռած հօր քամակից:

«Մինչ դու գնացեր եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար,
Ես աւերակացս որպէս Թագաւորեմ»:

---

1) Խոր. Պր. Բ. Գլ. ԾԳ:

Երասխի ուրուականը, այս մեղադրական խօսքերը լսելով, անիծեց նրան, ասելով.

> Եթէ դու յորս հեծցիս յազատ ի վեր ի Մասիս,
> Զքեզ կալցին քաջք, տարցին յազատ ի վեր ի Մասիս.
> Անդ կացցես և զլոյս մի տեսցես [1])

Տարակոյս չկայ, որ որդու անօրէնութիւնները աւելի էլ պէտք է յիշեցնէին ժողովրդին հօր իշխանութեան քաղցր ժամանակները, որի կեանքի բոլոր հանգամանքները քրիստոնեայ Հայոց մէջ երկար ժամանակ երգվում ու պատմվում էին, մինչև անգամ գիւղականների մէջ, որոնց համար այնքան բան էր արել Արտաշէս։ Սրանց բերանից է քաղել Մագիստրոս տասնըմէկերորդ դարումը՝ հետևեալ կարճիկ՝ բայց սրտաշարժ հատուածը, որ վերաբերում է Թագաւորի կեանքի վերջին րոպէներին։ Արտաշէս, յիշելով կեանքի ու տարուայ գարունը, երբ առաւօտեան լոյսը, ցօղի հետ խառնած, բարակ մէգի պէս գետերի ու քաղաքների վրայ էր տարածվում, միտը բերելով նոյնպէս իր որսական զուարճութիւնները, կանչում է.

> «Ո՞ տայր ինձ զծուխ ծխանին և զառաւօտն նաւասարդի,
> Զվազելն եղանց և զվազելն եղջերուաց».

Իսկ ժողովուրդը իր սիրելի Թագաւորին փափաքը անկատար մնացած տեսնելով՝ սուգ է կատարում.

> «Մեք փող հարուաք և թմբկի հարկանէաք»։

Վահագնի, Տորքի, Արտաշէսի, Սմբատի և Արտաւազդի վրայ երգուած երգերի բովանդակութիւնից պարզ երևում է թէ ինչպէս հետզհետէ ժողովրդեան իդէալները փոխվում ու ազնուանում են. գերբնականը ու հրաշալին տեղ է տալիս բնականին, մարմնաւոր ոյժը—հոգևոր կարողութեան։ Վահագն ու Տորք միայն իրանց անձնական ուժովը չլսուած բաներ են անում. կատաղի գազանների դէմ պատերազմում, ժայռեր տեղից շարժում են, առանց մարդու օգնութեան կարօտ լինելու։ Իսկ Արտաշէս արդէն ինչ որ անում է, բոլորը բազմութեան համակրութիւնովն է անում, որովհետև նրա վրայ ասուած երգերը այն ժամանակ են ստեղծուել,

---

[1]) Խոր. Գիր. Բ. Գլ. ԿԱ։

երբ ժողովուրդը զգում էր արդէն որ առանց իր օգնութեանը պատմական անձը ոչինչ չէ կարող անել։ Այս բանը երևում է և հետևեալ փոքրիկ՝ բայց մեր ասածը ապացուցանելու համար բաւական նշանաւոր հատուածից՝ Երուանդի քեռայր Վարդգէսի վրայ, որ իր «ընկերներով» Արտիմէդ քաղաքը շինեց.

«Հառուած գնացեալ Վարդգէս մանուկ ի Տուհաց գաւառէն
Ըզքասաղ գետով,
Եկեալ նստեալ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ քաղաքաւ,
Ըզքասաղ գետով,
Կալել կոփել զդուռն Երուանդայ արքայի» [1]։

Սրանք են աՀա ժողովրդական սկզբնական երգերի տեսակները, որոնցից պարզ երևում է, թէ բանաստեղծութիւնը ինչ մեծ կապակցութիւն ունի ժողովրդի պատմութեան հետ, այնպէս որ մի ազգի պատմութիւնը բանաստեղծութիւնով կարելի է պարզել և բանաստեղծութիւնը պատմութիւնով։ Դժբաղդաբար մեր ազգային բանաստեղծութեան յիշատակարանները շատ փոքր ու թերատ են, որ կարողանայինք կատարելապէս ցոյց տալ հին Հայոց հոգին ու կեանքը։ Մենք յոյս ունինք թէ գոնէ այն կարողացանք ցոյց տալ, թէ ինչպէս ժողովրդի հասկացողութիւնը հետզհետէ փոխվում ու կատարելագործվում է բնութեան և մարդու վրայ։ Բայց որովհետև ժողովուրդը երբէք անշարժութեան մէջ չէ կարող մնալ, այս պատճառով նրա իդէալների մէջ էլ շարունակ փոփոխութիւններ են լինում։ Քանի որ ժողովուրդը պատմական ասպարէզին մէջ առաջ է գնում, այնքան աւելի զգում ու հասկանում է թէ իրան ու պատմական անձինքների մէջ ներքին կապակցութիւն ու մերձաւորութիւն կայ, թէ այն անձինքը ժողովրդի միջից դուրս են եկել, թէ նրանք իրանց գլխից չեն հնարել այն նպատակները, որոնց դիմում են, այլ դիմում են այն նպատակներին, գուշակելով իրանց ժողովրդի գաղտնի զգացմունքները, պիտոյքները ու ձգտումը, թէ վերջապէս նրանք միայն բազմութեան համակրութիւնով և օգնութիւնով ոյժ ունին։ Ժողովուրդը սկսում է տեսնել, որ ոչ միայն մի քանի սակաւաթիւ ընտրեալ անձինք արժանաւորութիւն ունին, այլ բոլոր ժողովուրդը, ուրեմն և «իւրաքանչիւր անհատը» այն ժողովրդից, այսինքն

[1] Խոր. Գր. Բ. Գլ. ԿԵ։

բոլոր մարդիկ»։ Այս նոր հայեցուածքը իր կատարելութեամբ հասնում է միայն քրիստոնէութեան բարերար ազդեցութեան տակ, որ ամէն մի անհատի մեծ արժողութիւն է տալիս միայն էնդուր համար՝ որ մարդ է։ Այսպէսով բանաստեղծութիւնը, մինչև անգամ բանաւորը, քրիստոնէութեան ազդեցութեան տակ մնալով, ոչ միայն դիւցազուններին ու պատմական անձինքներին է երգում, այլ ամէնին, մինչև անգամ ամէնից հասարակ մարդկերանց հաւասար սիրով երգում է։

Սրանից պարզ երևում է որ վիպասանական երգերի զանազան տեսակների բաժանումը պատահական ու լոկ կամաց չէ, այլ այս բաժանումը ինքն ըստ ինքեան առաջ է գալիս բուն երգերի նիւթից, որոնց մէջ որոշ ցոյց տուինք ժողովրդի զարգացման չորս գլխաւոր ժամանակները, և այս ժամանակների նայելով՝ չորս տեսակ վիպասանական երգեր. դիւցաբանական, դիւցազնական, պատմական և վերջապէս «անձնական» կամ «անհատական» ¹)։ Այս վերջին տեսակ եր-

---

¹) Խորենացին Վիպասանական երգերի հետ երբեմն «Թուելեաց երգեր էլ է յիշում։ Այս Թուելեաց երգերով ոմանք երգերի «չափաբերական» լինելը հասկանում են (իբր թէ երգերը կարող են առանց չափի լինել), ուրիշները—«Ժամանակագրական» երգեր. բայց մենք գիտենք որ երգերը առ հասարակ ժամանակագրութեան են հետևում, այս նրանց գլխաւոր յատկութիւններից մին է։ Ուրիշները դարձեալ Թուելեաց երգերը վիպասանական երգերի մէկ տեսակը համարում են, բայց այս կարծիքն էլ վերևինների նման մեզ բոլորովին սխալ է երևում։ Մեր կարծիքով Թուելեաց երգերը մի և նոյն վիպասանական երգերն են, և այս բանը ըստ մասին հաստատում է Խորենացին, որ Արտաշէս Երկրորդի գործքերը պատմելու ժամանակ՝ ասում. «Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ «ի վիպասանացն» որ պատմին ի «Գողթան», և փոքր ինչ յետոյ. «Այս ամենայն յայտնի են քեզ յերգս «վիպասանացն» (Գր. Բ. Գլ. ԽԹ)։ Իսկ առաջին գրքումը, Գլ. Լ. Տիգրան Առաջինի բերած Մարաց գաղթականութեան բնակութիւնը նկարագրելուց յետոյ՝ ասում է. «Յայտնեն զայս ճշմարտապէս և «Թուելեացն երգք», զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողմանն գինաւէտ գաւառին Գողթան. յորս շարին բանք երգոցն «զԱրտաշէսէ և զորդւոց նորա....» Այս խօսքերը, կարծեմ, բաւական են հաստատելու համար թէ «Թուելեաց» երգերը միևնոյն վիպասանների երգերն են, որ մեր թագաւորների ու իշխանների գործքերը «թուում, համարում» էին իրանց երգերի մէջ։

գերը, որ, ինչպէս ասացինք, քրիստոնէութեան ազդեցութեան տակ աւելի աճում ու զարգանում են, ցոյց են տալիս նոյնպէս՝ թէ բանաստեղծութիւնը անգրաւոր պատմութիւնից առաջ է անց կենում, և թէ նրա իդէալներն են, որ ժողովրդի առաջ ճանապարհ են բաց անում: Այս պատճառով շատ հարկաւոր է իմանալ ժողովրդեան իդէալները և նրանց պատմական զարգացումը: Այս պատճառով՝ նոյնպէս կարելի է համարձակ ասել, թէ շատ ու շատ առաջ կը գնայ այն ազգը, որի սկզբնական (քիչ թէ շատ անշարժ) բանաստեղծութեան մէջ էլ իդէալները յաւիտեան մի և նոյնը չեն մընում, այլ անց են կենում վերևը յիշուած աստիճաններից: Մենք տեսանք, որ մեր հին բանաստեղծութիւնը այս յաջող հանգամանքի մէջ էր գտնվում, բայց Հայաստանի քաղաքական կեանքը, արտաքին թշնամիների շարունակ բռնակալութիւնների տակ ճնշուելով, բանաստեղծութիւնը, այս քնքոյշ ծաղիկը, որ կարող է աճել ու զարգանալ միայն ազատութեան հողի վրայ, չունենալով իր հարկաւոր պայմանները, հետզհետէ թառամում ու թօշնում է Հայոց մէջ և իր բնական զարգացումը ընդհատւում:

Թէպէտ և այս պատմական երգերը կրօնական երգերի վրայ հիմնուած են և նրանց հետ կապ ունին, բայց դիւցազնական ժամանակներումը արդէն քաղաքական երգերը առանձին ճանապարհով են սկսում զարգանալ, և կրօնականները առանձին: Այս կրօնական երգերի նշանակութիւնը և ինչ հանգամանքների մէջ երգուածները իմանալու համար՝ հարկ է Հայոց հին կրօնին դիմել:

Չնայելով որ հնութեան յիշատակարանները ոչինչ որոշ յիշատակութիւն չեն անում Հայաստանի նախնական կրօնի վրայ, այսու ամենայնիւ մեզանում ընդունված է առ հասարակ՝ որ մեր նախնի նահապետները Թորգոմի աւանդած կրօնին հետևեցան ու ճշմարիտ Աստծուն երկրպագութիւն արին: Յետոյ ինչպէս բոլոր աշխարքի մէջ, այնպէս էլ Հայաստանում, աստուածպաշտութիւնը կամաց կամաց խանգարուեցաւ և ուրիշ զանազան կրօնների տեղիք տուաւ: Այս տեղ արևապաշտութիւնը իր պաշտօնը հաստատեց, մոգութիւնը զրադաշտական կարծիքները տարածեց, Յունաստանը իր աստուածները բերաւ. մինչև անգամ Հնդկաստանը Հայաստանի վրայ կրօնական ազդեցութիւն ունեցաւ: Արդէն հաւաստի գիտենք, որ, Արշակունի թագաւորների օրովը, Հայերը իրանց դրացի Պարթևաց

կրօնքն էին հետևում [1]), և մոգութեան կամ, զրադաշտական վարդապետութեան հետ, յունական գիւտաբանութիւնն էլ էին ընդունում, ինչպէս նաև ուրիշ շատ աւելորդապաշտութիւններ, որ հետզհետէ մտան ժողովրդի մէջ: Սրանից երևում է որ հին Հայոց կրօնը բազմաստուածութիւնից ու միաստուածութիւնից ձևացած մի խառնուրդ էր, որ թէ Արևելքի ու թէ Արևմտքի կրօններից կազմուեցաւ: Այսպէս ահա պատմութիւնը որոշ ասում է՝ թէ Հայաստանի մեհեանները փոքր Ասիայից, Միջագետքից և Յունաստանից բերուած աստուածների արձաններովը լիքն էին, որոնց առաջ առաջ կենդանիներ էին զոհում Հայերը: Նայց այս բոլորովին հակառակ էր զրադաշտական վարդապետութեանը, որ Մովսիսական օրէնքի հետ շատ նմանութիւններ ունէր [2]) և միայն մէկ աստուածութիւն էր ճանաչում, այն է «Անսահման ժամանակը», որին անուանում էին Զրուան, ըստ Յունաց Կրոնոս, ըստ Լատինացոց Սատուրնոս: Յայտնի է որ, քրիստոնէութեան հաստատուելովը, Մեհենական գրքերը կորան ու ոչնչացան, որոնք եթէ մեր ձեռքը հասած լինէին, թանկագին տեղեկութիւններ կարող էին տալ մեզ անշուշտ Հայոց հին կրօնի և, մանաւորապէս, մոգութեան վրայ, որ, մեր քրիստոնեայ պատմագիրներից մէկին վկայութեանը նայելով, Հայերը երբէք ընդունած չեն [3]): Նայց եթէ մեր հին լեզուին դիմենք, մի քանի բառեր կը գտնենք, որոնք հին Պարսից լեզուին են պատկանում ու գրեթէ բոլոր զրադաշտական վարդապետութեան բովանդակութիւնը բացատրում են: Եւ յիրաւի, Արամազդ (հին պարսկ. «Աուրոմազդա», որից կազմվում է «Աստուած» բառը [4]), Հրեշտակ (նոր պարսկ. «Ֆիրիշթէ»), Դև (հին պարսկ. Դաևա), Դժոխք (հին պարսկ. Դուզախ») անունները իրանց նախնական նշանակու-

---

1) Ստրաբոն, Գիր. ԺԱ. Գլ. ԺԴ:

2) Renan, Hist, du peuple d' Israël.

3) Ղազար Փարպ. եր. 142:

4) Ինչպէս որ Յունաց «Զևս» կամ «Դևս» անունից (որի սեռականն է «Դիոս»), ածանցուած է Լատինացոց Deus—Աստուած բառը, այնպէս էլ շատերը Արամազդից հանում են Հայոց Աստուած բառը: Օրմուզդ կամ Արամազդ կազմվում է «եզդ» կամ «ազդ» արմատից, որ նշանակում է «պաշտել», և որից՝մ տառի աւելանալովը կազմվում է Քաղդէացոց «մազդ» ընդունելութիւնը, որ նշանակում է «եզդին» կամ աստծուն «պաշտող»: Միւս նոյն «ազդ»

թիւնակը պէտք է պարսկերէնից առնուած և յետոյ քրիստոնէական գաղափարների հետ միաւորուած լինի ¹)։

Աւրեմն Հայոց հին կրօնը երեք գլխաւոր տարրերից է բաղկանում, որոնք կատարելապէս ծանօթ չեն մեզ և որոշ կերպով բաժանուած չեն. պարսկական, յունական և բուն հայկական աստուածներ ²)։ Թէեւ հայկական դիցաբանութիւնը բազմակողմանի ու հարուստ է, բայց և այնպէս նրա մէջ յունական աստուածների նման նշանաւոր անձնաւորութիւններ չեն երեւում։ Աստուածների վրայ յօրինուած առասպելներից ժողովրդական երեւակայութիւնը չյաջողեցաւ ստեղծել Զեւսի, Պոսիդոնի, Արէսի նման կատարեալ պատկերներ։ Այպիսի որոշ բնաւորութիւններ չունին հին հայկական աստուածները. մենք ամենեւին տեղեկութիւն չունինք նրանց քաջագործութիւնների ու ճանապարհորդութիւնների վրայ, որոնք Յունաց մէջ ամբողջ քերթուածների նիւթ են տուել։ Մենք գիտենք միայն որ Հայերը բնութեան ոյժերին ու երեւոյթներին անձնաւորութիւններ տուին, և այս տեսակ աստուածներից է կազմւում, գլխաւորապէս, հեթանոս Հայաստանի բուն կրօնը։

---

միավանկի կրկնուելովը կազմւում է «Աստուած» բառը, որ այս կերպով նշանակում է «աստուածների աստուած; ծ — տառը առաջին վանկի մէջ «ստի» փոխուեցաւ։ Աստուած բառի նշանակութիւնը—Աստուածների աստուած բոլորովին համաձայն է մոգերի վարդապետութեանը։

¹) Հ. Յովս. Կաթըրճեան, Ընդիր ժամանակ, եր. 13։

²) Որքան մեզ յայտնի է, Հայոց հին կրօնի քիչ շատ ամբողջ պատկերը առաջին անգամ ներկայացրեց գիտնական աշխարհքին, այս դարու սկիզբները, Շահան Ջրպետը, որի տեղեկութիւններից երբեմն օգուտ քաղեցինք մեր աշխատութեան մէջ։ Հայ ուսումնականի այս աշխատութիւնը ֆրանսերէնից թարգմանուեցաւ հայերէն եւ տպուեցաւ Մեղու Հայ. լրագրի 1860 տարուայ թերթերում։—1864 ին Պ. Մկրտիչ Էմին հրատարակեց իր ռուսերէն աշխատութիւնը այս վերնագրով. «Очеркъ религіи языческихъ Армянъ»: Ճշմարտութիւնը պահանջում է ասել, որ Պ. Էմինը շատ քիչ բանէ առել իրանից, որ մինչեւ իր ժամանակը յայտնի չլինէր Շ. Ջրպետի եւ ուրիշների գրուածներից այս նիւթի վրայ։ Բայց զարմանալին այն է, որ ինքը Պ. Էմինը ոչինչ յիշատակութիւն չէ անում Շ. Ջրպետի աշխատութեան վրայ. ընդհակառակն նա երբեմն այնպիսի գիւտեր է սեպհականում իրան, որ իրանից առաջ Շ. Ջրպետի աշխատութեան մէջ ենք գտնում։

Հայոց ամենակարող աստուածն էր Արամազդ, ըստ Պարսից Որմուզդ, ըստ Յունաց Զևս կամ Դիոս: Հայերը նրան անուանում էին «Առատապարգև տիեզերաց, արարիչ երկնի և երկրի»: Արամազդը համարվում էր գլուխ ազգի մարդկան և հայր ամենայն աստուածների և դիցազուններին: Նրա անունով այլ և այլ տաճարներ էին շինուել ու բագիններ և արձաններ կանգնուել Անիում, Անի և Բագարան ¹) քաղաքներում, որ յետոյ մեր սուրբ Լուսաւորիչը քանդեց ու բոլոր հարստութիւնները եկեղեցիներին ընծայեց: Ագաթանգեղոսի պատմածներին նայելով՝ Արամազդի երկրորդական մականունները էին «Հիւրընկալ» և «վանատուր», և այս համաձայն է Խորենացու տուած վկայութեանը, որ ասում է՝ թէ Անտիոքոս մի մեհեան շինեց «Օտարասէր» Արամազդի անունով ²):

Մեր Հայոց կարծիքով աստուածների հօր Արամազդի կողմից ուղարկուած մի անմարմին ոգի կար երկրիս վերայ, որի պարտաւորութիւնն էր մարդկերանց վերայ հսկել, և նրանց բարի ու չար գործերը «Կենաց Գրքի» մէջ գրել: Այս ոգին հասարակ անունով կոչվում էր «Գրող», իսկ քուրմերը «Արամազդի քարտուղար» էին անուանում նրան և հաւատացնում էին ժողովրդին, թէ, մարդկերանց մեռնելուց յետոյ, հոգիները առնում տանում է Արամազդի ատեանին, որոնց դատաստանը, Կենաց Գրքի մէջ գրուածներին նայելով կատարվում է: Մի գիւղում, Ալաշկերտի մօտ, Գրող աստծու անունին նուիրուած մատուռ կար, որի քուրմերը, Գրողին պատարագներ հարցնելով, երազների մեկնութիւններ էին տալի ու մարդկերանց ապագան գուշակում: Այս ազգային աստծու ազդեցութիւնը մեծ էր Հայոց վրայ, իբրև երկիւղի և յուսոյ առարկայ ժամանակայն. Նրա ազդեցութեան հետքերը մինչև այժմ էլ լեզուի մէջ մնացին: Մէկին անիծելիս՝ սովորական բան է ասելը. «Գրողը տանի քեզ, Գրողից սև խաբարդ լսեմ» այսինքն (մահուանդ լուրը առնեմ); կամ մի դժբաղդութիւն պատահելիս՝ այս խօսքերը կրկնելը թէ՝ «Այս էր իմ ճակատի գիրը; ճակատիս՝ էսպէս էր գրուած»:

Արամազդի որդի և ընդհանուր հրոյ նշանակ էր համարվում Միհրը, ըստ Ասորեստանցոց Միթրա, որի պաշտօնը Պարսկա-

¹) Երուանդաշատից մօտ 40 ասպարէզի չափ դէպ 'ի հիւսիս, Ախուրեան գետի վերայ; Բագարան այսինքն «կազմութիւն բագնաց»: Խոր. Գիրք Բ. Գլ. Խ:

²) Տես Մասն Ա. եր. 240:

տանից էր եկել Հայաստան: Միհրը առաջնորդում էր քաջերին պատերազմի ժամանակ և յաղթութեան պսակը նրանց շնորհում. այս պատճառով նրա անունով երդւում էին ուխտում ու հաշտութեան և բարեկամական դաշինքներ կապում: Այս աստուածութեան անունով զանազան տաճարներ կային Արամաւիր, Բագարան քաղաքներում և Բագաառինջ գիւղում (Դերջան գաւառի մէջ): Այս վերջինը անուանւում էր «Մրհակական մեհեան», որ յետոյ Լուսաւորիչը քանդեց ու բոլոր գանձերը աղքատներին բաժնեց [1]): Երևելի էին նոյնպէս փայտակարանի բագինները, որ, մէկ քարի մէջ փորուած լինելով, «Եօթնփորակեան» բագինք էին ասվում: Կարծիք կայ թէ առաջին տաճարը, որ շինուեցաւ Հայաստանում՝ այս աստուածութեան ընծայուեցաւ, որովհետև տաճարը, որ կռապաշտութեան ժամանակ «մեհեան» կամ «միհրեան» էր ասվում, Միհրից է ածանցուած. ինչպէս որ Հայոց ամիսներից մինը, նոյնպէս, Միհրի անունով, «Մեհեկան» կոչուեցաւ: Կան դարձեալ շատ յատուկ անուններ, որոնք Միհր բառից են կազմուել. այսպէս են Միհրան, Միհրդատ, Միհրներսէհ, Մեհրուժան, և այլն, որ հին ժամանակ Հայերն ու Պարսիկները հաւասարապէս գործ էին ածում:

Հայոց հեթանոսական կրօնը ընդունում էր այլ և այլ տօներ, որ առանձին ծէսերով ու երգերով էին կատարվում: Արամազդ տօնը մեծ հանդէսով էին կատարում Հայերը տարին մէկ անգամ, նաւասարդի առաջին օրը, փայտակարանում, ուր ամէն կողմից ժողովւում էին աստուածների հօրը երկրպագութիւն մատուցանելու: Այն օրը ամէն տեսակ սպիտակ կենդանիներ էին զոհում նրան, ինչպէս. ուլ, նոխազ, ձի ու ջորի, և նրանց արիւնը ոսկի ու արծաթի ամանների մէջ ընդունում [2]): Արամազդի պաշտօնը, ինչպէս երևում է, արեգակի ու կրակի պաշտօնի հետ էլ էր միաւորվում, ինչպէս որ Մովսէս Խորենացին վկայում է. պատմագիրը ասում է, թէ Արտաշիր Պարսից թագաւորը, Հայաստան գալով, հրամայում է որ Բագարանի «որմզդական հուրը» միշտ անշէջ պահուի [3]):

---

1) Ագաթ. ՃԱ:

2) Ագաթ. Ա:

3) Նոյն իսկ «Որմուզդ» կամ ինչպէս որ Վանի սեպաձեւ արձանագրութիւններում կարդացվում է «Հուրմուզդ» բառի առաջի վանկը—«հուր», որ ինչպէս պարսկ. նոյնպէս եւ հայ. նշանակում է «կրակ», ցոյց է տալիս, որ կրակի պաշտօնը օտար չէր այս աստծուն:

Աւելի ընդհանուր և շքեղ կերպով էր կատարվում Միհրի տօնը: Գարնան սկզբում նուիրական կրակ էին անում մի փայտակոյտ վառելով հրապարակի մէջ ու երկնքի օգնութիւնը կարդալով: Մի կանդեղ, այս կրակի վրայ վառած, պահվում էր ամբողջ տարին բոլոր մեհեանների մէջ: Այս սովորութիւնը, որ խիստ հին ժամանակներից Պարսկաստանից անց էր կացել Հայաստան, այնքան տարածուած էր, որ նրա հետքերը մինչև այժմ երևում են մեր ժողովրդների մէջ և մանաւանդ Հայաստանի գիւղերումը, ուր 'ի հարկէ աւելի երկար պիտի տևէին հին սովորութիւնները: Նրանք կատարում են այս արարողութիւնը Տեառնընդառաջի նախատօնակին, տեղ տեղ էլ տօնի օրը: Եթէ նոյն օրուայ եղանակը արգելք լինի այս արարողութեանց բաց երկնքի տակ կատարուելուն, այն ժամանակ եկեղեցու մէջ են կատարում, մի և նոյն սովորական արարողութիւնները պահելով, միայն փայտակոյտի տեղ՝ մի մանղալի մէջ դիւրավառ նիւթերից կրակ են վառում: Իսկ եթէ օրը լաւ լինի, եկեղեցու բակումը կամ մի ուրիշ ընդարձակ տեղ փայտակոյտ են պատրաստում ձիթենու և ուրիշ ծառերի ճիւղերից և զանազան տեսակ ծաղիկներից, որոնց վրայ աւելացնում են փոքր ինչ ցորեն, մի բուռը խունկ, նոյնչափ էլ ոչխարի բուրդ: Ժամերգութիւնից յետոյ, եկեղեցականք և աշխարհականք, ձեռքերը անվառ մոմեր բռնած, գնում են, թափօրով, փայտակոյտի պատրաստուած տեղը: Մի քանի սովորական աղօթքներից յետոյ, քահանաները վառում են այն տարուայ նորապսակ անձինքների մոմերը, որոնք ամէն կողմից վառում են փայտակոյտը և յետոյ կարգով բոլոր ներկայ գտնուողների մոմերը: Այստեղ քահանայք և ժողովրդականք սկսում են դարձեալ երգել ու աղօթքներ ասել, մինչև որ բոլորը այրվում՝ մոխիր է դառնում: Այն ժամանակ ժողովուրդը շրջապատելով փայտակոյտին մօտ է գնում, և ամէն մարդ, մի խանձողի կտոր կամ մի քիչ մոխիր ժողովելով, տանում է տուն և մեծ հաւատով ու երկիւղածութեամբ պահում:

Թէև և Պարսիկները ու Հայերը հաւատարապէս էին պաշտում կրակը Միհրի անունով, բայց նրանց մէջ մեծ զանազանութիւն կար: Հայոց սրբազան կրակը էր մի անտեսանելի հուր, որ տարին մէկ անգամ ներկայացնում էին խարոյկի ձևով; իսկ Պարսից կրակը նիւթական էր և միշտ անշէջ պահվում ու պաշտվում էր բոլոր մեհեանների մէջ: Այս պատճառով էլ Հայերը Պարսիկներին

անուանում էին «կրակապաշտ», այսինքն նիւթական հուրը պաշտող, որովհետև կրակ բառը մեզանում ստուգաբանվում է «ծախիչ նիւթ»: Սակայն Հայերն էլ ունէին իրանց նիւթական ու տեսանելի աստուածը — Արեգակը, որի պաշտօնը աւելի ընդհանուր և գուցէ առաջինն էր որ հաստատուեցաւ Հայաստանում: Երկրի ամէն կողմերը կային նրա մեհեանները ու բագինները, և ամէն տեղ պաշտում էին նրան յետագայ անուններով. Արև, Արեգ, Արեգակ կամ Արէս: Հայոց ամիսներից մէկը այս աստուածութեան անունով «Արեգ» ասուեցաւ; նոյնպէս Հայաստանի գաւառներից մինը՝ Երասխի հիւսիսակողմը՝ կոչվում է «Արևիք», այսինքն արևի կուսակիցներ: Քրիստոնէութեան չորրորդ դարումը՝ երբ Լուսաւորիչը Աստուածի լոյսը բերաւ Հայաստան, ընդհանուր հեթանոսութեան հետ աշխատեցաւ արևապաշտութիւնն էլ անհետացնել, բայց ոչ նրա աշխատանքը, ոչ էլ նրա յաջորդների քարոզութիւնները կատարելապէս պսակուեցան. Արևապաշտները, որ ընդհանուր անունով «Արևորդիք» էին կոչվում, երկար ժամանակ հաստատ մնացին իրանց կրօնական կարծիքների մէջ, մինչև անգամ Լենկ-Թիմուրի կատաղութիւնը չկարողացաւ ջնջել նրանց, և այսօր էլ նրանց սերունդների մի փոքրիկ մասը կենում է Տիգրիս և Եփրատ գետերի ափերումը: Սրանից երևում է որ արևապաշտութիւնը շատ արմատացած էր Հայոց մէջ. այնպէս որ նրա ազդեցութիւնը քրիստոնէական գրականութեան և լեզուի վրայ էլ մնաց: Մեր աղօթքների ու շարականների մէջ շատ անգամ յիշվում է արեգակի անունը, իբրև բարի Աստծու և աշխարհի փրկչի նշանակ: Յովհ. Մ՝ըկրտչի շարականը սկսվում է այս խօսքերով. «Արեգական արդարութեան ծագման Արուսեակ առաւօտու նախնթաց ճանապարհին Սրբւոյն Աստուծոյ անօրէնութեամբ սուրբ Յովհաննէս», և այլն: Ինչպէս հին ժամանակ, այնպէս էլ այժմ, սովորական բան է մեզանում արևով երդուել (արևուդ մեռնիմ, իմ որդու արևը վկայ) և դէպ 'ի արևելք դարձած աղօթք անել:

Արևի հետ Հայերը Լուսնին էլ երկրպագութիւն էին տալիս Աստղիկի անունով, որ համապատասխանում է փիւնիկեցոց ու Սիդոնացոց Աստարտային: Տարօն գաւառումը մի մեհեան կար Աստղիկին ընծայուած, որ ասվում էր «Սենեակ Վահագնի»: Սրանից երևում է, թէ այս աստուածուհին Վահագնի կին էր ըստ դիցաբանութեան: Աստղիկի պաշտօնն էր կանանց վրայ հոգացողութիւն

ունենալ, իրանց ծննդեան ժամանակ, և կայսերքին ու առ հասարակ ամուսիններին դժբաղդութիւնից պահպանել: Շատերը Աստղիկի պաշտօնը Անահիտի հետ են խառնում, և այս աստուծու անունով կատարուած արարողութիւնները Աստղիկին են ընծայում:

Անահիտը, ըստ Յունաց Արտեմիս, ըստ Լատինացոց Դիանա, Հայոց հռչակաւոր աստուածութիւններից մինն էր, իբրև զօրութեան, իմաստութեան և նախատեսութեան դիցուհի, բարերար մարդկութեան և պահպան ու խնամակալ Թագաւորութեան և ազգի: Նորա բազմաթիւ մեհեանները գտնվում էին Երեզ, Աշտիշատ, Անի, Բագաւան և ուրիշ տեղեր: Հայերը ոսկի արձան էին կանգնել նրան Երեզի մեհեանումը և «ոսկիամայր», «ոսկիածին» ու «ոսկիահատ» մականունները տուել: Տարին մէկ անգամ մեծ հանդէսով էին կատարում Անահիտի տօնը, ամառ ժամանակ, և նոյն օրը, թռչուններից, աղաւնին էին նուիրում նրան և, ծաղիկներից, վարդը, որով պսակում էին դիցուհու ոսկի արձանը, քաղաքի հրապարակները ու փողոցները և տների ճակատները. այս պատճառով այս հանդէսի օրը կոչվում էր «Վարդավառ»: Հայաստանի քրիստոնէութեան առաջին դարումը Անահիտի մեհեանները կործանուեցան, տօնն էլ Քրիստոսի այլակերպութեան տօնին փոխուեցաւ; բայց Վարդավառի տօնը և աղաւնի թռցնելու ու մէկմէկու վրայ ջուր սրսկելու սովորութիւնները մինչև այսօր մնացին մեր ժողովրդների մէջ: Հայաստանի մէջ տեղ տեղ մի ուրիշ սովորութիւն էլ կայ, որ Անահիտի տօնի յիշատակը միտներս է բերում: Վարդավառի օրը երիտասարդք ու աղջիկունք բազմութեամբ դաշտն են գնում, զանազան ծաղիկներ ժողովում ու փոխոխակի երգեր են ասում: Ո՞վ կարող է ասել թէ այս երգերը հեթանոսական կարծիքների հետքեր չեն բովանդակում:

Ահա սրանք են հին Հայաստանի գլխաւոր ու առաջին կարգի աստուածութիւնները, որոնց պաշտօնը իրանց տօներովը՝ ընդհանուր դարձած էր Հայոց համար: Բայց այս աստուածների հետ Հայերը օտարազգի գաղթականների աստուածներին էլ պաշտօն էին մատուցանում; գաղթականներն էլ իրանց կողմից շուտով միանում էին բուն երկրացիների հետ, նրանց վարք ու բարքին ընտանենում էին և նրանց քաղաքական ու կրօնական սովորութիւնները ընդունում: Փիւնիկեցի գաղթականները, որ Տիգրան Երկրորդ գերի բերաւ Հայաստան, իրանց Արամազդ Ամոնին երկրպագութիւն էին անում. Բագաւանում մի բագին կար այս աստուածութեան համար,

որ կոչւում էր Արմենոր կամ առատութեան աստուած։ Հայոց «ամանորաբեր» բառը, որ այս օտար աստուածութեան մականունից է ածանցուած և նշանակում է «նոր տարի ու բերք բերող», ցոյց է տալիս որ, այս աստծու տօնը Հայոց տարեգլխին էր կատարվում։ Արաբացի և ասորի գաղթականները պաշտում էին իրանց Նաբոգ, Բէլ, Բարշամ, Բաթնիքաղ և Թարաթա աստուածները, որոնց արձանները Աբգար Մծբինից Եդեսիա փոխադրեց [1])։ Արտաշէս Առաջին և նրա որդին ու յաջորդը՝ Տիգրան Երկրորդ, յոյն գաղթականների հետ, Յունաստանի գլխաւոր աստուածներն էլ յափշտակեցին բերին Հայաստան, որոնց արձանները զանազան մեհեանների մէջ դրուեցան այն աստուածների կողքին, որոնց հետ աւելի նմանութիւն ունէին։ Արտեմիսի մէկ արձանը դրուեցաւ Երէզի մեհեանի մէջ, Անահիտի կողքին, և միւսը Ապողոնի հետ, Արամազդի և Միհրի մօտ, Արմաւիրի մեհեանի մէջ; Աթենասինը, Արամազդի մօտ, Անիի մեհեանի մէջ; Հեփեստոսինը, Բագառինջի մեհեանի մէջ, Ափրոդիտինը, Աստղիկի հետ, Աշտիշատի մեհեանի մէջ, և Հերակլէսինը, Վահագնի հետ, Վահեվահեան մեհեանի մէջ [2])

Քանի որ ժողովուրդը չէր մտածել մեհեաններ շինել, այս բոլոր աստուածներին երկրպագութիւն և զոհեր մատուցանելու տեղերը անտառներն ու լեռներն էին։ Արդէն գիտենք, թէ Սօսեաց անտառը, որ Արմաւիրի մօտերն էր, խիստ հին ժամանակ մի սրբազան տեղ էր համարվում։ Քուրմերը, այս ծառերի տերևների սօսափիւնին նայելով, երջանիկ կամ անյաջող գուշակութիւններ էին անում։ Պատմութիւնը ասում է, թէ, Արայի որդին, Անուշաւանը, Սօսեաց անտառի պաշտամանը նուիրուած լինելուն, Սօս կոչուեցաւ։ Բարձր տեղերը ու լեռները նոյնպէս նուիրական էին համարվում։ Արեգակին միշտ սարերի գլխին էին երկրպագութիւն անում, ինչպէս որ այսօր էլ անում են Արևորդիքը; իսկ Լուսնին Մանի կամ Սեպուհ լերան գլխին։ Ուխտագնացութեան սովորութիւնն էլ շատ վաղ ժամանակ կար Հայաստանում, ամէն տեղ հիւրանոցներ կային ուխտաւորների ընդունելութեան համար, ուր բնակում էին քրմապետները ու քրմերը։ Այս հիւրանոցները կոչվում էին «Վան» կամ «Վանք», որ նշանակում է «իջևան» կամ «օթևան»։ Իւրա-

---

1) Խոր. Գր. Բ. Գլ. ԻԷ։
2) Խոր. Գր. Բ. Գլ. ԺԴ. ԺԴ։

քանդէր վանքի մէջ մասնաւոր աստուածութիւններ կային, որոնք ասւում էին «վանատուր» կամ «վանատ», այսինքն հիւրընկալութեան աստուած»։ «Քրիստոնէութիւնը հաստատուելուց յետոյ, այս հիւրանոցները, իրանց նախնական վանք անուան հետ, ուխտաւորների ու ճանապարհորդների ընդունելու սովորութիւնն էլ պահեցին։

Հայոց հին կրօնի վրայ մինչև հիմայ ասածներիցս կարելի էր նշմարել, որ մեր դիտաւորութիւնը չէր հեթանոս Հայաստանի կրօնի ամբողջ պատկերը ներկայացնել. այդ մեր նպատակից դուրս է։ Ընդհակառակն, հարևանցի խօսելով հին կրօնի գլխաւոր տարրերի ու աստուածութիւնների վրայ, մենք աւելի աշխատեցինք ցոյց տալ այն ազդեցութեան հետքերը, որ հեթանոսական կրօնը ունեցել է քրիստոնէական գրականութեան, լեզուի ու կեանքի վրայ, որ բոլորովին անտեղի չերևայ մեր առաջ բերելու կարծիքը, այսինքն, թէ այն մնացորդների հետ կրօնական երգերի հետքերը էլ մնացած լինին մեր մէջ։ Եւ ճշմարիտ, աչքի առաջև ունենալով այն սովորութիւնները, որ հին հեթանոսական սովորութիւններից մինչև այժմ մնացել են մեր ժողովրդների մէջ, և որոնք կրօնական երգերի մէջ են գտնում իրանց բացատրութիւնը, յիշելով դարձեալ հին կրօնի ազդեցութիւնը քրիստոնեայ Հայոց գրականութեան և հին ու նոր լեզուների վրայ, կարելի է համարձակ ասել, թէ կրօնական երգերը, քրիստոնէութեան դարերումն էլ, երկար ժամանակ մնացին ու երգուեցան ժողովրդի մէջ, և ո՛ գիտէ, թերևս նրանց մնացորդները տեղ տեղ մինչև այժմ էլ կարելի է գտնել։ Տարակոյս չկայ, որ այս երգերը, եթէ յիրաւի այժմ կան, դիւրին կերպով կարելի էր որոշել յետին ժամանակների երգերից, եթէ միայն մի հնասէր անձ, Եւրոպայի գիտնականների օրինակին հետևելով, յանձնառու լինէր ազգային բերանացի աւանդութիւնները ժողովելու։ Որովհետև յայտնի է, թէ ինչպէս որ ժողովրդի մէջ մնացած հեթանոսական սովորութիւնները հետ զհետէ փոփոխութիւններ կրած ու կրճատուած են, այնպէս էլ այս կրօնական երգերը իրանց սկզբնական կերպարանքը կորցնում ու խանգարւում են։ Հեթանոսութիւնը այլ և այլ դարերի ընթացքում մեծամեծ զոհեր է արել քրիստոնէութեան. հին սովորութիւնները ու հասկացողութիւնները նոր սովորութիւնների ու հասկացողութիւնների հետ փոխուեցան ու խառնուեցան,

և այս երկու կրօնների խառնուրդը, ինչպէս տեսանք, գրականութեան վրայ էլ ազդեցութիւն ունեցաւ։ Բայց կրօնական երգերի բուն նշանակութիւնը քանի գնացել՝ կորչել է ժողովրդի համար, որ սովորութիւն է արել երգել նրանց, իբրև հնութիւնից մնացած ժառանգութիւններ, առանց հասկանալու նրանց մէջ յիշատակուած ծէսերի նշանակութիւնը։ Ուրեմն և այս երգերի նիւթը չէ կարող փոփոխութիւններ կրել, որովհետև, քրիստոնէութեան հաստատուելովը, խափանուեցաւ ու անհետացաւ հեթանոսական կրօնը, որից ծագել է սկզբնական բանաստեղծութիւնը։ Եկեղեցու հովիւները, աչքի առաջև ունենալով ժողովրդի բարոյական կողմը, իրանց բոլոր ջանք ու ճիգը թափել են ճշմարիտ կրօնը հաստատելու. ուստի և ամէն հնարք գործ են դրել արմատախիլ անել ժողովրդի միջից բոլոր այն բաները, որ կարող էին նրա միտը բերել հեթանոսութիւնը։

Արդէն յայտնի է, որ այս կրօնական երգերը, որոնց մէջ ժողովուրդը օրհնում և փառաբանում է այն գերագոյն էակներին, որ իր կարծիքով ամէն բանի սկիզբը ու աշխարհիս բոլոր լաւութիւնների պատճառն են,—ժամանակով ամէնից հին երգերն են։ Բայց մի և նոյն ժամանակ պէտք է իմանալ, որ աստուածների առիթով ստեղծուած գովաբանական երգերը պատկանում են քնարական բանաստեղծութեան [1]), ուրեմն և քնարերգութիւնը բանաստեղծութեան անդրանիկ ծաղիկն է։ Արդարև, մարդուս առաջին աղաղակը, որի մէջ երևում է արդէն նրա ինքնաճանաչութիւնը, քնարերգական է։ Բոլոր ազգերի մէջ առաջին ստանաւոր երգերը քնարական են, նրանցմով է սկսուել, թէ ասիական ժողովրդների, թէ հին՝ կլասիկական ազգերի և թէ նոր՝ ռոմանտիկական ազգերի կեանքը։ Ինչ որ մարդկային հոգուն սեպհական է՝ կրկնվում է իւրաքանչիւր ազգի մէջ, եթէ միայն մի ազգ իր կեանքը, երեխայական ժամանակներից սկսած, ազատ ու բնական ճանապարհով է անցկացնում և իր հանճարի բոլոր արդիւնքները ամբողջապէս պահպանում։ Ժողովրդական հետազօտութիւնները ցոյց են տալիս նոյնպէս, որ մար-

---

[1]) Poésie lyrique.—Քնարական են ասվում այս երգերը, որովհետև Յոյները սրտի խորքից բղխած ձայները քնարի վրայ էին ածում։

գուս մէջ ամեն ընդունակութիւններից առաջ զարգանում ու կատարելագործվում է զգացմունքը, որ բանաստեղծութեան հիմնական տարրքն էր։ Իմացական կարողութիւնը, աշխարհքիս մէջ եղած բազմաթիւ ու զանազան տեսակ առարկաներից յափշտակուելով, շուտով չէ դադարում այն առարկաներից մէկի կամ միւսի վրայ, արտաքին տեսակ տեսակ երևոյթները շուտով ներքին միաւորութեան չէ բերում, որ մի կանոնաւոր ու հիմնաւոր հայեացք կազմէ բնութեան վրայ; մինչդեռ իւրաքանչիւր մարդ իր կեանքի մէջ գէթ մի քանի րոպէ ունի սրտի զգացմունքները բացատրելու, և այս րոպէները դրեթէ միշտ ուրախացնում են իր կեանքի առաջին տարիները։ Այս էլ չպէտք է մոռանալ, որ իւրաքանչիւր մարդկային զգացմունք իր ելևէջները ունի, և այս զգացմունքը, յանկարծ տիրապետելով մարդուս հոգուն վրայ, ազդելով նրա սրտի վրայ, վառելով նրա երևակայութիւնը, միշտ ու ամեն տեղ արտայայտվում է քնարական երգերով։

Մեր ասածները քնարերգական բանաստեղծութեան նախնական հնութեան վրայ, ամենևին չպէտք է հակառակ երևան այն խօսքերին, որ վիպասանական բանաստեղծութեան առաջնութեան վրայ ասացինք։ Ընդունելով որ մարդուս առաջին աղաղակը ամեն տեղ ու ամեն ժամանակ քնարական է, և այս մասին չէ կարելի չհամաձայնել մի իմաստուն քննադատի հետևեալ խօսքերի հետ, թէ «քնարերգութիւնը է մայր ամեն տեսակ բանաստեղծութեան, մի կայծ, որ, Պրոմեթէոսի անպատկեր կրակի նման, կեանք է տալի բոլոր պատկերներին»; բայց խնդիրը պատմական կողմից քննելով, չէ կարելի ընդունել, թէ քնարերգութիւնը բանաստեղծութեան միւս բոլոր տեսակներից առաջ ծաղկում լինի։ Այս բանի մէջ օրինակ կարող ենք առնել հին Յոյներին, որովհետև ոչ մէկ ազգի մէջ գեղարուեստները այնպէս ազատ ու կանոնաւոր եղանակով չեն զարգացել, ինչպէս Յունաց մէջ, որոնց հարուստ կեանքը գլխաւորապէս գեղարուեստների մէջ գտաւ իր բացատրութիւնը։ Այս պատճառով յունական գեղարուեստների [1]) զարգացման եղանակը, մեզ համար պէտք է մեծ նշանակութիւն ու հեղինակութիւն [2]) ունենայ։ Հելլենական

---

[1]) Les beaux arts, художества, искуства.
[2]) L'autorité, авторитетъ, авторство.

կեանքի մէջ վէպը ամենից առաջ զարգացաւ, ինչպէս որ դրամատիկական բանաստեղծութիւնից առաջ, երեւան եկաւ քնարերգութիւնը: Այս ընթացքը բանաստեղծական զարգացման մէջ շատ հասկանալի է. իւրաքանչիւր ժողովուրդ երեխայութեան ժամանակ՝ բնութեան ու կեանքի վրայ միշտ աւելի արտաքին կերպով է մտիկ տալիս: Միայն այն ժամանակ, երբ ժողովուրդը երեխայական գրութիւնից ազատվում է, երբ նրա մտքութիւնը քանդվում է, երբ բազմութիւնից բաժանվում դուրս են գալիս մասնաւոր անհատներ, որ իրանց հասկացողութիւնով ընդհանուրից բարձր են և իրանց սեպհական զգացմունքները ու տպաւորութիւնները բացատրում են,— ծագում ու զարգանում է քնարական բանաստեղծութիւնը: Ուրեմն վէպը մնում դարձեալ բանաստեղծութեան առջինեկ ծնունդը: Բայց մի և նոյն ժամանակ այն կարծիքը, թէ քնարերգութիւնը բանաստեղծութեան հիմնաւոր տարրն է, զուրկ չէ ճշմարտութիւնից: Քնարերգութիւնը ամէն տեսակ բանաստեղծութեան հոգի ու կեանք է տալիս. ընդունելով նրա գոյութիւնը իբրև բանաստեղծութեան մի առանձին տեսակ, նա խառնվում է բանաստեղծութեան միւս տեսակների հետ, ոչ միայն վիպասանականի՝ այլ և դրամատիկականի հետ, և կեանք է տալի նրանց, ինչպէս որ Պրոմեթեոսի անտեսանելի կրակը կենդանութիւն է տալի բոլոր Զևսի ստեղծուածներին:

Արանից երևում է որ քնարերգութիւնը մի որ և իցէ ազգի պատկանում չէ, այլ հասարակաց սեպհականութիւն է, որի մասնակից են բոլոր ազգերը: Այս պատճառով անտեղի կը լինէր քընարական բանաստեղծութեան սկիզբը այս կամ այն ազգի մէջ պըտրտել, նրանցից մէկի կամ միւսի իրաւունքը համարելով նրան: Մի և նոյն պատճառով կարելի է համարձակ ասել, թէ չկայ ազգ, որ չունենայ իր քնարական երգերը: Այսպէս, թէպէտ և վիպասանական երգերի նման հնութիւնը և ոչ մէկ հատուած չէ աւանդել մեզ Հայոց քնարական երգերից, բայց անհնարին է ուրանալ այս տեսակ երգերի գոյութիւնը հին Հայոց կեանքի մէջ, և մեր ամենափոքրիկ կասկածն էլ կը փարատի, եթէ անուանենք մեր մատենագիրների յիշած «նուագ, ցուցք, մրմունջք, և այլն ուրիշ անուններով երգերը, որոնք յայտնի քնարերգութեան տեսակներին են պատկանում: Բայց որովհետև բոլոր մարդկութիւնը առ հասարակ և իւրաքանչիւր ազգ մասնաւորապէս, այլ և այլ հանգամանք-

ների տակ գտնուելով, զանազան մտքեր է բացատրում, որոնց մէջ երեւում է նրանցից իւրաքանչիւրի ճաշակագիտական կեանքը ու զգացմունքը, այս պատճառով և քնարական բանաստեղծութիւնը զանազան ազգերում աւելի կամ պակաս գեղեցկութիւն ունի, ընդհանուր կամ մասնաւոր նշանակութիւն, նայելով թէ ինչ մտքեր ու ինչ եղանակով է բացատրում։ Եւ ահա այս բանը անհնարին է ցոյց տալ Հայոց քնարական երգերի մէջ, որովհետև սրա համար հարկաւոր էր գէթ նրանց բովանդակութիւնը ունենալ։

Մտնելով մարդկային հոգու խորքում, ուր ճշմարտութեան, երջանկութեան ու գեղեցկութեան անվերջ գաղափարները մի խորհրդաւոր վարագոյրի տակ ծածկուած են, և թռչելով ոգևորուած երգչի կուրծքից, քնարերգութիւնը թափանցում է սրտի ամենանուրբ լարերի մէջ և բաց է անում այն գաղտնիքները, որ սառն բանականութիւնը չէ կարող ըմբռնել։ Քնարերգական բանաստեղծութեան առարկան է, ասացինք, զգացմունքը, մարդկային հոգու մի նշանակեալ դրութիւնը; և որովհետև մարդուս հոգևոր դրութիւնները զանազան են, այս պատճառով և քնարական երգերը լինում են երբեմն բարձր ու վսեմ, երբեմն ուրախ ու զուարթ, երբեմն տխուր ու տրտում։

Որքան խոր թափ անցանենք ժողովրդական կեանքի հնութեան մէջ, այնքան աւելի կը տեսնենք որ աւանդութիւնը, ինչպէս վէպասանական, այնպէս և քնարական երգերի համար մեծ նշանակութիւն ունէր, որովհետև սկզբնական ժամանակներումը քնարական երգերը վիպասանականների նման, հասարակաց էին և ոչ թէ այս կամ այն անհատի սեպհականութիւն։ Այս բանը աւելի լաւ ըմբռնելու համար, բաւական է մեզ ուշադրութիւն դարձնել այժմեան Հայաստանի գիւղականների կեանքի վրայ, որոնց մէջ տակաւին գրի կարօտութիւնը չմտնելով, դեռ ևս շարունակում են աւանդութիւնով ապրել։ Աւանդութիւնը նրանց համար դպրոցների ու գիտութիւնների տեղն է բռնում. նրա ազդեցութեան տակ անց է կենում նրանց բոլոր կեանքը։ Մի և նոյն աւանդութեան բարերար ազդեցութեան տակ անց էր կենում և հին ժամանակ մարդուս բոլոր կեանքը, օրօրոցից մինչև գերեզմանը։ Երեխան, իր մոր կաթը ծըծելիս արդէն, լսում ու սովորում էր այն «օրօրները», որ յետոյ

ժամանակով ինքը իր զաւակներին պիտի երգէ։ Ազգականները իրանց ննջեցեալին ուղարկաւորելով, սովորական «մրմունջներով» ողբում էին նրա վրայ, հաստատ իմանալով որ երբ և իցէ իրանց էլ մի և նոյն ողբերով պիտի ուղարկաւորեն իրանցից յետոյ ապրողները։

Ինչպէս որ չափահաս մարդիկ ունին իրանց մտածմունքները ու հոգսերը, այնպէս էլ երեխաները իրանց խաղերը ու երեխայական երգերը ունին։ Այժմեան մանկական երգերը, որոնց մէջ երեխայքը կարողանում են արդէն ուշադրութիւն դարձնել երկնային լուսաւորների և բնութեան երևոյթների վերայ («Արև արև, դուս արի, հէրնումէրդ գալիս է», կամ «բուք կուգայ, անձրև կուգայ [1])» և այլն), յայտնի ցոյց են տալի և հների գոյութիւնը, կարելի է տեսել և նրանց բնաւորութիւնը, որովհետև երեխայքը ամէն ժամանակ ու ամէն տեղ նոյնն են. ժամանակը և մինչև անգամ ազգութիւնը որքան էլ հեռացնէ, բաժանէ նրանց միմեանցից, բայց էլի բնաւորութիւնով ու հասկացողութիւնով մէկզմէկու նման են։ Սակայն որքան որ մարդս տարիքը առնում է, այնքան էլ աւելանում են նրա աշխատութիւնները ու նեղութիւնները, բայց ըստ այնմ մխիթարութիւններն էլ մեծ ու թանգ են նրա համար։ Ինքն իսկ բնութիւնը հրաւիրում է մարդուս օգուտ քաղել կեանքից, ուստի և կեանքի ամենագեղեցիկ րոպէները խաղով, երգով և ուրախութիւններով անց էին կենում։ Ուշադրութեան արժանի է հայոց «խաղ տալ» զուրցուածքը, որից յայտնի երևում է թէ բանաստեղծութիւնը կեանքի խաղն է։ Այսպէս էլ «խաղալ» նշանակում է շատ տեղ «պար գալ», գեղեցիկ զուրցուածք, որ ցոյց է տալի թէ ինչ սերտ կապակցութիւն ունին մէկզմէկու հետ երգը, պարն ու խաղը։ Խաղով ու երգով անց էր կացնում մարդս իր բոլոր ծանր աշխատութիւնները, գարունքին տեսս, երբ իր հօտը դաշտը քշում կամ արտը սերմանում էր, աշունքին՝ երբ իր խոտը հնձում ու

[1]) Երեխայոց կանոնաւոր և ուղիղ դաստիարակութեան համար մեծ նշանակութիւն ունին երեխայական երգերը։ Ցանկալի էր, որ բոլոր մեր ազգի մէջ այժմ երգուած երեխայական (մանկական) և խաղալիքների երգերը տպվէին առաջ օրագիրների մէջ և ետոյ առանձին։ Օրինակի համար, ռուսաց գրականութիւնից կարելի է վեր առնել. «Дѣтскія пѣсни» изд. Безсонова съ сотрудниками. Москва. 1868 г. 8°. стр. XVI և 253.

ցորենը ժողովւում էր։ Այս բոլոր աշխատութիւններից յետոյ՝ տօն օրերումը՝ աւելի զգալի էր երգի ու պարի կարօտութիւնը։ Բանաստեղծութիւնը, որ բանի գործի ժամանակ՝ մարդուս անհնարին աշխատանքները թեթևացնելու ծառայում էր, անգործ ժամանակներումը զբօսեցնում ու զուարճացնում էր նրան։ Ազատ ու տօն օրերումը առանձնապէս խաղում էր ժողովրդի բուռն երևակայութիւնը, և պարն ու երգերը ընկերանում էին հին սովորութիւնների հետ, որոնք աւանդութիւնների հետ միասին ժողովրդի յիշողութեան մէջ մնացել էին հնագոյն ժամանակներից։

Բանաստեղծութիւնը, որի նուիրուած էին սովորաբար ազատ ու տօնի օրերը, աւելի հարուստների և իրանց օրուան ապրուստը ճակատի քրտինքով ճարելու կարօտութիւն չունեցող ազատների յարկի տակ պէտք է ծաղկէր. Նրանց փառաւոր ու զարդարուն օթևանների մէջ աւելի շուտ շուտ պէտք է հնչէին քնարի լարերը։ Ինչպէս Յոյները ունէին ողիմպիական [1]) խաղերում իրանց քաջերի փառաբանող երգիչներ, կամ ինչպէս որ Միջին Դարու ասպետների պալատները լիքն էին ազգային երգիչներով, այսպէս և Հայ երգիչները ազատ մուտք ունէին թագաւորների ու նախարարների պալատներում։ Հայոց (մանաւանդ Արշակունի) թագաւորների գլխաւոր զուարճութիւնը խաղաղութեան ժամանակ՝ որսերն էին, և գրեթէ իւրաքանչիւր նախարար իր որսի պարտէզը ունէր, որ լիքն էր ամէն տեսակ երէներով։ Ինչպէս այս որսական ուրախութիւնների, այսպէս և սովորական խնճոյքների, հացկերոյթների ու գինարբուքների գլխաւոր զարդն էին «վարձակ» կամ «վարձկան» երգիչները ու երգեցիկ կանայքը, որ երգելով ու պար գալով զուարճացնում էին բազմականներին [2])։ Բայց այս երգիչների երևակայութիւնը չէր կարող այնպէս ազատ խաղալ թագաւորների ու մեծատունների ներկայութեանը, ինչպէս առ հասարակ ժողովրդական անկեղծ զբօսանքների ու զուարճութիւնների ժամանակ։ Արդէն «վարձակ» անունը, որ նրանք իրանց վրայ կրում էին, իրաւունք է տալիս կասկածելու նրանց անկեղծութեան վրայ։ Բանա-

[1]) Օլիմպիական։
[2]) Խոր. Գր. Բ. Գլ. ԿԳ. և Գր. Գ. Գլ. ԽԹ։ Բուզ. Դպր. Ե. Գլ. ԼԲ։

անկեղծութիւնը բռնութիւն չէ սիրում, և ճշմարիտ բանաստեղծը այս կամ այն նպատակին պէտք է ծառայէ: Իսկ ուր որ «վարձա-ւոր» երգիչը իր ստացած վարձի, կամ «սպասած» աչքից շնորհների համար, երբեմն ստիպւում է իր չճանաչած, շատ անգամ էլ իբրև վատ ճանաչուած անձը գովաբանել, այնտեղ ազատ ոգեւորութիւնը տեղ է տալիս սուտ խօսքի, անկեղծութիւնը—շողոքորթութեան: Կարո՞ղ էր արդեօք երգիչը, իր քնարի լարերին ազատութիւն տա-լով սրտանց գովել Արշակ Երկրորդի նման թագաւորին, որ գի-նարբուների մէջ պարծենում էր Աքիլլէսի նման քաջ ու արի լի-նել, և պահանջում էր որ երգիչն էլ իրան Յունաց դիւցազնին նմանեցնէ, այն միջոցին՝ երբ ժամանակակիցները զզուելով նրանից, իբրև մի նոր Ներոնի վրայ էին մտիկ տալիս, կամ՝ աւելի լաւ ասել պատմչի հետ, երբ նա «արգահամբք Թերսիտեայ նմանէր կաղի և կորագլխոյ» [1]:

Մարդկային կեանքի ամենից նշանաւոր դիպուածը—ծննդեան և մահուան մէջ—ամուսնութիւնն է, և ոչ մի արարողութիւն այն-քան հարուստ չէ ուրախական երգերով ու աւանդութիւններով, ինչպէս հարսանիքը: Ամէն աշխարքից հեռացող մահկանացուն իր քամակից թողնում է սուգ ու տրտմութիւն, մինչ նոր «աշխարք մտնող» (ամուսնացող) երիտասարդը հետը բերում էր ծիծաղ և ուրախութիւն: Մեր հին յիշատակարանների տուած հարևանցի վկայութիւններից գուշակում ենք, որ Հայերը մեծ հանդէսով և ուրախութիւններով պէտք է կատարում լինէին հարսանիքը: Այս հարսանիքի հանդէսները աւելի հրապարակական ձև էին ստանում թագաւորների ամուսնութեան ժամանակ, երբ բոլոր երկիրը տօն էր կանգնում. այր և կին, երիտասարդք և աղջկունք ձեռք ձեռքի տուած՝ հրապարակներում պարում էին (պար և պարանցիկք) և տեսակ տեսակ երգեր ասում: Այս հարսանեկան երգերը կոչվում էին «ցուցք» կամ «ցցոց երգք», որոնց ինչ բովանդակութիւն ու ձև ունեցածը դժբաղդաբար յայտնի չէ:

Բայց որովհետև մարդկային կեանքը միայն խաղաղ աշխա-տանքից ու ազատ զուարճութիւնից չէ բաղկանում, ժողովրդական

[1]) Խոր. վերը յիշուած գլխում:

նոր, մեջը գեղեցիկ ու սրտաշարժ։ Այն ավերական խաղերը, որով ողբասացը պատրաստում է Նինվեցւոյն քնից վերկենալ ու իր առօրական գործքերով պարապել, այն անէծքները, որ նա թափում է Նինվեցւոյ գլխին, ասելով որ նա խուլ է մնում իր պաշտամունքներին և ոչ մի ձայն տալիս, ոչ մի ժպիտ արձակում, հանդուցեալի ընտրած անդուլ ու անպատուհան բնակարանի—գերեզմանի անխօս նկարագրութիւնը, նրա կենդանութեան ժամանակ տրած ու գործածը, հիւանդ օրերին տած ու խօսածը, վերջապէս այն փաղաքշական անուանները, որ նա տալիս է Նինվեցւոյն՝ ասելով որ իր բոլոր քանդատակման խաղերը անպատասխանի են մնում, այն վերջին հրաժարական ողջոյնը, որի հետ միասին ուրիշ բաներ. է ուղարկում նրանից առաջ մեռած աշխարք գնացողներին,—այս խաղերը, տալում եմ, մեր մտքը քշում են փարանձեմայ իր Գնելը ամուսնու մարմնի վրայ երգած ողբի նկարագրութիւնը [1]։ Իսկ ինչպիսի բանաստեղծական ճշգութիւնով հին բալկաններր իրանց ողբերի մէջ բացատրում էին Նինվեցւոյ ազգականներին սրտի ցաւը՝ երևում է այն վերապատանութեան հատուածից, որ Գուսիթ անունով մէկը (գուցէ Գուսիթ Անյողթը) շարադրել է Տիգրան Աստղիկի վրայ։ Բանաստեղծը, Տիգրանուհու ուղարկաւորութեան հանդէսը նկարագրելիս, ազգային երգիչների յիշատակութիւնը գտնում և նրանց խօսքերը իր վիպասանութեան մէջ է խառնում, ուր յիշում է թէ «փողերը» (այսինքն զամբանական երգիչը) այնպէս ճարտար կերպով էր երգում ողբը, որ Տիգրանի սրտից անցածը բացատրում էր։ Ահաւասիկ այն հատուածը.

«Իւ արդ ներգործող ի մէտս երեւելւ առ խորհուրդս փողարքն
Մեծազգւոյ Տիգրանայ գեղանին Տիգրանուհի,
Իւր ներգործեալ զհողաբաղն նաև ողջամիտ աշխարհանուհի» [2]։

Մնաց մի քանի խօսք ասելու դրամատիկական բանաստեղծութեան վրայ [3], որ սկզբունքը նոյնպէս երգի ձևով է երևում այն

---

[1]) Խոր. Պատմ. Գ. Գլ. ԺԵ։
[2]) Բազմավէպ. Դեկտ. 1. 1850։
[3]) Poésie dramatique.—Մեզանում դրամատիկական բանաստեղծութեան տեղ առ հասարակ գործ են ածում «ողբերգական» կամ ոմանք նաև «բանագործական» բանաստեղծութիւն։ Մենք աւելի լաւ

ազգերի մէջ, որոնց կեանքը բնական կերպով է զարգանում։ Ինչպէս տեսանք, միջնադարեան բանաստեղծութիւնը ներկայացնում է արտաքին աշխարհը, քնարերգականը բացատրում է մարդուս ներքին, հոգեկան կեանքը; իսկ միջնադարեանի ու քնարականի միաւորութիւնից, այսինքն երբ ներքինը միանում է արտաքինի հետ ու գործով կատարվում, առաջ է գալի դրամատիկական բանաստեղծութիւնը։ Վէպը պատմում է անցեալը, քնարերգութիւնը գուշակում է ապագան, իսկ դրաման ներկայացնում է, այսպէս ասել, ներկայումս՝ ընթերցողի կամ հանդիսատեսի աչքի առաջ կատարուած գործողութիւնը։ Դրաման բանաստեղծական զարգացման ամենից բարձր աստիճանը ու վերջաւորութի պսակն է։ Ինչ որ վերևը ասացինք վէպի և քնարերգութեան ընդհանրութեան վրայ, նոյնը չենք կարող ասել դրամայի համար։ Դրամատիկական բանաստեղծութիւնը առաջ է գալի այն ազգերի մէջ, որոնք, քաղաքակրթութեան աստիճանի մէջ առաջ գնալով, պատմական զարգացման ծաղկած միջնակէտին են հասել։ Այսպէս պատահեցաւ հելլենական կեանքի մէջ։ Յունաց երեւելի դրամատիկական բանաստեղծները—Էսքիլէս, Սոֆոկլէս ու Էւրիպիդէս հետզհետէ ծաղկեցան հելլենական կեանքի ամենափառաւոր շրջանում։ Սրանով մենք չենք ուզում ուրանալ դրամայի գոյութիւնը մի որ և իցէ ազգի մէջ. դրաման բանաստեղծութեան միւս տեսակների հետ՝ ժողովրդական կեանքի անհրաժեշտ տարրերից մինն է. միայն կան այնպիսի ժողովուրդներ, որոնց մէջ դրաման ստոր աստիճանի վրայ է մնում ու բարձր գեղարուեստ լինելու վիճակին չէ հասնում։ Հին ազգերի մէջ իսկապէս դրամատիկական բանաստեղծութիւն ունեցել են Հնդկացիք, Յոյնք և Հռոմայեցիք; բայց Յունաց դրաման որքան մեծ զանազանութիւն ունի հնդկականից; այս վերջինը շատ մօտ է առաջինից։ Կեանքի մէջ ամէն բան բղխում է կրօնից և դարձեալ կրօնի հետ է խառնվում։ Յունաց դրաման ծագեցաւ այն կրօնական արարողութիւններից ու խաղերից, որ հրապարակաւ էին լինում 'ի պատիւ Բաքոսի, և երգով ու պարով էին կատարվում տարին երկու անգամ, հին տարուայ վերջին և նորի սկզբին։ Հին տարին ճանապարհ գնելիս, երգում էին ծանր ու խորհրդաւոր երգեր, նորը գի-

---

համարեցինք պահել յունական բառը, որ բոլոր եւրոպական լեզուների մէջ ընդունուած է։

մասուրելու ժամանակ—թեթև և ուրախ երգեր։ Սրանցից այս երգերը թատրոնական ներկայացման ձև ունէին. ծանր երգերի մէջ՝ ծանր ու հանդարտ կերպով պատմվում և միանգամայն ներկայացվում էին Բաքոսի գործողութիւնները ու քաջագործութիւնները; իսկ ուրախական երգերի հետ ընկերանում էր ուրախ ու թեթև պարը և ծաղրածութիւնը։ Յետոյ, ժամանակ անցնելով, Բաքոսի գործողութիւնների վրայ աւելացրին ուրիշ աստուածների և մինչև անգամ դիւցազունների գործողութիւնները, և վերջապէս սկսեցին պատմութիւնից նիւթ առնել։ Վերջապէս, երբ Բաքոսի սեղանը տեսարանի [1]) փոխուեցաւ, երգիչները դերասանների, կրօնական արարողութիւնն էլ թատրոնական ներկայացման փոխուեցաւ և դրամայի երկու գլխաւոր տեսակները առաջ եկան. տրագեդիան և կոմեդիան կամ կատակերգութիւնը։ Խորհրդաւոր երգերից և ծանր պատմութիւններից կազմուեցաւ առաջինը, ուրախ երգերից և ծաղրածութիւններից—երկրորդը։ Նոյն կրօնական արարողութիւններից առաջ եկաւ Հնդկաց դրաման, որոնց կարծիքով թատրոնական խաղարկութիւնները առնըուել են աստուածներից, ներկայացուեցան նախ երկնքումը, և յետոյ նոյն իսկ Բրահմայի ձեռքով հաղորդուեցան մարդկանց։

Յունաց և Հնդկաց դրամատիկական բանաստեղծութեան սկիզբը հարևանցի ակնարկելով, մեր նպատակն է ցոյց տալ, որ դրաման, իբրև անհրաժեշտ տարր իւրաքանչիւր ժողովրդի կեանքի մէջ, պէտք է Հայոց մէջ էլ գտնվում լինէր։ Հայաստանն էլ ունեցաւ իր «գուսանները» [2]), որոնք երկրի աստուածների, գուցէ և դիւցազունների գործողութիւնները ներկայացնում էին ժողովրդեան առաջ։ Միայն, ինչպէս երևում է, դրամատիկական բանաստեղծութիւնը չզարգացաւ Հայոց մէջ, ու վերջացաւ այն տեղ, որ տեղից սկսաւ յունական դրաման։ Այս բանը աւելի հասկանալի կը լինի, եթէ յիշենք մի ժողովուրդ, որ մինչև այժմ շարունակում է ներկայացնել հին ժամանակներից մնացած կրօնական արարողութիւնները, ուրեմն և մի քայլ առաջադիմութիւն արած չէ դրամատիկական բանաստեղծութեան մէջ։ Յայտնի է որ Պարսից հին բա-

---

1) Сцена, зрѣлище.
2) Խոր. Գր. Ա. Գլ. Ժ.Ի։

նաստեղծութիւնը շատ հարուստ է վիպասանական ու քնարական տարրերով. բայց դրամատիկական տարրը ամենևին զարգացում չէ ստացել նրանց կեանքի մէջ, և մնչա իր սկզբնական դրութեան մէջ է մնացել։ Այս ողբական երգերը, որ Պարսիկները հին ժամանակները երգում էին Ալիի և նրա որդւերանց Հասան — Հուսէյինի վրայ, մինչև այժմ էլ նոյն կերպով երգում են, նրանց կեանքի ու մահուան արկածները հրապարակաւ ներկայացնելով։ Վերջապէս, Թէպէտ յոյն և հռոմայեցի մատենագիրները յիշում են, Թէ Արտաւազդ Արտաշէսին ողբերգութիւններ է գրել, որոնց մի քանի հատուածները մինչև Պլուտարքոսի օրերը հասել էին. բայց յայտնի է որ նա իր ողբերգութիւնների նիւթը հայկական կեանքից չէ առել, այլ յունական կեանքից, և յունարէն լեզուով էլ գրել է, որ հին ժամանակները իբրև ուսումնական լեզու ծաղկում էր Ասիայի մէջ։ Պատմութեան Թերթերը վկայում են նոյնպէս՝ որ Տիգրան Երկրորդի օրով Հայաստան Թատրոններ կային, բայց այն Թատրոնների գուսանները կամ դերասանները անշուշտ Յոյներ էին, որոնք ժամանակաւոր եկել էին Տիգրանի շքեղ պալատը զուարճացնելու [1]։

Գուսանների ստեղծագործութեան վրայ խօսելիս, տեսանք որ նրանցից մի քանիսը. երաժշտութիւնը, ձայնականն ու գործիականը, մնջկատակութիւնն՝ ու պարը այնքան մօտիկ կապակցութիւն ունեին միմեանց հետ, որ գրեթէ բոլորը միասին մի և նոյն ժամանակ երևան են գալի ու ամէն ժողովրդների մէջ գտնվում են։ Ինչպէս որ չկայ ազգ, որ չունենայ երգեր, մինչև անգամ պատմական ասպարէզի ամէնից ստոր աստիճանի վրայ կանգնող ժողովրդները,— այնպէս էլ չկայ ժողովուրդ, որի մէջ վիպասանական և քնարական երգերի հետ,— բաց ի կենդանի ձայնից,— մի նուագարան էլ ձայնակից չլինի։ Ի հարկէ, այս նուագարանները, Թէ փչողական լինեն. Թէ լարական կամ Թնդական, սկզբնական ժամանակ-

---

[1]) Հինգերորդ դարու սրբազան մատենագիրներից մէկը՝ (Յովհ. Մանդակ. Ճառ. ԺԻԵ). Թատրոնի ու դերասանների դէմ խօսելով, կարծես կամենում է ցոյց տալ Թատերական խաղարկութիւնների գոյութիւնը Հայաստանում։ Մենք կարծում ենք Թէ այդ մի լոկ հետևողութիւն է չորրորդ դարու Յունաց սուրբ Հարց, որոնք իրանց հռետորական հանճարը ցոյց տուեին շատ անգամ զգուշացնելով ժողովրդին Բիւզանդիայի անբարոյական Թատրոններից։

նուագումը շատ պարզ ու անպաճոյճ պէտք է լինէին, ինչպէս որ պարզ էր և ժողովրդների կեանքը, ու միայն վերջերը աւելի զարգացումն և բարդ ձև պէտք է ստանային։ Տարակոյս չկայ, որ Հին Հայոց փողական նուագարանների մէջ պարզ «հովուական սրինգը» և «եղեգնեայ փողը» աւելի վաղ պէտք է ծանօթ լինէին նրանց, քան թէ պղնձի՝ և մէկզմէկու հետ ձայների աստիճանների համեմատ կապուած եղեգնեայ փողը։ Հայոց լարական նուագարանների մէջ յիշվում են «քնարը, աւիղը, վինը, փանդիռն» ու միայն Խորենացու յիշատակած և վիպասանական երգերի հետ գործածուած «բամբիռն», որոնք թէ ձևով ու թէ լարերի շատ կամ քիչ լինելովը միմեանցից զանազանվում էին։ Երկու վերջինները իրանց արմատի մէջ են կրում իրանց բացատրութիւնը. որովհետև բամբիռն կազմուած է «բամբ» արմատից, որ նշանակում է «բարձր» (պարսկ. «պամ», արաբ. «պէմմ»); իսկ «փանդիռ» նոյն ձայնով, կարելի է և նշանակութիւնով, գտնվում է յունարէնի մէջ. «փանդուռա» յունարէն նշանակում է «քնար երեքաղեան» [1]։ Իսկ թնդական գործիքների մէջ աւելի յաճախ յիշվում է «ծնծղայն» ու «թմբուկը»։ Յայտնի է՝ որ այս բոլոր նուագարանները իրանց գործածուելու տեղն ունէին։ Արդէն յիշեցինք որ բամբիռն վիպասանական երգերի սեպհական նուագարանն էր; Քնարը աւելի զուարճութիւնների ընկերական մեղմ յարաբերութիւնների մէջ պէտք է գործածուէր; փողը, վինը, փանդիռն ու թմբուկը ննջեցեալների ուղարկաւորութեան ժամանակ [2]։ Դժբաղդաբար, այս նուագարանները մնացանող կենդանի ձայնի եղանակների բնաւորութեան ու նրանց յատկութիւնների վրայ ոչինչ որոշ բան չենք կարող ասել։ Այս միայն յայտնի է, որ, ինչպէս ամէն տեղ ու ամէն ժամանակ, այնպէս էլ Հայոց մէջ ուրախ նիւթեր բացատրող եղանակները թեթև և զուարթ պէտք է լինէին, իսկ տխուր դէպքեր բացատրողները՝ ծանր ու սրտաշարժ, ինչպէս էին, օրինակի համար, եղերամարց կամ ձայնարկու կուսանաց ողբերի եղանակները, երբ երգի

---

[1]) Տես Նոր Բառգիրք, Վենետիկ։ 1836 և 1837։ Հ. 2. Folio. Հ. 2. ե. ե. 1140 և 1067։ Բ. հատ. ե. 932. փանդիռն, Githara, Pandura; ռուսերէն бандура, бандуристъ։ Ծնծղայիւք և փանդամբք և այլովք երգեցողական գործարանօք սաղմոսել հրամայեաց. Մեկն. Պ. Եռ։ Ճ. Ա։

[2]) Տես վերևը յիշուած տեղերը։

Հետ ընկերանում էր մի տեսակ ծանր ծափահարութիւն ու արտամա-կան պար։ Պարն ու կաքաւն էլ, հանգամանքների նայելով, զանազան բնաւորութիւն ունէին։ Կաքաւել կարելի էր առանձին իբրև «կաքաւք» (թռչտելով պարել) և «կայթք» (ոտները ու ձեռքերը թփելով պարգալ), կամ բազմութեամբ շրջան կազմելով՝ իբրև «պար» կամ «պարանցիկք» 1)։

Ստեփան Պալասանեան. «Պատմութիւն Հայոց գրականութեան». Հատոր առաջին, բանաւոր գրականութիւն։ Թիֆլիզ։ 1865։ 12-ծալ. ե. ե. 259։



1) Գ. Ս. Լշմինը (Սևէպք Հայ. եր. 97) «պար» բառին լոկ «շրջանի» նշանակութիւն տալով սխալմամբ կարծում է, թէ «Երգք ցցոց և պարուց» ոչ այլ ինչ յայտ առնէ, բայց եթէ երգք գուսանաց և երգչաց վէպս ասողաց ժողովրդեան, «գնոգօք պար առեալ»։ Մենք ընդունում ենք, որ ցցոց երգերը գուսանների ասած երգերը լինին, որոնց նիւթը մի և նոյն ժամանակ ներկայացվում էր ժողովրդի առաջ, և շատ կարելի է, որ, այդպիսի առիթներում, ժողովուրդը գուսանների չորս կողմը պար բռնում լինէր; բայց այս էլ անտարակոյս է, որ, «իրանք երգիչները ասելիս, մի և նոյն ժամանակ պար էին գալիս»։

# ԳՈՂԹԱՆ ԵՐԳԵՐ։

---

Հայկական անգիր մատենագրութիւնը, մեզի ուրիշ նշանակութեան արժանի աւանդ մը հասուցած չէ, բայց եթէ քանի մը Գողթան երգեր։ Ինչպէս Յունաց մէջ Հագներգուք, տանկ ալ Հայաստան ունեցեր է իր երգիչները, մանաւանդ Գողթան բարեբեր ու գինաւէտ գաւառին մէջ, որք իրենց բանաստեղծական աշխուժովը հին ատենէն 'ի վեր համբաւ ստացան։ Անոնց հանճարոյն արգասիքն են այն երգերը, կամ երգոց քանի մը կտորուանքը, որ մեր ձեռքը հասած են։ Այս երգերը, այլ և այլ ժամանակաց դէպքեր ու անցքեր մեզի յիշատակելնուն համար, այլ և այլ ժամանակ ունեցած են իրենց յօրինուածը։ Զանազան ժամանակ յօրինուած երգեր, տարակոյս չկայ, որ զանազան երգիչներ ու հեղինակներ ունեցած են։ Բայց, որովհետև ասոնց բուն անուանքը, պատմութիւնը ինչուան մեզի հասուցած չէ, ուստի և ընդունայն աշխատանք է անոնց բուն հեղինակը փնտռելու համար յոգնիլ։

Սակայն այս երգերուն նիւթը յայտնի կը ցուցընէ, որ ոչ քուրմերէ, և ոչ անոնց ազդեցութեան տակ անձինքներէ, կրօնական հանդէսներու մէջ կամ բագիններու առջև երգեցուելու համար շինուած են, այլ այնպիսի անձինքներէ յօրինուած, որոնց առջև ար-

---

1) Գողթն, Գողթնաստան, Գողթն գինեւէտ նահանգ, (область) Հին Հայաստանի, պարունակումէր իւր մէջ յետագայ ականաւոր տեղերը. Որդուատ (Որդուպատ), Երասխ (Արազ) գետի վրայ, որ այժմ ունէ 200-ի չափ հայ գերդաստուն; Ագուլիս, ունէ 300-ի չափ հայ գերդաստուն; Հին Ջուղա, կամ Ճ'ուղայ, Նախիջևանի մօտ; Վանանդ, Գիրան և Ալւարին։ Գողթն պատկանումէր մերթ Վասպուրական և մերթ Սիւնեաց իշխանութեանց։ Ագուլեցւոց կոչումն «զոկ», որ նշանակումէ «վիպասան», рапсодъ.

քանիք անգամ գոց չեն, և թերևս ազատաց ցեղէն վարձուած քերթողներ են, որոնց պարտքն էր նոյն ցեղին մէջ հռչակուած քաջութեանց և առաքինութեանց գովասան ըլլալ։

Որչափ ալ ազգերնուս հեթանոսութեանը ժամանակ յօրինուած են այս երգերը, բայց անոնց գործածութիւնը՝ դեռ մինչև քրիստոնէութեան հինգերորդ դարը կը տևէր։ Այս կարծեաց ստուգութեան երաշխաւորութիւնը՝ Խորենացւոյն խօսքերուն մէջ ունինք, որ, նոյն երգերը մէջ բերելուն ժամանակ, միանգամայն կը զրուցէ, թէ անոնց գործածութիւնը դեռ ևս կը լսուի Հայոց Գողթան գաւառին բնակչացը քով։ Բիւզանդ ալ, չորրորդ դարուն քրիստոնեայ, բայց իրեն աստուածաւանդ կրօնիցը անհաւատարիմ, Հայաստանին համար կը զրուցէ, մեղադրելով, թէ «Զխուրեանց երգս առասպելաց զվիպասանութեան սիրեցեալք և նմին հաւատացեալք և ՚ի նոյն հանապազորդեալք»։ Ինչուան Մագիստրոսի ժամանակ՝ դեռ այս երգոց գործածութիւնը կար. և ինքը մէկ հատուած մը մէջ կը բերէ, զոր, իր ժամանակին, գիւղականացը բերնէն լսած էր։

Բանաստեղծական քնարը թէպէտև այլ և այլ ձայներ ունի, սակայն մեր ազգին մէջ երևցած երգերը՝ պարզապէս պատմական երգեր են. և մեր նախնեաց լեզուովը «վէպք», «վիպասանութիւն», «վիպագործութիւն» և «թուելեաց երգեր» կը կոչուին։

Համառօտիւ մը քննենք այս բառերուն նշանակութիւնը։

Մ. Էմինեանը՝ և Բազմավէպին մէջ հրատարակեալ յօդուածին հեղինակն կը համարին, թէ Խորենացւոյն «Երգ վիպասանաց» կոչածը, ամբողջ բանաստեղծութեան գիրք մըն էր Պարսից Շահնամէ վիպասանական գրքին նման, և յորում մեր հին ազգային քերթողքը՝ Հայոց թագաւորաց պատմութիւնը աւանդած էին։ Ինչուան Քրիստոսի վեցերորդ դարը՝ այս երգերը պահուած էին, և ժամանակին մարդկանցը մէջ ՚ի կիր առնուած։ Կը վկայէ Խորենացին. «Զայս մեզ ստուգապէս պատմէ Ուլիպ... որում և Պարսից մատեանքն վկայեն և «երգն վիպասանաց»։ Ուրիշ տեղ մըն ալ. «Արտաշիսի վերջնոյ գործք բազում ինչ յայտնի են քեզ ՚ի վիպասանացն, որ պատմին ՚ի Գողթան»։ Երրորդ տեղ մըն ալ. «Այս ամենայն յայտնի են քեզ յերգս վիպասանաց»։ Այս խօսքերը ամենևին տարակոյս չեն ձգեր, թէ կային այնպիսի երգեր, և անոնց կիրառութիւնը յաճախած մինչև յաւուրս Խորենացւոյն։

Բայց թէև պատմութեանը մէջ յիշուածները միայն մէկ քանի մը կտոր բան ըլլալով, կրնանք տարակուսիլ. սակայն աւելի հաստատութեան համար հարկ է, որ մէջ բերենք Խորենացւոյն գրած մէկ հատուածը, որով ամէն տարակոյս կը վերցուի։ Սա՛ն զի Խորենացին, Մարաց աշխարհէն բերուած գերեացը սերոնդագրութիւնն ընելէն ետքը, կ'աւելցընէ. «Զայսոսին զայս ճշմարտապէս և թուելեացն երգք, զոր պահեցին ախորժելով, որպէս լսեմ, մարդիկ կողման գինաւէտ գաւառին Գողթան, յորս պատմին բանք զԱրտաշիսէ և զորդւոց նորա, յիշելով այլաբանաբար և զզարմիցն Աժդահակայ, վիշապազունս զնոսա կոչելով։ Նոյն և ճաշ, ասեն, գործել Արգաւանայ 'ի պատիւ Արտաշիսի, և խարդաւանակ լեալ նմա 'ի տաճարին վիշապաց։ Նոյն և Արտաւազդայ ոչ գտեալ, ասեն, քաջի որդւոյն Արտաշիսի՝ տեղի ապարանից՝ 'ի հիմնանալն Արտաշատու Նաանց, առէ, գնաց և շինեաց 'ի մէջ Մարաց զՄարակերտ, որ է 'ի դաշտին, որ անուանեալ կոչի Շարուրայ։ Նոյն և «տենչայ, ասեն, Սաթենիկ տիկին տենչանս՝ զարտախուր խաւարտ և զտից խաւարծի 'ի բարձիցն Արգաւանայ»։

Խորենացւոյն այս հատուածին մէջ՝ այլ և այլ գործողութեանց յիշատակութիւնք կան, որոնք այլ և այլ անձանց և ժամանակներու կը վերաբերին։ Հին Աժդահակայ Անոյշ կնիկը և անոնց սերունդքը կը յիշատակուին, որոնք, ինչպէս յայտնի է, Քրիստոսի թուականէն գրեթէ վեց դար առաջ կ'իյնան. կը յիշատակուի Արգաւան Մեդացի, որ Արտաշիսի պատուոյն համար ճաշ մը տուաւ, և միտք ունէր, այն ճաշուն ժամանակ, դաւաճանութեամբ զարանիլ անոր կենացը։ Աջի դէպքին և ասոր մէջ՝ գրեթէ եօթն հարիւր տարւոյ տարբերութիւն կայ։ Կը յիշուի Արտաշիսի Արտաւազդ որդին, ու նոյն թագաւորին Սաթենիկ կնկան վրայ զրոյցք կ'ըլլան։

Նոյնչափ իրարմէ հեռու ժամանակաց և անձանց պատմութիւնները ամփոփող երգերը՝ տարակոյս չկայ, որ չէին կրնար համառօտ բաներ ըլլալ։ Ասիկայ որչափ ալ ենթադրուած ճշմարտութիւն մը սեպուի, սակայն ճշմարտանման ըլլալովը, իրաւամբ քննութեան առիթ եղած, ու գրեթէ ստոյգ սեպուած է։

Երկու տեսակ ազգային պատմական երգեր կային. ոմանք «վիպասանաց երգք» կը կոչուէին, ոմանք ալ «երգք թուելեաց»։ Ասոնք այլ և այլ տեսակ նիւթեր բովանդակելով, ոչ միայն մեր երկ-

րին՝ այլ նաև Մարաց ու Պարսից և Ասորեստանեայց աշխարհին յատուկ աւանդութիւններ կը բովանդակէին։

Անոնց մէջ առաջին կը սեպուին այն երգերը, որոնց մէջ մեր քաջ Թագաւորաց ու զօրավարաց արութեան ու նշանաւոր գործոց յիշատակութիւնը կ'ըլլայ; երկրորդ այն երգերը, յորս Մարաց և Պարսից վրայ խօսք կ'ըլլայ, և երրորդ անոնք, որոց մէջ Ասորեստանեայց աւանդութիւնները կը տեսնուին։

Առաջիններուն կարգէն է՝ Երուանդեան Տիգրանայ վրայ երգուածները, որ Հայկազն Թագաւորաց մէջ ամենէն աւելի սիրելագոյնն էր, ու ոչ միայն արտաքին ու ներքին բարեմասնութեամբը, այլ և իր քաջութիւններովը իր ժամանակին ազգային քերթողացը երգերուն և աշխուժին առիթ տուած։ Խորենացին, որ նոյն Թագաւորին վրայ սքանչացողներէն մէկն է, կը պատմէ անոր ձեռքով Հայաստանի մէջ եղած տեսակ տեսակ բարեկարգութիւնները, Յունաց ազգը հարկատու ընելը, Աժդահակայ հետ խնամենալը, ու ետքը անոր դէմ պատերազմիլը, զինքն սպաննելը, ու բոլոր Թագաւորական ընտանիքը գերելով՝ Երասխ գետին քով բնակեցընելը զանոնք, մասնաւոր քաղաքներ ու տեղեր տալով անոնց։ Այս տեսակ տեսակ դիպուածոց վրայ իրենց քնարը նուիրած են Գողթան երգիչները, որոց բանաստեղծութեան համառօտութիւնն է զոր Խորենացին մէջ կը բերէ. «Ոչ այս՝ և որ այլ այսպիսիք բազումք՝ եթէ մերոյ աշխարհիս խարտեաշս այս և աղեբեկ ծայրիւ հերաց Երուանդեան Տիգրան. երեսօք գունեան և մեղուակն, անձնեայն և թիկնաւէտն, առոյգաբարձն և գեղեցկոտն, պարկեշտն 'ի կերակուրս և յըմպելիս և 'ի խրախճանութիւնս օրինաւոր. զորմէ ասէին 'ի հինսն մեր որք բամբռամբ երգէին, լինել սմա և 'ի ցանկութիւնս մարմնոյ չափաւոր. մեծիմաստ և պերճաբան, և յամենայն որ ինչ մարդկութեան պիտանի.... Արդարադատ և հաւասարասէր կշիռս ունելով յամենայնի, զամենայն ուրուք կենցաղ մտացն լծակաւ կըշռէր։ Ոչ ընդ լաւագոյնսն խանդայր, և ոչ զնուաստսն արհամարհէր. այլ ամենեցուն հասարակաց հնարէր՝ զխնամոցն իւրոց 'ի վերայ տարածել զզգեստ»։

Պատմութիւնը կ'աւանդէ, թէ Երուանդեան Տիգրանը երեք որդիք ունեցաւ. Բաբ, Տիրան և Վահագն, և թէ անոնց մէջ ամենէն հռչակաւորը իր քաջութեամբը եղաւ Վահագն. և իր արութեանցը վրայ զարմացող Հայաստան աշխարհը և անոր դրացին

Վրաստան՝ աստուածոց կարգը դասեցին զինքը։ Գողթան երգողաց ալ իր յիշատակին ընծայած գովաբանութիւններէն՝ հետևեալ տողերը պահած է Խորենացին.

«Երկնէր երկին և երկիր.
Երկնէր և ծիրանի ծով.
Երկն ի ծովուն ունէր զկարմրիկ եղեգնիկն։
Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր.
Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր.
Եւ ի բոցոյն պատանեկիկ վազէր.
Նա հուր հեր ունէր.
Ապա թէ բոց ունէր մօրուս,
Եւ աչկունքն էին արեգակունք»։

Въ мукахъ рожденія находились небо и земля;
Въ мукахъ рожденія лежало и пурпуровое море;
Море разрѣшилось красненькимъ тростникомъ;
Изъ горлышка тростника выходилъ дымъ;
Изъ горлышка тростника выходило пламя;
Изъ пламени выбѣгалъ юноша,
У него были огонь—волосы,
Борода была изъ пламени,
А очи словно два солнышка.

Русскій переводъ Исторіи Моисея Хоренскаго (стр. 70).
Н. Эмина. Москва. 1858г. 8°. Стр. 383. Ц. 3 руб.

Այս երգը՝ իր ականջովը լսած է նոյն ինքն Խորենացին, ինչպէս պատմութեանը մէջ կ՚աւանդէ։

Վահագնէն ետքը՝ Գողթան երգողաց քնարին ու քերթողական ոգւոյն առիթ տուած է Արտաշէս Բ։ Այս քաջ ու սիրելի թագաւորին կենաց այլ և այլ պարագաները՝ առատ նիւթ կրնային մատակարարել, ինչպէս արդեամբք ալ մատակարարած են նոյն ազգային քերթողաց։ Հետևեալ տողերը՝ պատառիկ կրնան սեպուիլ այն քերթուածոց, և որոնք մասունք են անշուշտ ընդարձակ ոճով գրուած գեղեցիկ երկասիրութեան մը.

«Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ.
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն,

Եւ անցեալ՝ որպէս զարծուի սրաթեւ՝ ընդ գետն,
Եւ ձգեալ զոսկէօղ շիկափոկ պարանն՝
Ընկեց ի մէջք օրիորդին Ալանաց.
Եւ շատ ցաւեցոյց ըզմէջք փափուկ օրիորդին,
Արագ հասուցեալ ի բանակըն իւր։

Мужественный царь Арташесъ сѣлъ на красиваго воронаго (коня);
И вынулъ арканъ изъ красной кожи съ золотымъ кольцомъ,
И пролетѣлъ быстрокрылымъ орломъ чрезъ рѣку;
И бросилъ арканъ изъ красной кожи съ золотымъ кольцомъ,
И обхватилъ станъ царственной дѣвы Алановъ,
И причинилъ сильную боль стану нѣжной царственной дѣвы,
Быстро увлекая ее въ свой лагеръ.

Въ томъ же переводѣ Моисея Хоренскаго, стр. 22,

Այս գեղեցիկ ու ընտիր երգը՝ բանաստեղծական այլաբանութիւն մըն է այն դէպքին, զոր Խորենացին իր Պատմութեան գրոցը մէջ կ'աւանդէ։ Արտաշէս հասաւ իր փափաքին. Ալանաց աչագեղ դուստրը՝ Սաթենիկ, որ իր երեսաց վայելչութեամբը՝ արիւնլուայ պատերազմաց մէջ գրաւեր էր քաջին Արտաշէսի սիրտը, Հայաստանի թագուհի եղաւ, ու արքայն՝ իր սիրոյն ու մեծութեանը և հարըստութեան արժանի հարսնիք մը ընել տուաւ անոր պատուոյն։ Այս մեր խօսքին հաւատարիմ վկայութիւն են Գողթան երգողաց հետեւեալ տողերն.

«Տեղ ոսկի տեղայր ի փեսայութեանն Արտաշէսի,
Տեղայր մարգարիտ ի հարսնութեան Սաթինկանն»։

Золотой дождь шелъ на свадьбѣ Арташеса;
Жемчужный дождь лился на свадьбѣ Сатиника.

Моисей Хоренскій, стр. 122.

Սակայն այսչափ փառքով, ու մարգրիտ ու ոսկւոյ վրայ կոխելով Արտաշէսի արքունիքը մտնող Սաթենիկը՝ նոյն արքունեաց մէջ միշտ բարեբաստութիւն չկրցաւ գտնել, ու, ինչպէս պատմութենէն կ'երեւնայ, իր հասակը, գեղեցկութիւնն ու բարքը այլ և այլ հակառակամարտ կրից խաղալիկ եղան։ Իր քաջութեամբը մերձակայ ու դրացի ազգաց սրտին մէջ վախ ձգող Արտաշէսը, չկրցաւ իր արքունեացը մէջ եղած խռովութեանց դէմ առնուլ։ Նոյն ինքն

Սաթենիկ՝ ամէնէ իր ներքին բերմանցը, քան պարտուցը հնազանդելով, իր փեսային տանը մէջ՝ Արտաշէսեան դուրս անձէ խնդիր ելլելով, քաջին Արգամայ, թէ զԱրտաշէս թագաւոր և թէ անոր որդիքը նախանձորդ ու թշնամի կը յարուցանէր ոչ միայն իր անձին՝ հապա նաև Արգամայ, ու մէկ կիրքի մը պատճառաւ՝ բոլոր արքունեաց և աշխարհին խաղաղութիւնը տակնուվրայ կ՚ըլլայ: Անշուշտ այս կիրքն ու սէրը կ՚ակնարկէին վիպասանաց երգերէն մնացած այս տողերը.

«Տենչայ Սաթինիկ տիկին տենչանս
Զարտախոյր խաւարտ եւ զտից հաւարծի
Ի բարձիցն Արգաւանայ»:

Царица Сатиникъ сильно горѣла желаніемъ носить діадиму Аргавана и возлежать на подушкахъ его.

Въ переводѣ Моисея Хоренскаго стр. 69 и 114
примѣчаніе на стр. 272—274..

Այս երգին մէջ յիշուած Արգաւանը՝ էր նա ինքն Արգամ, որ իր իմաստութեանն ու քաջութեանցը համար՝ Հայոց թագաւորներուն երկրորդը սեպուած էր, ու անոնցմէ այլ և այլ պատիւներով և արտօնութեամբք փառաւորուած: Անիկայ օր մը զթագաւորն Արտաշէս իր կոչնոցը հրաւիրեց. և այն ուրախութիւնը՝ թշնամութեան առիթ կարծուելով՝ սպաննուեցաւ, ու թագաւորական հրամանով տունը տեղը այրեցաւ, և ընտանիքն ալ ջնջուեցան:

Արտաշէս՝ Մարաց ազգին զօրութիւնը խորտակելէն ետքը, Հռովմայեցւոց հարկ տալը դադրեցուց. Դոմետիանոս կայսրն ալ զօրք ժողվելով՝ եկաւ Հայաստան. Բասեն Գաւառին հովտացը մէջ երկու բանակներն իրարու զարնուեցան. և յաղթութեան պարծանքը Հայերը ժառանգեցին: Այն պատերազմին մէջ քաջութեամբը անուանի հանդիսացաւ Սմբատ, որուն համար կը գրուցէ Խորենացին, թէ ծերութեանը հասակին մէջ՝ պատերազմական արուեստին մասուցած փորձառութեամբը «երիտասարդապէս յարդարեաց և մխեաց զճակատն»:

Ասանկ քաջ պատերազմող մը իր արութեանցն ու սրտին արժանի գրուատանքը գտած էր ազգային երգոց մէջ, որոնք զարմանքով կը յիշատակէին իր տուած պատերազմունքը, ու հնացեալ հասակին մէջ՝ նոր զէնքերով Հայաստանի փրկութեան առիթ ըլլալը:

Մահը, որ աշխարհի տեսարանաց մէջ ամենուն վարագոյրը կը գոցէ, Արտաշէսի բազմափորձ կենաց տեսարանն ալ պիտի գոցէր։ Վերջին անգամ աչուըները փակելուն ժամանակ՝ դեռ եւս կարօտ կը քաշէր իւր հայրենեացը. կը փափաքէր կրկին տեսնել իր հայրենեաց վայելչութիւնը, ու այս սրտառուչ տողերը կ'արտասանէր, զոր Մագիստրոս իր ժամանակացը բերնէն լսած է, և որ հնութեան ամէն հոտը կը կրէ իր վրան.

«Ո՜ տայր ինձ զծուխ ծխանի
Եւ զառաւօտըն Նաւասարդի.
Զվազելն եղանց եւ զվազելն եղջերուաց.
Մեք փող հարուաք եւ թմբկի հարկանէաք»։

Ասանկ մեռաւ Արտաշէս։ Սակայն իր քաջութեանցն ու հայրենասիրական ջանից երախտապարտ երևցաւ Հայաստան։ Նման թագաւորին մահը այն արտասուօք լալէն ետքը, շատերը, ժամանակին հեթանոսական սովորութեանը համեմատ, չուզեցին իրմէն բաժնուիլ նաև 'ի մահուանն. ու ողջ ողջ ինքզինքնին կը թաղէին։ Արտաշէսին Արտաւազդ որդին, որ հօրը յուղարկաւորութեան ներկայ էր, ու ետքը անոր թագաւորական աթոռը պիտի ժառանգէր, հօրը եղած այսչափ փառաց ու պատուոյն վրայ նախանձեցաւ. անոր դիակնացեալ մարմնոյն եղած պատիւն իրեն իշխանութեանը պզտիկութիւն մը ենթադրեց, ու դժկամակելով մը ըսաւ հօրը.

«Մինչ դու գնացեր, եւ զերկիրս ամենայն ընդ քեզ տարար.
Ես աւերակացս որպէս թագաւորեմ»։

Ты ушелъ и унесъ съ собою всю нашу землю:
Какъ же мнѣ царствовать надъ развалинами т. е. надъ чѣмъ
 же и надъ кѣмъ мнѣ царствовать?

Այս նախանձու արգասիք խօսքերուն վրայ նեղանալով, Արտաշէս, անիծեց զինքն ու ըսաւ.

«Դու յորս հեծցիս յԱզատ ի վեր ի Մասիս,
Զքեզ կալցին քաջք, տարցին յԱզատ ի վեր ի Մասիս,
Անդ կացցես, եւ զլոյս մի՛ տեսցես»։

Если ты поѣдешь на охоту на свободный Масисъ,
Тебя захватятъ духи, повлекутъ на свободный Масисъ;
Тамъ останешся и свѣта не увидишь болѣе.

Въ переводѣ Моисея Хоренскаго, стр. 180.

*Աս անէծքին հետեւանք կը սեպուին Արտաւազդայ մահուան պարագաները, զոր աւանդած է մեզի պատմութիւնը։*

*Արտաւազդայ ոչ միայն մահը՝ այլ նաև ծնունդն ալ առասպելեօք լի կը ներկայացընեն մեզի Գողթան երգիչք։ Անոր անհանդարտ ու խռովայոյզ բարքը տեսնելով, որ անարժան էր արքունեաց, և մանաւանդ Արտաշէսի արքունեացը, այլաբանելով կը զրուցէին, թէ «Վիշապազունք գողցան զմանուկն Արտաւազդ, և դև փոխանակ եդին»։*

*Կարծես թէ Արտաւազդայ կենաց այլ և այլ հանգամանքը՝ կ'արդարացընեն վիպասանից այս քերթողական ենթադրութիւնը։ Իր անձնահաճ ու նախանձոտ բարքովը բոլոր թագաւորական տունը տակնուվրայ ըրաւ. իր հօրը սիրտը ցրտացուց յԱրգամայ, ու անոր պատիւը ինքը յափշտակեց՝ թագաւորութեան երկրորդական աթոռը։ Նախանձեցաւ նաև Սմբատ սպարապետին վրայ, ու անոր եղած արժանաւոր պատուոյն չկարենալով համբերել, ետևէ եղաւ զինքն սպաննելու. բայց իրեն վախճանին չկրցաւ հասնիլ։ Վասն զի Սմբատ, իմանալով անոր միտքը, թողուց Հայոց սպարապետութիւնը, ու Ասորեստանեայց կողմերը գնաց իր բնակութիւնը հաստատելու։*

*Այսպիսի բարուց տէր Արտաւազդը՝ չկրցաւ երկար ատեն վայելել իր թագաւորական իշխանութիւնը։ Երկու տարիէն ետքը Մասիս լերան վրայ որսալու ժամանակ, մեծ ու խոր վհի մը մէջ ինկաւ։ Առասպելն ու երևակայութիւնը, իրենց ատելի թագաւորին անակնկալ կորուստը ուրիշ կերպով մեկնաբանելով, զրուցեցին թէ Արտաշէսի անէծքը՝ որդւոյն վրայ իրենց արդիւնքն ունեցան. վասն զի ազատ Մասեաց քաջերը հասան, բռնեցին, ու երկաթի շղթաներով կապկըպելով, այրի մը մէջ փակեցին զինքը. միայն իր երկու հաւատարիմ շները չկրցան բաժնուիլ իրմէն, այլ միշտ շղթաները կը կրծեն, զանիկայ բանտէն ազատելու համար։*

*Գողթան երգողաց հատուածներէն է նաև հետևեալ երգը՝ Վարդգեսի վրայ երգուած, որ առաջին Տիգրանայ քեռայրն էր, Արտիմէդ քաղաքին շինուածքին համար։*

«Հատուած գնացեալ Վարդգէս մանուկն ի Տուհաց գաւառէն
ըզՔասաղ գետով,
Եկեալ նստաւ զՇրէշ բլրով, զԱրտիմէդ Քաղաքաւ,
ըզՔասաղ գետով,
Կռել կոփել զդուռն Երուանդայ արքային»։

Отдѣлился юный Вардгесъ, отправился
Изъ области Туха къ Касахѣ рѣкѣ,
Пришелъ, поселился на Шремѣ холмѣ
Близъ города Артимеда у Касаха рѣки,
Чтобы тесать и ваять врата Еруанда царя.

Въ переводѣ Моисея Хоренскаго стр. 134.

Ասոնք են ահաւասիկ այն սակաւիկ՝ բայց մնացորդութեան արժանի Գողթան երգոց հատուածներն, զորս Խորենացին աւանդած է մեզի իր ընտիր պատմական երկասիրութեամբը։

Քննենք սոնց արուեստը։

Տարակոյս չկայ որ ասոնք արձակ գրութիւններ չեն, բայց միանգամայն և ոչ այն չափը ունին, որ ընդհանրապէս մեր շատ քերթող հեղինակաց յատուկ էր ու գործածական։ Ոչ յունական կամ լատինական արուեստին հետևած են մեր երգիչքը, որոնք թերևս ծանօթութիւն ալ չունէին, և ոչ պարսիկ կամ արաբացի նմանաձայն չափուն, որ դեռ երևցած չէր. այլ հին ազգաց մէջ գործածական համեմատութեամբ ու թուականութեամբ վարուած, իրենց այս երգերուն մէջ։ Ասանկ են ընդհանրապէս Եբրայեցւոց բանաստեղծական սքանչելի հատուածներն, որ սուրբ գրոց մէջ կը տեսնուին։ Ու թէ որ այս երկու ազգաց մէջ ինչուան հիմայ մնացած բանաստեղծական հատուածները քննութեան առնունք, խիստ մեծ նմանութիւն մը կը տեսնենք արուեստի. այն արուեստին, զոր բնութիւնը սորվեցուցած է այս ազգերուն։ Անոնց քերթուածոցը մէջ գործածուած Չափականութիւնն ու Համեմատութիւնը կը տեսնուի նաև մեր քերթողաց երգերուն մէջ։ Մեր այս խօսքին ապացոյցը յայտնապէս պիտի նկատենք, եթէ ուզենանք այս երկու ազգացմէ մնացած բանաստեղծական հատուածները իրարու հետ համեմատել։ Պիտի լսենք մեր Գողթան երգերը որ կը զրուցեն.

*«Երկնէր երկին եւ երկիր,*
*Երկնէր եւ ծիրանի ծով...*
*Ընդ եղեգան փող՝ ծուխ ելանէր,*
*Ընդ եղեգան փող՝ բոց ելանէր».*

*ու զԻսրայելացիս, որ Կարմիր ծովուն վտանգէն ազատած, թմբուկներով ու պարերով կ'երգեն.*

*«Աջ քոյ, տէր, փառաւորեալ է զօրութեամբ իւրով.*
*Աջ քոյ տէր խորտակեաց զթշնամին....*
*Պաղեցան որպէս պարիսպ՝ ջուրք,*
*Պաղեցան ալիք ի մէջ ծովուն»։*

*Դարձեալ Դեբովրայ օրհնութեանը մէջ.*

*«Տէր, յելանել քոյ ի Սէիրայ,*
*Եւ ի չուել քում յանդաստանացն Եդովմայ,*
*Երկիր շարժեցաւ, եւ երկինք խռովեցան.*
*Լերինք շարժեցան յերեսաց Տեառն Եղովայ Սինայի,*
*Յերեսաց Տեառն Աստուծոյ Իսրայելի»։*

*«Կապուտ երանգոցն Սիսարայ,*
*Կապոյտ երանգոցն գոյնագոյն նկարուց,*
*Նարօտ պէսպէս նկարուց,*
*Այն էր պարանոցին նորա կապուտ»։*

*Այս երգոցը չափուն մէջ թէպէտ և կատարեալ ազատութիւն մը կը տեսնուի, բայց տարակոյս չկայ, որ այն ազատութիւնն ալ իւր քերթողական չափուն մէջ մնալու համար սահման մը ունեցաւ, որ մեզի համար դեռ բացայայտ չէ։*

«Պատմութիւն Հայերէն դպրութեանց (գրականութեան). Հին մատենագրութիւն։ Հ. Գարեգին Զարբհանալեան։ Վենետիկ։ 1865։ 16-ծալ։ Ե. ե. 20 եւ 649։ «Վէպք Հնոյն Հայաստանի»։ Մկրտչի Էմին։ Մոսկվա։ 1850։ «Պատմութիւն մատենագրութեան Հայոց»։ Հ. Յովսէփ Գաթրճեան։ Վիեննա 1851։ 16-ծալ։ Ե. ե. 62, մանր տիպ։



## ԳԼՈՒԽ Ա.

## ՀՈԳԵՒՈՐ ԵՐԳԵՐ, ՇԱՐԱԿԱՆՆԵՐ, ՄԵՂԵԴԻՆԵՐ ԵՒ ՏԱՂԵՐ։

---

### 1

Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա,
Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Արի Աստուած հարցն մերոց,
Որ ապաւէնդ ես նեղելոց;
Հաս օգնութիւն ծառայից քոց,
Անօգնական ազգիս Հայոց [1]։
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Միջնորդութեամբ սրբոյ խաչիդ
Եւ անարատ սուրբ ծնողիդ,
Յիշեա զհեղումն արեան փրկչիդ,
Եւ 'ի խնդիր փոքու հօտիդ։
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Զի գտացաք մեք հաւատեաւ,
Որ չափ մեղաց մերոց լցաւ,
Ուստի Տէրդ մեր բարկացաւ.
Առ 'ի խրատել զմեզ զարթեաւ։
Տէր ողորմեա. Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

---

[1]) Ոմանք, այս տողը փոխելով, երգումեն.
«Լեր օգնական՝ ազգիս Հայոց»։

Արդ անկանիմք առաջի քոյ,
Գոչեմք մեղայ Տեառնդ մերոյ,
Դարձո 'ի մէնջ զցասումն քոյ,
Վասն անսպառ գթութեան քոյ:
Տէր ողորմեա, Տէր ողորմեա, Տէր ողորմեա:

Սիմէօն կաթուղիկոս ամենայն Հայոց.

Յ ա ւ ե լ ո ւ ա ծ:

Ի քէն հայցեմք մեզ օգնութիւն,
Ամենասուրբ Երրորդութիւն;
Տուր աշխարհիս խաղաղութիւն,
Քրիստոնէից ազատութիւն (հաստատութիւն):

---

2

## ԽԱՉԻ ՔՈ ՔՐԻՍՏՈՍ ԵՐԿԻՐՊԱԳԱՆԵՄՔ:

### ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ ԳԻՇԵՐԻՆ

Խաչի քո Քրիստոս[1]) երկիրպագանեմք, և զսուրբ մատնութիւնդ քո մեծացուցանեմք, և զսուրբ չարչարանսդ քո փառաւորեմք: Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ, վասն զի եկն 'ի ձեռն խաչի իւրոյ շնորհեաց պարգևս աշխարհի: Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ մատնեցար վասն մեր, ողորմեա՛ մեզ (Այսպէս երիցս կրկնելով):

Փառք սուրբ խաչիդ, ալելուիա; սուրբ մատնութեանդ, ալելուիա; չարչարանացդ, ալելուիա: Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց: 'Ի պաղոյ, ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա:

---

[1]) Յիսուս (Jesus, Iсусъ), բառ եբրայեցւոց (հրեաց, ջհուդի). «եաշուա» նշանակում է փրկիչ: Յարմարութեամբ մեկնումն յունաց «եաթրոս» բառից, այսինքն «բժիշկ»; այս պատճառաւ «Տօնակ». ասած է. «Յիսուսն փրկիչ, և Բժիշկ ասի»:

Քրիստոս, յունարէն «խրիստօս», (Christus, Христосъ) նշանակում է «օծեալ»; եբրայերէն «մեսիա»:

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; սուրբ մատնութեանդ, ալէլուիա; չարչարանացդ, ալէլուիա։ Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; սուրբ մատնութեանդ, ալէլուիա; չարչարանացդ, ալէլուիա։

Խաչն կենարար, որ եղև մեզ փրկութիւն, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։ Որ ’ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ’ի յերկրի և զաւազան զօրութեան հաւատացելոց, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ ’ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։

ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹԻՆ

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք, և զսուրբ չարչարանաց քո մեծացուցանեմք, և զսուրբ խաչելութիւնդ քո փառաւորեմք։ Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասն զի եկն ’ի ձեռն խաչին իւրոյ շնորհեաց պարգևս աշխարհի։ Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ։ (Նոյնպէս երիցս կրկնելով)։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; չարչարանացդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա։ Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց։ ’Ի պտղոյ, ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; չարչարանացդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա։ Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։ Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա։

Խաչն կենարար, որ եղև մեզ փրկութիւն, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։ Որ ’ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ ’ի յերկրի և զաւազան զօրութեան հաւատացելոց, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։ Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ ’ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն, առաւել ամենեքեան զքեզ բարեբանեմք։

ԱՒԱԳ ՈՒՐԲԱԹ ԵՐԵԿՈՅԻՆ ԵՒ ՇԱԲԱԹ ԱՌԱՒՕՏՈՒՆ։

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք, և զսուրբ խաչելութիւնդ քո մեծացուցանեմք և զսուրբ թաղումնդ քո փառաւորեմք։ Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասն զի եկն 'ի ձեռն խաչին իւրոյ շնորհեաց պարգևս աշխարհի։ Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ թաղեցար վասն մեր, ողորմեա մեզ (Այսպէս երիցս կրկնելով)։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա։

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

'Ի պտղոյ, ցորենոյ, գինւոյ՝ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա։ Փառք և երկրպագութիւն հօր և որդւոյ և սրբոյ հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն [1])։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; խաչելութեանդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա։

Խաչն կենարար, որ եղև մեզ փրկութիւն, սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

Որ 'ի հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ 'ի յերկրի, և զաւազան զօրութեան հաւատացելոց, սովաւ ամենեքեան զքեզ բարեբանիմք։

---

[1]) Ամէն («է» տառով) ինչպէս եբրայեցոց կամ արաբացոց բառ (amen, аминь) պարբերութեան, կամ խօսքի վերջումը, նշանակումէ. «Այո այդպէս է, և այդպէս եղիցի»։ Շատ անգամ թարգմանւում է «եղիցի եղիցի», կրկնութեամբ վերջումը, «եղիցի, եղիցի»։ Խօսքի սկզբումը նշանակումէ. ստոյգ, արդարև, ճշմարտապէս, այո այսպէս է, և այսպէս լինիցի։ «Ամէն ասեմ ձեզ; ամէն ամէն ասեմ ձեզ»։

«Ամէնն» նշանակումէ. որպէս անսխալ ճշմարտութիւնն Աստուած։

«Այսպէս ասէ ամէնն, վկայն հաւատարիմ և ճշմարիտ»։ Յայտ. Գ. 14։

Ամէն կամ ամէն, ամենի, ից. ած. համայն, ամենայն (Omnis, quivis, universus, totus).

Ամէն, գոյական. ամենայն ոք, և ամենայն իրք (Omnes, omnia)։ «Դրոշմ աստուածային նկարեալ 'ի դէմս ամենի»։

Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցար 'ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն, սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

ՁԱՑԻԿ ՍՐՍԻՕՑՈՒՆ՝

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք, և զսուրբ թաղումն քո մեծացուցանեմք, և զսուրբ յարութիւնդ քո փառաւորեմք։

Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասն զի եկն 'ի ձեռն խաչին իւրոյ շնորհեաց պարգևս աշխարհի։

Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ, որ յարեար 'ի մեռելոց, ողորմեա մեզ (Երիցս կրկնեա)։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա; սուրբ յարութեանդ, ալէլուիա։

Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։ 'Ի պտղոյ ցորենոյ, գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա; սուրբ յարութեանդ, ալէլուիա։

Փառք և երկրպագութիւն հօր և որդւոյ և սրբոյ հոգւոյն, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Փառք սուրբ խաչիդ, ալէլուիա; սրբոյ թաղմանդ, ալէլուիա; սուրբ յարութեանդ, ալէլուիա։

Խաչն կենարար, որ եղև մեզ փրկութիւն. սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

Որ 'ի հօրէ լուսոյ լոյս ճառագայթեալ 'ի յերկրի, և գաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցար 'ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. սովաւ ամենեքեան զքեզ բարեբանեմք։

## Գիշերային ժամ

### 3

### ԽԲԳ։

Յիշեցուք 'ի գիշերի զանուն քո Տէր։
Բղխեսցեն սիրտք մեր զբան բարի և լեզուք մեր պատմեսցեն զգործս երկնաւոր Թագաւորին։
Ի մէջ գիշերի յարուցեալ խոստովանեսցուք զքեզ Տէր։
Զաղօթս մեր տացուք քեզ Տէր 'ի գաւիթս քո'ի մէջ Նոր Երուսաղէմի։
Ի գիշերի համբարձցուք զձեռս մեր սրբութեամբ առ քեզ Տէր։
Ի ձայն գոհութեան ամենայն հոգիք օրհնեցէք զՏէր։

Զարթիք փառք իմ, զարթիք, և ես զարթեայց առաւօտուց; ալէլուիա [1])։
Զարթիք ընդ զուարթունս, մանկունք վերինն Սիօնի, ալէլուիա։
Զարթիք, որդիք լուսոյ, 'ի յօրհնութիւն հօրն լուսոյ, ալէլուիա։
Զարթիք, փրկեալք արեամբ, և տուք զփառս փրկողին, ալէլուիա։
Զարթիք, նոր ժողովուրդք, նոր երգս առեալ նորոգողին, ալէլուիա։
Զարթիք, հարսունք հոգւով, սպասեալք գալոյ սուրբ փեսային, ալէ՛։
Զարթիք վառեալք լուսով ըստ իմաստուն սուրբ կուսանացն, ալէ՛։
Զարթիք, պատրաստեցէք իւղ լապտերաց, ջերմ արտասուս, ալէլուիա։
Զարթիք և մի ննջէք, նման յիմար կուսից նիրհէք, ալէլուիա։
Զարթիք, երկիր պագցուք և արտասուօք զայս ասասցուք, ալէլուիա։

Զարթիր, ընդէ՞ր ննջես Տէր, մի՛ մերժեր զմեզ իսպառ։
Արի Տէր օգնեա մեզ; տացուք անուանդ քում զփառս։
Այժմ և յաւէտ Հօր, և Որդւոյ, և սուրբ Հոգւոյն, ամէն։

[1]) «Ալէլուիայ» կամ «ալէլուիա» բառ եբրայեցոց «հալէլու-եա՛հ»։ Ալէլու նշանակում է. գովեցէք; իա, եա՛հ, նշ.—զՏէր կամ զԱ͞ծ, ալէլուիա. օրհնեցէք զԱստուած, կամ գովեցէք զՏէր (երգ փառաբանութեան)։

Զարթուցեալքս 'ի զբաղմանէ գիշերային հանգստենէ։
Շնորհեսցէ մեզ մարդասէր Տէր մխիթարութիւն և 'ի սփոփանս եկեղեցւոյ։
Ահիւ և դողութեամբ կացցուք 'ի յաղօթս;
Երկեաւ խոստովանեսցուք զյանցանս;
Եւ գտցուք 'ի Քրիստոսէ զքաւութիւն և զմեծ զողորմութիւն։

Ներսէս Կլայեցի, կաթուղիկոս ամենայն Հայոց։ 1)

---

## Գ ի շ ե ր ա յ ի ն ժ ա մ։

4

Երգ աղօթական 'ի դէմս սրբոյ Երրորդութեան, և իւրաքանչիւրոյ դիմի Երրորդութեանն առանձնակի։

Առաւօտ լուսոյ,
Արեգակն արդար,
Առ իս լոյս ծագեա։

Բղխումն 'ի Հօրէ, 2)
Բղխեա 'ի հոգւոյս
Բան քեզ 'ի հաճոյս։

---

1) Կոչեցաւ և Շնորհալի; ծնաւ 1102 թ. փոխեցաւ առ Քրիստոս 1172 թ.։ Այս երգը Շնորհալին արար Հռոմկլայ բերդի պահապան Հայոց զինուորներու համար, որոնք, հայրենեաց ապահովութեանը հսկելու ստիպուած, գիշերային ժամերը (սհաթները) այս աստուածազգեցիկ երգով կ'անցուցանէին, ինչպէս Կիրակոս պատմագիրը վկայում է։ Շնորհալին Մագիստրոսի դստեր Ապիրատ որդւոյն զաւակն էր և կրտսեր եղբայր Գրիգորիս Կաթուղիկոսի։ Տղայութեան հասակում մեծացաւ Գրիգորի վկայասէրի խնամոցը տակ; ետոյ Սեաւ լերան վրայ եղած Կարմիր վանքի առաջնորդ Ստեփաննոս գիտնաւորի մօտ աշակերտեցաւ։ Իւր եղբայր Գրիգորիս կաթուղիկոսից ձեռնադրուեցաւ քահանայ, ետոյ եպիսկոպոս և, նորա մահուանից առաջ, կաթուղիկոս ամենայն Հայոց։ Հայաստանու կաթուղիկոսների, քարոզիչների, եկեղեցւոյ կառավարիչների, հեղինակների, անկեղծ և անձնանուէր հայրենասէրների մէջ երևելիներից մինն է։ Ներսէս Կլայեցու կեանքը և գործերը շատ և շատ հետաքրքրական են և դաստիարակիչ։

2) Հայ կաթօլիկները, իրանցից (չինովի), աւելացնումեն «և յորդւոյ»։

Գանձդ ողորմութեան,
Գանձիդ ծածկելոյ
Գըտող զիս արա:

Գուռն ողորմութեան
Գաւանողիս բաց,
Գասեցո վերնոցն:

Երրեակ միութիւն,
Եղելոց խնամող,
Եւ ինձ ողորմեա:

Զարթիր Տէր յօգնել
Զարթո ըզթըմբրեալս,
Զուարթնոց նըմանել: 1)

Էդ հայր անըսկիզըն.
Էակից որդի,
Է միշտ սուրբ հոգի:

Ընկալ զիս գըթած,
Ընկալ ողորմած,
Ընկալ մարդասէր:

Թագաւոր փառաց,
Թողութեանց տըւող,
Թող ինձ ըզյանցանս:

Ժողովող բարեաց,
Ժողովեա և զիս
Ժողովս անդըրանկաց:

Ի քէն Տէր հայցեմ
Ի մարդասիրէդ
Ինձ բըժըշկութիւն:

Լեր կեանք մեռելոյս,
Լոյս խաւարելոյս,
Լուծանող ցաւոյս:

Խորհըրդոց գիտող,
Խաւարիս շնորհեա
Խորհուրդ լուսաւոր:

Ծընունդ հօր ծոցոյ,
Ծածկելոյս ստուերաւ
Ծագեա լոյս փառաց:

Կենարար փրկիչ,
Կեցո ըզմեռեալս,
Կանգնեա ըզգլորեալս:

Հաստեա հաւատով,
Հաստատեա յուսով,
Հիմնեցո սիրով:

Ձայնիւս աղաչեմ,
Ձեռօքս պաղատիմ,
Ձիր բարեաց շնորհեա:

Ղամբարամբ լուսոյ,
Ղեկավար ճարտար,
Ղօղեալս ամրացո:

Ճառագայթ փառաց,
Ճանապարհ ինձ ցոյց
Ճեպել 'ի յերկինս:

Միածինդ հօր,
Մոյծ զիս յառագաստ
Մաքուր հարսանեացդ:

Յորժամ գաս փառօք
Յահագին աւուրն,
Յիշեա զիս Քրիստոս:

Նորոգող հնութեանց,
Նորոգեա և զիս,
Նորոգ զարդարեա:

Շնորհատու բարեաց,
Շնորհեա զքաւութիւն,
Շնորհեա զթողութիւն:

Ուրախացո Տէր
Ոգւոյս փրկութեամբ,
Ոյր վասն եմ 'ի սուգ:

---

1) Նմանիլ:

Զար մըշակողին [1])
Զար' սերմանց նորին
Զորացո զպըտուղն։

Պարգևիչ բարեաց,
Պարգևեա իմոց
Պարտեացս թողութիւն։

Ջուր շնորհեա աչացս,
Ջերմ հեղուլ զարտօսր,
Ջնջել ըզյանցանս։

Ռետինըդ քաղցու,
Ռամ հոգւոյս արբո,
Ռահ ցոյց ինձ լուսոյ։

Սէր անուն Յիսուս,
Սիրով քով ճմլեա
Սիրտ իմ քարեղէն։

Վասըն գըթութեան,
Վասն ողորմութեան,
Վերըստին կեցո։

Տենչալւոյդ տեսլեամբ [2])
Տուր ինձ յագենալ
Տէր Յիսուս Քրիստոս։

Րաբունդ երկնաւոր,
Րոտեա զաշակերտս
Րամից երկնայնոց։

Ցօղ արեան քո Տէր
Ցօղեա 'ի հոգիս,
Ցնծացէ անձն իմ։

Ւիւծեալըս մեղօք
Ւիւծեալ աղաչեմ
Ւիւսել ինձ 'բարիս։

Փըրկիչ բոլորից,
Փութա զիս փըրկել
Փորձութեանց մեղաց։

Քաւիչ յանցանաց,
Քաւեա զօրհնաբանս
Քեզ երգել ըզփառս։

Աստուածածնին բարեխօսու-
թեամբն յիշեա Տէր և
ողորմեա։

Ներսէս Կլայեցի

[1]) Վենետկու ժամագրքում. «Զար մշակողիս
Զար սերմանցն որ յիս
Զորացո զպտուղն»։
[2]) Վենետկու ժամագրքում. «Տենչալի տեսլեամբ»...

## Գ ի շ ե ր ա յ ի ն   ժ ա մ։

### 5

### Աասն աւետարանաց մեծի ուրբաթուն։

Այսօր անճառ լուսոյն ծագումն, 'ի փրկութեան մեր կատարումն խոնարհի 'ի վերնատունն, 'ի ստուերական տանից լրումն; նախ քան զընթրիսըն խորհրդոյ՝ սփածաւ զենջակ արկողն լուսոյ. և ջուր առեալ ծառայաբար՝ զոտըս լուանայր զաշակերտացն։

Յանին հօր փառաց լուսոյ՝ Պետրոս մերժիլ յոտս ոչ ներէր՝ այնմ ձեռաց, որոյ են գործք, երկնից երկինք և երկրաւորք՝ որով կուրաց աչըք բացան, խուլք և համրք արձակեցան՝ որ վերածեաց զինքն 'ի ծովէն, սատանեաց ալեացն՝ և լռեցին։

Գլխոյն ընտրեալ հօտին փոքու՝ սաստէր զխորհուրդն ո՛չ գիտելոյ; որով դառնայր և հնազանդիւր, զոտս և զգլուխս մաքրել մաղթէր; գլխո՛յս, ասէ, չէ ինչ պիտոյ՝ լուացումն ջրոյ զի լուացեալ է. ոտիցդ պէտք են մաքրութեան՝ յօդիլ 'ի գլուխս սրբութեամբ։

Դասուց իւրոց աշակերտաց՝ զոր նախ բանիւ վարդապետեաց, այսօր գործով զծայրագոյն եցոյց յինքեան զխոնարհութիւն; սպասաւորեալ հողեղինաց, այն որ անտեսն է հրեղինաց; տարեալ պաշտօն իւր ծառայիցն, այն որ պաշտին 'ի սրովբէից։

Եթէ Տէրս, ասէ, էից, և վարդապետս բոլորից, զաշակերտացդ և զծառայից զոտս լուացի 'ի հնոյ աղտից. միմեանց և դուք համաբնութեամբ ցուցէք զնոյն խոնարհութիւն, բարձրացելոյն 'ի կործանումն, և անկելոյ բնութեանց կանգնումն։

Զոր մաքրեցեր յաւազանին, մաքուր ձեռօք զոտըս նոցին, և ուսուցեր խոնարհութեամբ յաղթօղ լինել չար հրպարտին. և զիմ լըւա՛ զոտիղմն մեղաց՝ աղաչանօք սրբոյ գնդին, և ըզգընացս ուղղեա՛ զոտին՝ խոնարհութեամբ ելեւք յերկինս։

Ներսէս Կլայեցի։

---

6

### Օրհնութիւն առաւօտու, ասացեալ յանմարմնոց, այլ և ՚ի Կոստանդնուպօլսի սրբոյ ժողովոյն ՚ի ՃԾ (150) Հայրապետաց։

Փառք ՚ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, ՚ի մարդիկ հաճութիւն։ Եւ օրհնութիւն քեզ ՚ի բարձունս. օրհնեալ ես Տէր Աստուած մեր. օրհնեմք զքեզ և գովեմք զքեզ։ Խոստովանիմք Տէր ընդ քեզ. և երկիր պագանեմք քեզ. փառաւորեմք զքեզ; գոհանամք Տէր զքէն վասն մեծի փառաց քոց։ Տէր Թագաւոր, սուրբ երկնային Աստուած և Հայր ամենակալ։ Տէր և Որդի Հօր միածին, Յիսուս Քրիստոս, և սուրբ Որդի։ Տէր Աստուած գառն Աստուծոյ և Որդի Հօր, որ առեր ըզմերս ՚ի կուսէն. ողորմեցար, բարձեր զմեղս աշխարհի. և արդ ընկալ զաղաչանս մեր։ Սուրբդ որ նստիս ընդ աջմէ Հօր՝ ողորմեաց մեզ. զի դու միայն սուրբ, դու միայն բարձրեալ ես, դու միայն Տէր մեր Յիսուս Քրիստոս։ Տէր և Հոգիդ սուրբ. որ ՚ի փառս Աստուած ընդ Հօր. Ամէն։

Եւ յամենայն ժամ օրհնեմք զքեզ. Տէր և գովեմք զանուն սուրբ քոյ յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից։

Արժանի արա Տէր զօրս զայս խաղաղութեամբ, և առանց մեղաց պահեա զմեզ։ Օրհնեալ ես Տէր Աստուած հարցն մերոց, գովեալ և փառաւորեալ է անուն սուրբ քո յաւիտեանս ամէն։ Օրհնեալ Տէր, ուսո ինձ զարդարութիւնս քո. «Երիցս կրկնեա»։ Տէր ապաւէն եղեր մեր յազգէ յազգ։ Ես աղաչեմ Տէր ողորմեա ինձ. և բժշկեա զանձն իմ. ես մեղայ քեզ։ Յոյց մեզ Տէր զողորմութիւնս քո, և զփրկութիւնս քո տուր մեզ։ Տէր ողորմութիւն քո յաւիտեան. զգործս ձեռաց քոց մի՛ անտես առներ։ Տէր իմ զքեզ ապաւէն ինձ արարի. ուսո ինձ առնել զկամս քո, զի դու ես Աստուած իմ։ Ի քէն է Տէր աղբիւր կենդանութեան, և լուսով երեսաց քոց տեսանեմք զլոյս։ Ձգեա զողորմութիւնս քո, որք ճանաչեն զքեզ Տէր։

---

## Առաւօտեան ժամ։

### 7

*Երգ վասն առաջնոյ աւուր միաշաբաթին, 'ի խորհուրդ արարչութեան և յարութեան Քրիստոսի։*

Նորաստեղծեալ բանն յանէից
Ի սկըզբանէ զերկինս երկնից.
Եւ զերկնային զօրս անմարմնոց
Իմանալեացըն զուարթնոց.
Եւ ըզգալի տարերց քառից
Հակառակաց միաբանից.
Որով յաւէտ փառաբանի
Երրորդութիւնն անճառելի։

Երեքսրբեան մի Տէրութիւն
Միով բնութեամբ Աստուածութիւն.
Լոյսն որ անեղ արարչական՝
Ասաց լինել լոյս եղական.
Զոր և ծագեաց յօրն առաջին
Միաշաբաթ կիւրակէին. Որով, և այլն։

Բարունօրէն բացատրեսցուք
Զծածկեալ խորհուրդըն ծանիցուք.
Զի լոյսն անտես իմանալի
Մաքուր հոգւոց տեսանելի,
Ի սոյն ծագեաց միաշաբաթ
Մեզ յարութեան սուրբ ճառագայթ.
Եկայք փրկեալք ընդ զուարթնոյն
Տուք օրհնութիւն յարուցելոյն։

Սէրըդ սիրով խոնարհեցար
Ի փըրկութիւն մեր մարմնացար.
Նովին մարմնովըն խաչեցար
Ի գերեզման մահու եդար.

Այսօր յարեար Աստուածաբար
Ի հրեշտակաց քարոզեցար. Եկայք...

Երեւեցար խընկաբերիցն
Յողջոյն կենաց ուրախալից.
Եւ 'ի լերինըն Գալիլեա
Առաքելոց մետասանից։
Արժանացո զմեզ ընդ նոսին՝
Զքեզ տեսանել յօրըն վերջին. Եկայք...

Սիոնի որդիք զարթիք,
Հարսին լուսոյ տուք աւետիք.
Եթէ փեսայն քո յարուցեալ,
Յաղթեաց մահու իշխանութեամբ,
Գայ պըսակէ ըզքեզ փառօք,
Եւ ընդ առաջ ըղձնեալ զարդուք.
Երգեա երգ նոր յարուցելոյն,
Ննջեցելոց կենաց պըտղոյն։

Ներսէս Կլայեցի։

---

Առաւօտեան ժամ։

8

Վասն երկրորդ աւուրն արարչութեան, և վասն երկնայնոց զօրացն։

Արարչական բանիւն հրաման
'Ի յերկրորդումն աւուր սկըզբան
Ըզջուրսն 'ի ջուրցըն բաժանեաց,
Հաստատութեամբ պարունակեաց.
Որով զաշխարհս հողեղինաց
Անջըրպետեաց 'ի հրեղինաց.
Ընդ նոսին որդիք լուսոյ՝
Տուք օրհնութիւն երրեակ լուսոյն։

Բազմաչեայ հսկէք քրովբէից՝
Երեքսրբեանդ սրովբէից,
Աթոռք անեղ Աստուածութեանըն,
Համագոյ Երրորդութեան,
Բարեխօս լերուք առ Տէր
Վասըն մանկանց եկեղեցւոյ. Ընդ նոսին...

Գերագոյն իշխանութիւնք
Եւ անփոփոխ միշտ Տէրութիւնք,
Անյաղթելի սուրբ զօրութիւնք՝
'Ի յարարչէն փառաւորութիւն,
Աղաչեցէք զՏէրն ողորմած
Անտես չառնել զգործըս ձեռացն: Ընդ...

Գասք անմարմնոցըդ պետութեանց,
Հրեշտակապետըք բարձրութեանց,
Հոգիք հրեղէնք և սպասաւորըք
Հրեշտակաց զինուորութիւնք,
Մաղթեցէք զՏէրըն տերանց,
Վասըն մարդկան երկրաւորաց: Ընդ...

Երկնաւորաց դասուց վերնոց՝
Օրհնաբանից քոց զուարթնոց.
Քաղցրացի առ քեզ գըթած,
Որ վասըն մեր ձայն մաղթանաց,
Զորս և տացես մեզ պահապան
Յայսըմ հետէ մինչ 'ի վախճան: Ընդ...

Զօրութեանց և Տէրութեանց՝
Իշխանութեանց և պետութեանց,
Եւ ամենայն անուանելոց,
Որք 'ի յերկինս պաղատանօք.
Ընկալ Քրիստոս ուրախութեամբ
Զմեզ յօր մահու և յարութեան,
Ընդ նոսին օրհնել հոգւով
Ըզքեզ ընդ Հօր փառաւորելով:

Ներսէս Կլայեցի:

9

Երգ արևագալին։

Յարևելից մինչ 'ի մուտս, 'ի հիւսիսոյ և 'ի հարաւոյ ամենայն ազգք և ազինք յօրհնութիւն նոր օրհնեցէք զարարիչն արարածոց, որ ծագեաց զլոյս արեգականն այսօր յաշխարհս։

Եկեղեցիք արդարոց՝ փառաբանիչք ամենասուրբ Երրորդութեան, յառաւօտս լուսոյ զառաւօտ խաղաղութեան Քրիստոս գովեցէք ընդ Հօր և Հոգւոյն, որ ծագեաց զլոյս գիտութեան իւրոյ 'ի մեզ։

Յորդորակ։

Յարևելից յարևմուտս մանկունք Սիոնի՝ օրհնեցէք միշտ անդադար զծագողն լուսոյ։

Եկեղեցիք արդարոց և փառաբանիչք, բարեբանեցէք որ ետ զիմաստս լուսոյ։

Քարոզ։

Յարևելից մինչև 'ի մուտս արևու ընդ ամենայն տեղիս Քրիստոնէութեան, ուր և կարդան զանուն Տեառն սրբութեամբ՝ Տէր աղօթիւք նոցա և բարեխօսութեամբ մեզ ողորմեսցի։ Ուխտիւք զԱստուած աղաչեսցուք, զի նա փրկեսցէ զմեզ 'ի մեղաց և 'ի ցանկութենէ աշխարհի։ Ընկալցի զուխտս և զխնդրուածս սրտից մերոց. և արժանի արասցէ զմեզ հաւատոց և պատուիրանաց իւրոց ընդ ամենայն սուրբս իւր. ամենակալ Տէր Աստուած մեր կեցո և ողորմեա՛ց։

Զառաւօտս լուսոյ և զառաջակայ օրս խաղաղութեամբ անցուցանել՝ հաւատով 'ի Տեառնէ խնդրեսցուք։

Զհրեշտակ։ Զքաւութիւն և զթող։ Զսրբոյ խաչին։ Եւ ես միաբան վասն։ Զանձինս մեր։ Ողորմեա՛ց մեզ։

Ներսէս Կլայեցի։

## 10

### Երգ արեւագալին։

Ճգնաւորք Աստուծոյ և ժառանգորդք երկնից արքայու-թեան, որք փոխանակեալք զանցաւորս՝ առիք զանանցն բարութիւնս. բարեխօսեցէք առ Տէր վասն մանկանց եկեղեցւոյ։

Նահատակք պանծալիք և սիրեցեալք 'ի յերկնաւոր Հօրէն, որք միացեալք ընդ Քրիստոսի արեամբ ձերով 'ի մահ խաչին. բարեխօսե...

Մարտիրոսք ցանկալիք և օծեալք Հոգւոյն ճշմարտութեան. որք յաղթեցիք հոգւով կարեաց և ցանկութեանց.– բար...
Գովելիք աշխարհի և բաղձալիք վերնոցն պետութեանց, որք երա-նութեան մասին հասիք քան զամենայն որդիս մարդկան. բարե...

Համաւոր պատարագք՝ մանկունք տիօք, և կատարեալք իմա-ստութեամբ, որք փոխանակ կաթին արբիք զգինին զմայլեցուցիչ. բարե...

### Յորդորակ։

Ճգնաւորք ճշմարիտք վկայք Քրիստոսի, բարեխօսեցէք առ Տէր վասն անձանց մերոց։

Նահատակք կենդանիք սիրողք Քրիստոսի, որք չարչարե-ցայք մարմնով վասն անուանն Տեառն։

Մարտիրոսք ցանկալիք՝ մարդկան ըղձալիք, հայցեցէք 'ի սուրբ Հոգւոյն տալ մեզ զբարիս։

Գովելիք վերնոց դասուց պարծանք աշխարհի՝ խնդրեցէք զխաղաղութիւն տալ եկեղեցւոյ։

Համաւոր սուրբ պատարագք՝ հասակաւ մանկունք, հայցեցէք լինել և մեզ ձեզ պսակակից։

Ներսէս Կլայեցի։

---

## 11

### Երգ աւետարանին։

Լոյս արարիչ լուսոյ առաջին լոյս, բնակեալդ 'ի լոյս անմատոյց՝ Հայր երկնաւոր՝ 'ի դասուց լուսեղինացն օրհնեալ, 'ի ծագել լուսոյ առաւօտուս, ծագեա՛ 'ի հոգիս մեր զլոյս քո իմանալի։

Լոյս 'ի լուսոյ ծագումն արեգակն արդար՝ անճառ ծնունդ Հօր Որդի, յառաջ քան զարև անուն քո գովեալ ընդ Հօր. 'ի ծագել...

Լոյս [1]) 'ի Հօրէ բղխումն աղբիւր բարութեան Հոգիդ սուրբ Աստուծոյ, մանկունք եկեղեցւոյ ընդ հրեշտակս զքեզ բարեբանեն. 'ի ծագել լուսոյ առաւօտուս...

Լոյս երրեակ և մի անբաժանելի սուրբ Երրորդութիւն. զքեզ ընդ երկնայնոցն երկրածինքս միշտ փառաւորեմք. 'ի...

### Յորդորակ։

Անեղանելիդ Աստուած Հայր ամենակալ, ընկալ զաղաչանս մեր քոց պաշտօնէից։

Ի Հօրէ ծագումն անճառ արեգակն արդար, ծագեա՛ 'ի յանձինս մեր զլոյսդ ողորմութեան։

Ի Հօրէ բղխեալ [2]) Հոգի աղբիւր բարութեան, լուսով քով լցո՛ զմեզ յայսմ առաւօտուս։

Երեք անձինք և մի բնութիւն, մի Աստուածութիւն. զքեզ խոստովանիմք յաւէտ սուրբ Երրորդութիւն։

Ներսէս Կլայեցի։

---

1) Մենեակու, Կատօլիկների ժամագրքում.
Լոյս 'ի Հօրէ և յորդւոյ բղխումն...

2) . . . . . . . . Ի Հօրէ և յորդւոյ բղխեալ...

## 12

### Երգ արևագալին։

Ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք Քրիստոս, առաջնորդեա հոգւոց մերոց յերկրէ ելանել յերկինս։

Դուռն կենաց մուծ Յիսուս, մոյծ և զմեզ առ Հայր քո և Հոգի, երգել միշտ զփառս։

### Յորդորակ։

Ճանապարհ բարի Քրիստոս և ճշմարտութիւն, առաջնորդ հոգւոց մերոց յերկրէ 'ի յերկինս։

Դուռն կենաց մուծ Յիսուս Աստուած ճշմարիտ, մոյծ և ըզմեզ առ Հայրդ քո Հոգւովդ սրբով։

Ներսէս Կլայեցի։

---

## Ճ՛աշու ժամ։

## 13

### Երգ երրորդ ժամու աւուրն զկնի Ողորմեային։

Օրհնեմք ըզքեզ Հայր անըսկիզբն,
Ոչից էակ 'ի յանգոյից,
Արարեր ձեռօք նիւթ 'ի հողոյ,
Եւ ստեղծեր զմարդ 'ի պատկեր քո.
Գըլուխն ուտից խոնարհեցաւ,
Որ զպատուիրան քո մոռացաւ.
Դարձեալ ասեմք ըստ անառակին
Թէ Հայր մեղայ քեզ 'ի յերկինս։

Երկնաւորաց անքըննելի,
Եղեր մարդկան տեսանելի,

Ոգեցար պատկեր Հողեղինի,
Պատկերըդ Հօր անփոփոխելի.
Ելեր յերրորդ ժամ ՚ի խաչին,
Վասն Ադամայ նախաստեղծին.
Ընդ աւազակին քում խաչակցին,
Արժանացո ըզմեզ դրախտին։

Թագաւոր Թագաւորաց
Առատաբուղխ Հոգի շնորհաց.
Ժողովելոցն ՚ի վերնատան,
Առաքելոցն երկոտասան.
Ի Հրոյ լեզուս երևեցար,
Յոգիս նոցա վերանորոգար.
Լուր յանուն քո ժողովելոցս,
Իջ և առ մեզ յերրորդ ժամուս։

Ներսէս Կլայեցի։

---

## Ճ ա շ ո ւ ժ ա մ։

### 14

### Երգ վեցերորդի ժամուն։

Խաւարեցաւ լոյսն արևուն
՚Ի վեցերորդ ժամ ուրբաթուն.
Ցանոյց թէ լոյսն արարչական
Սըսեմացայց զլոյսն եղական.
Կախեալ ըզքեզ մերկ ՚ի խաչին
Բոլոր ստուերաւըն ծածկէին.
Հերքեա ՚ի մէնջ ըզծանրութիւն՝
Շրջօղ դիւին միջօրէի։

Զանձրութեան մաքառ այսոյն չարի
Եւ յայսմ ժամու պատերազմի,

Պօղեալ յոգւոց մեր հերքեսցի`
Թող նըշանաւ սըրբոյ խաչի.
Ճըշմարտութեան քոյ ճառագայթ
Զառ 'ի յերկնից անկեալ զփայլակն
Սերժեալ 'ի մէնջ հալածեսցէ`
Եւ զմեզ լուսով քով վառեսցէ։

Յայս միջօրեայ տուընջեան ժամուս
Վայելչական աչաց մարմնոյս
Նետիւք գաղտնեաց մի՛ խոցեսցուք
'Ի խաւարէն որ 'ի ծածուկ.
Շուրջանակի բանակեսցին
Զմեօք բանակք հրեշտակաց.
Որք պարակից մեզ լինելով,
Ըզքեզ ընդ Հօր փառաւորելով։

Ներսէս Կլայեցի։

---

Ճ ա շ ո ւ ժ ա մ։

15

Երգ իններորդի ժամուն։

Չարչարակցեալ քեզ տիւ լուսոյ
Երիւք ժամուք խաւարելոյ,
Պայծառացեալ յիններորդին
'Ի տիպ լըրման մահու ստուերին,
Ջահըրդ լուսոյ մեծապայծառ
Աւանդեցեր զհոգիդ առ Հայր.
Մահիւ կըցորդ քեզ 'ի յերկինս
Զմեզ ուղղեա՛ հոգւով քոյին։

Սանդարամետըք սարսեցան[1])
Կապեա՛լ հոգիքն արձակեցան.

---

[1]) Վենետկու ժամագրքում. Սանդարամետըք սարսեցին։
Զկապեալ հոգիսն արձակեցին.

Վէմք ՚ի վիմէգ պատառեցան,
Ի տապանաց մեռեալք յարեան.
Տարերք երկրի տատանէին
Եւ աշխարհի սիւնք դողային.
Բանտեալքս առ քեզ պաղատեսցուք
Զի ընդ արդարսըն դասեսցուք:

Յուցեր յայնժամ ըսքանչելիս՝
Եւ այժըմ մեզ ողորմեսցիս.
Խիւծեալ բնութիւնս քեւ ողջացաւ
Շնորհեա՛ և մեզ լինիլ անցաւ.
Փոխան մահու քո կենարար
Կեցո՛ ըզմեզ Տէր բարերար.
Զքեզ [1]) պաղատիմք ըստ աւազակին
Յիշեա՛ ըզմեզ յորն ահագին:

Ներսէս Կլայեցի.

---

16

Երգ ճաշու ժամին:

Նահապետին Աբրահամու
Հայցմամբ ընկալ Տէր զաղաչանս,
Եւ ծառային քում Սահակայ
Խընդրուածովքն ՚ի մեզ գըթա.
Բենատեսին Իսրայէլի,
Սիրով սըրբոյն ՚ի մեզ խնայեա,
Երեքսըրբեան երիւք սոցին
Սըրբեա զհոգի, զմիտս և զմարմին:

Ներսէս Կլայեցի:

---

[1]) Վենետկու ժամագրքում. Քեզ....

## Երեկոյեան ժամ։

### 17

### Շարական կիրակամտի։

Սուրբ ես Տէր զօրութեանց՝ որ բնակեալդ ես 'ի յերկինս, և բարեբանիս 'ի սրբոց քոց։

Երկնային զօրութիւնք՝ սերովբէք և քերովբէք անդադար օրհնեն սուրբ զանունդ քո։

Բաղձանայք ընդ նոսին՝ պաշտօնեայք և ժողովուրդք երկրպագեսցուք տէրութեանդ քո։

Լոյս որ յառաջ քան զյաւիտեանս 'ի Հօրէ առաքեցար, և լուսով իմանալեաւ լցեր զարարածս. օրհնեալ ես Թագաւոր յաւիտենից։

Որ զլոյսն 'ի սկզբանէ հաստատեցեր վերստին, և զխաւարն անգիտութեան յարութեամբդ քո հալածեցեր. օրհնեալ ես Թագաւոր յաւիտենից։

Ուստի և մեք լուսաւորեալքս ընդ լուսեղէն զուարթնոցն երգեսցուք ցնծութեամբ 'ի յարութեան երեկոյիս. օրհնեալ ես Թագաւոր յաւիտենից։

Երկնաքաղաքացին Յովհաննէս, մեծն 'ի ծնունդս կանանց, քարոզէր յանապատի ազգ արարող բարբառովն զծագումն լուսոյ արեգականն արդարութեան։

Ճշմարիտ մարգարէ և ձեռնադրող որդւոյն Աստուծոյ, յառաջընթաց կարապետ և պատմող Աստուածային օրինացն, հորդէր ճանապարհ Թագաւորին յաւիտենից։

Յանօրէն գինարբուսըն մոլեգնեալ Հերովդիադայ՝ 'ի պարգևի մասին խնդրէր զգլուխ մարգարէին, շիջուցանել զարուսեակն և զանաղօտ լապտերն։

Սրբուհւոյ Աստուածածնին բարեխօսութեամբ պարգևեա՛ երկրպագուացս ամենասուրբ Երրորդութեանդ՝ զյարութիւն յուսոյ կենացն յաւիտենից։

Զհաստատեալ ժողովուրդս սուրբ Երրորդութեան, և զապաւինեալս 'ի խորան փառաց քոց պահեա՛ անխռով 'ի խաղաղութեան։

---

# Խ ա ղ ա ղ ա կ ա ն   ժ ա մ։

## 18

### Երգ։

Շնորհեա՛ մեզ Տէր 'ի գիշերի զերկնային զխաղաղութիւն քո, և պահեա՛ զմեզ 'ի պատրանաց թշնամւոյն ամենայապղծ զօրութեամբ սուրբ խաչի քո։ Տէր Աստուած փրկութեան իմոյ 'ի տուէ կարդացի՝ և գիշերի առաջի քո։ Մտցեն աղօթք իմ առաջի քո Տէր, խոնարհեցո ունկն քո 'ի խնդրուածս իմ։ Եկեսցէ առ մեզ Տէր պահապան 'ի քէն, որ պահեսցէ զմեզ յամենայն ժամ։ Առաքեա 'ի մեզ Տէր զզօրութիւն սրբոյ խաչին, որ պահեսցէ զմեզ յամենայն ժամ։ Արժանի արա՛ Տէր զերեկս զայս խաղաղութեամբ և առանց փորձութեան անցո՛ զմեօք։ Արժանաւորեա՛ Տէր զգիշերս զայս խաղաղութեամբ, և առանց մեղաց պահելով զմեզ։ Ընդ մեզ Տէր Աստուած. գիտասջի՛ք հեթանոսք և պարտեցարո՛ւք, զի Աստուած ընդ մեզ է։ Եւ լուարո՛ւք զայս 'ի ծագաց մինչև 'ի ծագս երկրի, զի Աստուած։ Եւ հզօրացեալքդ պարտեցարո՛ւք, զի։ Եւ զի թէպէտ և դարձեալ զօրանայք, դարձեալ 'ի պարտութիւն մատնեսջիք, զի։ Եւ զխորհուրդն զոր խորհիք՝ խափանէ Տէր, զի։ Եւ զբանն զոր խօսիք՝ մի՛ մնասցէ առ ձեզ. զի։ Եւ քանզի յերկիւղէ ձերմէ մեք ո՛չ երկիցուք և ո՛չ խռովեսցուք, զի։ Եւ զՏէր Աստուած մեր փառաւոր արասցուք, և Նա եղիցի մեզ յերկիւղ, զի։ Եւ յուսացեալ եղիցուք մեք 'ի Նա, և Նա եղիցի մեզ 'ի սրբութիւն, զի։ Եւ յուսացեալ եղիցուք մեք 'ի Նա, և Նա եղիցի մեզ 'ի փրկութիւն, զի։ Եւ ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետ ինձ Աստուած, զի։ Եւ ժողովուրդ որ նստեր 'ի խաւարի ետես զլոյս, մեծ զի։ Եւ որ բնակեալդ էք 'ի խաւարի և 'ի ստուերս մահու, լոյս ծագեսցի առ ձեզ, զի։ Եւ քանզի մանուկ ծնաւ, որդի և տուաւ մեզ, զի։ Եւ որոյ իշխանութիւն իւր 'ի վերայ ուսոց իւրոց, զի։ Եւ որ կոչի անուն Նորա մեծի խորհրդոյ հրեշտակ, զի։ Եւ սքանչելի խորհրդակից, զի։ Եւ Աստուած հզօր իշխան, զի։ Եւ իշխան խաղաղութեան հայր հանդերձելոյ յաւիտենին, Տէր Աստուած ընդ մեզ է։ Եւ փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն։

---

## Խ ա ղ ա ղ ա կ ա ն ժ ա մ։

### 19

### Երգ։

Նայեաց սիրով հայրըդ գըթած
Ի քո ստեղծեալ գործըս ձեռաց,
Եւ ըզբանակըս հրեշտակաց
Տուր պահապան մեզ տկարացս.
Փըրկեա զանձինս 'ի փորձանաց
Ի խաւարի շըջող դիւաց.
Օհ 'ի տունջեան և գիշերի
Տացուք քեզ փառս անլըռելի։

Էին անեղ անըսկըզբան
Ծընունդ անճառ որդի և բան,
Որ արարեր ըզտիւ գործոյ՝
Եւ ըզգիշեր 'ի հանգիստ քնոյ.
Տուր 'ի նընջել աչաց մարմնոյ՝
Արթուն լինել մեզ ըստ հոգւոյ։ Օհ...

Բարուն հոգւոց բանաւորաց
Աղբիւր լուսոյ բաշխող շնորհաց,
Ի փակիլ դրանց ընութեանց մարմնոց՝
Լոյս տուր աչաց սրտից մերոց.
Ի գիշերաց առ քեզ կանխել
Ընդ հրեղինացն օրհնաբանել։ Օհ...

Սուրբըդ սըրբոց երրորդութիւն,
Ըզմեզ մաքրեա քեզ բնակութիւն.
Շնորհեա ընդ մանկանց առագաստի
Հանգչել ընդ քեզ 'ի յանկողնի.
Տուր ըզհայցուած բարեկամին
Ըզփոխ երից նըկանակին։ Օհ...

Երևելի լոյս ըստեղծեր,
Զտիւ և զգիշեր բաժանեցեր.

Ծագեա մեզ Տէր 'ի գիշերի
Ըղձառագայթս իմանալի.
Տուր յամենայն ժամանակի
Զպահպանող աջ քո հովանի: Զի...

Սիրոյ քո հուր արկեալ յերկիր
Բորբոքեսցի 'ի հոգիս մեր,
Զխորհուրդ սըրտից մեր մաքրեսցէ
Զլոյս գիտութեան քո փայլեսցէ,
Ի քնոյ մահու զմեզ զարթուսցէ,
Զմիտըս բոցով քով վառեսցէ: Զի...

Ի քեզ նայիմք լոյսդ անմատոյց
Ի զգայական ծածկեալ լուսոյ.
Որ վառըն մեր եղար 'ի գրի
Եւ նընջեցեր 'ի տապանի.
Առ մեզ նընջեա արթուն բնութիւն՝
Հերքեա զչարին ներգործութիւն: Զի...

Էիդ լուսոյ անըստուերի
Գաղտանօք կամք առաջի.
Որ փակեալ դրամբք երեկոյին
Երևեցար մետասանին.
Ընդ Թովմայի առ քեզ գոչեմք
Տէր և Աստուած զքեզ դաւանեմք.
Էջ և առ մեզ յերեկոյիս՝
Եւ տուր զողջոյն քո 'ի հոգիս:

Բամեալքս զքեզ Տէր աղաչեմք՝
Մեզ յօգնութիւն նայեալ հայցեմք.
Պահապանդ Իսրայէլի,
Անձանց մերոց լեր հովանի
Օթեա առ մեզ խաղաղարար
Զի նընջեսցուք անխռովաբար,
Եւ ընդ առաւօտըս կանխեսցուք
Օրհնել ըզքեզ ընդ Հօր Հոգւով:

Պոռչման փողոյն Գաբրիէլի
Որ 'ի վերջնումըն գիշերի,
Լսել արա զմեզ արժանի
Եւ յաջակողմն օղեաց դասի.
Մինչէջ վառեալ զլոյս լապտերաց
Ըստ իմաստուն հինգ կուսանաց.
Զի ընդ փեսայիդ 'ի յառագաստ
Հարսունք հոգւով մըտցուք 'ի փառս։

Հալածեա 'ի մէնջ տէր, նշանաւ խաչի քո զընդդիմամարտ և զաներևոյթ գազանն. և մի' տար յապականութիւն զքո ժառանգութիւնս։

Բարեխօսեա վասն մեր Աստուածածին Մարիամ, որ ծնար զՏէր Աստուած՝ որ հովուէրն զԻսրայէլ ամենազօր և սքանչելի փառօքն իւրովք։

Ներսէս Կլայեցի։

---

## Խ ա ղ ա ղ ա կ ա ն ժ ա մ։

20

### Շարական։

Ի քէն հայցեմք հա՛յր գթութեանց և Աստուած մխիթարութեանց, 'ի տխրական գիշերային մերձեալ ժամուս մխիթարեա՛ զմեզ 'ի տրտմութեանց մեղաց. և շնորհեա՛ զուրախութիւն գործովք արդարութեան, աղաչանօք սուրբ Աստուածածնին և ամենայն արդարոց։

Ըստ քաղցրագոյն Աստուածային քոյ հրամանի կոչման Որդի Աստուծոյ, եկեալ եմք առաջի քոյ յերեկոյիս աշխատեալք և ծանրաբեռնեալք, թեթևացո՛ 'ի ծանրութեանց մեղաց զանձինս և զօրացո՛ բառնալ կամաւ զքաղցր լուծ քոյ պատուիրանաց. աղաչանօք...

Պաղատիմք առ քեզ հոգւով 'ի հանգստեան հասեալ ժամուս մարդասէր Հոգի Աստուծոյ, յորժամ նորոգես զերեսս երկրի, և վերստին ստանաս զոգիս [1]) մարդկան, նորափետուր զարդարեա զննջեցեալսն մեր զծնեալսն 'ի քէն սուրբ աւազանաւն. աղաչանօք...

Զկենդանագիր անարատ ծնողէ քոյ արկանեմք առաջի անոխակալ տէրութեանդ քոյ, յորժամ գաս փառօք Հօր դատել զթըշնամին խաչի քոյ, ներեա յանցանաց մերոց բարեխօսութեամբ մօր քոյ և կուսի. աղաչեմք զքեզ Տէր պահպանեա զմեզ ընդ հովանեաւ խաչի քոյ սուրբ։

Հաղորդս արա և զմեզ Տէր, ընդ սրբոց քոց առաքելոցն, որք արժանի եղեն տեսանել զքեզ 'ի յարութեան քո. արժանաւորեա Տէր տեսանել զքեզ 'ի միւսանգամ քոյ գալստեանն. օրհնութիւն առաքողին 'ի բարձունս։

Ի նստիլ քո յաթոռնի դատաւոր ահեղ, աղաչանօք սուրբ Աստուածածնին յիշեա զննջեցեալսն մեր, յորժամ գայցես անճառ փառօք. քանզի քո են փառք յաւիտեանս, ամէն։

Ներսէս Կլայեցի։

---

## Ա ր ա ր ո ղ ո ւ թ ի ւ ն պ ա տ ա ր ա գ ի։

### 21

Շարական հանդերձի յորժամ քահանայն զգենու։

Խորհուրդ խորին՝ անհաս՝ անսկիզբն, որ զարդարեցեր զվերին պետութիւնդ 'ի յառագաստ անմատոյց լուսոյն, գերապանծ փառօք զդասս հրեղինաց։

Անճառահրաշ զօրութեամբ ստեղծեր զԱդամ պատկեր տիրական, և նազելի փառօք զգեստաւորեցեր 'ի դրախտն Եդենի՝ տեղի բերկրանաց։

---

[1]) Վենետիկու ժամագրքում. «զորդիս մարդկան»։

*Զարչարանօք քոյ սուրբ մարմնիդ նորոգեցան արարածք ամենայն. և վերստին մարդն անմահացաւ՝ զարդարեալ 'ի զգեստ անկողոպտելի։*

*Ընծրեածին բաժակ հրահոսան, որ հեղար յառաքեալսն 'ի սուրբ վերնատանն, հեղ և 'ի մեզ՝ Հոգիդ սուրբ Աստուած՝ ընդ պատմուճանին գքո զիմաստութիւն։*

*Տան քում վայելէ սրբութիւն. որ զգեցար զվայելչութիւն՝ սրբութիւն փառաց ընդ մէջ քո ածեալ, պատեա զմէջս մեր ճշմարտութեամբ։*

*Որ զարարչագործ բազուկս քո տարածեցեր ընդդէմ աստեղաց, հաստատեա զբազուկս մեր կարողութեամբ, համբարձմամբ ձեռաց առ քեզ միջնորդիլ։*

*Խուսմամբ թագ 'ի գլուխ պատեցես զմիտս և զգայարանս՝ խաչանիշ ուրարամբ ըստ Ահարոնի, ծաղկեալ յոսկեթել 'ի զարդ խորանի։*

*Բամից բոլորից տիրապէս Աստուած պետական, Նախորտապատ սիրով զմեզ զգեստաւորեցեր՝ քում սուրբ խորհրդոյդ լինել սպասաւոր։*

*Թագաւոր երկնաւոր, զեկեղեցի քո անշարժ պահեա. և զերկրպագուս անուանդ քում պահեա 'ի խաղաղութեան։*

*Խաչատուր Կարնեցի։*

---

## *Արարողութիւն պատարագի։*

### 22

*Ճառական խնկարկութեան սրբոյ պատարագին։*

*Յայս յարկ նուիրանաց ուխտի Տեառն տաճարի, ժողովեալքս աստանօր 'ի խորհուրդ պաշտաման պաղատանաց յառաջիկայ սուրբ պատարագիս, խնկօք անուշիւք խունկ առեալ պարեմք 'ի վերնա-*

յարկ սրահս խորանիս. ուղղութեամբ ընկա՛լ զաղօթս մեր որպէս բուրումն անուշահոտ խնկոց, տաշխից և կինամոնաց. և զմատուցօղս պահեա՛ սրբութեամբ՝ միշտ և հանապազ քեզ սպասաւորել. բարեխօսութեամբ մօր քոյ և կուսի ընկա՛լ զաղաչանս քոց պաշտօնէից: Որ գերադոյն քան զերկինս պայծառացուցեր սուրբ զեկեղեցի արեամբ քով Քրիստոս, և ըստ երկնայնոցն կարգեցեր 'ի սմա դասս առաքելոց և մարգարէից՝ սուրբ վարդապետաց. այսօր ժողովեալ դասք քահանայից՝ սարկաւագաց՝ դպրաց՝ և կղերիկոսաց, խունկ մատուցանեմք առաջի քո Տէր՝ յօրինակ ըստ հնումն Զաքարիայ. ընկա՛լ առ 'ի մէնջ զխնկանուէր մաղթանս որպէս զպատարագն Աբելի՝ զՆոյի՝ և զԱբրահամու. բարեխօսութեամբ վերին քոց զօրաց միշտ անշարժ պահեա՛ զաթոռ Հայկազնեայ:

Խնդա՛ յոյժ դուստր լուսոյ՝ մայր սուրբ կաթուղիկէ՝ մանկամբք քովք՝ Սիօն. զարդարեալ պճնեա՛ց հարսն պանծալի երկնանըման լուսաճեմ խորան. զի օծեալն Աստուած Էն 'ի յԷէն անծախապէս 'ի քեզ միշտ պատարագի. Զօր 'ի հաշտութիւն, մեզ 'ի քաւութիւն բաշխէ զմարմին և զարիւն իւր սուրբ. վասն իւր կատարման սուրբ տնօրէնութեան՝ շնորհել զթողութիւն կանգնողի տաճարիս:

Զանապական կոյսն Մարիամ՝ Աստուածածին խոստովանի սուրբ եկեղեցի, ուստի առեալ հացն անմահութեան և բաժակ մեզ ուրախարար. տո՛ւք օրհնութիւն նմա հոգևոր երգով:

Խաչատուր Կարնեցի:

---

## Ա ր ա ր ո ղ ո ւ թ ի ւ ն  պ ա տ ա ր ա գ ի:

23

Դպիրք:

Քրիստոս 'ի մէջ մեր յայտնեցաւ,
Որ. Էն. Աստուած աստ բազմեցաւ.
Խաղաղութեան ձայն հնչեցաւ,
Սուրբ ողջունի հրաման տուաւ:

Եկեղեցիս մի անձն եղև.
Համբոյրս յօդ լռման տուաւ։

Թշնամութիւնն հեռացաւ.
Սէրն յընդհանուրս սփռեցաւ։

Արդ պաշտօնեայք բարձեալ զձայն,
Տուք օրհնութիւն 'ի մի բերան՝

Միասնական Աստուածութեան,
Որում սրովբէքն են սրբարան։

Կոստանդնուպօլսոյ խորհրդատետր։

---

## Շ ա ր ա կ ա ն ք ն ա խ ա տ օ ն ա կ ա ց ։

## 24

### Ա. Սրբոյ ծննդեան ճրագալուցին։

Խորհուրդ մեծ և սքանչելի, որ յայսմ աւուր յայտնեցաւ; հովիւքն երգեն ընդ հրեշտակս, տան աւետիս աշխարհի։ Ծընաւ նոր արքայ 'ի Բեթղեհէմ քաղաքի; որդիք մարդկան օրհնեցէք, զի վասն մեր մարմնացաւ։ Անբաւելին երկնի և երկրի 'ի խանձարուրս պատեցաւ; ոչ մեկնելով 'ի հօրէ, 'ի սուրբ այրին բազմեցաւ։

Այսօր ցնծան երկինք 'ի վերուստ մեծապայծառ աւետեօք, և արարածք ամենայն զգեցան հանդերձ փրկութեան։ Այսօր յայրին ընծայեցաւ Քրիստոս որդին Աստուծոյ, և հրեղինաց բազմութիւնքն յերկնից,յերկիր վայր իջեալ։ Այսօր հովուացն տեսեալ զարդարութեան արեգակն, և ընդ հրեշտակս երգէին փառք 'ի բարձունս Աստուծոյ։

Ի հօրէ ծագեցար լուսաւորել զարարածս. արդարութեան արեգակըն Տէր փառք քեզ։ Ծընար 'ի յայրին, ընծայեցաւ Բեթղեհէմ, ար. և այլն։ Հովուաց յայտնեցար երկրպագեալդ 'ի մոգուց, ար. և այլն։ Եւ մեք երգեսցուք որ 'ի կուսէն մարմնացար, ար. և այլն։

Ընդսկիզբն էակից բանըդ Հօր, որ էիր յառաջ քան զյաւիտեանըս, և եկիր 'ի փրկութիւն ըստեղծուածոց քոց, ըզքեզ օրհնեմք Աստուածըն հարցըն մերոց։ Ծ՝ընար 'ի կուսէ անճառ միութիւն; անբաժանելի և միշտ գոլով, ոչ մեկնեցար 'ի հայրական ծոցոյ. ըզքեզ օրհնեմք, և այլն։ Ցընծութեամբ տօնեցուք ըզծընունդ քո սուրբ, որ յայտնեցար մեզ լոյս 'ի լուսոյ, և լուսով քո լցեր ըզտիեզերս, ըզքեզ օրհնեմք, և այլն։ Գործք Տեառըն զՏէր օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Ը՝զծընեալն 'ի սրբոյ կուսէն օրհնեցէք, և այլն։ Զ՝անճառելի ըզծնունդ Փրկչին գովեցէք և առաւել բարձր, և այլն։

Ուրախ լեր Աստուածածին յոյս և փրկութեան մայր, ըզքեզ, ընդունող լուսոյ, մեծացուցանեմք։ Ը՝զքեզ լուսոյ մայր և կոյս, ըզքեզ զանձըդ կենաց Աստուածային ձայնիւ ցընծութեամբ մեծա... Մայր սուրբ անարատ լուսոյն, հրեշտակային օրհնութեամբ պատուեալ ըզքեզ մեծա... Ամենիմաստ, ամենից Հայր, բազմազեղ խնամող, ստեղծող և Տէր բոլորից; անեղ և էից էակ, զոր միշտ օրհնեն զօրք անմարմնականացըն յաւէժաբար հընչմամբ։ Որ կերպարան և կնիք Հօր առեալ վասըն մեր ծառայի կերպ 'ի կուսէն, որ Էն 'ի յաթոռ փառաց անտես վերնոցն, 'ի յայրին իջեվանի և 'ի մըսուր յանբանից բազմեալ։ Զ՝ի կուսէն մարմնացեալ Բանըն, եկայք ժողովուրդք ընդ հովիւսըն բարեբանեսցուք, և ընդ մոգուցն երկրպագեսցուք, ընդ երկնային զօրսն երգեսցուք. փառք 'ի բարձունս Աստուծոյ։

Ճ՝առագայթ և կերպարան էութեան Հօր Բանդ Աստուած, ըզքեզ բարեբանեմք, ասելով. փառք 'ի բարձունս Աստուծոյ։ Որ ծագեցար 'ի մարմնի անճառապէս ճշմարիտդ Աստուած. ըզքեզ... Որ զանիծիցըն բարձեր ըզդատապարտութիւն Քրիստոս Աստուած, ըզքեզ...

Սուրբ զԱստուածածինն օրհնութեամբ մեծացուցանեմք։ Աւետաւոր հրեշտակն աւետարանէր, ըզծընեալ Փրկիչն 'ի սրբոյ կուսէն։ Ասէ. ուրախ լեր բերկրեալդ, քանզի Տէր տէրանց է ընդ քեզ։

25

Ա. Սրբոյ զատկի ճրագալուցին։

Այսօր յարեաւ 'ի մեռելոց փեսայն անմահ և երկնաւոր; քեզ աւետիք խնդութեան, հարսն 'ի յերկրէ եկեղեցի. օրհնեա 'ի ձայն ցնծութեան զԱստուած քո սիոն։ Այսօր անճառ լոյսն 'ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո; լուսաւորեա Երուսաղէմ, քանզի յարեաւ լոյս քո Քրիստոս օրհ... Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն, և քեզ ծագեաց լոյս գիտութեան, յարուցեալն 'ի մեռելոց Քրիստոս, օրհ...

Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի; արասցուք տօն ցնծութեամբ նորոգեալքս 'ի հնութենէ մեղաց, ասելով. Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։ Այսօր հրեշտակըն լուսափայլ 'ի յերկնից իջեալ, զարհուրեցոյց զպահապանսըն և սուրբ կանանցըն քարոզէր, ասելով. Քրիստոս... Այսօր Նոր Իսրայէլ կոչեցեալք 'ի Քրիստոս, ազատեալք արեամբ գառինն Աստուծոյ, պարեսցուք ընդ երկնայնոցըն, ասելով. Քրիստոս...

Այսօր մեծ աւետիք Ադամայ նախաստեղծին տըւաւ; արի որ ննջես լուսատու եղեւ քեզ յարուցեալըն Քրիստոս. Աստուած հարցըն մերոց։ Այսօր ձայն աւետեաց Եւայի գոչեն լըսելիս. դըստերքըն իւղաբերք. տեսաք յարուցեալ ըզյարութիւնն քո ըզՔրիստոս, Աստուած... Այսօր հրեշտակք յերկնից իջեալ տան զաւետիս մարդկան. յարեաւ խաչելեալըն և յարոյց ըզձեզ ընդ ինքեան, Աստուած... ԸզՏէր օրհնեցէք և բարձր արարէք ըզնա յաւիտեան։ Այսօր Տէրըն մեր յարեաւ. եկայք պարեսցուք ընդ հրեշտակս յաղթական երգով. օրհնեցէք և բարձր... Այսօր սիոն լուսոյ ծագեաց սուրբ եկեղեցւոյ յարուցեալըն 'ի մեռելոց Քրիստոս, օրհ...

Աստուածածին տաճար լուսոյ, որ մարմնով պարագրեալ անճառաբար ծընար ըզբանն Աստուած. ըզքեզ բարեբանեալ մեծացուցանեմք։ Ուրախ լեր և բերկրեա մայր և կոյս. քանզի ծընեալըն 'ի կուսէդ այսօր վերըստին յարութեամբ ծընաւ 'ի կոյս գերեզմանէն. զքեզ...։ Ցընծա և զուարճացիր հարսն 'ի յերկրէ երկնից, քանզի այսօր երկնայնոցն իջեալ տային քեզ զաւետիս յարութեան միածնի Որդւոյ քո, զքեզ...։

Այսօր ըղպառէք չարչարանացն ելից խաբայէլք փոխեցեր. 'ի փրկութիւն հոգւոց զատիկ սուրբ յարութեամբ քո Քրիստոս։ Այսօր ընդ արեանցն օրինակին անբան գառանցըն զենմանց. պարգեւեցեր մեզ գառն Աստուծոյ զարիւնըդ քո փրկական։ Այսօր ընդ անդրանկացն ազատութեան ազատեցեր ըզգերեալսն, պըտուղ կենաց նընջեցելոց և անդրանիկ մեռելոց։

Այսօր հրեշտակք 'ի բարձունս ուրախանան ընդ մարդկան, որք իջեալ 'ի յերկնից տան աւետիս աշխարհի. ցընծացէք այսօր. Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։ Այսօր զուարթունն 'ի վիմին, խընկաբերից սուրբ կանանցն փողէր ձայնիւ ցնծութեամբ պատմել աշակերտացն, ասելով. ցընծացէք այսօր Քրիստոս... Այսօր վէմին հաւատոյ և Յովհաննու սիրելւոյ ընդ հակառակս ընթացեալ 'ի գերեզման յարուցելոյն, զոր տեսեալ պատմէին. Քրիստոս... Այսօր և մեք զուարճացեալք պայծառացուք տօնիւս, ընդ հաշտութեան Աստուծոյ միմեանց արկցուք գիրկըս սիրով և միաբան գոչեսցուք. Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Մովսէս Քերթող։

---

26

## Տաղ ծննդեան։

Այսօր տօն է ծնընդեան, աւետիս.
Տեառն մերոյ և յայտնութեան, աւետիս։
Այսօր արեւն արդարութեան, աւետիս.
Երեւեցաւ 'ի մէջ մարդկան, աւետիս։
Այսօր սուրբ կոյսն անապական, աւետիս։
Ծնաւ եբեր զանմահ արքայն, աւետիս։
Այսօր հրեշտակք յերկնից իջան, աւետիս.
Ընդ մեզ օրհնեն զանմահ արքայն, աւետիս։
Այսօր դըժոխքըն սարսեցան, աւետիս.
Գունդք դիւաց յոյժ տրտմեցան, աւետիս։
Այսօր չարքըն կարկեցան, աւետիս.

Եւ ադամեանքն ուրախացան, աւետիս։
Աստղ մի պայծառ և պատուական, աւետիս.
Երևեցաւ 'ի Հընդըստան, աւետիս։
Մեծ թագաւորք ժողովեցան, աւետիս.
Յոլով գալիք և շատ իշխանք, աւետիս։
Զաստղն տեսին և զարմացան, աւետիս.
Շատ քննեցին և չիմացան, աւետիս։
Մովսէս արի՛ տե՛ս ըզՍինա, աւետիս.
Եւ զմորենին որ անկէզ կայ, աւետիս։
Ցնծա՛, ցնծա՛ Դաւիթ արքայ, աւետիս.
Հնչեա՛ զքնարն քո և խայտա՛, աւետիս։
Զոր ասացեր նախագուշակ, աւետիս.
Կատարեցաւ յոյժ գերունակ, աւետիս։
Թէ 'ի Սաբայ և յԱրաբայ, աւետիս.
Սուրբ պատարագ բերցեն նըմա, աւետիս։
Ահա՛ երեք արքայ եկին, աւետիս.
Որ երեքեանքըն անուանին, աւետիս.
Մելքոն, Գասպար և Բաղտասա́ր, աւետիս.
Որք 'ի Սաբայ և յԱրաբայ, աւետիս։
Ոսկի՝ կնդրուկ՝ զըմուռ նմա, աւետիս.
Ունին երեք ազնիւ ընծայ, աւետիս։
Ոսկին զպատիւն արքայական, աւետիս,
Կնդրուկն ըզզարդ Աստուածութեանն, աւետիս,
Զըմուռն որ էր անապական, աւետիս,
Նըշան թաղման և յարութեան, աւետիս։
Երկոտասան հազար էին. աւետիս.
յԵրուսաղէմ քաղաք մըտին, աւետիս,
Ի մէջ աստղին զհոյսըն տեսին, աւետիս.
Ունէր ըզմեր Տէրն 'ի գրկին, աւետիս։
Երուսաղէմ գըզըրգեցաւ, աւետիս,
Երբ զօրութեամբն լսեցին, աւետիս,
Յարձէ կայսեր Հերովդէին, աւետիս,
Մխեաց ըզսուր ձեռքն 'ի նոսին, աւետիս;
Մինչև խախտեալ սիւն զարդարանին, աւետիս,
Արար բազում մեռեալս նոցին, աւետիս։
Ապա սիրով արձակեցան, աւետիս.

Ի Բեթղեհէմ եկեալ գնացին, աւետիս։
Խաղային և խընդային, աւետիս.
Զնուագարանըն հընչէին, աւետիս։
Տեսին Յովսէփ և Մարիամ, աւետիս,
Յահէ նոցա փախուստ առին, աւետիս։

Մովսէս Քերթող։

---

27

Տաղ յարութեան։

Միաշաբաթ օր հանգստեան.
Կանայք եկին 'ի գերեզման.
Եւ ողբային արտասուական.
Խնդրել զՅիսուս անապական։

Ձայնեաց հրեշտակն ուրախական.
Զայն որ եդին 'ի գերեզման.
Ձեզ աւետիս յարեաւ փեսայն,
Դրունք դժոխոց խորտակեցան։

Մարիամանքն ուրախացան,
Եւ յԱստուծոյ միշտ գոհացան;
Առ աշակերտսն անդրէն դարձան.
Տալ աւետիս վասն յարութեան։

---

28

Տաղ յարութեան։

Մարիամ Մագդաղենին
փարէր 'ի մէջ պարտիզին,
Եւ հանդիպեալ Յիսուսի,
Ասէ զի՛ լաս դու ո՛վ կին.
Զի՛ լաս, զի՛ լաս, զի՛ լաս կամ զո՞ խնդրես ցաւագին.
Մի՛ լար, մի՛ լար, մի՛ լար ես եմ Որդին միածին։

Սաղարթախիտ արմաւին,
Բևեռեցայ 'ի փայտին.
Կընքեալ կոյս գերեզմանին.
Յարեայ կամօք Հօր վերին, զի լաս, զի լաս...

---

29

Երգ ծննդեան Քրիստոսի։

Ղամպարափայլ սրբոյ տօնիս, աւետիս;
Ի միտս առցուք զխորհուրդ բանիս, աւետիս;
Քանզի յերկնից Տէրն խոնարհի, աւետիս;
Ի կոյս մօրէ այսօր ծնանի, աւետիս;
Ի Բեթղեհէմ քաղաք Դաւթի, աւետիս;
Ի գերեզմանըն Եւայի, աւետիս։

Աստղ մի պայծառ յերկինս յայտնի, աւետիս;
Առաջնորդէ մոգուց դասի, աւետիս;
Առ որ եկին երեք արքայ, աւետիս;
Ոսկի կընդրուկ բերին ընծայ, աւետիս;
Տեսին զՅիսուս մանուկ տըղայ, աւետիս;
Բազմեալ 'ի գիրկս Մարիամայ, աւետիս։

Զուարթունք երկնից պար առնէին, աւետիս;
Զփառք 'ի բարձունս երգէին, աւետիս;
Զի զոր տեսին վըկայեցին, աւետիս,
Թէ Բանն Աստուած էառ մարմին, աւետիս;
Հովիւքն 'ի յայրն ընթանային, աւետիս;
Վասըն հրաշիցն զարմանային, աւետիս։

Այսօր Եւայ ընդ Ադամայն, աւետիս,
Երկրեալ հոգւով յոյժ զուարճանան, աւետիս;
Որք խայտային և ցնծային, աւետիս;
Յորժամ տեսին ըզծնունդ Փրկչին, աւետիս;

Բանն Եսայեայ աստ կատարի, աւետիս;
Թէ կոյս յղացեալ ծնցի որդի, աւետիս։

Բամք Նախահարց հոգւով խնդան, աւետիս;
Սուրբ մարգարէքն ուրախանան, աւետիս;
Զոր ասացին կատարեցաւ, աւետիս.
Աստուած յերկնից յերկիր իջաւ, աւետիս;
Որ եբարձ ըզխռովութիւն, աւետիս;
Եւ հաստատեաց զխաղաղութիւն, աւետիս։

Ուրախացեալ մեք ցնծասցուք, աւետիս;
Եւ ծնիցելոյն ըզփառս տասցուք, աւետիս;
Խորոց սրտիւ մեղայ տասցուք, աւետիս;
Սրբեալ հոգւով արտասուեսցուք, աւետիս;
Զաղօթս և զնուէրս ընծայեսցուք, աւետիս;
Եւ ընդ մոգուցն երկրպագեսցուք, աւետիս։

Խիւծեալ պիտակ մեզօք գերիս, աւետիս;
Գազար և եթ երգօղ տաղիս, աւետիս;
Մաքրեա զխորհուրդ, զմիտս և զհոգին, աւետիս;
Արդարութեամբ կեալ 'ի մարմին, աւետիս;
Որք 'ի սրբոյ տօնիս ուրքնին,- աւետտիս;
Յայսոց չարաց զերծեալ փրկին, աւետիս։

Ղազար վարդապետ Ճահկեցի։

---

30

Նուագ 'ի ծնունդն Քրիստոսի։

Անհամեմատ և անսահման եղանակաւ յղացելոյդ,
օր, օր, օր, օր, օր, օր, օր։
Սքանչելի օրինակաւ 'ի կոյս մօրէս ծնեցելոյդ,
օր, օր, օր, օր, օր, օր. օր։

Ի յԱնսայեայ գուշակելոյդ, Էմմանուէլ[1]) մանկացելոյդ։
Ի Բեթլէհէմ յանշուք այրի՝ իշխան հովիւ մեզ
    յայտնելոյդ, օր, օր, օր, օր, օր, օր, օր։
Ի ռամկական դասուց հովուաց՝ ընդ զօրս երկնից
    փառաւորելոյդ, օր, օր, օր, օր, օր, օր, օր։
Նախապատուիլ տեսանողաց՝ բանից այսօր կատարելոյդ։
Մինչ չև ծնեալ քո 'ի կուսէս՝ յոլորտս երկրի
    հռչակելոյդ, օր, օր, օր, օր, օր, օր, օր։
Նագմամբ լուսոյ՝ աստեղ նորոյ՝ մոգ արքայից
    յայտնեցելոյդ, օր, օր, օր, օր, օր, օր, օր։
Ոսկի կնդրուկ պատարագօք՝ երկրպագեալ պաշտեցելոյդ։

Սերովբէ վարժապետ Պատկանեան։

Ծանօթ. Ի ծնունդն Քրիստոսի ասացեալ 'ի դիմաց Տիրամօրն՝ իբր երգ օրօրոցի առ որդին Յիսուս։ 'Ի կիւրակէս, յաւուրս տօնից, նոյնպէս 'ի տօնի ծննդեան Քրիստոսի՝ երգի 'ի սկիզբն պատարագին իբրև մեղեդի, փոխանակ «Յայս յարկ Նուիրանացի». երբեմն զկնի «Քրիստոս պատարագեալն» և յառաջ քան զասելն սարկաւագի «Երկիւղիւ և հաւատով յառաջ մատիք», որպէս սովորութիւն է յեկեղեցիս Հայաստանեայց՝ առ չընդհատելոյ զժամերգութիւնն ասել զմեղեդի կամ զերգ ինչ՝ մինչ չև աւարտեալ իցէ քահանայն զխորհուրդ պատարագին լռիւ և երբեմն յաւարտ սրբոյ պատարագին յելանել ժողովրդեան յեկեղեցւոյ։

---

## 31

Նուագ առ ամեներանեալ Կոյսն։

Ի բարձունս երկնից՝ յարևելս ուղղեալ,
Խանձրաբարդ լուսատիպ՝ մեծ ամպ բարձրացեալ.
Ընկարակն ուղղածիր՝ շրջան բոլորեալ,
Շուրջ զօրովք զօրք երկնից՝ դասադաս պարեալ.
Ձքնաղ տեսարան՝ մեծ հանդիսարան.

---

[1]) Էմմանուէլ, բառ Եբրայեցոց, նշանակում է. «Աստուած մեզ հետ, ընդ մեզ Աստուած»։

Մեզ Սիոնի մանկանցս՝ նոր Աւետարան։
Երգեցիկք քաղցրաձայնք՝ ընդէ՞ր լռեալ կայք,
Նուագաց Սրովբէից՝ լերուք համաձայնք։

Ի կեդրոն շրջանին՝ աթոռ կառուցեալ,
Վերամբարձ սեամբ լուսոյ՝ կամար առձգեալ.
Քառակերպ կենդանեաց՝ զաթոռով կացեալ,
Չոյլք ամենայն վերնոց՝ անդ ներկայացեալ.
Զքնաղ տեսարան՝ մեծ հանդիսարան,
Մեզ Սիոնի մանկանցս՝ նոր Աւետարան։
Երգեցիկք քաղցրաձայնք՝ ընդէ՞ր լռեալ կայք,
Նուագաց Քերովբէից՝ լերուք համաձայնք։

Ի լուսակերտ գահոյս մեծ դշխոյ բազմեալ,
Վայելչութեամբ գեղոյն՝ չքնաղ պանծացեալ.
Նմանատիպ յէակս՝ չէ ոք ստեղծեալ,
Կամ յապայն ծնանիլ՝ ուրուք հանդերձեալ,
Զքնաղ տեսարան՝ մեծ հանդիսարան,
Մեզ Սիոնի մանկանցս՝ նոր Աւետարան։
Երգեցիկք քաղցրաձայնք՝ ընդէ՞ր լռեալ կայք,
Նուագաց Սրովբէից՝ լերուք համաձայնք։

Զգլխով Թագուհւոյն՝ արեգակն ծագեալ,
Եւ ընդ գարշապարօք՝ լուսին նոր ծնեալ.
Մոլորակաց բնաւից՝ զիւրեաւ ցոլացեալ,
Եւ համակ աստեղաց՝ անդէն գումարեալ.
Զքնաղ տեսարան՝ մեծ հանդիսարան,
Մեզ Սիոնի մանկանցս՝ նոր Աւետարան։
Երգեցիկք քաղցրաձայնք՝ ընդէ՞ր լռեալ կայք,
Նուագաց Քերովբէից՝ լերուք համաձայնք։

Ի գիրկս Տիրուհւոյն՝ մանուկ առբազմեալ,
Աստուածորդի Փրկիչ Յիսուս անուանեալ,
Յահէ նորա երկինք համայն սասանեալ,
Թեւասքող անմարմնոց՝ սուրբ սուրբ Տէր կոչեալ [1]),

[1]) Գիրք Եսայեայ, Գլ. 6. համար 2 եւ 3։

Զքնաղ տեսարան՝ մեծ հանդիսարան,
Մեզ Սիոնի մանկանցս՝ նոր Նուէտարան։
Երգեցի՛կք քաղցրաձայնք՝ ընդէ՞ր լռեալ կայք,
Նուագաց Սրովբէից՝ լերուք համաձայնք։

Ս. Վ. Պատկանեան։

Ծանօթ. Յաւուրս կիւրակէից և տօնից երգեն զայս՝ ի տեղի «Բարեխօսութեամբ մօր քո և կուսի» (զոր սովորաբար 'ի բանիլ վարագուրի ասեն բարձրաձայն) յորժամ բացեալ վարագոյր խորանին՝ պատարագիչն Թափօրիւ անցանէ խնկարկելով 'ի մէջ ժողովրդեան, և բազում անգամ զկնի աւարտման պատարագին։

## 32

Նուագ առ սուրբ Խաչն։

Սաբեկայ ծառովն նշանեցար առ Իսահակաւ,
Երկնահաս սանդխով ցուցար առ Յակոբաւ.
Փայտիւ կենաց՝ ձայնիւ՝ հոգւոյն շնորհիւ,
Արքայորդին վերագոչէր բնաւից,
Նոյն սեամբ լուսոյ՝ փայլեալ առ Իսրայէլի.
Ի ծովահերձ ցուպն Մովսիսի,
Ի բազկաբարձ հրաշմն 'ի մարտի,
Անաղօտ արեւ, անսպառ պարգև, Նիշ սեռակնաձև,
Յոյս յարատեւ, Քառաթեւ. (կրկնել պարտէ).
Անաղօտ արեւ, անսպառ պարգև, Նիշ սեռակնաձեւ,
Յոյս յարատեւ, քառաթեւ։

Անպարտելի զէն հրալի,
Դրանն Եդենայ բանալի,
Համազանց քառակուսի,
Վահան հովանի.
Պարիսպ ամրութեան,

Դրօշմ զգայութեան.
Սուրբ և անմահ հզօրին,
Պաղպաջունք ոսկի.
Դահոյք Տէրունի,
Կառք արքայենի սքանչելի։

Որ Հօրն Էակից,
Հոգւոյն փառակից.
Երրեակ միութեան համագոյակից։
Որ Բանն և յՈրդին,
Յաներբ Միածին՝ մնաց անքնին.
Յանեղ ծոցածին, յիջեալն 'ի Հօրէ առ Աստուածածին.
Ի մօրէ անծին, հրաշիւք կուսածին,
Ըստ ամենայնի յանչարչարն 'ի կենաց փայտդ բեւեռեալն,
Յարքայն փառօք 'ի յաթոռդ բազմեալն,
Ոսկեհուռ զարդուք զարդարեալ,
Յանմահ փեսայն քեւ առագաստեալն.
Յաղթող նշանաւ փառաւորեալն,
Ընբարբառ մաղթանօք միշտ բարեխօսեա։

Ս. Վ. Պատկանեան։

Ծանօթ. Երգեն նոյնպէս յեկեղեցիս յանմահ պատարագին ըստ տեղւոյն պատշաճի, մանաւանդ յաւուրս տօնից սրբոյ խաչի։

---

## 33

### Երգ յարութեան Քրիստոսի։

Յայգուն միաշաբաթին,
Իւղաբերքն լալագին,
Ի գերեզման հասանին,
Խնկել զՏէրունեան մարմին։
Ահա ձայն աւետեաց սուրբ հրեշտակաց,
Աւետիս ձեզ և ամենայն հաւատացելոց,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Դարձան յԱռաքեալսն եկին,
Մեծ աւետիս մատուցին,
Եթէ յարեաւ կենդանին,
Հրեշտակք յայտնի բարբառին։
Ահա ձայն աւետեաց սուրբ Հրեշտակաց,
Աւետիս ձեզ և ամենայն հաւատացելոց,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Պետրոս, Յովհան Միրելին,
Ի գերեզման փութային,
Զկտաւսն լոկ գտանէին.
Քանզի չէր անդ կենդանին։
Ահա ձայն աւետեաց սուրբ Հրեշտակաց,
Աւետիս ձեզ և ամենայն հաւատացելոց,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Մինչդեռ նոքա դառնային,
Լայր Մարիամ ցաւագին,
Տեսանէ զՅիսուս Միածին,
Ի տեսիլ պարտիզպանին։
Ահա ձայն աւետեաց սուրբ Հրեշտակաց,
Աւետիս ձեզ և ամենայն հաւատացելոց,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Տէրն ասէր. մի՛ լար ով կին,
Ես եմ որդին Միածին,
Ե՛րթ և պատմեա Պետրոսին,
Տեսցէ զիս 'ի Գալիլեա լերին։
Ահա ձայն աւետեաց սուրբ Հրեշտակաց,
Աւետիս ձեզ և ամենայն հաւատացելոց,
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Ս. Վ. Պատկանեան։

Ծանօթ. Հասարակեալ է յեկեղեցիս և գործածական յեկեղեցական երգոց; ի զատկի, յաւուր յարութեան Տեառն, նոյնպէս յաւուրս կիւրակէից 'ի վերջ սրբոյ պատարագին, մինչ ժողովուրդն, համբուրեալ զԱւետարանն, մեկնի յեկեղեցւոյ։

---

## 34

### Երգ 'ի յարութիւնն Քրիստոսի։

Լալով Մարիամ յետս դարձեալ,
Զիւր ցանկալի զՏէրն տեսեալ,
Եւ պարտիզպան զնա կարծեալ,
Յորմէ գթով եղև հարցեալ.
Կի՞ն դու՝ զի՞ լաս, կի՞ն դու՝ զի՞ լաս,
Զի՞ լաս, կամ ընդէ՞ր հառաչես,
Մի՛ լար ցաւօք՝ մի՛ ողբար, ես եմ
Խաչեալ, թաղեալ և յարուցեալ։

Մի՛ մերձենար՝ չեւ եմ ելեալ,
Ե՛րթ յԱռաքեալսն՝ որք են ընտրեալ.
Պատմեա՛ զինէն՝ առ Հայր երթայ,
Յիմ և 'ի ձեր Հայր համբառնալ։
Կի՛ն՝ արդ մի՛ լար, կի՛ն՝ արդ մի՛ լար.
Փոխեաց 'ի բերկրանս, և ցնծա՛. ես եմ
Մահուամբ իմով՝ լուծիչ մահու։

Ս. Վ. Պատկանեան։

---

## 35

### Երգ յարութեան Քրիստոսի։

Իւղաբերքն գան 'ի գերեզման,
Լսեն զձայն սուրբ յարութեան,
Լցեալ սիրով Աստուածական,
Առ աշակերտսն անդրէն փութան,
Աւետիս ձեզ, աւետիս՝ ձեզ, Տէր մեր յարեաւ,
Քանզի չէր անդ և հրեշտակք բարձր քարոզեն.
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց։

Խորախուսեալ նոցա ընդ այն,
Առ Առաքելայն ճեպով փութան,

. . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . .

Աւետիս ձեզ, աւետիս ձեզ, Տէր մեր յարեաւ,
Քանզի չէր անդ, և հրեշտակք բարձր քարոզեն.
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց:

. . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

Զվարշամակն եւ զկտաւսն,
Գտանեն անդ 'ի մարմնոյն ունայն.
Աւետիս ձեզ, աւետիս ձեզ, Տէր մեր յարեաւ,
Քանզի չէր անդ, և հրեշտակք բարձր քարոզեն.
Քրիստոս յարեաւ 'ի մեռելոց:

Ս. Վ. Պատկանեան:

---

## 36

### Երգ յարութեան Քրիստոսի:

Որ շաբաթուս նսեմանայ.
Գիշերավարն անդ ցոլանայ,
Յայց ելցուք սուրբ գերեզմանին,
Տեսցուք զիարդ մեզ այգանայ.
Յուշ լիցի բանն մահուան թաղման,
Յետ եռօրեայն և յարութեան:

Ահաւասիկ սուրբ գերեզման,
Զիա՞րդ լսի շաչիւն շարժման,
Ո՞ւր է զուարթունն, որ առ վիմին.
Զի՞ վառ վառի ըստ փայլական,
Յուշ լիցի բանն մահուան թաղման.
Յետ եռօրեայն և յարութեան:

Տեսէք զզօրս որք կարգեցան.
Որպէս յահէ սասանեցան,
Մա՛հ պահապան Տեառն էին.
Ըստ մեռելոց անշնչական,
Յիշեսցուք արդ զբանն Թաղման.
Յետևաբար և զյարութեան:

Ձա՛յնէ հրեշտակն ձայն բերկրութեան,
Մեզ աւետէ զբան յարութեան.
Եւ հրաւիրէ ՚ի տես շիրմին,
Ո՛չ մնալ մեզ յերկբայութեան.
Հաւաստի էր բանն մահուան,
Հաւաստի և ձայն յարութեան:

Ըստ զուարթնոյն վերադարձցուք,
Եւ զաշակերտսն բերկրեսցուք,
Յարեաւ Որդիդ Տէր մեր Յիսուս.
Մեծ աւետիս մօրն մատուսցուք,
Ճ՛շմարիտ է տեսիլս և ձայն,
Ճ՛մարիտ և բանս յարութեան:

Ս. Վ. Գաւկանեան:

Ծանօթ. Որպէս զայս նոյնպէս և նախընթաց երգսն, ասացեալ ՚ի Յարութիւնն Քրիստոսի, երգեն երբեմն յետ ասելոյ «զՔրիստոս պատարագեալն» կամ «զգոհանամք զքէն Տէրն» (եթէ չիցէ աւարտեալ պատարագիչն՝ զիւր խորհուրդ) և երբեմն զկնի աւարտման պատարագին, ըստ նմանութեան նախայիշատակելոցն երգոց:

---

37

Աներատ գառին քառատոլ սեղան,
Զ՚էն այսահալած, կենաց գրաւական,
Ինձ օգնեա՛, ողորմեա՛,
Ի Թըշնամեաց ազատեա՛:

Լարեն ինձ թակարթ ժանտից չոկք ահեղ,
Յիմ կորուստ բերկրին իբր անհատ հեղեղ.
Զիս զերծո՛, ամրացո՛,
Քո նըշանաւդ ապրեցո՛։

Նման յեղկելիս զմահաթոյն քարբից,
Ընդ լաց իմ բերկրին, ո՜հ, ո՛ւր դիմեցից.
Ափշեցայ, ցնորեցայ.
Սուրբ խաչ՝ օգնել ինձ փութա՛։

Սորմոք, սուգ, կըսկիծ եւ երկունք մահուան,
Անթիւ տառապանք զինեւ շըջեցան.
Քառաթեւ, լուսաձեւ,
Ձըգեա՛ առ իս զքո սուրբ թեւ։

Դառնացան իմ կեանք յորէս ծընընդեան,
Յո եւ գընացի՝ միշտ գըտի դարան.
Հալեցայ, մաշեցայ,
Յամբարըշտաց ո՛չ զերծայ։

Առ դրան տաճարիդ արդ կամ գետնամած,
Հայցեմ զօգնութիւն խաչիդ պարծանաց.
Յիս գըթա՛, խընայեա՛,
Զանհուն վէրս իմ բըժշկեա՛։

Բախացո՛ զիմ սիրտ ձայնիւ ցընծութեան,
Նորոգեա՛ զիմ կեանս, զիս 'ի հաղբից հա՛ն.
Ո՛չ երթայց 'ի քոց դրանց՝
Չեւ առեալ զիմ խընդրուած.

Երանի՜ է ինձ, զի եմ քո ծառայ,
Որդի աղախնոյդ, շնորհացդ ենթակայ.
Յիս հեղցես լիապէս
Զխաչիդ նըպաստ յայտնապէս։

Արդ՝ արա՛ առ իս նըշան բարութեան,
Ներկեա՛ ամօթով զնեղչացս երախան.

փա՛ռք խաչիդ Քրիստոսի,
Սեղեղոյս ապաւինի։

Նշոյլ սրբարար խաչիդ յիս ծագի,
Հոգիս մորմոքի,[1]) յոյս իմ արծարծի.
Զիս կանգնեա՛, պաշտպանեա՛,
Ընդ հովանեաւդ պարըսպեա՛։

Յարութիւն վարդապետ Ալամդարեանց, 4 մարտի, 1834 Թ. 'ի Նոր-Նախիջեւան, Դօն գետի վերայ։

---

38

Տաղ սրբոյ Երրորդութեան։

Անճառ անհաս Ստեղծող գոյութեանց բնաւից,
Կարողութիւն անհուն, Հայրըդ համայնից.
Շնորհեա ինձ զօրութիւն մըտաց և բանից,
Պարզապէս ճանաչել զԱրարիչդ էից։

Պարզօրէն ճանաչմամբ՝ բնութիւն անքընին,
Ծընանիս զիմաստութիւն՝ զբանըն անմարմին,
Որով ճանաչիս Էութիւնըդ անզըննին,
Լուսաւորեա՛ գիտութեամբ զմիգամած անձն իմ.

Անհունատենչ անչափ սիրով սիրոյ քոյ
Բղխի հոգիս միշտ սէր 'ի քէն և յՈրդւոյ,
Քանզի ճանաչմամբ շարժիս 'ի յանհուն սէր քոյ,
Հեղ յիս զսէր շնորհաց, ո՛վ Հայրըդ լուսոյ։

Զօրհնաբանողս անուան Աստուածութեան քոյ,
փրկեա՛ 'ի զգայական և յունայն սիրոյ,
փառաւորեմք զանբաւ կարողութիւնդ քոյ
Ըստ իմաստութեան Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

---

1) Հայրապետ Ալեքսանեանցի ձեռագրի մէջ, «Նորոգի»։

## 39

Առաւօտ լուսաբեր Հայաստան երկրի,
Բուրաստան ծաղկախիտ կողմանցն Հիւսիսի,
Նախկին լուսաւորիչ, պըսակ պանծալի.
Թադէոս Առաքեալ՝ ընդէ՞ր-կաս հեռի։
Ա՜հ ո՜հ, մանկունք Սիոնի. (կրկնեա՛)
Պար առեալ ցընծացէք 'ի սոյն խընճոյի։

Ընդարմացեալ բուսոց ջուր կենդանութեան.
Հոգւով տրտմեցելոց բաժակ բերկրութեան.
Դու պարիսպ հաւատոյ, նեղելոց պաշտպան,
Թադէոս Առաքեալ, և այլն։

Երգնակ աւետաբեր կենաց փրկութեան,
Շուշան լուսատեսիլ գուշակող գարնան,
Ցուցար մեզ բարեաց շընորհ էական.
Թադէոս Առաքեալ, և այլն։

Զօրութեամբ սուրբ Հոգւոյն զաշխար արարեր,
Թորգոմեանըն ազգի լոյս մեծ ծագեցեր,
Զսուրբ կոյսըն Սանդուխտ յերկինս վերածեր,
Թադէոս Առաքեալ, և այլն։

---

## 40

Ողբ կտակի առուր ուրբաթու մեծի, որ 'ի բերանոյ Մօր խաչեցելոյն Յիսուսի, եղանակեալ ձայնիւ ասի։

Կանայք ամենայն՝ քորք իմ սիրական,
Եկայք Գողգոթայ՝ դուք ամենեքեան,
Ողբս յօրինեցէք՝ երգօք զանազան,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Սըգալի Մարիամ՝ այժմ անօգնական,
Կարօտով իմ որդւոյս՝ կամ 'ի յերերման,
Զօրութիւնք Հըզօրք՝ Հրեշտակք երկնային,
Պետք և տէրութիւնք՝ և զօրք վերնային,
Տեսէք զիմ որդին՝ զխաչեալն 'ի փայտին,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ Թըռչունք երկնից՝ և ձըկունք ծովու,
Լուսին, արեգակն՝ աստղ առաւօտու.
Ահա՛ մըթացաւ՝ օրն իմ լուսատու,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Այրք Լիբանանու՝ և ծառք անտառաց,
Նըռնենիք այգեաց՝ և տունկք պարտիզաց,
Ծովք և գետք ամէն՝ և ջուրք աղբերաց,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ դո՛ւք մեղաւորք՝ որդիք ադամայ,
Վասըն ձեր խաչի՝ որդիս Մարիամայ,
Զի բացցէ զփակեալ՝ ըզդուռն Եդեմայ,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Նորածին մանկունք՝ սուրբ աւազանին,
Գեղարդեամբ խոցի՝ որդեակս 'ի խաչին,
Ջուր առատ բաշխէ՝ ծննդեան ձեզ կըրկին,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ սուրբ քահանայք՝ պաշտօնեայք լուսոյ,
Զմաննայ ձեզ բաշխէ՝ 'ի բացեալ կողոյ,
Զմարմին և զարիւն՝ սուրբ ուխտի նորոյ,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Կանայք պատուականք՝ դըստերք եւայի,
Որք գիտէք ըզգութ՝ ծընողաց սրտի,
Խոցիս մորմոքի՝ սիրտըս տոչորի,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ սուրբ Սիմէոն՝ գովեալ ծերունի,
Այսօր բօթալից՝ բան քո կատարի,
Արդ էանց յանձն իմ՝ սուր նենգաւորի,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ Հայր երկնաւոր՝ խընդրեմ ես 'ի քէն,
Հոգիդ սուրբ ընկալ՝ զաղաչանս յինէն,
Տո՛ւր ինձ արտասուս՝ ծովու ջուրն ամէն,
Լացից ողբացից՝ զվշտացեալ անձն իմ. սըգա։

Ո՛վ սուրբ Յօհաննէս՝ Որդւոյս սիրելի,
Եւ սուրբ Մարիամ Մագդաղենացի,
Ողբակից լերուք՝ մօրըս Յիսուսի,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Խոր կըսկիծ մահու՝ իբր ալեաց ծովու,
Առիս խաղացին՝ սաստկագին հովու,
Գոռան և գոչեն՝ որպէս առիւծու,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ի սուրբ Բեթղեհէմ՝ անբանից յայրին,
Ըզփառք 'ի բարձունս՝ հրեշտակք երգէին,
Արդ բարձաւ այսօր՝ փառքս ամենեւին,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Լալով ողբալով՝ սիրտս ո՛չ հանդարտի,
Խոցոտեալ հոգիս՝ ո՛չ մըխիթարի,
Այսօր զմահ խնդրեմ՝ 'ի ձեռս չանկանի,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Ո՛վ իմ փարելի՝ որդեակ սիրելի,
Մի՛ թողուր այսպէս՝ զմայր քո խըղճալի,
Ընդ քեզ մեռանիլս՝ է ինձ երանի,
Լացէք ողբացէք՝ ձայնիւ միաբան։

Գէորգ վարդապետ Ղափանցի։

## 41

### Տաղ ՚ի վկայուհի սուրբ Խանում, նահատակ ՚ի Թոփրաք Քալէ։

Իմ սիրտս էլ վառեցիր սիրովդ, սուրբ Խանում.
Հեռուվանց մայլեցայ հոտովդ անպատում.
Փարատեց ցաւերս, սիրտըս լըցվաւ խընտում.
Ցաւոց դարման տըրուար մարդկանց, սուրբ Խանում։

Վարդ բուսար փըշոց մէջ՛ գոյնըդ աննըման.
Գեղեցիկ պատկերիդ աշխարհք զարմացան.
Փայլուն եւ նախշունիկ աչքերուդ վերան՝
Սեւ ունքերըդ սիրտ կու տաղէր, լոյս Խանում։

Զերդ տատրակ ողջախոհ մընչէիր ի խղեդ.
Երգիդ մըրմունջք լըսողք մայլեցան ձէյնիդ.
Քեզ ձէյնէկից դասին խումբք հըրեշտէկիդ,
Խայտան ցընծան բերկրին ձէյնովդ, կոյս Խանում։

Ռահան, նարկիզ, քըրքում, ծաղիկ նունափար.
Թոփրաք խալայ պարտէզ դու մէջ ծաղկեցար.
Հեռացար մարդկանցմէ տան մէջ փակվեցար,
Բայց սըրբութեան հոտըդ յայտնեց քեզ, Խանում։

Թագաւորին երկնից քեզ նըւիրեցիր,
Գըլխուդ զարդարանքնին արիր ցան եւ ցիր,
Թողեր վարդ՝ մանուշակ, շուշան քաղեցիր,
Ծոմ պաք աղօթք քու զարդք, ճըգնող սուրբ Խանում։

Վերջապէս արիւնովըդ հոգիդ գնեցիր,
Կուսան եւ մարտիրոս անուն թողուցիր,
Հայրենիքըդ քեզմով պայծառացուցիր,
Գերեզմանըդ ցաւոց բըժիշկ, սուրբ Խանում։

Բազմավէպ, 1859 Թ. Ե. 70։

---

42

Յորդորակ առ ուխտաւորս։

Յառաջ քան զբարերար արեւու երեւել
Երթիցուք 'ի Սուրբ-Խաչ՝ զմեր սուրբ ուխտն կատարել.
Աստուծոյ Հօր մերոյ զքաղցր շնորհըս վայելել,
Միամիտ սուրբ սրտիւ Տեառն երկրպագանել,
Լալագին զհրաշագործ Խաչ փրկչին համբուրել,
Մեր բազում յանցանաց քաւութիւն թախանձել։
Արդ՝ զամբիծ Տիրամայրն բարեխօս մեզ կալցուք,
Զամլորդի Կարապետն մեզ նըպաստ կարդասցուք.
Մեր հոգւոց լուսատու զՍուրբ-Գրիգոր կոչեսցուք,
Ընդ սոցա մաղթանաց զաղօթս մեր խառնեսցուք։
Դորանց փառաց քրիստոսեան տաճարին բաղձասցուք,
Խունկ եւ մոմ լիաձեռն Բարձրելոյն մատուսցուք։
Արբցուք անդ յաղբերացն ջուր անոյշ կենդանի,
Աղտաբոյծ թաւ ուռիքն մեզ լիցին հովանի։
Բախասցուք երկնառաք ցընծութեամբ 'ի հոգի,
Ուշ դիցուք նուագաց թըռչնակաց սիրալի։
Երանի՜ եկողաց 'ի Սուրբ-Խաչն վասն ուխտի,
Նոցա սիրտ եւ հոգի շնորհօք Տեառն լիասցի։
Արդեօք՝ ո՞յք 'ի վանացս ձեռնունայն գընացին,
Իւրեանց սուրբ անարատ բաղձանաց ոչ հասին։
Նըշանաւ սուրբ խաչիս գունդք դիւաց հալածին,
Մեր հոգիք եւ մարմինք 'ի չարեաց ազատին։
Ցաւք եւ ախտք առ 'ի մէնջ առժամայն փարատին։
Ո՜ն եկա՛յք երթիցուք յուխտ 'ի ծունր Սուրբ-Խաչին։



## ԳԼՈՒԽ Բ։

---

### ՈՐՈՐՈՑԻ (ՕՐՕՐՕՑԻ) ԵՐԳԵՐ։

### 43

Քո՛ւն էղիր, պալաս, աչքըդ խուփ արա՛,
Նաշխուն աչքերուդ քուն թող գայ վըրայ.
Օր օր օր պալաս, օր օր ու նանի,
Իմ (այս անուն) [1]) քունը կըտանի։

Ոսկի խաչ վիզիդ՝ քեզի պահապան.
Նարօտ կապիլ է ծարէն տէր պապան.
Օր օր օր, պալաս, օր օր ու նանի.
Իմ (այս անունին) քունը կը տանի։

Ա՛վլի հիլուններ կախել եմ ես ալ;
Նազար չես առնուլ, քո՛ւն էղիր, մի՛ լալ.
Օր օր օր, պալաս, օր օր ու նանի,
Իմ (այս անունին) քունը կը տանի։

Ես քանի մօրըդ անքուն աչքովը
Անցել է օրեր օրօցքիդ քովը.
Օր օր օր, պալաս, օր օր ու նանի,
Իմ (այս անունին) քունը կը տանի։

Օրօցքըդ օրեմ; օրով բոյ քաշիս,
Ա՛ըղկըտան ծանով սիրտըս չի մաշիս.
Օր օր օր, պալաս, օր օր ու նանի,
Իմ (այս անունին) քունը կը տանի։

---

1) Զոր օրինակ. իմ Արամիս, Եղիսաբեթիս և այլն։

Դուն՛ ալ քո՛ւն եղիր, ինծի ալ քուն տուր,
Սուրբ Աստուածամայր (այս անունին) քուն տուր.
Օր օր օր, պալաս, օր օր ու նանի,
Իմ (այս անունին) քունը կը տանի։

Ռափայէլ Յէր-Գաբրիէլեան Պատկանեան։

— —

44

Ինչէ՛ ո՛վ իմ սիրուն մանկիկ,
Ինչէ տեսնեմ դու մըշիկ,
Անոյշ անոյշ ննջէ հանդարտ,
Հանգստացիր քիչ մը արդ։

Օր օր ասեմ քեզ որդեկիս,
Շատ օր տեսնես, շատ ապրիս,
Օր օր ասեմ աղուոր տըղուս,
Օրեր մաղթեմ սիրելւոյս.
Օր օր ասեմ մատաղ մանկանս,
Որ ունենայ երկար կեանս։

Ա՜հ, երբ ըզքեզ պիտի տեսնեմ,
Զերդ մէկ տըղեկ գեղադէմ
Գնալ, վազել ու վազվըզել
Հասակակցացդ հետ խօսել։

Օր օր օր օր իմ տատրակիս,
Օր օր ասեմ զաւակիս.
Օր օր օր օր իմ գեղեցկիդ,
Քեզ, իմ հոգւոյդ հատորիդ,
Օրեր մաղթեմ բոլոր սրտով,
Օր օր ասեմ խնդումով։

Եւ՜ երբ լինիս հսկայ կորիճ,
Լինելու չես խարդախիչ

Հայոց ազգին, մեր Հայրենեաց,
Հայերու բարեկամաց։

Օրեր, օրեր քեզ շատ մաղթեմ
Որ՝ Հայրենիք մեր վսեմ,
Գեղածիծաղ ժպիտներովդ
Եւ իւր օրհնեալ անունով,
Արծարծէ յիս բարի յոյսեր,
Ու ի քեզ էլ լաւ զգացումներ։

Բայց նաև պէտք է հեռանաս
Այն գործերէն ազգավնաս,
Որք ազգամոլ հռչակեն զմարդ,
Քան ազգասէր ոք հանդարտ։

Օրեր մաղթեմ քեզ յԱստուծոյ,
Քեզ, իմ որդւոյդ միայնոյ,
Խարտեշագեղ գանգրամազիդ,
Հրեշտականման իմ զաւկիդ։
Օր օր օր օր օր օր օր օր,
Յայս զօրէ ձայն քոյոյ մօր։

Ապա թէ որ այսց հակառակ
Շարժիս ի գործսդ, որդեակ,
Գիտնաս որ ես էլ մայրըդ չ'եմ,
Ու, օրհնելու տեղ, կ'անիծեմ։

Օր օր օր օր հարազատիդ,
Օրեր մաղթեմ միածնիդ։
Կը պաղատիմ ես Տիրոջմէն,
Որ այս մտածմունքս փուճն ըլլեն,
Եւ քեզ սիրոյդ զոր ես ծնայ,
Պահապան ինքը կենայ։

Միթէ այն օրն տեսնեմ պիտի,
Որ ծերութիւնս քեւ սփոփի,
Եւ երբ աղէկ մը ծերանամ,
Ըզքեզ նեցուկ ունենամ։

Օր օր առեմ, օր օր օր օր,
Որ շնորհէ Հայրն երկնաւոր.
Օրեր մաղթեմ, որ շատնայ օրդ,
Յետոյ նեցուկ լինիս մօրդ,
Որ այն օրեր շատ շատ ՚օր, օր
Մաղթեմ քեզի բոլոր օր։

Ս. Գնունի։

---

45

Աղասու մօր երգը։

Զարթի՛ր, մանուկ իմ նազելի, բա՛ց այդ պայծառ աչերը,
Թերթերունքէդ քունը թօթուէ՛, գիրկը հանգի՛ր քու մօրը.
Բա՛ւ քեզ որքան բարի հրեշտակք հեքաթ ասին երազում,
Այժմ արի՛ քեզ այն պատմեմ, ինչ պիտ՝ տեսնես աշխարում։
Զարթի՛ր, որդեակ, քանի՞ քընես,
Բա՛ց աչերըդ այդ նաշխուն,
Ուր որ մայրըդ իւր բաղդ, փառքը,
Կեանք ու արևն է տեսնում։

Դուն կըմեծանաս, բոյ կըքաշես—չինար բոյիդ ես ղուրբան,
Քեզ ուժ կուտան Մասսի քաջքը, որ դու լինիս քաջ Վարդան;
Իմ մատներով մի ոսկեթել մէջքիդ գօտի եմ կարել,
Գօտիիցըդ թուր կըկապեմ, այն էլ ինքս եմ սըրել։
Զարթի՛ր, որդեակ, քանի՞ քընես,
Բա՛ց աչերըդ այդ նաշխուն,
Ուր որ մայրըդ իւր բաղդ, փառքը,
Կեանք ու արևն է տեսնում։

Մեր բակումը ձի է կայնած՝ քեզ է մընում անհամբեր,
Զարթի՛ր, որդեակ, քանի՞ քընես, առ քու թուրը մահաբեր,
Քու Հայ ազգը հեծեծում է, ձեռքը, ոտքը շղթայած,
Քու եղբարքը գերութեան մէջ... քա՛ջ, միայն դո՛ւ ես քընած...

Զարթիր, որդեակ, քանի՞ քընես,
Բա՛ց աչերըդ այդ նաշխուն,
Ուր որ մայրըդ իւր բաղդ, փառքը,
Կեանք ու արեն է տեսնում։

Չէ, իմ որդին շուտ կըզարթի, ձին կըհեծնէ սանձակոծ,
Հայի արցունքը կըսրբէ, կը դադրացնէ լաց ու կոծ։
Հա՜յ եղբայրներ, քիչ էլ կացէք, իմ Նազարին զարթեցաւ,
Գօտին կապեց, թուրը կախեց ու իր նըժոյգ ձին նըստաւ։

Ռափայէլ Տէր-Գաբրիէլեան Պատկանեան։

---

## 46

Մուխամմազ ի պատիւ սիրական որդւոյ իմոյ։

Լոյս կուրացած աչքերովս միշտ քեզի տեսնա՛լ եմ ուզում, [1]
Մին բոպէ չի տեսնալիս երեխի պէս լալ եմ ուզում։ [2]

Կամենումեմ՝ որ հասանիս իշխանական աստիճանի,
Զի լինիցիս կենցաղումս դուռն ամեն դատաստանի,
Որ կարենաս հովիւ լինիլ զուլմից նեղացած ինսանի,
Գլխիդ մարգարտաշար գդակ, հագուստդ ողջ ալ եմ ուզում։

Ուզումեմ՝ մինակ դու լինիս բոլոր աշխարհքի դատողն;
Շնչաւորքն ոտդ պաչեն, լիզեն քօշիդ տակի հողն;
Քեզ ատողին մահն տանի, սպանվի վատըդ խօսողն;
Թէ ուզես գիտել՝ ես ո՞վ եմ, լաւ ընթերցիր վերջի տողն,
Սողոմոն արքայից աւել քեզի խօչ իկբալ եմ ուզում։

Ասումեմ՝ ինչ օր կուլինի, որ դու նստես թախտի վերայ;
Թագաւորքն՝ քեզի տեսնան, ա՜խ քաշեն քո բախտի վերայ;
Երդարներն կուիւ անեն ծօցիդ սուրբ դրախտի վերայ;

---

1) և 2) ամենայն տանց վերջումը կրկնեա՛ զայսօսիկ տողս։

Ճշմարիտ ես զարմացել եմ իմ սրտիս շինախոսի վերայ,
Որ էդ լուսին երեսումըդ ջուխտ Հաբաշի խալ եմ ուզում։

Ասումեն՝ քեզպէս ջան չկայ, Տէրն քեզ պահի ինձ համար,
Որ ծերութեան ժամանակիս իմ կենացս լինիս սատար;
Վատ օր չի՛ տեսնաս, որդի ջան, այս է աղօթքս անդադար.
Չարն ու բարին լաւ իմանաս. քեզի վնաս չի՛ տայ օտար,
Քանզի թշնամեացդ վերայ վերջումն խնդալ եմ ուզում։

Աչքերըս ո՞նց չի պտուեն քեզ, դու ես նրանց միջի լոյսն,
Ամէն դանով զըկուել եմ, քեզ եմ արել սրտիս յոյսն;
Թէ որ մին օր չի՛ տեսնամ քեզ, կու չորանայ կենացս բոյսն,
Այս է քեզ տուած երդումս. դու լինիս էն մաքուր Կոյսն՝
Ինձանից մի՛ հեռանալ, որ քեզ հետ միշտ խօսալ եմ ուզում։

Ինչափ հեզ ես, որ անունդ ես դրել գառն Աստուծոյ,
Երբ որ դու իմ մօտումս չես, մին մարմին եմ առանց հոգւոյ,
Միշտ լինիս դու ընդ հովանեաւ Հօր, Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ,
Որքան անուանի սուրբեր կայ՝ նրանք լինին պահապան քոյ,
Սէյեադն եմ, այս է մուրադս, ո՛չ դովլաթ, ո՛չ մալ եմ ուզում։

Պետրոս Տէր-Յովսէփեան Մաղաթեանց,
մականուանեալ «Սէյեադ»։

---

47

Հանգիր մանուկս աչօք վըճիտ,
Հանգիր անոյշ յօրօրոցիդ։
Այգ հրաշագեղ գոհար բըբունք
Ի յարթնութեանդ միշտ նրերունք,
Ահ զի՜ խաղաղ և անշարժիկ
Փակեալ 'ի նինջ են աւասիկ.
Շրթունքդ շուշանք լըցեալ շաղով
Եւ գիրգ մարմինդ երկնից գեղով։
Ննջեա՛ մանուկս աչօք վըճիտ,

Ննջեա՛ յանդորր յօրօրոցիդ։
Ցօղն 'ի վերայ վարդին թերթից
Իմ ցօղ աչաց վառ վառ այտիցդ
Թշուառ մանկիկ, քեզ մօր միակ
Ահ անժըպիտ են գորովանք,
Զուրկ 'ի Նազուկ յայս տիս ամբիծ
Հօր կաթոգին 'ի համբուրից,
Որ 'ի գգուանս իւր սիրակէզ
Այսպէս փափկիկ ծընաւ ըզքեզ։
Աւա՜ղ 'ի մէնջ գընաց հեռի,
Թող ըզքեզ որբ և զիս այրի
Զանդրանիկն իւր որդեակ չըքնաղ
Եւ զտարփալի հարսնըն մատաղ։
Ոչ գողտրական քեզ այլ եղբայր
Լիցի ընկեր սիրապատար.
Դու անմեղուկ իմ աղաւնեակ,
Դու ինձ միայն մնացեր որդեակ։
Այլ մեք լըքեալ թողաք անտէր.
Եւ մինչ ես մայրդ քեզ աւընթեր
Ըզցայգ ցերեկ 'ի կոծ ամբաւ
Աղեխորով մաշիմ 'ի ցաւ,
Ժպտես ճչես քաղցրախօսիկ,
Կամ յօրոցիդ հանգչիս հեզիկ.
Եւ քո հայրիկ 'ի հող տըխուր
Գերեզմանաց անդր 'ի բըլուր
Շուրջ պար առեալ նոճեաց 'ի սեաւ,
Ննջէ մահուն ընդ ցուրտ շիրմաւ։
Արդ 'ի շըթունսդ իսկ վարդաձոյլ
Զըւարթութեան փայլէ նըշոյլ.
Ընդէ՞ր երեսքըդ ժպտեցան.
Հրեշտակք եղեն քեզ յանդիման
Խաղապատին ըզքեւ անոյշ
Ի համբուրիկս նոքա քընքոյշ։
Մին զձիւնափայլ պարանոցիկդ,
Այլք ըզթաթիկըս քո փափկիկ,
Եւ յանուանէդ ըզքեզ ձայնեն

Կամ շուրջ ըղձքև պար բոլորեն.
Նայեք խաղալով ընդ քոյդ օրոց
Յունկնըդ մեչեն ձայնիկս երգոց.
«Ի քո քաղցրիկ մօրէդ ծածուկ
Մանկիկ, յերկինս եկ փախիցուք».
Եւ քոյդ արդեօք թռեա՜ւ հոգեակ...
Զարթի՛ր զարթի՛ր իմ աղաւնեակ.
Կաթն անուշիկ, քընոյդ փոխան,
Քեզ ջամբեցից մեղրածորան:

Մկրտիչ Պէշիկթաշլեան, երբեմն աշակերտ Մուրատեան վարժարանին: Բազմավէպ, 1851 թ. ե. 48:

---

## 48

### Օրօրոցի երգ գիւղական այրի կնոջ:

Քընէ՛, քընէ՛, սիրուն որդի, քու մօր սըրտին ըսփոփանք,
Քեզ որ կ՚ասեմ տըխուր ձէնով, օր օր, օրեր ու շատ կեանք:
Օրօրոցըդ ձեռով շաժեմ, բերնով երեսդ համբուրեմ,
Քեզ շա՜տ օր օր, քեզ շա՜տ օրեր, քեզ շա՜տ տարև կու երգեմ:
Աչքըդ փակէ՛ այդ լուսափայլ աստղի նըման փայլածը,
Որ մինչև այգ[1]) երկինքումը երևում է ցոլածը,
Աչքիդ շողը[2]) սիրտս է ծակում, նորոգում է իմ խոցը,
Աչքըդ փակէ՛, իմ սիրական, հերի՛ք սըրտիս այրածը:
Աչքըդ փակէ՛, քաղցր քընէ՛, քեզ որ կ՚ասեմ ես լալով,
Հօրըդ բանը իմաց-կ՚անեմ, դու ականջ-դիր նիրհելով.[3])
Հայրըդ, զօրեղ երիտասարդ, առաւ բագէն, գութանը,[4])
Լծեց երկու զոյգ[5]) եզները իր սըրածայր արօրը.[6])

---

[1]) Առաջի լոյս, заря. [2]) Արեգակի ճառագայթը, лучь. [3]) Մրափել, дремать. [4]) Մեծ արօր, большой плугъ. [5]) Ջուխտ, пара. [6]) Սաբան, плугъ.

Գընաց դաշտը երգ հնչելով, երգ ասելով, երգելով,
Քաղցր ձէնով երգ կանչելով, երգ երգելով, և լալով։
—Ինչի՞ համար սուգ ես անում, սուգ արտասուօք և լալով,
Նոյց հօրըդ հարևանը աչքէն առուք վազելով,
Եզներըդ գէր, գէր ու պարարտ վազ՚ի վազ են դէպ դաշտը,
Շա՛տ կու վարեն, շա՛տ կու հերկեն, շա՛տ կու կամեն քու արտը։
Արեգակը մայր չի մըտած դու կը դառնաս արօրէն,
Քեզ Ջանանը առաջ կու գայ, գըրկում բըռնած երեխէն։—

Գորգին, երգով, հարևանին այսպէս տուեց պատասխան.
«Եզներըս չե՛ն ինձ մնալու, իմ աչքի լոյս հարևան.
«Օրավարըս [1]) ես չե՛մ կարող այսօր վերջը հասցընել,
«Պիտի մնայ հող ու արտըս անվարուցան, անայցել.
«Գիակիս մօտ գէր ու պարարտ [2]) իմ եզները վիզը ծուռ
«Պիտի մնան, թէ ո՞վ նոցա երեկոյին կու տայ ջուր։

Հարևանը աչքը արցունք մեզ սև համբաւը բերեց, •
Թէ շո՛ւտ արէք, եկէք, տեսէք, թէ ձեզ Գորգին ի՞նչ արեց։
Ինչ ես արել՝ գանք ու տեսնենք, վա՜յ մեր անբաղդ աչքերուն,
Նետը ցըցուած է սըրտիդ մէջ, տակըդ ճապաղ [3]) քու արիւն.
Նետը ցըցուած քու սըրտի մէջ օդը ճըղքեց, գիծ արաւ,
Գիծը սև էր երկինքումը, աչքըս ծառի մօտ տարաւ.
Ծառի յետնէն թագ-կեցած էր մեր գեղացւոց թըշնամին,
Մեր գեղացւոց հին ատելին, տաւարի գող Եզիդին։
Դու սիրական սիրուն որդի, քընէ՛ քընէ՛ զօրանաս,
Քու մօր համար մըխիթարիչ ու ըսփոփիչ մեծանաս։
Միտքըդ-պահէ՛ քու հօր արտը, գէր ու պարարտ եզները.
Միտքըդ-պահէ՛ մաճն [4]) ու սամիք և սըրածայր արօրը.
Երբ մեծանաս, երթաս դաշտը, ուզես վարել քու արտը,
Քու մօր համար ուսով բերել ցորնի խուրձը [5]) ու բարդը, [6])
Առաջ գընա՛, գետը անցի՛ր այն սըրահօս Երասխէն,
Գընա՛, գըտի՛ր այն Եզիդուն, որ այն ծառի ետևէն
Նետը քաշեց, օդը պատռեց, քու հօր կեանքը սև արեց.
Թո՛ղ Գորգիի եզները տայ, որ այն օրը փախցըրեց։

---

[1]) acre. [2]) Չաղ, գէր, жирный. [3]) кровопролитіе. [4]) Արօրի կոթը։ [5]) Ցորենի կապոց։ [6]) Դիզած հունձ, стогъ.

Գնէր ու պարապ քու եզները սայլին[1]) լծէ, սիրական,
Գործիր, սորվէ քու մօր աչքէն այս արտասունք տրտմութեան։
Քաղցր ձէնով երգ հընչելով, երգ երգելով տո՛ւն արի. . .
Ա՛խ, ե՞րբ կ'ըլնի, որ մեծանաս—իմ բաղձանքը կատարի։
Այժըմ քընէ, աչքըդ խըփէ, հանգըստացիր օր օր օր,
Թո՛ղ քու մայրը աչքէն թափէ արտասունքը իւր յորդոր։

Գամառ Քաթիպայի (Ռ. Պատկանեանի) արձակ եւ չափաբերական շարադրութիւնները։ Ս.-Պետերբուրգ։ 1855 թ։ Ե. 13։

---

## 49

Մայրը կ'ըսէ.

Անուշ քնակն աչերն առեր
 Անուշ հովերն ալ տարուբեր,
Իմ տատրակիս քունն է եկեր,
 Անուշ երգով ըսեմ օր օր։

Որդին.

Ես քուն չունիմ անգութ մա՛րիկ,
 Հերիք աչքս կապես, հերիք,
Մէկ պահիկէն կ'ըսեմ պաճիկ,[2])
 Իս արձըկէ, մ'ըսեր օր օր։

Մայրը.

Մինչև չի լան մատաղ մանկիկ,
 Ծիծ չեն խտար անոր գա՛ռնիկ.
Դուն չի լացած իմ մէկ հատիկ,
 Ես ծիծ կուտամ, կ'ըսեմ օր օր։

Որդին.

Խղճուկ սրտով ձայն եմ ձգեր,
 Ալ ճըվճըվամ, դուն չես լըսեր,

---

1) Արաբա, телега.
2) Քնիլ։

Անուշ ձայնիդ ես ըղձմայլեր,
Ես կուլամ, դուն կ'ըսես օր օր:

Մայրը·

Արցունքներդ մարգարտի պէս,
Երեսդ 'ի վայր ինչ կը թափես,
Մի՛ լար ծաղուկ, մի՛ լար, մեղք ես,
Ո՞վ կ'ուզես, ան ըսէ օր օր:

Որդին:

Գիրկըդ ինծի հանգստարան,
Ծիծերդ բերնիս անուշ ծորան,
Իրիկուան դէմ պառկիմ օրան,
Աչքս կապէ, ըսէ օր օր:

Մայրը·

Քընացընեմ իմ աղաւնիս,
Մեծացընեմ սիրով սըրտիս,
Կարմիր վարդի նըման բացուիս,
Շուքըդ նըստիմ, ըսեմ օր օր:

Որդին·

Քիչ մը թուլցուր թեւերս ոտքերս,
Ալ թըմրեցաւ փափուկ մըսերս,
Անուշ մըրափին [1]) առնէ աչքերս
Հապա սըխմէ՛ կարդա՛ օր օր:

Մայրը·

Այդ սուտերովդ չեմ խաբուիր ես,
Կ'ուզես որ զիս նըստեցընես,
Չի քնանաս, ծիծըս ուտես,
Պատարկ տեղը ըսեմ օր օր:

Որդին·

Քիչ մը ճոր ճոր, քիչ մը ճար ճար,
Քիչ մը տան տան, քիչ մը պար պար,

---

1) Միրհ, քուն, ռամկօրէն:

Քիչ մ'ալ պապան, ու հօպպա [1]) տար,
Քիչ մ'ալ մէն մէն, ետքը օր օր։

Մայրը.

Աս քու լեզուդ կուտեմ հիմայ,
Քու կանգունովդ կըտաւ չի կայ,
Տան տան, մէմէ, ալ հաբաբայ, [2])
Աչուկ պահ, պահ, ըսեմ օր օր։

Որդին.

Սիրտդ քար է, ալ հասկըցայ,
Լացի լացի, շահ չի գտայ,
Ալ քնանամ, ճարը չէ կայ,
Երկան երկան ըսէ օ՜ր օ՜ր։

«Բուրաստան Սուրբ Սահակեան», 1852 Թ. Ե. 105—106։

---

50

Ննջեա դու քաղցրիկ իմ հրճուանք և սէր,
Ով իմ անդրանիկ երկնատուր նուէր;
Դու իմ երազոց կէտ, յոյս դու բիւրից,
Քոյին մօր պարծանք և բերող օրհնից;
Իմ սիրուն մանկիկ,
Ով մօրս հրեշտակիկ։

Քև ես սիգապանծ ի կանայս Հայոց,
Ու ես յանծաղիկ յիմ շիկնիմ ի ծոց.
Ու ես ընդ այլ մարց բաստ բերեմ նախանձ,
Ով այնչափ լալով զոր գըտի ես, գանձ;
Իմ սիրուն մանկիկ,
Ով մօրս հրեշտակիկ։

---

1) Շրջագայիլ, ման գալ, գրկելով ման ածել։
2) Չկայ. հատել է։

Դու յանձուկ այդ քո և քընքոյշ իրան
Զամէն պարփակես իղձս իմ, ո՜վ Միհրան,
Աստեղք են մանուանք աչք քո լուսահուր,
Որ յիմ անդ գիշերս ծագեցին տըխուր;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ո՜վ մօրս հրեշտակիկ:

Ո՜հ, զայս մայրենի համբոյր սըրտաձեղ՝
Զոր քաղել ուսայ նախ յայտ քո անմեղ,
Ե՞րբ և ճակատուդ տամ սարդինազարդ՝
Ոռոգեալ յիմ ցօղ ըզփառաց սաղարթ;
Իմ սիրո՛ւն մանկիկ;
Ո՜վ մօրս հրեշտակիկ:

Ե՞րբ սիրունդ ըզգլուխ խոնջ ի քիրտն և հոգ
Արկցես զերդ այսօր ի մօրդ հանգչել գոգ.
Եւ որպէս զերկին երազէ սերկեան՝
Ընդ հոգիդ առցէ ճախր ի Հայաստան;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ո՜վ մօրս հրեշտակիկ:

Տես ըզնա առ քեզ աչօք խընդամիտ
Եւ ըզքաղցրագոյնն արձակել ժըմիտ,
Տես զոր ի նորուն սըրբես յայտից շիթ
Ակունք ցոլան վառ ի հիւս պըսակիդ;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ո՜վ մօրս հրեշտակիկ:

Պըսակ... ո՜հ այո զայն ըղձամ պըսակ,
Զոր Հայրենեաց ձեռք բոլորեն, որդեա՛կ.
Զի ա՛յն է ևեթ ծաղիկ անթառամ,
Որ ի Հայրենեաց ծաղկի բուրաստան;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ո՜վ մօրս հրեշտակիկ:

Ո՜հ, թէ պըսպըղունդ այդ քո սեաւ աչեր
Ունին շըլանալ ի լոյս մըթաբեր,
Թէ յօտար յառել գեղ փառս և երկին՝
Եւ ոչ անձկանօք ի դրունս եդեմին;

Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Թէ շըրթունք քո թերթք վարդից քաղցրաշունչ՝
Նախկին արձակեալ, որդեակ իմ, մըրմունջ՝
Ոչ ըղձեա անուան երկրի երկնից Հօր
Ըզ Հայաստանի հընչէ՝ զՄօր քոյդ մօր;
Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Թէ սիրտ քո վիժակ՝ որ ներնջէ վըճիտ՝
Զարթուցեալ երբեմն ի խաղ թինդ առ թինդ,
Յայլ բաբախէ սէր, ոչ Հայաստանեայց,
Ու ոչ վազէ ընդոստ յանուն Հայրենեաց;
Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Թէ դաստք քո փափկիկ և ողորկ բազկիկք
Կան անշարժ, յորժամ կարդան Հայրենիք.
Կամ ըզսուրբ պարտուցդ ըսպաս սիրալիր
Թըշնամեաց նորա մատուցանեն ժիր;
Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Ո՛հ, լաւ եւս զի քո և իմ բիբք փակին՝
Զի մի՛ այն հասցեն աւուրք խաւարին,
Լաւ եւս զի մի այդ շըրթունք անարժան
Մի՛ բընաւ ուսցին զանուն մայրական;
Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Լաւ եւս զի զայժմուս սիրտ այդ ապերախտ
Զորասցի զերդ վարդ որդնաքանց ի դրախտ,
Եւ բեկտին ձեռինք որ զերդ ծաղկափունջ
Մանեակ զուլամբ մօրս կախին քաղցրաշունչ;
Իմ սիրուն մանկիկ,
Ո՛վ մօրս հրեշտակիկ։

Ու այս սիրտ որ կեանս ես և ուր զգլուխ
Ուր դընես սիրոյն ըմպել զանոյշ ուխ,
Ցա՜ւ ես զի աստեն սառնուցու յանկարծ՝
Քան ջեռուցանել զիժ մի Հայրենեաց;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ով մօրս Հրեշտակիկ։

Բայց քո զի՞ երկնից ամբոխի երազ...
Փախեաւ քո ժըպիտ... Ահ յարտօսր իմ լա՜ս...
Ոչ: Միհրան, մի՛ ես այլ այս բանք տըխուր.
Ահա լըռէ մայրըդ ի սոյն քաղցր համբոյր;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ով մօրս Հրեշտակիկ։

Մինչեւ դու քաղցրիկ իմ խընծիղ և սէր,
Ով իմ անդրանիկ երկնատուր Նըւէր.
Իմ երազոց կէտ, լիցիս և յուսոյն,
Պարծանք և օրհնիք դու մօրդ ի Նոր բոյն;
Իմ սիրո՛ւն մանկիկ,
Ով մօրս Հրեշտակիկ։

Բայց և Հայրենեաց յաւելցիս դու փառս,
Ու ես Հայկազանց օրհնեցայց ի մարս,
Ու ի քոյդ անուն՝ ոչ իմ և եթ սիրտ
Այլ Հայոց ողջոյն տացեն թինդ ի խինդ;
Իմ՝ սիրո՛ւն մանկիկ,
Ով մօրս Հրեշտակիկ։

Ու օտարք ուսցին զանունդ՝ ի քեզ պիշ.
Ու օտարուհիք ի մայրըդ մատնանիշ
Հըծծեսցեն. «Որդի սա զա՜յս ծընանի.
Երանի Հայկազըն Մօր, երանի.» [1])
Ով սիրո՛ւն մանկիկ,
Հայո՛ց Հրեշտակիկ։

Խորէն վ. Գալֆայեան. «Մասեաց Աղաւնի», 1858 թ.
ե. 165—166։

---

1) Երբ Հայ մայրերը այսպիսի հոգւով մեծացուցանեն իւրեանց զաւակներին, երբ այսպիսի զգացմունքներով Հայ կանայք և Հար

## LA BERCEUSE ARMÉNIENNE.

(Թարգմանութիւն 50 Համարի)։

Dors, ô toi ma douce joie et mon amour,
O mon premier-né, don du ciel,
Toi l'objet de mes rêves, toi l'espoir des tiens,
Orgueil de ta mère, source de benédictions;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

La plus fière entre les femmes arméniennes,
Non, je n'ai plus à rougir de voir mon sein privé de fleurs;
Non, je ne suis plus jalouse du bonheur des autres mères,
Maintenant que je te possède, trésor trouvé après tant de pleurs;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

O toi, dans ta faible et tendre enveloppe,
Tu contiens tous mes vœux, ô Mihran,
Tes yeux étincelants sont de petites étoiles
Qui ont brillé dans ma triste nuit;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Oh! ce baiser maternel dans lequel le cœur s'épanche,
Ce baiser que je n'ai connu qu'en le cueillant sur tes joues,
Quand pourrai-je le déposer sur ton front éblouissant, couronné
En arrosant de mes larmes les feuilles de la gloire; [de lauriers,]
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Quand ta tête si douce, lassée par les sueurs et les soucis sublimes,
Viendra comme aujourd'hui se reposer sur le sein de ta mère,

---

աղջկունք ոգևորեն իւրեանց արանց, փեսաներին և պաշտօղներին, երբ այսպիսի զգացումներով շարժէին ամենայն Հայ մարդիկ իւրեանց բոլոր կենաց մէջ, այնժամ մեր դրութիւնը առաւել նախանձելի և երանելի կը լինէր։

Quand alors, de même qu'aujourd'hui il erre dans les cieux,
Ton esprit planera sur l'Arménie.
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Vois-la jeter sur toi des regards pleins de joie
Et t'envoyer son plus gracieux sourire
Vois les gouttes que tu essuies sur ses joues
Se changer en perles pour orner ta couronne.
Mon bel enfant,
O toi, retit ange de ta mère!

Couronne!... Ah! oui, je la désire, cette couronne
Qu'entrelacent les mains de la Patrie, ô mon fils;
Car la seule fleur immortelle
Est celle qui s'épanouit dans ses jardins;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Oh! si jamais tes yeux noirs et étincelants,
Eblouis par cette lumière trompeuse qui n'engendre que ténèbres,
Si tes yeux se dirigeaient vers la beauté, la gloire et le ciel étrangers,
Au lieu de se porter avec ardeur sur les portes d'Eden!
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Si tes lèvres, ces deux feuilles de rose dont elles ont le parfum,
Si dans leur premier gazouillement,
Après le nom du Père du ciel et de la terre,
Elles ne prononçaient pas le nom de l'Arménie, le mère de ta mère!
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Si ton cœur, onde pure qui dort aujourd'hui,
Se réveillant un jour pour s'élancer et prendre son cours,
Battait d'un autre amour que celui de l'Arménie!
S'il ne bondissait au nom de la Patrie!
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Si tes tendres mains et tes bras gracieux
Restaient immobiles à la voix de la Patrie,
Ou s'ils portaient à ses ennemis le service filial
Que réclament de sacrés devoirs!
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Oh! mieux vaut que tes paupières et les miennes se ferment
Pour que ce jour de ténèbres n'arrive jamais;
Mieux vaut que ces lèvres indignes
N'apprennent jamais le nom de ta mère!
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère.

Mieux vaut que dès maintenant ce cœur ingrat
Se dessèche, comme la rose que ronge le ver dans les jardins,
Et que tombent ces bras dont tu entoures le cou de ta mère,
Comme d'un collier entrelacé de fleurs odorantes;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Et ce cœur qui te donna la vie et sur lequel tu reposes maintenant
La tête pour t'abreuver aux sources de l'amour,
Mieux vaut qu'ici même il se glace tout à coup
Pour ne pas réchauffer une couleuvre contre la Patrie;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Mais pourquoi ton rêve céleste se trouble-t-il?
Ton sourire s'enfuit. N'as-tu que des pleurs quand je pleure?
Non, Mihran, non plus de tristes chants.
Vois, ta mère se tait à ce doux baiser;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Dors, ô toi ma douce joie et mon amour,
O mon premier-né, don du ciel,
But de mes rêves... tu le seras aussi de mon espoir,
Orgueil et bénédiction du nid nouveau de ta mère;

Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère;

Toi, tu t'ajouteras aux gloires de la Patrie,
Et moi je serai bénie parmi les mères arméniennes,
A ton nom, comme le cœur de ta mère
Battront aussi avec joie ceux de tous les Arméniens;
Mon bel enfant,
O toi, petit ange de ta mère!

Ce nom! les étrangers surpris l'admireront en l'apprenant,
Et les étrangères, en montrant ta mère du doigt,
Se diront tout bas: «Elle n'engendre que de tels enfants,
«Heureuse! heureuse la mère arménienne!»
O toi, bel enfant,
O petit ange des Arméniens!



## ԳԼՈՒԽ Գ.

---

### ՀԱՍԱՐԱԿԱՑ (ՌԱՄԿԱՅԱՆ) ԵՐԳԵՐ, (DIE VOLKSLIEDER, LES CHANSONS POPULAIRES, НАРОДНЫЯ ПѢСНИ):

51

**Ի Լևոն [1]) որդի Հեթմոյ Ա.**

Աւա՜ղ ըզԼևոնն ասեմ,
Որ Տաճկաց գուռն ընկել գերի։
Իմ լոյս, իմ լոյս, ու սուրբ Կոյս.
Սուրբ Խաչն օգնական Լևոնիս ու ամենուս։

Սուլդանն ի մոյտան [2]) ելել
Իր ոսկի գունտն կու խաղայ։
Իմ լոյս, իմ լոյս, ու սուրբ Կոյս.
Սուրբ Խաչն օգնական Լևոնիս ու ամենուս։

Խաղաց ի Լևոնն երես.
«Ա՛ռ խաղա՛ ու տուր տատայիդ [3])»։

---

[1]) Հեթում Ա. Կիլիկիոյ թագաւոր էր Հայոց։ 1266 թ. Եգիպտացւոց թաթարաց զօրքը անցան Հրէաստանը և հասան Կիլիկիայ։ Հեթում ուղարկեց իւր երկու որդոց Լևոնին և Թորոսին թշնամեաց դէմ, իսկ ինքը գնաց որ Նոր զօրք և օգնութիւն գտանէ։ Լևոն և Թորոսը թէպէտ շատ քաջութեամբ պատերազմեցին, բայց Թորոսը վիրաւորուեցաւ և մեռաւ, իսկ Լևոնը, մատնութեամբ քանի մի Հայոց իշխանների, թշնամեաց ձեռքը գերի ընկաւ և մէկ տարիից ետոյ ազատուեցաւ իւր հօր Հեթումի օգնութեամբ։

[2]) Մէյդան։ [3]) Հայր։

Իմ լուս, իմ լուս, ու սուրբ Կոյս.
Սուրբ Խաչն օգնական Լէոնիս ու ամենուս:

«Լէոն դու տաճիկ լինիս,
«Ես ու իմ տատաս քէ գերի»:
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ Կոյս.
Սուրբ Խաչն օգնական Լէոնիս ու ամենուս:

Լէոնն ի բերդին նստել
Դաստռակն [1]) աչիցն ու կուլար.
«Քէրվանս [2]) որ 'ի Սիս կ'երթաս,
«Դուն խապար տանիս պապային»:

Անց որ պապն ալ զան լըսեց
Շատ հեծել քաշեց երամով [3]).
Ինկաւ ի սուլդանն ելաւ,
Շատ գետեր եհան արընեց:

Խառ զէր Լեւոն որդին
Ու հասաւ սըրտին մուրատին:
Իմ լուս, իմ լուս, ու սուրբ Կոյս.
Սուրբ Խաչն օգնական Լէոնիս ու ամենուս:

---

## 52

### Սուգ դստեր մեծի իշխանի:

Ո ղ ա խ ի ն ն

Ի՞նչ ես նըստել մունջ քո բանին,
Վե՛ր կաց, դուրս եկ, թէ ի՞նչ խօսին:

---

[1]) Ձեռաց սրբիչ, թաշկինակ, полотенцо:
[2]) Քարվան, караванъ:
[3]) Խումբ, խմբով:

Խեղճիկ, Էս էր քո արժանին
Որ դու ընկնիս կին Թաթարին.
Դու պէտք էիր ընկնիլ տիկին,
Տիկնաց տիկին մեծ իշխանին.
Եւ ոչ էսպէս անօրինին
Ձեռը կապած ընկնիս գերին։

Դ ո ւ ս տ ր ն

Ի՞նչ ես ասում ճարըդ կըտրած,
Չեմ հասկանում, ասա դու բաց։

Ա ղ ա խ ի ն ն

Էսօր աստղըդ թըռաւ կորաւ,
Լուս արեւըդ խաւարեցաւ.
Վա՜յ իմ գըլխիս, վա՜յ քեզ Շուշան,
Գերի գնացիր Թաթարըստան.
Լոյս հաւատքըդ պէտք է մոռնաս
Մահամետի կրօնքին դառնաս։

Դ ո ւ ս տ ր ն

Լեզուդ սեւնայ, բերանդ չորնայ,
Ի՞նչ համբաւ է, ասա ի՞նչ կայ։

Ա ղ ա խ ի ն ն

Մեծ իշխանըն քեզ տըւել է,
Թաթար խանին հետըն տանէ։

Դ ո ւ ս տ ր ն

Աղճիքոցերք, եկէք եկէք,
Կորած գլխիս դառը լացէք.
Սեւ էր դառել օր ծընընդեան,
Որ ես ծընայ Թըշուառական։
Մէրիկ վեր կաց գերեզմանէդ
Համբաւ լըսէ աղճըկանէդ։
Իմ սեւ րե ցաղէ,դնպէքըս

Խաթարըստան մինակ քըշեց.
Անգութ օրհաս հոգին հանէ,
Գետին պատռէ ինձ ներս տանէ։

Ա ղ ա խ ի ն ն

Աղջիկ պարոն, էս ինչ լաց է,
Աղի արտասունք դառըն կոծ է.
Մենք ամենքըս ցաւըդ տանենք,
Մեր գլուխը քեզ մատաղ կ՛անենք.
Ուր որ երթաս հետըդ կըգանք.
Ձեր աղ ու հացըն կըմոռանա՞նք.
Մենք վո՞նց պէտք է տեսնենք աչքով
Տեղէս մինակ գընաս լալով.
Աչքերդ սրբէ եւ հանդարտուիր,
Հերիք եկաւ քեզ, մի՛ ծեծուիր։

Պ ա ռ ա ւ ն

Վաթսուն տարի եմ ես ձեր դըրան,
Հէրըդ պապերդ են իմ կըռւան
Ծընած սընած իշխան եղած
Ինչպէս մին ցաւ ես չեմ տեսած։
Ականջըդ բաց լըսէ խրատիս,
Մըտիդ ձըգես էս պառաւիս.
Ուր որ գընաս ինչ տեղ ըլնիս,
Հաստատ մընաս լուս հաւատիս։
Չըմոռանաս Հայոց ազգիս,
Միշտ հանապազ նըրան օգնիս։
Ամենայն ժամ միտքըդ ձըգիս
Հայրենեացըդ պիտոյ ընիս։
Ի՜հ, տէր ընդ քեզ, գընաս բարեւ,
Քրիստոս պահէ քո լոյս արեւ։

Բազմավէպ, 1848-ին։ Տպելու ուղարկել է Պոլսում Շերմազանեան Վարդանեանցը. Ալամդարեան Յարութիւն վարդապետի աշակերտը Տփխիսու Ներսիսեան վարժարանում։

53

## Ողբ Ջուղայեցւոց։

Ափսոս քեզ Հայոց խեղճիկ ժողովուրդ,
Ցիրուցան եղաք անմեղ անխորհուրդ.
Գերի գնաման աք դէպ ի Խորասան 1),
Քաղցած ու ծարաւ, տկլոր թշուառական։

Խարիւր ու խազար ցաւի դիմացաք
Ձեր քաղցրիկ երկրէն ոտ դուրս չըդրաք.
Խիմի ձեր խոր մօր գերեզման թողաք,
Տըներն ու ժամերը ուրիշի տուաք։

Էս սիրուն դաշտերն, մեծ մեծ քաղքըներն,
Քաղցրիկ ջըրերն, ձեր չէն գեղերն,
Ո՞ւմն աք թողման դուք, որ գնաման աք.
Էնպէս կըլընի՞ որ մոռանում աք։

Վախում ամ էնպէս մոքերնուցդ ընկնի.
Ինչ քան որ ողջ աք՝ մոքերնուդ չընկնի.
Բարի ձեր որդւոց թոռանց պատմեցէք
Էնպէս խայրենիքն քանդած թողեցիք։

Մասիսի 2) անունն, Նոյայ տապանի,
Արարատ դաշտի, սուրբ Էջմիածնի,
Մեր Խոր Վիրապի, սուրբ Գեղարդ 3), Մուղնի 4),
Չմոռանան մինչ ի օրն դատաստանի։

Աչքըս կուրանար, շլինքս կոտրուէր,
Խե՜ղճ Հայաստան, քեզ էսպէս չըտեսնէր.
Թէ մեռած էի, ինձ երանի էր,
Քան թէ կենդանի՝ աչքըս բաց տեսնէր։

Երգին նիւթն է ողբ Հայոց Պարսկաստան քշուելուն վրայ 1605-ին, Պարսից Շահ-Աբաս Թագաւորին հրամանաւը։ Հեղինակն է. հին Ջուղայի Շամբ անունով գեղի մօտ Նախավկայի վանքի Ստեփան վարդապետը, Ջուղայեցւոց Սպահան քշուելուն ժամանակակիցը։ Այս երգի առաջին անգամ հրատարակուելու պատճառը եւ գտնողը Գալուստ Շերմազանեան Վարդանեանցն է։ Բազմավէպ, 1847 Թուակ. ե. 94—95։

1) Իսպահան, Պարսից երկրում։
2) Արարատ լեռան։
3) Գեղարդա վանք, նոյնն է և Այրի վանք։
4) Սուրբ Գէորգի վանքը, ուր նորա նշխարքն են։

54

Ի Նաւակոծեալն ի ծովուն Վանայ։

Նաւով Աղթամարայ ելանք,
Տեխ Աւանուց ճամպարհն ինկեանք.
Ոստանայ դէմ երբ մենք հասանք
Սեւ աւուր սեւ արեւ տեսանք։

Խուխ ամպեր երկինք պատեցին,
Աստղ լուսնակ մէկտեղ կորսուցին,
Պինդ պինդ քամիներ փչեցին,
Ափ ցամաք աչքէս խըլեցին։

Գեոռաց երկինք, գեոռաց գետին,
Խռովեցաւ ջուր կապուտ ծովին.
Չորս դեխէն կրակտաց երկին,
Սեւ սարսափ իջաւ իմ սըրտին։

Երկինք կեայ գետին չերեւայ,
Գետին կեայ երկինք չերեւայ.
Սարի պէս դնդղներ կիւգայ,
Խոր անդունդ առջեւս կըբանայ։

Ո՜վ, դու քոն Աստուած կիսիրես
Խեղճ անճարիս գութ մի անես,
Չիկ քաղցր արեւէս չիհաննես,
Բարէսիրտ մահին չիմատնես։

Ամա՜ն ծովեր, ահե՜ղ ծովեր,
Չիկ մի՛ տանիք պաղի հովեր.
Չեզ կ՚աղաչեն իմ արտասունքներ
Ու սըրտիս հազար բիւր ցաւեր։

Ո՜վ գազանն ըսկի ողորմ չունի.
Պըլած սըրտիս ձէնիկ չըլսի.
Արուն երակներս կըպաղի.
Սեւ գիշեր աչքերս կ՚իջնի։

Գնացէք ասէք իմ ծընկողին
  Թող նըստի լայ իր սեւ որդին.
  Թէ Հաննէս [1]) կուր եղաւ ծովին,
  Թուռաւ գընաց արեւ կտըրճին։

---

55

Մ՝էկ եպիսկոպոս մի նոր այգի տնկեր է
Ու գեռ այգին պտուղ տուել չէ.
Նա եպիսկոպոսին օրըն մահուան հասեր է.
Նա ի հոգեվարին զայս ողբս ասել է։

Յամէն առաւօտ եւ լոյս
  Գլպուլն էր նստեր յայգոյս.
  Քաղցրիկ ձայնէր այս վարդոյս.
  Ո՛րի ե՛կ ե՛լ յայս այգոյս։

Յամէն առաւօտ եւ լոյս
  Գաբրիէլն ասէր հոգւոյս.
  Ո՛րի ե՛կ ե՛լ այս այգոյս,
  Այս իմ նորատունկ այգոյս։

Ինձ չէ պարտ ելնել յայգոյս
  Գիէմ չար փուշ կայ պատերուս.
  Չեմ կարեր ելնել այս այգոյս,
  Այս իմ գեղեցիկ այգոյս։

Քար եմ կըրեր ձորերուս
  Փուշ եմ բերեր սարերուս.
  Պատ եմ բոլորեր այգոյս։
  Ս՝ասեն. Ո՛րի ե՛լ այս այգոյս։

Ես եմ տընկեր այս այգոյս,
  Օտարն եմ ջըրեր այս տընկոյս,

---

1) Օհաննէս, Յովհաննէս։

Դեռ չեմ կերեր յայս պըտղոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Հնձան եմ շիներ այգոյս
Կարաս եմ թաղեր գինոյս,
Դեռ չեմ խըմեր ի գինոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Ըզմուռն եմ փակեր այգոյս,
Դեռ չեմ բացեր ըզփակ դուռս
Այս իմ յարմակազմ այգոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Ջուր եմ բերեր ձորերոյս,
Ցուրտ եւ բարեհամ աղբիւրս,
Դեռ չեմ խըմեր ի ջըրոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Պրքայ [2]) եմ շիներ յայգոյս,
Արկնից ցօղն ի մէջ պրքոյս,
Բոլորն է ծաղկունք և լոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Մարդ եմ տընկեր այս այգոյս
Կարմիր ուըսպիտակ վարդոյս,
Դեռ չեմ հոտ առեր վարդոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Ծաղիկ եմ ցաներ այս այգոյս,
Կանաչ ու դեղին ծաղկոյս,
Դեռ չեմ քաղեր ի ծաղկոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

Տունկ եմ տընկեր պատերուս,
Ուռ եւ նըշենի ւընկուզ,
Դեռ չեմ կերեր ի պտղոյս.
Կ՚ասեն. Մրի՞ եւ յայս այգոյս:

---

1) Ջրի փոս, канава, канавка.

Գումբին է նըստեր յայգոյս
Եղանակէ հաւերոյս,
Գարուն է հասեր այգոյս.
Կ'ասեն. Արի՛ ել յայս այգոյս:

Բերէք ինձ մըրգաց այգոյս,
Վարդ եւ գոյնըզգոյն ծաղկունս,
Առնում հոտոտիմ անուշս.
Այլ չեմ ելներ ի յայգոյս:

Պլպուլըն գոչէր յայգոյս
Առաւօտէ մինչեւ ի լոյս,
Ցօղն իջանէր ի յամպոյս.
Կ'ասեն. Արի՛ ել յայգոյս:

Գաբրիէլըն եկաւ հոգւոյս.
Յահէն կապեցաւ լեզուս,
Խաւարեցաւ աչացըս լոյս,
Հայրֆ իմ կարճ արեւուս:

Ուռն է կանաչ այս այգոյս,
Խաղողն է հասեր այգոյս,
Կ'ասէ. Արի՛ ել յայգոյս,
Այս իմ նորաշէն այգոյս:

Առին զհոգիս ի մարմնոյս,
Հանին զիս ի յիմ այգոյս:
Ժամ է որ ելնեմ յայգոյս
Այս իմ գեղեցիկ այգոյս:

Փըլաւ նորաշէն այգիս,
Չորացաւ զինչ կայր տունկ եւ բոյս,
Թարշամեցաւ գեղ մարմնոյս.
Կ'ասեն. Արի՛ ել յայգոյս:

Հանին զիս ի յիմ այգոյս,
Պլպուլըն կանչէր այգոյս,
Ցօղն իջանէր ի յամպոյս
Յամէն առաւօտ եւ լոյս:

56

Ողբ Ադամայ։

Ադամ նստել դուռըն դրախտին
Լայր եւ ասէր ողորմագին.
Ո՜յ սէրովբէք, ո՜յ քերովբէք,
Որ ի դրախտըն մըտանէք,

Ընդ թագաւոր էի յԱդին,
Նըման հըզօր թագաւորքին,
Վասըն միոյ պատուիրանին
Անմահական պտղոյ ծառին,

Վասն Եւայի իմ կողակցին,
Որ ղալտեցաւ խաբմամբ օձին,
Զիմ գեղեցիկ զարդերն առին,
Զիս անողորմ մերկացուցին։

Այս մէկ տարպաս որ ղալտեցայ,
Բանիւ կընոջըս խաբեցայ։
Երբ խայտառակ տեսայ զԵւայ
փառացըն մերկ քան զսատանայ,

Ես ի յիւր գութըն վառեցայ,
Յանմահ պտղոյն առեալ կերայ.
Ասցի թէ իմ Ստեղծողըն գայ
Մերկ տեսանէ զիս եւ զԵւայ,

Նա հայրական սիրով գըթայ
Եւ ողորմի ինձ եւ նորայ։
Ոտնաձայն Տեառըն լըւայ
Գալըս ի դրախտն՝ եւ ափշեցայ,

Տերեւ թզենւոյն զինեւ սփածայ,
Ի մէջ ծառոց անկեալ թագեայ.
Եկն եւ ձայնեաց. Ադամ, ո՞ւր ես.
Ես ձայն լըւի, թէ մերկ եմ ես.

Տէր, ըզքո ձայնըդ լըւայ ես
Զահի հարայ ւամօթերես:
—Ա՛մ ո՞վ ասաց ձեզ թէ մերկ էք,
Կամ ո՞վ խաբեաց ձեզ, պատմեցէք:

Եւա պատասխան ետ Նըմա.
Օձըն խաբեաց զիս եւ կերայ:
Տէրն անիծեց զօձն եւ զԵւա,
Եւ այլ ի մէջըն գերեցայ:

Տէրըն հրամեց մեզ թէ Ելէք,
Թէ հող էիք ւի հող դարձէք:
Եւ աղաչեմ զձեզ, սերովբէք,
Դրանկատ ունիմ, ինձ լըսեցէք.

Երբ ի յԱդին դըրախտըն մըտնէք
Յանմահ պտղոյն ճիւղ մի առէք,
Բերէք յաչացս ի վըրայ դըբէք
Զխաւարեալ աչս ողջացուցէք:

Երբ ի դըրախտըն մըտանէք
Ազդրախտին դուռըն մի՛ փակէք.
Զիս ի դիմաց կանգնեցուցէք,
Պահ մի հայիմ կարճ՞ դարձուցէք:

Ա՛հ, կու յիշեմ ըզձեզ ծաղկունք,
Անուշահամ աղբերակունք.
Ա՛հ, կու յիշեմ ըզձեզ թռչունք
Քաղցրաբարբառ եւ անասունք.

Որք ըզդըրախտըն վայելէք
Ձեր թագաւորն եկայք լացէք,
Որք ի դըրախտն աստուածատունկ
Յերկրէ ընտրեալ ազգի ազգունք:

———

57

Ողբ մօր ի վաղամեռիկ որդին։

Նայիմ ողբամ ծնող տղայիս.
Վա՜յ եւ եղուկ ասեմ իմ անձինս.
Որդ զի՞նչ լինիմ եղուկ եղկելիս,
Տեսի մեռեալ զոսկեհատ զորդիս.

Զանուշահոտ վարդն իմոյ գրկիս
Խլեցին առին, թալկացաւ հոգիս.
Զիմ գեղեցիկ ոսկի աղաւնիս
Թռուցին յինէն, խոցեցաւ սրտիկս։

Զքաղցրանուագ սիրուն տատրակիկս
Մահու բազան էզարկ, խոցեաց զիս.
Զիմ քաղցրաձայն արտուտիկ ձագիկս
Առեալ թռուան ի վեր ի յերկինս։

Զիմ ծաղկալից կանաչ նռնենիս
Կարկտահար արին դէմ աչիս.
Զիմ կարմրացեալ խնծորն ի ծառիս
Զանուշահոտն ՚ի մէջ տերևիս։

Զիմ գեղեցիկ ծաղկեալ նշենիս
Թօթափեցին անպտուղ արին զիս,
Չորեալ ձգեցին ի վերայ երկրի
Կոխան արարին հողոյ տապանին։

Ահ, զի՞նչ լինիմ եղուկ եղկելիս,
Շատ տրտմութիւնք պատեցին զիս։
Որդ, Տէր, ընկալ զհոգի տղայիս
Եւ հանգո ի լուսեղէն երկինս։

---

58

Ի Նոյն։

Իմ արեգակըն խաւարեցաւ
Եւ աչերուս լոյսըն մըթացաւ.
Յորեկն ինձ խոր գիշեր դարձաւ
Եւ աստեղաց լոյսըն ծածկեցաւ։

Գարունըն խիստ ձըմեռ ինձ դարձաւ,
Ամառն սաստիկ ձիւնաբեր եղաւ.
Ինձ եղանակըն փոփոխեցաւ
Եւ դառնաշունչ օդըն զիս հարաւ։

Քաղցրըն լեղի եղև դառնացաւ
Եւ կերակուրս ինձ մոխիր դարձաւ.
Մարմինս յոսկերս կըցեալ չորացաւ
Լեզուս ի քիմս իմ ցամաքեցաւ։

Այս գեղեցիկ որդեակս որ մեռաւ
Շունչըս քաղեցաւ, շըթունքս կապեցաւ.
Այս նազելի որդիս որ մեռաւ
Կեանքըս հողոյ հաւասարեցաւ։

Այս սիրամարգ գառնիկս որ մեռաւ
Խելքըս գնաց և ցընորեցաւ.
Այս սիրունիկ ձագիկս որ թըռաւ
Բերանս լըռեաց, ականջըս խլցաւ։

Այս զուարճալի տունկս որ չորացաւ
Ոտըս բեկաւ, թևըս կոտրեցաւ,
Բոլոր մարմինըս փոշիացաւ
Եւ ընդ որդոյս ի հող մերձեցաւ։

Արդ գոհութիւն Տեառն որ ըստացաւ,
Ընդ սուրբ մանկանցն ըզսա ընկալաւ։
Արդ, Տէր, ընկալ զհոգի տըղայիս
Եւ հանգո ի լուսեղէն երկինս։

---

59

Երգ Հարսին։

Շեմլիկ մի՛ ժաժա.
Էս եմ ժաժալու,
Ռուշան տանելու։

Տախթիկ մի՛ թրնտա.
Էս եմ թրնտալու,
Ռուշան տանելու։

Ձողիկ մի՛ սրռա.
Էս եմ սրռալու,
Ռուշան տանելու։

Ծառուկ մի՛ դողա.
Էս եմ դողալու,
Ռուշան տանելու։

Տերւիկ մի՛ թափի.
Էս եմ թափելու,
Ռուշան տանելու։

Արեւ դուն մ'ելնի.
Էս եմ ելնելու,
Ռուշան տանելու։

Արեւ մի՛ պատի.
Էս եմ պատելու,
Ռուշան տանելու։

Լուսին դուն մ'ելնա.
Էս եմ ելնելու,
Ռուշան տանելու։

Լուսին մի՛ պատի.
Էս եմ պատելու,
Ռուշան տանելու։

Աստղունք մի՛ ցոլաք.
Էս եմ ցոլալու,
Ռուշան տանելու։

Կրռունկ մի՛ կրղա.
Էս եմ կրղալու,
Ռուշան տանելու։

Մէրիկ դուն մի՛ լա.
Էս եմ լալու,
Ռուշան տանելու։

Հէրիկ դուն մի՛ լա.
Էս եմ լալու,
Ռուշան տանելու։

Աղբէր դուն մի՛ լա.
Էս եմ լալու,
Ռուշան տանելու։

Զմերիկ խաբեցին թօփ մը չիթով.
Զհէրիկ խաբեցին կուժ մը գինով.
Զաղբէր խաբեցին ջուխտակ մը ճրգմով.
Զքուրիկ խաբեցին մատիկ մը հինով։

Զդրամի հանգուրց արձակեցին
Զաղջիկ մամուց ջոկեցին։

Մէրիկ մ՛ ունէի զաախթիկ
Աչաւրի քու աղջկայ հեաիկ.
Թող մընայ քեզի նըմուշիկ
Որ հանիս գըքու սըրտի հասրաթիկ։

Զչամիչ մաղով մաղեցին,
Աղջկայ ծիրեր լեցուցին,
Պարից ճամբուն դըրեցին։

---

## 60

### Երգ հարսանեաց փեսայի։

Օրհնեալ բարերար Աստուած.
Կամքն օրհնեալ մեր Արարողին (Երիցս).
Զուգեցինք. հա՛յ թամամեցինք,
Զխաչն ի վըրէն բազմեցուցինք (Երիցս)։

Գնացէք բերէք զթագւորի հէր
Իգայ նստի դարպասը էնէ.
Զընտրիկ զարկէ սուրբ սեղանին,
Խէրն ու բարին մեր թագւորին (Երիցս)։

Գնացէք բերէք զթագւորի մէր
Զընտրիկ զարկէ սուրբ սեղանին,
Խէրն ու բարին մեր թագւորին։
Գնացէք բերէք զթագւորի աղբէր, (զքուր նուայն նուայն)

Գնացէք բերէք զկռունկն ի չօլէն
Իգայ նըստի սէյրան անէ.
Զընտրիկ զարկէ սուրբ սեղանին,
Խէրն ու բարին մեր թագւորին։

Գնացէք բերէք զբադն ի կօլէն
Իգայ նըստի սէյրան անէ.

Ծընտրիկ զարկէ սուրբ սեղանին,
Խէրն ու բարին մեր Թագւորին։

Գացէք բերէք զկաքաւն ի սարէն,
Իգայ Նըստի սէյրան անէ.
Ծընտրիկ զարկէ սուրբ սեղանին,
Խէրն ու բարին մեր Թագւորին։

Փ ո խ

Մեր Թագւորին ծաղիկ պիտէր ծաղկունաց (Երիցս).
—Ծաղիկն ինչէնի՞ պիտէր ծաղկունաց.
Ծաղիկ պալասոն պիտէր ծաղկունաց,
Որ փթըթէր ծառն ու ծաղիկ հետ իրրաց։

Ծաղիկ ձընծաղիկ պիտէր ծաղկունաց.
Ծաղիկ անթառամ պիտէր ծաղկունաց.
Ծաղիկ նունենի (նունուֆար, վարդենի, եւ այլն)։

Փ ո խ

Սուրբ Կարապետին զօրութենով, հա՜յ զօրութենով,
Խաչերես Թագաւոր մը կիգէր։

Փ ո խ

Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Ֆասն էր կարմիր, արեւն էր կանանչ։
Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Խըղն էր կարմիր, արեւն էր կանանչ։
Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Խաչփոկ խաչուման, արեւն էր կանանչ։
Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Խընձորն էր կարմիր, արեւն էր կանանչ։
Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Գինիչն էր կարմիր, արեւն էր կանանչ։
Մեր Թագւորն էր խաչ, մեր Թագւորն էր խաչ.
Բըքերն էր նըշխուն, արեւն էր կանանչ։

Փ ո խ

Ելէք ուր առջեւն երթանք
Ուր ճէհըլէկ խաթրիկ չիմընայ։

10

Փոխ

Էն դիզան բէտ բէտ դիզան տեսէք թէ էն որն է.
Էն դիզան բէտ բէտ դիզան գեղի համբէքն է։
Առիւծներ մըռմըռալ էն, տեսէք թէ էն որն է.
Առիւծներ մըռմըռալ էն, վարդապետներն է։
Կաքըւներ կըղկըղալ էն, տեսէք թէ էն որն է.
Կաքըւներ կըղկըղալ էն, էն երիցներն է։
Ճընճըղներ ճըւըստալ էն տեսէք թէ էն որն է.
Ճընճըղներ ճըւըստալ էն, սարկեւըկներն է։
Էն միջի հաստագերանն տեսէք թէ էն որն է.
Էն միջի հաստագերանն թագւորի հէրն է։
Էն քուլա բամբակն ի ծակ տեսէք թէ էն որն է.
Էն քուլա բամբակն ի ծակ թագւորի մէրն է։
Էն զօհալ աստղ ետեւանց տեսէք թէ էն որն է.
Էն զօհալ աստղ ետեւանց՝ էն թագուհին է։
Ցախ աւել ետեւ դըռան տեսէք թէ էն որն է.
Ցախ աւել ետեւ դըռան էն մըշկըներն է։
Շունն եկաւ պարկն ի բերան, տեսէք թէ էն որն է.
Շունն եկաւ պարկն ի բերան, գեղի գըզիրն է։
Մուկն եկաւ ալըրթաթախ, տեսէք թէ էն որն է.
Մուկն եկաւ ալըրթաթախ, էն ջաղցըպանն է։

Փոխ

Գովեցինք, հա՜յ թամամեցինք, հա՜յ թամամեցինք,
Զխաչն ի վըրէն բազմեցուցինք։

---

## 61

### Պանդուխտ առ կռունկ։

Կռունկ, ուստի՞ կուգաս, ծառայ եմ ձայնիդ.
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս.
Մի վազեր երամիդ՝ շուտով կըհասնիս.
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Թողեր եմ ու եկեր իմ մըլքերս ու այգիս.
Քանի որ ա՜խ կ'անեմ կուքաղուի հոգիս,

Կռունկ, պահ մի կացիր, ձայնիկդ ի հոգիս.
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Քեզ խապար հարցնողին չես տանիր տալապ.
Ձայնիկդ անուշ կուգայ քան զջըրի տօլապ.
Կռունկ, Պաղտատ իջնուս կամ թէ ի Հալապ,
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Սըրտերնիս կամեցաւ. ելանք գընացանք,
Այս սուտ աստըընուրիս տէրտէրն իմացանք.
Աղուհացներ մարդկանց կարօտ մընացանք։
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Աստընուրիս բաներն կամաց կամաց է.
Մինթէ Աստուած լըսէ, դըռնակըն բացցէ.
Ղարիպին սիրտն է սուգ, աչերն ի լաց է։
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Աստուած, քեզնէ խնդրեմ մուրվէթ ու քէրէմ.
Ղարիպին սիրտն է խոց, ճիկերն է վէրէմ.
Կերած հացն է լեղի ու ջուրն է հարամ։
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Ոչ ըզլուր օրն գիտեմ ոչ ըզկիրակին.
Զարկած է զիս շամփուրն, բըռնած կըռակին.
Այրիլըս չեմ հոգար, ձեզնէ կարօտ եմ։
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Պաղտատու կուգաս, կ'երթաս ի սէհրատ,
Խըղթիկ մի գըրեմ, տամ քեզ ամանաթ.
Աստուած թող վըկայ լինի քո վըրադ.
Տարեալ հասուցես զայդ իմ սիրելեաց։

Գըրեր եմ մէջ թըղթիս, թէ հոս մընացի.
Օրիկ մի օրեր զաչերս չըբացի.
Սիրելիք, ձեզանէ կարօտ մընացի։
Կռունկ, մեր աշխարհէն խապրիկ մի չունի՞ս։

Աշունն է մօտեցեր, գնալու ես թէտպիր.
Դրամ ես ժողվեր հազարներ ու բիւր.

Ինձ պատասխան չտուիր, ելար գնացիր.
Կռունկ, մեր աշխարհէն գընա՛ հեռացիր։

---

## 62

### Ողբ կաքաւու։

Նստեալ կայր ու լայր կաքաւիկն (Կրկին)
Ի վերայ քարին. ա՜յ հաւեր.
Ու գանկատ կ'անէր ձագերուն.
Թըռչունք, ա՜յ հաւեր։
Ի բարձր լերունք ելայ (Կրկին),
Ի կանաչ մարգեր նայեցայ.
Թըռչունք, ա՜յ հաւեր։
Իջի որոգայթ ընկայ
Ի վարմին մէջ ի ծովակին.
Թըռչունք, ա՜յ հաւեր։
Եկին զիս ի վեր առին,
Զահարեկ սուրըն ցըցուցին.
Զայս իմ կարկըջուն վըզիկս
Յականջէ յականջ զենեցին.
Զայս իմ կարմըրուկ արիւնս
Ի գետին ի վար վաթեցին.
Զայս իմ կարմըրած կըտնուցս
Կըրակին կածըն հասուցին.
Զայս իմ մանտրուքայլ ոտկունքս
Ի ծընկացս ի վար կըտրեցին.
Զայս իմ գունըզգուն փետուրս
Մէկն ի սար արին մէկն ի ձոր.
Զայն որ ի սարն էր ընկեր
Զայն իջեր քամեկն ու տարեր,
Զայն որ ի ձորն էր ընկեր
Զայն ելեր հեղեղն ու տարեր։
Եւ սուրբ Գրիգորի Նըման
Զիս ի խոր Վիրապն իջուցին.

Ենկին զիս ի վեր առին
Մէճլիս հաւասարցուցին.
Եւ սուրբ Յակովկայ Նըման
Մասըն մասըն կըտըրտեցին.
Օղլաւաշն ինձ պատանք դըրին
Ու կարմիր գինով զիս թաղեցին։
Ես ձայն զԵրեմիային ածի
Նախահօրն ու մօրն Եւայի։

63

Մանեցւոց երգ կաքաւու։

Սորեւ տէպաւ 1) սարին վերէն,
Խորոտիկ 2) խորոտիկ.
Կեաքեաւն ելաւ իր բունէն 3),
Բարեւ արեց ծաղկըներէն,
Թուռաւ եկաւ սարին ծերէն 4),
Խորոտիկ խորոտիկ,
Մայ սիրունիկ կեաքեաւիկ։

Երբ կեաքէւուն ձայն կըլըսեմ
Երդիմն ի վեր դիւս կ'երիշկեմ 5).
Կեաքեաւ կուգայ կըրկըրալով
Գարին վերէն շորորալով.
Մայ խորոտիկ խորոտիկ,
Մայ սիրունիկ կեաքեաւիկ։

Քեո բեռն հինած 6) ծաղկըներով,
Ուըհան Նարկիս Նունուֆարով.
Քեո տեղ լըցուած է շաղերով 7),
Գիւ կըմայլիս անմահ հոտով.
Մայ խորոտիկ խորոտիկ,
Մայ սիրունիկ կեաքեաւիկ։

1) Թռաւ։ 2) Գեղեցիկ, սիրուն։ 3) Բոյն։ 4) Ծայր։ 5) Դէպ ի վեր նայել։ 6) Նկարած, հիւսած։ 7) Ցօղ։

Քո փետուրներ են փափուկիկ,
Քո վիզն երկէն, կըտուց պըզտիկ.
Քո թեւին գետն 1) է նըխշունիկ,
Ախ անուշ ես քանց եղունիկ 2).
Այ խօրօտիկ խօրօտիկ,
Այ սիրունիկ կեաքեաւիկ:

Երբ կեաքեաւիկն ծառին կ'իջնի,
Իր քաղցր ձէնով ճըլվըլ կ'անի,
Աշխարհս ըմէն 3) զըւարթ կ'անի,
Արուն ծովէն սիրտ կըհանի.
Այ խօրօտիկ խօրօտիկ,
Այ սիրունիկ կեաքեաւիկ:

Հաւերն ամեն ք'երնեկ 4) կուտան,
Հետ քե կիւգան շարան շարան 5),
Քե շուրջ եկած կըճըլվըլան,
Ասկի չիկայ քեզի նըման.
Այ խօրօտիկ խօրօտիկ
Այ աղուորիկ կեաքեաւիկ:

Բազմավէպ, 1850 Թ. Ե. 230:

64

Երգ արագլի. (լագլագ, аистъ):

Արագիլ, բարով եկիր,
Դուն արագիլ, բարով եկիր.
Ըմե գարնան նըշան բերիր,
Դու մեր սըրտիկ զըւարթ արիր:

Արագիլ, մեզի իջիր,
Դուն արագիլ մեր տուն իջիր,
Մեր խացի ծառին բունիր,
Դու մեր սիրուն:

1) Դոյն: 2) Աղաւնի: 3) Ամէն: 4) Քեզի երնեկ: 5) Կարգ կարգ շարուած:

Արագիլ, քե՛ գանգըտիմ,
Հա՜յ արագիլ քե գանգըտիմ.
Իմ հազար ցաւերս ասիմ
Սըրտիս ցաւեր հազար ցաւ։

Արագիլ, եբ գընացիր
Բուն մեր ծառէն եբ գընացիր,
Զուլումաթ հովեր արին,
Ծըծղուն ծըղկներըս չորցուցին։

Պըսպղուն երկինքն մըթներ,
Էն պըսպղուն երկինքն մըթներ.
Մեր վերէն ձըներ բըրդեր,
Ծաղկաթափ ձըմեռն հասեր։

Մարագայ սարէն բըռնած
Էն Մարագայ սարէն բըռնած,
Ձիւն իջնէր ըմէն ծաղկեր,
Կանաչ դաշտիկըս ցուրտ աներ

Արագիլ մեր դըրախտին ձիւնիկ
Պատեր մեր դըրախտիկ.
Կանաչուն մեր վարդնիս
Ցամքեր պաղէն ը ձըմըռէն։

Բաղմավէպ, 1858, ե. 305։

---

65

Մանուկն և ջուրն։

Այգ վայրի լեռնէտ ի վայր
Ջուրն ի շինուտ 1) մէջն անցանի. Հա՜յ.
Թուխ մանուկ մ'ի ի դուրս ելեր
Ձեռքն ու զերեսն է լուացեր.
Լուացեր, հա՜յ լուացեր,
Դարձեր ի ջուրն հարցունք եղեր. Հա՜յ։
Ջուր դու ի յո՞ր լեռնէ կուգաս,
Իմ պաղէկ ջըրիկ ու անուշիկ. Հա՜յ.

1) Գեղ, աւան, շէն։

Ես ի յայն լեռնէն կուգամ,
Ուր Հին ու Նոր Ձիւնն ի վերայ. Համյ:
Ջուր դու ի յո՞ր առու կ'երթաս.
Իմ պաղիկ ջրիկ ու անուշիկ:
Ես ալ ի յայն առուն կ'երթամ
Ուր փունջքըն շատ է մանուշկին:
Ջուր դու ի յո՞ր այգի կ'երթաս,
Իմ պաղիկ ջրիկ ւանուշիկ:
Ես ի յայն այգին կ'երթամ
Ուր տէրն ի մէջն է այգեպան.
Ջուր դու ո՞ր տունկ կու ջրես,
Իմ պաղիկ ջրիկ ւանուշիկ.
Ես ի յայն տունկըն ջրեմ
Ուր տակըն խոտ բերէ գառին.
Տակըն խոտ բերէ գառին,
Ծառըն խնձորի, Հազարվարդին: [1])
Ջուր դու ի յո՞ր պաղչայ կ'երթաս,
Իմ պաղիկ ջրիկ ւանուշիկ:
Ես ի յայն պաղչան կ'երթամ
Ուր պուլպուլի [2]) քաղցր եղանակ:
Ջուր դու ի յո՞ր աղբիւր կ'երթաս,
Իմ պաղիկ ջրիկ ւանուշիկ:
Ես ի յայն աղբիւրն երթամ
Ուր գայ քո եարն [3]) ու ջուր խըմէ.
Պնեմ գամ ըղդունչըն [4]) պագնեմ
Ապա սիրովըն յագենամ:

---

66

Ծերըն ու Նաւն:

Մեր Տէրըն ծեր եւ ալեւոր
փառօք բազմեալ Տէրն ի խաչին:

---

[1]) Махровая роза. [2]) Սոխակ, соловей. [3]) Սիրական, Նազելի:
[4]) Շուրթ, уста·

Բաղցըր ձայնէր նաւավարաց.
Ո՜յ նաւավարք դուք իմ եղբարք,
Եղբա՜րք, առէք զայս ծերս ի նաւն,
Ես ձեզ բազում աղօթս առնեմ:
Ո՜յ, գնա՛ գնա՛ ծեր ալևոր,
Մեր նաւըս չէ վասն աղօթից.
Նաւըս մեծ է, վարձըն շատ է.
Նաւս ի վարձ է վաճառականին:
Խաչ եհան քարտէ կընքեաց,
Ձեռըն տարաւ, աւազըն էառ,
Բարըն էառ գեկան, Ահա՛,
Ահա ձեզ դրամ և դահեկան:
Վարձըն երետ և նաւ մըտաւ.
Ահա ձեզ դրամ և դահեկան:
Ջուրըն անդընդոց պըղտորեցաւ,
Նաւն ի յալուն կործնումն էառ:
Ուստի՞ց եկիր մարդ մեղաւոր,
Ու դու կորար մեզ կորուսիր:
Ե՞ս մեղաւոր. տուք նաւտ ի յիս,
Եւ դուք անուշ ի քուն եղիք:
Աջու ձեռօք խաչահանէր,
Ձախու ձեռօք նաւըն վարէր:
Դեռ չէր եղեալ հասարակաց
Նաւն ՚ի ցամաքն հաստատեցաւ:
Եղբարք, եկէ՛ք անուշ քընում,
Անուշ քընում, դառն երազում.
Ի յոտն անկեալ ի Քրիստոսի.
Ահա մեզ Տէր, ահա մեր նաւն:

---

67

Երգ երեխայից:

Լուսացաւ լուսացաւ.
Լուան է բարքն,

Ծիտն է ծառին,
Հաւն է թառին:
Ծուլ մարդկանց քունն է տարի.
Աշխատաւոր վեր կաց բանիդ:
Երկընքի դըռներն բաց էր,
Ոսկէ աթոռըն դըրած էր,
Քրիստոս վըրէն նըստած էր.
Լուսաւորիչն կանգնած էր,
Ոսկէ գըրիչն բըռնած էր
Մեծ ու պըստիկ գըրում էր.
Մեղաւորներն լալում էին,
Արդարներն խաղում էին:

———

## 68

### Արջ, աղուէս եւ գայլ:

Գայլն ու արջն ու աղուեսուկն են բարըշեր,
Հօրեղբօր և քուերորդիք են դարձեր.
Զաղուեսուկըն միակեց են օրհնել:
Սուտ միակեց, սուտ աղօթարար սուտ:

Աղուեսուկն ի փողոցն իջել ջուլ մ'է ճարեր.
Զայն ծակեր վիզն է անցուցեր, գաւզան առեր,
Երկաթէ քարքաշ հագեր, զքարն է ծակեր:
Սուտ միակեց, սուտ աղօթարար սուտ:

Աղուէսն ըզգայլն արջուն խնդիր է ուղարկեր,
Թէ վասըն քո զայս ճըգնութիւնս յանձն եմ առեր,
Դու ինձ բաժին չես յուղարկեր, կոճս է տեռեր,
Կոճս է տեռեր, ծունկս է տեռեր ծունկս:

Առաւօտուն երբ լուսացաւ յորս են ելեր,
Մին մաքի և մին թօխլի և գառ մ'են ճարեր,
Հոգևոր բաժանարար ըզգայլն են դըրեր:
Ծուռ դատաւոր, ծուռ բաժանարար ծուռ:

Գայլն ըզգառն արջուն բաժին է հաներ,
Զթօխլին խեղճ միակեցին ապրսպրեր.
Մաքին ինձ, ասէ, ես շատ ժուռ եմ եկեր.
Ծուռ· դատաւոր, ծուռ բաժանարար ծուռ։

Արջն ըղչանչուլն էր քարշեր գայլուն զարկեր,
Հանց զարկեր՝ որ երկուս աչքն ի դուրս վազեր.
Մեծ եմ ես ի ձեր միջիդ, զգա՞ռն էք ըլւեր.
Ծուռ դատաւոր, ծուռ բաժանարար ծուռ։

Աղուեսուկն որ զայն տեսեր, խիստ վախեցեր.
Ազպանիրն յակնատ տեսեր ուարջուն ասէր.
Գեղեցիկ, մեծ հօրեղբայր, վանք մ՚եմ շիներ,
Տեղն է վանուց տեղ, աղօթելու տեղ։

Արջն ըղչանչուլն էր տարեր զպանիրն առեր,
Ականատն վիզն էր անկէր յըրար եկեր.
Աղուեսուկ եղբօրորդի յէ՞ր չես օգներ.
Տեղս չէ վանուց տեղ, ւաղօթելու տեղ։

Աղուեսուկն որ զայն տեսեր՝ ուրախացեր,
Արջուն պաշտօն է տարեր, հոգուն կանգներ.
Գայլուն խեղճն որ դուն արիր՝ զքեզ է բըռներ.
Տեղտ է վանուց տեղ, աղօթելու տեղ։

Գատաստա՛ն, ամ ես խիստ քեզ եմ հաւաներ.
Ով այլոց վատ կամեցեր, շուտ է կորեր,
Որպէս արջն ի յականատն է չորակեր.
Տեղն է վանուց տեղ, աղօթելու տեղ։

---

69

Տաղս խաղալիկ է ի չախու։ 1)

Սիրտս ի փորբկս դողայր վախուս,
Ձեռուխս ի բան չերթար յահուս.
Ես ի՞նչ ճըւապ 2) տիտամ պապուս,
Որ կորուսեր եմ զիմ չախուս։

---

1) Զմելին, ղալամթրաշ։ 2) Պատասխան։

Խիստ զօրաւոր էր ու ձայնեղ
Մեծ մեծ խիար կըտրեր մէկ հեղ.
Ոչ կուքընի ի յայլոց գեղ
Խոչ կուհանէր ծոցուս ի տեղ։

Չախուս ունէր աղէկ յատապ,
Հետ ինձ կենար զօրն առանց կապ.
Պղինով արին տըւին ինձ խաբ
Լուկ ձըգեցին զչախուս ի յափ։

Չախուս կուտար ինձի խըրատ,
Թէ չոր հացէն կացիր ի զատ,
Պուխտեմ որ խէր չէնէր ակռատ,
Համ անմուննաթ բառնան ի վրատ։

Կակուղ լաւշեր լինի, տաք հաց,
Ուրախացիր զերեսըդ բաց.
Խըրատ քարոզ տուր տանտիկնաց
Եղով ճըմռեն զինք հետ իրրաց։

Օհէտ որ երթանք հարկ ու մէճլիս,
Չախուս ասեր գաղտուկ դէպ յիս.
Աղէկ պատառ երբ նըկատիս
Առանց ինձի ձեռք չըտանիս։

Խիստ առապով տաշէր չոր միս,
Բաջըմլերէր յորդորէր զիս,
Օգաւթըն լից տուր ի յափիս
Ուտենք խմենք որ հանգչի հոգիս։

Չախուս ի հետս էր խիստ գըթով,
Բարի խըրատ կուտար սիրով,
Թէ մի՛ նըստիր ի մարդու քով
Որ կըշտանաս քիչ մի հոգով։

Խեղճըս կուզայ ակռայ չունիս,
Անեփ մըսի երբ հանդիպիս
Ագահութեամբ կուլ չիտանիս՝
Փակչի պողազդ, չինիս ճառչիս։ 1)

---

1) Խայտառակ։

Չախուս ի հետս էր խիստ սիրուն,
Երբոր երթայք ի յայլոց տուն,
Հրաման տեսնար զմխոն ի յեփոց՝
Չթողէր տանիմ ձեռքս ի մածուն։

Բան զվարդապետ էր իմ չախուս,
Զօրըն քարոզ տայր ծըխերուս.
Երբ տընօրհնէք գայ տուներուս
Տապկած ձըկնիկ բերէք տիրուս։

Չախուս ասաց. իմ տէրըն դու,
Զիս մի՛ ցուցներ ամէն մարդու.
Պահ մ՚ աստ պահէ զքեզ ՚ի գինու,
Այլվի չըտաս գողանալու։

Երգս է գըրած Մարտիրոսի.
Չախուս յաշըղ էր չոր մըսի.
Հարսնիք տարան ի Նոր փեսի,
Խէր չըտեսայ, քան կորուսի։

Աստուած ինձ քաղցր էր ողորմած,
Չախուս գըտայ, չելաւ ձեռաց.
Այլ ոք ուտեն յամէն իրաց
Տեսնում՝ դողայր սիրտս ի դիմաց։

Չախուս ասէր. խիստ մի՛ հոգար,
Ուրախացիր երբոր գըտար.
Մինչ ի յուլիս ունիս դիժար
Որ կերցընեմ մեղրով խիար։

Չախուս համեստ էր խիստ սիրով,
Ի տանտիկնաց նըստէր ի քով,
Նարի խըրատ կուտար յոլով,
Մեղրիկ բերէք կաթին սերով։

Աշխարի միս լինէր փուշտայ
Զինք տաքդեղով ծեծած քուֆտայ,
Նիստ ի յեզերն յորդորէ զնա,
Տուր գաւաթիկ մ՚այլ ի վերայ։

Ձեղ էր երէց ժամանակաց
Մըտացն ասէր յամէն իրաց.
Ջընի յառաջ բերէք չոր հաց,
Ձեռք չխտանի ի յամօթաց։

Ի յընթեռնուլըն սաղմոսիս
Տամ տըւողին շատ ողորմիս.
Երկու օրիկ որ թարկեց զիս
Յակռաս չընկաւ ճնճղուկ մի միս։

Յաշխարհս չըկայ այլ խենթ քան զիս,
Հաւաս կալայ անգէտ բանիս,
Ծիծղան մարդիկ նախատեն զիս,
Երբոր որ ասեն ի մեծ մէճլիս։

---

## 70

### Ջան գիւլում, ջան ծաղիկ։

1

Ծառիս տակը մանիշակ, «ջան գիւլում՝ ջան ջան» [1]),
Իմ եարը քանց քեզ շիշակ, «ջան ծաղիկ՝ ջան ջան.» [2])
Ութ թումանիցն անց կենամ, «ջան գիւլում՝ ջան ջան,»
Քեզ կ'անեմ եարիս մշակ, «ջան ծաղիկ՝ ջան ջան։»

2

Տեղ եմ քցել ղալամքեար,
Մէջն եմ դրել Քեալանթար.
Ես մի բուռը լեղակ եմ,
Ռէզիրգեանի տեղակ եմ։

3

Սիրել եմ սերն երեսին,
Ռէյհան թերն երեսին.
Ո՛վ իմ սիրածը ինձ չի՛ տայ,
Աստուծոյ կրակն երեսին։

4

Ջաղացս մանի մանի,
Քունս անոյշ կըտանի.
Իմ եարս սարում՝ քօլում,
Իմ քունս ո՞նց կ'տանի։

5

Ջաղացիս գուռը տաշած,
Աղըխիս գիւլը քաշած.
Կէռ կէռ ունքերիդ մեռնեմ,
Ոսկէ ղալամով քաշած։

---

1) Ամենայն տանց առաջին և երրորդ տողումն զայս կրկնեա։
2) Ամենայն տանց երկրորդ և չորրորդ տողումն զայս կրկնեա։

6

Ճանքէն գաս՝ գեղը մտնես,
Իմ քցած տեղը մտնես.
Ինձնից գիւման եար բռնես,
Նի մուրվաթ, հողը մտնես։

7

Մ՚տիկ արէք էն ղըշին,
Աղը դրելայ փըշին.
Գ՚լուխս ղուրբան կ՚տամ,
Չալ աչք, կարմիր թշին։

8

Աչխարս արել եմ դուզը,
Ջ՚ոկել եմ ղարագեօզը.
Ըղլուխդ ղարկի՛ նաշխեմ,
Թ՚ափ տու՛ր քաքուլիդ թոզը։

9

Ընձրև եկաւ շաղալէն,
Աւռու տերև դողալէն.
Ճրէս եկաւ իմ աղբերն,
Ըլ ձին տակին խաղալէն։

10

Քարիս տակը քարոտ ա,
Գարնի ձիանն արօտ ա.
Թամամ օխտը տարի ա,
Քույրն՝ աղբօրը կարօտ ա։

11

Գետը նի՛ մտայ, խոր ա,
Քաթան շաբիկս նոր ա.
Իմ նանին խաբար արէք,
Ես օլքեայ օլքեայ կորայ։

12

Մեր կտրովը քօ՛չ ա երթում,
Քօչքօչի մէ՛ջ ա երթում.
Աչնէկ էն քուեր աչքի լսին,
Օխտն աղբօր մէ՛ջ ա երթում։

13

Գնացի ջուրը ջըրի,
Աւս ընկաւ օձի լեղի.
Իմ հօրն ու մօրն ի՛նչ ասեմ.
Ինձ տուին ղարիպ տըղի։

14

Տուն եմ շինել զանանայ
Գ՚առղու կ՚տամ դիմանայ.
Կուռդ մեկնի՝ ջուրն ինձ տո՛ւր,
Խմեմ՝ սիրտս հովանայ։

15

Գուռ նստել ես դօշակին,
Աւշ ու միտքդ փէշակին.
Խմել ես նռան գինին,
Ճոտ քաշել մանուշակին։

16

Ես մի կանաչ խիար եմ,
Քո ջանին իխթիար եմ.
Երթաս՝ երթաս, յետ կաննես,
Իմանաս՝ բէլլու եար եմ։

17

Սարիցը ջո՛ւր ա երթում,
Ճարցրէք՝ ո՛ւր ա երթում.
Քենին մահանայ ա արել,
Եարոջը տե՛ս ա երթում։

18

Օ՚աղէկ ունիմ՝ ալայ ա,
Ըլայ չի՛, ալվալայ ա.
Եար բռնիլը լաւ կըլնի,
Նաց թողալն բալա ա։

19

Կանաչ տեփուր մէյտան ա,
Տեսէք՝ իմ եարը տանն ա.
Նոր ծլած բէղիդ մեռնեմ,
Ասկէթելի նման ա։

20

Մի ջաղաց երկու դռնի,
Բարձ դրէք՝ եարս կռնի.
Ես՝ դու մի բաղում պ'տինք,
Ես չինարի, դու նռնի։

21

Սարէն կ'գայ ձիաւոր,
Մեր տունը չարդախաւոր.
Հրէս եկաւ իմ աղբեր,
Երեք օրվան թագաւոր։

22

Արևը կամար կամար,
Կապել ես ոսկէ քամար.
Յիսուն օր պաս եմ պահել,
Իմ աղբօր ճամբի համար։

23

Մատանիք ոսկէջրած,
Այ տղայ, դու ինձ գրուած.
Դու խանին նօքար պըտես,
Ես քո ծոցը զանջիրուած։

24

Կանգնել ես, կանչում էլ չես,
Բոյիցդ ամաչում էլ չես.
Եկայ՝ կշտո՛վդ անց կացայ,
Տէր ես՝ ճանաչում էլ չես։

25

Սարի թրթնջուկ թաղա,
Ջաւզ ու մեխակ քեզ մաղա.
Ինձ պէս նազանի աղջիկ,
Քեզ պէս տղին ո՞նց սազայ։

26

Բերդիս կտերն ցել ունիմ,
Այլ աբրշում թել ունիմ.
Թիլլիկ միլլիկ սարկաւագ,
Ես քեզանից մէյլ ունիմ։

27

Հաց եմ թխել, գարի ա,
Իմ եարը սաֆարի ա.
Սաֆար երթալուդ մեռնեմ,
Խօսքերդ շաքարի ա։

28

Սարի խոտը ծեղվէ ծեղ,
Աղբեր երթանք միատեղ.
Որ հարամին վըրայ տայ,
Գլուխ տամ գլխիդ տեղ։

29

Խնձոր ունիմ կըծած ա.
Չորեք կողմն երծաթած ա.
Աղբերս ուզեց, տուի ո՛չ,
Ազիզ եարի ղըկած ա։

30

Կանգնել ես ախա բախա,
Լաչակիդ տուտը կախ ա.
Սև տղայ, սպիտակ աղջիկ,
Բռնել էք իրար եախա։

31

Երդիկ երդիկ բռնել ես,
Երդկակոճին կռնել ես.
Իմ նանը քեզ աղջիկ չէ՛ տալ,
Անոյշ քունդ կտրել ես։

32

Արևն ընկաւ մեր պատին,
Արքայութիւն իմ տատին.
Հոգիդ ղառուլի, ա՜յ տատի,
Ինձ խի՞ տուիր կռնատին։

33

Ջրի վերայ սազ պըտի.
Իմ օրդակը ղազ պըտի.
Ի՞նչ եմ անում թուլունգին,
Իմ եարը Շահբազ պըտի։

34

Ա՜յ եար, ա՜յ եար, կանչել ես,
Մարայ 1) աղլուխ բռնել ես.
Բարեւ տուէք, տուար ո՛չ,
Մազեար թարկս տուել ես։

35

Բաղումը կար բաղմանչի,
Շուշին ածէր ու կանչէր.
Թաբունդառած՝ դուրս թռաւ.
Մինն իմ եարի նման չէր։

36

Մեր դրանը ուռի ծառ,
Ոսկէ կաքաւ վրէն թառ.
Երթայր ու գայր՝ օրօր տայր,
Ալւան ծաղիկ տանիլ տայր։

37

Հա՜յ օրօն, օրօն ծաղիկ,
Կարմիր ու տորոն ծաղիկ.
Ալւալայ խալխ եմ կիտել,
Ի՞ն էլ քեզ օրօն ծաղիկ։

38

Նախրատափին խնկի ծառ,
Խնձոր քցեմ՝ արի՛, տա՛ր.
Ուրբաթ՝ շաբաթ քեզ մօհլաթ 2),
Լոյս կերակի արի՛, տա՛ր։

39

Իմ աղբերը սարումն ա,
Շուշին գոտկածալումն ա.
Աղբեր ջան, շուխդ ածա՛,
Պիրդ Լօռուայ քարումն ա։

40

Մի բարձ եմ արել՝ իմն ա,
Մինն էլ եմ արել՝ իմն ա.
Գեանջու քարւանն գալիս ա,
Միջի թաւադն 3) էլ իմն ա։

41

Տեղ եմ քցել՝ փոթ կ՚տայ,
Բարձ եմ դրել՝ սոթ կ՚տայ.
Մեռնեմ միջի քնողին,
Անոյշ խնկահոտ կ՚գայ։

42

Ա՜յ տղայ, դու հուր ես՝ մուր ես,
Ես ծարաւ եմ, դու ջուր ես.
Մուղարլամ՝ թառլամ շոր ես,
Համբարձում, գիշերն ո՞ւր ես։

43

Արեւն արեգունի,
Իմ եարս Գեղարքունի.
Գեղարքունւոյ սարը փուլ գայ,
Բալքի իմ եարը տուն գայ։

44

Ամպելայ ամպի տակին,
Ծունկս ծնկանդ տակին.
Ես քեզ ո՞ր տեղ սիրեցի,
Մեխակի ծառի տակին։

45

Մեր դրան առաջին մի դարան,
Տղայքն եկան, նի՛ դառան.
Կուռս տարայ՝ որ բռնեմ,
Թազի 4) ու թուլայ դառան։

46

Մեր դրան առաջին մի դարան,
Աղջկերքն եկան, նի՛ դառան.

47

Ես աղջիկ եմ, ա՛լ կուզեմ,
Ալս ծալուծա՛լ կուզեմ.

1) Եգիպտոսի։ 2) Ժամանակակէտ, պայմանաժամ։ 3) Ազնուական, ազնուհի։ 4) Որսորդ շուն։

Կուլաս տարայ՝ որ բռնեմ,
Շարած մարգարիտ դառած։

Որ տունը որ ես մտնեմ,
Ոսկին սարքաւոր կալցեմ։

48

Աղջիկ՝ աղջիկ, ա՛լ աղջիկ,
Աչքերդ չալչալ աղջիկ.
Դու մեր տանը հարս պըտես,
Իմ քիրը քեզ տալ[1]) աղջիկ։

49

Աղբեր հանաքից մեռնեմ,
Ոսկէ դանակից մեռնեմ.
Ճամբայ երթող՝ չէկ աղբեր,
Դուքքան բազարից մեռնեմ։

50

Ջաղացս մաս եմ տուել,
Սիրել եմ, ջան եմ տուել.
Օխտը տարի սէրութիւն,
Մէկ օր պայման եմ տուել։

51

Ջաղացիս աջոյ կուռը.
Կ՚ըընկայ միջի գիւլը.
Վա՜յ, իմ սիրած բիւլբիւլը
Քարշեցին խոյնի դուռը։

52

Արազը[2]) հեշտացելայ,
Ճամբէքը կօշտացելայ.
Իմ Նանին խաբար տարէք,
Մուշտարիս շատացելայ։

53

Սանդ կ՚ծեծեմ, խաղ կանեմ,
Մաշիկը ոտիս լախ կանեմ.
Այ տղայ, դու շատ մի՛ խօսալ,
Մուկն ընկիցդ[3]) կախ կանեմ։

54

Հա՛յ էրն ա՛ էրնա,
Տղայքն ձեր տէրն ա,
Աղջիկք, դուք շատ մի՛ խօսաք.
Տակի դէհն ձերն ա։

55

Այ օրօն, օրօն ծաղիկ,
Կարմիր ու տորոն ծաղիկ.
Տարենը մի՛ հետ կ՚գաս,
Գամ քեզ օրօն, ա՛յ ծաղիկ։

56

Այ տղայ, դու հէրիս՝ մէրիս,
Մուր եկար դու կէս գիշերիս։
Տեղումս քեզ տեղ չ՚կայ,
Գլուխդ դիր կռներիս[4])։

57

Այ տղայ, դու բաղոնջ արի,
Անտերդ շաղոնջ արի.
Էս թաղը ղալմաղալ[5]) ա,
Մա՛ն տո՛ւր[6]), էն թաղոնջ արի։

58

Ճրագ դնեմ լիսացու,
Կարմիր խառէն քիսացու.
Էս քո մօրը հարսնացու,
Դու իմ մօրը փեսացու։

59

Ծաղիկ եմ քաղել՝ դեղին ա,
Իմ եարը ձեր գեղին ա.
Հէլ ու մեխակ շատ ունեմ,
Հըրէ եարիս ձեռին ա։

---

1) Ամուսնոյ քոյրը։ 2) Երասխ գետը։ 3) Ներսան։ 4) Գիրկունք։
5) Կռիւ, շփոթ։ 6) Շրջել։

60

Ծաղիկ եմ քաղել՝ ա՛լ ա,
Ա՛լ չի՛, ալուալայ ա.
Եար բռնելը լա՛ւ կըլի,
Բաց թողալը բալաբալայ 1) ա։

61

Ծաղիկ եմ քաղել նարինջի,
Ա՛յ տղայ, վէր արի՛, փնջի՛.
Իմ մէրը քեզ աղջիկ չի՛ տալ,
Քանի՞ ման գաս եաւընջի։

62

Ա՛յ տղայ, դու բաղի 2) միջին,
Ոտներդ շաղի միջին.
Կանչի՛, կանչելուդ մեռնեմ,
Ես եմ քո հաղի միջին։

63

Ա՛նց կենամ գետի կուռը,
Քաղեմ մի դասթայ 3) նուռը.
Ո՛վ իմ սիրածն ինձ չի՛ տայ,
Կ'քարշեմ Խանի դուռը։

64

Ա՛յ տղայ, դու սև չուխաւոր 4),
Ողմոսը ծոցիդ սովոր.
Երնակ կ'տամ էն օրը,
Տունս կ'գաս թագաւոր։

65

Ա՛յ տղայ, իր անել տո՛ւր,
Մի մատը գիր անել տո՛ւր.
Ինձանից քեզ ճար չ'կայ,
Քաքուլդ վեր անել տո՛ւր։

66

Ջաղացի դուռը տարթա,
Կտուրը լիքը մարդ ա.
Հորէս եկաւ իմ եարը,
Գոտիկը լիքը վարդ ա։

67

Առուիդ արասին ղուրբան 5),
Գինուդ կարասին ղուրբան.
Ճ'ամբիցը գալող աղբեր,
Սրտիդ հաւասին 6) ղուրբան։

68

Վարդ եմ քաղել մաղերով,
Վայր եմ դրել շաղերով.
Հորէս եկաւ իմ եարը,
Ալ ձին տակին խաղալով։

69

Ջուր ա գալի լափ տալէն,
Երկու խնձոր ծափ տալէն.
Հորես եկաւ իմ եարը,
Խուլ գդակը թափ տալէն։

70

Ձուն դնեմ վըրէն՝ խաշեմ,
Ն՛ն լեմ կտուրը, եաշեմ 7).
Տնեմ, իմ աղբերը գալիս ա,
Ձոքեմ, չաքմէքը 8) քաշեմ։

71

Ջաղացի դուռը փոս ա,
Քար կ'քցեմ, կ'խօսայ.
Կանչի՛, կանչելուդ մեռնեմ,
Իմ նանի աղիզ փեսայ։

---

1) Վատ հետևանք։ 2) Այգի։ 3) Փունջ։ 4) Արանց վերի հագուստը։ 5) Զոհ։ 6) Սէր, փափաք։ 7) Նայել, տեսնել։ 8) Կօշիկ եւրոպացոց ձև կարած, իսկ բուն հայաստանի ձև կօշիկն լափչի, լափչիք և քօշերն են։

72

Նաղէկ, Նաղկևանայ ես,
Ասլըդ Երևանայ ես.
Տարենը մի հետ կ՚գաս,
Մագեամ նուբարխանայ ես։

73

Ձեր բաղի դուռն բաց ա,
Ոտներդ շաղով թաց ա.
Եարիցդ հեռացել ես,
Աչքերդ լիքը լաց ա։

74

Աղջիկ, մազերդ հիւսէիր,
Թուշդ երեսիս քսէիր.
Ելէիր բարձիս վերայ,
Բիւլբիւլի պէս խօսէիր.

75

Աղջիկ, գնանք մեր բաղը,
Պոկեմ շամամիդ թաղը.
Էդ երեսիդ շաֆաղը 1),
Հանելայ սրտիս դաղը։

76

Այ տղայ, անունդ ա Սարգիս,
Արի նստենք էս կարգիս.
Ես ու դու բաղում պիտիմք,
Ես չինարի, դու նարգիզ։

77

Մտիկ արէք էն ղուշին,
Ոտը դրելայ փուշին.
Մեռնեմ չալչալ ունքերին,
Թուխ աչք՝ կարմիր թուշին։

78

Սպիտակ ձին նալն ինչ կանէ,
Միրունն խալն ինչ կանէ.
Եարն որ եարին սիրէ,
Ասուլխն ինչ կանէ։

79

Ձուն դնեմ թաւէն՝ [2]) խաշեմ,
Գնամ կարովը եաշեմ.
Եթէ եարս գալիս է,
Ձոքեմ՝ չէքմէքը քաշեմ։

80

Այ տղայ, դուն ալ կապաւոր [3]),
Տուն ունես չարդախաւոր.
Էն օրին էրնեկ կուտամ,
Իմ տուն՝ տուն գաս թագաւոր։

81

Սև հաւի ձուն 'փուրն է,
Իմ եարը Գեանջու [4]) կուռն է.
Գեանջայ, քու սարը փուլ գայ,
Բալքի իմ եարը տուն գայ։

82

Սերնաքամին գալիս է,
Թինգլայ մէջքս տալիս է.
Մէյդան արէք, անց կենամ,
Նարոտ եարս գալիս է։

83

Ջուր է գնում արխումը,
Աբըրշում ա չարխումը [5]).
Էն օրին էրնեկ կուտամ,
Ջոմարդ կանգնես խալխումը [6])։

---

1) Լոյս։ 2) Կերակրի փոքր և տափակ պղնձէ աման։ 3) Հագուստ։ 4) Ելիսաւետպօլ, Елизаветополь, Գանձակ երկրումը։ 5) Ջրի անիւ, водочерпательное колесо. 6) Ժողով, խումբ։

84

Մէկ խնձոր ունեմ՝ կծած է,
Բոլորքը զառով նըշխած է.
Աղբերս ուզեց՝ տուի ոչ,
Ասի՝ եարիս ղրկած է։

85

Գնացի, ջուրը տեսայ,
Շաբաքայ գուռը տեսայ.
Ծռած բեղերուդ մեռնեմ,
Իմ մօրս աղիզ փեսայ։

86

Գնացի ջուրը լուացք,
Աղօնս էր ոսկէջրած,
Իմ հէրն ու մէրն ի՞նչ անեն,
Ճակատիս էս էր գրած։

87

Իմ աղբերս ծառի տակին,
Աղմուսն կռան տակին.
Աղմուսն գիր է դառել,
Լեզուն բիւլբիւլ է դառել։

88

Մեր տան յետնէն մի մառան,
Տղերքն եկան՝ յետ դառան.
Ձեռս տարայ թէ բռնեմ,
Գիփ լաղ ու մարջան դառան։

89

Սարերի սինձն ինչ է,
Կաթն ու բրինձն ինչ է.
Եարն՝ որ եարին սիրէ,
Խօսք ու զրիցն ինչ է։

90

Գետ 'ի վեր ջուր է գնում,
Հորցրէ՛ք թէ ո՛ւր է գնում.
Քենուն մահանայ է արել,
Իր եարի տունն է գնում։

91

Ջան գիւղում կասեմ՝ կ'շարեմ,
Տօպրակը կածեմ՝ կու կարեմ.
Կտրէ կտուր ման կուգամ,
Քանց քեզ լաւը կու ճարեմ։

92

Մեր տան յետնէն բաղչա 1) կայ,
Բաղչի միջին րէյհան 2) կայ.
Րէյհանը քաղող պիտի,
Ծոցումը խաղող պիտի։

93

Ոյ տղայ, դուն սա՛ մ՚սա՛,
Գդակիդ 3) թափէն խաս ա.
Իմ մէրը ինձ քեզ չի տալի,
Իմ հօրը քրթամ 4) ասա՛։

94

Գիւղում գիւղում, գիւղ չիշակ,
Ես ու դու մտնենք մին դօշակ.
Մինչեւ 'ի լոյսը քըչփըչանք,
Լուսէն յետոյ կըրկըչանք։

95

Աղջիկ, կապէդ ա՛լ պիտի,
Բոխչէդ ծալ ծալ պիտի.
Ում տունն էլ որ տուն երթաս,
Ոսկին սարէսար պիտի։

---

1) փոքր այգի տան առաջև; садикъ при домѣ, палисадникъ. 2) Василекъ, ռէհան: 3) Գլխարկ, шапка, фуражка. 4) Կաշառք, взятка, подкупъ.

96

Մ՚եր տան տակին վար կանեմ,
Ձաւլ ագռաւին քար կանեմ.
Թէ իմ սիրածը ինձ տան,
Գոհութիւնս Թարկ կանեմ:

97

Մ՚եր բաղումը մի գարան,
Շատ Հարսնաղջիկ նի դառան.
Ձեռս տարայ Թէ բռնեմ,
Գիփ Թաղի՝ Թուլայ դառան:

98

Մ՚եր բաղումը բաղմանչի,
Մալբի ծառի նման չի.
Շատ Հարսնաղջիկ դուրս եկան,
Ոչ մէկն իմ եարիս նման չի:

99

Դու նստել ես գերանին,
Դարղու շուին բերանին.
Ոսկէ ղայթան 'տի գործեմ,
Գնեմ ջիբիդ բերանին:

100

Նայ տղայ, դուն օտար լինիս,
Սև հաւի կատար լինիս.
Ինձ մէկ խումար եար սիրի,
Դուն ճօթ ու պատառ լինիս:

101

Նայ օրօն, օրօն ծաղիկ,
Կարմիր ու տորոն ծաղիկ.
Հարսն ու աղջիկ մեծրել 1) եմ,
Որ գան ու քաղեն ծաղիկ:

102

Ջուրը գալիս ա լափ տալով,
Երկու խնձոր ծափ տալով:
Հորէն եարս գալիս ա,
Նա գդակը Թափ տալով:

103

Գիւլում կասեմ՝ կ՚շարեմ,
Ջուալը կածեմ՝ կ՚լարեմ.
Թամամ աշխարհը ման կ՚գամ:
Քեղնից լաւը կ՚ճարեմ:

104

Ես աղջիկ եմ՝ ալ կուզեմ,
Բօխչաս ծալէծալ կուզեմ.
Երբ որ եարիս տուն կերթամ,
Գօտիկս Թիրմա 2) շալ կուզեմ:

---

71

Այս իմ մարգարէ շարոց
Ոսկեթել ծածկոցն 'ի վրան.
Ջ՚քո Հայրըն պատիւ ձէնեմ,
Քեզ ինձի կ՚ուզեմ Թէ կուտայ:

---

1) Հրաւիրել: 2) Քիրմանու, Կաշմիրի շալ, кашемирская шаль.

Կըտրիճ մի՛ անխելքանար,
Թէ հազար ուզես՝ նա չի տայ.
Ծոցըդ լի ոսկով արա,
Եկո՛ մեր տուն խաղ-արա։

Զիմ հայրըս պարտական արա,
Դուն կանգնէ զինչ քուրթ հաւալա [1])
Ես իմ հօրըս հետ կըռուեմ,
Թէ՝ գնա, պարտքիդ ճար-արա։

Մայրըս քեզ աթոռ դընէ,
Դուն նըստիս զինչ բարձր ամիրայ [2]).

. . . . . . . . .

. . . . . . . . .

Ձեռքըդ բըռնեմ, ներս տանեմ,
Դուռըն գընեմ զփակն 'ի վերան,
Ըպրշըումի խալի [3]) կըձգեմ,
Ասկեթել դօշակ [4]) 'ի վերան։

Բարձրիկ մի սեզան բերեմ,
Ու խորված կազւուկն 'ի վերան,
Զուգումի գինի բերեմ,
Որ խըմենք 'ի սիրոյ վերան։

---

72

Կիւզէլ [5]) մի ես երեկ տեսայ
Ի քաղաքն 'ի յԸնգուրիա,
Թագաւոր մի խընդիր եղաւ
Ի Մոսկովայ, 'ի փորթագալայ։

Երես-տեսալիք [6]) տուր
ԶՄէլանիկ, զԼուտրենէ
Ծով աչերուն գին տուր
ԶՈւսկուտարն եւ զԽալաթիա։

---

1) Պարտատէր։ 2) Իշխան, Պարոն։ 3) Կապերտ, գորգ, խալի-չա։ 4) Ընկողին, постель. 5) Սիրուն, գեղեցիկ, նազելի։ 6) Երեսը տեսնելու գին, վարձ։

Ելաւ ու խալաթ քաշեց
Շամ քաղաքըն 'ի հետ Մըսրայ,
Բաղցրիկ զըուցին համար՝
Շահրազուլ, Պաղտատ ու Պասրա։

Կիւզէլն այլ 'ի խօսք ելաւ,
Ձայն տաց, ինչ իւր պիտենայ.
«Թագաւոր, քո գալն 'ի բարին,
Բայլափոխդ իմ գլխուս վերայ».
«Կամիս ինձ փէշքէշ [1]) լայէխ [2])
Շամ քաղաք 'ի հետ Մըսրայ,
Կուտաս զԻստամբօլ
Տուր Վենետիկ կամ Իսփանիա»։

«Շատ սըրբոց մարմինք կայ
Նա եւ մարմին տեառն Յակոբայ,
Կամ տուր զեղըըն Աստուածածին,
Որ շինած է Ալիկուլինա»։

Աղջիկ դու՝ 'ի նա քաղաքէն,
Որ կոչեն զանուն Պոլիա՝
Մեծ Կոստանդինոս ասեն
Մէջ նորա թագւոր կու կենայ։

Մէկ ծայրըն 'ի Ղալաթ Նըստի
Մէկըն Ղամիթ, մէկն Ամասիա.
Մըսըր քեզ ճիհէզ [3]) տուած
Ու Պուրսա, Բէճէ 'ի վերայ։

Թօխատ քայլափոխուդ գինն է,
Էրզրում, Կէնճէն 'ի վրայ,
Այդ անուշ ծիծաղելդ
Խորասան, Ղիւմրիւզն աժենայ։

Սարկաւագ ասօղ բանիս
Յինքենէս խիստ առատացայ,

---

1) Ընծայ, պարգեւ։ 2) Վայելուչ, յարմար։ 3) Օժիտ, բաժինք, приданое.

Զայս քաղաքներս ամէն
Կիւզէլի մի տըւի ճամպա։

Երբ որ սէրն գայ մարդուն՝
Ոչ մանուկ ասէ, ոչ տըղայ,
Ոչ աշխարհական կ'ասէ,
Ոչ երէց, ոչ հաբեղայ.

Մանկո՛ւնք՝ մի՛ մեղադրէք,
Սէրըն արաւ զիս տիվանա [1]),
Զայսչափ քաղաքներս ամէն
Կիւզէլի մի ճորտ ու ծառայ։

Ըժէ ինչ որ տըւաք, եղբարք,
Կեւզէլին իսկի գին չ'կայ.
Նա կիւզէլն, որ զքեզ սիրէ՝
Զհոգիդ տուր՝ զաչերդ 'ի վերայ։

---

73

Հէ՜յ, մէկդի բացէք մէյդան,
Ի՞նչ ապպէս առջեւ կու գան,
Զա՛րկ խամչին [2]), տուն մի՛ նայիր,
Փոնէն-ալ կըլայ սէիր.
Թո՛ղ էլլին կըտրիճները,
Տեսնունք նոցա ուժերը։

Ո՞ւր է գոմէշին գըլուխը,
Թո՛ղ մէյտան գայ ուզեցողը,
Տէ՜ հածէ աէվէ խալտրան [3])
Ըթխուլախ [4]), այու երխան [5]).
Փապա դուն կարճուկ Մաւթին,
Ինչո՞ւ կը նայիս հալխին։

---

1) Խելագար, ցնորած։ 2) Խարազան, մտրակ, плеть. 3) Ուղտ վերցնող։ 4) Ձիու ականջ։ 5) Արջ կործանող։

Իշտէ [1] կարճուկ Մ'առթինը
Կայնից Ակօբին առջեւը,
Ընկան գօղի գօղիի,
Ըռնուեցան ձեռք ձեռքի.
Թ'ընդղաց տակը գետինը,
Հավա [2] էլլան թօզերը:

Տաքցան, ասլան կըտրեցան,
Չորս քօվը պըտըրտվեցան,
Ակօբը փաթթըվեցաւ
Ու մէջքէն խափմիշ արաւ [3].
Մ'առթինը մէկէն բըռնից,
Ճ'ըկից, վերուց ու թապլից:

Ըլլան տահա կըտրիճներ,
Ան Մ'առթինին հիչ բան չ'էր.
Նորա գալ էր պատուածը,
Գիտէ ալայ [4] աշխարքը.
Նա օմուզին [5] վըրայէն
Օպա թապլած կըտրիճ է:

Կարճուկ Մ'առթինին ուժին
Ուժ չի հասնիր հէչ մէկին.
Աֆֆէրիմ [6] կարճուկ Մ'առթին
Նամ իս դուն գեղացիին.
Դուն առիր ան գըլոխը,
Քըրտինքիդ հէլալ հախը [7]:

Օ՜ Մ'առթին՝ մէյնակ չ'ուտիս,
Մեր փայն-ալ քիչ մը պահիս.
Գուլխուն համը մենք-ալ տեսնունք,
Քու ուժէդ մենք-ալ առնունք.
Քեզի պէս ասլան կըտրինք,
Գալ պատուինք, օպա գըրչինք:

1) Ահա: 2) Օդ: 3) Խլեց, բռնեց: 4) Բոլոր: 5) Թիկունք:
6) Քա՜ջ, փառք քեզ: 7) Արդար վաստակ:

74

Յորէս էկաւ մէկ մէկ ուտի,
Աղուէսն էկաւ լանճիկ լանճիկ,
Ոտեր ունէր կարճիկ կարճիկ,
Սիրտը ուզեց հաւի քարճիկ,
Ա՜յ իմ չալիք-մալիք, չալմալալիք,
Չալմ պտորիկ, չալմտըպիկ, տուշտահոտ,
Տմպլաճակատ, խաշխատպիկ, տուզիկճուտեր,
Աղուէսն պառկեց աղբի տակին,
Աչքերը ձգեց շաղ հաւ ձագին,
Նետով կըտամ աչքի տակին,

Ես մի բատուկ զարկած պահեմ.
Ելեմ երթամ ձագերս հանեմ,
Ես էն աղուէսն կու սպանանեմ,

Յորէս եկաւ Գաւաթ-Խանը,
Ով տորվացրաւ ամէն բանը,
Աղջիկ՝ վեր կաց, ջուր տուր հորթին,
Մենի կատուատիրոջ որդին,

Այ տղայ՝ անունըդ է Աւագ,
Քեզ կ՚ուտացնեմ մեղր ու կաքագ,
Ժամ տիրացու, համ սարկաւագ,
Մեկ ճուտ ունիմ իմ յիշատակ։

---

75

Սիրական քուրիկներ դառօսը ձեզի,
Նստուած սիրով պահէ մեզի.
Փեսայն կուգայ սուրով զաւով,
Մարդը շատ է կառնէ զոռով։

Կերթաս կերթաս ճամբան դիւզ է
Աչքդ կուլայ սիրտդ կուզէ,
Կերանձդ չամիչով թուզ է.

Կարմիր և ճերմակ բացուած վարդ ես,
Թիւրլիւ չիչակ ռեհան վարդ ես։

(Նոր Նախիջևանայ երգ)։

---

76

Սամաւարը պատուական է,
Մէջին ջուրը բաւական է,
Չա՛յ խորթողին աչքը սիրեմ։
Ձեռքին բռնեմ քովս բերեմ։

Չա՛յ ասած բանդ խիստ աղեկ բան է,
Մարդուս սիրտը ռահաթ [1]) կ՚անէ. չա՛յ խորթողին և այլն։

Հանէ ռոմին շիշան հանէ,
Գնեղին չայը կարմիր կանէ. չայ խորթող. և այլն։
Արծթի պատնոս թաս ու գաւաթ,
Սոմի շիշան մէջը դրած։ չա՛յ խորթ. և այլն։

(Նոր-Նախիջևանի երգ)։

---

77

Նորէն նորէն Լազարէթ,
Մօրէն Թախթէն իսկ ելէ.
Շալէ շապիկ հագել է,
Բեմեր գօտին կապել է.
Մահլային գուռն էլիլ է,
Ոտքը չափռաստ դրիլ է,
Կիթառը ձեռքը բռնիլ է,
Բանչեն ժանչեն կը զալէ։

(Նոյն)։

---

78

Զըստիկ պըստիկ Գաճաճ-Մուք,
Ինչ ասենք քեզ—մա՞րդ թէ մուկ,

---

1) Հանգիստ։

Ինչի՞դ է պէտք մեծ տունը,
Եկ, կացիր մեր չքրումը.
Հազա՛ր փառք քո ստեղծողին,
Որ մեզ հասցրեց էս օրին,
Քեզ տեսնելով լիանալ,
Քեզ ծաղրելով, կշտանալ.
Դէ՛հ Գաճաճ-Մուք, դէ՛հ վազեր,
Մարդ ես—մեր յետքից հասիր:

Հիւսիսափայլ 1861 Թ. ե. 262:

---

79

Եկէ՛ք, բարեկամ՛ք, եկէ՛ք,
Արագ արագ վազեցէ՛ք,
Ճ՛աշու սեղանը դրած է,
Կերակուրը բերած է.
Քանի տաք է, վազեցէք,
Եկէ՛ք, բարեկա՛մք, եկէ՛ք:

Հիւսիսափայլ 1861 Թ. ե. 265:

---

80

«Հաւար Զուլօ, մաղած Զուլօ,» 1)
«Սանի գեօրդում 3), եանդըմ 4) Զուլօ:» 2)

Ես Զուլօն եմ Մաստարեցի,
Հինգ օր արի, մեր տուն կեցի,
Դէմ աղօթրան եկեղեցի:
Արեն ելաւ կամար կամար
Զուլօն կապեց ոսկէ քամար,
Քեզի բերեմ ջանիս համար:
Արեն ընկաւ խամուր բերդին,
Քո սէրն ընկաւ մէջ իմ լերդին,
Ես քեզ սիրեմ, թո՛ղ զիս քերթին:

1) և 2) Ամենայն տանց վերջումն կրկնեա՛ զայսոսիկ տողս:
3) Քեզ տեսայ: 4) Էրվեցի:

Տան քով անցայ, ճրագն էր վառ,
Դու նման ես զօղանի գառ,
Որբևերցի՛, արի՛ զիս առ.

Ջաղցի բոլոր ըմէն ուռ էր.
Աշխարհըն առէր. Զուլօն ծուռ էր,
Մէջ իմ սրտին լ՛ալ ու դուրր էր։

Խունտոիք վառեր՝ եղեր է մուխ.
Կապել փուշին՝ Թորգելայ պուխ,
Ունքերդ կամար՝ աչքերդ թուխ։

Օր մը աղէկ՝ օր մը վատ էր,
Կանանչ գլուխ չօլի 1) բադ էր,
Է՛լի խօսքով զիս կու առէր։

Տան քով անցայ՝ Թափ քելեցի,
Լանգով զարկի՝ զերդիկ բացի.
Յա՛րս տուն չէր, նստայ՝ լացի։

Խառ խորօտիկ ասլի զադա.
Քո դարդ մէջ իմ սրտին շատ ա,
Քո ծոցն ընձի նաշխուն օդա 2)։

Մեր տան յետև արտ մի եռնջայ 3),
Խխեմ զաթա, ճամբեմ խօնչայ,
Առնեմ Զուլօն, շրջեմ Գեանջայ,

Շատ խորօտիկ անմահութիւն,
Սիրելիս, մի՛ ըներ վատութիւն,
Խորգեմ՝ երթամ ղարիպութիւն 4)։

Դու կանգնել ես դէմ ամրոցին.
Զուխտակ շամամ մէջ քո ծոցին,
Դու կ՛խաղաս խեռ վըզնոցին։

Մեր տան յետև ջուխտ մ՛գերան,
Բոլոր երես՝ պստիկ բերան,
Քո սիրողեդ դռներ վերան։

Մեր տան յետև արտ մ՛ գարի,

---

1) Դաշտ։ 2) Սենեակ։ 3) Клеверъ. 4) Պանդխտութիւն։

Երթանք՝ քաղենք, տանք խխարի,
Ճ՚ամբեմ Զուլօյին գիարի [1])։

Պաղ ջուր պրծել՝ կու գայ սարէն,
Դեռ չի սաղցեր սրտիդ եարէն,
Ես ինչ անեմ զիմ քեօր սիթարէն։

Զուրն է պրծել՝ կու գայ սարէն,
Կու գըլգըլայ մարմար քարէն
Եարն է դարձել իր իղճարէն [2]),

Զափար Աղի նշխուն օդէն,
Նո՛ր եմ ելել Զուլօյի մօտէն,
Չեմ կշտացել անոյշ հոտէն։

Նշխուն օդա՝ չինի քեասայ,
Նանէին, գնա՛, թաքուն սաս
Այսօր ես Զուլօյին թագնայ տեսայ

Դու ելել ես՝ կ՚երթաս ՚ի բէր,
Ո՛չ բէրն ըլի, ո՛չ բէրատէր,
Տօ՛ պստիկ հարս, նոր սիրոյ տէր։

Դու ելեր ես՝ կերթաս իգին,
Դու ու քո ջուխտակ տեգեր կին,
Ո՛րն տեսնի՛ ելնի հոգին։

Քօ մօր անուն կըսեն Սառայ,
Ես քո սիրոյդ կրակ վառայ,
Դըրմաթ չ՚ելաւ՝ քեզիկ առայ։

Դու կաններ ես դարգեահի [3]) դուռ,
Մէջքդ նմանի խանչալի բուռ.
Զիս ըրեցիր սավդա [4]) ու ծուռ։

Ամպերն եղեր բուլթա բուլթա,
Զուլօն կապեր բալաք փուլթա,
Ես քեզ սիրեմ՝ թող ըսեն սուտ ա։

Տնէն ելար հալա հուլա,

---

1) Օտար երկիր։ 2) Խօստումն, խօսք տալը։ 3) Արահի դուռը, ворота. 4) Սէր, սիրահար։

Ծիծերդ նմանի բամբկի քուլա,
Աչկունքս տեսան, սիրտս կուլայ։

Առաւօտուն բարի լուսուն,
Քո կոճկներդ հարիւր յիսուն,
Ես ղուրբան եմ էդ քո տեսուն։

Զանունդ գիտեմ, ա՜խ, չե՛մ տալ,
Մանիշակ խառնուեր-հետ քո վարսի,
Ձեռս տարայ ծոցդ՝ խոցերդ հասի։

Զանունդ եմ տուեր զանազան,
Իսկի չի՛ կայ քեզի նման,
Ծամերդ էր ճիւղ ճիւղ ըէյհան։

Դու կու քելիս եանա՛ եանա՛,
Մէրկանդ ըսի՝ դուռը բանայ,
Զիրար սիրենք՝ մարդ չիմանայ։

Մեր տուն ձեր տուն մէկ դառապով,
Ելնես մտնես կանաչ կապով,
Զիրար սիրենք Աստուածն ապով։

Դու ելեր ես՝ կերթաս Կանգառ,
Ծամերդ ուսերդ էլէ խանգար,
Ես քեզ սիրեմ՝ թո՛ղ զարկեն չանկալ։

Մեր տուն ձեր տուն դիմաց դիմաց.
Հար երբ աչօք ընեմ իմաց,
Մեր երեսի հայէն գնաց։

Աշխարհ՝ ալա՛մ քեզ կու գովեն,
Որ մ՝ չելար սէլի հովէն.
Ծամերդ քաշած Վանայ ծովէն։

Մեր տա՛ն խաւ արտ մ՚մասուր,
Զուլօն առնեմ՝ մտնեմ մսուր,
Զուլօն սիրեմ՝ թորգեմ սկեսուր։

Հըլէ՛ւ վէլէ՛ւ Մսրու գոմէշ,
Իմ ձեռ թալեմ Քեալաշի փէշ.
Զուլօն եղնի ընձի փէշքէշ։

Մեր տան յետև արտ մ'պընդուկ,
Ձեր տան յետև արտ մ'պընդուկ,
Զուլօն առնեմ՝ մտնեմ սընդուկ։

Քամին եկաւ էրան էրան,
Գնաց հասաւ Մշու բերան,
Մշու հաւեր թևաւորան,
Քեալաշի տուն սևաւորան։

Մեր տան ետև քառսուն կարաս,
Քառսուն կարսի գինին էր խաս.
Ոսկէ գիւգիւմ՝ [1]) արծըթէ թաս.
Ամէն թասին պագիկ մ'տաս։

Բուլխարիկն [2]) եկայ՝ ցախ էրի.
Նափունջիս պառտէն կախ էրի.
Մտայ ծոցդ՝ չիլթախ էրի,
Պագիկդ առայ, օխա՜յ էրի։

Ջուխտ մ' գութան դաշտ կու բանի,
Զուլօ խաթուն խաց կու տանի.
Մին կու քելէ, մին կու կայնի,
Աչքով՝ ունքով մարդ կու սպանի։

Մեր տուն ձեր տուն մօտիկ մօտիկ,
Դուն կապել ես կարմիր գօտիկ։
Երթանք՝ քաղենք կանանչ խոտիկ,
Տեսնունք՝ վե՞ր եարն է խորօտիկ։

Եկէք՝ երթանք գարի պոկենք,
Հայլի բերենք՝ գլուխ կոկենք,
Երթանք՝ Զուլոյի դրանը չոքենք։
Բալքեամ Զուլօն ընդեանց պոկենք։

Մեր տուն ձեր տուն երես երես,
Ապըսպարեմ՝ հայլիս բերես,
Արարիչ Աստուած սիրես
Զուլոյիս անուն չ'աւիրես։

---

1) Սափոր, ваза. 2) Վառարան։

Մեր տան յետև տուն մի կարաս.
Ձեր տան յետև տուն մի կարաս,
Ամէն կարսի գինին էր խաս,
Ոսկէ գիւգիւմ՝ էրծաթէ թաս,
Ամէն թասին պագ մը կուտաս։

81

Շահրիարցւոց երգ։ 1)

Ա՛ տղայ, դու հե՞ր իս, մե՛ր իս, 2)
Ո՞ւր եկար կէս գիշերիս.
Այ նանի ջան, այ լուլուլու 3),
Ծոցումս քեզ տեղ չըկայ
Գըլուխդ դի՛ր կռներիս։ 4)

---

1) Սուրբ Էջմիածնայ Վաղարշապատ գիւղից դէպի 'ի արևմուտ, (հինգ կամ վեց աւուր ճանապարհ—երկարութեամբ) «Շահրիար» կամ «Շէհրիար», Սարդարաբադ (Արագածոտն) բերդի հարաւային կողմը, գիւղ, ուր կը բնակին մօտ 80 չափ հայ գերդաստան; ունին եկեղեցի։ Շէհրիարի մօտ կան մինչև այժմ մնացուածք հնագոյն քաղաքամօր (столица, capitale) Հայոց Արմաւիրինը, Հայկայ թոռն Արմայիսից շինած մօտ, 4200 տարի մեղանից առաջ։ Երբ որ Երասխ գետը իւր ընթացքը փոխեց և հեռացաւ Արմաւիրից, այս մայրաքաղաքին նշանակութիւնը, ջրի սակաւութեան պատճառաւ, սկսեց նուազիլ, բայց, տակաւին, մինչև 5 դարը Քրիստոսի ծննդեանից ետոյ, ականաւոր տեղի էր և յայտնի չէ երբ խսպառ աւերակ դարձաւ։ Սարդարաբադու և Շէհրիարի շինութեանը Արմաւիրի աւերակների քարերից շատ նիւթ վաստակեցին։ Սարդարաբադու բերդը շինեց 1819 թուին Երևանու պարսկական փոխարքայ Հիւսէին-խան-սարդարը և Ռուսք, տիրապետելով Հայկական նահանգին, 1828 թուակ. ետոյ, առաւել ևս ամրացուցին բերդը։ Այժմ Սարդարաբադու և Երևանայ բերդերը գրեթէ ոչինչ նշանակութիւն չունին և Օսմանեան և Պարսից հետ եթէ պատերազմ պատահի, Ռուսաց գլխաւոր և կանոնաւոր կերպիւ ամրացուցած, նորահնար թնդանօթներով զինուորուած և պատերազմական պաշարով պատրաստութիւն տեսած բերդն Ալեքսանդրապօլունն է (Գիւմրի, Գումրրի, Կիւմրի, Շիրակ գաւառումը, Այրարատեան աշխարհումը)։

2) Այս ո՞ւր ես։ 3) Ամեն երկու տողի կրկնելու է։ 4) Բազուկներիս վրայ։

Ա՛ տղայ, դու բաղումն[1]) արի,
Անեբրովդ չաղումն[2]) արի,
Էս թաղը զալմաղալ ա[3]),
Ման տուր էն թաղումն արի։

Գեղից գաս գեղը մտնես,
Իմ քցած տեղը մտնես,
Ինձանից ջոկ եար բռնես,
Բէմուրատ հողը մտնես։

Վարդ եմ քաղել մաղերով
Վեր եմ դրել շաղերով[4]),
Հրէս,[5]) եկաւ իմ եարն
Ալ ձին տակին խաղալով․

Գնացի ջուրը տեսայ,
Շուշապանդ[6]) դուռը տեսայ,
Իմ հանի ազեզ փեսայ,
Գուլգազ[7]) երեսդ տեսայ։

Ալ ձին նալը ի՞նչ անի,
Սիրունը խալը[8]) ի՞նչ անի,
Սիրածը սրտով ընի,
Աշխարհի մալը ի՞նչ անի։

Ա՛ տղայ դու հատիկ մատիկ[9]),
Երեսդ նռան հատիկ,
Ի՞նչ վախտ ես քեզ կու տեսնեմ
Համ համբարձում է, համ Զատիկ։

Մեծ արտումն փուշ կըլլի,
Սառն աղբիւրին թուշ[10]) կըլլի,
Ուր գնում ես թէզ արի
Եարդ քեզ կարօտ կըլլի։

Ջաղացքի դուռը տաշած
Եաղլուխիս կիւլը քաշած,

---

1) Այգու կողմէն։ 2) Փայտով շինուած պատնէշէն անցիր։ 3) Բազմութիւն է։ 4) Ցօղերով։ 5) Ա՛հա։ 6) Ապակէ։ 7) Վարդեգոյն, 8) Երեսին սեւ բիծ։ 9) Կորիճ պատանի։ 10) Մօտ։

Մեռնիմ կէս կեռ [1]) ունքերիդ,
Հէնց ա (է) ղալամով քաշած։

Գնացի գետը լուածք,
Սապոնս ոսկեջրած։
Հերս ու մերս ինչ անեն,
Ճ՚ակատիս էս է գրած։

Աղջիկ, աղջիկ, ալ աղջիկ,
Երեսդ կայ խալ՝ աղջիկ,
Էրնէկ էն օրին կըլնի,
Իմ քեռը քեզ տալ՝ աղջիկ։

Ոտռիս տակը մանիշակ,
Իմ եարը քանց քեզ շիշակ, [2])
Օխթը թումանից [3]) անց կենամ
Քեզ բռնիմ եարիս մշակ։

Մի ջաղացք երկու դռնի,
Բարձ բերէք եարս կռնի [4]),
Ես, դու, մի պաղում պտ՚ենք [5]),
Ես չնառի դու Նռնի։

Ա՛ տղայ, դու պող ձիաւոր,
Սաղմոսը ծոցիդ սովոր,
Էրնէկ կու տամ՝ էն օրը
Գաս մեր տունը թապաւոր։

---

## 82

Պանդուխտ վասպուրականցին *) իր ընկերին։

Թող ախպէր [1], թող, որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած էլնի [2], Թող իմ աչք կլկլացող [3] պղտոր պղտոր ախպիւր [4] էլնի.

---

1) Կամար։ 2) Գեր ու բարակ։ 3) Թումանը տասը ռուբլի է։ 4) Կուռն, թև, կռնի, (կռնի, այս տեղ բայի եզ. գ. դէմն է և ոչ հոլով, և նշանակում է «թևերը դնել (բարձի վերայ)». յենուլ թևին։ 5) Պիտի լինինք։

[1] Եղբայր։ [2] Լինի։ [3] Կարկաջահոս։ [4] Աղբիւր։

*) Վասպուրական, ութերորդ նահանգ Հին Հայաստանի,

Թէ ոչն[5] էլ արտասունք[6] ունիս, արև[7] ծիկ[8] հետ ու լաց արա,
Մեր արտասունք թող ամպ դառնի, Հայոց դաշտեր անձրև էլնի։

Թողեր ենք ծէթիկիկ[9] ծեագերս[10] խեղճ ու կրակ վեր[11] պաղ
Թօրվան[12],

Ըս ախպէր ինոնց[13] արև, ինոնց օրեր մենք ենք տուեր.
Թողեր ենք մեր կողակիցք վզիկ ծռած կէլիւ[14] պէրան,[15]
Կողակիցք որ չում[16] մահուան հետն ապրելիւ[17] ուխտ ենք արեր։
Թող ախպէր թող որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած էլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր էլնի։

---

կոչվումէր նաև. երկիր Արծրունեաց, տէրութիւն կամ թագաւորութիւն Վասպուրականի (Յոյները վրիպակաւ կոչումէին. «Վասպարակակա, Ասպրականիա, Վերին Մարք (Մարաց երկիր), Վերին Մեդիա, Վասօրօպէտա»)։ Վասպուրականը ամենից ընդարձակ նահանգն էր և ունէր 36 գաւառ, զօր. Ռշտունիք, բզնունեաց (Վանայ) ծովի եզերքը, որ կոչէր եա ծով Ռշտունեաց, Թոսպեան լիճ, ծով Տոսպայ։ Սորա եզերքն է Նարեկայ վանքը. Տոսպ (Շամիրամակերտ, այժմ Վան), մայրաքաղաքն Վան; մօտ 2000 տուն հայ ժողովուրդ։ Սորա յարևակողմն ականաւոր է Վարագ լեառն, ներքին և վերին; Ողթամար, Վանու չորս կղզիներից գլխաւորը, ուր կայ Սուրբ Խաչ եկեղեցին, Գագիկ արքայի հրամանաւ շինած 915—921 թուակ.; կան նաև զարմանալի հին աւերակներ, ամրոցներ, կաթուղիկոսարան և այլն։

«Արտազ» և «Ակէ» գաւառք (այժմ Մակուա վիճակ, քաղաքն «Մակու» կամ «Մաքու», Պարսկաստանում), Մասիսից դէպ'ի հարաւ։ Գլխաւոր քաղաքն և նշանաւոր դաշտն կոչումէր Շաւարշան, ուր Հայոց թագաւորների զօրանիստը և հովանոցքը կային, Սանատրուկի' ապարանքը։ Մակուա սահմանումը կառուցեալ Թադէոս առաքելայք և արքայադուստր կոյսը Սանդուխտ, որի շիրիմը կայ մինչև այժմս մէկ մատուռի մէջ։ Մինս անգամ հռչակաւոր եղև և միշտ անմոռանալի է Հայոց համար Շաւարշանայ կամ Շաւարշական դաշտը, որ և Աւարայր կոչէ, մեծահռչակ և ազգասիրական նահատակութեամբ Վարդանանց զօրավարաց Հայոց, 451 թուականին։ Մնացածները. Գողթն (Ագուլիս), Նախճուան (Նախիջևան), Գառնի կամ Գառնի (հարաւակողմն Նայազիրու), Ընձաւացիք կամ Ընձաւացիք (Ոստան, Գարբահ), Մարանդ և այլն։

[5] Կոռ։ [6] Արտասուք։ [7] Աչք։ [8] Լաց։ [9] Փոքր։ [10] Զաւակերս։ [11] Վերայ։ [12] Թոնիրի։ [13] Նոցա։ [14] Կալել։ [15] Ներան։ [16] Մինչև։ [17] Ապրելու։

Քալեր[18] ենք շատ սար ու ձոր, արուն[19] գետերն էլ անցեր ենք,
Այս մարդ է թէ հրեշտակ է, քար է թէ հաւք զարմացըրեր[20] ենք,
Ախ մեր օղլէք[21] կանչելով ճամբահ[22] ըլմէն[23] լացուցեր ենք,
Պտտիր ենք էս[24] երկրի մէջ, ուր որ անբան[25] հիսապուեր[26] ենք,
Թո՛ղ ախպէր թո՛ղ որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր ըլնի։

Մեզ ինչի՞ համար գինի երբ մեր տղէք սև հաց չունին,
Մեզ ինչ պէտք օտարին զարդ երբ մեր ինկեր[27] պէօպիկ[28] ըլնի.
Ո՞ր երթանք տեսնել[29] էն[30] փառք որ մեր ճակտի քրտինքն ըլնի,
Օտարին տուն մեզ ինչ շահ երբ մեր տուն փուտ գերան չունի,
Թո՛ղ ախպէր թո՛ղ որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր ըլնի։

Այնքանտար[31] ենք խոնարհեր որ ըլմէն մարդ մեզ պեռ[32] կը դնի,
Այս մարդ է թէ անասուն խակի[33] հարց փորձ արող չկայ.
Մէկ քրտինք մէկ փարայի կուտանք շատ տիր[34] առնող չկայ,
Փոսի մէջ ինկած զարիպ մեր ձեռք բռնող հանող չկայ,
Թող ախպէր թող որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր ըլնի։

Այս էրկնուց[35] հաւքերը[36] տես, ինչպէս կերթան ճլվլալով[37],
Իր ծնագն ի[38] առեր թիւին[39], որ կուտ կը տանի իւր[40] ծնագներին.
Մենք մարդ ենք, հայու տղայ, կեանք կընցուցենք[41] ահ ու զարով,
Կեանք չունինք, մահէ կը վախնանք, մեր գերեզման կը լցուի փշով։
Թո՛ղ ախպէր թո՛ղ որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր ըլնի։

Թէ հովեր իրար զարնեն, տեղ մը չունինք պահկուելու[42],
Թէ ամպեր կարկուտ թափեն, տուն մը չունինք սթարվելու[43],
Թէ երկինք ճէր[44] էլ ըլնի, խելք չունինք վաստկելու[45],
Ահ, էս ինչ հօրոտ[46] օր է, կասենք, փարէք[47], կուտանք գինու։

---

18 Քայլեծ: 19 Արիւն: 20 Զարմացուցեր: 21 Տղայք: 22 Ճանապարհ: 23 Ամեն: 24 Այս: 25 Անբան: 26 Համարուեր: 27 Ընկեր: 28 Բոկոտն: 29 Տեսնել: 30 Այն: 31 Այնքան: 32 Բեռն: 33 Երբեք: 34 Անգամ: 35 Երկնից: 36 Թռչունք: 37 Ճռուողելով: 38 Այ: 39 Թևին վրայ: 40 Իւր 41 Կանցուննենք: 42 Ծածկուելու: 43 Պատսպարուելու: 44 Պարզ: 45 Շահ ընելու: 46 Գեղեցիկ: 47 Մանկներ:

Թող ախպեր թող որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր աղպիւր ըլնի։

Չորս տեհէն 48 ծովերն առեր մենք չոր կղզի մը մնացեր ենք,
Ես կասեմ կեամի 49 շինենք, տու գինով եւ աւալ թաւալ 50.
Որ մէկն ալ թէ ես շինեմ, կուկեայ 51, կոտրի յիմարաբար.
Օրէ օր ծով կը պարծրանայ 52, շատեր խեղդեց, եամա՜ն մէկ ճար։
Թող ախպէր թող որ իմ սիրտ կրակ ու բոց վառուած ըլնի,
Թող իմ աչք կլկլացող պղտոր պղտոր ախպիւր ըլնի։

Ըրէ ճան 53 ախպէր արէ, սիրտդ մ'աներ 54 քեարի 55 նման,
Թէ կը սիրես քեօ 56 Քրիստոս, քեօ պապերու սուրբ գերեզման.
Ու ըղմէն ղարիպ կուրպաթ 57 Հայու տղէք Հաւսարական,
Եկէք տանք մեր քրտինքներ, մեր ցաւ ու տարտ 58 կալմի 59 պէրան.
Խապենք, վա՜յ մեզ ասենք, մեր սիրտք փխրին, 60 աչք կլկլան,
Մեր արտասունք ամպ թող դառնան Հայոց դաշտին վերէն խաղան։

Տիգրան Ամիրճանեան։

---

83

Երգ Վանի լեզուով.

Համբարձման երկու շաբթին
Առայ զփոսխն 1) ու զգերնդին 2),
Ընգայ ծովուն ծովյափան 3),
Ծորեցի 4) ծորթփեցի,
Մանրիկ մանրիկ խորմեցի 5)
Աւէհան ճիւղով կապեցի,
Հա մէկ եարոջ ճամփեցի,
Հանէր նանայ նայնանայ, (կրկնիր ամէն տան վերջը)։
Գանէր նանայ նայնանայ։

---

48 Կողմէն։ 49 Նաւ։ 50 Թաւալգլոր։ 51 Կու գայ։ 52 Կը բարձրանայ։ 53 Սիրելի։ 54 Ըներ։ 55 Քարի։ 56 Քո։ 57 Օտարական։ 58 Վիշտ։ 59 Գորչի։ 60 Կակղին։

1) փոսխն—փոցխ (որով քաղած արտը և խոտը կժողովեն)։ 2) Գերնդին—գերանդու, մանգաղ (որով կհնձեն)։ 3) Ծով յափան—ծովի ափն։ 4) Ծորեցի—ծորել։ 5) Խորմեցի—փնջել։

Թօրգերես [1]) երկու ջուխտ ծամ [2]),
Զուխտ ծամեր մէջն էր նշան,
Ըլլայ [3]) թէ պագնեմ նշան,
Գըլորայ [4]), ընգայ զնդան [5]).
Ջըմլայ [6]) զնդան ով է տեսի.
Մէջ վարդ է բոլոր ռեհան։
Ար մէկ սուրբեր կանչի. չեկան խորոսան [7]),
Սուրբ Սարգիսն էր խորոսան,
Ջանեց ու խրատ տուեց.
Չերթաս յաւլիկն [8]) ի կնգան,
Ըլնիկ սև օձու նման,
Կաղնի փէտն քոքեհան [9])
Եռ ու ընգի կնգայ ջան։
Գացի գունիկ կիսաբաց,
Մ՚տայ թ՚առնեմ թաժայ հաց,
Ետէր չնիկ մնացած —
Ընձի ինչ խածնել [10]) պիտէր։
Ընձի գիրկ ու ծոց պիտէր։
Տարին տըսուերկու ամիս
Թօրմաւ [11]) խնձորն ի գոտխ [12]),
Խնձորի կէս խածուկ էր,
Չորս բոլոր արծթուկ էր,
Ճ՚ամփենք եարոջ դէ արի։
Աստի կուգաս—արտէն կալէն,
Ջագերէս վուշ [13]), Թօրգերես վալէն [14]).
Նոր եմ ընգեր [15]) սիրու բալէն [16]),
Ընգերես ծով կը լողաս,
Բընց [17]) Նուան հատ կշողաս։

Հայկական Աշխարհ, 1868, № 2, ե. 81-83։

---

1) Թօրգերես—թողել ես։ 2) Ծամ—մազի հիւս։ 3) Ըլլայ—կըլլայ։ 4) Գըլորայ—գլորվեցայ։ 5) Զնդան—բանտ։ 6) Ջըմլայ—այս տեսակ։ 7) Խորոսան—օգնական։ 8) Չերթաս յաւլիկն—հաւատ չնծայել։ 9) Քոքեհան—արմատախիլ անել։ 10) Խածնել—կծել։ 11) Թօրմաւ—թառամել։ 12) Գոտխ—ժապաւէն, գոտիկ։ 13) Վուշ—հագուստ բամբակեայ։ 14) Վալէն—հագուստ մետաքսեայ։ 15) Ընգեր—ընկնիլ։ 16) բալէն— ցաւ, կրակ։ 17) Բընց—քան, ինչպէս։

84

Տփխիսեցւոց երեխայոց երգ։

Արեգակ արեգակ դուս արի,
Հէրն ու մէրդ եկիլ է,
Օսկէ բըխթ բերիլ է,
Պատի ծակը դըբիլ է.
Մուկն էկիլ է տարիլ է,
Կատուն էգնէն վազիլ է,
Պոմշի վուտը կոտրիլ է,
Ողամանը փըթթիլ է։

85

Նոյնը։

Էգուց [1]) կիրակի է,
Կօկոմ քաղելու է,
Կօկոմ քաղեմ դէդին [2]) տամ,
Դէդէն մէ ինձ գառը տայ,
Գառը տանեմ Աստուծուն տամ,
Աստուած ինձ մէկ ախպէր [3]) տայ։
Ախպէր ախպէր ես քու շուն,
Գօտկկի [4]) ծերին աբրէշում, [5])
Աբրէշում չըլի կապ [6]) ըլի,
Սուփրի [7]) ծերին սազ ըլի։

1) Վաղը։ 2) Դեդա, վրաց բառ է, նշ. «մայր»։ 3) Եղբայր։ 4) Գօտի։ 5) Մետաքս։ 6) Սոսկագոյն, ցած մետաքս։ 7) Ծածկոյթ սեղանոյ, սփռոց սեղանոյ, la nappe, скатерть. Պաստառակալ, простыня, չարշաֆ, չարսաւ, սաւան, le drap, de lit. Պատառաքաղ (մաշան) la fourchette, вилка.

## ԳԼՈՒԽ Գ.

---

# ԱԶԳԱՅԻՆ (ՀԱՅՐԵՆԵԱՑ), ԱԶԳԱՍԻՐԱԿԱՆ ԵՒ ՔԻՆԱԽՆԴՐԱԿԱՆ ԵՐԳԵՐ։

*Հայրենիքին. քո սիրելի հայրենիքին եղիր (դու) կից*
*Այդ տեղ են քո զօրութեան բուն արմատները։*

*Շիլլեր։*

*Քաղցրութիւն կայ, որ ստրուկներն էլ ունեն, քաղցրութիւն կայ որ միայն ազատները ունեն. ստրուկներու ինչ լինելը յայտնի է, իսկ ազատներինն է, որ լաւութիւն անեն ու նեղութիւնը համբերութեամբ եւ առանց յուսահատութեամբ կրեն։*

86

### Երազ.

Սարսափելի երազ տեսայ այս գիշեր,
Որպէս թէ մի պարտիզի մէջ կանգնած եմ.
Մշտադալար զարդարված է կանաչով,
Նուր ծաղիկներ իւրեանց հոտը բուրում են։

Ուրախ ուրախ թռչունները երգելով,
Ծառէ ի ծառ ողջունեցին իմ գալը.
Ծաղիկները քնքուշ գլուխքը խոնարհած,
Ողջոյն տուին, զմայլեցաւ իմ սիրտը։

Գնում եմ խոր պարտիզի մէջ. մարդ չկայ,
Ոչ մի տեղից ձայն աղաղակ չէ լսվում.
Միայն հեռուից հասանում է ականջիս
Ջրի ձայնը, բայց ջուրը դեռ չեմ տեսնում։

Իմ գնացած ճանապարհի ծայրումը
Ահա բացվեց մի գեղեցիկ հրապարակ,
Մարմարոնեայ գեղեցկաշէն աւազան,
Ուր գործում էր ջուրը այնքան աղաղակ։

Երբ մօտեցայ աւազանին, ինչ տեսնեմ,
Մի հրաշագեղ, մատաղահաս օրիորդ,
Աւազանի ափի վրայ խոնարհած,
Լուանումէ իստակ ջրում մի լուացք:

Գերբնական է այդ աղջկայ տեսիլը,
Ոչինչ չկայ դորա վրայ հողեղէն.
Լուսեղէն է, թափանցիկ է մարմինը,
Աչքը յօնքը սև սաթի պէս փայլումեն:

Ջքնաղ իրան, մէջքը բարակ, իսկ կուրծքը
Դուրս է նայում բարակ հագուստի տակից,
Որպէս երկու հասունացած մեծ նռներ,
Թաւիշապատ. խելք է թռցնում գլխից:

Կերպարանքը կանոնաւոր ու սիրուն,
Ոսկիամայրն [1]) չարժէ նորա մօտ ոչինչ.
Ծածանումէ ուսի վրայ մազերը,
Բերնի վրայ ծաղկումէ քաղցր ժպիտ:

Երգ երգելով, նա կտաւ է լուանում,
Նորա ձայնը կախարդումէ թռչնի պէս.
«Խաղա՛ աղբիւր», նա երգումէ, «խայտալով,
Իմ կտաւը ճերմակցրո՛ւ քո ջրերով:»

— Ո՛վ իմ չքնաղ, ասա՛, լսեմ, ով ես դու.
Ես մօտեցայ և ասումեմ նայելով,
Ո՛ր տեղից ես եկած այս տեղ և ինչո՛ւ,
Այդ ինչ բան է, լուանումես երգելով:—

Ինձ պատասխան տուեց այսպէս. «Պատրա՛ստ կաց,
Մահու պատանք լուանումեմ քո համար.»
Եւ այս խօսքը ասած չասած, ծուխի պէս
Անյայտացաւ իմ աչքիցը ամեն բան:

—

1) Այսպէս ասվումէ Անահիտ, զգաստութեան և մաքրութեան աստուածուհին Հայերի, հեթանոսական ժամանակներումը: Սորան պաշտումէին հեթանոս Հայերը զանազան գաւառներում շինած մեհեանների մէջ, զոր օրինակ, Երէզ աւանումը՝ Եկեղեաց գաւառի մէջ, Տարօնումը, Արտաշատումը և այլն:

Տեսնում եմ, որ կանգնած եմ անտառում,
Ծառի կատարքը հասնում են երկինքին.
Իւր մռայլոտ գագաթովը անտառը,
Սոսկալի էր անհարթեկված իմ սրտին։

Լսելիքս ամբոխվեցան... վառատակեցան աչքերս...
Աղջինի ձայն հեռուից յանկարծ լսում եմ.
Խիտ ծառերի միջերից դուրս վազելով,
Յանկարծ մի այլ նոր երևոյթ տեսնում եմ։

Մի հաստաբուն, բարձր կաղնի ահագին,
Նորա տակին նոյն օրիորդն է կանգնած
Այցին ձեռքին. Ձարգարտվելով մեծ կաղնին,
Հրաժարվում էր դարաւոր արմատից։

Օրիորդը կարդում ու երգում է,
Նորա երգը սիրտ կախարդող է դարձեալ.
«Արիր, կարիր, սրտաբերան իմ տարար,
փայտ կտրատիր, տախտակ տաշիր իմ համար։»

— Իմ նազելի, իմ սիրական, ասա ինձ,
Մօտենում եմ նորան դարձեալ ասելով.
Ասա, ով ես և կամ ուստի՞ ես եկած,
Էր տախտակներ կտրատում ես երգելով։—

Իմ հարցմունքին այսպէս տուեց պատասխան.
«Քո օրհասը մօտեցել է, տախտակներ
Պատրաստում եմ քո դագաղի համար։»
Ասաց, դարձեալ անյայտացաւ. ես մնացի։

—

Քայքայվելով հոգիս ու սիրտս նայում եմ....
Ահա դաշտը սևանում է չորս կողմից,
Ես չգիտեմ, թէ ինչ պիտի գայ գլխիս,
Բայց դողում եմ բոլոր մարմնով երկիւղից։

Զարթնում եմ ես....բայց ամպի պէս մի պատկեր
Հեռուիցը երևեցաւ իմ աչքին.
Մօտ վազեցի, դարձեալ տեսայ....ես նորան,
Մի գունաթափ, տխուր դէմքով ուրուական։

Մի ծանր մուրճ բռնած էր պինդ իւր ձեռքում,
Որով գետինը փորում էր անդադար.
Ահ, թէև այնքան գեղեցիկ էր իմ աչքին,
Բայց երկիւղից սիրտս զարկում էր կատաղած։

Նա փորելով դարձեալ երգում էր մի երգ—
Մի սրտաշարժ, մի շատ տխուր, տրտում երգ.
«Մուրճ իմ, մուրճ իմ, փորիր դու ինձ մի փոս խոր,
Փորիր մուրճ իմ, մի գրկաչափ գետնափոր։»

Մօտենում եմ նորան դարձեալ խնդրելով,
—Իմ նազելի, իմ սիրական, ասա ինձ,
Ասա, ով ես և կամ ուստի՞ դու եկար,
Կամ այդ փոսը դու փորում ես ում համար։—

Իմ հարցմունքին պատասխանում է այսպէս.
«Այս քո համար պատրաստում եմ գերեզման.»
Ճ՛այթեց սիրտս.... և երկիւղից և ցաւից,
Բայց կամեցայ տեսնել իմ այդ օթևան։

Երբ գնացի ես փոսի մօտ նայելու,
Սարսափելի մի ձայն եկաւ ականջիս.
Յետ եմ նայում, տեսանում եմ այլ աղջիկ,
Նոյնպէս չքնաղ, նոյնպէս մատաղ, թափանցիկ։

—Իմ նազելի, գոնէ դու ինձ գթա, ասա,
Ո՞վ է փորող օրիորդը և դու ով.
Ինչու այդպէս գիշատում էք իմ սիրտը.
Տուր պատասխան տուր նազելի խղճալով։—

«Մենք երկուքս քոյր ենք միմեանց անբաժան»,
Օրիորդը պատասխանեց հեգնելով.
«Նա երէցն է, իսկ ես կրտսեր հարազատ....»
—Բայց ով էք դուք,—ես հարց արի գոռալով։

«Նա ալևոր «Հայաստանի հոգին է».......
«Իսկ իմ անունն է—«Անմիաբանութիւն»,
«Մենք շատ դարեր անցուցել ենք խաղալով,
«Եւ շատ մարդիկ փոսն են ընկել մեր ձեռքով։»

Ասաց ժպտաց. կատաղաբար երկու քոյր
Գլորեցին ինձ փոսի մէջ. ես ընկայ....

Ընչարգելված նեղութենից զարթելով
Սուտգեցի, թէ երազ էր որ տեսայ։

Կոմս Էմմանուէլ (Միքայէլ Նալբանդեան)։ Հիւսիսափայլ, 1858 Թ. ե. ե. 412—415։

---

## 87

Իտալացի աղջկայ երգ 1859 Թուականից.

«Մ՚եր Հայրենիք, թշուառ, անտէր,
Մ՚եր թշնամուց ոտնակոխ,
Իւր որդիքը արդ գանչումէ,
Հանել իւր վրէժ քէն ու ոխ։»

«Մ՚եր Հայրենիք շղթաներով
Այսքան տարի կապկապած,
Իւր քաջ որդոց սուրբ արիւնով
Պիտի լինի ազատված։»

«Ահա՛, եղբայր, քեզ մի դրօշ,
Որ իմ ձեռքով գործեցի,
Գիշերները ես քուն չեղայ,
Արտասուքով լուացի։»

«Նայի՛ր նորան, երեք գունով,
Նուիրական մեր նշան,
Թո՛ղ փողփողի թշնամու դէմ,
Թո՛ղ կործանվի Աւստրիան։»

«Ինչքան կին մարդ, մի թոյլ էակ,
Պատերազմի գործերում
Կարէ օգնել իւր եղբօրը,
Զանց չարեցի քո սիրուն։»

«Ահա՛ իմ գործ, ահա՛ դրօշ,
Շուտ ձի հեծիր քաջի պէս,
Գնա՛ փրկել մեր Հայրենիք,
Պատերազմի վառ հանդէս։»

«Միայն տեղ մահը մի է,
Մարդ մի անգամ պիտ' մեռնէ.
Բայց երանի, որ իւր ազգի
Ազատութեան կը զոհվի:»

«Գնա՛, եղբայր, Աստուած քեզ յոյս,
Ազգի սէրը քաջալեր,
Գնա՛, թէև չեմ կարող գալ,
Բայց իմ հոգին քեզ ընկեր:»

«Գնա մեռիր դու քաջի պէս,
Թող չտեսնէ թշնամին
Քո թիկունքը, թող նա չասէ
Թէ վատ է Իտալացին:»

Ասաց. տուեց օրիորդը
Իւր եղբօրը մի դրօշ,
Մետաքսից էր, ազնիւ գործած,
Ուր երեք գոյն կան որոշ:

Եղբայրն առաւ և ողջունեց
Իւր սիրական քնքուշ քոյր,
Առաւ զէնքը, սուր, հրացան,
Հեծաւ իւր ձին սևաթոյր:

—Քուրի՛կ,—գանչեց քաջ պատանին,—
Մնա՛ս բարեաւ, սիրական,
Այս դրօշակին պիտի նայի
Ամբողջ բանակ իտալեան:

Նա սո՛ւրբ է ինձ, երբ մկրտված
Արտասուքով ու կնքած,
Դու յանձնեցիր ինձ յիշատակ,
Հայրենիքի նուիրված:

Թէ մեռանիմ, դու մի՛ սգար,
Իմացի՛ր որ տարեցի
Դէպ ի մահու արքայութիւն,
Իմ հետ քանի թշնամի:

Ասաց. վազեց դէպ ի հանդէս

Աւստրիացոց յանդիման,
Իւր արիւնով գնել յաւէժ,
Ազատութիւն իտալեան:

Ո՛հ, իմ սիրտը կարօտվում
Տեսանելով այսպէս սէր,
Դէպ ի Թշուառ մեր Հայրենիք,
Որ ոտնակոխ եղած էր:

Սորա կէսը, կէսի կէսը,
Գէթ երևէր մեր ազգում.
Բայց մեր կանայք............ո՛ւր Եղիշէ,
Ո՛ւր մեր «տիկնայք փափկասուն»:

Ո՛հ....արտասուք ինձ խեղդումեն,
Այլ չեմ կարող բան խօսել.
Չէ՛............Թշուառ չէ Իտալիան,
Եթէ կանայք այսպէս են:

Կոմս Էմմանուէլ (Մ. Նալբանդեան): Զօդէն, Մազինի վերայ, Ֆրանկֆուրտի մէջ: Հիւսիսափայլ, 1861 Թ, № 11, ե. ե. 400—402:

88

## Արաքսի արտասուքը:

Մայր-Արաքսի ափերով
Քայլամոլոր գընում եմ,
Հին հին դարուց յիշատակ
Ալեաց մէջը պըտրում եմ.

Բայց նոքա միշտ յեղյեղուկ
Պըղտոր ջըրով եզերքին
Դարիւ դարիւ խըփելով
Փախչում էին լալագին:

«—Արա՛քս՝ ինչո՞ւ ձըկանց հետ
Պար չես բռնում մանկական,
Դու դեռ ծովը չի հասած՝
Սըգաւոր ես ինձ նըման:

Ինչո՞ւ արցունք ցայտում են
Քու սէգ, հըպարտ աչերից,
Ինչո՞ւ արագ փախչում ես
Այդ հարազատ ափերից:

Մի՛ պըղտորիլ յատակըդ,
Հանդարտ հոսէ՛ խայտալով,
Մանկութիւնը քու կարճ է.—
Շուտ կըհասնիս դէպ 'ի ծով:

Սարդի թըփեր թող բըսնին
Քու հիւրընկալ ափի մօտ,
Սոխակները նոցա մէջ
Երգեն մինչև առաւօտ:

Մըշտադալար ուռիներ,
Սև ծոցի մէջ քու ջըրին;
Ճ՛ըկուն ոստըն ու տերև
Թո՛ղ թաց անեն տապ օրին։

Ափերիդ մոտ երգելու
Հովիւք թող գան համարձակ,
Գառն ու ուլը քու վըճիտ
Ջուրը մըտնին միշտ արձակ։—

Մէջքը ուռցուց Արաքսը,
Փըրփուր հանեց իր տակից,
Ամպի նըման գոռալով՝
Այսպէս խօսեց յատակից.

—«Խիզա՛խ, անմի՛տ պատանի,
Ներհըս ինչո՞ւ դարևոր
Վըրդովում ես, նորոգում
Իմ ցաւերը բիւրաւոր։

«Սիրելիի մահից յետ
Ե՞րբ ես տեսել, որ այրին
Ողբից դըլուխ պըճնուի
Իր զարդերով թանգագին։

«Որի՞ համար զարդարուիմ,
Որի՞ աչքը հրապուրեմ,—
Շատերն՝ ինձ են ատելի,
Շատերին՝ ես օտար եմ։

«Կար ժամանակ, որ ես-էլ
Շըքեղազարդ հարսի պէս
Հազար ու բիւր պըճնանքով
Փախչում էի ափերէս.

«Յատակըս պարզ ու վըճիտ,
Կոհակներըս ոլորուն.
Լուսաբերը մինչև այգ
Ջըրիս միջին էր լողում։

«Ի՞նչըս մընաց այն օրից,
Ո՞ր ջըրամոտ գեղերըս,
Ո՞րը իմ շէն քաղաքից,
Ո՞ր բերկրալի տեղերըս։

«Տուրքը ջըրի ամեն օր
Իր սուրբ ծոցէն Արարատ
Մայրախընամ ինձ սընունդ
Պարգևում է լիառատ.

«Բայց ես այն սուրբ ջըրերով,
Սուրբ-Ակօբի աղբիւրին
Պիտի ցողեմ արտօրայք
Իմ ատելի օտարին։

«Կամ կենսատու իմ ջըրով,
Ափերիս մոտ կըկըզած՝

. . . . . . . . . . .

. . . . . . . . . . .

«Մինչ իմ որդիք—ո՜վ գիտէ—
Ծարաւ, նօթի, անտէրունչ
Օտար աշխար յածում են
Թոյլ ոտքերով կիսաշունչ. . .

«Հեռու հեռու քըշեցին
Ընտիր ազգը իմ Հայկեան,
Նորա տեղը ինձ տուին
Ազգ անկըրօն, մոլեկան.

«Դոցա՛ համար զարդարեմ
Իմ հիւրընկալ ափերը.
Ու կամ՝ դոցա՞ հրապուրեմ
Ճ՛ըպռոտ, պըղծած աչերը։

«Բանի որ իմ զաւակունք
Այսպէս կու մընան պանդուխտ՝
Ինձ միշտ սըգաւոր կը տեսնէք,
Այս է անխաբ իմ սուրբ ուխտ.»—

Ծանօթ. 87-դ երգումը, 191 և 192 երեսներումը, երկու տեղ, փոխանակ «ազատութեան», սխալմամբ «աղտութեան» է տպած։

Այլ չի խօսեց Արաքսը,
Յորձանք տուեց ահագին,
Ողալ օղալ օձի պէս
Առաջ սողաց մոլեգին:

Ռ. Յ.—Գ. Պատկանեան:

---

## LES LARMES DE L'ARAXE.

(Թարգմանութիւն 88 համարի).

Sur les bords de l'Araxe, notre mère,
Je promène mes pas errants,
Les souvenirs des siècles depuis longtemps écoulés
Je les évoque du milieu de ses vagues.

Mais ses ondes, sans cesse agitées,
Le déroulant en flots bourbeux,
Et frappant ces bords,
Plaintives, s'enfuyaient au loin.

Araxe, pourquoi avec tes poissons
Tu ne te livres plus à des jeux enfantins?
Pourquoi, avant d'aller te perdre dans la mer,
Comme moi, tu es dans la douleur?

Pourquoi des larmes jaillissent
De tes yeux aux regards fiers et hautains?
Pourquoi fuis-tu si rapide
Loin des rivages qui t'ont vu naître?

Ne souille pas ton lit:
Roule paisible tes flots bouillants;
Ta jeunesse passe vite,
Et vite tu arrives à la mer.

Que l'arbuste qui donne la rose
Croisse sur tes rives hospitalières,
Et que, sur ses rameaux, le rossignol
Chante jusqu'à l'aurore!

Que le saule, toujours paré de sa verdure,
Dans tes eaux pleines de fraîcheur
Incline ses branches flexibles et son feuillage
Aux jours de la chaleur!

Que sur tes bords, en répétant leurs chansonnettes,
Accourent librement les bergers!
Que l'agneau et le chevreau viennent
Se baigner sans crainte dans tes flots limpides!

L'Araxe, en grossissant,
Fit jaillir l'écume du fond de ses entrailles,
Et grondant comme un nuage orageux
Laissa échapper ces mots:

«Jeune téméraire et insensé!
«Pourquoi viens-tu troubler
Mon sommeil séculaire,
«Et renouveller mes douleurs sans nombre?

«Après la mort d'un objet cheri,
«As-tu vu celle qu'il aimait
«Ornée des pieds à la tête
«De ses plus beaux atours?

«Pourquoi me ferais-je belle?
«Quels regards voudrais-je charmer?
«Combien sont nombreux ceux qui me répugnent
«Et à qui je suis étrangère!

«Il fut un temps où moi aussi,
«Belle comme une fiancée,
«Ornée de mille et mille attraits,
«Je m'échappais de mes rives.

«Mon lit était pur et limpide,
«Mes vagues roulaient sans cesse;
«L'étoile du matin jusqu'à l'aurore
«Nageait dans mes ondes de cristal.

«Qu'est-ce qui me reste de ces temps?
«Où sont ces villages qui s'élevaient sur mes rives?
«Où sont mes cités populeuses?
«Et tant de lieux enchanteurs?

«Chaque jour l'Ararat, de son sein sacré,
«Épanche pour moi ses eaux
«Comme une mère qui
«De son sein laisse couler le lait.

«Et moi, des eaux saintes
«De la fontaine de Seint-Jacques
«Arroserais-je les champs
«De l'étranger abhorré!

«Avec mon onde vivifiante
. . . . . . . . . .
. . . . . . . . . .
. . . . . . . . . ?

«Et mes enfants, peut être,
«Épuisés de soif et de faim, et sans asile,
«Errent dans les pays étrangers
«D'un pas chancelant, à demi morts!

«Loin, bien loin ils ont chassé
«Ma nation, les Arméniens;
«A sa place, ils m'ont donné
«Un peuple de mécréants farouches!

«Est-ce pour eux que j'embellirais
«Mes rives hospitalières?
«Dois-je attirer sur moi
«Leurs yeux pleins d'ordure?

«Tant que mes propres enfants
«Resteront dans l'exil,
«Vous me verrez dans la tristesse:
«C'est là un vœu inviolable pour moi!»

Après ces mots, l'Araxe reprit le silence,
En faisant bondir ses flots impétueux,
Et comme un serpent aux anneaux tortueux,
Elle s'élance en rampant avec fureur.

---

## 89

### Ազգասիրութիւն։

«Երբ զօրաց տէրն Աստուած օգնել կուզէ որբ ազգին, [1])
Նորա մէջն կուղարկէ ազգասիրութեան հոգին» [2])։

Գիտե՞ս, արդեօք, ո՛ր հոգին, կամ ո՛ր ազգեցութիւնն,
Ա՛յն Եսթերայ թագուհւոյ ստորադրութիւնն,
Կամ ընդ նմա Մուրթքէի քա՛ջ ազգասիրութիւնն,
Որ ապրեցոյց Յակովբայ ցիրուցան եղեալ տունն.
Ո՛չ ծննդական ձիրքն, ո՛չ հայրական արիւնն,
Այլ վերոյիշեալ հոգւոյ պարգեւն էր թանգագին։

Ազգասէր մարդոյ միտքն ալէկոծեալ կ'լինի,
Ե՛րբ իւր ազգն այլազգեաց ստորանկեալ կ'լինի;
Բարի նախանձն 'ի նմա անշէջ վառեալ կ'լինի,
Թէև յԱրամեան գահին մտօք բազմեալ կ'լինի;
Բայց վիճակաւ մե՛րթ անարգ, մե՛րթ զրպարտեալ կ'լինի.
Սակայն երբեք չե՛ խախտուիլ սէգ և անդարձ գլխովին։

Ազգասէր մարդոյ տունն խաղաղութիւն կունենայ,
Ճշմարտօրէն աս ու լիս, պարզ դրութիւն կունենայ.
Թէ՛ ողջ ազգին՝ թէ՛ անձին-մէկ ընտրութիւն կունենայ;
Ո՛րքան միտքն, կամ սէրն տարածութիւն կունենայ,
Ազգասէրն նո՛յն չափով շուք և անուն կունենայ,-
Վերընծայուող Արարչին և անձնատուր Կայսերին։

Ե՛րբ տասնամեայ լինի ազգասիրի զաւակն,
Իւր հայրենի լեզուաւն կ'գրէ իւր նամակն,
Գաւառոյ հանգամանքն և ծխից նպատակն.

---

1) և 2) Ամենայն տանց վերջուածս կրկնեա՛ զայսոսիկ տողս։

Այնուհետև կ'շարժէ իւր մտաց աշտանակն,
Այլևայլ լեզուաց տալով իւր ուսման ժամանակն,
Ինքն ինքեան կ'լինի համալսարան իւր ազգին:
Ազգասէրն կ'ցանկայ իւր ազգի փրկութեանն,
Նաև նորա լաւապէս յաշխարհի կեցութեանն,
Խաւար ազգաց մէջ Նորա պարզ լուսաւորութեանն,
Քաղաքական կանոնին, կրթութեան աստիճանն.
Թէ առ Աստուած, թէ առ մարդիկ ապօրինաւոր բանն՝
Ո՛չ իւր անձին կընտրէ, ո՛չ ազգական ընկերին:
Բայց ես անբաղդ՝ և՛ անյոյս է իմ վիճակն ինձ համար.
Ծրարեալ պահուած մնաց ուսման նամակն ինձ համար.
Ո՛չ պիտանի, ո՛չ յարգի մարմնեղէն ա՛կն ինձ համար,
Այլ իբր միջօրեայ լոյս կայ իմ փափագն ինձ համար,
Ծեր Կռոնոսն [1]) է դառել իմ ժամանակն ինձ համար.
Չիք ազգասէր այնպիսի, որ ասէ. վա՜յ քեզ Շիրին:

Աշըղ Շիրին:

---

90

Վարդան Մամիկոնեանի երգը:

Հիմի էլ լռենք, եղբարք, հիմի՞ էլ,
Երբ մեր թշնամին իր սուրն է դրել,
Իր օրհասական սուրը, մեր կրծին,
Ականջ չի դընում մեր լաց ու կոծին,
Ասացէք, եղբարք Հայեր, ի՞նչ անենք,
Հիմի էլ լռենք՞
Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին
Դաւով, հրապուրքով տիրեց մեր երկրին,
Ջնջեց աշխարքից Հայկայ անունը,
Հիմքից կործանեց Թորգոմայ տունը,
Խլեց մեզանից թագ, և՛ խոսք, և՛ զէնք,
Հիմի էլ լռենք:

---

1) Հին Յունաց ժամանակի չաստուածը, որին կը ձևացնեն ալե-զարդ ծերունու նման, ձեռքին գերանդի, մանգաղ, la faux, коса; հնձել, faucher, косить.

Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին
Խլեց մեր սուրը—պաշտպան մեր անձին,
Մշակի ձեռքից էլ խոփը [1]) խլեց,
Այդ սուր ու խոփից մեր շղթան կռեց,
Վա՜յ մեզ, շղթայով կապած գերի ենք.
Հիմի էլ լռենք։

Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին
Սոսկալի գէնքը բռնած մեր գլխին,
Կուլ տալ է տալիս արտասունք առատ,
Աղէխարշ բողոք վարուց ապիրատ.
Մեր գլուխը լալու Եփրատ ուր պտռենք,
Հիմի էլ լռենք։

Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին
Լիրբ գոռոզութեամբ լցրած իր հոգին.
Արդարութեան ձայնն հանած իր սրտից
Արտաքսում է մեզ մեր բնիկ երկրից,
Պանդո՜ւխտ, հալածեա՜լ, եղբարք, ուր դիմենք.
Հիմի էլ լռենք։

Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին,
Անգոհ մեր բերած ծանր զոհերին,
Իւր լիրբ, նզովւած ձեռքը կարկառեց,
Ազգութեանս վերջին կապը պատառեց.
Հայի կորուստը մօտ է, ինչ անենք,
Հիմի էլ լռենք։

Հիմի էլ լռենք, երբ մեր թշնամին,
Արհամարհելով մեր փառքն ազգային,
Մեր Եկեղեցւոյն ձեռնամերձ եղաւ,
Գայլազգեստ գառին մեզ գլուխ դրաւ,
Սուրբ խորան չունինք, արդ ուր աղօթենք,
Հիմի էլ լռենք։

Հիմի էլ լռենք՝ մարդիկ ինչ կ՚ասեն,
Երբ մեր տեղ քարինք, ապառաժք խօսեն,
Չէ՞ն ասիլ որ Հայք արժանի էին,
Այդ ստրկական անարգ վիճակին.

1) Արօրի կամ մաճի երկաթ (սաբան դէմիրի)։

Մեր սուրբ քաջ նախնեաց գործերը գիտենք,
Մինչև ե՞րբ լռենք։
Թող լռէ մունջը, անզգամայլերը,
Կամ՝ որոց քաղցր է թշնամու լուծը,
Բայց մենք, որ ունինք հոգի ու սիրտ քաջ,
Ի՞նչ անվախ կենենք թշնամու առաջ,
Գոնէ մեր փառքը մահով յետ խլենք
Ու այնպէս լռենք։

Ռ. Ց—Պ. Պատկանեան։

---

## 91

### Մամիկոնեան Մեծ Վահանի պատասխանը։

Հիմի է՞լ խօսենք, եղբարք, հիմի՞ էլ,
Երբ ընտանեկան երկպառակութեամբ
Ուրիշ բան չունինք, բայց իրար դաւել,
Եւ սարսափելի ապուրացութեամբ
Մեր նախնեաց ուխտը ոտքով կոխել ենք.
Հիմի է՞լ խօսենք՞
Հիմի է՞լ խօսենք, երբ քաջն Վարդան,
Վաթսուն հազարից, հազարով միայն,
Մինչ մնացել էր Պարսից լոկ մատեան
Գունդը, մեր վաթսուն հազարի դիմաց,
Երբ մեր վատութեամբ՝ ողջ կորուսել ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ օտարից շատ
Մենք ենք մեր ազգի արիւնը խմում;
Մոխրատեղ լցինք Դուին, Արտաշատ;
Ոսկի մէջ կորաւ խաչն եկեղեցուն;
Երբ այս ամենը մենք կատարել ենք.
Հիմի է՞լ խօսենք։
Հիմի է՞լ խօսենք, երբ հրապարակում
Պարսիկը առակ արել է Հային.
«Եթէ Ասորու նման աշխարհում
Չկայ մի վատ ազգ, բայց, քան Ասորին,

Էլ վատ է Զայլը», մենք այս տանջուենք.
Զիմ էլ խօսենք։

Զիմ էլ խօսենք, երբ իշխանութիւն
Օտարական անարգ հացկատակներին,
Մինչ սորուկ մարդիկ նստած մեր գլխին
Եւ մեզ կարծումեն հող իրենց ոտքի,
Ու մենք մեզ կոխող ոտքը լիզումենք.
Զիմ էլ խօսենք։

Զիմ էլ խօսենք, երբ Լուսաւորչի
Ընիկ ժառանգի թեւերը կտրած,
Անարգ Պարսիկը՝ այս ու այն թեմի՝
Կարգումէ տեսուչ ըստ իւր չար մտաց [1])
Եւ մենք դեռ՝ «կեցցէ արին» գոռումենք։
Զիմ էլ խօսենք։

Զիմ էլ խօսենք, երբ ձեռք ենք տալիս,
Երբ ողջունումենք մենք այդ չքերին,
Որ դրան շուն են, և մեզ տեսնելիս՝
Շուտ դիմակները դնում երեսին,
Այդպիսիններին դարձեալ պատվումենք.
Զիմ էլ խօսենք։

Եւ մեր երեսին մնաց մի կաթիլ
Ամօթի սուրբ ջուր, որ բերան բանանք։
Ո՛չ, թէ չենք ուզում հողէց հող կարչէլ,
Թշնամու արիւնով մեր թրին ջուր տանք,
Ազգ, եկեղեցի փրկենք ազատենք,
Ապա թէ խօսենք։

Միքայել Նալբանդեան։

---

1) «Այլ և քորեպիսկոպոս ոք չարաչար (զխս), զոր Պարսիկք և արք անարժանք գործեն և այսօր»։ Թուղթն Պ. Փարպեցւոյ առ Վահան Տէրն Մամիկոնէից...։ «Բայց 'ի Սուրմակայն յայնմանէ, զորոյ և մեծացոյց իսկ զվիճակն, արքունի հրամանաւ հանեալ 'ի բազմաց, նմա հաւատայր։ Ընդ որ նախանձեալ և այլոց եպիսկոպոսաց ժպրհեցան զնոյն առնել, խնդրելով 'ի Պարսից արքայէն օգնականութեամբ իւրաքանչիւր իշխանաց»։ Մովսէս Խորենացի, Պատմ. Հայոց, գիրք Գ., գլ. կզ. (66)։

92

## Յիշենք։

Հայկ ու Տիգրանին յիշենք միշտ եղբարք,
Թափենք նոցանից հնութեան փոշին.
Նորանց յիշելով արդեօք մի նոր կեանք
Առնու Հայաստան—նոցա խեղճ այրին։

Կեցցէ յաւիտեան այրին Հայաստան,
Նա՝ որ իր որդոց դեռ սրտի խորքում,
Չունի հաստատուն մի ոտքի կայան,
Ու որդիքն պանդուխտ, իրենց բուն երկրում։

Եղբա՛րք, բանը չէ անշօշափելի,
Միայն թէ կամաւ չկարծենք ցնորք.
Վաղո՜ւց մարմնացել ու տեսանելի
Դարձել է Հայոց լուծը անողորք։

Մեր յոյսը սակայն, մեր վրայ լինի.
Այսինքն ազգի՝ մեր ընդհանրութեան.
Աղքատ ու հարուստ տուած թեւ թեւի՝
Այսպէս թէ միայն կայ ճար փրկութեան։

Կեցցէ Հայաստան, որ երազական
Եղել է այսօր իրօք և խօսքով,
Ոչինչ աւելի հնախօսական
Քան թէ անխորհուրդ անուն դառնալով։

Ազատութեան իղձ շրթունքի վրայ
Մի քանի մարդոց տեսնումենք, այո՛,
Ովքե՞ր են դոքա, ո՞չ երդուեալ ծառայ,
Որ օտար լուծին մնան միշտ հլու։

«Եր փշրէ շղթան.... կերթայ Հայաստան».
Հա՛, հա՛, հա՛, այդ էր պակաս մնացել,
Որ նախանձայոյզ դառնայ Հայութեան
Կատարելապէս. բայց յետոյ ի՞նչ էլ։

«Կասէ. եկել եմ մայր իմ հարազատ,
Գիրկդ բաց որդուդ քո չուառական.

Համբուրում եմ քո փոշին անարատ....»
Յեա՜յ, մի ամբողջ գայլի շարական:

Հարաւ Հիւսիսից փոշի բարձրացաւ....
Շառաչիւն զէնքի.... մթնեցաւ օրը,
Դաւաղ, տարբաղի գլուխն երևեցաւ
Մեր ազգասէրը մտաւ ծակուռը:

«Հա՜յ, Հայաստա՜ն»—թող տեղը կենայ,—
Ասում զգոյշ մեր ազգասէրը.
«Իհաւ ու հրացան, ի՞նչ եղան նոքա,
Ինչ՞ քշում էիր՝ դու ուրջուններր....»

—Ես այդ ամենը անում եմ բերնով,
Կեցցէ սուրբ Մեսրոպ, որ մեզ գիր տուեց.
Հողեր եմ վարում հեռուից՝ խօսքով.
Հրացան իմ պէսը կուրծքին երբ սեղմեց....

Ե՛ւ Հայկ, Տիգրանին յիշենք մենք եղբարք
Նորոգենք նոցա փառքը սուրբ անուան
Գուցէ այս կերպով, մի սոյգ նոր կեանք
Առնու խեղճ, այրի, մայրն Հայաստան:

Մ. Նալբանդեան:

---

93

Գարնանամուտ:

Քեզ ողջոյն զուարթուն,
Առուգահասակ գարուն.
Քեզ ողջոյն բիւր անբուն,
Տալիս է Հայոց Տուն:
Անուշաւանի սօսիք տերևով,
Ծաղիկները ծառից իւրեանց ճըռ-վըղով
Օրհնութեան գալըդ երկնքի դես-պան,
Դու ես մեր կեանքի պաշար ու պաշտպան:

Երբ հեզիկ մօտեցար
Մասիսի դաշտերին,
Իջածին ամպերը
Տարագիր գնացին.
Հին լեռը բացեց
Իւր թաւուտ կուրծքը,
Քեզ կանաչ դիպայ
Սփռեց հովիտը;
Սիրահար սոխակը
Իւր վարդի յետքից
Սաղեց Արարատ

Շինել իւր բոյնը.
Շատ երկար Հայաստան
Քո գալուն սպասեց
Ծաղկեցաւ նա ալեօք
Շատ լացեց արտասուեց։
Տխուր ձմեռը
Մասեաց գագաթը
Թաղեց անխնայ
Ցուրտ ձնի մէջը.
Կարօտ շատ նստաւ
Գալար արօտի;
Ծով դարձաւ, թափած
Արտասուքն աչքի.
Հին Մասիս միւս անգամ
Զարթեցաւ խոր քնից,
Չորս բոլորը ծաղիկով
Ծառերով զարդարեց;
Ստեղծական պճը,
Որ ունի Մասիս.
Թափեց միւս անգամ,
Չիմացաւ Հիւսիս;
Նա ինքն Արևելք
Հանդէպն Արևմուտք,
Հիւսիսն ու Հարաւ
Ընկած են մի կողմ։

Քո գալը իմացաւ
Մասիսի վուլկանը,
Միւս անգամ սկսեց
Տեսանել իւր գործը.
Վառեց շատ սրտում,
Անշէջ կրակներ;
Գարբնեց հրացայտ
Երկաթի շանթեր;
Ինչ կարժեն նորան
Գնդակ ու վառօդ,
Նիզակ, հրացան,
Ահեղ թնդանօթ։
Թէ այսքան քո գալը
Պատճառեց ծեր Մասեաց,
Ցնծութիւն խրախոյս
Վհատեալ ցաւակաց։
Ուրեմն կանգնիր
Մի յաւերժ արձան,
Որ քո գալուստը
Յիշվի յաւիտեան։
Տուր դու Հայերին,
Ընտիր Հովուապետ,
Հայկական Հօտին
Անքուն անխոնջ դէտ։ 1)
Տարաբաղդ Հայկածին

---

1) Այժմեան վէճերին նայելով, որ Օսմանեան տէրութեան բընակող մեր եղբարց մէջ ծագել են կաթուղիկոսական խնդրքի մասին, այս երգը յարմարումէ շատ։ Նրանց երեսպաշտութեան խօսելով, համարձակվումենք մեր ընդդիմութիւնը յայտնել այն մեր ազգայնոց դէմ, որոնք կամենումեն Էջմիածնայ կաթուղիկոսութիւնից,—միւս նոր կաթուղիկոսութիւն հաստատել Օսմանեան տէրութեան մէջ, որով Ռուսաց կառավարութեան բնաւ վնաս չեն տալու, այլ, ընդհակառակն, ինչ վատ հետևանքներ որ ելանէ այդպիսի շարժողութիւնից, բոլորը Հայն պէտքէ ուտէ։ Ժամանակ է որ խելքի գանք; ժամանակ է որ ցնորքները մէկդի ձգենք և իրական գործով պարապենք; ժամանակ է որ նուրբ հասկացողութեամբ հասկանանք մեր օգուտը և վնասը։

Որբերը յանձնեցին
Այս խօսքերը քեզ ասել
Կոմս Էմմանուէլին։
Հայաստան աշխարհ
Սիրեց նա անյագ,
Իւր կեանքը կըտար
Նորա փոխանակ,
Եթէ արիւնով,
Որ պիտի թափէր,
Իւր հայրենիքը
Փրկըվելու էր։

Մ. Նալբանդեան։

---

94

Թէ իմ ալևոր հերքս սևնայրն,
Ոյժս ինձ յետ գար, կըտրիճ դառնայի.
Նըժոյգ ձի նըստած, բեխերս ոլորած,
Զէնքըս թուր առած ես դաշտ կերթայի.

---

Ամենայն չարեաց ճանապարհը բռնելու դէմ, ամենայն բարոյական և մարմնական, իրական, հասարակաց օգուտին հասանելու, միով բանիւ ազգի հոգևոր և մարմնական դրութիւնը բարեկարգեցնելու «միակ հնարքը, ամենակարճ հնարքը, ամենահաստատ հնարքը և ճանապարհը» այն է, որ ազգի մտաւոր հասկացողութիւնը բարձրացուցանենք, այսինքն, ազգին, բոլոր ազգին, և ոչ թէ միայն բէյ և հարուստի զաւակաց, տալ կանոնաւոր դաստիարակութիւն և կրթութիւն։ Այս բանը գլուխ կուգայ այն ժամանակ միայն, երբ կունենանք կանոնաւոր վարժապետներ Եւրոպայի և, մանաւանդ և մասնաւորապէս, հիւսիսային Գերմանիայի վարժապետական դըպրոցներում պատրաստուած վարժապետներ, հմուտ իւրեանց լեզուին, գրականութեան և ազգի այժմեան դրութեան և պիտոյից։ Ռուսը, կամ Պարսիկը, կամ Տաճիկը ինչով է մեղաւոր, որ մենք մինչև այժմս ոչինչ պատրաստութիւն անգամ չենք տեսել այդպիսի վարժապետներ պատրաստելու? Երեխայի պէս այլոց մեղադրելու տեղ, առաւել մեծ օգուտ կը լինէր և ազգին օգտաւէտ, որ պարապէինք և, ժամանակը չկորուսանելով, պատրաստութիւն տեսնէինք ազգի համար կանոնաւոր վարժապետներ պատրաստելու հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցներումը և, առ հասարակ, ազգային դաստիարակութիւնը կանոնաւոր կերպիւ առաջ տանելու, միտներս ունենալով միշտ և նուրբ հասկանալով Լորդ Բրուհէմի խորհրդաւոր ասածը, թէ. «դպրոցական վարժապետի այբուբենքը աւելի կարող ու զօրաւոր են քան թէ պատերազմողների նիզակները»։

Մ. Միխանաարեանց։

Ես դաշտ կ'երթայի — դաշտ Աւարայրի.
Ողողած ցօղած Հայոց արիւնով,
Ազգ իմ սիրական, դու. ազգ Թորգոմեան,
Ու կորցրած Թագը քեզ յետ կուտայի:

Կ'ասէի Հայոց օրիորդներին.
«Դախեցէ՛ք հագի ձեր Թանգ շորերը,
Թողէ՛ք պաճուճանք, զարդ մարգարիտներ —
Ժանգոտած ու գուլ են մեր Թըրերը;
Տուէ՛ք բեհեզեայ մեզ ձեր շապիկը,
Որ մենք փաթաթենք մեր մարմնու վէրքը;
Միրակայ ¹) հիւսէք դուք ձեր մազերից.
Այսպէս յայտնեցէ՛ք՝ դուք մեզ ձեր սէրը:

Թէ ես լինէի հարուստ մեծատուն՝
Արնգուկներըս լի ոսկով արծաթով,
Շատերու նըման ես չէի լինիլ
Երբէք ազգասէր ունայն խօսքերով:
Շամպանեա գինու ալմաս խաչի տեղ
Կ'առնուի առատ գնտակ ու վառօդ,
Արձակ համարձակ կ'երթայի հանդէպ
Հայատեաց ազգին անթիւ զօրքերով,

Թէ ես լինէի մի երկրի իշխան՝
Կուտայի զօրքիս սաստիկ հրաման,
Շուտաքայլ երթալ դէպի Հայաստան,
Խըղճուկ հայ ազգին լինել օգնական:
Եւրոպ' Մասիս արեան գետերը
Կըվազեցնէի հեղեղի նըման,
Մինչև որ Թագ, գահ ու ազատ կըրօն
Ինձնից չըստանար Թշուառ Հայաստան:

Բայց՝ եթէ մի օր, մի ժամ, մի րոպէ
Ազատուած լինէի մեր հողագընդին,
Ի՜նչ սուր սլաքներ պիտի շաղ տայի
Մեր արենարբու Թշնամեաց գընդին:

Ռ. Ց—Գ. Պատկանեան:

1) Бинтъ, վէրքը (տարէն) փաթաթելու նեղ և երկար կտաւ:

95

### Օտարուհի եւ Հայ երիտասարդ։

Օտարուհին ինձ ասաց «հէ՞ր ես լալիս, արցունքը
Հեղեղի պէս ինչո՞ւ են ողողում քու աչքունքը,
Քու տրտմութեան ճար ունիմ, կըփարատեմ քու դարդը,
Թըշիս վըրայ չե՞ս տեսնում փայլած շուշանն ու վարդը։»

Ո՜ւր մի՛ ջանար, սիրական, իմ դարդը չես փարատիլ,
Հոգիս հոգսից, ցաւերից չես փրկիլ, չես ազատիլ,
Թո՛ղ իմ աչքից հեղեղայ արտասունքի աղբիւրը,
Արտասունքն է լըւանում սըրտի խոր խոր ցաւերը։

Օտարուհին ինձ ասաց «տե՛ս հասել է գարունքը,
Դաշտերի մէջ բացուել են հազարերանգ ծաղկունքը,
Իջնենք դաշտը օդ քաշենք, ծաղկունք քաղէ՛ փունջ փընջէ,
Հայրենիքիդ կարօտն ա՛ռ, որ թախիծ քեզ չի տանջէ»։

Հայրենիքիս կարօտը ձեր դաշտերից չեմ առնիլ,
Սառ հիւսիսում երկինքը Հայաստանի չեմ տեսնիլ,
Ուր բիւր պատիկ ցոլուն են արեգակի շողերը,
Կենսատու է անձրեւը, մեղրածին են ցօղերը։

Օտարուհին ինձ ասաց «մոռացի՛ր քու հայրենիք,
Քու հայրենիքն այնտեղ է, ուր սիրում են քեզ մարդիկ 1).
Տես արեւին, նա պայծառ չէ՞ շողշողում հիւսիսում.
Հայաստանը կորել է, խե՛ղճ, դու ցընորք ես ուզում»։

Սուտ են, սուտ քո զըրոյցքը, Հայաստանը չէ՛ կորած,
Նա այնտեղ է, ուր Եփրատ ու Տիգրիսն են գրկուած,
Ուր Երասխը մըրմունջով յուզած ջուրն է գըլորում,
Ուր Մասիսի գագաթը ամպերից ցած է նայում,
Ուր փայլում է արեգը իր կուսական շողերով,
Ուր ջըրում է երկինքը երկիրն զով ցօղերով,
Ուր որ չի կայ բորէաս, չիկայ շիմուն ու խորշակ.
Օդը շունչ է հրեշտակի, ջուրը մեղր է անուշակ.....
Հայաստանը կայ.... աւա՜ղ, խոպանացած, ամայի,
Եւ կըծաղկի, երբ նորից ծըծէ քըրտինքը Հայի....

---

1) Ինչպէս Լատինները ասած կա. ubi bene, ibi patria.

Նորա ստինքը յամառ է, չի կերակրում օտարին,
Օտարն խաբուած ասում է «շիջաւ աստղը Հայերի»։
Բայց ի՞նչ, դու չես հասկանալ իմ սրտամաշ դարդերը.
Մի՛ ջանար. ինձ չեն սփոփիլ թըշիդ փայլուն վարդերը։
Իմ տրտմութեան ցաւակից խանդաղակաթ գրկելով,
Օտարուհին ինձ տըւաւ գաւաթը լի գինիով,
Երկնակապոյտ աչերը անթարթ աչերիս յառած,
Լաց ու ժըպիտ երեսին՝ նա մեղմ ձէնով ինձ ասաց.
«Խըմէ՛ գինի, պատանի, 'ի յիշատակ այն երկրին,
«Որ սրտամաշ կարօտով կոչում ես քու հայրենիքին,
«Պարզէ՛ ազնիւ ճակատըդ, զըւարթացիր, ոգի առ,
«Յուսակըտուր այդ դէմքով խըղճալի մի՛ ձեւանար;
«Չինաթափ ու կիսամեռ դաշտերը գարնային շնչից
«Չե՞ն ըսթափում եւ յառնում մահահանգոյն խոր քընից.
«Երբ ծագում է արեւ մըռայլը չի՞ հալածվում,
«Մեռած բնութիւնն դէպի նոր կեանքը նա չի՞ վերածում.
«Դէ՛հ, պատանի, քաջ եղիր, խըմէ գինի, երգ երգէ,
«Տէրն է օրհնաց օգնական, նա քու ազգն էլ կըփրկէ»։

Ռ. Ց—Գ. Պատկանեան

---

96

Հայկ ու Լեւոնին մոռանանք, եղբարք,
Թօթափ տանք մեղանից փոշին հընութեան,
Վերածնենք մեր մէջ նոր կեանք ու նոր բարք,
Կեցցէ՛ շատ օրեր մանուկ-Հայաստան։

Կեցցէ շատ օրեր մանուկ-Հայաստան,
Նա՝ որ դեռ միայն մեր սրտի խորքում
Ունի իւր հիմքը. ոչ տուն, ոչ կայան
Չունի տակաւին բուն Հայաստանում։

Եղբարք՝ բանը դեռ անշօշափելի
Այժմուս մեր մըտքին՝ ցընորք չէ կարծենք,
Բանը կ'մարմնանայ ու տեսանելի
Կըլինի շուտ. միայն մենք վստահ լինենք։

Մեր յոյսը միայն մեր վըրայ լինի,
Չեն պէտք մեզ նըպաստ մեծատուններին,
Ողորմութեամբ թող մուրացիկն ապրի.
Մուրացողն միշտ ստրուկ է օտարին։

Կեցցէ՛ Հայաստան, որ երազական
Կարծում են ծերերն. իրօք չէ այդպէս,
Մեր հայրենին դեռ չէ չուառական,
Քանի որ ունի քաջ որդիք մեզ պէս։

Բաւ է. օտարին շատ ծառայեցինք,
Ստրկի վիճակն չէ յաւերժական,
Ազատութեան գինն մենք քա՛ջ սերտեցինք,
Էլ չենք հաւատալ օտարի խոստման։

Օտարի շահը թոյն է մահաբեր,
Աչք է կուրացնում, միտք է պըղտորում,
Գերի է դարձնում մարդ ազատասէր,
Ոսկի շղթայով ձեռք ոտք է կապում։

Կըփշրեմ շղթաս, կ'երթամ Հայաստան,
Կըպագնեմ նորա հողը անարատ,
Կ'ասեմ «Էնկել եմ որդիդ չուառական,
Գըրկիդ մէջ ինձ ա՛ռ, մայր իմ հարազատ։

Չունիմ ես ոսկի, այլ ոսկու մազան,
Ջըլոտ ձեռք ջուխտակ ու սիրտ անվեհեր,
Ձեռքումըս ունիմ բահ ու հըրացան,
Սըրտումըս ունիմ ազնիւ խորհուրդներ.

Քու հողն արգաւանդ, ես մըշակ արի,
Մենք հաշտ կու ապրինք շատ ու շատ տարի.
Ուրջուներէդ քեզ ոչինչ շահ չըկայ,
Թո՛յլ տուր, որ բըռնի հալածեմ նոցա։

Դու որդիք ունիս հինգ միլլիոն ու կէս։
Թէ յանկարծ գաղթեն, նոցա տեղ ունե՞ս,
Ստինքիդ կաթը խնայէ՛ օտարին,
Գալու որդիքըդ քաղցած, ծարաւ են.....

Մեր սուրբ քաջ նախնեաց գործերը գիտենք,
Մինչև ե՞րբ լռենք։
Թո՛ղ լռէ մունջը, անդամալոյծը,
Կամ՝ որոց քաղցր է թըշնամու լուծը,
Բայց մենք, որ ունինք հոգի ու սիրտ քաջ,
Ե՛կ անվախ երթենք թըշնամու առաջ,
Դունէ մեր փառքը մահով յետ խըլենք
Ու այնպէս լռենք։

Ռ. Յ—Պ. Պատկանեան։

---

## 91

Մամիկոնեան Մեծ Վահանի պատասխանը։

Հիմի՞ էլ խօսենք, եղբարք, հիմի՞ էլ,
Երբ ընտանեկան երկպառակութեամբ
Ուրիշ բան չունինք, բայց իրար դաւել,
Եւ սարսափելի ազգուրացութեամբ
Մեր նախնեաց ուխտը ոտքով կոխել ենք.
Հիմի՞ էլ խօսենք՞
Հիմի՞ էլ խօսենք, երբ քաջն Վարդան,
Վաթսուն հազարից, հազարով մնաց,
Մինչ մնացել էր Պարսից լոկ մատեան
Գունդը, մեր վաթսուն հազարի դիմաց,
Երբ մեր վատութեամբ՝ ողջ կորուսել ենք.
Հիմի՞ էլ խօսենք։
Հիմի՞ էլ խօսենք, երբ օտարից շատ
Մենք ենք մեր ազգի արիւնը խմում;
Մախրառնով լցինք Գուրին, Արտաշատ;
Ոխի մէջ կորաւ խաչն եկեղեցուն;
Երբ այս ամենը մենք կատարել ենք.
Հիմի՞ էլ խօսենք։
Հիմի՞ էլ խօսենք, երբ հրապարակում
Պարսիկը առակ արել է Հային.
«Եթէ Սորու նման աշխարհում
Չկայ մի վատ ազգ, բայց, քան Սորին,

Ու՞ր վառ է Հայը», մենք այս տանճումենք.
Հիմի՞ էլ խօսենք։

Հիմի՞ էլ խօսենք, երբ իշխանութիւն
Ծախումէ անարգ հացկատակներին,
Մինչ սարուկ մարդիկ նստան մեր գլխին
Եւ մեզ կարծումեն հող իրենց ոտքի,
Եւ մենք մեզ կոխող ոտքը լիզումենք.
Հիմի՞ էլ խօսենք։

Հիմի՞ էլ խօսենք, երբ Լուսաւորչի
Բնիկ ժառանգի թեւերը կտրած,
Անարգ Պարսիկը՝ այս ու այն թեմի՝
Կարգումէ տեսուչ ըստ իւր չար մտաց 1)
Եւ մենք դեռ՝ «կեցցէ արին» գոռումենք։
Հիմի՞ էլ խօսենք։

Հիմի՞ էլ խօսենք, երբ ձեռք ենք տալիս,
Երբ ողջունումենք մենք այդ չքերին,
Որ դրան շուն են, և մեզ տեսնելիս՝
Շուտ դիմակները դնում երեսին,
Այդպիսիներին դարձեալ պատվումենք.
Հիմի՞ էլ խօսենք։

Եւ մեր երեսին մնաց մի կաթիլ
Ամօթի սուրբ ջուր, որ բերան բանանք։
Ո՛չ, թէ չենք ուզում հողէց հող կորչել,
Թշնամու արիւնով մեր թրին ջուր տանք,
Ազգ, եկեղեցի փրկենք ազատենք,
Ապա թէ խօսենք։

Միքայէլ Նալբանդեան։

---

1) «Այլ և քորեպիսկոպոս ոք չարաչար (զխս), զոր Պարսիկք և որք անարժանք գործեն և այսօր»։ Թուղթն Ղ. փարպեցւոյ առ Վահան Տէրն Մամիկոնէից...։ «Նոյնց 'ի Սուրմակայն յայնմանէ, զորոյ և մեծացոյց իսկ զվիճակն, արքունի հրամանաւ հանեալ 'ի քաղմաց, նմա հաւատայր։ Ընդ որ նախանձեալ և այլոց եպիսկոպոսաց ժպրհեցան զնոյն առնել, խնդրելով 'ի Պարսից արքայէն օգնականութեամբ իւրաքանչիւր իշխանաց»։ Մովսէս Խորենացի, Պատմ. Հայոց, գիրք Գ., գլ. կզ. (66)։

92

Յիշենք։

Հայկ ու Տիգրանին յիշենք միշտ եղբարք,
Թափենք նոցանից հնութեան փոշին.
Նորանց յիշելով արդեօք մի նոր կեանք
Առնու Հայաստան—նոցա խեղճ այրին։

Կեցցէ յաւիտեան այրին Հայաստան,
Նա՝ որ իր որդոց դեռ սրտի խորքում,
Ունի հաստատուն մի ոսկի կայան,
Ու որդիքն պանդո՛ւխտ, իրենց բո՛ւն երկրում։

Եղբա՛րք, բանը չէ անշօշափելի,
Միայն թէ կամաւ չկարծենք ցնորք.
Վաղո՜ւց մարմնացել ու տեսանելի
Դարձել է Հայոց լուծը անողորք։

Մեր յոյսը սակայն, մեր վրայ լինի.
Այսինքն ազգի մեր ընդհանրութեան.
Աղքատ ու հարուստ տուած թև թևի՝
Այսպէս թէ միայն կայ ճար փրկութեան։

Կեցցէ Հայաստան, որ երազական
Եղել է այսօր իրօք և խօսքով,
Ոչինչ աւելի հնախօսական
Քան թէ անխորհուրդ անուն դառնալով։

Ազատութեան իղձ շրթունքի վրայ
Մի քանի մարդոց տեսնումենք, այո՛,
Ովքե՞ր են դոքա, ո՞չ երդուեալ ծառայ,
Որ օտար լուծին միան միշտ հլու։

«Կը փշրէ շղթան.... կերթայ Հայաստան».
Հա՛, հա՛, հա՛, այդ էր պակաս մնացել,
Որ նախանձայոյզ դառնայ Հայութեան
Կատարելապէս. բայց յետոյ ի՞նչ էլ։

«Կառէ. եկել եմ մայր իմ հարազատ,
Դիրկդ բաց որդուդ քո չուառական.

Համբուրում եմ քո փոշին անարատ....»
Յեռա՜յ. մի ամբողջ գայլի շարական:

Հարաւ հիւսիսից փոշի բարձրացաւ....
Շառաչիւն զէնքի.... մթնեցաւ օրը,
Գաւազ, տարբաղի գլուխն երևեցաւ
Մեր ազգասէրը մտաւ ծակուռը:

«Հա՜ը, Հայաստա՛ն»—Թող տեղը կենայ,—
Ասում է զգոյշ մեր ազգասէրը.
«Ինձ ու հրացան, ինչ եղան նոքա,
Ո՞ւր քշումէիր՝ դու ուրջուները....»

—Ես այդ ամենը անումեմ բերնով,
Կեցցէ սուրբ Մեսրոպ, որ մեզ գիր տուեց.
Հողեր եմ վարում հեռուից՝ խօսքով.
Հրացան իմ պէսը կուրծքին երբ սեղմեց....

Եւ Հայկ, Տիգրանին յիշենք մենք եղբարք
Նորոգենք նոցա փառքը սուրբ անուան
Գուցէ այս կերպով, մի ստոյգ նոր կեանք
Առնու խեղճ, այրի, մայրն Հայաստան:

Մ. Նալբանդեան:

---

93

Գարնանամուտ:

Քեզ ողջոյն զուարթուն,
Առուգահասակ գարուն.
Քեզ ողջոյն բիւր անբուն,
Տալիս է Հայոց Տուն:
Անուշաւանի սօսիք տերևով,
Ծիտերը ծառից իւրեանց ճռ-վողով
Օրհնումեն գալըդ երկնքի դես-պան,
Դու ես մեր կեանքի պաշար ու պաշտպան:

Երբ հեզիկ մօտեցար
Մասիսի դաշտերին,
Իքածին ամպերը
Տարագիր գնացին.
Հին լեռը բացեց
Իւր Թաւուտ կուրծքը,
Քեզ կանաչ դիպայ
Սփռեց հովիտը;
Միրահար սոխակը
Իւր վարդի յեռքից
Սաղեց Արարա

Շինել իւր բունը։
Շատ երկար Հայաստան
Քո գալուն սպասեց
Ծաղկեցաւ նա ալեօք
Շատ լացեց արտասուեց։
Տխուր ձմեռը
Մասեաց գագաթը
Թաղեց անխնայ
Ցուրտ ձնի մէջը.
Կարօտ շատ նստաւ
Դալար արօտի;
Ծով դարձաւ, թափած
Արտասուքն աչքի.
Հին Մասիս միւս անգամ
Զարթեցաւ խոր քնից,
Չորս բոլորը ծաղկով
Ծառերով զարդարեց;
Ստեղծական ոյժը,
Որ ունի Մասիս,
Թափեց միւս անգամ,
Չիմացաւ Հիւսիս;
Նա ինքն Արեւելք
Հանդէպն Արեւմուտք,
Հիւսիսն ու Հարաւ
Ընկած են մի կողմ։
Քո գալը իմացաւ
Մասիսի վուլկանը,
Միւս անգամ սկսեց
Տեսանել իւր գործը.
Վառեց շատ սրտում,
Անշէջ կրակներ;
Դարբնեց հրացայտ
Երկաթի շանթեր;
Ի՞նչ կարժեն նորան
Գնդակ ու վառօդ,
Նիզակ, հրացան,
Ահեղ թնդանօթ։
Թէ այսքան քո գալը
Պատճառեց ծեր Մասեաց,
Ցնծութիւն խրախոյս
Վհատեալ զաւակաց։
Ուրեմն կանգնիր
Մի յաւերժ արձան,
Որ քո գալուստը
Յիշվի յաւիտեան։
Տուր դու Հայերին,
Ընտիր Հովուապետ,
Հայկական Հօտին
Անքուն անխոնջ դէտ։ [1])
Տարաբաղդ Հայկածին

---

1) Այժմեան վէճերին նայելով, որ Օսմանեան տէրութեան բընակող մեր եղբարց մէջ ծագել են կաթուղիկոսական խնդրքի մասին, այս երգը յարմարումէ շատ։ Առանց երեսպաշտութեան խօսելով, համարձակվումենք մեր ընդդիմութիւնը յայտնել այն մեր ազգայնոց դէմ, որոնք կամենումեն Էջմիածնայ կաթուղիկոսութիւնից,—միւս նոր կաթուղիկոսութիւն հաստատել Օսմանեան տէրութեան մէջ, որով Ռուսաց կառավարութեան բնաւ վնաս չեն տալու, այլ, ընդհակառակն, ինչ վատ հետեւանքներ որ ելանէ այդպիսի շարժողութիւնից, բոլորը Հայն պէտքէ ուտէ։ Ժամանակ է որ խելքի գանք; ժամանակ է որ ցնորքները մէկդի ձգենք և իրական գործով պարապենք; ժամանակ է որ նուրբ հասկացողութեամբ հասկանանք մեր օգուտը և վնասը։

Որբերը յանձնեցին
Այս խօսքերը քեզ ասել
Կամն Յաւիտենականին։
Հայաստան աշխարհ
Սիրեց նա անյագ,
Իւր կեանքը կըտար
Նորա փրկանակ,
Եթէ արիւնով,
Որ պիտի թափէր,
Իւր հայրենիքը
Փրկըվելու էր։

Մ. Նալբանդեան։

---

94

Թէ իմ ալեւոր հերքս սեւնային,
Այժմ ինձ յետ գար, կըտրիճ դառնայի.
Սըժոյգ ձի նըստած, բեխերս ոլորած,
Ձեռըս թուր առած ես դաշտ կերթայի։

---

Ամենայն չարեաց ճանապարհը բռնելու դէմ, ամենայն բարոյական և մարմնական, իրական, հասարակաց օգտին հասանելու, միով բանիւ ազգի հոգևոր և մարմնական դրութիւնը բարելաւացնելու «միակ հնարքը, ամենակարճ հնարքը, ամենահաստատ հնարքը և ճանապարհը» այն է, որ ազգի մտաւոր հասկացողութիւնը բարձրացուցանենք, այսինքն, ազգին, բոլոր ազգին, և ոչ թէ միայն բէյ և հարուստի զաւակաց, տալ կանոնաւոր դաստիարակութիւն և կրթութիւն։ Այս բանը գլուխ կուգայ այն ժամանակ միայն, երբ կունենանք կանոնաւոր վարժապետներ Եւրոպայի և, մանաւանդ և մասնաւորապէս, հիւսիսային Գերմանիայի վարժապետական դըպրոցներում պատրաստուած վարժապետներ, հմուտ իւրեանց լեզուին, գրականութեան և ազգի այժմեան դրութեան և պիտոյից։ Ռուսը, կամ Պարսիկը, կամ Տաճիկը ինչով է մեղաւոր, որ մենք մինչև այժմս ոչինչ պատրաստութիւն անգամ չենք տեսել այդպիսի վարժապետներ պատրաստելու՞ Երեխայի պէս այլոց մեղադրելու տեղ, առաւել մեծ օգուտ կը լինէր և ազգին օգտաւէտ, որ պարապէինք և, ժամանակը չկորուսանելով, պատրաստութիւն տեսնէինք ազգի համար կանոնաւոր վարժապետներ պատրաստելու հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցներումը և, առ հասարակ, ազգային դաստիարակութիւնը կանոնաւոր կերպիւ առաջ տանելու, միտներս ունենալով միշտ և նուրբ հասկանալով Լորդ Բրուհմի խորհրդաւոր ասածը, թէ. «դպրոցական վարժապետի այբուբենքը աւելի կարող ու զօրաւոր են քան թէ պատերազմողների նիզակները»։

Մ. Մ՝խանաբեանց։

Ես դաշտ կ'երթայի—դաշտ Աւարայրի,
Ողողած ցօղած Հայոց արիւնով,
Ա՛զգ իմ սիրական, դու. ազգ Թորգոմեան,
Քու կորցրած Թագը քեզ յետ կուտայի:

Կ'ասէի Հայոց օրիորդներին.
«Ծախեցէք հագի ձեր Թանգ շորերը,
Թողէք պաճուճանք, զարդ մարգարիտներ—
Ժանգոտած ու գուլ են մեր Թըրերը;
Տուէք բեհեզեայ մեզ ձեր շապիկը,
Որ մենք փաթաթենք մեր մարմնու վէրքը;
Վիրակապ [1]) հիւսէք դուք ձեր մազերից.
Այսպէս յայտնեցէ՛ք՝ դուք մեզ ձեր սէրը:

Թէ ես լինէի հարուստ մեծատուն՝
Սընդուկներըս լի ոսկով արծաթով,
Շատերու նման ես չէի լինիլ
Երբէք ազգասէր ունայն խօսքերով:
Շամպանեա գինու ալմաս խաչի տեղ
Կ'առնուի առատ գնտակ ու վառօդ,
Արձակ համարձակ կ'երթայի հանդէպ
Հայատեաց ազգին անթիւ զօրքերով,

Թէ ես լինէի մի երկրի իշխան՝
Կուտայի զօրքիս սաստիկ հրաման,
Շուտաքայլ երթալ դէպի Հայաստան,
Խղճուկ հայ ազգին լինել օգնական:
Եւրոպ՝ Ասիա արեան գետերը
Կըվազեցնէի հեղեղի նման,
Մինչև որ Թագ, գահ ու ազատ կըրօն
Ինձնից չըստանար Թշուառ Հայաստան:

Բայց՝ եթէ մի օր, մի ժամ, մի րոպէ
Ազատուած լինէի մեր հողագընդին,
Ի՜նչ սուր սլաքներ պիտի շաղ տայի
Մեր արենարբու Թշնամեաց գլխին:

Ռ. Տ—Գ. Գ[illegible]եան:

---

1) Бинтъ, վէրքը (եարէն) փաթաթելու նեղ և երկար կտոր:

95

## Օտարուհի եւ Հայ երիտասարդ։

Օտարուհին ինձ ասաց «հէ՞ր ես լալիս, արցունքը
Հեղեղի պէս ինչո՞ւ են ողողում քու աչքունքը,
Քու արտմութեան ճար ունիմ, կըփարատեմ քու դարդը,
Թըշիս վըրայ չե՞ս տեսնում փայլած շուշանն ու վարդը»

    Զո՜ւր մի՛ ջանար, սիրական, իմ դարդը չես փարատիլ,
    Հոգիս հոգուց, ցաւերից չես փրկիլ, չես ազատիլ,
    Թո՛ղ իմ աչքից հեղեղայ արտասունքի աղբիւրը,
    Արտասունքն է լըւանում սըրտի խոր խոր ցաւերը։

Օտարուհին ինձ ասաց «տե՛ս հասել է գարունքը,
Դաշտերի մէջ բացուել են հազարերանգ ծաղկունքը,
Իջնենք դաշտը օդ քաշենք, ծաղկունք քաղէ՛ փունջ փընջէ,
Հայրենիքիդ կարօտն ա՛ռ, որ թախիծ քեզ չի տանջէ»։

    Հայրենիքիս կարօտը ձեր դաշտերից չեմ առնիլ,
    Սառ հիւսիսում երկինքը Հայաստանի չեմ տեսնիլ,
    Ուր բիւր պատիկ ցոլուն են արեգակի շողերը,
    Կենսատու է անձրեւը, մեղրածին են ցօղերը։

Օտարուհին ինձ ասաց «մոռացի՛ր քու Հայրենիք,
Քու Հայրենին այնտեղ է, ուր սիրում են քեզ մարդիկ 1)։
Տե՛ս արեւին, նա պայծառ չէ՞ շողշողում հիւսիսում։
Հայաստանը կորել է, խե՛ղճ, դու ցընորք ես ուզում»։
Սուտ են, սուտ քո զըրոյցքը, Հայաստանը չէ՛ կորած,
Նա այնտեղ է, ուր Եփրատ ու Տիգրիսն են գրկուած,
Ուր Երասխը մրմունջով յուզած ջուրն է գըլորում,
Ուր Մասիսի գագաթը ամպերից ցած է նայում,
Ուր փայլում է արեգը իր կուսական շողերով,
Ուր ջըրում է երկինքը երկիրն զով ցօղերով,
Ուր որ չի կայ բորէաս, չիկայ շիմուն ու խորշակ։
Օդը շունչ է հրեշտակի, ջուրը մեղր է անուշակ.....
Հայաստանը կայ.... աւա՜ղ, խոպանացած, ամայի,
Եւ կըծաղկի, երբ նորից ծըծէ քըրտինքը Հայի....

1) Ինչպէս Լատիներէն ասած կա. ubi bene, ibi patria.

Նորա ստինքը յամառ է, չի կերակրում օտարին,
Օտարն խաբուած ասում է «չիջաւ աստղը Հայերի»։
Բայց ինչ, դու չես հասկանալ իմ սրտամաշ դարդերը.
Մի՛ք ջանար. ինձ չեն սփոփիլ Թըշէրդ փայլուն վարդերը։
Իմ տրտմութեան ցաւակից խանդաղակաթ գրկելով,
Օտարուհին ինձ տըւաւ գաւաթը լի գինիով,
Երկնակապոյտ աչերը անթարթ աչերիս յառած,
Լաց ու ժըպիտ երեսին՝ նա մեղմ ձէնով ինձ ասաց.
«Խըմէ՛ գինի, պատանի, 'ի յիշատակ այն երկրին,
«Որ սրտամաշ կարօտով կոչում ես քու Հայրենին,
«Պարզէ՛ ազնիւ ճակատըդ, ըղւարթացի՛ր, ոգի առ,
«Յուսակըտուր այդ դէմքով խըղճալի մի՛ ձեւանար;
«Զինաթաղ ու կիսամեռ դաշտքը գարնային շնչից
«Զե՞ն ըսթափում և յառնում մահահանգոյն խոր քընից.
«Երբ ծագում է արևը մըռայլը չի՞ հալածվում,
«Մեռած բնութիւնն դէպի նոր կեանքը նա չի՞ վերածում.
«Պէ՛Հ, պատանի, քաջ եղիր, խըմէ գինի, երգ երգէ,
«Տէրն է արգաց օգնական, նա քու ազգն էլ կըփրկէ»։

Ռ. Տ—Գ. Պատկանեան

---

## 96

Հայկ ու Արամին մոռանանք, եղբարք,
Թափ տանք մեզանից փոշին հընութեան,
Վերածնենք մեր մէջ նոր կեանք ու նոր բարք,
Կեցցէ՛ շատ օրեր մանուկ-Հայաստան։

Կեցցէ շատ օրեր մանուկ-Հայաստան,
Նա՝ որ դեռ միայն մեր սրտի խորքում
Ունի իւր հիմքը. ոչ տուն, ոչ կայան
Չունի տակաւին բուն Հայաստանում։

Եղբարք՝ բանը դեռ անշօշափելի
Այժմուս մեր մըտքին՝ ցընորք չէ կարծենք,
Բանը կ'մարմնանայ ու տեսանելի
Կըլինի շուտ. միայն մենք վստահ լինենք։

Մեր յոյսը միայն մեր վըրայ լինի,
Չեն պէտք մեզ նըպաստ մեծատուններին,
Ողորմութեամբ թող մուրացիկն ապրի․
Մուրացողն միշտ ստրուկ է օտարին։

Կեցցէ՛ Հայաստան, որ երազական
Կարծում են ծերերն․ իրօք չէ այդպէս,
Մեր հայրենին դեռ չէ չուառական,
Քանի որ ունի քաջ որդիք մեզ պէս։

Բաւ է․ օտարին շատ ծառայեցինք,
Ստըրկի վիճակն չէ յաւերժական,
Ազատութեան գինն մենք քա՛ջ սերտեցինք,
Էլ չենք հաւատալ օտարի խոստման։

Օտարի շահը թոյն է մահաբեր,
Աչք է կուրացնում, միտք է պըղտորում,
Գերի է դարձնում մարդ ազատասէր,
Ոսկի շըղթայով ձեռք ոտք է կապում։

Կըփշրեմ շղթաս, կ՚երթամ Հայաստան,
Կըպագնեմ նորա հողը անարատ,
Կ՚ասեմ «Էկել եմ որդիդ չուառական,
Գրկիդ մէջ ինձ առ, մայր իմ հարազատ։

Չունիմ ես ոսկի, այլ ոսկու մադան,
Գըրոտ ձեռք ջուխտակ ու սիրտ անվեհեր,
Ձեռքումըս ունիմ բահ ու հըրացան,
Սըրտումըս ունիմ աղնիւ խորհուրդներ․

Քու հողն արգաւանդ, ես մըշակ արի,
Մենք հաշտ կու ապրինք շատ ու շատ տարի․
Ուրջուներէդ քեզ ոչինչ շահ չըկայ,
Թո՛յլ տուր, որ բըռնի հալածեմ նոցա։

Դու որդիք ունիս հինգ միլլիոն ու կէս։
Թէ յանկարծ գաղթեն, նոցա տեղ ունե՞ս,
Ստինքիդ կաթը խնայէ՛ օտարին,
Գալու որդիքըդ քաղցած, ծարաւ են․․․․․

Հարաւ, հիւսիսէն փոշի վերացաւ.....
Ձայն, տրոփ, խօսք, շըշուկ զիլ զիլ լսուեցաւ....
Մասսայ ճակատէն մէգը հեռացաւ....
Մանուկ—Հայաստանն աչքի կայնեցաւ 1)....

Ռ. Տ—Գ. Պատկանեան։

---

## 97

### Գիշեր.

Սիրուն պատկեր։ Պարզ գիշեր էր,
Եւ օդեղէն ովկիանում
Փայլումէին անթիւ աստղեր,
Եւ ուրախ էր սիրտըս զարկում։
Ամբրոսական ծաղիկներ վառ
Անուշութիւն էին բուրում,
Եւ երկնքի ցօղ կենարար
Բնութիւնն էր զովացնում.
Ես անխռով երգումէի,
Իմ երգըս սուրբ և մաքուր էր.
«Ազատութիւն» էի երգում,
Հայրենիքի «պարծանք» ու «սէր»։

Ս. Շահազիզեանց, Հիւսիսափայլ 1861 Թ. Ե. 343։

---

## 98

### Արամ-երգ։

Մեր քաջ Հայոց զօրութիւն, } երկիցս
Վեր կացէք, ասաց Արամ. }
Առաջեաւ բացէք նըշան,
Գնանք Հայ լեզուն տարածենք.
ՈՀ Արամ, Արամ, Արամ։

---

1) Մ. Նալբանդեանցի «Յիշենք» (92) երգը Ռ. Պատկանեանի այս 96 երգի պատասխանն է։

Նիւքար զատրուկն Աօրին
Բարբառ կոչէ տառաջին.
Գրչին յաշտարակ ձխեցէք,
Որ յերկնից սորուի հայերէն։ Ահ, եւայլն։

Յորդան տուք, զօրք ծն յորդան
Դէպ 'ի կողմն Արեւմտեան,
Պայածիս Բաղեայ Տիտան,
Դնիք զ'ի տապառտ 'ի դամբան։ Ահ, եւայլն։

Յորդան տուք ծն, զօրք յորդան,
Տեծրք լայնալիճ աղեղան,
Թընքուշախօս ամբոխին
Տալ ըղլեզու Հայկաբան։ Ահ, եւ այլն։

Ո՛վ չըգիտէ Հայերէն,
Ո՛չ ճանաչէ նա զօրէն.
Որ բանիւ Հայոց արար
Այս մեծ աշխարհ մեզ համար։ Ահ, եւ այլն։

'Ի ծովէ մինչեւ 'ի ծով
Թող խօսին Հայ բարբառով.
Ներհակողին նիզակով
Յուցէք ո՛հ, ասաց Արամ։
Ահ Արամ, Արամ, Արամ։

---

## 99

### Էջմիածին։

Էջմիածին խիստ սիրուն պայծառ տեսի,
Երկու հարիւր կանթեղ՝ յիսուն ջահ տեսի,
Գմբեթ ամէնը ջերկա ջերկա վառ տեսի,
Մաթսուն աւել հէ՛նց ոսկէ բուրվառ տեսի,
Լուսաւորչի տաճարն մարմար տեսի։
Մարմար քարից շինած էր աւազանն,
Բերին՝ դրին տասներկու գաւազանն,
Որ խաչով խաչակնքեց Արքազանն,
Ինքն իրան եփեց մեռոնի ղազանն.
Համբուրեցի՝ մէկ էսպէս հնար տեսի։

Ուխտ 'ին եկել Հիւսիսոյ մինչ 'ի Հարաւ.
Գիփ լի՛ էին, ոչ սոված 'ին՝ ոչ ծարաւ.
Տասներկու եպիսկոպոս Թափոր արաւ,
Տիրացուների ձայնը խելքս տարաւ,
Նրանց ժամ ասելն-ուրիշ բառ տեսի:
Հռիփսիմէն, Շողակաթն, Գայիանէն—
Երեքն էլ խիստ զօրաւոր նշան են.
Մեծ ու փոքր. հինգ հարիւր միաբան են,
Աջով՝ խաչով սիրուն պատարագ կանեն,
Երեք հարիւր ոսկէկապ շուրջառ տեսի:
Միսկին Բուրջին ասումէ՝ չի՛լիլ հատը,
Սուրբ Լուսաւորիչն է տուել խրատը,
Որ անիծեց՝ խոզ դարձաւ Տրդատը.
Ոսկի՝ արծաթ պատկեր է ամէն պատը,
Աքրշումէ խալիչէքն զառ տեսի:

Միսկին Բուրջի:

---

100

Գիւղական աղջիկ եմ ես զամբիւղաշէն
Եկեալ աստ զամբիւղօք 'ի Հայոց երկրէն,
Յուսամ, զի Հայ տիկնայք եւ պարնայք Հնդկաց
Բարձր գին տայցեն իմ սիրուն զամբիւղաց.
Առ զամբիւղս 3) յօտար աղջկանէս:
ԶԱրարատ, զԵփրատ եւ զՏիգրիս թողի
Միայնակ շրջիմ աստ յեզերս Գանգէսի,
Պանդուխտ եմ, օգնեցէք անտերունչ անձինս,
Զի ծնողք ձեր յառաջ աստ պանդուխտ էին:
Առ զամբիւղ, եւ այլն:

Զամբիւղք իմ են յարմար ասղնագործութեան՝
Պահել անդ զմատնոց, զթել, զասղաման.
Իմ ձեռօք եմ գործեալ ես զամենեսեան,
Երբ խաչինք եւ գառինք իմ զինեւ խայտան:
Առ զամբիւղ, եւ այլն:
Գանձք բազումք, ցաւք բազումք կան յայսմ աշխարհի,
Պէտք սակաւք, ցաւք սակաւք կան յիմում երկրի.

Զայգի մի ունէի՝ զամբիւղ գործէի,
Լոկ կաթամբ եւ պտղով երջանիկ էի։
Առ զամբիւղ, եւ այլն

Աստ սերկեւիլ, ծիրան եւ խաղող չի կայ,
Բայց միայն ադայ, բիլա ու քիլայ
Ախ, երբ իցէ, զի արժանի եղեց վերըստին
Ճաշակել զպտուղս իմոյ պարտիզին։
Առ զամբիւղ, եւ այլն։

Ապա դուք լաւ տիկնայք՝ զամբիւղս իմ առէք,
Գիւղական աղջկանս սիրով օգնեցէ՛ք.
Զի դարձեալ յերկիր իմ հանդերձ ձեր շնորհօք՝
Զերախտիս ձեր առեալ՝ գովեցից բազմօք։
Առ զամբիւղ 3) յօտար աղջկանէս։

Մեսրոպ Թաղիադեանց։

---

## 101

### Մայրենի լեզու.

(Գերմաներէնից)

Մայրենի լեզու, մայրենի բարբառ,
Ախորժ, ընտանի իմ հոգու համար՝
Առաջին դու խօսք, ականջիս հասած,
Դու սիրոյ քաղցրիկ առաջին յօդուած,
Մանկական լեզուիս թոթովանք տըկար,
Հընչումես իմ մէջ դու միշտ անդադար։

Ահ, ինչպէս պըղտոր է սըրտիս օրը.
Երբ պանդուխտ էի օտարի տանը,
Եթէ հարկ էր ինձ այլազգի լեզուով
Իմ միտքը յայտնել օտար բառերով,
Որ երբէք սիրել կարելի չէ ինձ,
Որ ձայն ողջունի բնաւ իսկ չեն ինձ։

Գեղեցիկ լեզու, հրաշալի լեզու,
Այդ ինչպէս քաղցըր հընչումես ինձ դու.
Կամիմ աւելի քաջ ծանօթանալ

Քո ճոխ գանձերին, հոգով հայանալ.
Ասես թէ ահա գանչումներին ինձ
Պապեր ու հայրեր խոր գերեզմանից։

Հընչի՛ր դու հընչի՛ր այժմ և յաւիտեան
Մայրենի լեզու, բարբառ սիրական,
Արի՛, բարձրացի՛ր հնութեան փոշուց,
Դու իմ հայ լեզու, մոռացած վաղուց;
Ըզգեցի՛ր նոր կեանք սուրբ գրուածներով,
Որ ամենայն սիրտ վառվի քո սիրով։

Ամեն տեղ փչում Աստուածոյ շունչը,
Սուրբ է այո՛ միւս, այլ ձև ու ոճը,
Բայց թէ աղօթել, գոհանալ պէտք էր,
Իմ սրտի սէրը յայտնել արժան էր,
Իմ կրանական մտածութիւնքը—
Ապա կը խօսեմ իմ մօրըս խօսքը։

Ս. Նազարեանց։

---

102

Հայրենիք։

Քո հայրենիք լիցի քեզ մեծ քան զընաւ,
Ուստի բարիս թէ նըմա զոհես է իրաւ,
Բնութեան է ազգ՝ հայրենի տանն ածել գութ,
Եւ գազանք զորջ ծննդեան սիրեն զխաւարչուտ։

Մի ինչ բոլոր է հայրենիքը, մի մարմին,
Եւ մեք անդամք, մի մի մարմին եմք նորին.
Մոլորի այր քաղաքացի թէ ուրոյն
Կարծիցէ զանձն 'ի տոհմակցաց ժողովոյն։

Չէ պարտ նըմա գիտել օգուտ կամ վընաս,
Այլ զայն եւ եթ որ հայրենեաց իւր եհաս,
Քանզի նըմին պարտի զաստիս ամենայն,
Ո՞չ ի նմաննէ ընկալաւ զայն ամենայն։

Թէ քրտանց դու վասըն նորին կալար ժոյժ,

Թէ մատնեցեր ըզքեզ յարքուն յապաժոյժ,
Սակայն ոչ քո ձեռական ինչ է այն տուր,
Այլ 'ի նմանէ զոր ընկալար, զայն ետուր։

Նա իսկ ծընաւ, սընոյց ըզքեզ եւ մարզեաց,
Նա օրինօք քեզ առ տընին 'ի չարեաց
Պաշտպանէ միշտ, զինուք իւրովք՝ յօտարէն.
Տայ քեզ ըզբարձ, զանունդ, զփառս՝ համօրէն։

Ընդ քաջութեան հատուցանէ վարձ յաւէժ,
Ընդ զըկանաց թէ կրես ուրեք, առնու վրէժ.
Է մայր սիրուն, ջանայ, ճըգնի նա ցանգորդ
Երջանկութեան առնել միշտ զիւրսըն բազորդ։

Որչափ գամ մի մահկանացուքըն մարդիկ
Լինել աստէն մարթայցեն չէն երջանիկ։
Բայց է եւ բեռն, կամ եւ պարտիք ընդ տուրս այն
Զառնո՞ւս զբեռն. թո՛ղ զհայրեննեաց եւ զընծայս։

Ե՛րթ բնակեսջիր յանտառ անշէն՝ մուրական.
Լե՛ր հաճ խըշտեօք, չնչին կաղնեօք՝ որ անդ կան,
Վարեսջիր կեանս ազատ, վայրագ, ընտըրըոյս,
Անասջի՛ր անդէն դու առանձին ըստ հաճոյս։

---

## 103

### Խորախոյս ի միութիւն։

Դեռ նոր Հայրենիք, դեռ նոր ազգութիւն
Պարուս շնորհիւ պարտք և իրաւունք
Սահման և կշիռ թոթովել որ գիտցա
Ո՛վ Հայաստանի պանդուխտ զաւակունքս
Կրնա՞նք արդ զոհել կրնանք ամէն բան
Անձնական կըռից մատնել անխընայ
Եւ Օտարին շահն Ազգին վնասող
Ո՛վ կրնայ խնդրել, որ այն եղեռն Հայ
Զգոյշ. ով Հայեր, զգոյշ կենանք միշտ
Քանզի ազգադաւ սլանան նետեր

Մեր խոցուած սրտերն կրկին խոցելու
Պահենք զայն ամուր սիրոյ վահանաւ
Միութիւնն ըլլայ զըրահ անվըտանգ
Եւ անհամաձայն թէ գտնուինք մեր մէջ
Այլոց միջամուտ ներենք ոչ երբէք։
Ազատ ու հաւասար, ամէնքս ալ եղբայր
Հեռատես, ըզգոյշ և գործն անդուլ
Ազգային կամաց հըպատակ անխօս,
Այսպէս կրթուի Հայ մանկութիւնը
Այսպէս պատրաստուի պատանեկութիւնն
Եւ երիտասարդութիւնն ըլլայ աննըկուն
Անտէր ախոյեան Ազգին իրաւանց
Եւ թող ծերութիւնն հսկէ լըջամիտ
Հայոց բաղդն ու արև յուսով ողջունել։

Մ. Գ. Գ. Փափազեան։

---

104

Հայկ երգ։

Օ՜ն եկայք արի Հայեր,
Յիշեսցուք զնախնիս մեր,
Միաբան ելցուք 'ի վեր —
Յիշելով զարին Հայկ։

Հայր մեր Հայկ էր դիւցազուն։
Եղիցուք նըմին հանգոյն,
Ազգ մեր փոքրիկ, այլ քաջազուն,
Է մեր քա՛ջ ազգս Հայկ։

Հայկ երբեք հարիւր հոգւով
Միասիրտ որդւով, թոռնով
Թողեց մեզ Հայ-անունով.
Պարծանք մեր դու Հայկ։

Գերեզմանք կոչէ դաշտն այն,
Ուր Բէլն անբարտաւան
Եւ զօրքն իւր անկան կործան
Ի բազկաց քոց, ո՛վ Հայկ.

Արդ՝ պընդեալ զսիրտս մեր
Հայաստան, որ է յաւեր՝
Սիրեսցուք 'ի փառս մեր
Գոչելով՝ «փա՛ռք մեր Հայկ»։

Զօր մերում հետևեսցուք
Սերտ սիրով կապեսցուք
Արժանի յայնժամ լիցուք
Հայր կոչել մեզ զՀայկ։

---

105

Օրհներգութիւն ազգային

Տէր՝ կեցո՛ դու զՀայս
Եւ արա զնոսա պայծառս.
Կեցո՛ զՀայս.
Զողորմութիւնդ վերին
Հաճեաց ձօնել նոցին,
Զի նովիմբ մարթասցին
Ապրիլ յաստիս։
Մի՛ Տէր մեր, Տէր փութա՛,
Զազգ մեր համայն փրկեա՛,
Ի թշնամեաց.
Կապեա՛ զաչս նոցուն,
Հա՛տ զարմատոյն զբուն
Եւ զազգ մեր պարտասուն
Արա՛ հզօր։
Ի քո իջեալ տեղի
Զաթոռ Հայրապետի
Մեր հաստատեա՛։
Զերկարութիւն կենաց
Հօր մեր աստուածազգեաց
Շնորհեա՛ պետին մեր հարց,
Որ զմեզ հովուէ։
Աջովդ համատարած
Զազգդ մեր արտահալած
Փոյթ գումարեա՛
Յաշխարհ Արարատեան,
Ի վայր մեր ծննդեան,
Որ այժմ է սեփական
Օտար ազգաց։
Առաքեա՛ իշխանաց
Զհամակցութիւն կամաց
Ի մերազնեայս;
Զոմն ի մէնջ յարո՛
Հովիւ ազգի մերոյ,
Տո՛ւր նմա ցուպ հուժկու
Հովուել զմեզ։

Մ. Դ. Թաղիաթեանց։

---

106

Առաջին տարեդարձ ազգային սահմանադրութեան
1861, Մայիս 24 (Կ. Պօլիս)։

Արե՛ք Հայկազունք, յառաջ ընթանանք,
Սահմանադրութեան նոր բարև մ՚ալ տանք,
Որ Ազգն երբ զԱնի փրկարար գոչեց,
Նո՛ր հոգի, նո՛ր կեանք Անոր պարգևեց։
Եկէ՛ք բարեկամք, առ բարձրեալն Աստուած
Ուղղենք մեր մաղթանք սուրբ սրտէ բղխած։
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ,
Ազգն ու սահմանադրութիւն։
Զրկանք, բռնութիւն վատթար վարչութեան

Ներքին մահն ի դուռն Հայոց ազգութեան.
Սահմանադրութիւնը եկաւ զայն վանեց
Եւ կենաց ուղին մեր առջին հարթեց։
Յառաջդիմութեան բացաւ ասպարէզ,
Ուր ամէն վայրկեան գոչել պարտ է մեզ
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ
Ազգն ու սահմանադրութիւն։
Ջնջեց ամենայն կարծիք անձնական
Խեղդեց ամենայն ձայն անհատական,
Հրաւէր կարդաց Աստուծոյ ձայնին
Առաջնորդ լինել գործոց ազգային։
Այն որ Աստուծու ձայն տուաւ մեզի,
Մենէ թող առնու ձայնով մ'այնպիսի
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ
Ազգն ու սահմանադրութիւն։
Հայերս անարգուած փրկեց բարձրացրուց
Մարդկային կոչման մեզ արժանացուց,
Շնորհեց մեզի, զոր ազատն աստուած
Մարդկութեան երկրորդ նշանն է դրած։
Արուն շնորհիւն յարգ ստացանք մենք.
Անոր յարգ տալով ապրինք ու երգենք,
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ
Ազգն ու սահմանադրութիւն։
Դու ալ Հայաստան, սիրուն հայրենիք,
Ալ այսուհետեւ մի սգար լռիկ,
Զի ա՛լ քու որդիք նոր ոգւով բերկրեալ,
Զքեզ հարս կուզեն տեսնել զարդարեալ։
Ա՛լ մի՛ լար մայրիկ, լացդ ի պար փոխէ
Եւ ձայնով քաղցրիկ որդւոցդ հետ երգէ։
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ
Ազգն ու սահմանադրութիւն։
Հայեր, միանանք մեր մօրն հետ օրհնենք
Զանոնք, որ մեզի տուին սուրբ օրէնք
Սահմանադրութեան, բարեաց փոխանակ,
Թող վարձն ուրախ կեանք իփառունակ։
Թո՛ղ և մեր որդիք հետ անոնց անուան

Բիւրաւոր տարիք օրհնեն ու կարդան
Կեցցէ, կեցցէ, կեցցէ միշտ
Ազգն ու սահմանադրութիւն։

Յ. Գ. Սըվաճեան, երբեմն տնօրէն-խմբագիր Կ. Պոլսոյ «Մեղու» լրագրի։

---

107

## Միութիւն։

'Ի չորրորդ տարեդարձ ազգային սահմանադրութեան
(Կ. Պոլիս)։

Ո՛չ զուարթ գարուն, ո՛չ օր մի սիրուն
Ինկաւ ու պարզեց մեզ այգն Հայութեան.
Որ գեղածիծաղ ժպտէր խնդագոյն,
Քան սուրբ արշալոյս Սահմանադրութեան,
Որ առաւօտեց Հայոց սրտերուն,
Սէր և Միութիւն։
Ո՛չ Արարատայ աւերակներէն,
Սիրավառ արև ծագեց կենսական.
Ո՛չ Մասսի հնցած ծերունի ծոցերէն,
Քան զանբիծ արև Սահմանադրութեան,
Որ ելաւ ծագեց Հայոց սրտերուն
Սէր և Միութիւն։
Յայն արիւնաներկ վայրերն, ուր մէկիկ,
Մէկիկ անկան փառք Հայոց Ազգութեան.
Ո՛չ շնչեաց հովիկ մի սրտագովիկ,
Քան զանուշ զեփիւռ Սահմանադրութեան,
Որ հեշտիկ փչեց Հայոց սրտերուն,
Սէր և Միութիւն։
Ի գլխակորիկ շուշանիկն ու վարդ,
Որ 'ի սգապատ հովիտն Աթինեան
Ո՛չ երգեաց բնաւ Թռչնիկ մի զուարթ,
Քան սիրուն սոխակ Սահմանադրութեան,
Որ իջաւ երգեց Հայոց սրտերուն,
Սէր և Միութիւն։

Ի պաղուկ լերանց ձիւնապատ ծայրէն,
Զ՚իջան առուակներ արծաթանման.
Ո՚չ վճիտ գետեր հեզիկ խոխոջեն,
Քան զոլորուկ նեկտար Սահմանադրութեան,
Որ վազեց յորդեց Հայոց սրտերուն,
Սէր և Միութիւն։

Գարուն է եկեր Հայութեան ի դաշտ,
Ծըլեր ու ծաղկեր Սէրն ու Միութիւն.
Ում Աստուած վերէն, ժպտելով ի հաշտ,
Տուաւ պարգևեց Սահմանադրութիւն։
Որ նա պիտի տայ Հայոց սրտերուն,
Կեանք ու զօրութիւն։

Ս. Հ. Փէլէկեան։

---

108

Ի հանդիսի երրորդ տարեդարձի ազգային
սահմանադրութեան (Կ. Պօլսոյ)։

Գարուն Հայաստան գայ ծաղկապսակ
Զայն ողջունելու եկէ՛ք Հայ զաւակք,
Անցան սև օրեր, օրե՛ր մահահոտ,
Հայոց նոր բաղդի ծագի առաւօտ,
Սահմանադրութիւնն ուղեցոյց կենաց
Սիրոյ դրօշակով եկաւ զարդարուած,
Որ փայլէ՛ Արև սուրբ Հայաստանի
Որ Հայ Ազգութիւնն փառօք վերածնի.
Կեցցե՛ն անձնուէր որդիք Հայկազուն,
Կեցցէ՛ Ազգային Սահմանադրութիւն։
Կաթիլ մ՚արտասուք հեղունք՝ աննախանձ
Ի սուրբ յիշատակ մեր քաջ նախահարց,
Կաթիլ մի քրտինք հեղունք անխնայ
Ի նպաստ Ազգիս յուսոյն ապագայ,
Ու ոչ իսկ խնայենք բոլոր մեր ճգունք
Կրօնի, Հայրենեաց և Ազգի սիրոյն,
Որ փայլէ՛ Արև և այլն.

Հայեր, միանանք, կ'ըսենք առաթուր
Ամէն ուժ և նենգ, պարիսպներ ամուր,
Երկինք զայս մեր սուրբ կ'օրհնէ Միութիւն
Ի Աստուած Գրիգորի զօրավիգ արթուն.
Հապա խրախուսինք, կուրծ տանք անվեհեր,
Ընկճենք, կործանենք ամէն արգելքներ,
Որ փայլի՛ Արև և այլն։

Ունինք սիրտ արի, ոգի եռանդուն,
Քառանց մնացած բազուկ աններկուն,
Դարերու յաղթող Ազգի զաւակ ենք,
Ամէն նախատինք ո՜ն փութով ջնջենք,
Անմա՜հ Հայութեան կանգնենք յաղթանակ,
Հայոց Մօր ճակտին հիւսենք պերճ պսակ,
Որ փայլի Արև, և այլն։

Ս. Գ. Գ. Փափազեանց։

---

## 109

### Յաւուր գործադրութեան ազգային սահմանադրութեան 24 օգոստոս 1860 (Կ. Պօլիս)։

Հայրենեաց սիրով վառուած վեհ սրտեր
Ի՞նչ կը յապաղէք ելնել 'ի հանդէս.
Ի՞նչ կը յապաղէք.—սիրտ կը դիմանա՜յ,
Սիրտ որ ազգասէր ըլլալ կը ցանկայ,
Տեսնել հայրենեաց այսքան բիւր աղէտ,
Եւ դու անտարբեր ցարդ մնալ յաւէտ։
Խեռ ատելութեան և չար նախանձու
Սերմերն ու ոգին հեռու մղենք հեռու.
Սիրտ սրտի կապուած, թև թևի տուած,
Հայրենեաց սիրոյ ասպարէզն բացուած.
Ոն վազենք յառաջ 'ի սուրբ խաչն վստահ,
Ոն երթանք յառաջ, և անձնանուէր՝
Հայրենեաց օգտին ըլլանք ուխտանուէր.
Հա՛յ մի վհատիր, սիրտ ա՛ռ և սիրտ տուր,
Տկարք զօրանան, քաջք խրախուսին,

Սատերը բացուին, վատերը զատուին,
Ճշմարիտ Հայերն յառաջ թող անցնին.
Խաչ, նէրն են նշան ճշմարիտ Հայուն
Խաչ, սէրն են պարծանք ճշմարիտ Հայուն.
Սիրոյ գրօշակներ
Թող արդ պարզուին,
Հաշտութեան ձայներ
Թող արդ հնչուին.
Հայն մէկ սիրտ եղաւ
Սիրով միացաւ,
Սուտ են որ ըսեն
«Հայք զիրար կատեն»։

Սուրբ Արարատեան մայր աթոռոյն գիրկը,
Եկէք Հայկազունք, եկէք միանանք.
Եւ սփոփենք մեր վշտացած մօր սիրտը,
Օրհնելով Տէրը, որ մեզ պարգեւեց
Մեր Ազգին կայն ու հոգին,
Ազգային Սահմանադրութիւն
— Յաւերժացի արդիւնաւէտ։

Ս. Գ. Գ. Փափազեանց։

---

110

Գարուն։

Ոհ ինչ անուշ և ինչպէս զով
Առաւօտուց փչես հովիկ,
Ծաղկանց վրայ գուրգուրալով
Եւ մազերուն կուսին փափկիկ.
Բայց չես հովիկ իմ հայրենեաց,
Գնա՛ անցիր սրտէս ի բաց։
Ո՛հ, ինչ աղու և սրտագին
Ծառոց մէջէն երգես թռչնիկ,
Սիրոյ ժամերն ի յանտառին
Զմայլեցան ի քոյ ձայնիկ.
Բայց չես թռչնիկ իմ հայրենեաց,

Գնա՛ թռուիր սրտէս ի բաց։
Ո՛հ, ի՛նչ մրմունջ հանես վտակ
Ըկանակիտ և հանդարտիկ.
Քու հայելւոյդ մէջ անապակ
Նային զիրենք վարդն ու աղջիկ.
Բայց չես վտակ իմ հայրենեաց,
Գնա՛ հոսէ սրտէս ի բաց։
Ինչպէս թռչնիկ և հովն Հայոց
Աւերակաց թռչին վերայ,
Ինչպէս պղտոր վտակն Հայոց
Նոճիններու մէջ կը սողայ,
Նոքա հառաչք են հայրենեաց,
Նոքա չերթա՛ն սրտէս ի բաց։

Գ. Մ. Պէշիկթաշլեան։

---

111

Առ Հայաստան։

Առ ընկալ 'ի գիրկդ մայրդ Հայաստան,
Զորդիս քո սիրուն ցրուեալ աստ և անդ,
Տես՝ ինչպէս սիրովդ և քու կարօտովդ,
Վառուած բորբոքած քու տեսոյդ ցանկան.
Արի կաց ուրեմն ով մայր Հայաստան,
Նոր-ոգի զգեցիր փառօք անվախճան։
Ոն զրահաւորիմք ով որդիք Հայկեան
Մեր մօր արցունքներն ջնջել յաւիտեան,
Զօրանանք սիրով և սուրբ միութեամբ,
Ըլլալ ախոյեան ընդդէմ թշնամեաց.
Հապա գործելու ժամանակն հասաւ,
Հայրենասիրին կայ փառք անզըրաւ։

Տ. Փափազեան։

## 112

### Յառա՛ջ գնացէք·

Ամէն մարդ վարումէ իւր կեանքը,
Ամենում զարկումէ իւր սիրտը.
Ինչպէս որ նորա մէջ ժամերը
Գործումեն օրերի հիւսուածը,—
Ուրախ է կամ տըրտում և մարդը։
Միշտ յառա՛ջ, միշտ յառա՛ջ. անսասան
Կայ միայն ինչ որ ինքն ըստ ինքեան
Ունի յարգ և կշիռ մեծութեան.
Ինչ որ չէ կեանքի մէջ տևական.
Այն բանը և կեանքի չէ՛ արժան։
Միշտ յառա՛ջ, միշտ յառա՛ջ. վասն զի
Կորած է արտասուք քո թափած
Ի վերայ օրերի գնացած.
Ինչ բան որ Աստուծուց է ծնած,
Նա և իսկ կը յաղթէ աշխարհի։
Քաջ, արի դէպ ի գործ. ձեռք շարժիր,
Աշխատիր, վաստակիր անձանձիր.
Վերջումը—աներկմիտ դու կացիր,—
Այս աշխարհ կամակոր, ախտակիր,
Ամօթով ոտքիդ մօտ կ'խոնարհի։

Հիւսիսափայլ, 1861 թ. և. 1—2։

---

## 113

### Առ Հայաստան։

Հայաստան երկիր դրախտավայր,
Դու մարդկայնոյ ցեղիս օրրան,
Դու և բնիկ իմ հայրենիք,
Հայաստան, Հայաստան, Հայաստան։
Ի վեհ անուանդ սիրտ իմ, ոհ, յոյժ
Ոգևորի ի նոր խրախոյս,
Եւ անձկայրեաց ի քեզ յուսամ,

Ի քեզ՝ ի քեզ յոյս իմ միայն։
Հայաստան, Հայաստան, Հայաստան։
Հայաստան անուն փարելի,
Ի քեզ հանգիստ Նոյեան տապան
Եգիտ և քև ապրեցաւ Նոյ,
Հայաստան, Հայաստան, Հայաստան։
Գետք քաղցրաջուր ադենաբուղխ,
Զհողդ բարի առնեն յուռթի.
Քև ապրիմ ես, քև միշտ ցնծամ,
Քև, քև պանծամ փառք իմ միայն։
Հայաստան, Հայաստան, Հայաստան։
Հայաստան ծնող դիւցազանց
Եւ հրաշալեաց հանդիսարան.
Քո զեփիւռին քաղցր է շնչիւն,
Հայաստան, Հայաստան, Հայաստան։
Հայկ, Արմենակ, Արամ, Տիգրան,
Տրդատ, Սմբատ, Վարդան, Վահան.
Զոր շնչեցին և զօրացան,
Զքեզ յիշեմ, զքեզ սիրեմ,
Զքեզ, զքեզ, սէր իմ միայն.
Հայաստան, Հայաստան, Հայաստան։

Յովհաննէս Միրզա Վանանդեցի։

---

## 114

### Անձուկք հայրենեաց։

### Ա.

Հայաստա՜ն, քաղցր իմ Հայաստան,
Ոգիքս յանունդ հալեցան.
Մինչև ցե՞րբ ես ի քէն պանդուխտ,
Ոգւոյս իմ ե՞րբ լըցցի ուխտ։
Արդեօք աչքս անձկալից
Երբեմն ըղքեզ տեսցեն,
Աչքս այս արտասուալից
Երբէք դադարեսցեն.

Շուրթն իմ ի հողդ կենսաւոր
Տացէ՞ զհամբոյրն ուխտաւոր.
Արդեօք գլուխս վշտակոծ
Հանգիցէ՞ քոյդ ի ծոց։
Հայաստա՜ն, սէր իմ Հայաստան,
Աղիքս ի տենչդ հալեցան.
Մինչև ցե՞րբ ես ի քէն պանդուխտ,
Սըրտիս իմ ե՞րբ լցցի ուխտ։

Բ.

Հայաստա՜ն, իմ պերճ Հայաստան,
Ո՛վ երկիր Նուիրական,
Հընոց կենաց և օրօրան,
Հաշտարար երկնից խորան.
Ի քո սուրբ հովանիս
Ո՛ զնըժդեհ տանէր զիս.
Ո՛ ի ստուերսդ Երասխոյն
Ըզնախնեացս հեղցէ քուն,
Անմահութեանց վեհաբուն
Ծ՝ըծել անդ զօդ և զաւիւն,
Եւ զաստեացըս վըշտաց
Պըտանել կատարած։
Հայաստա՜ն, քաղցր իմ Հայաստան,
Աղիքս յանունդ հալեցան.
Մինչև ցե՞րբ ես ի քէն պանդուխտ,
Սըրտիս իմ ե՞րբ լցցի ուխտ։

Գ.

Հայաստա՜ն, սիրուն Հայաստան,
Յուսոյ խարիսխ մարդկութեան.
Դու ու իմ լոկ ակընկալեաց վայր,
Յոր աչք իմ ձըգեն յամայր.
Ո՛ զմին գէթ տայր լընուլ
Զիմս ըղձից ի քեզ հայլ.
Ո՛ զփափաքս յարատև,
Իբր ըղձիւք մի թեւթև,
Հասուցանէր մինչ առ քեզ,
Եւ զայս ողջոյնս սըրտակէզ,'

Եւ զհառաչս ոգւոյս բիւր
Զոր ընդ բլուր տա՛յր 'ի սփիւռ։
Հայաստա՛ն, քաղցր իմ Հայաստան,
Աչիքս ի տենչդ հալեցան,
Մինչեւ ցե՞րբ ես ի քէն պանդուխտ,
Սըրտիս իմ ե՞րբ լըցցի ուխտ։

Բ.

Հայաստա՛ն, իմ վէհ Հայաստան,
Երանութեան օթարան.
Մ՛ տայր զաւուրս իմ ցաւալիս
փոխել ո՞հ յերանելիս,
Աչ փառօք փայլելով՝
Վաղանցուկ ոչ ոսկւով,
Այլ ի զքեզ տեսանել
Սուրբ ըզսարսդ ողջունել.
Զաւերակօք քով փարել
Եւ զհարցս անդուստ ձայն լըսել.
Եւ զնոցին հետս անանց
Համբուրել գետնամած։
Հայաստա՛ն, քաղցր իմ Հայաստան,
Աչիքս յանուանդ հալեցան.
Մինչեւ ցե՞րբ ես ի քէն պանդուխտ,
Սըրտիս իմ ե՞րբ լըցցի ուխտ։

Գ.

Հայաստա՛ն, անոյշ Հայաստան,
Դու զոգիս լընուս համայն.
Դու խրախոյս, փառք իմ եւ վիշտ,
Յոր սիրտ իմ թըռանի՛ միշտ.
Ես պատիւ, զինչ և զերկ,
Խանդ, ըզշունչ և սին զերգ՝
Ի բագինդ արգադիր
Կախեցից լիաձիր.
Մի լոկ խընդրեալ փոխարէն՝
Զի զքեզ աչք իմ տեսցեն.
Զի մի՛ ցմահ անձկալից
Զերդ սերկեան գոչեցից.

Հայաստա՜ն, իմ քաղցր Հայաստան,
Սգիքս յանուանդ հալեցան.
Մինչև ցե՞րբ ես ի քէն պանդուխտ.
Սըրտիս իմ ե՞րբ լըցցի ուխտ։

Խորխոռունի (Խորէն վ. Գալֆայեան)։ Մասեաց Աղաւնի, 1858 Թ. Ապրիլ ե. 93—94։

---

115

Երգ Հայրենի։

(Նմանողութեամբ Quant tout reniat)

Մինչդեռ յուսով խայտայ բնութիւն
Յետ դառնաշունչ ձմեռայնւոյն,
Եւ ի գաւառն իմ Հայրենի
Գեղածիծաղ դառնայ գարուն;
Մինչ բոյր ի բոյր փթթին ծաղկունք
Եւ ճռուողեն նորեկ ծիծռունք,
Ի քեզ ես դարձ առնեմ յայնժամ
Ով ցանկալիդ իմ Հայաստան։
Ոչ Հելուետեան ինձ դաշտավայրք,
Եւ կամ զուարթ մարգագետինք,
Ոչ քան զքեզ չքնաղագեղ
Իտալական պայծառ երկինք։
Հեռի ի քէն պանդուխտ գոլով,
Բոյովդ յար տապիմ անձկով,
Ի խանձարուրդ իմոց կենաց,
Ով Հայաստա՜ն, առնում քեզ դարձ։
Գայցեն աւուրք, ուր մանկութեան
Ընկցի տիոցս իմ գեղ դալար,
Եւ յինէն խոյս տացեն վայելք
Կենաց թեթև ի գարշապար։
Ուր հէք մուսայս մատն ի յերեր
Մոռանայցէ երգել զսէր,
Ջնինջ ի ծոցդ առնեմ յայնժամ
Ով ցանկալիդ իմ Հայաստան։

Մկրտիչ Պէշիկթաշլեան, երբեմն աշակերտ Փարիզու Մուրատեան վարժարանի։ Բազմավէպ, 1850 Թ. ե. 223։

116

## Տեսիլ։

Աշնան վերջերում, Նոյեմբեր ամսին,
Ցրտիցն ամփոփուած իմ տանս միջին,
Հիւանդ, անկողնում, տրտմալից սրտով,
Անցի ամբողջ երեք օր վերջին,
Ելայ ու գնացի մեր գիւղին մօտիկ
Գեղեցիկ մի դաշտ, դրութեամբ փոքրիկ,
Որոյ սահմանը փակել են բլուրք.
Տեսարան աչքի ուրախ, գեղեցիկ։
Բնութիւնն իւր ամեն գեղեցիկ ձիրքեր
Զեղխօրէն այս տեղ անխնայ թափել էր.
Ձմեռուան ցուրտ շունչ թէև դեռ չկար,
Բայց պարզ նորա հետք երևելի էր։
Արևն, երբ որ գեղեցիկ դէմքով
Հորիզոն ի վեր խաղումէ փառքով,
Առաջին իւր լոյս, կարծես թէ այս տեղ
Պիտի ամփոփէ ոսկեայ ճաճանչով։
Իսկ լուսնի պայծառ լոյսը խաւարի
Հետքերը անհետ առնէ գիշերի,
Եւ մի հոյակապ կրակի նման
Այս դաշտի վերայ վառ լուսով փայլէ։
Մինչ այսպէս միայն կայի զարմացած,
Ասելով «մեծ է փառքդ, ով Աստուած....»
Եւ ահա տեսայ մի մարդ հոյակապ,
Բլրի գագաթից իջանումէ ցած։
Ուրախ ու փայլուն դէմքով մօտեցաւ,
Անունս, ազգանունս իսկոյն հարց արաւ.
Եւ երբ ճանաչեց հայկազեան սերունդ,
Իւր սուրբ բերանը կրկին բաց արաւ.
«Անունս է Ոգի հայաստէր մարդկան.
Ծնունդ եմ միակ սիրոյ մարդկութեան.
Սկզբից մինչև այժմ, անարգ մարդու պէս,
Շրջումեմ անտուն և միշտ անկայան։

«Ամէն մի Հայի չար վարք ու բարքեր,
Զարկեցին սրտիս բիւր հազար նետեր.
Իմ պաշտօն թուեցաւ նոցա հակառակ
Երբ սփռումէի սուրբ սիրոյ սերմեր:
«Այլ իմ խօսքերին ընդդէմ ու ներհակ
Շինեցին նոքա մի չար ամբարտակ.
Դարձան թշնամի անհաշտ ազգութեան,
Թափեցին արիւն Հայոց համարձակ:
«Ախ, ո՛րն գործը, որ մարդու արարք,
Պատմեմ մի առ մի, պատանի Հայազգ.
Մեհրուժան, Վասակ, Նիկոլ, Կիրակոս,
Զանգագ, Վեստ Սարգիս, դիւածին Սուրմակ,
«Եղան ազգութեան կործանիչ պատճառ,
Աւերման երկրի, գործովք անարդար.
Ազգութեան հիմքը, նաև հաւատքի
Խախտեցին նոքա մինչ ցայսօր իսպառ:
Նոցա գործերը չէր մեզ բաւական.
Սատանայ բնութեամբ, մի մարդ անպիտան
Սողաց դժոխքից, ինչ կայծակ զարկեց,
Թափեց արիւնը....ծերի պատուական:
«Հայազգի սիրտը ի սուգ համակեց,
Նորա խորհուրդները հիմնովին քանդեց,
Ազգի վէրքերի թարախը սրբելու
փոխանակ, կրկին վէրքերը բացեց:
«Բայց և արժանի, այսօր ահա՛ նա;
Հազար, բիւր տանջանք պիտի տանայ.
Թէ այս տեղ, թէ անդ, Աստուծոյ ձեռնից.
Յաւիտեան ի հուր գեհենին կը մնայ:»
Այսպէս ասելով գնացինք միասին,
Կանգնեցինք բլրի մաքուր գագաթին.
Այն տեղից ցոյց տուեց մի վանք հոյակապ,
Շքեղ զարդարած պարսպով ահագին:
«Այս տեղից ահա ես եկայ քո մօտ,
Պատմելու մի անցք, որ այս առաւօտ
Անցաւ իմ ու միւս մարդկան առաջև,
Ահա պարունակ անցքին համառօտ:

«Պաշտօնէս անուամբ գնացի այն տեղ,
Մշոյ վանքի մէջ, զարդարած շքեղ,
Մենեկից սենեակ անցայ, և միւսում
Զանազան աթոռք դրած են մէջ տեղ։
«Չանցաւ մի րոպէ, և ահա եկան
Զանազան մարդիկ, իմ մօտ ներս մտան.
Ամենն իւր համար պատրաստած տեղում
Նստեցաւ, ախորժութեամբ, կարծես բաղձեցան։
«Իսկ նոցա մէջ տեղ մի մարդ էր բազմած,
Պաշտօնին յարմար զգեստներ հագած,
Մօրուքն սպիտակ, փառահեղ, գանեղ,
Կարճիկ հասակով, սրբութեամբ վառուած։
«Ասեմ, սուրբ սիրոյ կայծը երեսին
Փայլումէր, յստակ վերայ ճակատին
Նայել էր կամար շնորհք արարչի
Զարդարա պարգև հայազգի ոգին։
«Գերեզմանական լռութիւն խորին
Պատել էր նստած մարդերի սրտին.
Մի մարդ սևագլուխ հասակով միջակ
Չոքած էր անձայն ծերի առաջին։
«Նախանձ սևախանձ, աչքի մէջ արիւն....
Պարզաբար տեսայ. տեսիլ մայլուն.
Գիմաց գծագիրն ինձի ցոյց տուեց,
Այս պարզ նշաններն, Գիրասա էր անուն։
«Փառահեղ դէմքը ծեր մարդոյ, ուրախ,
Սկսաւ բարբառել հոգով անխարդախ,
Որ ներէ յանցանք այն չոքած մարդու
Որ մերկ դիմակով սատանայ խարդախ։
«Ասեց. ով Գիրասա, ծառայ հաւատար,
Չկամիմ թողուլ խորհուրդս անկատար,
Ելիր ու գնա կրկին քո տեղին,
Ուստի քո տիրոջ հրամանովն եկար։
«Շատ մարդիկ ինձի, երբեմն խօսքով,
Գանգատ տուեցին երբեմն գրով.
Բայց և բոլորի վատաբանութիւնք
Անպտուղ եղան քո պատճառներով....»

«Դեռ խօսքը կխօսար, դռները բացուեց,
Աւազլուխ մի մարդ մեր ներս մօտ վազեց,
Կատաղի դէմքով նայեց չոքածին
Եւ նորա կողքին ինքն եւս չոքեց։
«Հայր իմ ալէզարդ, ծերունի հայկազն.
Խիղճ իմ ստիպեց, որ ուղիղն ու պարզն
Յայտնեմ ձեր առաջ, որ այսքան տարի
Պահել չկարացայ, գիտէ տէր Աստուած....
«Բայց նախ խոստացիր, հա՛յր իմ հայազգի,
Տալ իմ մարմինը կերակուր շների.
Կամ ի կախաղան, նշաւակ մարդկան,
Միայն թէ չտալ նուիրած հողի։
«Ծերունի մարդու....այս իմ պիղծ ձեռներ
Թաթաւեց արեամբ այս չոքած ընկեր.
Վա՜յ իմ տարաբաղդ գլխին յաւիտեան.
Չկան ինձ ոչ այս, ոչ այն տեղ յոյսեր։
«Թոյն խառնած նռան հետ կարմիր ջրի
«Նորա խորհրդով սուրբ ծերին տուի....
«Նա միւս առաւօտ չկար երկրումըս....
«Նորան այն մահով մեծ փառք հասուցի։
«Բայց, արձակ մեր մեղքն խոստովան եղայ,
Մեր դատաստանը ձեր կամացն կայ.
Տուէք երկուսիս արժանի պատիժ
Ինձ և Գիրասին, բնութեամբ սատանայ։»
«Յետոյ դադարեց. խորին լռութիւն
Տիրեց սրտերին, դիմաց ամենուն,
Ապա ալէզարդ ծերը բարկութեամբ
Գոչեց բարձրաձայն, յայտնի բոլորուն։
«Մահու դու որդի....ա՜յ դու մարդասպան,
Անխիղճ, անհոգի, բաժին դիւական.
Ինչպէս իշխեցիր ձեռներդ յուդայի
Թաթաւել մի մեծ մարդու մէջ արեան։»
«Այս խօսք ընթացքը յանկարծ հանդարտեց,
Ջերաջերմ արտօսր երեսին փայլեց,
Իբրև մարգարիտ թափուեցաւ գետին.
Դարձեալ առաջին բարկութեամբ ասեց։

«Իմ արդար դատից, չես երբէք պրծնիլ.
Զանազան կերպով հարկ է քեզ տանջուիլ.
Անիրաւ, անգութ, անխիղճ դիւածին,
Քանի կենդան եմ, ինձնից չես փրկուիլ,
«Իսկ այն աշխարհում ծերունու....և քո,
Դատաստանն կայ ձեռին Աստուծոյ.
Նզովեալ լինիս, դաւաճան ազգի....
Վայեն, Մեհրուժան, դահիճ արդարոյ.....»

Վահունի. Հիւսիսափայլ, 1861 Թ. և. Ե. 405—409։

## 117

### Գերեզմանք Հայոց։

Լուռ և տխուր դաշտեր գեղեցիկ
Քաջ որերոյն աճիւններով դեռահեղ,
Ուր սուրբ շիրմաց ծածկէ տեսիլ խաղաղիկ
Զարմանազան հազար ծաղիկ գունագեղ։
Աւա՜ղ Հայոց արեւուն
Աւաղ Հայոց քաջերուն,
Որոց կրեմք մեք արիւն,
Օրհնեա՜լ է Հայք, Ձեր անուն։

Ո՛ վեհ նախնեաց, կտրիճ եղբարց սուրբ շիրիմ
Ձայն մը տուէք, որ մեր արտասուքը ցամքի
Անկ մը հերիք ցաւած սրտիցս, որ բերկրիմք
Մեզ ժըպտեցէք շիջեալ աստ Հայրենի։
Աւա՜ղ Հայոց և այլն։

Բացէք, բացէք մառմառ սաբօրք սրբակիրք,
Ցուցէք քաջացն ոսկերոտիքն համբուրենք
Ու համբուրէ մեր և սգաւոր Հայրենիք
Մեք հարազատ որդիքս ողբամք ու երգենք։
Աւա՜ղ Հայոց և այլն։

Գետք հայրենիք քանի ի ձեզ կան ալիք
Ու դուն, լուսին, քանի կանդեղդ վառ մնայ

Դուն ալ, տխեակ քնարի ունիս դայլայլիկ
Երգեցէք զՀայն, լքեալն սերունդք ապագայ:
Ուա՜ղ Հայոց և այլն:

Նշան Զօհրապեան:

---

118

Հայրենիք:

Թէ իմ Հայրենեաց քնար սգաւոր
Հեծէ տխրագին՝ իմ հոգիս է այն.
Թէ նորա բեկբեկ թելեր փշտաւոր
Խօսի ողբաձայն՝ իմ սրտիկս է այն:
Թէ Հայ մուսային սրտառուչ նուագ
Դեռ կ'եղերերգէ՝ հառաչանքս է այն.
Թէ Հայաստանիս սև բաղդին հագագ
Լայ աղեկտուր՝ հեծեծանքս է այն:
Թէ իմ Հայրենեաց կիսամեռիկ շունչ
Դեռ լսի տխուր՝ իմ ողբերս է այն.
Թէ լուիկ մնջիկ հեծէ անշըշունջ.
Ահ անկարեկիր իմ լալիքս է այն:
Եւ Հայկայ փառաց յօժար ողբերգուն
Հարազատ լացողն իմ ձայնիկս է այն.
Զորս հազար տարուան պարծանած դարուն
Արձագանգ տուողն՝ աղաղակս է այն,
Իմ Հայաստանիս ցաւերուն հատոր
Ահա այս մաշած իմ կուրծքս է այն.
Եւ սև թերթերուն էջ սրտակտոր
Արտասուք գրուած՝ իմ աչիքս է այն:
Թէ բանաս կարդաս արիւնոտ դաշտեր
Վարդագոյն ներկուած՝ իմ կողերս է այն.
Թ'աչքէ անցընես շամփրած նիզակներ
Մահահոտ ցցուած՝ իմ թիկունքս է այն:
Թէ Հայկ և Արամ, Վարդան, Վահաններ
Ինկած տեսնես՝ իմ ուժըս է այն.
Թէ ղէնք, թէ զրահ, թէ սուր, թէ սաւաւք

Փշրած կոտրած՝ ոսկորներս է այն։
Թէ արեամբ ներկեն պտուղք եդեմին
Նշխար քաջերուն՝ իմ բիբերս է այն.
Թէ քաղցր ու ամբիծ ալիք Եփրատին
Լեղի են դարձեր՝ արտասուքս է այն։
Թէ վճիտ գետերն, աղբերքն արծաթի,
Լալիք առուակեն՝ երակներս է այն.
Թէ Տիգրիս, Գեհոն, Փիսոն մռնչեն՝
Թէ պղտոր գնան՝ իմ արիւնս է այն։
Թէ սառնամանիք ձմռան փգաբեր
Լեռներն է պատեր, իմ գագաթս է այն,
Եւ քաղցրիկ զեփիւռն անուշակ հովեր
Ցրտագին փչեն, իմ շնչիկս է այն։
Թէ վտակ վտակ ցողէ գլիշատակ
Ծայս տրտմավաստակ, աչքերըս է այն.
Թէ սրտաձայնիկ երգէ զՀայաստան,
Կանչէ զՀայաստան՝ անկեղծ սէրս է այն։
Թէ մթին խորշերն ու ձորեր լռեն,
Աւերով ծածկին, մենաստանս է այն.
Թէ ողբ կը կարդան վայրերն եդեմին
Ճնշած լերդերուս՝ արձագանքն է այն,
Եւ Հայաստանիս հողերը ուխտիւ
Պինդ սիրով գրկողն՝ իմ ձեռքերս է այն.
Թէ կը համբուրեն կաթոգին խնդիւ՝
Ահ մայրակարօտ շրթունքներս է այն,
Եւ Հայոց լերանց ցուրտ շուքերուն տակ
Ընկած տապարագդ՝ իմ ճակատս է այն.
Մասեաց սուրբ քարերն իւր բարձն ու պսակ,
Դրած սգաւոր գլուխիկս է այն։
Եւ կիսակործան տաճարն Հայրենի
Սև սուգ է պատեր՝ տաղաւարս է այն,
Իւր շիջելավառ կանթեղ դեռ հիւծէ
Նուաղ առ նուաղ՝ իմ յոյսըս է այն։
Իւր տխուր նստեր մազերն են ծածկեր,
Իւր սեւուկ աչքեր՝ սիրականս է այն.
Ձեռքերն 'ի ճակատ կռնակն 'ի հողեր,

Յուսով կռթընէր՝ Հայաստանս է այն,
— Գերեզմանս է այն։
Ու երբ տեսանեմ զիմ հէգն Հայաստան
Ի գահ իւր փառաց՝ իմ բաղձանքս է այն.
Յայնժամ թող մեռնիմ յիւր ծոց մայրական
Զիմ վերջին շնչյս միակ ուխտս է այն։

Սիմոն Հայկ Մ. Գէլէկեան։

119

Յերկրորդ տարեդարձ ազգային սահմանադրութեան
1862, մայիս 24։

Ողջո՛յն քեզ ո՛ դաշտ և սիրուն ափունք,
Ուր այսօր սիրով խմբին Հայկազունք.
Հարց Հայաստանեայց սրբազան աճիւնք
Խնդո՛ղ ցնծան Հայոց ի սուրբ միութիւն.
Հէգ Հայաստանի եմք մեք զաւակներ,
Հայեր ըղձեղ հո՛ս, հո՛ս կոչողն է սէր
Նու Հայրենիք, սուրբ Հայրենիք։

Հրեշտակն Հայկազանց
Հոս կը սաւառնի.
Յառա՛ջ, պսակաց
Ճակատք արժանի։
Սահմանադրութի՛ւն,
Սահմանադրութի՛ւն,
Յորչափ մընայ երկիրս և դու կեցցե՛ս։
Ո՛ռ Հայրենեաց սէր
Որդիք անձնանուէր
Ի շինութիւն տանն Հայկազանց կեցցե՛ն։
Ոգին միութեան
Որ զմեզ միաբան
Հոս գումարեց սիրոյ հանդէս կեցցէ։

Նշան Զօհրապեան։

120

## ՈՀ յիշեցէք զՀայաստան։

Յորժամ յազգային համախումբք ի տօն
Սիրտք առ սիրտ հըպեալ, յաղօթս, յիղձ եւ ձօն,
Ոգիքդ ի հըրճուանս եւ ի սէր եռան,
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ սըգաւոր կարկամին շըրթունք,
Կամ գետայորդոր պաղպաջին աչկունք,
Յորժամ սիրտ լըքեալ հեծեծէ անձայն՝
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ ըզնորեկ ծիծռան լըսէք ճիկ՝
Պանդըխտին անոյշ քան բնաւ դայլայլիկ,
Եւ գարնան ի սփիւռ աւետիք գընան՝
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ ըմպէք ջուր՝ որ ոչ հայ յերկնից,
Եւ ոչ յԵրասխայ գըլեալ սառն յուղխից;
Կամ ոչ բըխեալ սուրբ յաղբերց Իննակնեան,
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ հեշտաբար շընչիցէք սըղոխ՝
Որ ոչ անց ընդ ձեր հայրենախառն հող,
Կամ վարդ՝ որ ոչ հարց փըթթեալ ի տապան՝
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ լուսացայտ յայգն ըզսար դիտէք
Կամ զըստուեր լերանց ձըգել ընդ երեկ՝
Պանդո՜ւխտք, որ Մասեաց չէ ստուերն, ու արեւան՝
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ ոք խօսի ձեզ զիւր հայրենեաց,
Եւ սիրտն ի նորուն բաբախէ փառաց,
Օտարամեծար մի շըլանայք յայն.
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յորժամ հայրենի յատակին ի տես
Հալի ոք անձկաւ, կարդայ սըրտակէզ,
Ասէ՝ ՀԱՅՐԵ՜ՆԻՔ զի՜ քաղցր են մարդկան...
Ո՜Հ, յիշեցէք ըզՀայաստան։

Յո՜ւշ երբ զառագաստ ոք պարզէ յայն դեհ՝
Յորժամ անջատեալ՝ ուր փո՜ւս եմք նըժդեհ.
Եւ մաղթէ զերկինս՝ անդ դիպել մահուան,
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան։
Իսկ յորժամ ի ձեր յերկրէն ոք օտար
Դարձ ընդ հարց ձերոց առնէ սուրբ նըշխար,
Երջանիկ քան զձեզ, որդի՛ք տըրտմութեան....
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յո՜ւշ, ո՞հ, յո՜ւշ յաւէտ երբ ոք ձեր եղբայր
Ձեզ պանդըխտակցել գայ լալեացդ ի վայր,
Մի՛նդ նա արկանել զաչըս ցըրտութեան,
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան։
Ո՜ն, փարէք տարփմամբ, տուք գիրկս ըզնովաւ,
Երանի՛ ում մեր՝ հայրենիս ծընաւ,
Այր բիւք յԵդեմին արեւ փըթթեցան,
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան։
Ա զնոյն երկնիւք՝ հարց խօսեալ ըզբարբառ,
Սըստեալ ընդ կըննձնեաւն՝ ուր առնուն դադար,
Եւ տըւեալ համբոյր յոր նոքայն հըպան.
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան.
Ար ի նոյն կանխեալ սուրբ եկեղեցիս
Ընդ ճակատ՝ նոցուն յարտասուաց տեղիս,
Եւ զխոր կամարօք՝ լուաւ ձայն ըզհեծման.
Ա՜հ, յիշեցէք ըզՀայաստան։
Յո՜ւշ, ո՜հ յո՜ւշ...հարցէք ո՞ւր է Հայաստան.
Ուր վայրէդ յոր կեայք՝ քանի՛ բացական,
Ա՜հ, բայց ուր սըբռէդ նոյնքան հեռաստա՞ն...
Հա՜յք...դուք յիշէ՞ք ըզՀայաստան։

Խորէն վ. Գալֆայեան։ Մասեաց Աղաւնի, 1858 Թ., Գ տարի, Մայիս, Ե. 117—118։

— —

## OH RAPPELEZ-VOUS L'ARMÉNIE.

(Թարգմանութիւն 120 Համարի)։

Quand rassemblés pour vos fêtes nationales
Les cœurs touchant les cœurs, au milieu des prières, des vœux et des dons,

Quand vos âmes bouillonnent dans l'ardeur de l'amour et de la joie,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand les lèvres en deuil se serrent,
Et que les yeux resplendissent sous des torrents de pleurs,
Quand le cœur abattu soupire en silence,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand vous entendez la voix de l'hirondelle à son retour;
Cette voix plus douce à l'exilé que tout autre chant,
Et que partout se répand l'heureux présage du printemps,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand vous buvez une eau qui n'est pas tombée du ciel arménien
Ou que n'ont pas roulée les flots cristallins de l'Araxe,
Ou qui n'a pas jailli des saintes fontaines d'Innaghnian.
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand vous respirez un zéphyr doux au cœur,
Qui n'a point effleuré le sol mêlé des cendres de vos ancêtres,
Ou la rose qui ne s'est point épanouie sur le tombeau de vos pères,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand vous voyez les pics resplendir éclatants au soleil du matin,
Ou les ombres des monts se répandre vers le soir,
O! pèlerins, si ce ne sont pas les pics et les ombres de l'Ararat,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand l'étranger vous parle de son pays,
Et que son cœur bat au souvenir de ses gloires,
Ne vous laissez pas éblouir, n'en faites pas trop grand cas,
Oh! rappelez-vous l'Arménie!

Quand à la vue de sa terre natale
Il se consume en ardents désirs, que son cœur brûlant l'appelle,
Qu'il vous dit combien il est doux d'avoir une patrie....
Oh! rappelez-vous l'Arménie!

Rappelez-vous, quand le voyageur déploie ses voiles vers ces régions
D'où l'homme éloigné reste toujours comme un exilé même au sein
(de la gloire,)
Et qu'il prie les cieux de lui faire trouver la mort en ces lieux,
Oh! rappelez-vous l'Arménie!

Mais quand de votre terre natale quelque étrenger
Revient avec des restes sacrés de vos pères,
Plus heureux que vous, ô fils de douleur...
Oh! rappelez-vous l'Arménie!
Rappelez-vous, oh! rappelez-vous surtout, quand un de vos frères
Vient dans votre séjour de larmes pour partager votre exil,
Ne jetez pas sur lui des regards d'indifférence,
Oh! rappelez-vous l'Arménie!
Embrassez-le avec transport et jetez-vous dans ses bras;
Heureux! celui qui est né dans la patrie,
Et dont les paupières sont écloses au soleil d'Eden,
Oh! rappelez-vous l'Arménie!
Heureux! celui qui a parlé la langue de ses pères sous le même ciel qu'eux,
Qui s'est reposé sous l'orme où ils reposent,
Et qui a baisé tout ce qu'ils ont touché,
Oh! rappelez-vous l'Arménie!
Heureux! celui qui, matinal dans les mêmes temples,
A imprimé son front sur les traces de leurs larmes
Et qui a entendu leurs soupirs sous la profondeur des voûtes,
Oh! rappelez-vous l'Arménie!
Rappelez-vous, oh! rappelez-vous... demandez-lui où est l'Arménie
Et combien elle est éloignée des lieux où vous vivez?
Hélas! serait-elle aussi loin de vos cœurs?
Arméniens! Vous rappelez-vous l'Arménie?...

## 121

Աղօթք վասն հայրենեաց։
Առ. արժանապատիւ Սարգիս Վ. Թէոդորեան։

Ա.

Տէր, կեցո ըզՀայաստան,
Լուր զորդւոցն առ քեզ աղերս.
Տէր, կեցո ըզՀայաստան,
Յարո՛ զնա նոր յիւրն աւերս։

Յե՛րբ, Աստուած Հզօր, Աստուա՛ծ Գրիգորի,
Աստուած զոր կարդամք ի խորոց սրտի,
Թողուցո՞ւս զի զմեր Հայրենիս Թշուառ
Սուր, Հեռ եւ Հերձուածք առնուցուն յաւար։

Բ.

Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Լուր զորդւոցն առ քեզ աղերս.
Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Յարո՛ զնա նոր յիւրն աւերս։
Տէ՛ր, օտարք անգութ այլն զմեօք առնեն,
Եւ զսրբութեամբք մեր Թշնամանեն.
Բայց մեք երբ ի քոյդ հովացաք ի սէր.
Մէ՛ եւ ի մահու զքեզ պաշտեմք իստուեր։

Գ.

Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Լուր զորդւոցն առ քեզ աղերս.
Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Յարո՛ զնա նոր յիւրն աւերս։
Տէ՛ր, Տէր, դու զմերս օրհնեա զուղղութիւն,
Որ ի Գրիգորի սրբեալս եմք արիւն.
Դու զնորուն պահեա հաւատս անսասան,
Եւ զԱթոռն իւր սուրբ ի Հայս յաւիտեան։

Գ.

Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Լուր զորդւոցն առ քեզ աղերս.
Տէ՛ր, կեցո զՀայաստան.
Յարո՛ զնա նոր յիւրն աւերս։
Իբր զգարնանի ցօղ ի խիրտ եղբարց
Ծաւալեա զսէր, Հեղ զոգի մեր Հարց,
Եւ ի ճահ լուսոյ նոցա տար զմեզ,
Իբր զՀօտ յարօտըս քո ի Սյադէս։

Ե.

Տէ՛ր, կեցո զՀայաստան,
Լուր զորդւոցն առ քեզ աղերս.
Տէ՛ր, կեցո զՀայաստան.
Յարո՛ զնա նոր յիւրն աւերս։

Ա՜հ, շատ իսկ աղէտք ծանրացան ՚ի մեզ,
Շատ իսկ մահ ՚ի մեզ հաշուէ ողջակէզ...
Տէ՛ր կենաց, յերկիր մեր, անբա՛ւ տապան՝
Որկ ըղձունչդ եւ կեանս տացէ Հայաստան:

Խորէն վ. Գալֆայեան: Մասեաց Աղաւնի, Դ տարի. 1858, յունիս, ե. 141—142

## 122

### Երգ միութեան:

Եղբա՛յր, մինչև ե՛րբ՝ այսպէս լուռ տրխուր,
Զերթ թշուառ պանդուխտ հեծեծես վի՛շտ, վի՛շտ.
Մե՞րն ու գո՞ւթ ազգիդ խանձէ սիրտըդ միշտ.
Գիտեմ... արդ ցրուէ ցաւդ. զուարթ ո՛ն ձեռքդ ինձ տուր.
Ա՛ռ քեզ նոր ողջոյն Սահմանադրութիւն,
Զոր շնորհեց Հայուն թուական վաթսուն:
Սիրենք Ազգութեան կեանքն ու միութիւն,
Սիրենք, որ ապրի՝ Սահմանադրութիւն:

Այն անմահ օրն, երբ մեր սրտերուն մէջ,
Սահմանադրութեան ոգին արծարծեց.
Եւ մինչև դաշտերն անոր փառքն երգեց,
Ծեր, երիտասարդ, մանկտին յել և էջ.
Այլ ո՞ր չազգի ձեռք դիմէ զայն քնջել,
Հայուն աներման անգութ, անտարբեր:
Սիրենք Ազգութեան....

Հերիք չէ՞ լուսոյ դէմ ապրիլ զերթ կոյր,
Անտես Վարչութեան Ազգի մը թշուառ.
Համազգի անուամբ պառակտել իրար,
Իրաւանց ձայնին դէմ մընալ միշտ խուլ,
Տեսնել սա դարուն փոյթն, ընթացքըն յառաջ,
Դեռ բիրտ կամաց հետ յամել անամաչ:
Սիրենք Ազգութեան....

Մոռնա՛նք երեկուան ոխն ատելութիւն,
Մերժելով վըրէժն պաշտենք ազգի սէր,
Մարին Հայ սրտէն սև կըրից քոցեր,

Գրկընդխառն. համբոյր, և ուխտ հաշտութեան,
Ի փառս մեր յուսոյն Սահմանադրութեան,
Որ պաշտպանէ մեր հաւատքն, ազգութիւն։
Սիրենք ազգութեան....

Ներիք չէ՞, որ ծառը ըլլանք օտարին,
Ուշ չէ, որ կզգանք ազգութեան պարտքեր.
Երկինք ձայն կուտայ, մենք դեռ չենք լսեր,
Այլ վըրէժ ձայնենք եղբօր ականջին,
Մէկ արեան կաթիլ, ծնունդ մէկ հայրենեաց,
Չ'ուզենք հնազանդիլ ազգիս օրինաց։
Սիրենք ազգութեան....

Վկա՛յ են մեզի մօտ օրերն անցեա՛լ,
Թէ քանի անգամ ազգի բաժանում,
Հայ երակներու մէջ լեցուց դառն արիւն,
Փորձուածը կրկին փորձողն է յիմար.
Ո՛ն, սրբենք այն խորթ աւուրց արատներ,
Որ մեր ազգութեան տունն ու տեղըն աւրեր։
Սիրենք ազգութեան....

Աստուած Հայութիւնն աշխարհի վըրան,
Որոշ ժողովուրդ մ'ազգի անունով.
Ընտրեց, որ կ'ապրէր ազատ օրէնքով՝
Իրեն ազգութեանն յարմար և պատկան,
Եւ զոր բաղդ գողցուց գըժխեմ ձեռքերուն,
Պէտք չէ՞ արդ անոր տալ կենդանութիւն։
Սիրենք ազգութեան....

Միլիոնաւոր Հայ ձեռքն ի ծնօտ մինչ ցարդ,
Սպասուէր միակ Սահմանադրութեան.
Եղջոյն տալ դարձեալ և երրորդ անգամ,
Սիրելով անոր սկզբունքն հաստատ.
Արդ ուրախութիւն, անցաւ փոթորիկ,
Որ սպառնացաւ անձրևել սաստիկ։
Սիրենք ազգութեան....

Մինչև երկնից տակ ապրի ազգութիւն.
Ճշմարիտ Հայերն օրհնեն յաւիտեան.
Հազար ութն հարիւր վաթսուն թուական,

Ուր սովրեցաւ մեր ազգին Վարչութիւն
Օրինօք գործել և հաստատ հիման
Վըրայ զետեղել Հայ պարտուց պայման։
Սիրենք ազգութեան...

Ո՛ն արդ, ո՛վ Հայ կըղեր, աւուրն ականջ տուր,
Հաւատոյ դրօշակ ձեռքդ և սուրբ Խաչն յոյս,
Սիրոյ խոստումներ քանդակածի կուրծքըս.
Քարոզէ ժողովուրդդ որ գընայ յառաջ,
Ձեռք տուր ազգային բարեկարգութեան,
Գիտցի՛ր, որ պաշտօնդ է պարտք սրբազան։
Սիրէ՛ ազգութեան....

Ազնուական Հայ լսէ ժողովուրդին
Որ պատրաստ յարգել քեզ միշտ իբրև հայր.
Ինկո՛ւր ազգութեան մէջ ըլլանք եղբայր,
Ձայնակցէ՛, ո՛վ մեծդ, փոքրերուն ձայնին,
Հոն է քու պատիւդ, հոն քոյդ ճոխութիւն,
Որ պատմութեան մէջ տան անմահութիւն։
Սիրէ՛ ազգութեան....

Հայ երիտասարդք ցրուենք այն խորհուրդ,
Զոր մեր դաշտին մէջ սերմանեցին շուտ.
Ապագան այնպէս բարօրենքի փոյթ,
Ուր չար դրացիներ չըգտնեն յագուրդ.
Ասկէց ալ յարմար օր կըլլա՞յ Հայուն։
Ճ՛անչնալ Իրաւունք. Օրէնք՝ Ազգութիւն։
Սիրենք ազգութեան....

Ներսէս Մեզպուրեան։

---

## 123

Զծով չափէ թո՛ղ գիտուն,
Զերկին դիտէ իմաստուն,
Թո՛ղ սիրաբեկ սիրտ դատարկ
Փրփրներու վրայ ակնարկ
Անյոյս հալի և գոչէ,
Թէ կեանք մեր այս ոչինչ է։

Թո՛ղ մարմնասէր, լի ահով,
Տառամի վտանգով,
Թո՛ղ անզգայ ստոյիկեան
Տեղաւորուի իբր արձան։
Ես ձեր սիրով հայրենիք,
Բարեկամներ, ընտանիք

Յափշտակեալ կը մոռնամ
Ալիք, անդունդ, մահ անգամ։
Չոր այս տախտակ, որու վրայ
Զայս երգ գրեմ ես հիմա,
Ընտանելի հեշտութեան
Տեղ կ'երեւայ յայս վայրկեան։
Հայրենիքի դաշտ և սար,
Երկինք կապոյտ, արեւ վառ,
Հոն կը տեսնեմ. և անդէն
Կը համոզուիմ թէ անդ են
Եւ կեանք և սէր ճշմարիտ
Ի'երանութեան մարգարիտ։
Հեռի անկէ մարդ ունայն
Կը թափառի յերկիր լայն
Բարօրութիւն խնդրելով.
Բայց կը գտնէ վիշտի բով։
Ա՛ հայրենիք ի քո յուշ
Հով մը կ'զգամ շատ անուշ,
Եւ մանկութիւն իմ ահա
Ծաղիկներով կ'երեւայ։
Կ'առոյգանամ և ոգի
Կ'առնում շունչէդ կաթոգի։
Փութա՛ շոգի, հով շարժէ
Ժամ մը առաջ գանձ կ'արժէ
Հասնիլ, ըսել. «քեզ բարեւ
Հող որ տըւիր ինծ արեւ»։

Ց. Ոսկանեանին կը համարուի։ Արեւմուտք, 1859 թ., Ա տարի, № 4, փետրվարի 15.

---

124

Երգ 'ի դէմս քաջին Վարդանայ։

Հայրենասէր Արամեանք,
Զի՞ կայք 'ի քուն ընկղմեալ,
Բացէք զաչս ձեր հոգեկան,
Տեսէք զօրս ձեր ժամանեալ։

Ո՞ւր են փառք, ձիր ձեր նախնեաց,
Ո՞ւր են պատիւ վեհ արանց,
Որք զաշխարհ Հայաստանեայց
Լցին փառօք դիւցազանց։

Յառաջ մատիք ինձ լսել,
Ճառաւիղք քաջին Հայկայ,
Եւ կամիմ ձեզ արդ պատմել
Զազգասէր գործ Վարդանայ,

Որ զգլուխ իւր կենօք չափ
Եդ 'ի փրկանս իւր ազգի,
Եւ կընքեալ զայն իւր արեամբ՝
Եղեւ փրկիչ հայրենի։

Սուրբ խաչ փայլեաց Փրկչական,
Հոգւոց ազգիս Հայկական.
Պահեա զմեզ Տէր Աստուած
Ի՛ աշխարհիս փորձանաց։

Լուսաւորեաց Հայաստան,
Լուսով խաչին փրկչական.
Հնչեա աշխարհ ամենայն
Զփող մեծի աւետման։

Բարձրացիր արդ Արարատ,
Պճնեալ ծաղկօք զքո՛դ գագաթ,
Ազգիս Հայոց խնդութեան,
Լեր դու վկայ յաւիտեան։

---

## 125

Պուլպուլն է հագեր 'ի յոտքն կօշիկ,
Զվարդ կու փընտրէ սիրով անուշիկ,
Զայն է արձակեր, կուկանչէ՝ վարդ, վարդ, վարդ,
Դու զուարթ ես պուլպուլ, գուն վարդ։
Յայնժամ խընդութեամբ այգին մըտանէ,
Զվարդըն պայծառ ծաղկեալ գըտանէ։ Զայն է, եւ այլն,
Պուլպուլն է բազմեր 'ի վարդին քովուն,
Դանդաղ կու առնէ 'ի ձեռաց հովուն։ Զայն է, եւ այլն։
Յայժամ նըմա վարդն զայս պատասխան տայ,
Թէ սարսեալ դողամ, երբ հովն կու գայ։ Զայն է, եւ այլն։
Կարապետ դըպիր, որ ծառայն մեղաց,
Զպուլպուլն ընդ վարդին սակաւ մի գովեաց։ Զայն է, եւ այլն։

---

## 126

Գողթան երգ։

Արի արքայն արքայից
Արտաշէս մեծ վերակարգեալ

Գուցն կամաւ 'ի յերկինս.
Ազչարեալ ընդ շատ մահուանս
Եւ նախածիրս, աւէ Արտաւազդ.
Մինչ դու գնացեր եւ զերկիր
Ամենայն ընդ քեզ տարար.
Ես աւերակացս 'ի վեր
Որպէս թագաւորեմ:

Եւ արքայից արքայն սաստեալ
Շարժէ զգլուխն ահռելի
Վրէժխնդրութեամբ անիծից,
Եթէ դու յորսըս հեծցիս,
Յազատ 'ի վեր 'ի Մասիս,
Ակնարկեալ առ Արտաւազդ,
Զքեզ կալցին քաջք, տարցին
Յազատ 'ի վեր 'ի Մասիս,
Անդ կեցցես եւ զլոյս մի' տեսցես:

ԶԱրտաւազդ, մանուկ մատաղ,
Վիշապազունք ցանկացան,
Գողախիժեալ դեւ դժպհի
Եդեալ փոխանակ մանկանն
Աժդահակայ կանանց զարմ
ԶԱրտաւազդ մանուկ մատաղ
Կախարդելով կախարդեաց,
ԶԱժդահակայ կանանց զարմ
Արտաշէս բազում չարչարեաց:

Այր գեղով արքայ Արտաւազդ,
Եւ սիրէր զգնեբրուս
Եւ զերգս գուսանաց.
Եւ հազարք էին նորա հարճք
Եւ կանայք նազելիք,
Աշտազուարճ ձըգեալ կեանս
Ընդգասէր վավաշութեամբ.
Գեղապանծ արքայն Արտաւազդ
Յառոյգ տիս եղեւ կենազրաւ:

Զարի արքայն Արտաշէս
Ընծեաց հայրն Արտաւազդ,
Մինչ յանհին ձիավարեալ,
Զիշխանայրիս եւ զկինն
Որսալ զակամբքն Գինայ,
Զարի արքայն Արտաւազդ
Երիվարաւն ընդ վայր յած
Խորատուզեալ գեւք. դժպիհ
Արգելին մի' զլոյս տեսանել:
Երկաթի կապեալ շղթայք
Մատակապատիժ յայրի անդ,
Շանց երկուց հանապազօր
Շղթայն կրծել ատամնակեր,
Զի աշխարհի տալ վախճան
Թէ ելանէ Արտաւազդ,
Դախեցէք, դարբինք, կռանաւ.
Զսալն հարել կռանաւ.
Զօրացին շղթայք Արտաւազդայ:

---

## 127

### Երգ Գողթան:

Յուլունան Շամիրամայ,
Յուռութք յուլունան Շամիրամայ.
Յուռութք 'ի ծով ծածանէին,
Ծածանէին 'ի ծով ծիրանի —
Յուռութք 'ի ծով ծիրանի
Ծիծաղախիտ ծածանէին:
Յուլունան Շամիրամայ,
Յուռութք յուլունան Շամիրամայ,
Ծածանէին 'ի հով զովարար,
Ծածանէին 'ի ծով ծիրանի
Գինակք 'ի հով հիւսիսոյ
Միրապատար տարուբերէին:
Յուլունան Շամիրամայ

Մանկոյթք յուլունան Շամիրամայ,
Մանկոյթք զստինան սքօղէին —
Սքօղէին յաշաց պատանեկաց,
Մանկէին յաշաց պատանեկաց
Յաշաղելով զստինան սքօղէին։
Յուռութք յուլունան պատանեկուհւոյն
Սլրունք յուլունան Շամիրամայ
Սլրունք կիսեալք քօղարկէին —
Քօղարկէին 'ի ծոց սպիտակ,
Սլրունք 'ի ծոց սպիտակ։
Պատուածովք քօղարկէին։

Յուլունան Շամիրամայ,
Ի սպիտակ ծոց Շամիրամայ
Խընձորք անոյշք բուրէին,
Բուրէին խընձորք սպիտակք,
Խընձորք 'ի ծոց արքայուհւոյն,
Քաղցրանոյշ սփռէին բուրումն
Զանոյշ բուրումն տայրին։
Յուլունան 'ի ծոց Շամիրամայ
Ամբառնան բըրգունք ստեանց —
Բըրգունք անուշահոտ նըռանց,
Նըռանց կիսելոց, խընձորոց կիսաբոլոր.
Ընդ զմայլին 'ի հոտ անուշութեան,
Զմայլին քաջիկք Ասորեստանի։
Յուռութք յուլունան Շամիրամայ,
Յուռութք 'ի ծոց արքայուհւոյն
Թուովն զազգն Արարատայ,
Արքեն յաշաց զարտասուս —
Զարտասուս վասն մահու Արայի,
Տեսանեն զկարգոս 'ի գահի։
Ծով է ծոց իւր, ծոց Շամիրամայ,
Յուլունան 'ի ծոց մատաղաւուրց աշխարհակալին
Ամբառնան բըրգունք սպիտակք,
Ամբառնան բըրգունք ստեանց,
Ամբառնան բոլորակք ստեանց

Ի ծով անդ ծիրանի,
Ծածանին ճաճանչք արփւոյն:
Յուռութք յուլունսն արքայուհւոյն,
Գործք ձեռաց զրադաշտաց,
Կառուցանեն զընթացս գետոց,
Շիջուցանեն զթափ նետից, նիզակաց,
Կըթեցուցանեն զսիրտս քաջաց
Ի սէր մատաղաւուրց թագուհւոյն:
Սիրտացուցանեն զերիտասարդս
Ի գեղ երեսաց Շամիրամայ:
Յուլունսն Շամիրամայ
Ծիրանի ծածկոյթք ծածանէին,
Ծիրանիք 'ի ծով տարուբերէին
Յուռութք 'ի ծով ծիրանի,
Յուռութք 'ի ծոց արքային:
Յուռութք յուլունսն յաղթողին
Ձգէին հազարաւորս սրտից,
Քարշէին բիւրաւորս թագակալաց,
Ամենքեան սիրով թագուհւոյն վառեալ,
Ամենքեան վառեալք 'ի մարտ.
Վառէր զնոսա Շամիրամայն սէր.
Վառէր զնոսա ժպիտ շրթանց թագուհւոյն,
Յուռութք յուլունսն նորա:
Յուռութք Շամիրամայ յաչս,
Յուռութք Շամիրամայ 'ի շրթունս
Ձգեաց զաչս եւ տես զլեառն,
Զլեառն, որ վկայ էր քաջութեան Հայկին,
Որ տեսեալ էր զմահ Նեբրովթայ,
Զհարուած երեքթեւեան տիգնին:
Յուռութք 'ի շրթունս հզօր պատանեկուհւոյն
Ժպիտք շարժեն յազգս եւ լեզուս,
Սեպացեալ լեառն փոխի 'ի քաղաք,
Մանեակ 'ի պարանոց լերին,
Գօտի ընդ մէջ լերին
Ածաւ ձեռամբ թագուհւոյն,
Կառուցաւ Շամիրամակերտ:

Յուռութք յուլունս Շամիրամայ
Ժողովեցին անդ զամենայն հրաշակերտս,
Երգունք երկնաչափք բարձրացան
Նըկարել յերեւոյթս ծովուն ծիրանի, —
Ծովուն՝ առ որով կանգնեցաւ կոթող
Կոթող յաղթութեան մարթն Նեբրովթայ
Անդ մնաց փառաւոր անուն յԱղթամար:
Յուռութք յուլունս Շամիրամայ
Ծածանէին 'ի ծով անդ ծիրանի,
Շամիրամ լուանայ զերեսս 'ի ծով անդ,
Շամիրամ աւազան արար զծովն,
Ծածանէին անդ գիսակք հերաց,
Ծածանէին յուռութս ուլանցն:

Ց—Գ. Պատկանեան, Ռափայէլ Պատկանեանի հայրը:

---

## 128

### Բուրաստան:

Ահա, իմ փոքրիկ բուրաստան, ափսոս անջուր մնացիր,
Գարունն մերձեալ ժամանեաց, արդեօք, դու ուր մնացիր,
Միանգամայն քուրձ զգեցեալ, սեւափետուր մնացիր,
Դու 'ի միջի աղբերաց ծարաւի հիւր մնացիր,
Մատահամբաւ, տմարդի, վրիպալուր մնացիր,
Որովհետեւ անթառամ գանձիցը կոյր մնացիր:
Ահա յարեաւ մէկ տիկին, որ Եւրոպ անունով,
Կամէր զքեզ տեսանել անչափ կարօտութիւնով.
Զուր համբաւոյդ եկն 'ի տես քանի պատրաստութիւնով,
Միրամարգով, սոխակով, երգով, ուրախութիւնով.
Չէին բացուած՝ վօրացած ծաղիկներդ պարզ գունով,
Գլխովին անարգվեցար՝ ճարակտուր՝ մնացիր:
Դու Զբաստուղ անունով մէկ պահապան ունէիր,
Նախատինքդ տեսնելով, խոկոյն եղև տարագիր.
Շատ ասութեան Արարչին՝ ո՛ւր իմաստուն, ո՛ւր դպիր,
Եդ մթնազգեաց հագիեդ դու ամաչէ՛ր, դու երկէր.
Ինչ շահեցար նիրհելով. ուրեմն արի՝ արթնացի՛ր,

Լեր այս դարին նմանող, չասեն՝ թէ ղուր մնացիր։
Ախ բուրաստան՝ բուրաստան, տէր ունենաս երանի,
Ծաղիկներդ՝ վարդերդ այդքան անհոտ չ՚լինի.
Վերատեսուչ պաշտպանդ է հաստակաւ պատանի,
Վերոյիշեալ տիկինը գարնան ոգիք շատ ունի,
Խնդրէ յուսով՝ նամակով, խցէ թէ քեզ հասանի,
Շէրին, քոյ անձիդ համար զինքդ դու սուր մնացիր։

Աշըգ Շէրի։

---

## 129

### Երգ մի զօրականի։

(Հունգարացւոց բանաստեղծութիւնից առած)

Խելքըս ու միտքըս արիւնաշաղախ
Օրեր կը սպասեն, որ գան անյապաղ.
Այս օրերն են, որ աշխարհ կը քանդեն,
Այս օրերն են, որ աշխարհ կը փրկեն։
Զէնքի շառաչիւնը թէ երկինք հանէ,
Բայց մեր գրօշակը յաղթութիւն յայտնէ,
Հրճուանք ու պարծանք է այն իմ համար.
Ամէն ցանկութիւնքս կը ստանան կատար։
Արընթաց ձիուս կողերը կը խթեմ,
Որ քաջերի մէջ շուտով հասանեմ.
Հայրենեացս համար չէ՛ ինչ իմ աչքում,
Ո՛չ վէրք, և ոչ մահ, և ոչ գերութիւն։
Թէ սուր թշնամւոյն սիրտըս թափանցէ,
Ունիմ ես մի ոք, որ խոցըս ծածկէ.
Ունիմ ես մի ոք, որոյ նուէրքը,
Հզօր քան բալասմ, կ՚բուժեն իմ վէրքը։
Իսկ թէ թշնամիք գերի ինձ տանեն,
Կը գայ կը գտնէ նա ինձ մութ բանտում։
Երկու գեղեցիկ աչուանքը փայլուն
Կը լուսաւորեն խաւարիս անկիւն։
Թէ մահ հանդիպի պատերազմի մէջ,
Կը. գայ իմ հրեշտակ կենըս սիրտանենչ

Արիւնաթաթախ մարմինքս լուանալ
Իւր արտասուքով նա չի ձանձրանալ։

Մ. Բուզաղեան։ Հիւսիսափայլ, 1861 Թ. № 11. Ե. 403։

---

## 130

### Երգ պատերազմի

թարգմանեալ ի փաստաբանէն Անջելօ Բրոֆֆերիօ, եւ յարմարեալ յեղանակ երաժշտէն Վերտիի՛ վասն զօրաց եւ ազգային պահանորդաց (garde nationale) Իտալացւոց։

Ի շողշողիւն սուսերաց
Զարթեան գանք եւ ժողովուրդք.
Խաղացէք ի մարտ, մարտ,
Ձայն մայրենի կոչէ զձեզ։
Խնդանօթից ի բոմբիւն
Եկէք սլացուք ի վաշտ վաշտ,
Աշտեալ ի սուր եւ սաղավարտ.
Կեցցէ արքայ յԱլպեանց ի ծով։
Յեռիդանէ ի Տիկին
Ի Սիկանիոյ յերկիր Տոսկ,
Եւ ժողովուրդ Լատինեան
Աստուած կամի՛, եւ յաղթեա։
Խնդանօթից ի բոմբիւն, և այլն։
Սավոյացին Բայարդոս
Պալեստրոսի 1) յաղթական,

---

1) «Պալեստրոս» է աւան փոքր մերձ յԱղեքսանդրիա քաղաք Պիէմոնտի, ուր մեծամեծ նահատակութիւնս արար Վիկտոր Էմմանուէլ ընդդէմ Աւստրիացւոց յամին 1859, մինչև ընկալաւ 'ի «զուաւ» կոչեցեալ գաղղիացի զինուորաց զտասնապետի անուն։

Իսկ «Բայարդոս» է գաղղիացի զօրագլուխ ոմն, դուքս Սավոյայ, հռչակաւորն մեծամեծ քաջութեամբք, ծնեալ յամին 1476։ Համբաւաւոր գտաւ 'ի պատերազմունս ընդդէմ Սպանիացւոց 'ի Նափոլի յամին 1503, ազատեաց զՄիլան և զՋենովա, և արար բազում այլ գործս նահատակութեանց, մինչև կոչիլ «ասպետ աներկիւղ և անստգիւտ»։

Մեզ կարապետ արուեստամբ
Յաճաւոր ռազմ խրախուսմիտ:
Թնդանօթից ի ռմբիւն. և այլն:
Ի բարձրագէտ դիտակաց
Գոչէն առ մեզ,—Ո՞վ կայ անդ:—
Իտալիոյ եմք զօրականք
Յազատութիւն եւ ի մարտ:
Թնդանօթից ի ռմբիւն, և այլն:
Ո՞ւր են ափունքս սխրալիք,
Ո՞ւր ճանապարհք ծաղկաւէտք:
Դաշտք եւ ալիք, օդ, երկին,
Օտարականդ, վանեն զքեզ:
Թնդանօթից ի ռմբիւն, և այլն:
Ազգ աւզոնեան բարձր ի բաղդ,
Անվրիպելի է քո աստղ:
Արքայն Վիկտոր երդուաւ զայն,
Զեղեւ նա բնաւ երդմնազանց:
Թնդանօթից ի ռմբիւն, և այլն:
Աղբաշ առիւծն Վենետկեան
Գոռոզաբար ծածանէ,
Գոնդոլավարդ օ՛ն դարձիր
Զերգ քո առեալ ի բերան:
Թնդանօթից ի ռմբիւն, և այլն:
Ի փառաց ցանգ ի շաւիղ
Յիտալական երկիր քաջ,
Սուրբ Մարտինեայ [2]) փայլեսցէ
Փայլեսցէ նոր արեգակն:
Թնդանօթից ի ռմբիւն, և այլն:
Բազմադարեան ըղփափագ

---

2) «Սուրբ Մարտինոս» է աւան փոքր մերձ ՚ի Սօլֆէրինօ, ուր իտալացիք յաղթող հանդիսացան ընդդէմ Աւստրիացւոց յամին 1859. մինչդեռ գաղղիացիք խորտակեցին իսպառ զթշնամին ՚ի Սօլֆէրինօ: Վասն որոյ ճակատամարտն այնր աւուր կոչի առ գաղղիացիս յանուն Սօլֆէրինոյի, և առ իտալացիս յանուն սուրբ Մարտինեայ:

Ի՜նն զօրութեանց հանցէ յանգ.
Վատթարագոյն քան զբիւր մահ
Ե՞ն նախատինք գերութեան։
Թնդանօթից ի ռումբիւն, և այլն։

Բազմավէպ, 1866 Թ. Ե. 299—301։

131

Գրենադերներ։

Երկու գրենադեր գնումէին Ֆրանսիա,
Որ գերի էին Հիւսիսում ընկած [1].
Ու երբ որ եկան, հասան Գերմանիա,
Այն տեղ թեքեցին գլուխներն վաստակած։
Այս տեղ լսեցին այն տխուր վէպքը
Թէ նոցա սիրուն Ֆրանսիան կործանուած,
Յաղթուած ու ջարդուած քաջաղուն զօրքը,—
Ու կայսրը, կայսրը [2]), թշնամուց գերուած։
Նոքա միասին լաց էին լինում,
Այդ արտասուելի լսելով լուրքը.
Վա՜յ, ասաց միւսը. «ինչպէս է ցաւում,
Ի՛նչպէս է այրում, ա՜խ, իմ հին վէրքը»։
Երկրորդը ասաց. «Վերջացաւ բանը,
Ու ես կամէի քո հետ մեռանիլ,
Բայց կին ու զաւակ թողել եմ տանը.
Նոքա առանց իմ կարող են կորչիլ։
«Ի՛նչ փոյթ է ինձ կինս, որդիքս ի՛նչ փոյթ են,
Սրտիս բաղձանքը աւելի լաւ է.
Թող գնան, հա՜ց մուրան, եթէ սոված են,—
Կայսրը, իմ կայսրը գերի տարած է»։
«Կատարի՛ր, եղբայր, իմ մի խնդիրքը,
Եթէ ես այժմ մեռնիմ այս երկրում,
Տա՛ր դէպ ի Ֆրանսիա դու իմ դիակը,
Թաղէ՛ր ինձ այն տեղ Ֆրանսիայի հողում։

1) Ռուսիայում։ 2) Այսինքն Նապոլէօն առաջինը։

«Կարմիր թելից կախ պատուանշանը [1]),
Դնէր դու քո ձեռով իմ քաջ սրտի վրայ
Եւ աջ ձեռս տուր իմ հին հրացանը,
Նաև իմ սուրս կապիր մէջքիս վրայ»։
«Եւ այսպէս պարկած, ականջ կը դնեմ,
Ինչպէս պահապան, գերեզմանումը,
Երբ թնդանօթի որոտը լսեմ,
Նաև խրխնջող ձիերի տոփը
«Եւ կայսրը կ՚անցնէ իմ վերայ ձիով,
Կը շառաչեն սուրեր, և նոյն րոպէին
Իմ գերեզմանից դուրս կը գամ զէնքով,—
Եւ կը պաշտպանեմ կայսրին, իմ կայսրին»։

Հէյնէ գերմանացւոց բանաստեղծութիւնից Թարգմանեց Գ. Բարխուդարեանց։ Հիւսիսափայլ, 1863—1864 թ. ե. 604—605։

— -

132

Զինւորի երգ։

(Թարգմանութիւն)

Զինւորիս երգերը եղբարք լսեցէք,
Աշխարհիս բաները լաւ ճանաչեցէք։
Մէկն ունի մեծ տներ, միւսն գիւղ ունի,
Միայն խեղճ զինւորը ոչինչ բան չունի։
Օրերը թանկագին, փորը միշտ քաղցած,
Տուր ձիուն միշտ գարի, ինքդ կեր չոր հաց։
Թէ քաջ պատերազմես կ՚տան մեծ պարգև,
Թէ ոտքդ կորցնես, կ՚ասեն մնաս բարև։
Ուր գնամ ես մենակ աշխարհքիս վրան,
Ահա՛ քեզ լաւ վաստակ քսան մէկ տարուան։

Գ. Դոդոխեանց, Սիմֆէրօպօլցի, երբեմն աշակերտ Մոսկվայի Լազարեանց ուսումնարանին, ուսանող Դորպատեան համալսարանի։

1) Պատուաւոր լէժիօնի, почетнаго легіона.

## 133

### Տարագիր Հայ զինուոր։

Տարի մ'ալ անցաւ,
Գնաց սահեցաւ,
Ահ դու Հայ զինուոր
Թափառական մնաս,
Երկիր հեռաւոր,
Սուգ անմխիթար
Զքեզ շուրջ պատած,
Եւ դժբաղդ սիրտդ ալ
Յուսաբեկ եղած,
Սուրդ ու քո տէգդ
Ժանգոտ վար դրած,
Եւ զօրեղ արմուկդ
Տիգիդ յեցուցած։
Գիր դու Հայ զինուոր
Քու յոյսդ առ Աստուած,
Վեր վերցուր գլուխդ,
Տես ով է կանգնած,
Առ քեզ կ'ակնարկէ
Ազատիչն Աստուած,
Յաղթութեան պսակ
Իւր Սուրբ ձեռքն բռնած։
Առ ուրեմն նիզակդ
Ոտք ելիր կանգնէ
Եւ սրտիդ խորէն
Անոր փառք խրկէ։
Մ՚հատիր մի բնաւ
Քաջ զինուոր դու Հայ,
Զի այսուհետեւ
Ի՛Ն Աստուած գթած
Ընդ քեզ է յաւէտ,
Յազգասէր մրցանող
Կու տայ քեզ պսակ
Բոլոր ճգանցդ փառք.
Յանկալին ազատութիւն։

Մարտիրոս Ս. Ց. Մեգրէտեանց։

---

## 134

### Մասն Հայաստանի։

(Սանտալուչիա'յի ձայնով։)

Այն աշխարհն պատուական է, ուր բուսնումէ նուռն ու խաղող,
Այն աշխարհն Հայաստան է, յորում գոյ բազում հաղ հանող։

Հայաստանի աշուղներն հայրենիքն զարդարել են,
Ազգասիրութեան սերմերն պտղատու հողում վարել են,
Տեսել են օգնական չկայ, իրանք իրանց դադարել են,
Զանազան նեղութեանց միջին ազգի ծէսն կատարել են,
Անճեմարան՝ անվարժապետ՝ առանց սատար և առանց փող։

Երբեմն աննման ջուրն՝ երբեմն ձու ու տուրն են գովել,
Երբեմն բերդի ամուրն՝ երբեմն էլ սուրն են գովել,
Երբեմն Թշնամեաց հուրն՝ երբեմն ազգի մուրն են գովել,
Երբեմն կեղծիւ համբոյրն՝ երբեմն վատ լուրն են գովել,
Կարծըն ասեմ. ազգի համար եղել են վարպետ խրատող։

Բաղդաւորաց հետ զոմղ արին, անբաղդից հետ լաց ու շիւան,
Խաղաղ վախտն մալ դատեցին, նեղ օրերն ջաւըրմայ տուան,
Մեղքն իշխանքն գործեցին, նորանց վիզն անկաւ չուան,
Հայաստանն քայքայեցաւ՝ ամենայն շահիցն զրկուան,
Ազգի վատ արարմանց մասին նոքա եղեն միշտ ամաչող։

Հայաստանի նշաններն նրանց խրատն է պահպանել,
Թանգի ուրացող Հայերի սկսել են հոգիքն հանել,
Ուրացողքն էլ՝ ուղիղներին փախցրել են և սպանել,
Չի գիտեմ այս չար բնութեան սերմն ով է մեր մէջ ցանել,
Որ այս Թշուառ գրութիւնից չեմ տեսանում մէկ զերծանող։

Ինչ ազգ որ աշուղներ չունի, նա իւր սրտումն սէր չունի,
Ինչ ազգ սրտումն սէր չունի, նա Աստուծոյ պատկեր չունի,
Ով Աստուծոյ պատկեր չունի, նրան բարի գործեր չունի;
Ինչ մարդ բարի գործեր չունի, նրան աշխարհքին խէյր չունի,
Նորա կեանքն քամոյ պէս է, միտքն չարեաց միաբանող։

Պետրոս Մաղաքեան (Սէյադ)։

---

135

Հրաւիրանք Հայաստանի։

Ո՛վ իմ գեղեցիկ բուրաստան,
Բացուիր, բացուելոյդ ժամն էհաս,
Ահա կենսատու օր գարնան,
Բացուիր, բացուելոյդ ժամն էհաս։
Դրախտն Եդեմայ 'ի քեզ կրիս.
Փիսոնն, Եփրատ, Գեհոնն, Տիգրիս.
Այսքան բարեօք էր ո՞չ բերկրիս,
Բացուիր, բացուելոյդ ժամն էհաս։
Թող է Անի, Երուանդաշատ,

Արմաւիր, Դուին, Արտաշատ,
Հրաշքաբերդ, Անի, Վաղարշապատ,
Նացուիր, թագուհելոյդ ժամն էհաս։
Ո՞ւր է Արարատն ախոյեան,
Ո՞ւր է սուրբ տապանն Նոյեան,
Զարթիր, ով տունդ Արամեան,
Զարթիր, զարթնելոյդ ժամն էհաս։
Ներսէսն է [1]) անտես քու տանըդ,
Գլուխ արժանի անուանըդ,
Աէյեաղն լինի ղուրբանըդ,
Զարթիր, զարթնելոյդ ժամն էհաս։

Գ. Տագաթեանց։

136

Ի դիմաց Հայաստանի։

Գահըս փղոսկրեայ էր, ադամանդիւ զարդարած,
Թագըս կ'արժէր աշխարհին, խոշոր մարգարտիւ կարած,
Գոյխոնըս եբենոս, խոր Ափրիկայից բերած,
Սուրըս ընտիր պողպատից, Թիլսիմի ջրով ջրած,
Գալաններըս մարմարեայ, ոսկէզօծ՝ լայնատարած,
Պատատանաններըս՝ իբրև ժամացոյց լարած,
Հարկըս՝ ռամկաց միջին, անաչառ հաւասարած,
Գանձատանըս պարտիքը ժամանակին վըճարած,
Բանակներիս կարգերը իմաստութեամբ յարմարած,
Թշնամեացըս ամէն տեղ քաջութեամբ յաղթահար։
Յանկարծ տեսի աղէքս թունաւորած՝ գալարած,
Բժիշկ չի՛ մնաց՝ հարցրի, չիմացան ցաւիս դեղն,
Ասացին, անծանօթ է մեզ դորա սեռն ու ցեղն։
Մինչ երիտասարդ էի, ես էի փառքն աշխարհի,
Շատ տէրութիւնք հարկ տուին իմ զօրաց բազում տարի,
Ամանց գահ և թագ ետու յատկութեամբ բարերարի,
Աշխարհիս մէջ երկու էր, կամ երեք, իմ համարի,

1) Ներսէս Ե. կաթուղիկոս ամենայն Հայոց, Շահազիզեանց ազգից, Աշտարակցի։

Խաչապաշտ դրացեացըս՝ նման անմիտ յիմարի
Հաւատալով՝ յուսացայ, գլուխըս կպաւ քարի,
Իւրաքանչիւրըն կամեց ինձ որոգայթ հնարի,
Խաբելով՝ իշխաններիս ձգեցին իւրեանց չարի.
Ո՞վ է կարող նախատես լինիլ պատրանաց չարի,
Որդիքըս զիս ուրացան, յոյս կապեցին օտարի,
Վերջն ցիրուցան եղեն, զեռ անհովիւ պաճարի.
Անհաւատարմութիւնն է արատութեանց տըգեղն,
Նովաւ յոյժ շուտ կ'խաբուին միամիտ ու անմեղն։
Այլազգիք՝ տեսանելով մեր անհամաձայնութիւնն,
Քրիստոնէից ունեցած սիրոյ ունայնութիւնն,
Մողեգնաբար խզեցին ազգիս փրկութեան սիւնն,
Հիմնայատակ արարին վանքերիս շինութիւնն,
Քաղաքներըս մոռացան նախնական խնդութիւնն,
Իմ յոյսըս միայն մնաց Սիւնեաց ամուր անկիւնն,
Նրան էլ խախտեց՝ ցրեց Վատակոյ շինութիւնն,
Ամենեւին ջնջեցին ազգիս արտօնութիւնն,
Բարւոյ նշան չի՛ պահել անհաստատ բնութիւնն,
Փառքն կորած մարդոյ ի՞նչ շահ է երկմտութիւնն,
Մի միայն դեղն է նորա ուսմունքն ու գիտութիւնն,
Անարգութիւնն է յատուկ թշուառ վիճակի նեղն,
Դժբաղդութեամբ կ'հալուի զգացող սրտի եղն։
Ո՛վ որ ետես զիս տկար, ինձ վերայ փորձեց սուրըն,
Հպատակքս ցրուեցան, խափանուեց առուտուրըն,
Պտուղք դրախտին դառնացան, անհամեց քաղցր ջուրըն,
Ի միջի ազգիս մեքենայ չարեաց դարձաւ համբոյրըն,
Մինչ ցայսօր էլ չի՛ շիջել ատելութեան վառ հուրըն,
Ազգըս իրան աւերեց, և ոչ թէ Լանգ Թէյմուրըն,
Հազար ցնծութիւն տեսնի՝ էլ չի՛ գնալ տըխուրըն.
Ինքն իրան սեւացրուց՝ ոչ թէ օտարաց մուրըն,
Ինչ պատահի՝ արժան է, ես ի՞նչպէս ասեմ զուրըն,
Մեռ'լի տէրն ո՞նց կուտէ իւր մեռ'լի կերակուրըն,
Ծառայական կերպաւից լաւ է ազատ նաշուրըն,
Սէյաեդ, իմա՛, անզօրին միշտ կ'յաղթէ ուժեղն,
Նետն ե՞րբ փետս կ'տայ՝ մինչ չի՛ լինի աղեղն։

Գ. Մաղաթեանց։

## 137

### Ի դիմաց իւրաքանչիւր հայկազնոյ։

Մեր ամպն այնքան թանձր է, որ ամէն հողմ վանել չէ կարող,
Մեր ցաւը ամենայն բժիշկ լաւ պարզաբանել չէ կարող,
Ո՛չինչ վիճակ փառաւորութեամբ մերին հասանել չէ կարող,
Մեր հացի մէջ աղ չըկայ, ով ուտէ՝ մեզ վնաս կըտայ,
Այն պատճառի համար զմեզ ո՛չ ոք այպանել չէ կարող։
Ո՛վ որ պատմութեան ծանօթ է՝ նա գիտէ մեր քաշած ցաւըն,
Պատմագիրք մեզ խնայելով՝ պատմել են նորա սակաւըն,
Ո՛չ ոք չուզեց ալեաց ձեռքից օգնել՝ ազատել մեր նաւըն,
Ո՛չինչ սրտում Հայոց օգուտ՝ ո՛չ ողորմութիւն կայ, ո՛չ գութ,
Անբաղդութեան բեռը ո՛չ ոք մեզ նման տանել չէ կարող։
Քրիստոնեայք աւերեցին մեզ՝ ո՛չ թէ անօրէններն,
Անօրէնն չէր հասկանում մեր Քրիստոսի սուրբ պատուէրն,
Որ ասում է. ձեր անձանց պէս պիտի սիրէք՝ զձեր ընկերն.
Ո՛վ որ վնաս է խեղճ Հային՝ նա իսկ պատկեր է Յուդային,
Նորա հոգին դժոխքիցն երբեք ելանել չէ կարող։
Հայ չի՛ տեսայ, որ սրտի մէջ սառուցեալ արիւն չունենայ,
Յայտնի բան է՝ արիւն կուլի այն սիրտն, որ սիւն չունենայ,
Թշուառութեան մէջ կուռեայ՝ ինչ մարդ գիտութիւն չունենայ,
Հանգամանքից նկատումեմ՝ հառաչելով վհատումեմ,
Ո՛չինչ առիթ այս վիճակից մեզ շուտ բաժանել չէ կարող։
Մեր ազգի ցաւն եմ արտասվում առանց այլոց փառն ասելոյ,
Մեր խելքից եմ գանգատ անում, որ արժան է բամբասելոյ։

Գ. Մաղաթեանց։

---

## 138

### Առ Հայաստան։

Ա՜խ Հայաստան, Հայաստան,
Ընդէ՞ր կորուսեր տէրըդ,
Եղեր այլոց ապաստան,
Խառնեց փառդ պատկերըդ։

Ո՛չ քեզ պէս բարեպաշտ կար,
Ո՛չ վանքերիդ պէս վանքեր,
Ո՛չ դաշտերիդ պէս դաշտ կար,
Ո՛չ հանքերիդ պէս հանքեր։

Հողըդ պտղաբեր՝ ազնիւ,
Քարերըդ ողջ ակունք են,
Գետերըդ լիքն, անթիւ
Կարմրախայտ ձկունք են։

Լերինքըդ ծաղիկ հագած՝
Իբր հարսնացեալ օրիորդ,
Եղջերուքըդ վաստակած,
Ի՞նչ շահ, որ չունիս որսորդ։

Այգեացդ ամէն մէկն
Իւր դրախտ եդեմական,
Բայց անբաղդութեան տէգն
Խոցեաց լարըդ կենսական։

Թո՛ղ թշնամիք բերկրին
Մեր աչաց արտասուքով.
Յուսամ՝ երկար չի՛ մնան
Նրանք էլ ուրախ հոգւով։

Աստուած ամենագէտ է,
Անսահման, արդարադատ.
Անաչառութեամբ գիտէ
Լաւին լաւ տալ, վատին վատ։

Ես եմ Սէյեադի կինն,
Մաղաթեան տոհմի Զակին,
Հայրենեաց կաթողիկէն.
Հաւատացէք իմ խօսքին։

Տիկին Ոսկի Յովսէփեան Մաղաթեանց, ամուսին Գ. Մաղաթեանցի (Սէյեադի)։

## 139

### Նուէր առ քնար հայկական։

Ողջ լեր քնար ձայն տուր թշուառ Հայաստանի զաւակաց,
Որոնց քաղցր է և սրբազան մեր հայրենեաց յիշատակ;
Հընչէ քնար և թող խայտան ոսկերք Հայոց դիւցազանց,
Լուր տար մեզմէ թէ հոս, հոս, հոս ըսէ՛ ողջ են դեռ Հայք։
Հայկայ պանդուխտ զաւկըներուս կանչէ երգերդ հայրենի,
Թող յաւիտեան ձայնդ անուշիկ հնչէ Հայերուն,
Եւ թէ լսեն ամեն ազգեր եթէ աշխարհըքն ալ անցնի,
Եւ Հայաստան սուրբ Հայրենիք երգէ դուն։
Մենք այն երկրին
Զաւկըներն ենք,
Որուն նմանն
Եւ չկայ։
Երկրին, որուն
Գովքուն եկածն,
Ուրիշին չէ
Պատահած։

140

Բարք եւ վարք օրիորդաց հայոց Արարատեան աշխարհի։

Գլխի մազերը՝ երկու ծամ արած,
Ծամերը ուլունքներով զարդարած,
Ճակատը երկար՝ ոսկի երեսից,
Կապան գոյն զգոյն՝ կերպասից կարած։
Գլխին մախմուր ֆէս՝ աստառը ատլաս,
Մէջքին երծաթ փող՝ ոսկեքէն Շահաբաս,
Օշմաղը բերնին՝ գուլպայ գործելով,
Մարդ կու դառնայ երբ՝ նրան մօտիկ տաս։
Դեռ չի տարածված՝ արևի լուսը,
Երբ որ տղամարդ՝ չերևալ դուսը,
Մեծ զգուշութեամբ՝ կուգնայ աղբիւր,
Բարձեալ պղնձէ սափորը յուսը։
Ջամբին գլուխը՝ չի բարձրացնել,
Կաշխատի սափորը՝ շուտ լցցնել,
Դառնալ վազելով՝ յաղբերէ ՚ի տուն,
Հօրը, մօրը քընից վերկացնել։
Աչքը չի տեսած զկերպ օտարի,
Հօր տան մնում նա բազում տարի,
Մինչ որ գալիս են՝ նրան նշանում,
Անտրտունջ է զեա գառն աշխարհի։
Հայոց աղջկան՝ թէատրոնը,
Է՛ պատկառանքը և սուրբ կրօնը.
Զբօսանք պէտք՝ աղջիկն ՚է քնար,
Այսպէս է դատում անուանին Ջ՛օնը[1]։
Չէ գիտում երգեր՝ եւրոպական նուրբ,
Չէ տեսած ընտանին՝ բանաւոր հօտ,
Խանդաղին աննեան ՚ի սրտի կրելով,
Իբրև եղջերու՝ զգոյշ է երկչոտ։

---

[1]) Ջ՛օնը՝ էր դօքտոր (բժիշկ) Անգլիացի, որ ՚ի ժամանակս վերջաւորութեան Շուրուանշահաց ՚նա եկև ՚ի ձեռն պատկերափոխութեան Թագաւոր ՚ի Շիրւան, յետոյ Օսմանցիք առին զայն, իսկ ինքն դարձաւ ՚ի Հայրենիս իւր։

Թէ տեսս նրան «այլազգւոյ կրօնք»,
Կու լինի սրտին՝ ծանր սոգանք.
Նոյն վեճակեցը փրկուելոյ համար,
Իր սպանմանը՝ նա միշտ կանէ ջանք։
Թող էն այլազգին՝ լինի ենէրալ,
Գրաֆ, կնեազ կամ ֆելտմարշալ.
Հայի աղջիկը՝ հայ տղին թողած,
Սրտումը նրանց՝ սէրը չի զգալ։
Իրան հայազգի՝ տաւարարածին,
Չի փոխել խաչերով՝ զարգարածին,
Քանզի 'ի բնէ՝ հայոց արիւնը,
Կատէ նրանց որք են օտարածին։
Ինչ հայի աղջիկ էս միտքը չունէ,
Էլ ի՞նչ Հայ նրան՝ հայ ազգ կ'ընդունէ,
Ինչ հայ որ հայի աչօք չի հայեց,
Նա չէ հարազատ՝ թէև գիտուն է։
Ինչ լաւ կուլի որ հայ աղջկերքը
Սիրեն մի միայն՝ հայոց տղերքը.
Անկեղծ յայտնի է՝ որ այդպէս լինէր,
Նոյնչափ չէր խառնակվել նրանց բերքը։

Գ. Տագաթեանց։ Ճռաքաղ 1859 Թ. Ե. 415—416։

---

141

Ազգային վիճակ։

Յառա՜ջ հայութիւն, յառա՜ջ ազգութիւն,
Լուսաւոր դարուս գաղափարներով.
Նորից, ո՜վ իմ ազգ, խաւար տգիտութիւն,
Մի՛ տար քեզ խաբել խարդախ խօսքերով։
Կորէ՛ք դուք, խաւար և Տգիտութիւն,
Կորէ՛ք զարշելի ձեր ծնունդներով.
Մինչ երբ մեր վերայ ձեր վայրենութիւն
Պիտի բռնանայ կոպիտ ճանկերով։
Ներքայր է նա մեզ, որ ճշմարտութեան
Օծնուորված այսօր զօրաւոր սրով,

Կամ քայքայել կապանք գերութեան,
Խաւարի բանտը փլատակելով։
Ցաւալի՜ն է մեզ, որքան փթթած,
Արհամարհեցինք մարդկութեան բարիք.
Այո՛ բաւական, որքան կուրացած,
Կարեցին կեանքից մեզ անկեանք մարդիկ։
Այսուհետև «Մե՛ր» դէպ ի գիտութիւն,
Որ առհաւատչեայ է բարօրութեան.
Այսուհետև «Կամք» և «Աշխատութիւն»,
Որ մի ծնունդ է առաքինութեան։
Հանդիսացէք Լոյս և Ճշմարտութիւն,
Թո՛ղ փախչի գիշեր մռայլուած սրտերի.
Յաղթի՛ր, խորտակի՛ր, Դանականութիւն,
Մոլար կարծիքներ, որդիք խաւարի։
Ազգ բազմաչարչար, Դու ազգ Թորգոմեան,
Թո՛ղ անշարժութիւն այդ քո մահաբեր.
Դէ՛պ ի ասպարէզ առաքինութեան....
Դէ՛պ ի մի նոր կեանք փրկութենաբեր։
Աստուածեղէն այդ մարդկութեան փրկչին
Լինելու է քեզ առաջնորդ հզօր.
Դէպ ի կրթութիւն յանուն սուրբ խաչին,—
Այդ է պահանջում մեր դար լուսաւոր։
Մա՛հ Զօյիլներին 1) նախանձով վառված,
Աքսոր ու կորուստ Մետա-Մարգիսներին։
Դոցա համար լոյս ադիտահալած
Դարձել է մի ժանտ դահիճ գազանագին։
Դոքա սեփական օգտին պարապած,
Դեռևին են զարկել խրատունք ազգին.
Նա, սուտ հայութեամբ դիմակաւորված,
Փոսեր են փորում բարի մարդերին։

---

1) Զօյիլոսը էր մի Յոյն ճարտասան, Ամֆիպօլիս քաղաքից, Մակեդոնիայում, Փիլիպոս թագաւորի ժամանակում, որ իւր չափազանց և անտանելի կշտամբասիրութեամբ, որով յարձակվում էր մանաւանդ Հոմերոսի Իլիականի վերայ, և այս պատճառով ստացել է անուն «հռետորական շուն», յետոյ ժամանակներում տուել է իւր անունը բոլոր չարամիտ կշտամբասէրներին։

Առողջ մտածողն—«աղանդաւոր է».
Ճշմարիտ խօսողն—«Հայի ոխերիմ».
Ինչ որ Հային է,—«այն երկնքից է».—
Գնա՛ արա սրա, Տէր իմ, Աստուած իմ։
Միայն կաշառվածն անարգ արծաթից,
Կարող էր այդպէս խորհել ու մտածել.
Միայն մոլորվածն կեղտոտ ախտերից,
Կարող էր այդպէս իւրեան փայփայել։
Նզովեա՜լ է նա և միշտ նզովեալ,
Որ քարոզել է սուտ ազգայնութիւն.
Որ ազգի առջև մեր դար լուսափայլ
Խաւար է կոչել և ագիտութիւն։
Թունաւորված են օրերս վշտալի
Ազգիս անզգայ շահամոլներից.
Տանելով ձեր գործ, ով ծնունդք իժի,
Արիւն է կաթում իմ խարշած սրտից։
Սրբութիւն պղծուած, հաւատ կաշառուած.
Ազգ ու հայրենիք անխիղճ վաճառուած.
Կարգ, օրէնք, պատիւ—բոլոր ոտնակոխ,
Ամեն տեղ դժողք, մատնութիւն ու ախ։
Յուսահատութեան սևամած ամպեր
Գալիս դիզվում են իմ սրտի վերայ.
Ո՜հ, ի՜նչ դառն վիճակ, ի՜նչ տխուր ժամեր.
Անիծեալ լինիք, մարդիկ անոպայ։
Ո՞ւր որդիական արտասուք ու սէր,
Ո՞ւր ցաւակցութեան դառն հառաչանքներ.
Մի՞թէ ձեր խիղճ մօր գերութեան շղթան
Զգալի չէ ձեզ, որդի՛ք չարութեան։
Ա՜խ, եթէ, Հայ ազգ, մի օր կամ մի ժամ,
Աստուած պարգևէր քեզ միտք խելացի,
Դու կը տեսնէիր, ո՜րքան անզգամ
Մարդիկ կան քո մէջ անկեանք, անհոգի։
Դու կը տեսնէիր, որ քո չորս կողմում
Օձեր են բնակում, դահիճք կորստեան.
Որ անխիղճ որդիքդ արիւնդ են ծծում,
Մա՜հ քեզ խնդրելով, անկարող Հայաստան։

Նիւթապաշտութիւնն մահու կապանքով
Խեղդել է նոցա իւր ծանր լծի տակ.
Ձեռներն ու ոտներն պինդ կաշկանդելով,
Մ՚արուել՝ անգիւտ կորստի յատակ։
«Ոսկի ու արծաթ, արծաթ ու ոսկի,—
Ա՜հա մտածմունք քո ընտրեալների.
Սոքա՛ են նոցա էութեան կենտրոն,
Կեանքի նպատակ, աստուած ու կրօն։
Ո՜վ ազատութիւն, սուրբ աքսորական,
Զոհելու եմ քեզ իմ անձս յաւիտեան.
Թո՛ղ ստրկացած դարերով մարդիկ,
Գնեն իմ վերայ նզովքի կնիք։
Թո՛ղ սրէ չար լեզուն անզօր թշնամին,
Թափելով վերաս թունաւոր աղաքներ.
Ես պիտի խնդրեմ, ազգ իմ լալագին,
Ոտնակոխ եղած քո իրաւունքներ։
Ոչ ոք չէ՛ կարող հոգուս նպատակ
Ճնշել, խորտակել բռնութեան գէնքով.
Ո՛չ սուր, ո՛չ արիւն, ո՛չ բանտ, ո՛չ կայծակ,
Ո՛չ նոյն իսկ գեհեն մշտավառ բոցով։
Թո՛ղ անմիտ մարդիկ փրփրան ու գոչեն—
Անվեհեր հոգիս կ՚մնայ միշտ ազատ.
Թո՛ղ ալիք ժայռին զարկեն ու կոծեն,—
Նա ծաղր առնելով կ՚մնայ միշտ հաստատ։
Բայց սպասեցէ՛ք դուք, որդիք խաւարի,
Կը գայ ձեր վերայ ահեղ դատաստան.
Նորան գրաւելու չեն ձեր ոսկեղի
Պարկեր ու գանձեր եւ հարստութեան։
Կ՚երթան կ՚անցանեն այս դաժան օրերը,
Կը գայ երեւան նոր ազգ, նոր կեանքով.
Նա կը դատէ՛ ձեր վատթար գործերը,—
Ամօթու արձան ձեզ կանգնեցնելով։

Ս. Շահազիզեանց. Հիւսիսափայլ, 1862 թ., մարտ, ե. 139—142.

---

142

Ամեն տեղ տիրած խորին լռութիւն.
Կարծես թէ մեռած լինի բնութիւն։
Նստած սգաւոր, պանդուխտ միայնակ,
Ա՜հ. քե՛զ եմ տեսնում, ով փայլուն լուսնակ։

Աշխարհի սկզբից դու մինչ ի վախճան,
Երկնակամարով անում ես շրջան.
Ա՜հ, դու տեսե՞լ ես Հայ ազգ բարեփառ,
Արդեօ՞ք տեսնում ես նորա ցաւ անճար։

Արդեօք դու ևս խղճալուս նման,
Տեսած Հայաստան ժանտ ոտքի կոխան,
Թափում ես աչքերդ աղի կաթիլներ
Եւ սրտիդ միջում ցցվում են նետեր։

Քա՛ր է քո սիրտը, և խիղճըդ մեռած.
Քանի՞ արիւններ, քանի՞ կոտորած
Տեսար. լռեցիր և դարձեալ պայծառ,
Հայ երկրի վերայ կայնում ես կամար։

---

Ձա՛յն տուր, ով ծովակ [1]), ինչու՞ լռում ես.
Ազգակից լինել չկամի՞ս դժբախտիս։
Շարժեցէ՛ք, զեփիւռք, ալիքը վէտ վէտ.
Խառնէք արտասուքս այս ջրերիս հետ։

Հայաստանի մէջ անցքերին վկայ,
Սկզբից մինչ այժմ, խնդրեմ ինձ ասա՛.
Մի՞թէ միշտ այսպէս, կը մնայ Հայաստան
Փշալից անպտուղ երբեմն բուրաստան։

Մի՞թէ միշտ այսպէս ազգը խղճալի,
Կը լինի ծառայ օտար իշխանի։
Մի՛թէ Աստուծոյ աթոռին մօտին,
Անարժան է Հայն և Հայի որդին։

Արդեօք գալու է մի օր, ժամանակ.
Տեսնել Մասիսի գլխին մի դրօշակ.

1) Աղթամարայ, Վանայ; Ванское озеро.

Եւ ամեն կողմից պանդուխտ Հայազգիք
Դիմել դէպ իւրեանց սիրուն Հայրենիք։
Դժուա՛ր այդ. միայն, Տեսուչդ վերին,
Կենդանացրու Հայութեան հոգին,
Ծագի՛ր նոցա դու քո լոյս գիտութեան.
Որով իբր էակք նոքա բանական,
Կ'ճանաչեն մարդուս կեանքի խորհուրդը,
Կը լինի գործովք Տիրոջ փառաբան։

---

Յանկարծ ծովակի երեսին մի լոյս.
Ջրից դուրս եկաւ նազելի մի կոյս,
Մի ձեռնում ունէր նա վառած լապտեր,
Իսկ միւսում քընար փայլուն փըղոսկեր։
Արդեօք Հուրի էր, հրեշտակ աննշան.—
- Ո՞չ, Հայ մուզաների տիպ համանման։
—Հայոց ճակատագիրը կարդա՛, ով մուզա,
Ներկայ և գալոց գուշակիր, ասա՛։

(Ասաց երկնային այն ոգի քաղցրիկ.)

«—Աւետիք տամ քե՛զ, Նժդեհ պատանի.
Սրբի՛ր աչքերից արտասուքդ աղի։
Կը գան նոր օրեր, օրեր երջանիկ.—
Երբ Տիրոջ կամքը, ազատ ու արդար
Կը թագաւորէ—կրկին Ոսկեդար»։
«—Հայոց Մուզայքը կը զարթնուն կրկին.
Հայոց Պառնասը կը ծաղկի վերստին,
Եւ Ապողոնեան կառքը լուսարար
Կը բոլորէ Հայոց Թուխ երկնակամար»։
«—Մե՛ք ևս քո պէս,—երբ խորին գիշեր
Պատեց Հայաստան,—սգաւոր օրեր
Շատ ենք անցուցել. այժմ սիրելի,
Մե՛ք ևս Հաշտութեան ստացանք ձիթենի»։
«Սրբեցէ՛ք քնարի լարերը ժանգոտ.
«Ելէ՛ք Հայաստան երգով եռանդոտ.
«Զարթեցրէ՛ք Հայոց աշխոյժքը մեռած,

«Լցվեցաւ կամքը, հասաւ ժամանակ,
«Որը կը բացվի.—ահա՛ Արուսեակ
«Ձեզ յայտնի նշան» ասում է Աստուած։
Կրկին մթնացաւ։ Չքացաւ պատկերը։
Երկար ժամանակ դիւթական ձայնը
Լսվում էր խառն ալիքների հետ,
Օդին տիրել էր բուրումն հոտաւէտ.
Ախորժելի՜ լուր, աւետիք քաղցրիկ.
Ո՞րպիսի հրճուանք. Մուզայդ գեղեցիկ,
Ասա մեզ, մեկնիր, արդեօք հնարի՞ն
Մի՛ մեռած մարմնի զարթնուլ վերստին....։

Յակոբ Մելիք Յակոբեանց։ Հիւսիսափայլ, 1860 Թ. № 11. Ե. 422—424։

## 143

### Հայոց աշխարհիկ։

Հայո՜ց աշխարհիկ, գարունդ է հասել,
Ահա գեղեցիկ գարուն քո եկել.
Ո՛վ դու ի վաղուց մոռցուած հայրենիք,
Ո՛վ դու իմ սրտիս անմոռաց տեղիք.
Ահա գարունիկդ եկել է եկել
Աւագ Մասեաց ծայրն ընդ քեզ հաշտ հայել.
Այն սեւ սեւ ամպերն են դարձել ի փախ,
Այն ճերմակ ճերմակ սարերն են անվախ.
Զընիկն ի ծոցին բացեր է ճանպարհ,
Քաղցրիկ կըրկըջով գլորէ գետս հազար.
Յայն բարձըր ժայռից, որ երկնուց են մօտ,
Կենաց օրհնութեան ծագէ առաւօտ։
Ահա քո բլուրներն Հայո՜ց աշխարհիկ,
Այն քո բիւր բլուրներ ու բիւր վըտակիկք,
Հազար քո ձորերդ ու հազար քո դաշտ՝
Տարան ցուրտ ձըմեռդ ու ձիւներըդ շատ.
Լերինք ու հովիտք ընդարձակ ու լայն

Նախշուն զարդարքին նոր հարսին նըման,
Կապուտակ· տարերք գունըզգուն պըճնակ
Կապէն ի գըլուխ զինչ նոր Թագաւորակ.
Ի ծայրից տարից որ երկնուց են մօտ՝
Փըռուի մինչ ի խորն հօրոտն ու մծրոտ.
Գետեզերքն ամէն բացել են շուշան
Պայծառ գընդըղնով[1]) ցընցըղկեն գընան,
Սարեզերքն ամէն զվարդն երեւցուցին,
Ո՜հ կարմրուկ վարդեր, զաւակք Եդեմին։
Գըլպուլն ի հեռուանց թռչեց ճըգնարան
Ծովեր ցամքըներ թեւեց անգուման[2]),
Կանչեց ի յօդուն երեք հեռ բարեւ
Սոկունքըն դըրաւ ի սարին վերեւ,
Սարին վերեւէն ի վարդին տերեւ,
Հայո՜ց աշխարհիկ, քեզ երես բարեւ.
Սարեկն ի սարին եկաց ու մընաց,
Ընձեղ նախընծով եղաւ երգասաց.
Արագիլն յերդիս մաքրեց իր բունիկ,
Կանգնեցաւ կըղղաց «Հայո՜ց աշխարհիկ»։
Արտուտիկըն թռաւ, թռաւ, թռաւ վարուվեր
Մանրիկ ճըւըլըով տուաց շատ բաներ.
Տատրակիկն իջաւ, իջաւ ցած ու ցած
Կըրծկունքն ի գետին ըզմո՜ւմո՜ւ ճըւաց.
Հովիւն ու հօտաղ, գառինք եզն ու կով
Գոհացան զԱստուած՝ մարգեր շուրջ գալով։
Հանց քեզ տէրն է տուել գարուն գեղեցիկ
Որ դրախտի նմանիս Հայո՜ց աշխարհիկ.
Դրախտիկն անցեալ քեզ դարձեալ գայ գարնամբ
Ո՜հ ինչ պայծառ արեւն որ ծածկէր ի յամպ։
Բայց Նահապետիս ինչ ասեմ ծերուկ
Որ եմ քան զամէն ծաղիկ վաղանցուկ.
Իմ գարունս անցել ու հասել աշուն,
Յամքած տերեւուկս ըսպասեմ հովուն
Թէ երբ ի լերանց ծոցուն փըչէ խոր

---

1) Ալիք. ծփանք։ 2) Յանկարծ. վաղվաղ։

Զրգէ անկրակիծ զիս ի մահուան ձոր։
Նահապետիս կեանքն եղաւ բաւական
Խընդութեամբ կեցաւ ի յիւրն Հայաստան
Ժամ է որ երթայ ի յայն Հայրենիք
Ուր իսկի չզատուին եղբարք սիրելիք.
Խընդութեամբ կ'երթամ քեզնից Հայաստան.
Քեզնից առած հողս՝ ի քեզ տամ թաղման,
Ի քո ծոցէդ վեր կանգնեցաւ Ադամ
Ես ի քո ծոցէդ ա'ելնեմ անթառամ։
Ա՜յ մանկտիք եկէք շուրջ Նահապետիս
Ականջ դիք շայիր [1]) հօրդ յետքի ձայնիս.
Բլբուլն ու սարեկն երգերն են նորել.
Իմ՝ հետ տատրակին հողու հաւսարել.
Մանկտիք զիս Հայոց հողն ու ջուր սնուցել,
Ես այն հողն ու ջուր սըրտով եմ սիրել.
Հայրենեաց հարուստ է հող, ջուրն անուշ,
Քանց օտար վարդ քաղցր է հայրենեաց փուշ.
Հայաստանի օդն է քաղցր ու բարակ,
Հովերն են անուշ, պայծառ են վըտակք.
Ջուրն ու պըտուղն համ տան անմահութեան,
Խոտն ոսկեզօծէ զգառներուն բերան.
Յոսկեթել ամպոց յայգուն զովագին
Թորթոր իջանէ ցօղիկ մանրագին,
Կարմիր ճաճանչով արեւուն շաղուած
Կայ ի խաւըրծիլ մանանայ կենաց։
Ո՜հ լերունք ծաղկած, ո՜հ ջուրք ծիծաղկոտ
Զանուշիկ հովերդ ի յիս ածէք մօտ.
Հողմունք անուշիկք եկէք մօտ ի յիս
Շունչ ու երգս առէք տարէք ի Մասիս.
Տարէք վերջի շունչս ի տուն տապանին
Ու լըսեցուցէք զաւկաց Թորգոմին։
Ձեզ կ'ասեմ մանկունք սիրունք նազելիք,
Որոնց է բնական Հայոց աշխարհիկ.
Մ'ուրանայք զերկիրդ ու զազգըդ սիրուն,

1) Քերթող. երգահան։

Ծառն՝ արմատով ծառ, տունն հիմամբն է տուն։
Մեր տէրն, ի յերկնուց ծայրէն երբ իջաւ,
Երկրիս հիման քարն յԱրարատ դըրաւ;
Այն մեր Մասիսու երկնաձեւ սարէն
Աչեց ըղըոլոր՝ վերացաւ Նոյէն;
Հոն չափեց սահման իւր Նախաստեղծին,
Զեփրատն ու զԵրասխ բաժակ դրաւ դրախտին;
Կենաց փայտին ծառն ի հոն ծաղկեցաւ,
Չար գիտութենէ բարին մեզ տըրուաւ;
Ի Հայոց հողէն կազմեցաւ Ադամ,
Զօդն Հայոց Եւայն ծըծեց քաղցրահամ;
Աչքերըն պայծառ երեսըն աննըման
Հրեշտակաց առջեւն հոն հանդիսացան.
Ծաղկունքս այս ծընած են ի յայն ծաղկոց,
Որ Եւայի պսակ եղան ու Նըստոց;
Այս մեր սարերուս ծերուկ արձագանգք
Աստուծոյ ձայնին տըւին պատասխանք;
Ասոնց երգք սիրոյ ու ապաշխարութեան
Երկինքն ի վեր նախ յերկրէս վերացան;
Արեամբն Աբելի Քրիստոս հոս զենաւ
Կըրկին եւ կըրկին մեզ յոյս խոստացաւ;
Ադամ ծերունին այս սարիս ներքեւ
Զաւակացն ասաց զիր յետին բարեւ;
Այն ձորիկն ի վայր քալով գնաց Եւա
Գլուխն ի քար դըրաւ կարօտ Եդեմայ;
Ի հոն են նընջել մարդիկն առաջին,
Որ հետ Հրեշտակաց զԱստուած օրհնեցին։..
Երբ գոռաց երկինքն ու գետին սարսեց
Ամպերն ի ծով, ծովն ի յամպեր վազեց,
Այն սարին ծայրէն Նոյ մնաւ ի տապան
Ջրագունտ երկրիս շուրջն եկաւ մանուման [1]).
Իջաւ բազմեցաւ ի բարձրըն Մասիս
Զաղու աղաւնին ղըրկեց աւետիս.
Երկիրս էր դարտակ, անապատ ահեղ,

---

1) Շուրջ շուրջ։

Լուկ ի Հայաստան կայր մարդկութեան տեղ:
Մենք ենք հարազատք ծեր Նոյի ծընունդք
Որ ժառանգեցինք զհովիտս ու լերունք:
Նախընծեցաւ Բէլ բըռնաւոր արքայն
Զհասակն անծոռնի կանգնեց բարձր ու լայն.
Շատ զօրքեր շարան բերաւ անհամար,
Խուլ արեւ բըռնեց մեր երկնուց պայծառ.
Լըսեց Հայկն արի, ձէնեց քաջերուն,
Սարն ի վար վազեց զինչ կայծակ յամպուն.
Զաղեղըն լարեց կամըրջի նըման
Որոտաց թըռաւ ըզնետըն գերան,
Զերկաթն ու պղինձ կըրծից հըսկային
Սըրտոփ ու թոքով հանեց կըռնըկին.
Փըլաւ Բէլըն ի բըլրէն ի խոր Գերեզման,
Զէտ ծուխ ու զօրքերն եղան ցիրուցան:
Շատ կըտրըճօւորայք հանեց Հայաստան,
Շատ Բէլեր փըլուցին քաջքն Հայկի նըման.
Հոռոմ, Ասորին, Մար, Սկիւթ, Պարսիկ
Հայոց թըրերուն եղան պատառիկ.
Այս սարեր, ձորեր ու դաշտերս ամէն
Կարմիր են քըրտնել, կարմիր խըմել են.
Ի հոն են խաղցել Տիգրան ու Տրդատ,
Վարդանն ու Վահան, Աշոտ ու Սմբատ:
Հոն կըրակէ թըռուցել նետ Հայոց մանկտին,
Խըրձի պէս թափել գունդ գունդ թըշնամին.
Այս բըլուրներուն ծայր դրօշըկներ բացուել,
Առիւծն ու արծիւ հետ խաչին փառել.
Զէնք ծարւած գացել, դարձել են արբած,
Դ՛ըմռուռած ճակատք պարզել են պսակած.
Ընկել են ընկել հոն Հայոց ալ քաջք
Մէկ ձեռքըն նիզակ ու մէկալըն խաչ.
Խըռէլ ի դաշտէն ելեր են յերկին
Բազմել հետ Գրիգոր, Տրդատ, Վարդանին:
    Աբգար թագաւոր մեր քաջ իմաստուն
Խըղթով է խօսեր հետ Աստուածորդւոյն,
Նըրնէկ եւ ընծայ առել Քրիստոսէն,

Դեսպան ընդունել զառաքեալ Թադէն.
Զառաջին պատկերն այն սուրբ դաստառակ
Փրկչին կողաբաց Գեղարդըն մօտ,
Եւ շատ նըշխարքներ, մասունք զանազան
Ի ծոցն է պահել աշխարհս Հայաստան.
Շատ առաքեալներ ունի իւր քարոզ
Շատ սուրբ հայրապետ ու շատ մարտիրոս.
Բիւրաւոր ունի մատուռնք ու տաճար
Անապատ ու վանք հազար ու հազար։
ՅԱստուծոյ առեր ըզլեզուն ու զգիր.
Թարգմաններ յամէն ազգէ գիրք ընտիր
Ճարպիկ տղայք ղըրկել ի Ստամպօլ, յԱթէնք,
Հայն հոռոմ լեզուով յաղթել է զՀելլէնք.
Շատ գըրքունք գըրեր մեր հարքն ու մագաղաթ
Զետ ցորեն դիզել քանց բարձր Արարատ։
Բայց ափսո՜ս հիմիկ, որ չար թըշնամիք
Իսկի չեն խնայել Հայո՜ց աշխարհիկ,
Եկեղեցիք, վանք, գըրատուն գարպաս
Զարկել են թըրով հըրով դաս ու դաս.
Զազգն ընչօք տեղօք քանդել ու քերել
Դէմ չորս հովերուն տըւել ու ցըրուել։
Աւա՜ղ քեզ, աւա՜ղ Հայոց աշխարհիկ,
Տուն երկնանըման, փըլած տաղւարիկ...
Եւ ինչ ափսոսամ ըզքեզ Հայաստան,
Երբ ձեռքն Աստուծոյ տեսնում յանդիման.
Ինքն է հրամայած քակել, ինք շինէ,
Զինչ ըզհետ ձըմռան գարուն քեզ բերէ.
Զաշխարհ մեր սիրեաց Աստուած ի սկըզբան,
Թէ անէծք երեւ՝ սիրոյ էր եւ այն։
Ի թուխ ամպերէն ելնէ փոթորիկ,
Ըզհող համբուրեն ծառերն ու մայրիք,
Տերեւքն եւ ողկոյզքըն մարգարտաշար
Ի յոտից ներքեւ երթան ի խաւար.
Ամպն եւ փոթորիկ վաղիւ վերանայ
Նոր արեւ, գարուն, ծառն ու այգին գայ։
Արմատք հին՝ նոր ճիւղ, հին ճիւղք՝ նոր ծաղիկ

Ընծայեն բնութեան, Հայոց աշխարհիկ.
Դուք այլ կործանած սիւնք, դուք այլ կամրջնիք,
Կապին կամարքդ, ո՜հ, սուրբ եկեղեցիք.
Փակեալ վանորէք՝ շինեք հոգւոց տուն
Դառնան ձեր սաղմոսք, ձեր քաղցր ալէլուն։
Այդ քո աւերակք, Հայո՜ց աշխարհիկ,
Նշան մեծութեանդ են, թոռմած ծաղիկ.
Թոռմած ես՝ բայց վարդ, ցամքած՝ բայց հալուէ.
Ով ըզքեզ օտար ծաղկան հետ փոխէ՝
Նա կոյր է յիմար. զհոտն անմահութեան
Ընդ սուտ գոյն փոխէ տըխմարն ու տըղայն.
Յիմար է յիմար որ զպարծանքն հարանց
Երթայ վաճառէ ընդ օտար ազանց.
Աշխըրհիս օրէնք՝ որ ծնողք չըփոխուին.
Հայրենափոխք չեն, ուրացողք լինին.
Ծառն՝ արմատով ծառ, ծառոյն է արմատ.
Դալար մանկտիք, ձեր տակն է Արարատ.
Պինդ կացէք, Աստուած ցօղէ ի վերէն,
Ծըլիք ու ծաղկիք քանց վարդ ի թըփէն.
Զըլնի ոք նախանձ չըլնի հակառակ,
Թէ չէ՝ նման խոտու լինի խայտառակ.
Այլք ծըլին ծաղկին, թէպէտ քըչիկ մ՚ուշ.
Զարկամըն մընայ միշտ դըժնիկ, միշտ փուշ.
Որք խելօք սիրով կան զինչ աղբըրիկք
Տեսնեն քո գարունդ Հայո՜ց աշխարհիկ,
Ալ ես Նահապետ ցամքած ծերունիս՝
Երթամ մեր հին հարցըն տամ աւետիս,
Ասեմ, թէ գարուն երեկ տանս Հայոց,
Դուք Նահապետիս ասացէք՝ հոգւո՜ց։
Ծեր Նահապետիդ՝ տո՛ւր կակուղ հողիկ
Որ զքեզ պինդ սիրեց, Հա՜յո՜ց աշխարհիկ։

Հ. Ղեւոնդ վարդապետ Ալիշանեան, Վենետիկ
Մխիթարեան ուխտէն։

144

Հայ հայրենիք։

Ազատութիւն դըռնակն է բաց,
Ե՛լ ե՛լ արեւդ Հայաստանեայց։
Ահա ելնեն որք կան ի քուն,
Եւ Նահապետն այլ որ անքուն՝
Յաստուածազարդն ելնէ հանդէս,
Հայ հայրենեացն ելնէ ի տես։
Ելնէր ելնէր նա մինչ յԱրտոս
Զաչերն ածել ընդ չորս բոլորս,
Երբ սեաւ գիսակն էր ճակատուն
Ակունքն արագ էր քանց այծուն.
Յաստուածազարդ ելնէր հանդէս,
Հայ հայրենեացն ելնէր ի տես։
Դուք որ սարերտ ի վեր երթայք
Այ իմ սիրուն կորընճուորայք,
Դէմ 1) թէ զգալար աչուիդ սիրէք,
Նահապետին մըտիկ արէք.
Յաստուածազարդ ելէք հանդէս,
Հայ հայրենեացս ելէք ի տես։
Ահա ելանք ի մեծ հանդէս,
Հայ հայրենեացս ելանք ի տես.
Ահա տեսանք զաշխարհն Հայոց,
Որ գդրախտիկն առել ի ծոց,
Դէմ երկընուց կայր կանգնըման,
Անդրանկածին մօրըն նըման։
Ահա ելնէր արեւն յամպոց,
Մարդ կու թափէր յաշխարհն Հայոց.
Յօղըն տեղայր զով ու սիրուն,
Զինչ մարգարիտն ի սատափուն.
Կարմիր կանաչ ծին ծիրանի
Դօտի ածուէր Հայաստանի։

1) Դեթ. գոնեայ։

Լերանց սարերըն բարձրածայր
Ոսկի պըսակ եդան հաւսար.
Հայոց գետերն հազարաւոր
Իջանէին ճաճանչաւոր.
Հազար թէ գետ, բիւր թէ առուի
Հայոց ծովակքն այլ աւելի։
Այ դրախտի ջրեր իջէ՛ք, իջէ՛ք,
Զերկիրն Հայոց արբեցուցէք.
Ահա վտակունք կըրկըջային
Ձորն ու հովիտ արբենային.
Յամէն կամթէն աստղիկ ծըներ,
Յամէն ծըներն ծաղիկ ծագէր։
Ահա տեսանք զծաղկունքն Հայոց
Գոյնն էր երկնից, հոտըն խընկոց.
Վարդն ու շուշան էին վառման
Հարսնամատերն ի ջուր փըռման.
Հօրտ մօրտ էր տարածել
Ըզտեսողաց աչքըն քաղել։
Ահա տեսանք զհաւերն Հայոց,
Ձայնն հրեշտակի, գոյնն էր ծաղկոց.
Կռունկ ու արագիլ գային հիտրաց [1],
Պարիպներուն սիրտըն ճըխաց.
Աբեղաձագ, սարեկ, արտուտ
Կաքաւ, պըլպուլ վարդակարօտ։
Ահա տեսանք մեծ կարաւան
Ի չորս դիհաց ելեր կու գան.
Քուրդըն կուգայր յարօտ ամռան,
Հօտերն ի հետ շարան շարան.
Աղջկունք առեալ զասըրըն հիւսեն,
Մանկունք ըղսառն աղբիւրս խըմեն։
Ահա տեսանք զվաստակն Հայոց,
Սերմըն թափել էր յերկընուց.
Հոն որ Ադամ վարէր գուղան [2])
Քանց ըզքառսուն հասկերըն տան.

---

1) Հետ իրերաց. միաբան։ 2) Արօր մեծ ութ լծովք։

Հոն որ Արեւ գառն ընծայէր՝
Մաքիքն ածեն միշտ ջուխտըկներ.
Հոն որ զայգին է տընկեր Նոյ,
Ոսկի ողկոյզքն են խաղողոյ.
Կաթն այն կըրծքի, գինին բազկի,
Ջուրն հասիաթ [1]) է ամենի։
Ահա տեսանք զխորանքն Հայոց,
Կամար կապեր են յերկնից ծոց.
Եկեղեցեաց թիւն հազարով,
Մատրունք՝ սըրբոցն են համարով.
Խունկըն ծըխէ առտու 'րիկուն,
Աստուած առնու զհօտըն սիրուն։
Ահա տեսանք զքարերն Հայոց,
Մեր հայրերուն մահուան օրոց.
Գերեզմըններըն լուռ էին,
Խաչվէմքն ի քոչ աղօթէին.
Տէրն ողորմի հանգուցելոց
Եւ ամենայն երկրիս Հայոց։
Ահա տեսանք զերկինք պայծառ,
Շըրթներն՝ երկրիս Հայոց հաւսար,
Հաւերն ի հունչ, հովերն ի շունչ,
Օդըն վառվառ, ջուրն ի մըրմունջ.
Լուսինկս է ճոխ, արեւս անուշ,
Սարերն ի վար իջնումք մեք ուշ։
Ահա ի գունտն երթայր արեւ
Նահապետին մենք տանք բարեւ։—
Ո՞ւր Նահապետն այլ ձեզ բարեւ,
Աստուած վերէն տայ շատ արեւ.
Իժիր գնացէք դուք յայդ հանդէս,
Հայ հայրենեացդ ելէք ի տես։

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանեան։

---

1) Օգտակար, առողջարար։

155

Ողբամ զքեզ Հայոց աշխարհ։

Զայս իմ կենաց դառնահամ ծովս որ եմ կտրել՝
Հայո՛ց աշխարհ, զքեզ իսկի չեմ մոռացել.
Հիմ՝ որ շընչիկս ի հազագիս է ոտնառած,
Մազթափ ճակատըս գետընուց ակընկորաց,
Ընդ չորս բոլորտ հետ հայիմ, հետ ծածկին հեռի,
Այլուի քըչիկ մ՝ ու Նահապետըն տի [1]) մեռնի.
Ո՛հ, զիմ կընտիկ ճակատս այլ չեմ կարեր կանգնել
Ու պըսպըղուն [2]) Մասեաց սարերն ի վեր նայել.
Այլուի քըչիկ մ՝ ու այս ափունքս տի լըռեն,
Այս բարկ շըքերըս ըղծերունիս չի տի գըտնեն.
Դուք բազմաշար Մոկաց լերունք քարաբերանք
Դուք ինձ եղէք գերեզման դուք ինձ արձագանգ.
Փետտած քընար, ահա քեզիկ տամ թոյլ մատներս,
Անմա՜շ փափագ, անմաշ կըրակ մըտէք ի ներս.
Զայն պատառուկ սիրտն որ տեսնուք՝ այնոր ներքեւ
Կան մին քանի սուր հառաչանք կարմիր ու սեւ.
Ճ՛ընշած կրծկունքս աղէկըտրին ո՜հ, զինահար [3]),
Այսօր քարշեմ ու դուրս բերեմ զիմ ցաւն հազար.
Թող ի Տարօն հանին ձայներս, սարքըն պատռին։
Մեղրայ գետոյն ալիքն անոյշ՝ լեղի կըտրին.
Հետ Խորօնից քերթողահօր պատմագըրին [4])
Թող կիսատ շունչս ողբակցելով երթան ոլըրին,
Զաշխարհն Հայոց ես լամ զիմ քաղցրըն հայրենիք,
Արիւն արցունքըս հետ թափեմ քաղցր ու ցըրտիկ։
Ահա թուլցած աղէքըս պինդ պինդ քարշեցան,
Մոխրէն ի դուրս կրակունք ելան սիրտըս լըցուան.
Թըռաւ ելաւ Նահապետին սիրտ վեր ու վեր,
Իջաւ խորցաւ գերեզմանաց վախեր վըհեր։
Ողբա՛մ ըզքեզ Հայոց աշխարհ, ողբա՛մ ըզքեզ,
Որ փառաւոր նըստած երբեմն արքայապէս՝

1) Պիտի։ 2) փայլուն. շողշողուն։ 3) Յի՛ս. խնայեա՛։ 4) Մով-
սէս Խորենացին։

Արեւելից եւ Հիւսիսոյ ազգացն հազար
Ճ՛ոկան [1]) ի ձեռդ առած՝ կայիր հրամանատար.
Ողբամ զիշխանքդ ու Թագաւորքդ, որ անց կացին,
Ողբամ զորդիք մեծ Գրիգորի, որ չերեւին.
Աղբիւր հազար ցաւերու ողբամ աշխա՛րհ Հայոց,
Զ՝որ Թըշնամիքդ առուն ու միտք կուրացելոց:
Զարթիր, զարթիր Երեմիա մարգարէ զգօն,
Տես ի՛նչ եղաւ գեղեցիկ նորըս մեր Սիոն.
Ոչ Յովսիաս մեզ մընաց, ոչ Եզեկիա,
Աշխարհըս ամէն ոտնակոխած աւեր մընայ.
Չըկայ քաջաց հայր Մատաթի, ոչ Մակաբէ,
Որ զայսպիսի մեր կործանմունք նորէն կանգնէ...
Ահ, իշխանաց աթոռանին անկեր գետին,
Խանձրատեսակ ծըխով լըցուեր եկեղեցին:
Զարթիր, ելիր արե՛կ, թէ ճար գիտես ցաւոյս,
Յուսակըտուր պընդէ զաղիս, սիրտ ՚տուր երգոյս.
Ե՛կ ի Մըսրայ, ե՛կ ի յուռեաց Բաբելոնի,
Սաղմոսարանդ իջո՛ արե՛կ յԱրածանի.
Կայ ուռեստան եւ Հայոց, կան մեր շատ ալիք,
Կան կաղամախք, կան սեւ նոճիք կան եւ սօսիք.
Մեր գերեզմանքս այլ շատ, մեռեալքս այլուի շատ են.
Որբ ու այրի՝ եկեղեցիք դարպասք ամէն.
Թէ լուկ հայիս իմ աշխարհին երեսըն սեւ՝
Երդըդ վառի, սըրտիկդ ըլլի ներքեւ վերեւ:
Գուն այլ զարթիր ու ար՛ եկ քերթողըդ մեր Մովսէս,
Որ ողբակից հրաւիրէիր ըզմարգարէս.
Տե՛ս այս երկիրն է Հայկազանց ւ Արշակունեաց,
Որոց փառօք լըցեր ըզգիրըս պատմութեանց,
Այս այն երկիրն է Տիգրանին եւ Արամայ,
Որ բըռնէին ըզբըռնաւորքըն զինչ որըլայ.
Այս այն երկիր մեծ Տըրդատայ քաջ Վարդանին,
Ուր նախանձէր Պարսիկ, Հոռոմ եւ Ասորին.
Եւ այս երկիր Լուսաւորչին ու Ներսիսի.
Այս Սահակայ, Մեսրոպայ, քո իսկ Մովսիսի.

---

1) Գաւազան:

Ահ, ի՜նչպէս փառքըն ամէն մըթնած եւ այլափոխք,
Միայն անփոխ գուշակութիւնք քո կան ցաւօք.
Աւար, աւեր, սուր, գերութիւն, սուգ եւ չարիք,
Այլ չար՝ նախանձ, որդիատութիւն մընան հիմիկ.
Դարեր անցին գնացին, Հայոց փառքըն մոռցուած
Նահապետիս միայն խաւարն ու սուգ մընաց:
Հէ՜ խեղճ ծերուկ, զո՛րկ ըզգործիդ, ու ըզքեզ քարի՝
Կամ թէ քաղէ զաղէք սըրտիդ որ քաջ թըրթռի.
Խօսին կանչեն այրած լերդերդ, լըսէ աշխարհ,
Քո գանկըտանք բըռնեն լեռներ ձորեր հաւասար:
Ողբամ, ողբամ, հազար ողբամ զքեզ Հայաստան,
Որբեմըն թիւր փառաց տեղիք, հիմայ դամբան.
Քո ծիրանիքըն մերկացան, քո թագդ առաւ,
Արիութիւնըն Հայկական անդէն թըռաւ.
Քո սուրբ յաջորդք քահանայիցըն պակսեցան,
Ամէն չարիք մըտին ի մէջ ժողովըրդեան.
Քո ծառաներն ապըստամբ գէմ քեզ առին սուր,
Քո իշխաններն՝ մէջ քո տան վառեցին հուր,
Լըսեցին Պարսք ու բարբարոսք գաղանական,
Մէկ առ մէկ ձայն տըւին ելէք ի Հայաստան.
Եկան եկան ամառնամուտ ամպոց նըման,
Որ յԱռնոսայ սարերն ի կախ կու կըրկըռան.
Հայաստանի չորս բոլորտիքըն պատեց սեւ,
Թիւր տակ ամպէն ի՜նչ ցեղ [1]) ի դուրս ելնէ արեւ.
Պահակք բացուան, սահմանքըն առան, արգելքըն ընկան,
Փախիր պահուիր, թէ չէ՝ մաչխ ո՛վ Հայաստան...
Բայց ո՞ւր փախչիս, դու ժողովուրդ անհայր անտէր,
Ներդն ու պարիսպ, շէնքըն են հողու հաւասարեր:....
Ահ անիծեալ երկաթ ու ձեռք որ զայն սըրեց,
Հայո՜ց արիւն քեզ լուկ այդքան անոյշ թըւեց.
Միթէ անկուշտ քաղցիդ ու չար քո ատամանց
Զի՞մ Հայաստան ցըցուց արեւն անողորմած.
Ո՜ր բըռնաւոր, ո՞ր տիրապետ, ո՞ր անօրէն
Չեկաւ սըրով բաժին մ' առնուլ Հայոց երկրէն.

---

1) Զիա՞րդ:

Որ բարբարոս աւերածու ձեռաց նըշան
Չեթող վըկայ մեր շէնքերուս երկնանըման.
Մէկըն կըտրեց, մէկըն հընձեց, մէկըն լափեց,
Մէկն այլ փորեց, զարմանան հանած հողըն ցրուեց.
Ո՜հ, այս տեսոյս ո՛վ դիմանայ թէ չէ արձան,
Կամ ի՞նչ ցեղ քեզ չողբայ, խեղճուկ իմ Հայաստան։
Տեսէք գեղանքըն ու քաղքըներն խառնափըրնդոր,
Սառնապատըւկ գետոց ջըրերն՝ յարիւն յորդոր.
Տեսէք ռամիկն ու մեծատուն ամէնքն աղքատ,
Տընակորոյս թափառական դաշտէ ի դաշտ.
Փախչին գընան, չըգիտեն ուր, յետք չընային,
Օ՜հ, սուրն անգութ փըռէ զայնոնք ցուրտ ի գետին.
Դոքա այլ ուր ըզփախ առել ըշտապ կ՚երթան.—
Ոմանքն ի մէկ տեղ. ո՜հ, ամէնքն ի գերեզման։
Ահա ծերեր, որ հարկեւոր ալիքն առել
Փախչել փորձեն, փորձանք գոչեն, ընկնին մեռել.
Ահա անօթի խեղճ կընկըրտիք, որ անլաշակ,
Հեռ երկընուն կանչըրտելով, մընան մինակ.
Պարկեշտ աղջըկունքն, որ արեւէն ծածկըւէին,
Գազանակերպ մարդկան ձեռքէ ի ձեռք ընկնին.
Ահա մատղաշ մայրն, որ զըստենի որդեկն առեր,
Լեղապատառ խոլոռ մոլոր կ՚երթայ վըհեր,
Պահ մի թողու զորդայն ի վայր, դէմ գայ դահճին,
Ցամքած ծոցիկն առել՝ մօր գութ յիշէ նորին.
Բայց սուրն անհեղ ոչ մօր գըթայ ոչ որդեկին,
Ծաղիկն ու ճուղ մէկտեղ կըտրէ վառ վառ նոխն.
Կաթն ու արիւն զինչ եղ ու մեղր հետ կաթկթին...
Հըրեշտակք, թէ գութ ունիք՝ հանէք զայս կաթս յերկին։—
Ահ, ես քանի՞ քանի՞ նըրքեւ այս ձորերուս
Գերեզմանաց վըրայ թափել եմ արտասուս,
Ուր քորք ու եղբարքս, հարս ու փեսայք, հարք եւ որդիք
Կարճ օրերով զերկայն գիշերըն կու հանգչիք...։
Ո՜հ Նահապետ, քանի՞ յիշես թափես արտասունք,
Երնէկ այնոնց որ զինչ վըկայ մեռան սիրունք.
Ոտին զաչերն յայս սեւուտած մոխրած երկրէս,
Չըտեսան զայս աւերակներս, յոր ժուռ գամ ես.

Երնէ՜կ անոնց, որ չըտեսան գետին փըռուած
ԶԱ՜նոյ Նըշխարքն հազար ու մէկ եկեղեցեաց.
Ոչ զայն ամուր բերդըստանին ու պուրճըրնուն [1])
Ամպադրացի ծայրերն հաւասար գետնի հողուն։
Ա՜յ իմ աչացս, որ լոյսն Հայոց ալեւ եմ տեսել.
Թագաւորաց դարպասն՝ եզանց գոմ է դարձել.
Ա՜յ իմ ձեռացս, որ հող ժողվել եմ զեչխանաց
Մ՚ազապակաս ճակտիս վըրայ եմ զայն ցանած.
Ա՜յ իմ ոտացս, որ սուրբ կոխել են գմբեթունք
Ուր լոկ արեւն հասցընէր թոյլ թոյլ փայլփըլմունք.
Ա՜յ զիս, վա՜յ վա՜յ, որ զՀայաստան մեռել դիտեմ
Ի գերեզման դարձել տեղիք Նըման յԵդեմ…
Ո՜ւռ գերեզմանք, ո՜ւռ մեռեալք, քաղցր ըլլի ձեր քուն,
Քանզի լըռեց եւ ընկաւ սուր ձեր թըշնամւոյն.
Բայց դու Հայո՜ց աշխարհիկ, երբ դու այլ հանգչիս,
Ե՞րբ ալ ցամքին աղբիւր արտասունք Նահապետիս։
Ահ, ես ա՛յլ մեծ չարիք տեսնում ողբամ ըզքեզ,
Ողբամ հազար, որ այդ չարեաց պատճառ դուն ես։
Ա՛րեկ ա՛րեկ հայր իմ ողբոցըս, դու Մովսէս,
Իմ սիրտ այլ չի երթալ, ամա՛ դու քաջ գիտես.
Քո Երեմիկդ ու քո Զաքարդ հետ ալ ողբա՛
Հայոց ազգիս տարակուսեալ գըլխուն վըրայ.
Ողբամ ըզքեզ Հայո՛ց աշխարհ, ողբամ ողք բիւր,
Քան ըզգետերն յորդորցընեմ աչացս աղբիւր.
Պէմ ժողովուրդըն շըւարած մընաց մոլար
Ոչ ձեռընտու, ոչ առաջնորդ ունի, ոչ ճար.
Առան վերցուան մեր թագաւորքն ու քահանայք,
Խորհրդականքն եւ վարժապետքըն քաջիմայք,
Աթոռանին ու սուրբ բեմերն ի լաց յողոք,
Ի բըռնութեան ներքեւ ընկած կանչեն բողոք..
Մեշտ ոտնակոխ, մեշտ բարեզուրկ, ի լաց ու կոծ
Ձարըն կամէ զքեզ ո՛վ բարի աշխարհ Հայոց։..
Ա՛յլ դու լըռէ ծածկէ զչարիք երկրիդ Մովսէս,
Մ՚աներ զամէն, որ ի Հայոց մէջ կու տեսնես.

---

1) Բերդք եւ բըրգունք, կամ աշտարակք։

Մի զայն եղբարց հարազատաց ընդդիմութիւնս,
Զանգիտութիւն, որ ի հաւատք եւ ի յուսմունս,
Եւ մի՛ զարդար՝ բայց խիստ երկնից ծեծ վրէժխնդիր,
Որ զՀայաստանն յօտարաստան ըրաւ ցան ցիր։
Ա՜հ, Նահապետ, ծածկէ կնկղով ըղձլուխդ ու զքնար,
Թուլցուր թելերդ, եւ այլ սըգով յառաջ մ'երթար։—
Գիտեմ, գիտեմ այն մեր մեղաց պարտքն էր արդար.
Սակայն երկնուց արդարութիւն չունի՞ վըճար.
Եւ, հրէական ազգին նըման նըզովք յերես,
Դարէ ի դար յուսահատեալ տի գնա՞ն Հայերս։
Չէ. ողորմածն Աստուած թողել չէ զՀայաստան.
Նա ինքըն զինքն է գըլորել յայս խոր զընդան.
Երբ որ կամի՝ կանգնի. բայց թող գընան կըռիւք,
Երթայ նախանձ. թող գայ սէր, թող միանան սիրտք.
Յայնժամ չողբայ զքեզ Նահապետս՝ Հայո՛ց աշխարհ,
Ալ երանիս կարգայ բերանս հողու հաւասար։
Ի յեզր հողուս երդումն ուզեմ ձեզնից ո՛վ Հայք,
Այս հառաչանքս ըլլան ձեր ձայն, ձեր այս փափաք.
Որ հանգարտիկ ըլնէ հոգեակս երթայ խաղաղ,
Գերեզմանիս ծագէ արեւն Հայոց ծիծաղ..
Թէ չէ՝ քարշեմ զազէկըտուր թելիկ սըրտիս,
Ի սեւ սարուկն համբուրեմ զՀայըն որ ծածկէ զիս…
Ա՜հ, թող մեռնի ծեր Նահապետ, մտնու տապան,
Այլ թող ըլնէ ի տապանէն նոր Հայաստան։

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանեան։

---

146

Մասիսու սարերն։

Աւագ Մասեաց սարն ելեր բարձրացեր՝
Յամպերն ի վայր ձայն ահեղ արձըկէր.
«Ինձ մըտիկ արէք հաւասար դուք լերունք,
Ես բարձր եմ քանց ձեզ, ճակատս ի յաստղունք.
Ես Արարատեանն եմ Աւագ Մասիս,

Արծիւ քան զամէն լերունք աշխարհիս.
Աստուած զիս չափեց, Ադամ նախ տեսաւ,
Տապանն հիւր եկել յիս, Նոյ յիս իջաւ.
Հայկն ալ յիս դարձաւ փառօք յաղթական.
Զիս Արամեան կընքեց ու Արայն.
Տիգրանն ինձ գերի բերաւ զԱժդահակ,
Հայոց թըշնամեաց բանտ եմ գըժընդակ.
Արտաւազդն ի խոր յիմ քարայրս ի ներս
Աշխարհի պատանդայ տալ թունդ եւ աւերս։
Յիմ կողէս իջուց Տրդատ մեծազօր
Սուրբ Էջմիածնայ հիմունքն ահաւոր։
Զիս բոլոր պատեն անուանք եւ փառք հին
Քաջաց դիւցազանց Հայոց աշխարհին.
Ես միշտ եմ պարծանք Հայոցըս մեծաց
Նոքա այլ պարծանք են ինձ անմոռաց։
Լերինք եւ բարձունք, ահա տեսէք զիս,
Ես ձեր թագաւորն եմ Աւագ Մասիս։

Փոքր Մասիսն ասէ.

Ես քո հարազատն եմ Աւագ եղբայր,
Փառաց պարծանաց հաղորդ հաւասար.
Դու բարձր ես քան զիս, քանց լերունք ամէն
Զքեզ չէ կոխել՝ բայց հրաթեւ սրոբէն.
Քո պարծանքն են հին հաւատր արեւու
Որ ողջունէ զքեզ նախ ամէն առաւու։
Բայց մի՛ շատ զոռար դու յամպերտ ի վայր,
Ինէ կու ճանաչես զիս քո փոքր եղբայր.
Զըրնի որ լերունքն ու բարձունքն ամէն
Ի քեզ շուրջ հային ու տընազ անեն.
Զըրնի որ ասեն, թէ մի՛ այլ պարծիր,
Զի հիմիկ փոխուել է Հայոց երկիր.
Ինէ փառք, թէ պարծանք անցել են գնացել
Քո բարձըր գըլխէտ ի վայր են սահել,
Նըման աղբերացդ այդ ու գետերուդ,
Որ կողերտ ի վայր իջնուն գունդագունդ,
Դաշտեր ու ձորեր անցնին եւ երթան
Ու թափին ի մայր ծովն անդարձական։

Աւագ մասիսն ասէր.

Կու գընան թափին, կու մընան անանց,
Ալիք կու գընան, ալիք գան յետուանց,
Աւագ Մասիս բարձր, աղբիւրքն անըսպառ
Փառք ու պարծանքն այլ ձըգուի դարէ դար։

Փոքր Մասիսն.

Ընծիր քո փառքն այլ նըման գետերուդ,
Որ հետ կու երթան, հետ գան շուտ ու շուտ.
Եմ ես այլ Մասիս, ես այլ սար քաջաց,
Երբեմն էի ես այլ տեղ պարծանաց.
Շատ փառք ունէանք, հիմիկ ի՞նչ ունինք,
Աւա՜ղ, լուռ ամօթ, միայն նախատինք.
Չեմ, չեմ այլ փառաց ու բաղդի նըշան,
Այլ մեռելութեան Հայոց մահարձան.
Կան, գընան, դառնան պլիք գետերուն,
Չիդառնար որդւոց՝ պարծանք հայրերուն.
Մի՞թէ կու հալե՞ն անցեալ ամառներ
Օ՛այս մէկ ձըմերանս ահագին սառներ...
Պահ մի կու զարնէ արեւուն փայլակ,
Դարձեալ կու թողու ցուրտ, դարձեալ սեւակ։

Աւագ Մասիսն.

Մի՛ այդպէս ասեր Սարուկ, մի՛ այդպէս
Միթէ քան զԱւագ դու լա՞ւ կու տեսնես.
Ես իրք կու տեսնեմ քանց քեզ առաւել.
Յերեւէն Հայոց փառքըն չէ կորել։

Փոքր Մասիսն.

Բարձրէն կու նայիս, բարձըր կու տեսնես,
Գըլուխդ ի յարեւ՝ զամէնքն լոյս կարծես.
Յածի՛ր ինձ նըման քիչ մ'այլ խոր նայէ,
Քո դուրսըն ձիւն, ներսըն պաղուկ քար է.
Հազար գարունք գան, թէ հազար արեւ
Ի ներս չեն մըտնուր, անցնին քո վերեւ.
Այսպէս սառնեղէն իրք մի զՀայք պատեր,
Յուրան այլ, վախեմ, զսիրտն ի քար է փոխեր։

Աւագ Մասիս.

Ով խոր կու նայի՝ Թող պինդ խոր մըտնու,
Ջոկ կեղեւ տեսնել՝ չէ՛ սուր աչերու.
Դու քիչ մ՚այլ իջիր, քըչի՛կ մ՚այլ ցածիր,
Ու՜ եկ իմ խորունկ ծոցիս մօտեցիր.
Հանց տեսնուս ահեղ կրակներ ու հնոցներ,
Որ վախուդ հալիս, գաս դաշտի ընկեր.
Աչէ՛ մէյմ՚ աչէ՛ զայս վէհս ահագին,
Որ յատակն յանդունդ հասանէ երկրին.
Բերանըն ձիւնով, սառով կու ծածկի
Ներսըն գըժոխոց քուլթուկ [1]) բորբոքի.
Գիտես թէ մարած է զինչ հին կանթեղ,
Բայց թէ տամ քըչիկ մի քուքուրտի դեղ [2])
Յանկըրսկած դաշտերըս ամէն ի ման գայ,
Դու այլ հետ լերանց դողաս զինչ տըղայ.
Անգուման զերկրիս սիրտն ի վեր բերեմ,
Աղմուկն ու զմոխիր ի սարերս հանեմ.
Սեւ պատեմ զերկիր ու սեւ զամպերն այլ,
Ծուխ ու բոց անեմ, կարկըտամ 3) փայլ փայլ.
Թէ ուզենամ նոր կանգնեմ ես սարեր,
ՅԱրագած դէսպան զըրկեմ բարկ քարեր.
Բոցեղէն գետ մ՚այլ հետ ածեմ վազան [4])
Վա՜յ որ դէմ կանգնի, լափեմ զինչ գազան:
Հանց գիտցիր զԱւագ Մասիսն, ո՛վ եղբայր,
Հանց ցըրտիկ ծոցեր՝ ունին սիրտ հրավառ.
Մ՚ասեր թէ դոքա մեռած են մարած,
Զանցնիր այն ճըրագն, զոր վառեց Աստուած:

Փոքր Մասիս.

Վառել է վառել, բայց մի՛ բարկանար
Թէ բանիկս ասեմ, Աւագ իմ եղբայր.
Բայց որ կու վառէ, նա ինքըն մարէ,
Կեանք տայ ու կ՚առնու, ասաց Մարգարէ.
Չըլնի որ Հայ ց արեւն այլ անցել,
Մեզ արեւմըտքի լուսիկն է մնացել:

---

1) Կոճղ: 2) Ծծումբ: 3) Տեղալ կարկուտ: 4) Վազեցուցանել:

Աւագ Մասիս.

Աստուած մահ չարար, կ'ասէ իմաստուն,
Ինքըն մեռելոց այլ տայ յարութիւն.
Քարէն կ'ելնէ կայծ՝ ու կայծէն կայծակ.
Անտառ կ'այրէ այն, որ կայր մոխրի տակ.
Մըտած արեւ՝ նոր լուսով գայ յառաւուն,
Մոմիկն այլ մարած՝ օր տայ գիշերուն:
Թէ ցուրտ, թէ մարած ասես զՀայաստան՝
Կայ ժամ որ վառի, տայ կենաց նըշան:

Փոքր Մասիս.

Ես կու վախենամ յայն սեւ ամպերից,
Որ մեր Հայրապետքն են տըւեր կըսկիծ,
Ներսէսք ու Մովսէսք Հայոց սեւ օրեր
Անցել են գալիս, Հայոց շատ երեր:

Աւագ Մասիս.

Ամպքն այլ փարատին, մըրըրիկն այլ դադրի,
Իսկի անփոփոխ չէ բաղդն աշխարհի.
Զոր Աստուած կ'օրհնէ՝ մարդ չանիծանէր.
Զանէծքն առին լոկ ու կ'առնուն չարեր:
Հայք մոռցան զԱստուած ու մոռցան զիրար,
Ահեղ հովերու եղան դիւրուտար.
Երբ յիշեն զԱստուած, զիրար այլ յիշեն,
Միաբանութիւն ու սէր մէջ քաշեն,
Թողուն խարդախանքն ու զանձնասէր շահ,
Ըլնին իրարու օգնող ու վըստահ,
Զանեն չար մէկում՝ ուզեն ըզբարին,
Սիրով համբերեն, յուսով աշխատին.
Յայնժամ ասա՛ փոքր եղբայր, ո՞նց թըւի,
Ըլնի՞ թէ Հայոց ճրագիկն այլ վառի:

Փոքր Մասիս.

Ըլնի թէ այդպէս անէ ազգն Հայոց՝
Ես կու հաւատամ թ'իւրեան վառի բոց.
Կու հաւատամ երբ սիրտք գան ի բարին,
Ի մեզ այլ դառնայ մեր պարծանքըն հին:
Այլ երբ տի ըլնի որ վառին սըրտեր,
Ե՞րբ տի տեսնունք զայն երջանիկ օրեր:

Աւագ Մասիս.

Ինձ մըտիկ արէք լերունքըս հաւասար.
Հանց գիտացիր դու այլ իմ փոքր եղբայր.
Երբ չէր զարկեր դու առաջին անգամ
Ես Աւագ Մասիս ներքուց որոտամ,
Կանչեմ ու շընչեմ արձակեմ ծուխ բոց,
Սասանեցընեմ զԱրարատն Հայոց,
Այս լինի նըշան Հայոց աշխարհին,
Թէ գայ ժամանակ, որ գան փառքն այլ հին.
Բայց միայն սիրով հանդարտ ու խելօք
Ջանք դընեն բարւոյն ու չըլնին անհոգ:

Փոքր Մասիս.

Կացէք մեզ վըկայ լերունք դուք հաւասար,
Մեծ խոստմունք երետ Աւագ Մասեաց սար.
Երբ շարժի Աւագ, շընչէ ծուխ ու բոց,
Նըշան է բարւոյ աշխարհին Հայոց:

Աւագ ու Փոքր Մասիսն.

Բայց միայն սիրով հանդարտ ու խելօք
Ջանք դընեն բարւոյն ու չըլնին անհոգ:

Նահապետն այլ ասաց.

Շարժիր հա՛ շարժիր Աւագըդ Մասիս,
Արձան պարծանաց Հայոց աշխարհիս.
Շընչէ հա՛ շընչէ ծըխին ծիրանի,
Որ քո մանկըտեացըդ նըշան ըլնի:...
Ահա շարժեցաւ Աւագըն Մասիս,
Արձան պարծանաց Հայոց աշխարհիս.
Ահա շարժեցան դաշտք Արարատայ.
Դուք այլ շարժեցէք մանկըտիք Հայկայ:
Ահա շընչեցաւ ծուխըն ծիրանի.
Դուք այլ շընչեցէք հոգի հայկազնի.
Բայց միայն սիրով հանդարտ ու խելօք
Ջանք դըրէք բարւոյն, ու չըլնիք անհոգ:
Շարժիր ա՛հ շարժիր դուն այլ Նահապետ,
Մասեաց սարերուն շընչիկն ա՛ռ մէկ հետ:
Ահա շարժեցաւ ծեր Նահապետն այլ
Ո՛վ դէպ ի Մասիս իւր հետ կ՚առնու քայլ:

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանեան:

147

Հրազդան [1]։

Հրազդա՛ն, գետակդ իմ Հայրենի,
Հրազդա՛ն, ջրիկդ իմ անուշիկ,
Ահա թողել զհողն օտարի
Դարբկէնս հասել եմ պանդըխտիկ.
Ա՜յ Հրազդան, ո՜յ ջուրք Հայրենիք,
Ա՜յ ափունք, յե՞ր լայք լռիկ։
Ես ձեր դրացնակն եմ, չէ՞ք ճանչել,
Սիրտս ըղձեզ չէ մոռցել իսկի.
Դուք կարկըջիկդ է՞ր էք մոռցել,
Ծիծղուն երեսդ է՞ր սուգ ունի։
Ա՜յ Հրազդան, ո՜յ ջուրք Հայրենիք,
Ա՜յ ափունք՝, յե՞ր լայք լռիկ։
Ա՜հ, մեր կանաչ անտառիկս ու՞ր,
Ու՞ր տաղւարիկս, ու՞ր մեր նըշիս,
Հովուն եղան թէ ծովուն կուր.
Ու՞ր մեր տընակն, ու՞ր մեր այգիս.
Ա՜յ Հրազդան, ո՜յ ջուրք Հայրենիք,
Ա՜յ ափունք, յե՞ր լայք լռիկ։
Ու՞ր ես աչիցըս լոյս Խանտուկ.
Իմ ընկերներն ու՞ր են Հրազդան.
Մի՞թէ Պարսի՞կն տռաւ գերուկ,
Մի՞թէ ամէնքն ի հո՞ղ դարձան.
Ա՜յ Հրազդան, ո՜յ ջուրք Հայրենիք,
Ա՜յ ափունք, է՞ր լայք լռիկ։
Ա՜հ, անցուգնաց եղել ամէն.
Ա՜հ, անցուգնաց է Հայաստան.
Զիս անմէկիկ թողած աստէն
Հեա անցնիս գնաս դու՛ն այլ Հրազդան...
Անցի՛ր գընա ջրիկդ Հայրենի
Արտսունք հերիք են Դաբգենի։

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանեան։

---

1) Հրազդան, այժմ Զանգի, մեծ Հայաստանում, դուրս է գալիս Գեղամայ ծովէն (Սեւանայ ծով, Գեօգչայ, Геокчайское озеро),

Շուշանն Շաւարշանայ։

Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Պայծառ պատկեր կուսանաց
Հայոց պըսակ պարծանաց։
Ճ'ակատն ի քօղ խոնարհի 1),
Յանած ի հով խապոպիկք,
Տատրակ տոտամբ 2) մանրուքայլ
Մա՛ն գայ ի դաշտ ցօղափայլ.
Մեղըր կաթէ շրթներուն,
Փայլկըռտան աչքըն սիրուն։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Հիւսիսային մեր աստղիկ
Հայաստանեայց գեղեցիկ
Արեւնըմանն հայելի,
Արքայդստրիկ նազելի,
Սիրասընունդքըն Սանդուխտ,
Որում արեւ ելքն ու մուտ՝
Փափագէին սրտմաշուկ,
Հարսն է ելեր շնորհաշուք·
Կուսանք Հայոց նոր շուշան,
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Քանց զարուսեակ պսպղուն
Ի մէջ մանրիկ ամպերուն,
Քանց վարդենի արեւակ
Ի խնծորի տերեւակ,
Քանց Երասխայ նունուֆար
Գըլխիկն ի ցօղ շարուշար,
Քանց զամէնն այլ գեղեցիկ
Նազի Սանդուխտըն քամբշիկ։

---

անցանում է Երեւան քաղաքը և միանում Երասխ (Արազ) գետի հետ։

1) Գեղեցիկ։ 2) Տատրականման ոտիւք։

Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Աբպտակ սատերն յայնոր տես
Հալին լճին կարմրերես.
Մառք ու ծաղկունք տան պլպլուկ [1]),
Խօսի ամէն պըլպըլուկ.
Նարկիզ՝ աչեր բիւր հանէ
Սէր որ Սանդուխտ անցանէ.
Յայնոր շընչէն հաւասար
Մանծկին ծաղկով ձոր ու սար։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Բարձրապըսակ ճակատներ
Հողու հաւասար են եկեր.
Ոսկի գոհար տեղ ցանած
Ջորն են լերին հասուցած
Եւ մարգարտէ բարկ աւազ,
Սէր որ անցնի հեզանազ
Հայոց օրիորդըն Սանդուխտ՝
Տոտանց հետքին [2]) գան ի յուխտ։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Թագւորորդի կորիճներ
Ընդ գարպասներ դուրս ընկեր,
Ի յԱլանաց մինչ Պարսիկ,
Մինչ ի Հոռմ, մինչ ի Հընդիկ
Բերանաբաց կու նային,
Երնեկ տալով փեսային,
Որ զօրիորդն այն Հայոց
Յիւրըն տանի տուն եւ ծոց։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Բայց Սանդըխտոյ արժանի
Չըկայ մին տեղ արքունի.

1) Բողբոջ։ 2) Հետք ոտից։

Յայտնար աշացըն կամար
Ցած գայ երկիրս ու խոնարհ.
Երկինքն ասէ, իմ գահէ
Սանդուխտ պիտէ՞ր Թագուհի.
Ծո՜վ՝ իմ ծըփանցըս ծիրան՝
Սանդուխտ առէ տո՜ւր հրաման։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։

Բայց մեծ մի կայ քան զերկիր,
Լայն՝ քանց ծովուն ծըփան ծիր,
Եւ քան զերկին բարձր անհուն,
Պայծառ քանց լոյս արեւուն.
Կայ մին ահեղ Թագաւոր
Որում չըկայ չափ սինոռ [1].
Նա՛յն, եւ միայն այն պիտի
Փեսայ կուսին Սանդըխտի։
Կուսանք Հայոց, նոր Շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։

Իւր լոյս դարպասն է պատրաստ
Կարմիր կանաչ առագաստ,
Եւ ատաղազարդ կապուտակ
Տատրակ տոտանցն է յատակ.
Ճապուկ ճորտերն են հրեղէն,
Սէր որ նային կայծ թափեն.
Ինչ որ խօսին՝ երգ է այն,
Խնդում ու սէր ամենայն.
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։

Ի Սանիրայ սուրբ սարէն [1])
Փութայ փայլեկըն [2]) Թադէն,
Երկնախօսիկ փեսաւէր
Օրիորդին տայ հրաւէր.
«Տէրն այն երկնուց և երկրի,

---

1) Սահման։ 2) Սանիր Պաղեստինոյ, հայրենիք Թադէի առաքելոյ։ 3) Կարապետ. յառաջընթաց։

Զոր պաշտէ քո մեծ քեռի [1])
Մերեց ըղձեղ տըրտմէն կոյս.
Ե՛կ հարսնացիր ի Քրիստոս։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։

Սանդուխտ ելաւ դարպասէն.
Աշխեց Հայոց տունն ամէն։
Սանատրուկ հայրն որ լըսեց
Յուզի Թախտէն [2]) վայր վազեց.
«Սանդուխտ, որդուն իմ դստրիկ.
Ուրանա՞ս դու զքո հայրիկ.
Ուրանաս դուն զԱնահիտ,
Պաշտեմս զաստուածն Հրէից։
«Աչացըս լոյս ոսկեթել,
Աչքս արտասուք դեռ չէր կաթել.
Քեզ համար՝ դո՛ւստր աններման
Գետեր յաչերս ի վայր գան...
Սանդուխտ, ուզէ՛ ինչ կ՚ուզես,
Արամազդա՛ւ, քեզ տամ՝ ես.
Թէ Հայաստանըս է պզտիկ՝
Զէնքս ու զօրքերս են հերիք.
«Հրամէ՛ դստրիկ իմ աղուոր,
Հայրիկդ ըլլայ քեզ փեսաւոր։
Անուշ աղեղս ու երթամ
Բոլոր աշխարհս քեզ դնամ.
Զխաքանն [3]) ուզես թէ զկեսար [4])
Բռնեմ բերեմ քեզ համար.
Թէ ծովուն մէջն ուզենաս
Ինքնեղ կանգնեմ քեզ դարպաս.
«Սանդո՛ւխտ, քու հայր քու գերի,
Լուռ ի Հրէից կա՞ց հեռի.
Լըսէ ինձ դուստր իմաստուն
Լոյս իմ աչացս արևուն

---

1) Աբգար թագաւոր։ 2) Գահ։ 3) Չինաց թագաւորն։ 4) Կայսր Հռովմայ։

Օտար կըրօնք մի՛ պաշտեր
Քու հօր գըլուխ սեւ մ՚ուզեր.
Սանդուխտ դստրիկ իմ սիրուն
Աղօթէ՛ հօրդ աչերուն»։
Կոյսըն կեցեր լուռ յուշիկ
Հապա հառաչեց անուշիկ.
«Հայր, քանց ըզքեզ սիրելի
Չըկայր ոքիկ մ՚ինձ յերկրի.
Բայց երբ զԱստուածն իմ գիտցայ,
Սէր՝ քանց զամէն մեծ ճանչցայ։
Պաշտէ՛ զԱստուած քո քեռուն,
Հապա չերթամ ես հեռուն։
«Ամ [1]) թէ ասես դու զՅիսուս
Որ կեանք բերաւ մեր հոգուս,
Խէ զիս չուզես քրիստոնեայ.
Խէ այլ խօսիս զԱնահտայ,
Սանդուխտ այլ չէ քո դստրիկ,
Սանատրուկ չէ իմ հայրիկ.
Յիսուս՝ իմ հայր իմ փեսայ.
Այս իմ վերջին խօսքըն ըլլայ»։
Զայս վերջին խօսքն երբ լըսեց
Սանատրուկ դէմքըն ծածկեց.
Փերթ մի փըրթաւ ի սըրտէն,
Ու հեռացաւ Սանդըխտէն,
Կանչեց նըժամն տախծու,
Երդուաւ լուսնի ու արեւու.
Զէտ ըզկայծակ սեւ ամպուն
Բերնէն փըրչեց բօթ մահուն։
Դողաց սարսեց Հայաստան.
Սանդուխտ վազեց ի զընդան.
Կարծըր կոճղէկն ըրաւ գահ.
Զարդերն ամէն փայլըն մահ.
Կուսական քօղըն սեւակ
Սիպտակ ճակտին վայլէր թագ.

---

1) Բայց։

Ոսկեզեղ բանակացն ապրանքեան
Պողպատ շղթայք շառաչեան։
Սուրբ առաքեալն Հայոց լոյր.
Սապից կուսին պարզիկ տայր.
Երկուսն եկած միաբան
Փրկչին յերկինք փառք կու տան.
Ձայն Սանդղխտին շարժէր սիրտ,
Հայք Թողուին զԱնահիտ.
Բընար քըքմին մընայր մունչ,
Լսուէր սաղմոս հոգեշունչ։
Սուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Ահա եկեր կոյսն Հայոց
Փրկչին երթայ հարսն ի ծոց.
Ծէտ բարկ արեւ յարշալոյս
Ինհեզազարդ սուրբքըն կոյս
Սանդնէր պայծառ ի գիմաց
Հայոց հազար բիւր զօրաց.
Պետին թընդայր ի հիմանց,
Երկինք շարժէր ի նախանձ։
Սուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Սանատրկոյ սեւ հրաման
Հնոցի ծըխոյն գայր նըման
Այծէր աչաց բարկ արտասունք,
Լային կուսանք եւ հարսունք.
Ի մօր գըրկին տըղայն լայր,
Մայրըն լալով յետ դառնայր.
Արտորին տըղայ միաբան,
Եւ լայր ամէն Հայաստան։
Սուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Ամէնք կանչեն, «Թագուհի
Աղօթէ՛ Հայ աշխարհի.
Քո թագուոր հօրդ արեւուն,
Քո անմըրման լուսերան.

Նայիր Սանդուխտ, մի՛ մոռնիր,
Մի՛ բերեր մութ մեր երկիր.
Սանդուխտ, ամէնս քեզ գերի
Ողորմէ՛ հայ աշխարհի»։
Սանդուխտ երկինքց լսէ լոկ
Եւ լացերուն հայ անհոգ։
Լալով զինուորքն յառաջ գան,
Զէնքերն ի յուս հու դողան։
Շատ լարեցան աղեղունք,
Շատ թափեցան դիակունք.
Բայց չըգըտաւ մահ ամօթ
Ի գեղեցիկ Սանդըխտոյ։
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան։
Սըման ծաղկանց կարկտահար,
Երբ նա գիտեց զօրս հազար՝
Զիրար զարկած եւ ընկած
Եւ զմահն իրմէ սարսափած,
Շարժեց զճակատըն սիրուն
Նըստունք աճեց աչերուն,
Եւ հառաչեց առ Յիսուս,
«Տէր իմ, հրաման տուր հոգւոյս»։
Երկնասարդ մի յանկարծ
Կայծակնաթափ սուր շողաց.
Ուրկից արդեօք էր եկեր.
Դահի՞ճ, թէ տաք սիրոյ տէր.
Երկի՞նք՝ թէ հա՞յրն էր զըրկած.
Ոչ ոք գիտէ զայս դիպուած։
Սուրըն շողաց ու զարկաւ...
Շուշան Սանդուխտ՝ վարդ ընկաւ։
Սուրըն շողաց մէկ մի փայլ
Սանդուխտ ծաթեց իրեք այլ.
Կարմիր կաթեր ի կըրծքէն
Վարդեր բուսան չորք գիքէն.
Նըքըն կոկոն մանուշակ,
Ո՛մ ինչ նայուածք անուշակ.

Ափկիցք շուշանք կիսափակ.
Մ՛էջ շրթներուն ի՛նչ կըրակ:
Ի ծայր լերին Սանատրուկ 1)
Զրեղէն կառքեր տեսնէք դուք.
Զոր երկնաւոր թագւորն այն
Զոր Սանդըխտոյ է փեսայն.
Օրիորդն Հայ աշխարհի
Նախ քան զամէն վեհայուհի
Ընտրեց իւր հարսըն կարմիր,
Զանեց թըռուց յերկնուց ծիր:
Կուսանք Հայոց, նոր շուշան
Տեսէք ի դաշտ Շաւարշան:
Խներթեր ծերմակ ու կարմիր
Ներկեր երկինքն են և երկիր.
Ելէք կուսանք ժողվեցէք
Վարդն ու շուշան զուգեցէք.
Դըրէք գալար պայծ մարմին
Խաղէի հետ ի շիրմին:
Սանդո՛ւխտ, Հայոց կոյս քընքուշ
Զանգչէ ի հողս այս անոյշ.
Կուսանք Հայոց, քեզ շուշան
Ներեն ի դաշտ Շաւարշան:
Ահ, թէ քանի՛ երջանիկ
Է՛ Հայաստան հայրենիք՝
Որ հանց բերաւ բոյս կուսան
Սեւկից հազար կոյսք բուսան:
Երկինք կապուտն երկրի հետ.
Քեզ ի՛նչ երգէ Նահապետ,
Սանդո՛ւխտ, անմահ թագուհի
Իմ Հայաստան աշխարհի:
Կուսանք Հայոց, նոր շուշան
Ներէք ի դաշտ Շաւարշան:

Հ. Ղևոնդ վ. Ալիշանեան:

1) Լեռան յանուն արքային:

149

### Պըլպուլն Աւարայրի:

Ո՞նց գաս իմ լուսնակ հեզիկ ու հանդարտ
Համասփիւռ լուսովդ ի լեռ, ձոր եւ արտ,
Եւ ի Նահապետս, որ մըտօք մոլար
Գիշերաժամիկ ժուռ գաս յԱւարայր,
Ուր քաջ ու անհըման իմ հարք հայկազունք
Ընկան զէտ հըսկայ, եղան զէտ զուարթունք.
Մի՞թէ գա՛ս սըփոփել ոսկերաց սըրբոց
Ձիւնափայլ ամպէգ ոսկեթել ծածկոց,
Թէ՞ ճերմակ ճակտիդ՝ թէպէտ եւ պայծառ
Ըմպացս արեանէն ուզես կարմիր վառ.
Թէ՞ լըռիկ մընջիկ ափշես տակաւին
Թէ՞ ինչպէս ընկաւ Վարդանն ահագին,
Մահու սեւ ըստուերն ի սիրտ թըշնամեաց,
Զհոգին ձըգելով յերկին առ Աստուած:
Դու այլ ո՛վ Տըղմուտ տըտում ու արիւնուտ,
Որ գաս կամկար լար ի մէջ շամբերուտ.
Եւ հովիկդ, որ գաս ի Մակուայ քարէն
Կամ ի ծեր Մասեաց սըրբազան սարէն,
Դու այլ ինձ նըման զողզող եւ երեր
Թոյլ թեւօք անցնիս սարեր ու ձորեր,
Անտառէ անտառ, տերեւէ տերեւ,
Կոծկոծելով գաս ի դաշտիս վերեւ,
Զայս մաշած շընչիս վերջին հառաչանք
Ձըգել ի Հայոց սըրտից արձագանք:
Ա՜հ դու բարեկամ այրած սըրտերու,
Խօսնակ գիշերոյ, հոգեակ վարդերու,
Երգէ պըլպուլիկդ երգէ ի սարէդ,
Զանմահ քաջերն Հայոց երգէ հոգւոյս հետ.
Թադէի վանուց ձէնիկդ ինձ դիպաւ,
Սըրտիկս՝ որ ի խաչն էր կից՝ թունդ առաւ.
Ի խաչին թեւէն թըռայ ու հասայ
Գըտայ զքեզ ի դաշտ քաջին Վարդանայ:

Պըլպո՜ւլ, քեզ համար մեր հայքն ասացին
Թէ չէ հաւ՝ պըլպուլ մեր Աւարայրին.
Եղիշեայ հոգեակն է քաղցրաղըռուցիկ,
Որ զՎարդան ի վարդըն տեսնու կարմրիկ.
Չըմեռն յանապատ կու գնայ կայ ի լաց.
ՅԱրտազ գայ զգարունն ի թուփ վարդենեաց,
Երգել ու կանչել յԵղիշէին ձայն
Թէ պատասխանիկ մ՚արդեօք տայ Վարդան:
Թէ կիսահոգի պըլպուլիս նըման
Չէնիկս հանի ձեզ որդիք Թորգոմեան,
Որդի՛ք, որոց հարք քաջք ու առաքինիք
Լըցուցին զդաշտեր, գըռքեր ու զերկինք.
Թէ ի սրտի ծոցդ կաթիլ մ՚արունիկ
Կայ Հայկայ 'զարիւրէն կամ ի Պահլաւիկ,
Թէ զփառքն հայրենեաց ձեզ այլ գըրեք փառս,
Հետ Նահապետիս ելէք ի յԱրտազ:

Ա.

Կէս գիշերն առել էր գիշերավար
Լուսնակն յամպի տակ բացխըլփիկ խաղայր.
Հովըն շըրջառիկ կախ թեւօքն յանտառ
Օդոց եւ ծառոց հանգիստ կու կարգայր:
ԶԱւարայրի մութն ու կանաչ ծոցիկ
Ծայրէ ծայր ճըղքած Տըղմուտն հանդարտիկ,
Մեռաքանդըման անձայն խաւարիկ
Կու թաւըլեցընէր հազար բիւր ալիք.
Ի՛ յաստից ու անտից կան երկու բանակք
Իբրեւ անկըռիւ ընկած մառունակ.
Յերկուցըն մէջյ բարձրացած լուսնակ
Կու թըւի վահան զօրաց պահպանակ.
Ոչ մէկ հընչէ ձայն, ոչ մէկ շարժի զէն.
Կարծես յաղթըւեր ամէնքն ի քընէն,
Հաղիւ հազ ձիանքըն թօթուին գոփեն,
Դողան պահապանքն ի կաշեվըրանէն:
Մէկ գունդն է Պարսից հազար ու հազար,
Որոնց վըրայ ամպ տարածի խաւար.

Մ՚էկ գունդն այլ Հայոց է թըւով ցանցած,
Լուսնի լուսով զէնքըն փայլէն վառ վառ.
Ոսկերն ուռուցիկ. թեւերըն քաջոյժ
Որինչ հանգչած բազէք՝ կան թեւօք աշխոյժ.
Որինչ ծով ահագին որ ալեօքըն խռած
Յանկարծ տարածէ զափունքըն վառուած։
Բայց յայնչափ քաջաց քան զամենքըն քաջ
Մ՚էկիկ մի արթուն կայ գընդին յառաջ.
Թեւի տակն առած նիզակ ծայրախաչ,
Ձեռքըն ի ճակատին, ոչ ձախ հայի ոչ աջ։
Ընդ խարտեաձեւ լուսնին ճառագայթ
Ոսկեանգուն պատեանըն դիմէ հանդարտ.
Որինչ մայր գարանէ որ գիշերին ընդհատ
Դիտէ զքուն աղային կարմրիկ ու զուարթ։
Ըզվաթանուն հազար դադրած քաջերուն
Սանձըն ձեռք առած՝ վաղուան առաւօտուն,
Յաղթութեան անիւըն սահեցնելուն
Հընարք մըտածէ ու զՀայոց անունն։
Ի բոլոր ազգէն առաջնորդ ընտրած
Յաջորդ քաջամարտ բռնապետերաց,
Պատասխանատու ազգին Հայկազանց,
Զանոր բաղդըն յինքըն տեսնէ կախուած.
Յիսուն յաղթանակք շահած քըրտընքով
Անցնին ի մըտացըն մէկըզմէկով,
Դէմ իրենց կանգնին իւր փառքըն կարգով,
Միրան առնու եւ տայ մեծամեծ թըռչով։
Ներկայն նիզակովը յանկարծ վազէ դուրս
Որինչ կրակէ վիշապն ի յերկնից մըտուրս 1)
Ման գայ ու փըչէ գընդին Հայոց հուր,
Վարդանն այն վառած ի սէր եւ ի սուր։
Նայի ընդ երկիր, նայի ընդ երկին,
Չափէ չափչըփէ զզանակքըն երկուքին,
Քաշէ զմէկն ի վեր ի ծոց Գրիգորին,
Խոփէ զմէկն ի վայր սանդարամետին.

---

1) Ծիր Յարդգողին,

Ի մեծ բարկութիւն կամ ի տարակոյս
Զաշկունքըն շըրջէ ի յայս եւ յայն կոյս.
Կանչէ ի խորոց. Թէ ո՛վ իմ Հոգւոյս
Տացէ պատասխանի յետին Հարցուածոյս.

Բայց ինչ, բայց ինչ այդ տեսիլ յանկարծակած
Քաջին Վարդանայ երեւէ ընդ առաջ.
Ի փոքրիկ բըլրակ գետոյն եզերաց
Հուր բոց վերանայ ի ծոց խեթերաց:

Այծք անձրեւանման շուրս դին Հաւասար
Բոցեր յաջ ու ձախ, մէջըն լոյս պայծառ,
Եւ ի մէջ լուսոյն ճերմակ վեհափառ
Մէկ մի երեւի տեսոյք յոյժ անճառ.

Յօներըն քաշեր սուր կամար կարմեր
Հնոցի պէս կրակատան լոյս աՀեղ աչեր.
Ամպի պէս բացուած երկայն բազկըներ,
Կարծես թէ Հրեշտակ բազկըն է իջեր.

Իջեր ի բանակին եւ աՀեղ կըշռոց
Արշաւէ զՊարսըն ու Հայ, զըռէ տանեղօք.
Դառնայ ի Պարսիկն Հայի արՀաւըրօք,
Դառնայ ի Հայն՝ սէր կաթէ պատուաւորք:

Ի բլուրն ի վեր քաջըն Թըռուչի Վարդան,
Անվախ անկասկած ձայնէ սիրական.
«Նոր Մովսէս, Ներսէս, քաջ մեր Մատաթեան
Ա՛ս զի՞նչ երկինք գըրեն բաղդ վաղուանդ»:

Յայնժամ բոցափայլըն երեց Վանանդայ
Զաջն Հրեղէն ձըգէ ի ճակատ նորայ,
Այնքէ, ու զերկինքըն առջեւըն բանայ,
Հայոց բանակին մասն Հետ երեւնայ:

Տեսա՛ւ, Հիացա՛ւ Վարդանն ու կանչեց.
«Հայր, խօսի տեսիլըդ մեզ չըսըրեց.
Վաղիւ տի կըռուենք քաջութեամբըս մեծ,
Երիկունն Հանգչինք ի դարպասն աստեղց»:

Ասաց ու առաւ զօրՀնութիւն ծերոյն,
Խօթմեց զաջն Հրեշտակի, փըրթաւ ի բըլրոյն.
Դօմ տայր նիզակին փութայր գայր խեկոյն,
Փողեր ու կանչներ ըղգուեղ քաջերուն:

Ի

Դեռ չէ արեգակն ըղդլուխըն հանել,
Երկու բանակներն ըղդաշան են բըռնել.
Զէտ ջուխտակ բերդեր դէմադէմ կանգնել,
Յերար ուզեն գալ՝ փշրել ու փըշրել։
Նախանձափրփուր գըժոխոց սատան,
Ըզ Շապուհ ի ծոցն առած ու զՎասան.
Հոն թափել ուզէ ահու պէս գաժան
Սեւ ատելութիւն երկհարիւր տարուան։
Զերկհարիւր տարուան վըրէժ ահեղ ու մեծ
Հայաստանն եկել է խնդրել անկէց.
Խոսրով ու Տրդատ, Արտաշէան այլ գէջ,
Հայրենի պարտուց պահանջեն ըզվերըջ։
Ի մէկ մի վայրկեան ամէնքն են պատրաստ,
Փող կարծեն ըղձայն մեռանց անհանգարտ...
Ահա թռան գացին զարնուեցան հըպարտ.
Զինչ երկու վիշապք մեծ խրապարակա.
Մէկ շարժումն ահեղ, մէկ ահեղ հասան
ԶԱրտաւն է բըռներ թնդմամբ կայծական.
Ու է ի պատերազմըն թըշնամութեան
Այլ զատարերըքն ամէն կարծես աւրել գան.
Տրոփէ ոտընուորն ու դաշտըն թընդայ,
Հեծելըն գետին մոռցել՝ յոգ գընայ.
Օդն առանց հովի զէնքերով ծըփայ,
Հովիտն հետ ձայնէ, երկինք կու դառայ.
Հրդեհ է բըռներ ճարակի երթայ,
Դիւցազունքն այրէ հողու հաւսար տայ,
Բոցեղէն ալիք զօրացըն ծածայ
Դէմ այն բըռնութեանն ով կու դիմանայ.
Զինչ յաշխարհաւեր կրակէ-լափլեզող
Յանկարծ կայծ մ՚ի վեր ցատքէ յահ ու դող,
Կամ ի դաշտաձեւ բոցէն գայ խանձող
Յանկարծ երեւցող ու յանկարծ ծածկող.
Հանց խառըն խըմբէն քաջ մի հեծելուոր
Բարձր երիվարի վըրայ կանգնաւոր՝

Վեր վեր վազելով զինուք ճօճաւոր
Նետուի թըշնամեաց մէջ քանց գունտ հրաւոր.
Պըղինձ գըլխանոցն ու զրեհ երկըթի
Արեւուն շողէն կու փայլփայլկըտի,
Ճերմակ փետուրներն ի սաղաւարտի
Կարծես թըռցընեն ըզքաջ զայն մանկտի.
Նայիս սարսափած սըրտիւ ալէկոծ
Թէ ո՞վ այն յանդուգն է քաջաց Հայոց,
Արդեօք Արշաւիրն յաղթող սուր թռչնոց,
Թէ հըսկայաձեւ Խորէնըն մարտկոց.
Օ՜ Արտակ ու ըզՎահան պահ մի կու տեսնես
Իբր անխոնջ դարբինք վազեն հնոցն ի ներս.
Մեծամեծ ճայթմունք, տապըլմունք լըսես,
Ազգէն ու զինուոր փըռուած կու գըտնես:
Երթալով երթան ձայնքըն զօրանան,
Շեշտակի շաչիւնք լըսուին աղեղան,
Ահեղ կոփկոփիւնք վահան ընդ վահան,
Նետք նիզակք թափին անձրեւի նըման.
Բըլրաձեւ փըղաց ոտքերուն գարգափ
Աշտարակազարդ բըրգօք բերդակապ՝
Դաշտաց ու լերանց արկանեն սարսափ,
Երկիրն ի հիմանց տայ դըղորդ ու կափկափ.
Այլ քաջաձի Հայն անվախ համարձակ
Անճոռնի մարտկոցն ելնէ հակառակ.
Կորդուացին կշռէ ձողաչափ նիզակ,
Լեռան պէս փըլչի փիղն ու Պարսն յիր տակ.
Արձագանգք ամէն ձայն վերացընեն
Բանակներն ՚ի հետ կըկնեն ու սարսեն,
Շըփոթ եւ աղմուկ նոր տիրէ անդէն.
Պատառոտին գունդք յիրար անցնելէն:
Պարսից բանակէն հազարք են՝ փըռուած,
Ի Հայոց բանակէն հարիւր է ընկած.
Ձիակոխ ծաղկունքն յարիւն թաթաւած
Դըրօշուեն ըզկատղած եռանդըն զօրաց:
Ի Տըղմուտ գետոյն եզերքըն պըղտոր
Ուր արդէն արիւն հեղեղ կապէ նոր,

Եռան ու զեռան բանակք մօտաւոր,
Մ՚էկն անցնի, մէկն այլ չթաղու անցաւոր։
Բայց քաջ Գարեգին չընտրէ ջուր ցամաք.
Սարազգաստանման ցատքէ զինչ փայլակ,
Զառջի զարկածին գլուխն՝ իբրեւ գնդակ
Ձըգէ իւր զօրաց՝ որ գան համարձակ.
Զէտ մրրկոտ ամպեր Հայք առնուն ձիան
Լողալով կըռուին ի գետոյն բերան,
Փըսան ու ծըփան, զալիքն առնուն տան,
Գըրով արիւնով հանեն յանգիման.
Եղնեն զինչ քաջցած գազան ծովային
Ընխըտիր դիմեն ում եւ պատահին,
Շատ զօրք զօրավարք փըռեն ի գետին,
Հեծեալ հետեւակ միատեղ պառկին.
Մըրմըռան Պարսիկք զինչ ալիք վարած,
Յետ դառնան ի ձախ թեւ Հայոց քաջաց,
Ընկնին բարկութեամբ տան ու առնուն հարուած,
Վեր ու վայր թըռչին հողք հապարաց։
Հոն յառաջագէմ ու քաջ Գարեգին
Հայ զօրավարաց առնու պատիւ նախկին.
Հազար խոցերով ի զեհրս սրտին,
Գնա չուզեր անկեալ թողուլ թշնամին.
Զէնքերըն կոտրած՝ մարմին կիսամեռ
Գնա յուղարկաւոր հետն ալ շատեր,
Ընկած դիականց մէջ՝ խնդրէ սուսեր,
Կարծես յետ մահուն ալ կըռուիլ ուզէր։
Ահ Գարեգին, մութ իջաւ յաչուիդ խաւ.
Նա դեռ ձեռք շարժէ զսուրն առնել ի քարշ,
Շունչն ի կէս վըզքին կանչէ աղէխարշ,
«Եղբարք մի՛ թողուք զիս Պարսիցն այն գարշ»։
Յայն ձայնէն վազեն ջուխտով կայծակունք
Հաւսար Գարեգնի հարազատք սիրունք.
Զէտ ի բարձըր բոյն արծուիք սուրհակունք
Պաշտպանել իջնան զիւրեանց նոր ձագունք.
Ըստի ու անտի կան զինչ երկու հրեշտակ.
Գէմագէմ վառին այրքըն կարմրորակ,

Ոսատոմ թուխաչուին եւ ագռաւագիսակ,
Մառմիկ վարդահերն ու մօրթով ճերմակ.
Մինչդեռ Գարեգին սողայ անբարբառ
Ընդ հոգւոյն կըռուի մոռնալով զաշխարհ,
Եղբարքն առ ոտիւք թափեն զօրս հազար,
Երդնուն հոն մեռնիլ քան թողուլ զերար։
Ոհ սքանչապատառ վըսեմ տեսարան.
Հազիւ սուրբ երգմունքն ելին ընդ բերան՝
Զուխտ մի նետ յերկնից կարծեմ յանկարծ գան,
Զի Պարսիկն այնքան պատույ չէր արժան.
Գան նետերն ու զոյգ զարնեն կըտրըճնուն,
Որ երկու ձեռօք կըռուէին ի բուն.
Չունէին վահան, ինչ պէտք քաջերուն
Որ միմեանց վերայ կուրծք դըրին սերուն։
Եղբայր... կանչեցին, ճակատ ի ճակատ
Ընկան պատեցին զերրորդն հարազատ.
Երեքն այլ ի հետ բացին զաչք հանգարտ,
Երեքն այլ ի հետ փակեցին զըւարթ.
Թեւ ի թեւ ու վիզ վըզի պըլլըւած
Երեք կոկոն մէկ մանկաղով հընձած,
Ըզկարմրիկ արիւնըն վարդ տարածած
Անհոգ կու քնանան ի մէջ բանակաց.
Երբ հողմ հիւսիսի շընչէ ցուրտաբերան՝
Ու հետ կոծկոծեալ ընկնին վարդ շուշան,
Ո՛ր ծաղիկ չուզէ փըռուիլ ի մարգն այն
Ուր իշխանք ծաղկանց գետնատարած կան։
Ա՜հ. յայնժամ հատան քաղցր արեւքն Հայոց,
Պաղեցան կրակէ շընչեր ջերմածոց.
Մասըն քո ընկան աշխա՛րհ իմ Հայոց,
Կըտրիճք աննըմանք վեհք հիւսիսայնոց.
Ոչ ոք ի թիկանց էառ ըզհարուած,
Ամէնքն ըզՊարսիկն ունին իւրեանց բարձ.
Մարդագոյն արիւնք սրտերնէն բղխած
Ուժոյ եւ սիրոյ վըկայք անմոռաց։...
Այլ ո՞ւր է Մարդան ախոյեանն անյաղթ։ —
Զինչ առիւծ ահեղ այծուց դիմամարտ

Ի թանձր անտառէ վազած անհանգարտ.
Հազարով դընէ զօրաւորըն տապաստ,
Հանց հետ Արշաւրայ ու քաջ Հըմայեակ
Ի ձախ թեւ Պարսից նետուած համարձակ,
Յարձըկէր կոտրէր ցըրուէր հասարակ,
Կարկտահար թափէր ըզմեծ զայն բանակ։
Այլ երբ տեսաւ զիւրն ըղձալի թեւաբեկ,
Մըռընչեց զինչ ծով, յուներ կանգնեց տէգ,
Փայլակնանըման հըրեց ձին հրաշէկ,
Քաջքն ի հետ ընկան զինչ յորձանուտ գետք.
Սեւ զրեհօք ի սուրն հեծած երիվար
Գայր զինչ սաստկորոտ ամպ մըրըրկավար.
Սուսերն ահագին զինչ կայծակ շողայր,
Քան զայն ահեղ՝ մահն իսկ ոչ երեւար.
Զինչ հրդեհ բռնած յանտառս ծայրէն
Ձիգադրի՝ մինչ փայտ չիլափէ զամէն.
Վառուեցաւ ըզհետ թեւուն համօրէն.
Ըզհարուածքն համրեց Աստուած ի վերէն։
Անհուն հետեւակք զինչ չոր եղեգունք
Գետնակոխ արար ի ձիուն ոտկունք.
Ձիանք ու փըղանք զինչ մայրիք բարձունք
Մէկմէկէ առաջ թափին երագունք.
Յաջ ու ձախ զարնէր փըռէր ու անցնէր,
Զանտառ զօրքերուն յանապատ փոխէր.
Մինչ Պարսիկն յահէն զինչ ընել խորհէր,
Սուրըն Վարդանայ ի մահ հրամայէր։
Ի փախ դարձան քաջք մընացեալ Պարսից,
Առ մեծ զօրավարն հաս ձայն բօթալից.
Գալրեցաւ Մուշկան զինչ օձ թիւնալից
Խածատէր զմատներն երդմամբ անիծից.
Փողէր դարձընէր ըզփախուստ զօրաց,
Կանչէր Արտաշըրայ ի վերայ փըղաց.
«Փութա՛ գազաններն ա՛ռ ե՛կ ի հոս դարձ,
Զի Վարդան մարէ զարեւ մեր Արեաց»։
Սարսեց համօրէն բանակ պարսկական
Փըղօք հեծելօք գընդօքըն Մատեան,

Թէպէտ եւ կորած՝ դեռ անթիւ խուժան
Միթարան դիմէն դէպ յարքն Մարդան.
Երեք քայլ ի յետ մէկ յառաջ գային,
Մէկ տային ու տան հարուած առնուին.
Շուրջ բոլորեցան հեռուստ պատեցին...
Մօտեցաւ վայրեկեան ահաւոր բաղդին։
Երեսք պարիսպք դէմ՝ քաջին կանգնել են,
Անաւորք, հեծեալք եւ փիղք լեռնեղէն.
Մէկն ի մտանց գայր, միւսն ի ձիէն
Շողալով անցնէր կրուէր հեռուէն.
Յետեւանց կատղած գազանքն ահագին
Զանձոռնի քրթերն քրնթրունեցնէին,
Բոմբիւնք ու գոռմունք որոտմանց տային,
Ըզբերդերն յուսոյրն տատանէին.
Դէմ քաջին կարծես քաղաքք եւ ամրոց
Զինուած են ելեր մահ բերել ի ծոց.
Ամէն Ասիոյ ձայնք ժողովրդոց
Միթարան վերնջեն ընդ դիւցազն Հայոց։
Խոյ քաջըն Մարդան աչեց քաջերուն.
Կանգնեցաւ ի մէջ գընդից երկոցուն,
Ահեղ մի գոռաց, սարեր ձայն տուուն,
Շատ կապարճակիրք կանչեց մօտ ձիուն
Զինչ գերանդաղէն անիւ շուրջամահ
Ման գայր ու զարնէր առ անդ պահ ընդ պահ,
Զինչ գունտն արեւու յողուն ճանապարհ
Զորս բոլոր սրփռէր ու տարածէր ահ.
Կամ՝ զինչ լեռ հրաբուխ ի սեւ ծոցէն խոր
Ըզարսափ բնութեան հանէ նդ սեւ որկոր,
Բոցեղէն գետեր վաղցընէ յորդոր,
Քարինք կարկըտոյ լընու պղպաշտ ու ձոր.
Թէ ամպ թէ երկինք ճաթին ի վերէն՝
Ինքն ամենեւին չըդադրի վարէն,
Մինչ որ բոլոր կրակն հանէ յանդընդէն,
Անթիւ մահերով հանդչի յիւր սըրտէն.
Այսպէս աններման Հայոց դիւցազանց
Կ'առնուր ըզյետսն վրէժ իր հին հարանց.

Եւ վըկայեցին հոգիք Հայկազանց
Թէ քաջութենէ նա չարար ինչ զանց:—
Արդ մինչ չորս բոլորըն մարդով ընկած
Ճեղջ շեղջ ցորենոյ պէս տեսաւ հընձած.
Հընձանաքարի պէս զէնքն այլ թաթխած
Մինչ ի կէս ձիոյն՝ յարիւն կըտրըճաց.
Հայեցաւ յերկինք՝ տեսաւ զարեգակն
Որ զափշած դեղնած օրաշուրջ գընդակն
Սահէր Սանասարուկ լերինն ի կըռնակ
Կամկար ոտօք գայր ժամըն խաւարակ.
Վըրթթել մի աչաց կեցաւ անշըփոթ,
Անկարծելի քաղցր աչէր արեան յօդ.
Երկայն մի շընչեց հոգի երկնահոս
Աստուծոյ տեսոյն սիրոն էառ կարօտ.
«Արշաւէ՛ք կանչեց, ահա ժամն եհաս.
Դու Հայոց իմ տանս առաջնորդ ըլլաս.
Պատմես Վահանայ զայս իմ յետին զոռ,
Թէ զնախնիքն ու զսուրբ հարքըդ չըմոռնաս»:
Մինչ զայս քաջն ասէր, ընկան յառաջն անդէն
Արին այն Արտակ Պալունեաց ազգէն,
Եւ հըսկայակերպ կորովին խոյրէն,
Վարդան ձայնելով թըռան ի յանանէնն:
Չըգեց քաջերուն վըրայ քաջըն Վարդան
Ըզմահկուկաձեւ զիւրեն մեծ վահանն,
Ըզսուր, սաղաւարտ-ու զհամբոյր մահուան
Տըւաւ առ եղբայրն իւր Համազասպեան.
Եւ իբրեւ արծուին ի սարից քարանց
Սլացաւ ի գընդէ քաջացն Հայկազանց,
Մէկին նիզակաւ ընդ Պարսից գունդն անց,
Նման էր որ թըռաւ թէ հուր փայլականց:...
Հոն ի մէջ երկուց գընդից զարհուրած
Ի վերայ զօրաց եւ զօրավարաց
Խաչածայր նիզակն ի յերկին ուղղած
Վարդանն Հայոց կայ հանդըստատարած:
Սոսկացան սրտացն Պարսիկքն հապըշտապ,
Ահք քաջին սըփռեց նոցա սեւ սարսափ,

Գիշերըն խաւար իջեալ զինչ տարափ...
Լռեա կացէք... Վարդան կայ հոս ի մրափի:...

Գ.

Ով ես դու՝ որ գաս շնչես ի Շաւարշան,
Թեւօք թըռչնօրէն ուսիւք փայլական.
Պսակ մօտիս մըրտենւոյ ի գագաթըն մահուան,
Յաջ ու ձախ դառնաս ու կաս իբր արձան։—
Երկրորդ պահ էր այն ահեղ գիշերոյն.
Լուկ բարակ մրմունջ զինչ ծովեզերոյն
Լըսուէր կիսամահ զօրաց խոցերոյն
Յաւոց և մահուան ներդաշնակութիւն։
Յանկարծ քօղ բացաւ լուսնակըն յերկընքէն,
Եւ սրբատապատ ըղձունդս համօրէն
Տեսաւ զինչ պատկեր սեւանըկարէն.
Հառաչեց ի հոն հառած Եղիշէն.
Եղիշէն՝ մեղու շըրթունք, ողորմ սէր,
Որ ընդ Վարդանայ հոգւով էր կապուեր,
Մինչ հասակակից առ Սահակ նստէր
Եւ զոյգ որդեակս ի սըրբոյն գըրգուէր։
Զարմանաց ձագունք, որ ի մի վանդակ
Միաթեւ մեծցած ի նունդ հոգունակ,
Երբ ժիր մանկութեանըն բացաւ դըռնակ՝
Մէկըն արծիւ թըռաւ, մէկայլըն աղաւնեակ.
Պաշտօն, պատերազմ, սուր, զրահ, ձի, կրակ ու բոց՝
Ոսկի սիրելիք Վարդանայ թեւոց.
Ընձայն անապատք, խաղաղ հովանոց
Եղու Եղիշեայ մասն էր ընդ գըրոց.
Հաւիկն հեզ երբեմն յարծւոյն թեւ սլանայր
Եւ ընդ դիւցազնին այն դիւցազնանայր,
Երբեմն այլ արծիւն ըղթեւն ուրանայր,
Զաղաւնոյն մընչնիկ լըռէր՝ հեզանայր.
Ճ՛ըղահիւս նաւակ ի քաղցր ի հովիկ
Զեզերքըն առեր մէկն երթայր հանդարտիկ,
Մէկայլըն ահեղ նաւ ի պինդ պողպատիկ
Ծաղրելով խաղայր յանդունդ և յալիք.

Այլ նաւահանգիստ մէկ էր երկոցուն,
փառաց Հայկազանց սրտերն էր սիրուն.
Մէկըն յաղթանակ կանգնել զիւր անուն,
Մէկայլն յաղթողաց տալ անմահութիւն:
Այսպէս երկոքին սոքա սիրելիք
Եղբարք անմեկին՝ զինչ աւազ ու ալիք.
Մէկըն մըռընչէր, մէկըն կայր լռիկ,
Այլ սիրով տային յիրար համբուրիկ:
Երբ ըղձալութեան բացած տապաստ
Վարդանն յաղթութեամբ նաւէր ի ճակատ,
Հայոց և Ալանաց վրայ հանէր ըղձատ,
Կանգնէր յաղթանակ քան պատրիքըն շատ,
Նաւակն Եղիշեայ ի Բիւզանդ յԱթէնս
Եւ յԱղէքսանդրեայ ուղղէր հեղաթեւս,
Բանաւոր ծաղկանց մէջ շըրջէր թեթեւս,
Ի միտք առնոյր մեղր իմաստից պէսպէս.
Երբ դարձաւ յուսմանցն ու տեսաւ զՎարդան,
Զիւր թողած կորիւնն հիմ՝ յառիւծ նըման,
Ընծայեց ըղմեղըն ի քաջին բերան,
Դրան երեց եղաւ տանըն Մամիկոնեան.
Անբաժ ի քաջէն շըրջէր Եղիշէ,
Ի դաշտս այլ երթայր՝ ուր զէնք հրաւիրէ,
Ի վրանին կարդայր ըղՏէր ի յերկնէ՝
Որ ըղսիրելըն յաղթող դարձընէ:
Բայց վերջի գիշերն որ գիտաց Վարդան
Թէ վաղիւն հանի ժամ փառաց մահուան,-
Վախեց գալարել վաղիս սիրական,
Խաբեց ու ղըրկեց ի գեղ Շաւարշան:—
Հանց երկրորդ գիշերս որ ըղձաշտն առաւ,
Հոգին Եղիշեայ սըրտէն դուրս թըռաւ.
Երբ ի բանակէն դարձւորներ տեսաւ՝
Վազեց ի գեղջէն ու դաշտըն մըտաւ.
Մըտաւ յարիւնոտ սահմանս Աւարայր,
«Վարդան» որոտաց, պատասխան չըկայ.
Մահըն պատեցաւ ի սըրտին վըրայ,
Եւ սուրբ վարդապետըն լայր զինչ աղբայ:

Լայր ու յառաջէր գայր խարխափելով,
Զինչ կոյր շօշափէր ոտօք ու ձեռքով,
Մինչեւ գեղընցած լուսին գըլթալով
Նուագեց գիշերուան պաղ արտասունքով։
Քամ մի Եղեշէ ժուռ եկաւ լըռին,
Տեսարանք տեսաւ ողորմ ու լալիք
Պաղեցաւ արտասունքն ու արիւնն ի սրտին.
Զգաց ի հոգին պատկեր սըգաւորին.
Շատ երերագին անցուգարձ արար.
Իբր ի կարկըտէ տեսաւ գերուտար
Ըղձեծ բանակացըն մանրած պատառ,
Որոց վերայ լայր լուսին դալկահար.
Զինչ որթատերեւ ու կանաչ գըտնակ
Կուռնագոյն ծաղկունք ու հասկ նորհասակ,
Եւ ծառք հընարմատք եւ նոր բարունակք
Ի յերար անցած եւ ընկած խառնակ.
Այսպէս ի տըխուր դաշտին այն Արտազ
Խառնափընդորեալ կային առ իրեարս
Դրօշք ընդ դրօշակիր, զօրք ընդ զօրավարս,
Ձի ընդ հեծեալ, կոտորածք ընդ տըկարս.
Այն խրոխտ մըսեղէն բըլուրն անկարի
Ընկել էր անշարժ զինչ կոճղ անտառի,
Այն հրաշունչ մըրըկոտ վըրընջոտ ձին արի
Կարթակոտոր կայր ի տեառնէն հեռի.
Այն քաջ մանկըտիք կայտառ ու զըւարթ
Որ դեռ առուըստուն փայլէին զինչ վարդ՝
Մայրամած դիմօք, ո՜հ, ընկեր են արդ,
Ընդոտուալ սիրտն և աչքն այն ի՞նչպէս հանդարտ։
Այն ջաջուռ բազուկք, այն լանջք գըրահազէն,
Այն ճօճան ճակատք յամուր պըղընձէն
Որ գային վարնել զբանակն համօրէն՝
Զանց փըռուեր՝ որ ոչ զատուին ի գետնէն։
Եւ այն յորդորակ սպառնալից բերան
Որ փողով ու անփող բիւրոց տայր հրաման,
Կենաց եւ մահու կարծէր զինքն իշխան՝
Զիւր իսկ չըպարտէ զօրպէսըն մահուան.

Եւ այն հին զէնքեր արիւնով մըխած
Որ խոստանային դառնալ ի տուն հարց
Նորանոր արիւն լիզելով փայլած,
Ահա կամ փշրեր կամ գերի ընկած.
Եւ այն մոխրաշունչ Պարս կորընծուորայք
Որ քանց մութն ըզլոյս ատէին ըզՀայք,
Ընդ ոտիւք նոցին անկեալ անըզգայք
Պաղած ու դեղին քան բանտի ծառայք.
Եւ այն, ո՛հ, եւ այն Հայոց նահատակք,
Մեզ սուրբ հայրենիք, սո՛ւրբ եկեղեցեակք,
Եւ այնք ընդ գարնան ծաղկանց գեղունակ
Եւ այնք հոն նընջեն քուն անմահունակ:
Ճ՚երմակ ու կարմիր զինչ վարդ ու շուշան
Ահ, քանի՞ տղուոց են ի Շաւարշան
Գըլուխք ի խաչին եւ ոտք յառաջուշան
Մանկլտիքն Հայոց՝ որ ի սուրբ քուն կան.
Քաջ քաջ կըռուեցան, սուրբ սուրբ մեռանին,
Աչերն ընդ երկինք ու ի տուն հայրենին,
Յիշեն ըզծընողք ըզքաղցր ամուսին,
Մարեն զլոյս աչաց յարտասունք սիրային.
Փոխան սիրելեաց ցուրտ հով գիշերոյն
Ողապատելով փարի այտերոյն.
Պատառոտի աչք դողդող աստղերոյն,
Ցօղիկ կաթնաբուխ տեղան յամպերոյն:
Մատղաշ հոգիք դեռ զշըրթունքն համբուրեն
Ուսկից այդպէս շուտ ի դուրս ելանեն.
Պահ մի զվարսագեղ ճակատսըն դիտեն
Եւ զանձկութիւնն յերկինք փոխադրեն:—
Այլ դու ե՛կ դարձիր եղնի՛կ Եղիշէ,
Թէ զհոգիդ սիրես՝ քաղցր արեւդ յիշէ.
Ահա նոր աղիք սըրտիդ խըշխըշէ,
Միթէ մահն ըզքեզ այլ մեզնից քըշէ.
Մի՛ աչեր մի՛ այն թոռմած դէմքերուն,
Մի՛ դըպչիր մի՛ այն ցուրտ մարմիններուն.
Ահա զգլուխդ առեր թաթաւ ամպերուն,
Զառկունքդ է թացեր արիւն քաջերուն:

Այլ Եղիշէ՛ն, քաղցրը սիրտ Եղիշէն
Իսկի չիդադրի թափառիլ անդէն,
Մէկ մէկ որոնէ. զքաջք Հայոց գընդէն,
Համարէ զվըկայքն զոր երկինք համրեն։
Բանակն այն անշարժ՝ շարժի յիւր սըրտին
Շըրթունքըն լըռիկք մըտքին մէջ խօսին.
Քաջերն այն ընկած՝ հոգւոյն մէջ կանգնին,
Մահ կենդանանայ, մեռնի կենդանին.
Ի սիրտըն փափուկ մաղձ քանց մեղր անոյշ
Թաղանթէ թաղանթ ծաւալի քընքոյշ.
Զերկայնուկ թարթիչ աչացըն մեղոյշ՝
Չորս բոլոր ածէ կամաց եւ ուշ ուշ։
Ըզթեւն ընդ ուսով զարկած զինչ հաւքի՝
Կարծես ականջ տայ լըռիկ եւ մընջիկ
Զինչ ձայն կիթառըքն արձըկեն սըրտիկք
Նեղ հառաչանօք եւ շընչով ցըրտիկ.
Խաղաղութեան զինքըն կարծես հրեշտակ
Կամ թէ կուսական փողար ողբերգակ,
Կամ պատգամաւոր սիրելեաց գաղանեակ
Տանիլ զբարքի ուխտն առ սիրտ ըսպասեակ։
Եւ ահա տեսանու կուսակ մի մարմին,
Ահեղ զինչ կորիւնք, փայլունք քան լուսին,
Զիրար թեւոտած քանց որթ զուռենին,
Թուխ Արտոմն ու վարդ Մուշէն ու Կարմերգին.
Աչկունքն Եղիշէայ վառին ի յայն տես
Արակէ արտասուք թափէ ջըրի պէս.
«Պարծեցի՛ր, կանչէ, ծերունիդ Ներսէս,
Ահա քաջորդիքդ ընկած քաջաց պէս»։
Բայց ինչ է այդ կապն ի գօտի քաջաց
Ընդ մէջ Արտոմայ եւ Մուշեղեան կապած.
Բարէ քաջերուն, բարէ սիրելեաց,
Մէկ սուրբ յիշատակ՝ մընաս անմոռաց.
Միաբան ընկերք ի հայրենի տան
Մէկտեղ կեալ մեռնիլ իրարու երդուան.
Առին զկապ հիւսած սիրելեաց ընծայն
Զիրար կապեցին մընալ անբաժան.

Երից սեւազգեստ Պարս զօրավարաց
Վերայ տարածուած հանգչէր ոմըն քաջ,
Ըզձախն էր առել ի սրտին դիմաց,
Յաջն ունէր նիզակ մահուամբ ձանձրացած.

Զրահքըն պըղընձի ծակել են հազար,
Ի ծակուցն ի դուրս շող ծաթէ պայծառ.
Ոտոցին ու ձեռաց միջուկն արիւն վառ
Գընտաձեւ դիզուեր վարդի հաւասար.

Ըզսեւագանգուր մազն ի բաց շըրջէ
Ի յանսաղաւարտ քաջին ճակատէ...
Խելագնաց լինի դողայ Եղիշէ
Ըզմե՛ծն իւր Վարդան ի հոն ճանաչէ։

Լեզու քաջին լուռ, խօսի ինքն ամէն,
Այտքըն թըռայլեր եւ յօնք կըռընճկէն.
Մահու իսկ կարծես հրաման յիւր մահէն
Տայ իշխանաբար՝ եւ ամէնք սարսեն.

Ի շըրթանցըն մէջ կայ ծայր նիզակին
Քառածայր թեւօք ոսկեզարդ խաչին,
Զոր պապն իւր Վահան ի ժամըն յետին
Յիշատակ երետ քաջապանծ թոռին։

Ընդ երես քաջին մահախառն անմահ
Զամբողջ գիշերոյն զերրորդն այն պահ
Հայի Եղիշէն ի զարմանս եւ յահ
Խորին լըռութեամբ լեզուն շըրջապահ.

Կըշռէ զգլուխ քաջին ձեռօքն երերուն
Որ զինքն ետ կըշիռ իր ազգին սիրուն.
Համբուրէ զճակատն՝ ուր բաղդն Հայկազուն
Զանդարձն էր գըրեր ապագայ դարուն.

Ընդ լայնադիր լանջքըն հայի ուռած
Քաջ քաջ եւ վեհ վեհ սըրտից տուն սիրած,
Իբրեւ պըղը̈նձի ամուր մի կանգնած
Պաշապանել զորդիք Թորգոմայ ցուած.

Ընդ գեղեցիկ ձեռքն հայի՝ ում հնազանդ
Կայր ամէն հրաման եւ շատերուն բաղդ,
Ուստից յաղթանակ եւ փառք մեծազարդ
Երեսուն տարի ելնէր անընդհատ։

Ահ. չէր նա 'յնպէս վեհ երեւցած առաջ
Երբ յիսուն անգամ դառնալով փառօք
Պըսակս յաղթութեանց բերէր սըփռէր լոկ
Հայրենի շիրմաց ու մատրանց վըրայօք.
Այլ երբ արծուօրէն ընդ Ասիկաս անցած
Թագաւորներ բըռնէր բարբարոս ազգաց
Իջեցընէր քըշէր առնէր տայր Հըռոմայ.
Ինքն իբրեւ յորսէ գալով եղջերուաց.
Ինչպէս հօն վերայ քաջացըն յեցուկ
Յետին յաղթանակ Հայոց անանցուկ
Օ՜ ինքըն կանգնելով Պարսկին ընդ առիւք
Ինք զինքըն դիտէր հոգւոյն նայեցիւք:
«Ահ, ես ի ճակատիդ վրայ երգնեմ Վարդա՛ն,
Կանչեց Եղիշէ, որ ձեռքն աստուածեան
Ի հօն փոխարէն է գրեր քո մահուան.
Թէ բիւր դարք անցնին՝ դու մընաս Վարդա՛ն»:
Ըսաց Եղիշէն, հեա վերջին շըքին
փախաւ ծածկեցաւ սիրամայն հոգին:...
Պըլպուլն ի Թըփէն սովրեցաւ զայն բան,
Կանչէ զըռուն գիշերըն Վարդա՛ն Վարդա՛ն:...
Կանչէ՛ պըլպուլն, կանչէ՛ յԱւարայր,
Որ Վարդան հայր յերկնուց այլ ի վայր,
Յիշէ զՀայաստան ըղձիրելին վայր,
Հայաստան յիշէ զՎարդան իւր յանկայր:

Հ. Ղեւոնդ Վ. Ալիշանեան:

## 150

### Ըշրա Երկաթ ի ծովուն Սեւանայ:

Ցուրտ ցուրտ ձըմռունք բըդան յարձակ հովերէն,
Սիպտակ կարկանք իջան լերանց կողերէն.
Փըչեցին պինդ քամիներն, հա՜, փըչեցին,
Սառով ծիւնով ըզսարն ու զձոր զուգեցին.
Վարդըն քաղցր վատեցաւ,

Ծիծղուն ծաղիկ ծածկեցաւ,
Եւ Հայաստանն սուգ մըտաւ։
Սուգ էր պատել մեր գեղեցիկ աշխարհին
Երբ գառնաշունչ հովըն փըչեց սարերին,
Երբ Հայ իշխանքըն քաշուեցան յամուր վայր,
Նուաղ ռամկին՝ որ մոլորէր վեր ու վայր.
Տեսաւ արեւ՝ դեղնեցաւ,
Լուսնակ ու աստղիկ սեւացաւ,
Եւ Վահագնեան ամըպցաւ։
Ո՞ւր են մատնիչք, ո՞ւր այն դաւհիճք, ո՞ւր գազան՝
Որ առ ազգդ առ բռնաւոր ձայն կու տան.
Այգ ի՞նչ քարէ սիրտ, ի՞նչ սառէ չըրթունք էր
Որ հայրենեաց հօղուն կարգաց սեւ օրեր։—
Անէծք տուէք այն բերնին,
Անէծք գըրչին ու ձեռին,
Որ զՀայաստան մատնեցին։...
Ո՞ւր ես Աշոտ. ե՛լ ե՛կ Թագւոր, խըղճա՛ յիս,
Աւագունք զօրք գան վերայ մեր աշխարհիս.
Ի Բաղդատայ գան, Մօսուլայ գան, Շամայ գան,
Խիտ քանց մարախ, սեւ քան զամպերս ի Սեւան.
Քանց ըզհովերն հասին առուր,
Բոլորեցան ամէն ուր,
Կու շաղացնեն նետ ու թուր։
Հա՛ իմ Թագւոր, արի՛կ Աշոտ, երեւցիր,
Քաշէ՛ զերկաթ, ըրէ զայգոնք ցիր ու ցիր...
Գուագրեցէք դաշտք, ի դողալեզ թընտալեզ
Թագւորն Հայոց եկաւ, ահա նա ձեր հետ.
Կու գայ նըման փայլակին,
Կայծակ թափէ ի չորք դին.
Ա՜հ, չըկայ նիւթ իր կրակին։
Թագւորն եկեր աշտրակներուն աչք ածէ,
Անխածաբար ձէնէ, ոչ ոք չի լըսէ...
Ա՜հ, սուրն երկաթ շողայ փայլէ ի մըթան,
Թողու երթայ մըրմըռալով ի Սեւան.
Ի քարն ելնու բարձր ամուր,
Զօրս դին կապոյտ եռայ ջուր.

Արտան ի վերայն հալած հուր։
Գիշերըն չորս դեհ քաշեր թանձըր մըթութ.
Ո՜հ. արխուր այն երկինքն, երկիրն այն արխուր.
Ծառեր ժայռեր յիրար անցած կու կանչեն,
Կու թուի թէ զհողն Հայաստանի կու քանդեն.
Սեւ թըշնամին ծովուն մօտ
Բանց ծովն հեւել մըրմըռալ
Կու սպասէ լոյսն յառաւօտ։
Ի սեւ դարձաւ կապոյտ ծովակն ու ծըփայր,
Հառաչեց խորէն ու քարն ի վեր կու փրփրայր.
Ալին ալին զարկած, փրփուրն ըզփըրփուր
Թագաւորին յոտքըն ցատքըռտէր բիւր ու բիւր.
Նա Հայ ազգին արտասունքն էր,
Թագաւորին լաց կու հանէր
Արդեօք իրեն ճար մ՚անէր։
Բանց գիշեր մութ պատեց յաչկունք թագաւորին.
Բանց ըզԱեւան ծով մեծ փըլաւ ի սըրտին.
Հանց որ յիշեց զիր հայրն ու զօրն երջանիկ՝
Արիւն ցատքեց ծոցէն ի ծովն ու ցամքիկ.
Զաչերն անեց ու ցոլաց.
Փայլակն երկնուց կանկ առած
Մէջ ամպերուն պաղ մընաց։
Շարժեց ըզսեւ կամարն ահեղ յօնքերուն,
Ըզսեւ մազերն ի շուրջ սփռեց ուսերուն,
Բացաւ հընոց բերանն, հառաչ մ՚արձըկեց.
Ընդունող ծովին պատռած՝ հառաչ մի կըկնեց.
Հրամէ՛ մեզ քա՛ջ մեր թագաւոր,
Ծովս ու ցամաքս հեռաւոր
Զէնիդ ծառայ ենք բոլոր։
Հանց որ զիր ձայնն ահեղ լըսեց քաջն Աշոտ,
Հանց որ ըզգաց ըզզարկ սըրտին կայծակոտ,
Խընտաց թըրնտաց հոգին, վազեց կուրծքն ի դուրս,
Ձեռներն երագ կ՚ուզեն աղեղս նետս ու թուրս.
Կոփեց զնիզակն ի քարին.
Հազար կայծեր ցատքեցին,
Հրամեց իր փոքըր գընդին.

«Զէ՜ն առէք, ժի՛ր կացէք ընկերք իմ սիրուն,
Հաւատարիմք ձեր Թագուորին ձեր հողուն.
Ի հազարաց մէկիկ մնացած դուք իմ հետ,
Դուք շատ էք, ձեզ չբաւեն հազար Թուր ու նետ.
Թող աշխարհաց լուր լինի՝
Որ քանի եմք կենդանի
Հայաստան ոչ տի մեռնի»։...
Հանց որ գիշերն ըզսեւ քօղերըն ժողվէր
Եւ ծիրանին զամպոց փէշերըն վառեր,
Ելաւ ի բարձըր քարին, դէտ կեցաւ լուռ,
Լըսեց զօրաց ձիոց ալեաց բարկ մըրմուռ.
Աւրաըն նետեց մինչ յերկին
Արտասունք ի յաչքն եռացին,
Շունչըն մըրըկէր ի շըրթունին։
Իսկ երբ իջաւ առաւօտուն հովն հանդարտ
Եւ կապուտակ ծովին խառնեց կարմիր վարդ,
Աղչօրս բոլորն առաւ պատեց այլազգին.
Եռայր ծովուն, եռայր ալիք ցամաքին.
Կապուած զօրաց ահեղ խումբ
Շուրջ կանգնեցաւ զինչ սեւ Թումբ,
Նիզակ, աղեղ, պարս ու ռումբ։
«Ո՞ւր ես, կանչեն, Աշո՛տ, Հայոց Շահընշահ,
Յամքէն ի ծով, ծովէդ փախչել չունիս շահ.
Տես ո՞նց հազար որսորդ պատէ զքո պարեխ
Մէջ Թոռերուն տի 'նկնիս քան խեղճ մի տառեխ.
Աշոտ, դու յի՞նչ ես վըստահ,
Դիտցի՛ր, այլ չե՛ս Շահընշահ,
Դրօշդ հասաւ, քեզ չըկայ շահ»։
Գռըսեց Թագուորն Հայոց, պացխուն մի չերեա,
Զեօթանասուն կտրիճքն ի տանն հանեց փէտ.
Նիզակաւ կոփ տըւին քարին Սեւանայ,
Իջեցին գձօձան փայտերն հանդէպ Գեղամայ.
Ծովըն ցընծայր շըռընչայր,
Դիտէր այլազգն՝ արմընեայր,
Հայն աներկիւղ յառաջ գայր։
Յայնժամ գոռաց հրամմեց Թագուոր մեր Հայոց,

Եօթնաստուն աղեղք թափին կայծ հուր բոց.
Երագ երագ դառնան ի շուրջ ծովակին,
Յերար անցած կու յիմարի թըշնամին.
Աշոտ հրեղէն գընտի նման
Փէտէ ի փայտ ցատքըռտան
Սիրտ տայ քաջացն աններման:
Շարժին շըչեն փատերըն մօտ ի ցամաք,
Զարնեն փշրեն ըզՄըշը ու զսեւըն բանակ.
Կէսն ի ծովին կէսն ի ցամքին նետահար,
Մէկն ի գետին կարած, մէկայլըն ջրատար.
Գառնան մնացորդք ի փախուստ,
Գիտեն զվըրաններըն ի հեռուստ
Վըռազ կու տան ամէնուստ:
Կապուտ կանաչ ալիք ծովուն գունատին
Յարին եւ մազձ՝ զոր փսխէ ժանտ այլազգին.
Զըզուին ձըկունքն ինչնուն յանդունդըն զով վայր,
Անդընդայինքն ի վեր վազեն յալեաց ծայր.
Անմիտ որսորդքն որսք որոց
Տարուբերին ծոցէ ծոց
Ողորմ պագեն զափն Հայոց:
Կարմիր արեւ Գեղամայ, ե՛լ սարն ի վեր
Կրակէ կըզակըդ դըրած շուրջ տար ու բեր.
Սոթից [1]) հովիկն ի ծովդ առնու մեն պըտոյտ
Ոլոր ոլոր ուռնուն գոնդողքըն կապոյտ,
Որորելով գլորելով
Ծափ ըզծափի բերելով
Շուրջ գան զՀայոց թագւորով:
Հրամէ՛ թագւոր, նետերդ բացին քեզ ճանփահ,
Ուր որ դիմես՝ դու ես Հայոց Շահընշահ.
Խաղա՛ վազէ՛ ի դաշտ ու ի ձոր համարձակ,
Թըշըըն փշըած կորաւ գընաց անդարձակ:
Երբ որ մըտար ի ծովս աստ՝
Եփիր Աշոտ լուկ երկաթ,

---

1) Գառատ եւ աւան յեղից հարաւոյ ծովակին, ուստի յաճախ շնչէ ի նմա հողմ:

Զի՛մ՝ որ ելնեմ կուռ պողվատ։
Զա՜ փայլէիր, հա՜ սլացիր երկաթ ու պողվատ,
Զազրով բիւրով թափէ բոցեր անընդհատ.
Շուրջ շողացիր ծայրէ ի ծայր հայրենեաց
Մանրէ՛ մաշէ զզէնք մեր ամէն թշնամեաց.
Զայոց հողուս դու կեանք տուր,
Երկինք քեզ տայ հրաթափ թուր,
Նահապետին՝ սիրտ քանց հուր։

Հ. Ղեւոնդ վ. Ալիշանեան։

---

## 151

### Լուսնկայն գերեզմանաց Հայոց։

Ա՜յ իմ լուսնակ գեղեցիկ, աստուածավառ դու լամպեր
Զոր առաջնորդ գիշերոյ դըրաւ յերկինս ինքըն Տէր,
Կոր մըթութեան աչք անփակ, որըստիս այլ դու աչք կու տաս
Երբ շողշողուն շըղթայով կախուած շարժիս յիմ վըրաս,
Քո թեւըն՝ երկնից արծաթէն հիւսած, պատրոյգդ ալ ոսկի,
Ադամանտէ կայծակներ սփռես զաստղերըդ չորս դի.
Եղի մեղրի նըման կաթ մը յամանէդ յիս թափած
Կու խաղաղէ կըրքերս զինչ ալիք լըճիս հանդարտած։
Ահ, ո՜նց պայծառ էիր դուն կենացդ երկրորդ գիշերին
Երբ նոր քաշուած Աստուծոյ ճախարակէն ընդ երկին.
Ահ, ո՜նց փայլուն էր քո լոյսն՝ երբ առաջին այն անգամ
Գիշերազուարճ պըլպուլիկըն ձըգեց ձայն երկնահամ.
Շունչըն պայծառ քեզ նըման հովտէ հովիտ կու խաղայր.
Զեղիկ հովով թունդ ելած մաքուր առուակըն հեւայր.
Չըկայր ականջ հողեղէն որ զայն լըսէր ու փառք տայր
Միայն հրեշտակք լըսէին եւ շարժէին ըզքեզ վայր.
Եւ դուն լըռիկ չափեցիր զանամպ երկնից կէս բոլոր,
Ծով՝ ու ցամքի վարագոյր բացիր, ներքեւ մըտար խոր,
Երբ արեգակըն կու գայր հրեղէն ոտքըն յօդս ի վազ
Զարշալուսոյ ցօղ սփռէր եւ զառաւօտն հըրամազ։..
Կացի՛ր արեւ, յետ կացիր, մ՚ելներ յերկինքըդ կապոյտ
Թող լուսնեկիդ ի ման գալ գեռ ի մէջ թուխ ամպերոյս.

Կա՛ց կա՛ց լուսնակ դու յառաջ, լեռնէ ի լեռ սարէ սար
Մէջ ձորերուս խորերուս անցիր յուշիկ հաւասար.
Հետ քեզ ունիմ ես գանգատ, քեզ Նահապետն ունի բան,
Սիրտըն յերկուս է ճըղքած, եւ ցաւերն, ո՜հ, զանազան.
Պայծառ լուսնակ մի՛ փախչիր թէ տրտմութեան լըսես ձայն,
Ցաւած սրտի մխիթարանք ես դու կանգնել յերկինքն այն.
Ման գաս յերկիրն Եդեմայ, բայց ոչ ի հինն այն գիշեր
Երբ երջանիկ էր դեռ մարդ, լոկ սէր ու զկեանքըն յիշէր.
Ճերմակ ճաճանչդ յայնժամ տաք էր ջըրերուն ու ծաղկանց,
Ուր որ կաթէր քու շաղիկ՝ կենդանութիւն էր անանց...
Դարձիր նայէ՛ հիմ՝. ի վայր, նայէ ի փէշ սարերուս,
Նայէ ի տափ տաճարիս, եւ ի հողըմանք գեղերուս...
Ահ, գերեզմանքն են Հայոց, որ ոչ եւս են յաշխարհի,
Մաշած նըշխարք մեր հարանց՝ թաղուած ի խոր խաւարի։
Այն Հայկազունքըն անուանի եւ մարդկութեան անդրանիկք
Որ զԱդամայ տունն իրենց վարձեցին տուն երջանիկ,
Այն մեծամեծ հըսկաներն՝ որ հըսկայից յաղթեցին
Լեռնանըման կըտորիճերն ի Ձորն Հայոց թափեցին,
Հեթանոսաց կուռքերուն յաղթող որդիքն այն Հայկայ՝
Ընկան անոնք՝ այլ ի քուն ներքեւ ժայռերըն Հարքայ։
Հայկն որ ամէն Հայու սիրտ պիտի կանգնէ դարուց դար,
Հայկն այլ ի քուն է ահեղ, եւ ո՞վ գիտէ զիւր դադար.
Ո՞ր արդեօք սար կամ բըլուր ծածկէ զհըսկայն այն բարի՝
Որ փառք որդւոցըն տըւաւ ու ազատութիւն աշխարհի։
Ո՞ր լեռն արդեօք է քո բարձ՝ բարձրագըլուխ քաջդ Արամ,
Որ ի Մարաց մինչ Մաժակ վազեցիր տէր յաղթանդամ.
Եւ դու Արայդ գեղեցիկ, յո՞ր դաշտ արդեօք յո՞ր հովիտ
Կարմիր զանգըրովըդ պըլլած ծածկես ըղխոց ճակատիդ.
Եւ որ զահեղն Աժդահակ շամփրած ի ծայր՝ նիզակին
Ի մութ քարայրս իջուցեր զվիշապազունս սեւագին,
Դու ոսկեծամ և խարտեաշ Տիգրան, դու յո՞ր կաս քարայր.
Եւ դու ծընունդ ծիրանի երկնից ու երկրի հրեղէն այր,
Վեհատեսիլ դու Վահագն՝ որ ընդ աստուածըս նըստար,
Ծածկե՞ց ըզքեզ ապառաժ, թէ հալեցաւ քան ըզսառ։
Երկհազարեան տանուտէրք Հայոց հողուս հայկազունք
Արդեօք ի խորըս նորին դեռ կեցե՞ր էք իբր հիմունք.

Եւ ինչպէս ողջ ըլլալով զողջ բըռնաւորքըն զարկիք,
Նոյնպէս զմեռեալ բըռնաւորսն հողուն ներքեւ այլ դատիք.
Որ պըղծեցին զսուրբ երկիր մեր Հարց Հայոց սեփական,
Կարծեցին ձեր քով նընջել, եւ ի դըժոխս արթընցան։
Դուք այլ պանդուխտ բարեկամք, Արշակունիք տընաշէն
Որ զՀայկազանց հին անուն հըռչակեցիք յազգս ամէն,
Ի Կամախայ կամարէն խըլըուած յանգուցեալ գերողաց
Եւ ի կորիզ տիրասէր մանկանցդ նորէն ազատած,
Գըլուխ գլխի խառն ի քուն Արագ Մասեաց մօտ վըհին,
Արդեօք խորհուրդ ընելով դեռ կու յիշէ՞ք ըզվըրէժն հին։
Դու այլ ո՛վ մեծդ Հըսկայից եւ Թագւորաց, սուրբ Տըրդատ,
Որ զցանկալիս քո թողած՝ զԼերեզ, Գառնի ու Արտաշատ,
Զահեղ գըլուխդ վերուցիր եւ յետ մահուդ ահաւոր
Եւ ի հանգիստըն Հոգեաց վանաց առիր քուն մ'այլ նոր,
ԶԵփրատ թողած՝ զորով վազ տըւիր երագ ի մի քայլ
Քարածորան Տիգրիսի լըսես զխոխոջ այլեւայլ,
Արդեօք հերի՞ք քեզ տեղդ այդ, թէ դարձեալ շարժ տաս քարանց
Եւ ի Սեպուհ կամ Մասիս վազես՝ ըզմահըն այլ սանձած։
Եւ դուք կարմիր Վարդանայ վարդանըման դուք ընկերք
Որ յԱրտազու դաշտերէն մինչ ի Համշէնն էք քընեք,
Արդեօք ձեր սուրբ արեան գին աշխարհիդ բաղդն յիշելով
Շարժէ՞ք դեռ զքաջ բազկըներդ հողիններուդ կըրակով։
Բագրատունիք շինարարք, յԵրազգաւորս եւ Բագրան
Կու փընտըռէ՞ք զդաստակերտ ձեր ու զյետին քընարան.
Եւ յաշտարակըս քաղքիդ՝ յԱզնիւն Անի աչք ձըգած
Գըլուխ շարժէք, եւ երկիրըս սասանի սարսափած.
Տաճար, դարպաս, վանք, խորան՝ ափուին յերկիր աւերակ
Շէնք եւ անշէնք գերեզման լինին Հայոց բովանդակ...
Խաւար վերայ խաւարի հագած կանգնի սեւ գիշեր.
Նահապետիս սիրտն այլ սեւ. Աստուած, զմեղս հարց մի՛ յիշեր։....

---

Արդ իմ լըւսնակ, փութա՛ յամպերէդ
Ե՛լ փարատէ զմութ Նահապետիս.
Սփռէ յերկիր դեղձան վարսերէդ,
Հետ քարերուս կապէ զսիրն սըրտիս.
Հանդարտ ու լուռ է շուրջըս բոլոր,

Երկիրս ի քում երկինք լոկ արթուն.
Լուսնա՛կ՝ վառէ՛ զկանթեղդ կլոր
Ի գերեզմանս իմ հարց Հայկազուն.
Ճերմակ թեւօք գըրկով երերուն
Երկընցու զջահդ յամպերուդ մէջէն
Սարից գըլխէն, յեռանց ծառերուն,
Յարարատայ երկճիւղ գագաթէն։
Սարն է սարին դիզած տասըն տակ,
Զիւնակոյտ սառն ի վըրայն հինգ բարդ,
Ու այլ ի վըրայն քո լոյսն ըսպիտակ,
Ու այլ ի վըրայդ իմ արտասուք հրազարդ.
Արդեօք հալե՞ն արդեօք տի մաշե՞ն
Օ թանձր պատանք գերեզմաններուս.
Արդեօք ի խորշն հանսի՞ն քարեղէն
Լըւալ զանլաց ոսկերք հայրերուս։...
Ա՜հ, ո՜հ... լըսէք ոգիք Հայկազանց
Նահապետիս լըսէք հառաչանք...
Լըսեմ լըսեմ ես ըղձայն հարանց,
Ահա շարժին բացուին գերեզմանք։
Բարե՜ւ հանգի՜ստ ձեզ հին Հայկազունք
Որ մշակեցիք զագարակ Նոյայ,
Ու թէ ելան ձեր դէմ գիւցազունք
Ընկան հընձոց պէս յարտիդ վերայ։
Յաղթից ծոցէն կանգնած մըրմռալով
Թագապըսակ ահեղ ճակատներ,
Վարդանք Վահանք ըզվըրէժդ առնըլով
Հարին զՍասան, հանգչեցէք զքուն ձեր։
Ով հայրապետք սուրբք, փառք աշխարհիս,
Որ ննջեցիք ի մատրանց ներքեւ,
Նայեցէք մէկ մ՚այլ վերայ երկրիս,
Որ յաշխընուդ ծագէ նոր արեւ։
Ու դուք կորիւն սիրուն զօրականք
Կրակաթափ թուրք, մահացան բազուկք,
Քաղցր հայրենեաց պարիսպք եւ պահանգք,
Ձեր քիրտն ու արիւն անմահ անմոռացուկք.
Դարձիք ամէնքդ առէք հանգիստ քուն,

Նահապետ լայ զձեզ, յիշեն որդիք.
Ահա վըկայ լուսնակըս փայլուն,
Դարձիք առէք ըզքուն հանդարտիկ։
Իսկ դուք կայտառ ու կարմիր տըղայք
Գառք Գրիգորի, զինուորք Յիսուսի,
Եկեղեցւոյս Հայոց զարդ վըկայք,
Ով կրակէ սիրտք՝ յաղթողք հիւսիսի.
Մոլորհաւատ ազգեր սեւակրօն
Հըրով թըրով եկան յիմ աշխարհ,
Կ՚ասեն, վերցուի պատրագ ու պաշտօն,
Լուսաւորչի լոյսն ըլլայ խաւար…
Այ անիծեալ օձք, սիրտք գաղանի,
Չորնան լեզուդ ու անգութ բազկընիդ.
Թէ բռնացայք հողուս Հայրենի
Հոգիս չ՚ինկնար ի չար ձեր ժանիդ.
Հայոց հաւատս է փրկչին հաւատ,
Յառաքելոց բերած նախընծայ,
Լուսաւորիչըն տընկեր հաստատ
Ու մեր արիւնքս ոռոգեն ըզնայ.
Պա՛րսիկք, փուճ տեղ ատրուշանք վառին,
Փուճ տեղ Հագար այրէ զքաղքընիս.
Սուր Սըկիւթին եւ թուր Թաթարին
Փուճ տեղ շողան. ազատ է հոգիս։
Այսպէս կանչեն կարմիր կայտառ Հայք,
Դէմ սուրերու կանգնին համարձակ,
Խաղան խընտան ընկնին նոր վըկայք,
Կանգնին փառօք, թըռչին լուսաթագ.
Կարմրածոցիկ զէտ հատից նըռանց,
Զէտ հողմահար խայծեալ խընձորին,
Նըման սարիցն արեան աղբըրանց՝
Թափին նըշխարք կարմիր կըտորին.
Հողն հայրենի ծըծէ զսուրբ արիւն,
Ծոցըն բանայ, առնու զիւր որդեակք,
Յանմարդաձայն յանծանօթ անկիւն
Կարմիր քընով ննջեն նահատակք։
Սըրտի հատոր հա՛ դան սիրելիք,

Հարցունք անեն ձորոց ու լերանց.
Ո՞ւր մեր տըղայքն, ո՜հ, ո՞ւր ծածկեցիք.
Սարեր ձորեր, տուէք մեզ նըշանց...
Սարերըն լուռ, ձորերըն տըխուր,
Հոգին հեւալով թեւերուն տայ դող,
Կարկըչելով ընդ քարն անցնի ջուր,
Տրտմեալ տերեւք կաթեն անուշ ցօղ:
Ո՜վ մայր, ո՜վ հայր, ո՜վ եղբարք եւ քորք,
Աչք տուք յերկին, անդ ձեր սիրելին.
Եւ ամէն քայլ որ կոխէ զայդ հողք
Ծածկէ զնըշխար Հայ նահատակին:
Սըփռէ՛ լուսնակ՝ սըփռէ սուրբ լուսեր
Կարմիր կայտառ Հայոց մանկըտւոյն.
Հողս այս տաճար է, դու այլ լապտեր,
Նահապետն այլ ի սուգ է սիրոյն:...
Եւ դուք ամէն Հայ սիրտք վըշտահար
Որ նախ քան զմահ մեռայք ցաւերով,
Զոր հալածանք կամ սուրն անդադար
Եւ կամ դիպուածք բերին չար ժամով,
Որ զինչ երազ անցէք յաշխարհէս.
Պահ մի սիրով լըցուած սուրբ ամանք,
Յանկարծ ընկայք կոտրած կուժի պէս,
Շուտով խլեցին ըզձեզ գերեզմանք.
Գըլուխք կանգունք զէտ բարձըր սարի,
Մազերդ ի ման ճաճանչից նըման,
Բազկունք ամուր եւ կուրծքեր արի,
Ծոցեր ծաղկած ցօղալից շուշան,
Պայծառ աչկունք ջուխտակ արեգունք
Որ կաթէիք գութ, սէր ու խընտում.
Քանի՞ շուտով անցան ձեր ճրագունք,
Եւ գադրեցաւ սըրտիդ վերվերում:
Ներքեւ ճակտիս, ներքեւ այս քարիս
Յամքած սրտեր տերեւի նըման,
Ձեր սիրելեաց շունչն յորդոց յորդիս
Ահա հասեր՝ հընչէ յիմ բերան.
Ո՜վ հարք, եղբարք, որդիք Հայ հողու՝

Ունլացք անսուգք եւ անյիշատակք,
Ձեր սիրելեացն եմ ես արտասուս,
Հին հառաչանք, հայրենի կըրակ։
Սեւ աւերակք դուք, դուք Սեւ հողեր,
Թըրքով թափած որհաս հունձք եւ տունկք,
Ի գաղանաց ոտնակոխ ճըղեր
Ահ, ծաղկեցէք դուք այլ յիմ արտասունք.
Կարմիր կոկոն գլուխներ, վեր կացէք,
Լուսակաթ աչք, մէկիկ մի բացիք,
Մեղրոտ շրթունք, մէկ մի ձենեցէք,
Ըսէք թէ հաշտ եմք, ու ի քուն դարձիք.
Քամեցէք հարք ըղձակտուր քըրտինս,
Օ խարտեաշ մազերդ թօթվեցէք տըղայք,
Տուէք այդոց մարք զխտոյն ըստինս,
Հալալ արէք, եւ բարեաւ երթայք։
Մուրատատուր մեր սուրբքըն վըկայ,
Հալալ արի ես ալ ձեր հողուն,
Դարձիք ի քուն. լուսնակս այլ վըկայ
Որ անմոռաց էք ի Հայ սիրուն…
Այլ դու լուսնակ ահա կու նուազիս,
Քաշէս ճաճանչդ ի ծոցըդ ճերմակ
Օ, էտ արծըթի ափսէ կու թալիս
Մէջ ամպերուն թուխ ու կապուտակ.
Կա՛ց, մէկ վայրկեան մ'ալ կա՛ց իմ սիրոյս.
Մէկ քար մ'այլ կայ յԱնծանօթ հովտին,
Գըրնա՛ հոն կաթէ՛ զվերջին քո լոյս,
Այն Գերեզմանն է Նահապետին։

Հ. Ղեւոնդ վարդապետ Ալիշանեան, Վենետկու Մխիթարեան ուխտէն Հ. Հ. Մխիթարեանց եւ, առ հասարակ, ազգային գրականութեան մշակողներէ մէջ Հ. Ղեւոնդը լուսափայլ աստղներից մէկն է։ Ինչ նշանակութիւն որ ունի Հ. Ալիշանեանը մեր աշխարհագրական եւ բանաստեղծական գրականութիւնումը, նոյնը ունի երջանկայիշատակ հանգուցեալ ծերունի Հ. Արսէն Բագրատունին, ազգային լեզուագիտութեան ասպարէզումը։ Իբրեւ յաջորդ Հ. Բագրատունեանը եւ այժմ քանքարաւոր մշակող հայ լեզուագիտութեան պիտոյ է համարուի Հ. Արսէն Այտընեանը, Վիեննայի Հ. Հ. Մխիթարեանց միաբան, որ այժմ կը բնակի Կ. Պոլիս.

152

## Օրհնեալ որ սիրեն ըզհեզ Հայաստան։

Ռ. Յ. Պրատի։

«Ամենայն զարդք նորա զերծաւ ի նմանէ. փոխանակ ազատութեանն մատնեցաւ ի ստրկութիւն։» (Ա. Մակ. Բ. 11.)

Եւ ասէին. Ըզհայրենեացդ ասա մեզ բան, ով քերթող.
Հայաստանեայց եմք սիրող։
—Օրհնեա՜լ էք դուք ասպընջականք իմ պատուական.
Օրհնեալ որ սիրեն ըզհեզ Հայաստան։
Եւ հեծեցի, եւ գընային արտասուք.
Եւ ասէին. զի՞ քերթողին այսքան սուգ։

Ա.

Զի՞ քերթողին այսքան սո՜ւգ...
Թողէ՛ք. յորդին Հայկայ են դիւր արտասուք...
Թող լայցեն աչք որ երբէք ոչ անձկայրեաց
Ողջունեցին ըզվեհ բարձունս հայրենեաց.
Լացցեն որ ոչ ըզկենսախառն հող ծանեան
Ուր կեցին հարքս, երկիր պագին, եւ անկան.
Ուր ոչ յայն օդ՝ արքսորեցըն իղձ եւ ուխտ՝
Սիրտ մեծամեծըս բաբախեաց սի՛րտ պանդուխտ.
Եւ ոչ շըրթունք կարօտակէզ հովացան
Ի կենսաբուխ ջուրց եւ յաղբերց Հայաստան։
Ո՜հ ջուրք անոյշ որ ըզդրախտին հին զափունս
Ոռոգանեայք եւ զռահս եւ գըրգեցէքն ըզծաղկունս.
Ջուրք Եդեմայ, ձեր զի՞ վիճակք քաղցրութեան
Ընդէ՞ն յաղի աչաց աղբիւր դառնացան.
Զի՞ պաղպաջուն պըղտորեցաւ ձեր բիւրեղ
Խառնեալ ի հարց մեր արտասուս յորդաղեղ.
Ոչ եւս զերկնից մեր կապոյտ տայք դուք ըղփայլ,
Ոչ եւս ծաղկունս ադինասերմ փըթթեցեալ.
Եւ խոխոջիցդ ոչ եւս ծանօթ խառնի ձայն,
Այլ օտարաց ոյց ոչ առ ձեօք էր որրան...
Իսկ մեր ողխուր սըրտատոչոր հառաչանք՝

Բնաւ այլուր՝ ուռչ յեմակող ունին արձագանգ....
Բայց դուք օրհնեալ տապընջականք իմ պատուական.
Օրհնեալ որ սիրեն ըղձէդ Հայաստան։
Հէգ Հայաստան. ո՞ գեղոյդ զարդի առեալ զօր
Զանցեալն ի միտ ածուցու բախտ քո հըզօր.
Ո՞ յանկելոյդ՝ թէ էր երբէք բարձրաճեմ
Գլուխ տանէիր հանգոյն լերին քո վըսեմ.
Իբր արշալոյս փոթորկածին յառաւօտ
Եւ ճակատուդ սահեցաւ փայլ անաղօտ.
Ո՛չ եւս ես դու. եւ փառք քոյին մեծ եւ կեանք
Արդ յիշատակք են լոկ անշունչ անկենդանք.
Արդ ուղեւորն առ քեւ անցեալ գընալով
Մեծ է թէ քեզ տացէ ակնարկ մի գըթով.
Մեծ յոյժ թէ զքայլսն հաշուէ կասել արժանի
Յերկիր ուր փառք հանգեան ընդ գարս այնքանի.
Եւ ոչ գիտէ թէ յոր հայրին արհամարհ՝
Դա լաւութեանց եւ քաջութեան էր աշխարհ.
Եւ թէ փոշին զատիւքն ի դէզ սիգապանձ՝
Արիւն է դա երկրադըղորդ դիւցազանց,
Որ զգահոյիւք փըշրեալ ազգաց հիւսիսին
Զհայաստանեայց յաստեղս ըղգահ վերառին.
Անդուստ արքայք քոյին՝ իշխանք աշխարհաց,
Արեւելից տային ըղձայն պատգամաց.
Անուն քո առ յոտնի, էր յոյս դաշնակցին,
Եւ նիւթ վըսեմ երգոց ի քնար քերթողին.
Արդ զայն՝ օտարն հընչէ ի հեգն անպատկառ,
Եւ քնարն՝ խեռաւ քող հեծեծէ զայն յաշխար...
Բայց դուք օրհնեալ տապընջականք իմ պատուական.
Օրհնեալ որ սիրեն ըղձէդ Հայաստան։
Զերկիր՝ յարփայոյն գըրգեալ ի շողս անդրանիկ,
Ուր բընութիւն ցանդ նոր եւ ցանդ գեղեցիկ,
Մահու կարծէք զայն անյարիր գերեզման.
Ո՛չ դա կենաց տըւաւ երկիցս որորան.
Զերկիր ուր բախտն ապաւինէր մարդկութեան՝
Կարծէ՞ք բախտին այցելութեան անարժան,
Իբր ըղպափար ի խորշ լերանց խորասոյզ

Յորմէ ի դող սրացեալ փախուստ առնու լոյս.
Ո՜վ յայգն եւ ոչ կարեկիր ակն արկանել
Յոր արդ չուեմն ձեզ բայց զաւերս ցուցանել.
Խա՛կ մոռացի՞ն ընդհայրենիս իւրեանց փառք
Ով ոչ եւս յայն տայք մեծարանս, ո՜վ օտարք.
Ով դըշխոյին կորզեալ է քող ոսկեհուռ
Յաւիտենից մե՞րկ կարծիցէք ընգլուխ իւր.
Պիշ զակն յառէք. վեհագիտակն այն Ճակատ
Դեռ եւս ընդհեւառ ունի թագին լուսահատ,
Ճակատն՝ որ խոյրս քառեակ ածաւ հեռընդհեռ,
Մ՛ի քան ընդմիւսըն փառաւորդ լուսաւէտ...
Ահ, մինչ ազգաց դու բաշխէիր խոյրս եւ բարձ
Եւ խոյրաբարձ դըլուխս յաթոռս աշխարհաց,
Հայաստա՜ն, ո՞յս Ճակատագրեալ էր քեզ, մա՛յր...
Բախտ՝ դաշնակից հաւատարիմ քեզ յամայր
Ի պողոտայն փառաց՝ նենգեալ քեզ յանկարծ
Արանայր՝ տըւեալ ոչ ողջոյն ոչ յոյս ի դարձ.
Աւանունդ՝ որ չեք թըւէր սահման եւ կամ վերջ՝
Իբրեւ ընդըոց մի չիջանէր ի խոր գէջ.
Ահ, քոյին ոչ յայլ ինչ եղեն կեանք երկայն՝
Երկարագոյն բայց զի զգայցես զմահդ յապայն.
Ով զմէն մի քոյդ անցեալ պատիւ եւ հըրճուանս
Դու քաւեսցես յայրքան արտօսր եւ ձաղանս.
Ով զքոյդ տեսցես փըշրեալ մական երկնատուր
Իբր ընդշուշան մի երէոց առաթուր.
Լայնածաւալ եւ ընդարձակմանս քո փառաց
Տեսցես զերդ դաշտ ուր մահ ընթեւս տարածեաց.
Մահ ի յոգիս, մահ ի սիրտ, մահ յամենուստ,
Ընմահ՝ անէծք լոկ, վէ՜հ յոր կամք խորտայղ...
Բայց դուք օրհնեալ աստղընջականք ազնըւական,
Օրհնեալ որ սիրէքդ ընդհէգն Հայաստան:

Նմէք սիրել. բայց սակայն սէր ինձ է գայ
Թըրշուառութիւն զոր ի յոծան իւր կարդայ.
Եւ Հայաստան՝ աւուր տայ ձեզ զաղափար
Որոյ հազիւ ծընեալ՝ ունի զայն խաւար.
Ահ, որ յերկար զըլորտ ձըգեալ ունի մեր

Երբէ՞ք ի լոյս ո՞չ փարատի այս գիշեր...
Տեսցո՞ւք եւ մեք զելս խոստացեալ Թըշուառաց,
Մեք որ չունիմք Թըշուառութեան բայց ըղձաց...
Յարեւելից ցանգ տարածի յաշխարհ լոյս,
Արփին յետ մըտից դարձեալ զելիցն այցէ կոյս.
Արեւելից մեք հարազատ Նախորդիք
Մեք յաղջամուղջ խոկ մինչեւ ցե՞րբ դանդաչիմք.
Հրատն որ ի գլուխ Մասեաց վառէր, բոցալիր
Եւ ո՞չ մի տարր ամփոփիցէ կենսակիր.
Ո՞չ մի կայծակն՝ որ ոստնուցու Նորարծարծ
Դարձեալ ըզսիրտըս հըրդեհել Հայկազանց,
Յորժամ ի դոյն շեջելափառ սեաւ մոխիր
Մերձեսցի մատն ըզնա պայցել կենսածիր.
Որ յանէիցն ի խաւարէ առ ըզբոց,
Եւ սերմանեաց զայն անսահմանն ընդ միջոց,
Հայաստանեա՛յց աջն այն իցէ միայն ուիշտ.
Թէ լոկ արդեօք ի ցաւս առատ եւ ի վիշտ...
Բայց դուք օրհնեալ տապընջականք իմ պատուականք,
Օրհնեալ որ սիրէքդ ըզհէգն Հայաստան։
Մի դուք, ո՛հ, մի ույց աչքդ ի լոյս պարարին
Իբրեւ ըզմարգ յառուս որ ոչ նըւազին,
Վառեալ դարու՛ց զակընկալիսն, ո՛հ զերկա՛ր,
Մի 'մեր սըրտից մի զայն բառնայք մըխիթար։

Բ.

Ողջո՛յն քեզ ո՛վ աստուածայինդ, ողջո՛յն յոյս,
Ոյր Թանձր ըզքօղ յաչաց հերձեալ ծագէ լոյս.
Ողջոյն որ զիմ շողաս քնարաւ դողդոջուն
Զ՝երդ արրուսեակ աւետաւոր զառաւօտ.
Էջ ո՛հ ազգի միոյ յաղերս խոստանալ
Նորոյ աւուր իմն արշալոյս գեղափայլ.
Բիբք որ յարտօսըր մըԹագնեալ են խաւար՝
Ողջունեսցեն անձկաւ զայգոյդ Նոր ըզվառ,
Իբր ըզնախնին զաստուածալար եօԹնարփի՝
ՅՄայրարատայ որ ետ աւետ աշխարհի.....
Տէ՛ր, Թէ բազուկդ յողորմուԹեան եւս հըզօր՝
Դարձեալ զերամբ մեր տուրբ ըզնոր ցուցցէ զօր,

Երդնումք զի քեզ զուխտից սեղան ամբարձցուք
Անդ՝ ուր յետ Գուրգէն հաստատեցար անուշիւք.
Եւ ողջակէզ՝ ոչ խոյք այլ սիրտք վըշտաձեռ՝
Որ ուխ փորձոյդ բով չկորուսին զկնիք քո, Տէր.
Բայց թէ դեռ ոչ ճակատագիր մեր լըցաւ՝
Դեռ ոչ երկնից չափ ողբքս եւ վիշտն ամբարձաւ,
Երդնումք Հայք ուխտ ազի՝ կընքեալ յաղի լաց,
ՅԱյրարատայ երդուեալ ի սարս արկղաբարձ,
Երդնումք ի հող՝ ուստի Նախնիքն առաւ մարդ,
Եւ ուստ Նախնիքն գարուն ըղձնորհան առեւ զմարդ.
Ի հող՝ որ զհարց մեր ամփոփէ սուրբ զոսկերս—
Ակօսք՝ ուստի զկենդանութիւն յուսամք մերս,—
Երդնումք յո զեհ եւ անկցի Հայն ի բախտէ՝
Հիմալայայ սարս, յԱլպս, ի Սէն, յԱփրիկէ,
Մի զժառանգեալն ի հարց անտի մոռասցի
Զանդնդարար սէր ի յատակն հայրենի.
Մի ըզփառացն աւուրս, մի զտօն տարեկանս՝
Յոր հարց մեր սիրտք բաբախեցին ի հրճուանս.
Եւ զաղետից մի՝ յոր արկին աչաց զուխս
Մըկըրտութիւն՝ եւ լուացին ըզմեր գլուխս.
Մի զօրն՝ որ զմեզ ի մօրէ հար վըտարակ·
Ո՛ գիտէ ցո՞ր վայր եւ ցո՞ ձիգ ժամանակ.
Ու ի մենջ՝ նըժդեհս արար յաշխարհս ամենայն,
Նըժդեհս ուառ քեզ թէ դառնամք մա՛յր Հայաստան…
Բայցդուք օրհնեալ ապըլնջականքդ իմ պատուական,
Օրհնեալ որ սիրեն ըզհէգն Հայաստան։
Լըւայ ուստեք. Հրէից այդ ազգ նըմանի.
Յանեալ ցըրուեալ յո եւ շահուն յոյս տանի…
Անգութք. դուք զե՞ զթըշուառութիւն եւ զոճիր,
Զանէծս եւ զհեծս ի նոյն դընէք մի կըշիռ.
Իբրեւ զեղբարսն Յուդայ եւ Հա՜յ դատապարտ՝
Որ զդրօշ Խաչին լուաց յարիւն իւր անպարտ,
Այր թագ՝ նախնեաց եկաց վըսեմ պատուանդան
Յոր աստուածեանն յետ Գողգոթայ եւ նըշան։
Ա՛հ, զմեր անգէտ լըրուք ըզփառս եւ ըզվէպս,
Ուրացարուք զքաջս, յոյն հարէք յերաշխէպս.

Մոռացարուք զերկիր ծնող մարդկութեան,
Զերդ ապաշնորհ որդի զարգանդ մայրական,
Այլ գէթ թողէք զի ընդ լքմանն ըստուերաւ
Հանգչիմք զերդ ծառ յերկիր զոր մարդ ոչ ծանեաւ,
Աճէ, եւ վեհ գիտակ յերկին ամբառնայ,
Զի անյագուրդ ոչ մերձեցան ձեռք ի նայ:
Այո՛, յածիմք գլուխ խոնարհեալ ակընկոր,
Եւ հարցանեմք. «Ո՞ր արփ տայ լոյս մեզայսօր.»
Բայց ոչ թէ մեր վառ շահ քայլեցն է լուցկիք՝
Այլ աղէտք մեր, անհամ ոյց գոն ՀԱՅՐԵՆԻՔ,
Որ զմեզ պանդուխտս առնեն յաշխարհս ամենայն,
Պանդուխտ թէ դարձ ուխընիկն առնեմք Հայաստան.
Բայց դուք օրհնեալ ասպընջականք իմ պատուական,
Օրհնեալ ուարք սիրեն ըղհէգն Հայաստան:
Եւ հեծեցի, եւ գընային արտասուք.
Եւ չասացին. «Զի՞ քերթողին՝ այդքան սուգ»:
Սակայն ի զո՜ւր. ի զուր աղէտք մաքառին,
Սուր, բռնութիւն եւ թըշնամանք օտարին...
Աւանիկ չիք երկիր, չիք կայս հանգըստեան,
Եւ ո՜չ անդորր յուսամք ունել մեզ տապան.
Բայց է մեր է՛ որպէս ի Յոբ՝ ինչ մի լոկ
Սում չիք հրաման զի կորզեսցէ եւ ոչ ոք.
Անուն մի սուրբ, ժառանգութիւն մեր միակ,
Զոր ոչ աղէտք, ոչ կապանք, ո՛չ ժամանակ
Բառնալ ի մէնջ ոչ բաւեսցեն յաւիտեան,
Ո՛չ, ոչ, մինչչեւ կորզեալ սըրտից հայկական.
Անուն մի վեհ, որ զի կապեալ մեր եւ գանձ՝
Պետռ ճոխ թըւիմք մինչեւ չունել յոք նախանձ:
Անուն մի քաղցր, որ զմեր զանցեալ փառս եւ կիրս
Մեր, զիղձս ունի, զակընկալիս եւ ըղձիրս:
Որ ի ցըրուեալ բազմահազար սիրտս ի փիւռ՝
Ունի ըղգանգ իմն անթարգման զգացմանց բիւր.
Անուն որ զհարսըն մեր վառէր նահատակ
Ի վեհ հանդէս յաղթանակաց յաղթանակ.
Զոր՝ սաւաջինք մեր գոչեցին անձկայրեաց
Երբ քարշ ընդ դրունս վարէին քաղցր հայրենեաց.

Զոր՝ ուսուցին յաղթական երկնից անմեռյն.
Զոր՝ հեծեցին յօր սեաւ մերայս ծընընդեան,
Յո զմեզ ի գիրկն առեալ լալով փարժեցին,
Դողդոջ մատամբ ցուցանելով ուր Եդին.
Եւ ի վերջին շունչ՝ ի ցաւոց յետին պահ
Ազդէմն յայն մարդ ուղղեալ յոր քաղցր էր եւ մահ՝
Ահ Հայաստան, Հայաստան
Կողկողեցին եւ մեռան։
Զքեզ ամփոփեալ մեր սըրբազան ովշունչ հարց,
Զքեզ սիրաքս հնչեն, շրթունք կրկնեն մշտարծարծ
Ահ Հայաստան, Հայաստան...
Եւ ուխք Վոլկայ, Գանգէս, Ուրալ եւ ալիք,
Վոսփոր եւ Սէն...ընդ մեզ հեծեն ցաւալիք
Ահ Հայաստան, Հայաստան...
Եւ հեծեսցեն ընդ մեզ, աւա՜ղ, յաւիտեան...
Յոգւոց հանի, ի գող մատանցս անկաւ քնար,
Եւ յարտասուացս ինչ ոչ տեսի յայն խաւար,
Բայց հառաչմանցս ողբակից հեշտ լըւայ ձայն,
Ահ Հայաստան, Հայաստան։

Խորէն Վ. Գալֆայեան։ Մասեաց Աղաւնի, Գ. տարի, 1858 Թ. յունվար, Ե. 1—8։

---

153

## ՏԻԿՆԱՅՔ ՀԱՅՈՑ։

Իսկ կանայք երանելի առաքինեացն և կապելոցն և անկելոցն ի պատերազմին՝ ընդ ամենայն աշխարհն Հայոց համօրէն համարել ես ոչ կարեմ. զի բազում այն են զոր ոչ գիտեմ, քան թէ գիտեմ։ Զի հինգ հարիւրով չափ յականէ յանուանէ ճանաչեմ. ոչ միայն որ աւագագոյնքն էին, այլ զբազումս ի կրսերագունից անտի։

Ամենքեան միահամուռ զերկնաւոր նախանձ բերելով, ոչ ինչ ընդ հատ երևեցան յայնցանէ՝ որ ոչ ճաշակեցին զաշխարհս։ Քանզի եթէ աւագագոյնք էին, և եթէ մանկագոյնք, զ՚ի առաքինութիւն հաւատոյ զգեցան։ Ոչ ինչ յիշեցին ամենևին զանուն փափկութեան մայրենի ազատութեանն, այլ իբրև մարդք՝ որ վշտամբերք էալ

հեծեն անդադար ի չքնաղական առաքինութեանցն առնաքերպ վարելոյ ըն-կերաց աշխարհին, անդրադարձիք եւ քան զնոսա յանձն առին զհամ-բերութիւն վշտաց:

Ոչ միայն յորժամ մխիթարեալ կային առ աներկեղ զօրու-թեան յուսոյն յաւիտենից, այլ եւ մարմնոյ ներդութեամբք առաւել եւս բարձին զբեռն ծանրութեան: Զի թէպէտ եւ ունէին զիւրա-քանչիւր ձեռնասուն սպասաւորս, ոչ ոք երեւէր ի նոցանէ՝ թէ որ տիկինն իցէ եւ կամ որ նաժիշտն. մի հանդերձ էր հասարակաց, եւ միապէս գետնախշտակիք երկոքեան: Ոչ ոք ուրեք անկողնարկ լինէր. քանզի եւ չհանդուրժէին իսկ զխոտաբեղէնն ընտրել ի միմեանց. մի գոյն թխութեան փսիաթայիցն, եւ մի գոյն սեւութեան սնարից բարձիցն:

Ոչ գոյր նոցա համեմ խախամանք անուշարար առանձինն, եւ ոչ հացարարք որոշեալ ի պէտս պատուոյ ըստ ազատաց կարգի, այլ հասարակաց էր. - Հաւասարութեամբ ըստ կարգի միայնակեցաց, որ յանապատի բնակեալ են: Ոչ ոք ուրեք ջուր ի ձեռս արկանէր, եւ ոչ կրտսերք աւագաց դաստառակս մատուցանէին. չանկաւ օշնան ի ձեռս փափկասուն կանանց, եւ ոչ մատուցաւ եւղ ի զուարթութիւն խրախութեան: Չերթան առաջի սուրբ սկուտեղք, եւ ոչ անկան բաժա-կակալք յուրախութիւն. չեկաց ուրուք նոցա նաժիրակ առ դուրս, եւ ոչ կոչեցան պատուականք յարանց ի տաճարս նոցա. չյիշեցան նոցա՝ թէ գուցէ ոք անձինքն ի բնակարանին դայեկաց եւ կամ բնաւ ի սիրելի հարազատաց:

Փոշոտեցան եւ ծխոտեցան սրահակք եւ սրսկապանք նորեկ հար-սանց, եւ սարդի ոստայնք ձգեցան ի սենեակս առագաստաց նոցա. կործանեցան բարձրագահք տաճարաց նոցա, եւ խանգարեցան սպասք երախանաց նոցա. անկան կործանեցան ապարանք նոցա, եւ տապա-լեալ աւերեցան ամուրք ապաստանի նոցա: Զօրացան աղաղեցան բուրաստանք ծաղկոցաց նոցա, եւ դաշտախիլ եղեն որթք գինեբեր այգեաց նոցա:

Աչօք իւրեանց տեսին զյափշտակութիւն արարոց իւրեանց, եւ ականջօք իւրեանց լուան ըղչարչարանս վշտից սիրելեաց իւրեանց. առան զանձք իւրեանց յարքունիս, եւ ոչ մնացին ամենեւին զարդք երեսաց իւրեանց:

**ՏԻԿՆԱՅՔ ՓԱՓԿԱՍՈՒՆՔ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻՆ**, որ դրգեալք եւ գգուեալք էին յիւրաքանչիւր բաստեռունս եւ ի դահա-ւորակս հանապազ բոկ եւ հետի երթային ի տունս աղօթից, ան-

ձանձրոյթ խնդրելով ասէաք՝ զի համբերել կարասցեն մինչ նեղութեան։ Որ ի մանկութենէ իւրեանց սնեալ էին ուղղափառ դայեակաց և ամծովք երէոց, խոտաբուտ կենօք իբրև զվայրենիս ընդունէին զկերակուրն մեծաւ խնդութեամբ, և ոչ յիշէին ամենևին ըզսովորական փափկութիւնն։ Սևացեալ ներկեալ մորթք մարմնոյ նոցա, վասն զի ցերեկ արևակէզք էին և զամենայն գիշերս գետնամերկք.

Սաղմոսք էին մշտնջենաւորք՝ մրմռունջք ի բերանս նոցա, և մխիթարութիւնք կատարեալք ընթերցուածք մարգարէիցն։ Միաբանեցին երկու երկու իբրև ամոլք հաւանք և հաւասարք՝ ուղիղ տանելով զակօսն արքայութեան, զի տանաց վերակրելոյ հասցեն ի նաւահանգիստն խաղաղութեան։

Մտացան զկանացի տկարութիւն, և եղեն արուք առաքինիք ի հոգևոր պատերազմին. մարտ եդեալ կռուեցան ընդ մեղան կարեւորս, հատին կորեցին և ընկեցին զմահաբեր արմատս նոցա։ Միամտութեամբ յաղթեցին խորամանկութեան, և սուրբ սիրով լուացին զկապուտակ ներկուածս նախանձուն. հատին զարմատս ագահութեան, և չորացան մահաբեր պտուղք ստոց նոցա։ Խոնարհութեամբ կործեցին զամբարտաւանութիւն, և նովին խոնարհութեամբ հասին երկնաւոր բարձրութեանն։ Աղօթիւք բացին զփակեալ դրունս երկնից, և սուրբ խնդրուածովք իջուցին զհրեշտակս ի փրկութիւն. լուան աւետիս ի հեռաստանէ, և փառաւորեցին զԱստուած ի բարձունս։

Այրիք որ ի նոսա էին՝ եղեն վերստին հարսունք առաքինութեան, և բարձին յանձանց ըզնախատինս այրութեանն։ Իսկ կանայք կապելոցն կամօք կապեցին զմարմնաւոր ցանկութիւնս, և եղեն կցորդ չարչարանաց սուրբ կապելոցն. ի կեանս իւրեանց նմանեցին քաջ նահատակացն մահուամբ, և ի հեռաստանէ եղեն վարդապետք մխիթարիչք բանտարգելեացն։ Մտաւմբք իւրեանց վատակեցին և կերակրեցան, և զկարգեալ ռոճիկ նոցա յարքունուստ ամ յամէ թողակ առնէին և տային տանել նոցա մխիթարութիւն։ Անարիւն ճգնաւորաց նմանեցին, որ երգոյն քաղցրութեամբ տանց կերակրանաց կեան, և կենդանի են միայն զօդն ծծելով, զանմարմնոցն բերեն ըզնմանութիւն։

Բազում ձմերաց հալեցան սառնամանիք. եհաս գարուն և եկին նորեկ ծիծեռունք. տեսին և խնդացին կենցաղասէր մարդիկ, և նոքա ոչ երբէք կարացին տեսանել զանձկալիսն իւրեանց։ Ծաղիկք

գործնեայն յիշատակեցին զպատկառէր ամուսինս նոցա, և աչք իւրեանց կարօտացան տեսանել զցանկալի դէմ երեսաց նոցա։ Սպառեցան բարակք որսականք, և խցեալ կուրացան արշաւանք որսորդաց։ Նամագրօք յիշատակեցան նոքա, և ոչ մի տօնք տարեկանաց ոչ ածին զնոսա ի Հեռաստանէ. ի ճաշակատեղս նոցա հայեցան և արտասուեցին, և յամենայն յատեանս յիշեցին զանուանս նոցա։ Բազում արձանք կանգնեալ էին յանուն նոցա, և անուանք իւրաքանչիւր նշանակեալ ի նոսա։

Եւ իբրև այնպէս յամենայն կողմանց ալէկոծ լինէին միտք նոցա, ոչ ինչ կասեալ թուլացան յերկնաւոր առաքինութենէն։ Արտաքնոցըն երևէին իբրև այրիք սգաւորք և չարչարեալք, և յոգիս իւրեանց զարդարեալք և մխիթարեալք երկնաւոր սիրով։

Ոչ ևս ախորժեցին հարցանել զեկեալ ոք ի Հեռաստանէ, եթէ երբ լինիցի մեզ տեսանել զսիրելիսն մեր. այլ այն էին խնդիր աղօթից նոցա առ Աստուած եթէ որպէս սկսանն՝ քաջութեամբ ի նմին կատարեսցին լի երկնաւոր սիրովն։

Եւ մեք և նոքա հասարակ ժառանգեսցուք զքաղաքամայրն բարեաց, և հասցուք խոստացելոց սիրելեացն Աստուծոյ ի Քրիստոս Յիսուս ի Տէր մեր։ (Եղիշէի պատմութիւն Վարդանանց։ Կ. Պօլիս, 1866, ե. և. 433—442)։

---

Мнѣ невозможно назвать по-именно доблестныхъ женъ плѣнниковъ, павшихъ въ великомъ сраженіи, столь пагубномъ для Арменіи. Я знаю по-именно около пятисотъ, но есть еще множество, которыхъ я не знаю. Между тѣми, которыхъ я знаю, большую часть составляютъ знатныя, другія же принадлежатъ классу низшему. Всѣ онѣ были объяты ангельскимъ соревнованіемъ — отказаться отъ благъ и удовольствій міра, и жены благородныя, и жены простолюдиновъ облеклись въ одно мужество вѣры и въ одно терпѣніе добродѣтели.

Онѣ изгладили изъ своей памяти все, что могло напоминать имъ прежнюю пышность. Онѣ несли бремя своей жизни, какъ закоснѣлые въ трудахъ земледѣльцы, и какъ будто съ самаго младенчества привыкли выносить тяжкія лишенія, налагаемыя бѣдностью. Сколько души этихъ добродѣтельныхъ женъ были подкрѣпляемы благодатью и надеждою на вѣчность, столько же и тѣла ихъ удручены были бременемъ

жизни, которое имъ было тяжко выносить. Каждая знатная госпожа, по обычаю страны, держала при себѣ женщинъ, съ дѣтскихъ лѣтъ въ великолѣпномъ домѣ ея воспитанныхъ—теперь нельзя было отличить служанокъ отъ госпожъ: онѣ носили всѣ одинаково грубое платье и вечеромъ никто не стлалъ постели для другой: нельзя было различить общую ихъ постель—черное сѣно. Онѣ одѣвались однимъ жесткимъ чернымъ покрываломъ и клали свои головы на одно жесткое изголовье. Не было болѣе изысканныхъ блюдъ для нихъ приготовляемыхъ, не было при нихъ особыхъ хлѣбниковъ, по обычаю знатныхъ домовъ. Каждая изъ этихъ женщинъ, безъ всякаго различія званій, имѣла свою долю въ хозяйствѣ, соблюдала въ дни воскресные воздержаніе, какъ монахи пустынные. Никто не подносилъ воды знатнымъ госпожамъ, чтобъ онѣ вымыли руки, и для обтиранія ихъ, служанки не подавали имъ тонкихъ полотенецъ. Онѣ перестали употреблять душистыя мыла, разныя эссенціи и духи по днямъ праздничнымъ. На столахъ не красовалось уже прекрасной посуды, и богатые кубки заздравные были съ нихъ изгнаны. Церемоніймейстеръ уже не стоялъ у дверей великолѣпныхъ залъ для пріема гостей; дворцы не отворялись для принятія особъ знатныхъ: всякій сказалъ бы, что въ памяти ихъ не осталось ничего, напоминающаго имъ, что въ мірѣ есть у нихъ родные братья и друзья близкіе. Пыль и копоть лежали на туалетахъ, покрывалахъ и занавѣсахъ постелей молодыхъ супругъ, въ опочивальняхъ растилали ткань свою пауки, почетныя кресла и парадные балдахины лежали опрокинутыми, великолѣпные сервизы были перебиты и обширные дворцы стояли въ страшномъ запустѣніи. Наконецъ укрѣпленные ихъ замки были, по повелѣнію царскому, срыты до основанія. Душистые цвѣты роскошныхъ садовъ поблекли, плодоносныя виноградныя лозы были вырваны. Собственными глазами видѣли онѣ, какъ грабили и разоряли ихъ, и до слуха ихъ доходили только разсказы о страданіяхъ ихъ друзей. Всѣ сокровища женскія и украшенія были конфискованы въ пользу царя. Не оставалось ни одной жемчужины для украшенія доблестной груди ихъ, ни одного камешка для благороднаго чела ихъ. Нѣжныя жены армянской страны, взлелѣянныя съ дѣтства въ нѣгѣ и роскоши, воспитанныя на софахъ и мягкихъ подушкахъ, ходили теперь изъ сырыхъ жилищъ своихъ босыми въ церковь Божію или молельню—испрашивать у Бога пламенными молит-

мощи благодатную силу выносить терпѣливо тяжкое горе жизни. Тѣ, которыя съ юныхъ лѣтъ привыкли къ изысканной пищѣ, съ радостью утоляли свой голодъ травами и овощами, вовсе не вспоминая о прежнихъ вкусныхъ блюдахъ. Увялъ цвѣтъ лица ихъ и загрубѣла кожа, цѣлый день подвергаясь онѣ загару на солнцѣ, а ночью склоняли головы на грязное сѣно, брошенное на землю. Уста ихъ произносили только стихи псалмовъ и единственнымъ утѣшеніемъ ихъ было чтеніе пророковъ. Онѣ сходились часто между собою, чтобы вѣрно нести свое иго, идти по одному пути въ рай и достичь, не сбиваясь съ пути, обители мира и покоя. Онѣ сбросили слабость пола своего и стали доблестными воинами на духовной войнѣ. Онѣ боролись съ грѣхами, къ которымъ клонила ихъ невольно природная слабость, и вырывали ихъ съ смертоноснымъ корнемъ. Онѣ побѣдили обманъ простотою голубя и святою любовью своею выбѣлили багровыя пятна ревности. Онѣ срѣзали корни скупости и ядовитые плоды ихъ высохли на отрѣзанныхъ вѣтвяхъ. Онѣ пристыдили гордость своимъ смиреніемъ и этою добродѣтелью возвысились до небесъ. Своими молитвами онѣ отверзли замкнутыя врата неба, и ангелы спасители сошли на землю, привлеченные ихъ мольбами. Наконецъ онѣ получили добрыя вѣсти, которыхъ ожидали нетерпѣливо изъ далекихъ странъ, и прославили милосердаго Бога. Вдовы, находившіяся между ними, сдѣлались супругами добродѣтели. Жены именитыхъ князей—плѣнниковъ добровольно заглушали желанія плоти, изнуряли и умерщвляли свое тѣло и причастились мукъ доблестныхъ супруговъ своихъ. Жизнью своею онѣ уподобились святымъ мученикамъ, борющимся до послѣдняго мгновенія жизни. Изъ далека утѣшали онѣ плѣнныхъ и трудами рукъ своихъ вырабатывали средства для пропитанія, и ничтожное жалованье, получаемое ими отъ царя, берегли, ничего для себя не истрачивали, чтобы ежегодно посылать его въ помощь своимъ супругамъ. Онѣ походили на стрекозъ, не имѣющихъ въ себѣ крови, которыя живутъ воздухомъ и мелодіей, онѣ представляютъ намъ собою образъ духовъ безтѣлесныхъ. Ледъ многихъ зимъ растаялъ; весна нѣсколько разъ уже возвращала ласточекъ: все радовало сердце человѣка; но жены плѣнныхъ христіанъ тщетно ждали радостнаго возврата возлюбленныхъ своихъ супруговъ. Видъ цвѣтовъ весеннихъ напоминалъ имъ ангельскую нѣжность святой любви возлюбленныхъ и взоры ихъ жаждали

отдохнуть на прекрасныхъ ихъ образахъ. Охотничьи гончія собаки благородныхъ вельможъ погибли одна за другою въ отсутствіи своихъ господъ, и перестали ржать борзые кони ихъ. Бѣдныя жены христіанскія не имѣли другихъ воспоминаній о супругахъ своихъ, кромѣ ихъ портретовъ. Торжественныя собранія, дни великихъ праздниковъ, проходили и не приносили имъ свиданія съ милыми и возврата ихъ изъ земли отдаленной. Бѣдныя проливали слезы, проходя опустѣлыя залы, и звали ихъ по именамъ: въ этихъ залахъ поставлены были статуи въ память ихъ, и на каждой было вырѣзано имя отсутствующаго. И такъ, все волновало тоскою убійственною душу этихъ доблестныхъ женъ; но онѣ неутомимо исполняли святой долгъ добродѣтели. Въ глазахъ другихъ онѣ казались печальными вдовами въ траурѣ и унылыми; но внутренно были утѣшены любовью божественною. Онѣ наконецъ перестали спрашивать путешественниковъ, возвращавшихся изъ земель далекихъ. «Увы, когда увидимъ мы прекрасныхъ друзей нашихъ!» Одно было предметомъ ихъ обѣтовъ, объ одномъ молили онѣ Бога: чтобы онѣ, исполненныя небесной любви, терпѣливо вынесли до конца свои мученія. Постараемся же и мы, подобно имъ, быть достойными блаженства небеснаго. Будемъ и мы безпрерывно трудиться чтобы достичь покоя, обѣщаннаго вѣрнымъ служителямъ Божіимъ милостью Господа нашего Іисуса Христа» (Исторія Егише Вардапета, въ русскомъ переводѣ Петра Самойловича Шаншіева. Тифлисъ, 1566 г. Стр. 337—344).

*Ծանօթ.* *Եղիշէ վարդապետ (վարժապետ), Ամատունէից իշխանութեան եպիսկոպոս, աշակերտ երջանկայիշատակ սրբոց և բազմերախտ ազգասիրաց Սահակայ և Մեսրոպայ, Աստուաշունչի կրտսերագոյն Թարգմանիչներից մէկը, իբրև ատենադպիր (սեկրետար,* секретарь) *ազգային զօրապետի և երևելի Հայրենեաց նահատակի սրբոյն Վարդանայ Մամիկոնէից իշխանի, ներկայ գտնուեցաւ,* 450 *Թուին (մեզանից* 1418 *տարի առաջ), Արտաշատ քաղաքի ազգային ժողովի մէջ: Այս այն յաւիտեանս անմոռանալի ազգային ժողովն էր, ուր մեր անձնանուէր ազգի երեսփոխանքը — հոգևորականք և աշխարհականք—վճռեցին իրանց զոհել մեր սուրբ հաւատոյ համար, զէնքով պատերազմիլ Պարսից արքայ Յազկերտ* II-*ի դէմ* (Іездигердъ), *որ կամենումէր բռնութեամբ ուրացնել տալ մեզ մեր սուրբ հաւատը, հարկադրելով պաշտել Պարսից պաշտած*

կրակը և արեգակը, որ մենք, հաւատոյ հետ, կորուսանենք մեր լեզուն էլ և ազգութիւնը: Այս պատերազմը տևեց 439—485 թուականը: Եղիշէի պատմութիւնը, կամ աւելի ճիշդ ասելով, ժամանակագրութիւնը, մէկ վիպասանաձև ճիշդ պատմութիւն է մեր անցեալինը և, իւր գեղեցիկ և ազդու նկարագրութեամբ, կարող է համարվիլ և ազգային երգ, և ողբերգութիւն, և նահատակագրութիւն, և կենդանագրութիւն և բանաստեղծութիւն: Եղիշէի պատմութիւնը կոչվում է «Պատմութիւն Վարդանանց և Հայոց պատերազմի»:

Առաջին անգամ տպվեցաւ Ամստերդամ (Հօլլանդիայում) մեզանից մօտ 125 տարի առաջ; յետոյ. 1764 (Էջմիածնայ միաբան Վարդան վարդ. տպագր.), 1823 և 1866 թ. թ. Կ. Պօլիս; 1787 Ս. Պետերբուրգ և Նոր Նախիջևան; 1828, 1832, 1838 և 1858 Վենետիկ;—1860 Թէոդոսիա և Մոսկով —բոլորը գրաբառ: Աշխարհաբառ թարգմանութիւնը 1863 Մոսկվա: Գաղղիերէն թարգմանութիւնը, 1844 թ. Փարիզ; Ռուսերէն թարգմանութիւնը, 1853 թ. Տիֆլիս; Անգլիարէն թարգմանութիւնը, 1830 թ. Լօնդօն; Իտալերէնը 1841 թ. Վենետիկ, ընդ ամէնը 12 տպագրութիւն գրաբառ, 1 տպ. աշխարհաբառ, և 4 թարգմանութիւն օտար լեզու—բոլորն 17:

Եղիշէի միւս գրուածներից մեզ հասել են. Խրատ միանձանց, Վենետիկ, 1828: Մեկնութիւն Տէրունական աղօթից, Վենետիկ, 1838: Մեկնութիւն ծննդոց, Յեսուայ, Դատաւորաց և այլն, Վենետիկ, 1833: Զանազան ճառք` աղօթք, ճառք եկեղեցական կանոնաց և ճառ վասն հոգւոց մարդկան, ձեռագիրք:

Աւարայրի (կոչվում է և Շաւարշան) դաշտումն, Տղմուտ գետի վերայ, եղև գլխաւոր պատերազմը, որ տվին Հայերը Պարսից: Այս պատերազմում նահատակվեցաւ և հայ զօրաց սպարապետը (главнокомандующій) քաջն Վարդան, միւս 1035 հայ զօրավարաց և պատերազմողաց հետ:

Հայաստանեայց եկեղեցին մեծաւ հանդիսիւ տօնում է Վարդանանց զօրավարաց նահատակութեան օրը, որը կատարվում է, համարեա թէ միշտ փետրվար ամսին, բարեկենդանի օրերումը:

Հայոց ուսումնարանների երախտագէտ կառավարիչքը և ուսուցիչքը նմանապէս տօնումեն այս օրը, գնալով աշակերտաց հետ միասին լսել սուրբ պատարագը և յետոյ, ուսումնարանների դահլիճներում, պատշաճաւոր ազգասիրական ճառերով, որոնց նիւթն է թէ Վարդանանց նահատակութիւնը, թէ ազգի անցեալ և այժմեան դրութիւնը և թէ, մանաւանդ և մասնաւորապէս, ազգի բարելաւութիւնը և բարօրութիւնը ազգային դաստիարակութեամբ և ուսմամբ, որոնք միակ և ամենահզօր

միջոցք և հնարք են մարդկային հոգևոր և մարմնաւոր բարեբաղդութեան:

Բայց որովհետև մենք, նայելով մեր ազգի այժմեան ցրուեալ և աննախանձելի դրութեանը, պէտք է աշխատենք գլխաւորապէս ազգի լուսաւորութեան և դաստիարակութեան համար, արժանի կը լինէր և հարկ է ամենայն գաւառ աղնուականք և ազգասէր հայոց, թէ արանց և թէ կանանց, թէ հոգևորականաց և թէ աշխարհականաց, այսպիսի խորհրդաւոր տօներին, թէ սուրբ տաճարի, թէ ուսումնարանների, թէ գերդաստանների և թէ հրապարակների մէջ ստորագրութիւններ (ПОДПИСКА) բաց անել և գումար հաւաքել ազգային լուսաւորութեան և դաստիարակութեան համար: Այս գումարները ծախսել. 1) Նախ և առաջ ամենայն աղջկանց և տղայոց ուսումնարաններում մէկ փոքր բայց կանոնաւոր գրադարան, գրատուններ հաւաքելու, հաստատելու, ամենայն գիտութեանց ընտիր շարադրութեանց, նախ հայերէն լեզուաւ գրած, և ապա այն լեզուաւ, որ հականումն այն երկրի հայերը: Եթէ կարելի է, ամենայն գրքից երկու օրինակ լինէր, մէկը աշակերտաց համար և միւսը այն քաղաքի կամ գիւղի ժողովրդոցը համար. 2) Այդ գումարներով պատրաստել հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցներում հայազգի վարժապետներ. 3) Ընտական ուսումնարաններում ուսումն աւարտած ընդունակ և ամուր կազմուածքի տղայոց ուղարկել սովորել Գերմանիայ այն արհեստները, որոնք մեզ առաւել հարկաւոր են, և այլն և այլն:

Հազարաւոր գրեանք և լրագիրներ, մանաւանդ հին և այժմ հազուագիւտ տպագրութեանց, գտնվումեն մերայնոց մօտ: Ինչ կլինէր որ նոքա այս գրեանքը ընծայ ուղարկէին Տփխիսու Ներսիսեան, Շուշուայի, Երևանայ, Պօլսոյ Նուբար-Շահնազարեանի, Զմիւռնիայի Մեսրոպեան և Վանու (Շամիրամակերտի) ազգային վարժարաններին, որ, ժամանակաւ գոնեա, այդ տեղերը կազմուէր ազգային գրադարաններ, որոնց մէջը կարելի լինէր գտանել ամենայն գիրք, լրագիր և թերթեր, որ դուրս են եկել հայկական մամուլի տակից ի սկզբանէ մինչև այսօր: Վերոյիշեալ ուսումնարանները, եթէ ունենան մէկ գրքից երկու կամ երեք օրինակից առաւել, սոցանից աւելորդը կարող են ընծայել միւսին և ինքներն ստանալ այն գիրքը, որը կամ չունին, կամ ունին մի օրինակ միայն: Յայտնի է որ այսպիսի գրադարանների համար, որոնք պէտքէ դառնան անյագելի գանձ ազգային լուսաւորութեան, հարկաւոր են կանոնաւոր կերպիւ, եւրոպացւոց դրադարանների ծրագրով, նախագաղափարով, պլանով (ПЛАНЪ) և կրակից ապահով, առանձին տուներ կամ սենեակներ և կանոնաւոր հաշուատեսութիւն, ցուցակներ և ցուցակների տոմսակներ այբբենական կարգաւ:

(Traduction du 152 chanson).

(152 երգի թարգմանութիւնը)։

## BÉNIS SOIENT CEUX QUI AIMENT LA PAUVRE ARMÉNIE!

A M. J. PRATI.

„Toute sa magnificence lui a été enlevée;
elle était libre, elle est devenue esclave“.
(I. Mach. II. 11).

Et ils me disaient: «Poète, parle-nous de ta patrie;
Nous aussi nous aimons l'Arménie».
—Soyez bénis, mes hôtes vénérés;
Bénis soient ceux qui aiment la pauvre Arménie!
Et j'ai soupiré, et mes pleurs ont coulé;
Et ils disaient entre eux: Pourquoi ce grand deuil du poëte?

I

Vous demandez: Pourquoi ce grand deuil de poete?
Ah! laissez! les pleurs sont la seule consolation de l'enfant de l'Arménie;
Laissez pleurer ces yeux dont les regards avides
N'ont jamais salué les hauteurs aériennes de la patrie;
Laissez-moi pleurer de n'avoir jamais connu cette terre de vie
Où mes aïeux ont vécu, où ils ont adoré, où ils sont tombés;
Cette terre, objet des désirs et des vœux de l'exilé,
Dont l'air pur n'a jamais fait palpiter son cœur, son cœur de pèlerin;
Laissez-pleurer de n'avoir jamais rafraîchi ses lèvres desséchées
Aux fontaines vivifiantes de l'Arménie.
O doux ruisseaux qui avez connu les anciens contours du Paradis
Et ses sentiers! qui en avez carressé les fleurs;
Ondes claires de l'Éden, pourquoi vos sources si douces
Sont-elles sitôt devenues amères de l'amère source de nos yeux?
Pourquoi votre pur cristal s'est-il sitôt terni,
Mêlé aux pleurs abondantes de nos pères?
Vous ne réfléchissez plus la beauté de nos yeux d'azur;
Vous ne produisez plus ces fleurs issues des bocages d'Éden,
A vos échos ne se mêle plus une voix connue,
Mais la voix de l'étranger dont le berceau ne fut pas sur vos doux rivages.
Et nos sanglots, partout éntendus, tristes et brûlants,
Ne retentissent jamais dans vos vallées.
Mais vous soyèz bénis, ô mes hôtes vénérés!

Bénis soient ceux qui aiment la pauvre Arménie!
Pauvre Arménie! qui donc en voyant ton présent
Pourrait concevoir la splendeur de ta fortune passée?
Aujourd'hui tombée, qui croirait que tu as porté la tête bien haut!
Aussi haut que ton mont sublime?
Comme s'éclipse l'aurore dans une matinée orageuse,
Ainsi s'éclipsa l'éclat éblouissant de ton front.
Tu n'es plus; et ta grande gloire et tes jours de triomphe
Ne sont plus que des souvenirs sans vie.
C'est beaucoup si, passant près de toi,
Le voyageur te jette un regard de pitié;
C'est beaucoup qu'il te croie digne d'arrêter ses pas;
Toi, dont pendant tant de siècles le sol a servi de séjour à la gloire;
Il ne sait pas que cette terre qu'il regarde avec mépris
Fut une terre de vaillance et de vertus;
Il ne sait pas que la poussière que soulèvent ses pas dédaigneux,
C'est la cendre des héros qui ont ébranlé le monde,
Et qui, sur les débris des trônes des nations du nord,
Ont élevé jusqu'aux cieux le trône de l'Arménie;
Il ne sait pas que c'est de là que tes rois, princes des nations,
Envoyaient les monarques de leur choix, oracles de l'Orient.
Ton nom, terreur de l'ennemi, était l'espoir de l'allié;
Il était chanté en accords sublimes sur la harpe du barde;
Et aujourd'hui l'étranger, en se raillant, le prononce sans respect;
Et la harpe couverte d'un voile noir le soupire en pleurant.
Mais vous, soyez bénis mes nobles hôtes!
Soient bénis tous ceux qui aiment la pauvre Arménie!
La terre caressée par les premiers rayons nés du soleil,
Où la nature est toujours nouvelle et toujours belle,
Vous la croyez morte et changée en une tombe immobile;
N'est-ce pas elle qui a été choisie pour être deux fois le berceau de la vie?
Cette terre où se réfugia la fortune de l'humanité,
Vous la croyez indigne d'être visitée par la fortune,
Comme un coin enseveli entre les gorges des monts,
D'où la lumière en tremblant s'échappe et s'enfuit?
Pourquoi donc jeter des regards d'outrage et non de pitié
Sur celle qui n'a plus à vous montrer que ses ruines?
Quoi! la gloire oublierait-elle sa patrie!
Parce qu'elle n'est plus respectée par vous; ô étrangers!

Parce que le voile-brodé d'or de la reine a été rejeté de son front,
Croyez-vous que sa tête soit nue pour toujours?
Regardez-la bien! Ce front d'une si mâle beauté
Conserve encore les traces lumineuse du diadème;
Ce front qui, l'une après l'autre, porta quatre couronnes
Toutes plus glorieuses et plus éclatantes l'une que l'autre
Hélas! quand tu donnais des diadèmes et des trônes,
Et des chefs couronnés aux nations.
Arménie! était-ce donc là la destinée qui t'attendait?
Le sort, ton allie fidèle pendant tant de siècles,
Dans les sentiers de la gloire, devait-il, te trahissant à l'imprévu,
S'envôler, ne te laissant ni adieu ni aucun espoir de retour?
Et ton nom, qui semblait n'avoir ni limite ni fin,
S'éteignit comme la flamme sur des herbes humides.
Mais ta vie ne fut-elle. donc si longue
Que pour tu faire mieux sentir ta mort plus longue dans l'avenir?
Pour te faire expier davantage tous tes honneurs et toutes tes joies passées,
Dans tant de pleurs et tant d'outrages?
Pour te faire voir ton sceptre, don des cieux, broyé
Comme un lis sous les pieds des bêtes sauvages?
Pour te montrer les frontières vastes et sans limite de ta gloire,
Comme un champ où la mort a déployé ses ailes?
Mort dans les âmes, mort dans les cœurs, mort de toutes parts.
Une immortelle malédiction seule nous reste, abîme où nous sommes perdus.
Mais vous, soyez bénis, ô mes nobles hôtes!
Soyez bénis, ô vous qui aimez la pauvre Arménie!
Oui, vous l'aimez; mais cet amour
Le malheureux l'implore à son secours;
Et l'Arménie vous donne l'idée d'un jour à peine éclos
Qui disparaît voilé sous les ténèbres.
Hélas! l'obscurité, qui depuis si longtemps pèse sur notre horizon,
Ne sera-t-elle pas bannie? ne sera-t-elle pas bannie par la lumière cette nuit affreuse!
Verrons-nous, enfin, le terme promis aux malheureux,
Nous, qui ne brisons que le pain du malheur?
C'est toujours de l'Orient que nous vient la lumière;
Le soleil après son départ revient encore visiter le levant;
Et nous, les enfants privilégiés de l'Orient, les premiers de ses fils;
Nous, jusques à quand devons-nous errer dans les ténèbres?

Ce feu qui brûlait, avec ses brillantes flammes, sur les sommets du Massis
Ne conserve-t-il plus aucun élément de vie?
L'étincelle, de nouveau ravivée,
Ne s'élancera-t-elle pas pour rallumer le cœur des Arméniens?
Quand donc enfin de cette cendre noire et éteinte
S'approchera, pour la visiter, la main qui donne la vie;
La main, qui des ténèbres, a séparé la flamme
Pour la semer dans l'espace illimité?
Cette main n'est-elle avare que pour les Arméniens?
Ou ne s'ouvre-t-elle libérale que pour leur donner des douleurs et des tourments
Mais vous, soyez bénis ô mes hôtes vénérés!
Bénis soient ceux qui aiment la pauvre Arménie!
Vous, enfants de l'Europe, dont les regards nagent dans la lumière,
Comme la prairie nage dans les ruisseaux qui la baignent,
Ah! cet espoir si long de quatre siècles,
Ne nous l'enlevez pas! n'enlevez pas cette consolation à nos cœurs!

II.

Salut! espoir! espoir divin, salut!
Toi dont la lumière apparaît en déchirant le voile épais des yeux.
Salut! toi qui resplendis sur ma harpe tremblante,
Comme l'étoile du matin qui prédit le soleil.
Ah! descends aux prières toute une nation
Pour lui promettre l'aube brillante d'un jour nouveau!
Les paupières noyées de pleurs
Salueront avidement la nouvelle naissance de ton aurore,
Comme cet arc aux sept couleurs décrit par Dieu,
Qui, des sommets de l'Ararat, apporta le pardon et l'espoir au monde.
Seigneur! si ton bras si puissant, même dans la miséricorde,
Fait luire pour nous sur notre sainte montagne un jour nouveau;
Nous jurons de t'élever l'autel des vœux,
Au lieu d'où après le déluges s'exhalèrent vers ton trône de suaves parfums;
De t'offrir, pour holocauste, non des brebis, mais nos cœurs immolés dans les tourments;
Nos cœurs qui, même dans le feu tentateur des douleurs, n'ont pas perdu la marque de ton sceau.
Mais si notre destinée n'est pas encore accomplie,
Si nos lamentations et nos souffrances ne sont pas encore montées jusqu'aux cieux,

Nous jurons, nous Arméniens, le serment de sel, scellé de nos larmes amères;
Nous jurons par les hauteurs du mont qui porta l'arche;
Nous jurons par la terre dont l'homme fut pétri,
Et qui donna ses grâces et ses roses au premier printemps,
Par la terre qui recueillit les saints ossements de nos pères,
Sillons d'où nous espérons la vie;
Nous jurons que, partout où l'Arménien sera jeté par le hasard,
Sur les rudes flancs de l'Himalaya ou des Alpes, près de la Seine ou dans l'Afrique,
Il n'oubliera jamais l'héritage de ses ancêtres,
L'amour ennoblissant de la patrie;
Ni les jours de gloire, ni les jours de ces fêtes,
Où bondirent de joie les cœurs de nos pères;
Ni les jours de malheur où ils répandirent des pleurs,
Baptême dont ils lavèrent nos têtes;
Ni ce jour qui nous frappa et nous arracha du sein de notre mère,
Pour nous disperser dans combien de lieux, et qui sait pour combien de temps!
Ce jour qui nous a faits pèlerins par le monde entier,
Pèlerins, même quand nous retournons vers toi, Arménie, notre mère.
Mais vous, soyez bénis, mes hôtes vénérés!
Bénis soient ceux qui aiment la pauvre Arménie.

. . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . .
. . . . . . . . . . . . . . . . . . . .

L'Arménien qui, de son sang, lava l'étendard du Christ!
L'Arménien dont la couronne fut le premier piédestal,
Piédestal sublime, d'où s'éleva le signe de vie après Golgotha!...
Ah! ignorez nos histoires et nos gloires;
Niez nos héros; foulez aux pieds toutes nos plaies;
Oubliez la terre qui donna naissance à l'humanité,
Comme un fils ingrat oublierait le sein maternel!
Mais au moins laissez-nous dans les ombres de l'oubli,
Comme un arbre dans les savanes inconnues à l'homme;
Il croît et élève vers les cieux son front majestueux
Dont ne s'approche aucune main avide.

Oui, nous errons la tête baissée vers la terre,
Et nous demandons quel soleil aujourd'hui nous luira;
Mais ce n'est pas le vil intérêt qui guide nos pas,
Ce sont nos malheurs, incompréhensibles à quiconque a une Patrie,
Qui font de nous des pèlerins sur toute la surface du monde,
Pèlerins, même quand nous retournos vers toi, ô Arménie notre héritage!
Mais vous, soyez bénis ô mes nobles hôtes!
Bénis soient ceux qui aiment la pauvre Arménie.
Et j'ai soupiré et mes pleurs ont coulé,
Et ils ne disaient plus: Pourquoi ce grand deuil du poëte?
Mais en vain, combattent contre nous et nos infortunes
Et l'épée, et l'oppression et l'opprobre de i'étranger.
Nous ,n'avons plus de patrie; nous n'avons plus un lieu de repos;
Nos ossements ne peuvent même pas espérer la paix du tombeau;
Mais il est, oui, il est en nous une seule chose comme en Job,
Une chose qu'il n'est permis à personne de nous arrrcher:
Un nom saint, notre seul héritage,
Dont ni les malheurs, ni les chaînes, ni le temps,
Dans l'éternité des siècles, ne pourront jamais nous dépouiller;
Non, jamais, tant qu'ils ne nous auront pas enlevé notre cœur arménien.
Un nom, richesse immense, qui à nous privés de touts nos trésors,
Nous semble une fortune suffisante pour n'avoir à porter envie à personne;
Un doux nom qui comprend toutes nos souffrances et toutes nos gloires,
Et les dons de la nature, et l'amour et les vœux et les espérances;
Qui, dans des milliers de cœurs vivant partout,
Trouve un écho de mille sentiments intraduisibles;
Nom qui, de triomphe en triophe , guidait nos aïeux,
Nobles champions, dans tant d'actions sublimes;
Nom, que nos pères ont invoqué ardemment,
Quand, bannis, ils furent traînés loin des portes de la douce patrie;
Nom, que dans leur exil, ils apprirent à tous les cieux,
Nom qu'ils soupirèrent au sombre jour de notre naissance,
Qu'ils nous apprirent en pleurant, en nous soulevant dans leurs bras,
Et en nous montrant de leurs doigts tremblants où était Éden;
Nom qu'au dernier soupir, au dernier moment des douleurs
En dirigernt leurs regards vers ces saints lieux où la mort même était douce:
O Arménie! Arménie!
Ils redirent et moururent.
Souffle sacré de nos pères, nous l'avons recueilli;

Nos cœurs retentissent d'amers soupirs et nos lèvres avides t'invoquent:
O Arménie! Arménie!
Et les torrents du Volga, du Gange, de l'Oural et les flots des océans,
Le Bosphore et la Seine.... gémissent avec nous de douleur:
O Arménie! Arménie!
Et ils gémiront avec nous, hélas! éternellement....
J'ais oupiré et ma harpe s'est échappée de mes mains tremblantes;
Mes yeux se sont voilés sous des torrents de pleurs;
Mais à mes sanglots j'ai entendu de douces voix répondre:
O Arménie! Arménie!

---

## ԳԼՈՒԽ Ե։

---

## ՈՒՍԱՆՈՂԱՑ ԵՐԳԵՐ (STUDENTEN LIEDER, СТУДЕНЧЕСКІЯ ПѢСНИ):

### 154

*Ո՛վ մայրենի լեզու։*

*Ով մեծասքանչ դու լեզու,*
*Ով հեշտ բարբառ մայրական,*
*Փափկահնչիւն բառերուդ*
*Նման արդեօք այլ տեղ կա՞ն։*
*Դու որ նախ ինձ հնչեցիր,*
*Նախ սիրոյ, ո՜հ, հեշտ խօսքեր,*
*Այն նախ զքեզ թոթովելս*
*Դեռ իմ մտքէն չէ ելեր։*
*Իմ մայրենի քաղցր լեզու*
*Կեա՛ց անսասան, կեաց յաւէտ,*
*Կեաց միշտ լեզուդ հայկարժան,*
*Կեաց ծաղկալից ծաղկաւէտ։*
*Ի՞նչ դառն վիշտ է սրտիս,*
*Երբ օտար տեղ ու լեզու*
*Ունի իրեն զիս քաշէ,-*
*Սրտէս արիւն կը հեղու.*
*Ահ, զայն օտարն ես սիրել*
*Նաւ չեմ կարող 'ի սրտէ,*
*Չէ այն, չէ քաղցր իմ լեզու,*
*Որ սիրով զիս կ'ողջունէ։*
*Իմ մայրենի քաղցր լեզու*
*Կեա՛ց անսասան, կեաց յաւէտ,*
*Կեաց միշտ լեզուդ հայկարժան,*
*Կեաց ծաղկալից ծաղկաւէտ։*

Լեզու համակ սիրաշարժ,
Բանի՜ ճոխ պերճ ու պայծառ,
Մ՚ինչ կը հնչես դուն քեղի,
Սրտերն ամէն գողացար.
Ո՛նչէ, հնչէ յաւիտեան.
Վ՚եհ՝ դիւցազանց պերճ երգ դու,
Թօթուէ փոշեդ խոր մութէն,
Ե՛ւ երեւան պերճ երգ դու։
Իմ մայրենի քաղցր լեզու
Կեա՛ց անսասան. կեաց յաւէտ,
Կեաց միշտ լեզուդ Հայկարժան,
Կեաց ծաղկալից ծաղկաւէտ։

Յաւերժական Սուրբ Գրոց մէջ
Կեաց միշտ նորէն ու նորէն,
Կշռեալ անուշ քու տողերդ
Թող ամէն սիրտ արծարծեն,
Շնորհ ունել Արարչէն,
Կամ պէտք ըլլայ աղօթել,
Շրթունքս սրտէ բորբոքած
Կաղաղակէ անարգել։
Իմ մայրենի քաղցր լեզու
Կեաց անսասան, կեաց յաւէտ,
Կեաց միշտ լեզուդ Հայկարժան,
Կեաց ծաղկալից ծաղկաւէտ։

———

155

## Ուսանող։

(Թարգմանութիւն Գերմաներէնից)

Այն ինչ ազգ է, այն ինչ ցեղ է,
Որ միշտ անկախ է,
Որոյ տունը ամէն տեղ է
Ի՛ անփող ուրախ է.

Ուսանողն [1]) է այն զուարթ մարդը, <br>Կենաց քէֆն [2]) է նորա ցանկացած բանը։ } կրկնէ։

Նա՛ ով է արև ծագելիս՝
Ինքն-էլ զարթում է,
Ու քաղցրը ձայնով երգելիս՝
Փողոցներ չափում է։ Ուսանողն է, և այլն։

Ո՞վ երբէք սէրից չի վախում
Ու միշտ հարս ունի,
Եւ իր անձնի, անպերճ կեանքում
Պարտ ու հոգս չունի։ Ուսանողն է, և այլն։

Ո՞վ է միշտ առաջին կռւում
Հայրենեաց համար,
Փայլուն գինին շիշով կոնծում [3])
Ուրախ, բայց արդար։ Ուսանողն է, և այլն։

Եղբա՛րք՝ դուք որ այն ազգից էք՝
Գինին պատուեցէք,
Ուսանողական պատիւը
Հաստատ պահեցէք։

Իրաւ մենք ենք այն զուարթ ազգը, <br>Կենաց քէֆն է ամենուս ցանկացածը։ } կրկնէ։

Քերոբէ Տէր-Գէորգեան Պատկանեան, որդի Ստաւրոպոլ քաղաքի (Կովկասում) ուսած քահանայի, երբեմն աշակերտ Լազարեան ուսումնարանի, ուսանող Դորպատու, ապա Պետերբուրգի Պեդագոգիկական Ինստիտուտը (Педагогическiй Институтъ), այժմս դոցենտ (ուսուցիչ) հայկական լեզուի Պետերբուրգի Համալսարանում, հօրեղբօրորդի Ռ. Տ—Գ. Պատկանեանի, մօր կողմից թոռն Յարութիւն վարդապետ Ալամդարեանի, Մովսէս Կաղանկատուացւոյ, Սեբէոսի և Ղևոնդի պատմութեանց ռուսաց լեզու թարգմանիչը, Изслѣдованiе о составѣ Армянскаго языка գրքի հեղինակը։

---

## 156

### Ուսանողի կեանքը։

(Թարգմանութիւն Գերմանականից)

Ուսանողաց կեանքից գեղեցիկ կեանք չէ կայ,
Ինչպէս Բաքոս ու Գամբրին ստեղծեց.

1) Студентъ. 2) Զուարճութիւն։ 3) Խմել։

Միշտ պանդոկներ վազել և իւր փողը մսխել
Մի պատուական ու ազնիւ գործ է.
Փող չ՚կայ գրպանումը, պարտք կայ պանդոկումը,
Միշտ ուրախ է մեր քաղցրիկ կեանքը;
Թէ փողերը պակսի՝ նոր պարտքերով կ՚ապրի
Մեր խաչամներիմ ուսանողը։

Սիրով-էլ է պատած ուսանողաց կեանքը,
Մեզ պահում է Հայոց աստղիկը.
Մեզ սիրող աղջիկներ ու պաչեր տուողներ
Միշտ շատ ու շատ էին այն տեղը;
Իսկ վերջին ծարաւով, պղատոնական սիրով
Մեր սէրն միշտ անմեղ կու մընայ;
Բայց իւր վառ սրտումը ուրիշ կրակ վառում է
Մեր խաչամներիմ ուսանողը։

Հայրն ասում է՝ ծեծկվել, պանդոկները թրև-գալ;
Քըննութեան մէջ քեզ օգուտ չի տալ;
Բայց նա մոռանում է, թէ զի փղշտացի է,
Թէ ամեն բան ունի ժամանակ։
Այս է տխրութիւնը, որ շուտ քըննութիւնը
Մեզ վեց ամսեակից յետ կու գայ.
Ուրիշ բան չ՚էր ուզել աշխարհքումը լինել
Մեր խաչամներիմ ուսանողը։

Ք. Տ—Գ. Գաւկանեան։

---

157

(Թարգմանութիւն Լատինական ուսանողական երգից)։

(Gaudeamus igitur, juvenes dum sumus)

Ուրախացուք ուրեմն, | (կրկնեա՛)։
Մինչ երիտասարդ եմք. |
Յետ տղայութեան ցանկանալոյն,
Յետ ծերութեան զառամելոյն
Զմեզ կալցէ հողըն։ (Կրկնեայ)։
Ուր են մեր բոլոր նախնիք | (Կրկնեա՛)։
Յաշխարհիս բընակեալք, |

Համբարձէք առ երկնայինսըն,
Թափանցէք առ դժոխայինսըն,
Ընդ ըզնոսա գըտջիք։ (Կրկնեմ)։

Կեանքըն մեր է կարճօրեայ,
Կարճօրէն վերջանայ, (Կրկնեմ)։
Գուցէ մահըն արագապէս,
Կըշտամբէ ըզմեզ կամաց ընդդէմ,
Ո՛չ իւիք յարգի նա։ (Կրկնեմ)։

Կեցցեն միշտ Հայ վարժարանք,
Կեցցեն միշտ Հայ վարժապետք, (Կրկնեմ)։
Կեցցէ՛ ամէն մի անդամ,
Կեցցե՛ն և բոլոր անդամք
Ու միշտ լիցին ծաղկեալք։ (Կրկնեմ)։

Կեցցեն բոլոր Հայ աղջիկք,
Բընքոյշ և գեղեցիկք, (Կրկնեմ)։
Կեցցեն բոլոր Հայ կանայք
Փափկասնունդք, սիրեցեալք,
Բարիք և ջանասէրք։ (Կրկնեմ)։

Կեցցէ Հասարակութիւն
Ուս նմա իշխէ, (Կրկնեմ։)
Կեցցեն մեր Հայրենակիցք,
Լիցին սիրեցեալ և պատուեալք.
Որ մեզ խնամարկեն։ (Կրկնեմ)։

Ի բաց կացցէ՛ տխրութիւն,
Ի բաց կացցե՛ն ատողք, (Կրկնեմ)։
Ի բաց կացցէ՛ սատանայ,
Որ ընդդէմ ուսանողաց,
Ու համայն ծաղրագործք։ (Կրկնեմ)։

1849 Թ. Դորպատ։

¹ Սալգեանց, Նոր-Նախիջեւանցի, նախկին աշակերտ Մոսկվայի Լազարեանց ուսումնարանի, ետոյ ուսանող Մոսկվայի բժշկական ակադեմիայի, ետոյ Կազանու համալսարանի, ետոյ Դորպատի համալսարանի; վերջին բժշկական քննութիւնը տվեց Պետերբուրգ, 1854 ամի, վախճանեցաւ Տիֆլիս 1862 ամի, ձմեռը, բարակացաւից, բաւական աղքատութեան մէջ։

## 158

(Թարգմանութիւն Գերմանականից)

Եղբարք ուսանողներ ես գնումեմ—մնաք բարև,
Դուռ սրտով ձեզ այստեղ թողնումեմ—մնաք բարև;
Պէտք է իմ հայրենիք այժմ ես յետ դառնամ,
Ինքս էլ փղշտացի դառնամ։
Եղբա՛րք մնաք բարև,
Եղբա՛րք մնաք բարև։
Դու տեղի ուսման համալսարան—մնաս բարև;
Գիտութեանց և հոգւոց կրթարան—մնաս բարև;
Դուք մեծ դահլիճներ, դասերու սենեակներ,
Էլ ձեր մէջ ես մտնելու չեմ։ Եղբա՛րք մնաք, և այլն։
Դու՛ տան գլխիս ուսանողաց բանտ 1)—մնաս բարև;
Կործանվիս, քանդվիս, ո՛վ դու բանտ—մնաս բարև;
Էլ դու ինձ չես բանիլ, լուսիցն էլ չես զրկիլ,
Այժմ ես անիծումեմ քեզ։ Եղբա՛րք մնաք, և այլն։
Բայց դո՛ւք մամռապատ ուսանողներ—մնաք բարև;
Սիրելի հարազատ եղբայրներ—մնաք բարև.
Գինեցէք, ծաղկեցէք, կեանքն վայելեցէք,
Ձեր երգելուս ինձ միշտ յիշեցէք։
Եղբա՛րք մնաք բարև, և այլն։

Ք. Ց—Գ. Գասպարեան։

---

## 159

Ուսանող [2]։

(Թարգմանութիւն Գերմանականից։

Երբ որ հողից մարդ դարձայ,
Երբ Աստուածանից հարցայ.

---

1) Карцеръ. 2) Յայտնի է ամենուն, որ ամեն համալսարանի ուսանողները միաբան յօժարութիւն տուին մտնել զինւորական ծառայութիւն, որ 'ի Տէր հանգուցեալ Նիկողայոս յօժարեցաւ և իր բարեհաճութիւնը ցոյց տուեց։ Այս երգը այդ դիպուածով է տած 1854-ին։

Թէ՝ ի՞նչ վիճակ ես ուզում, կրկնէ։
Ասի՝ ուսանողութիւն։

Աստուած ուզեց զարդարել
Ինձ, գիտայ շորեր կարել.
Ասի՝ էն դու կանանց տուր,
Ինձ մի նշան ազգես տուր։

Կապտածըղիկ [1]) գըդակ տուր,
Մէջքէս կապէ հաստ սուր,
Մտածումըս լաւ գինին
Թո՛ղ միշտ անպակաս լինի։

Իմ սիրելի նազելին,
Մնայ ինձ միշտ հաւատարիմ.
Փըղըշտացի ախոյեան,
Տե՛ս՝ իմ սուրն է իմ պաշտպան։

Ո՛վ չի իլել ուսանող՝
Լա՛ւ է, որ մընար միշտ հող.
Քանց Աստուծոյ լոյս արևն
Ունայն տեղը վայելէր։

Ո՛վ չէ կոնծել երգելով,
Ընկերաց հետ պաչուելով,
Նա չըգիտէ ցընծութիւն,
Եղո՛ւկ սըրտին, վա՜յ հոգւոյն։

Ո՛վ չի երդուել ընկերաց,
Պաշտպան լինել հայրենեաց,
Վերջի արիւնը թափել,
Հայրենիքը ազատել,

Ինչպէսն մեզնից հեռանայ,
Լոյս աշխարհից վերանայ.
Թո՛ղ ում ուզէ կարգն ընկնի,
Մեր մէջ նա թող չի մըտնի։

Ռ. Ց—Գ. Պատկանեան, Դորպատ։

---

1) Ռուսաստանի համալսարանների ուսանողաց նախկին պաշտօնական հագուստի ձևը և գոյնը։

## 160

### Կրամբամբուլի [1]:

(Թարգմանութիւն Ռուսերէնից)

Կրամբամբուլին էս էն օղին է,
Որ մեզի քաջ ծանօթ է,
Որդյ համը չի տեսնելը
Անտանօղին ամօթ է;
Բայց համապազ, իմ սիրելի,
Մենք կոնծումենք կրամբամբուլի,
Կրամբամ բիմ բամ բուլի, կրամբամբուլի:

Հայրս անդադար ինձ գըրումէ՝
«Որդի-ջան՝ շուտ սովորէ.
Ժամանակդ արագ անցնումէ,
Տես, գրերըդ լաւ սերտէ.»
Բայց նորա պարապ որդին
Կոնծումէ կրամբամբուլին, կրամբամբիմբամբուլի, կրամբամբուլի:

Թէ գարդն ու հոգսը ինձ նեղումէ,
Թէ իմ քէֆը տեղը չէ,
Թէ աղջիկը ինձ խաբումէ,
Ու էլ հաւատարիմ չէ.
Կ'ասեմ՝ «Աղջիկ, իմ նազելի,
Քու տեղ կ'սիրեմ կրամբամբուլի, կրամբիմբամբուլի, կրամբամբուլի:

Թէ լերդս ու թոքըս իմ մաշուել է,
Գլուխս էլ սաստիկ ցաւումէ,
Թէ որ խմելն ու քէֆ անելը
Բժիշկն ինձ արգելումէ,
Բայց ինչ ցաւ կ'ուզէ ըլի,
Ես կ'կոնծեմ կրամբամբուլի, կրամբիմբամբուլի, կրամբամբուլի:

Երբ մայրս ինձ մի հարս ճարել է,
Ասում է որ՝ պըսակուիմ,
Եւ պարտքն ու կարգն ինձ ստիպել է,
Որ ես ճաշ ու քէֆ սարքեմ.

---

1) Մի կերպ օղի է կարմիր գոյնով և քաղցրահամ:

Էս ճաշի տեղ, իմ սիրելի,
Կ'առնում տաս կրամբամբուլի, կրամբիմբամբուլի, կրամբամբուլի։
Բայց երբ կուգայ կեանքիս վերջը,
Մահս-էլ առաջիս տեսնեմ,
Օղին կ'ածեմ բաժակիս մէջը,
Հոգեհանիս-էլ կ'ասեմ.
«Վերջին անգամ, իմ պատուելի,
Էհ՝ տաքացնենք կրամբամբուլի, կրամբիմբամբուլի, կրամբամբուլի։

Գ. Տ—Գ. Գասպարեան։

---

## 161

Ձեզ որդիք Արամեան[1]
Կոչէ Հայաստան,
Զարթեայ, առէ, ի քնոյ
Ինձ հանգիստ ոչ գոյ։

Ո՞ւր իցեն զաւակք իմ,
Ո՞ւր են իմ նաժիշտք,
Ո՞ւր ոսկեհուռ են զարդք իմ,
Հայրենի օժիտք։

Ո՞ւր մեծասաստ գաւազան,
Զոր Հայկ ինձ յանձնեաց;
Ո՞ւր քաջատեգ խումբ մարտկաց,
Ո՞ւր Հայք դիւցազանց։

Ո՞ւր են անթիւ քարոզիչք,
Ո՞ւք ականք բազմաց,
Ո՞ւր ներկուռ են իմ վարժիչք
Գրեռաբոյս կացեաց։

Ձեզ կոչեմ, զաւակք իմ,
Լուարուք իմ ձայնի,
Յիշեցէք զկաթն իմ,
Զոր ձեզ ջամբեցի։

Որդիք էք դուք Հայկայ—
Քառանգորդք իմ տան,
Որդիք սէգն Արամայ,
Որդիք Տիգրանայ։

Զմայրն ձեր որբացեալ
Մինչև ցերբ թողուք,
Զերկունս իմ յիշեալ,
Ձայնիս իմ լուարո՛ւք։

Հայաստան մայր կալ գոյս,
Լուր ձայնից որդւոց,
Որբեա՛ յաչաց զարտասուս,
Տեղի տո՛ւր ցաւոց։

Զկաթն զոր մեզ ջամբեցեր
Արդ մեք յիշեցաք,
Եւ զհայրենի թագն մեր,
Զոր մեք կորուսաք։

Հերիքացին աղէտք քո
Մայր մեր Հայաստան,
Կառուցաք մեք 'ի սէր քո
Զքնաղ զապարան,

---

1) Գրած է 1848 թ. Դորպատ; իսկականը ստացել եմ հեղինակից, 8 մայիսի 1849 թ. Մոսկվա։

Ընտիր որդւոց Հայաստանի 2
Մինչ հնչեցին ձայնք երգոց,
Հայաստանն, ընդ. տուն մեծ փառաց.
Ուխտեմ վասն որդոց մեծաց:
Օ՜ միշտ, զկեանս քեզ նուիրել. 2
Ամենքեան եմք պատրաստ՝
Եւ մեռանել յամենայն ժամ;
Ո՛չ երկնել խոցէն մահուան,
Ո՞րբ զայն, Երբ զայն կամի Հայաստան:
Որ զայս չըզգայ չէ նա հսկայ 2
Քաջ զաւակ մերոյն Հայկայ:
Կեցցէ ուխտ մեր յարգեալ պատուեալ,
Զոր մեք ուխտեմք զինուորեալ,
Մի՛ զէն ազգիս ապականեսցի:
Երգ երգոց թող հնչեսցին, 2
Պոռացի հզօր ազգ Հայոց;
Հայեցարուք յայս սուրբ ուխտի;
Մոլորեալքս ըստ օրինի
Բաղձայց ծակել զխոյր ձեր:
Տեսջիք զփայլիլ սրոյն ի ձեռին 2
Որ երբէք չապականի,
Որով ծակեալ զիմ խոյր երթնում
Ողջիկ պահել միշտ զպատիւ;
Կալ միշտ, կալ միշտ արի՝ ուսանող:
Առ լոյս բաժակ դու քաջ զաւակ, 2
Հայրենական լի գինւով;
Առ դու զսուր 'ի ձախ ձեռն,
Ծակեա՛ նովաւ զխոյր և արբ,
Յաղագս կենաց քոց հայրենեաց,
Տեսջիք զփայլիլ սրոյն 'ի ձեռին, 2
Որ երբէք չապականի;
Որով ծակեալ զիմ խոյր երթնում
Ողջիկ պահել միշտ զպատիւ,
Կալ միշտ. կալ միշտ արի ուսանող:
Առ զայս բաժակ, դու քաջ զաւակ 2
Հայրենական լի գինւով:

Առ դու զաւր 'ի ձախ ձեռն քո,
Նշանակեա՛ նովաւ զխոյրդ քո և տուր.
Յաղագս կենաց քոց Հայրենեաց:
Ընկա՛լ զխոյրդ 'ի գլուխ քո ծածկեցից
Զսուրն 'ի վերայ եդից,
Կեցցէ այս մեր եղբայր մեծ.
Ճուն լիցի որ քեզ հայհոյէ.
Մինչ մեք զքեզ գիտեմք, եղբայր զքեզ գոչեմք,
Կեցցէ այս մեր եղբայր մեծ:

Խ. Աւագեանց, Նոր-Նախիջևանեցի:

---

## 163

### Հին շոր:

(Թարգմանութիւն Բերանժէից)

Ինձ չի մոռնաս, հին շոր, որին սիրել եմ,
Իմ կապաս, ինձնից չի հեռանաս,
Տասը տարի ես քեզի մաշել եմ,—
Իմ հին ընկեր, ինձնից չի հեռանաս:
Քու միտքըդ է, երբ որ մեկ գիշեր,
Էս նորանից դառնումեքի վըրադ,
Նա՛ իր ձեռքով բռնեց քու հին փեշերդ.—
Իմ հին ընկեր ինձնից չի հեռանաս.
Իրաւ է, քեզ մուշկով ես չեմ սրսկել,
Բայց դու էլ պէտք է, որ չի մոռանաս,
Որ մեծերի առջև ես չեմ ծկվել,—
Իմ հին ընկեր ինձնից չի հեռանաս:
Ինձպէս եղիր հանգիստ ու հաստատուն,
Սով—ծարաւից եսկի չի վախենաս,
Թշուառութեանց մէջ եղիր իմաստուն,—
Իմ հին ընկեր ինձնից չի հեռանաս:
Չի ամաչես դու քու հին փեշերից,
Որովհետև քեզի չի կայ մնաս.
Իմ ընկերներս բռնումեն թևերից,—

Իմ հին ընկեր ինձնից չի հեռանում.
Փոքր էլ տղա էի՛ր, շուտով կանցնեն օրերը,
Ինձ հետ մեկ տեղ դու՚ էլ կ՚ծերանաս,
Մէկ տեղ էին մեր փիքրներս ու դարդերս,—
Իմ հին ընկեր ինձնից չի հեռանում.

Ք. Ց—Գ. Գալֆայեանց։

---

## 164

### Կենաց բաժակ։

(Գերմանականից)։

Եղբարք՝ մի շուրջ ժողովեցէք,
Թաշ Հայոց կերպի կոնծեցէք,
Բաժակներըդ դարդըլկեցէք՝ կրկնէ։
Մեր Հայ ազգի կենացը։

Հայոց երիտասարդներուն,
Հայրենիք պաշտպանողներուն,
Որոց անկումն էլ սուրբ է մեզ —
Այս բաժակը նուիրենք։

Հայ աղջիկներու կենացը,
Որք միայն Հայ մարդ կու սիրեն,
Միշտ իրանց մաքուր կու պահեն,—
Այս բաժակը դարդըլկենք։

Նրանց, որ մեր սիրան գրաւում են,
Մեզ զգօն ճամբով վարում են,
Որոց կեանքը մեզ օրինակ,
Մի երրեակ «կեցցէ» տանք։

Եղբարց, որք այժմ աւարտել են,
Մեր ուխտի անդամ եղել են,
Որոց ուխտը միշտ սիրում է,—
Այս բաժակը նուիրենք։

Եղբարց, որք դարդից ազատ են,
Մահուան հանգիստ վայելում են,
«Ողորմի հոգուն» ասելով
Այս բաժակը նուիրենք։

Բայց որ դեռ գինին փայլում է
Ու մեզ իրան մօտ քաշում է,
Բաժակներըդ դարդըկեցէք
Ազատութեան կենացը։

Ք. Ց—Գ. Պատկանեան։

---

## ԳԻՐՔ Զ։

---

## ԽՆՋՈՅՔԻ, ՈՒՐԱԽՈՒԹԵԱՆ, ՀԱՐՍԱՆԵԱՑ ԵՒ ԵՐԳԻԾԱԿԱՆ ԵՐԳԵՐ։

### 165

### Հայոց գինի։

Բաժակներ առնունք, եղբա՛րք,
Լիք լիք բաժակներ գինով,
Կարմիր ու ճերմակ գինին
Մեզ լինի անուշ համով։
Ներսներիս տանենք անվախ,
Չէ՞ դա խառնած կամ խարդախ,
Նեկտար է և ո՛չ գինի,
Խըմենք, մեզ անուշ լինի։
Արաքսայ ջըրով ցօղած,
Հայոց արևով հասած,
Հայոց աղջիկ է քա՛ղել
Քընքոյշ ձեռներով քամել։
Այս բերքն է Հայոց երկրին,
Հայաստան տընկած Նոյէն,
Անմահ երկնային գինին
Նա խմեց, երբ իջաւ սարէն։
Այս անոյշ գինին խմողը,
Սրտէն թո՛ղ հանէ ոխը.
Մենքս էլ ասենք ամէն,
Որ մեզի շատ տայ ամ Լըն։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

---

### 166

### Հարբած մարդու երգ։

(Գերմանականից)

Ուղիղ գինետունից ես տուն եմ գընում,
Փողոց, ո՜յ փողոց, էդ ի՞նչ եմ տեսնում.
Աջ գըլխաս թէ ձախ՝ ծուռ են երկուսն էլ,
Փողոց՝ տեսնում եմ՝ դու էլ ես հարբել։

Լուսնի ջան՝ ասէրդ ինչի՞ է ծըռած,
Մէկ աչքըդ կապուել, միւսը կէս բաց.
Դու էլ ես կոնծել, ո՜յ դու անամօթ,
Ամաչի՛ր ինձանից, վա՛ղուցուայ ծանօթ։
Ինա՝ էստեղ էստեղ,—տե՛ս լապտերներն էլ
Չ՚են կարող ուղիղ ոտքի վրայ կանգնել,
Մէկ պարզ են վառվում, մէկ՝ սաստիկ խաւար,
Կամ թէ՝ պատից պատ կըպչում անդադար։
Աղբէր՝ էս գիշեր ամենքն են հարբել,
Ի՞նչ բան է մենակ մենակ ծոմ պահել.
Չէ՛, էդ կըլինի խստակ գըժութիւն,
Սուրբ նորից նոր դառնամ գինետուն։

Գէորգ Դոդոխեանց։

---

167

Սև միրուք, սպիտակ միրուք, կարմիր միրուք և չալ միրուք,
Ինչ զատ ես՝ տեսնողն քեզ չի՛ ուզում բարև տալ, մի՛րուք.
Դուրս եկիր՝ երեսումս ո՛չ գոյն թողիր, ո՛չ խալ, միրուք,
Պատիւ չունես, եթէ որ հագնուես թիրմա շալ, միրուք.
Ընկերներիս միջումն արիր ինձ բէիկբալ, միրուք։
Մինչև քո երևալն՝ կանանց մէջ ինձ համար դաւ էր,
Ընկել եմ նրանց աչքից՝ ասիր, տեսնեմ, էս ինչ ցաւ էր.
Քո իմ վերա դուրս գալից՝ որ շահ բան դուրս գար, խիստ լաւ էր,
Մինչ՚ի քեզ՝ իմ երեսիս մին բաժակով ջուրն բաւ էր.
Հիմա մին կուժ ջրով էլ չեմ կարում լուանալ, միրուք։
Ամէն օր ես քեզ վերայ գործ եմ ածում մի փունտ սապօն,
Եթէ որ լաւ չե՛մ նայում, իսկոյն լինումես ոջլի բուն.
Մազերիդ վերայ յայտնի լարախաղաց է լինում լուն,
Սև երես լինիս, ինչպէս սև երես արիր ինձի դուն,
Որ չե՛մ կարում համարձակ մին բերանս բանալ, միրուք։
Չի կանչած հիւրի պէս՝ քո գլխու եկիր իմ մօտս,
Դեռահասների միջից սկսեցիր կտրել տոտս.
Ո՛ւմ որ ես մօտանումեմ, ինձ ասումեն՝ մազմազոտս [1].

1) Մազոտ ես։

Ախլներն էն է՝ թէ արջի նման բուրդբուրդոտ [1].
Յայտնի ասեմ՝ կամուսեմ ես քեզ սափրել տալ, միրուք։

Եթէ որ պատահում մին տեղ հարսանիք եմ գնում,
Երկու օր յառաջվանից քեզ վերայ երանգ եմ գնում.
Որքան որ աշխատում եմ՝ մէջը սպիտակ մազ է մնում.
Քո պակասութիւնները այլքը են ինձ հասկացընում.
Սկսումեմ ամօթու խնճոյից դուրս գալ, միրուք։

Դեռ սև ես՝ էդպէս ես, գուցէ թէ գոյնդ սպիտակեց,
Այնպէս իմացիր, որ իմ գլխիս Աստուած ձեռօք թափեց.
Ում երեսից համբուրեմ՝ կասի, վա՜յ մազդ ծակեց,
Կը տեսնեմ՝ որ բարկացաւ, յանկարծ, երեսիս ապտակեց.
Այնուհետև ոնց պարտիմ աշխարհքումը կենալ, միրուք։

Ինչ գեղեցիկ տեսնի ինձ՝ կասի, սա այծ է միրքաւոր
Կամ խուրձ կապած խոտ է ամենայն մարդոյ հարկաւոր.
Դու դուրս գալիս՝ ինձ արդեօք նախ ո՞վ ասեց շնորհաւոր,
Այն շնորհաւոր բառն անէծք է եղել խորհրդաւոր.
Մատաղ կանեմ, թէ կարենամ քեզ ինձնից գողանալ, միրուք։

Հազար ասեն՛ էս մարդն գիտութեամբ փիլիսոփայ է,
Հարստութեամբ աշխարհի վերայ կայ՝ չը կայ, մին սա է.
Փառքով՝ պատուով Աղէքսանդր Մակեդոնացւոյն թայ է,
Քեզ տեսնող աղջիկն էլ ոնց պիտի ինձ սիրով նայէ,
Ի՞նչ ծածկեմ, ինձ արել ես ամենայն տեղ լքեալ, միրուք։

Թէպէտ ես միշտ քսումեմ քեզ զանազան հոտով եղն,
Կարծելով՝ թէ կարող է եղն տանել քո տգեղն.
Հազար եփ տաս մեղրումն ոնց կ՚քաղցրանայ պաղլեղն.
Միրուք, դու էշի պոչ ես և նորա բաշն է քո բեղն.
Ինձ պէս ցաւակից մարդկին արեցիր խուլ ու լալ, միրուք։

Սէյեադ, քեզ միրուք չունեն՝ էգ ում վերայ ես քար քցում,
Միրուքի պատիւը դու ինչպէս ես գարխվեր քըցում.
Ա՛ան էր ես միրքաւորաց սրտները ահ ու զար քցում,
Սպիտակին ասես՝ ՚ի ճահ է, սևին՝ ինչո՞ւ ես շառ քցում.
Մօտիս կէս փող ես՝ թէ որ լինիս Ռուսթէմի Զալ, միրուք։

Գ. Տ—Տ. Մօղաթեանց, մականունեալ Սէյեադ, որ պարսկերէն, նշանակում է «որսորդ կամ որսական»։

---

1) Բրդոտ ես։

168

Երգ ուրախութեան։

Ահա բաժակ ուրախութեան
Ի սէր յաւերժ միութեան,
Օ՜ն վայելուչ՝ որդիք Հայկեան
Մէկտեղ հրճուին եւ ցնծան։
Կեցցէ սէր եւ միութիւն
Կրեմք մի սիրտ մի արիւն։

Մերցուր անքըրդ յերկնից կամար,
Փայլի հեռուն աստղ մի պայծառ,
Եւ դու ո՛ Հայ զուարթիր սիրտ առ,
Հայոց բաղդըն ալ չէ խաւար։
Կեցցէ սէր եւ միութիւն
Կրեմք մի սիրտ մի արիւն։

Ո՞ւր է այսչափ բաժանում
Ըլլամք ուրախ եւ խնդում,
Նախանձ, վրէժ, ձեռք թողում
Ընդունդք եւ վիհք անհատնում։
Կեցցէ սէր եւ միութիւն
Կրեմք մի սիրտ մի արիւն։

Փորձ մը ըրինք բաժանման,
Փորձ մ՚ալ ընենք միութեան,
Լեցուի փափաքդ Հայաստան,
Տես որդիք քո միանան։
Կեցցէ սէր եւ միութիւն
Կրեմք մի սիրտ մի արիւն։

Ինչ եւ ըլլեմք ինչ կերպ առնեմք,
Ո՞ չըզգիտեց թէ մեք Հայ եմք,
Ո՞վ չըզգիտեր թէ եղբայր եմք,
Արիք ծիծաղ դիմօք երգեմք.
Կեցցէ սէր եւ միութիւն։
Կրեմք մի սիրտ մի արիւն

Ո՞ր բռնաւոր, ո՛ր օրէնքներ,
Կը պատուիրեն թէ մի սիրեր

Ազգիդ օգուտն ու բարիքներ։
Սիրոյ գահն է յերկինս 'ի վեր,
Կեցցէ սէր եւ միութիւն,
Կրեմք մի սիրտ մի արիւն։

---

169

Կադրիլ։

Ա. ձեւ

Ձեռք ձեռքի։

Դուք մէջէն, ես քովէն,
Անցնինք դիմաց, փոխենք տեղ,
Նոյն ձեւով տեղերնիս
Դառնանք մատեղ։
Ալեծածան մէկ մ'առաջ,
Մէկ մ'ալ ետեւ քայլ փոխենք,
Ապա տանք աջ 'ի յաջ,
Կլոր մը ճեմենք։
Օ՜ն, ձեռք ձեռքի բարեկամք;
Ընկեր թեւ տուր, շուրջ դառնանք.
Արդ կրկին մեր նախնի
Ընկերին երթանք,
Ապա ոստոստենք գիրկ գրկի,
Երթանք անդին պարելով,
Ետ դառնանք նոյն ոտքով,
Կայնինք քովէ քով։

Բ. ձեւ

Մէկ մը առաջ երկուքնիս,
Մէկ մ'ալ դառնանք տեղերնիս.
Իսկ այս անգամ դուն ասդին,
Ես դիմաց անցնիմ։
Մէկ մը աջ երթանք հիմակ,
Մէկ մ'ալ ետքը դէպ 'ի ձախ,
Ասկէ մեր տեղն ընթանանք,

Զուարթ կայթենք և ուրախ։
Ըլեծածան մէկ մ'առաջ,
Մէկ մ'ալ ետև քայլ փոխենք.
Հիմայ ալ տանք աջ 'ի յաջ,
Կլոր մը ճեմենք։
Չորսս ալ արդ առաջ խաղանք,
Կրկին տեղերնիս դառնանք,
Յետոյ փոխն 'ի փոխ անցնինք,
Դիմացը կայնինք։

Գ. ձեւ

Քալենք հիմայ դէմ դէմի,
Հապա բռնենք թև թևի.
Յետոյ մէկ մ'ասդին դառնանք,
Մէկ մըն ալ անդին։
Մէկ մը յառաջ դէմ դէմի,
Պարենք երկուքս ու դառնանք.
Մէկ մ'ալ պարենք նոյն ձևով,
Երթանք ընկերնուս քով։
Կազմենք շղթայ չորսերնիս,
Մէկ հոս, մէկ հոն ծածանինք.
Ապա ամենայն ընկեր
Դիմացի կողմն անցնինք։
Չորսս ալ արդ առաջ խաղանք,
Կրկին տեղերնիս դառնանք.
Յետոյ փոխն 'ի փոխ անցնինք,
Դիմացը կայնինք։

Դ. ձեւ

Դէպ 'ի առաջ քով քովի',
Հիմակ երթանք դառնանք մերովի,
Յետոյ մէկ մ'ալ հոն անցնինք,
Դուն հոն, ես հոս զատուինք։
Արդ ես մինակ վազեմ ճեմեմ,
Մէկ ոտք մը հոս մէկ հոն նետեմ.
Կայթեմ ոստնում զերթ մ'ուրախ,
Ըլլայ հանդէսս ուրախ։

Արդ նոյն քայլով յիս եկէք,
Երեքդ մէյ մ'ետև գացէք.
Կրկին ամէնդ դէպ ինծի,
Յետոյ նոյնպէս դէպ ետի:
Չորսս կէս կլոր արդ դառնանք,
Յետոյ քիչ մը հեռանանք.
Ետքն ալ ասկէ հոն անցնինք,
Մեր բուն տեղերը կայնինք:

Ե. ձև

Հիմակ ալ առաջ քով քովի,
Երթանք դառնանք մերովի.
Յետոյ մէկ մ'ալ հոն անցնինք,
Հոն հոս բաժնուինք:
Ալեծածան մէկ մ'առաջ,
Մէկ մ'ալ ետև քայլ փոխենք.
Հիմայ ալ տանք աջ 'ի յաջ,
Կլոր մը ճեմենք:
Ընկերք իրար քալեցէք,
Հոս եկէք մէկ մը դարձէք.
Մենք ալ ընկեր ընդ ընկեր,
Յետոյ օտարն երթայ ետ:
Չորսս ալ արդ առաջ խաղանք,
Կրկին տեղերնիս դառնանք.
Յետոյ փոխն 'ի փոխ անցնինք,
Դիմացը կայնինք:

Զ. ձև

Անցնինք երթանք շիտակ առաջ ամենքնիս,
Դառնանք դիմենք այր և ընկեր տեղերնիս.
Թև թև, դէմ դէմ երկանաքար դարձնենք,
Փոխենք ձեռքեր այս կողմ ալ շըրջենք:
Ձեռք ձեռք տանք ընկեր, թև տուր, շուրջ դառնանք,
Հապա ոստոստենք գիրկ գրկի, հոն անցնինք.
Անկէ դարձեալ մեր ընկերին քովն երթանք,
Յետոյ նոյն ոտքով պարելով ետ քաշուինք:

Գ. Զափրաստճեան:

170

## Աղէն տա՛նն է։

(Թարգմանութիւն)

Զարմանք բան է, հէնց գիտենաս,
Աղէք տանը չէին նստում.
Իսկի չեղաւ վուր մի գըտնիմ
Աղալօին իր տընում։
Ա՛ի արմընա, պարուն Սարգիս,
Էս աշխարքի ադաթին,
Իշխանք, գանա, դու խաբար չէ՞ս,
Վուր քասիբին կու ատին։
Ա՛ռ օրինակ, թէ մեծավուր,
Էպալետոնները ունին,
Գ՚այ դըռան մօտ, հարցնէ աղէն,
«Տա՛նն է».—տանն է, կօսին։
Նըրա էգնից մի փէշաքար,
Էշի էն նօքրին հարցնէ.
«Տա՛նն է աղէն». կընծին տալով
Խեղճին իսկոյն դուս կօնէ։
Թէ աղի մօտ լաւ շուրերով
Կուգաս՝ տանը կու գըթնիս.
Ամա՛յ թէ չուխէդ հընացած է,
Էաւն էն է, տուն չի մըտնիս։
Թէ սալօպով աղջիկ պարոն
Կու գայ՝ թող ներս հրամայէ,
Թէ ղաթիպով պառաւ ձայօն
Հարցնէ,—կօսին տանը չէ։
Թէվուր ձեռից քիսա բըռնած,
Պարոնին փուղ բերիլ իս,
Փառք ու պատուով ներս մըտնում իս,
Գըլխի վըրայ տեղ ունիս։
Թէ դուքանդար իս, հիսաբով
Փուղի էգնից իս էկի,
«Տա՛նն է աղէն». կօսին—հալա

Ժամիցը տուն չի եկի։—
Այս է հիմիկուայ ադաթը—
Կ'ուզիս ջիգրից տըռաքի,
Թէ քասիբ իս, ջուրը ընկի,
Թէ խօջա իս՝ տո՛ւն մըռի։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

---

171

Արշալուսեան քաղցր և անոյշ հովերըն
Մերձեալ հընչեն մեղմով թըփոյդ քովերըն,
Արդ ծածանին աչացս լըցեալ ծովերըն,
Բացի՛ր բացիր, իմ կարմիր վարդ պատուական,
Գեղըդ նըման արեգական վառվառման։

Քանի՛ ողբամ, նոր 'ի նորոյ խոցոտիմ,
Զփայլուն գեղըդ 'ի միտ բերեալ՝ բոցոտիմ,
Յորդ արտասուօք ցայգ և ցերեկ թացոտիմ։ Բացի՛ր, և այլն

Ձմեռն էանց՝ ես քեզ կարօտ մընացի,
Այրիմ, տապիմ որպէս 'ի հուր հընոցի,
Քեզ շատ օրեր ես 'ի ձեռա՛ց գընացի. Բացի՛ր, և այլն։
Տեսեալ զծաղկունս՝ զամէն ինձ փուշ վարկանեմ,
Թևօք բաղխեալ զսիրտ իմ քնքուշ հարկանեմ.
Ցաւ իմ սըրտի ահա՛ քեզ յուշ արկանեմ։ Բացի՛ր և այլն։

Արքայարան Բիւզանդիոյ մեծ շինի,
Տեղ և բընակ յարմարեալ քեզ հարկ լինի.
Նաւակատեօք յիշատակ քո, տօն լինի։ Բացի՛ր, և այլն։

---

172

Երգ ուրախութեան։

Արիք որ երթամք
Մոխակաց երամք,
Ծաղկէկ բմցուեցաւ,
Միշտ փառօք ցընծամք.
Արի, գովելի,
Գովելի լի լի, (երիցս)։

Ծաղկունքըն գարնան
Սոխակ անըրման,
Ձայնիւ ցընծալով,
Եղանակ բառնան։
  Երե՛, գովելի, և այլն։
Ձայնիւ երգեսցուք,
Սիրով գոչեսցուք,
Եւ 'ի դէմ վարդին
Միշտ ոստոստեսցուք։
  Երե՛, գովելի, և այլն։
Եւ մեք երգեսցուք,
Սիրով գոչեսցուք,
Եւ 'ի ժամ գարնան
Միշտ փառըս տացուք։
  Երե՛, գովելի, և այլն։
Եկայք սիրեսցուք,
Զմիմեամբ փարեսցուք,
Ի հանդէպ վարդին
Պարուք բերկրեսցուք։
  Երե՛, գովելի, և այլն։
Ահա՛, ցընծասցուք,
Ի պարտէզ հասցուք,
Դու միշտ ցանկալի՛
Եկ ուրախասցուք։
  Երե՛, գովելի, և այլն։

## 173

Գարունն է բացուէր, վարդն 'ի բաղչանին 1),
Քաղցր եղանակեն սոխակն ու ղմրին 2).
Սիրով են վառեալ 'ի կարմիր թըփին,
Կանաչ ու կարմիր տերեւ կու հագնին։
    Գինով եմ գինով, գիշերն երազով,
    Գինով եմ գինով, ցերեկն արեւով։
  Ի՝ շամս 3) ու ղամեր 4) ատող առաւօտին,
Պայծառ արուսեակն եւ լոյսն 'ի լերին.
Լ՛ալ 5) ակն և գոհար ես դու մեծագին,
Ծիրանի ծաղիկ գոյն մանուշակին։ Գինով, եւ այլն։
  Դու նշդարենի 6) ծաղիկ շուշանի,
Դու կանաչ բըրգայ 7) 'ի մէջ շուկայի,
Դու քաղաք Խութան ու Չինումաչին,
Խորասան բոլոր չէ՛ քո տեսոյդ գին։ Գինով եւ այլն
  Մոմեղէն մատունքդ հոտ բալասանի,
Դու նուշ ու շաքար, տուփ անուշ խնկի,

1) Պարտէզ, садъ. 2) Արտոյտ, жаворонокъ. 3) Արեգակ։ 4) Լուսին։ 5) Ակն ինչ պատուական։ 6) ազգ ինչ ծառի։ 7) Աւազան, бассейнъ.

Գու կարմիր խնձոր 'ի մէջ տերեւի,
Ծաղկեալ բուրաստան եւ ցօղ անձրեւի։ Գինով, եւ այլն։
Մարգարիտ պայծառ ես դու մեծագին,
Ակամբ զարդարեալ յոսկի սեղանին,
Խոնոփար [1]) ծաղիկ, գոյն բռեհանին,
Սուսամբար անուշ իւղ բալասանին։ Գինով, եւ այլն։
Համասփիւռ ծաղիկ ես բուրաստանին,
Իրաբիոն պայծառ 'ի յԱդին դրախտին,
Զօհալ մուշթարի աստղ առաւօտին,
Զօհրա [2]) լուսաբեր զամբար եւ լուսին։ Գինով, եւ այլն։
Շամս եւ արեգակն երկնային գնտին,
Գու ամպի նըման ցօղ ես անձրեւին,
Ծառ կանաչտերեւ դու պտղով իլին
Բողբոջեալ ծաղիկ ոստ արմաւենին։ Գինով, եւ այլն։
Կընդրուկ եւ զմուռս խունկ ընդ հալուէին,
Քաղցր եւ ախորժակ համով շաքարին,
'Ի յամէն դիհաց բղխէ քեզ բարին,
Եւ քեզ հովանի նըշան սուրբ խաչին։ Գինով, եւ այլն։

---

## 174

Հարսանիք Արտաշիսի և Սաթինկան։

Գեղապսակ պայծառանայ Արարատ
Լուսատեսիլ տեսանելով զԱրտաշատ,
Որ մեծամուտ մայր քաղաքաց Հայկազանց՝
Զինչ է նոր այդ 'ի քեզ հանդէս դիւցազանց։
Ահա շքեղ և փառացին Արտաշէս՝
Արշակունեաց պարծանք քաջաց 'ի կրկէս,
Ի դարպասէն գայ սիգաճեմ յասպարէզ,
Ընդ փեսաւէրս պար բոլորեալ դիցապէս։
Բացէք զդրունս՝ ո՛վ բարապանք արքունի,
Տեսէք զի գայ մեր Արտաշէս կորովի,

---

1) Զարի շուշան։ 2) Արուսեակ, венера.

Զձեռանէ կալեալ նորոյ դըշխոյն՝
Փեսայութեան իւր յառագաստ խորոքի։
Ըամք զաստղս օրհորդաց Արամեան
Զհետ երթան զարշապարաց Սաթինկան.
Ով հարսնացեալ դըշխոյ փառաց Հայկական՝
Երանի քեզ յաւէժ տացէ մեր բերան։
Ի հարսնութեան քում տեսանի Հայաստան
Զուարթացեալ ի կեր, 'ի յուսմ խնդութեան,
Աւետիս է օր քո չքնաղ տիկնութեան
Հիւսիսային ազգաց ազանց բազմութեան։
Ե՞ր այտք մաքուր սպիտակափայլ իբրև զձիւն,
Որ ըղձարձունս Այրարատայ կալաւ տուն,
Զբոսորային. բերեն յինքեան կարմրութիւն,—
Դըշխոյն Հայոց ամբողջ պահէ զայտից գոյն։
Լուացարան պայծառափայլ դիտակիդ
Խոխոջաձայն Երասխ լիցի դըշխոյիդ,
Եւ հոտ անոյշ վարսից գլխոյ գեղեցկիդ
Հանգանակէ լեառըն Սոմխէթ և Մըցխիթ։

---

Քընարերգուք Արամեան՝ զիա՞րդ նըստիք 'ի լռութեան,
Կառուցէ՛ք զնուագարան—երգել նոր երգ գողթնական.
Ահա մեր քաջ պատանի Արտաշէս Արշակունի
Ընդ Սաթինկան դըշխոյի յաթոռ փառաց իւր բազմի։
Աւետիս տուք Արամեանց, որք են 'ի ծագս աշխարհաց,
Թէ յաղթականն Ալանաց, առիւծ լերանց և դաշտաց,
Զլեռնական կոյս չքնաղ՝ իբրու ակն անշամանդաղ
Յեռեալ յոսկի հայրենեաց՝ բազմեցոյց 'ի գահ փառաց։
Հայաստա՛ն, ե՛լ ընդ առաջ քո դշխոյին գալըստեան,
Հրճուեա՛, կայթեա՛ ծափաձայն, պարեա՛ հանդէպ Սաթինկան,
Զի օրիորդ լեռնական տացէ քեզ արս դիւցական,
Եւ յաթոռ քո պետութեան ծընցի որդիս գերարժան։
Ազգ Հայոց՝ մի՛ մոռանար զհարսանիս Արտաշիսի,
Յորում հանգոյց Հիւսի, զքաջն կապեաց ընդ հուրի,
Զի տեղ ոսկի արդ տեղաց 'ի հարսնութեան Սաթինկան,
Եւ մարգարտի ցօղ տեղաց քաջին 'ի փեսայութեան։

Նուագեցէք, երգարանք, այսօր մեծի խնդութեան,
Թագուհի է Նոր Հարսըն և Թագաւոր Նոր փեսայն,
Մանեակ ոսկի առկախեալ ՚ի պարանոց դշխոյին,
Եւ զարդ կարմիր շուրջ պատեալ զուլամբ փեսայ արքային,
Ամենեցուն աչք և միտք յերկուս ձըկտին և յառին.
Ի դիտակ Նորոյ Հարսին, յիրան չքնաղ փեսային.
Երանի տան այն քաջաց, որք զայս օր տեսանէին,
Երանի տան այն մըտաց, որք զայս Հանդէս յիշէին։
Յառաջ մատիք, մանկունք մեր, ժողովեցէք ձեզ ոսկի,
Եւ դուք կուսանք, դըստերք մեր՝ շարեցէք շար մարգարտի,
Զի տեղ ոսկի արդ տեղաց յԱրտաշիսի խնդութեան,
Եւ մարգարիտք ցօղեն ամպք ՚ի Հարսնութեան Սաթինկան։

Տէր Գաբրիէլ Պատկանեան։

---

## 175

### Առօրեայ աշխարհ։

Ինչ ես գոռում, ի՛նչ խնդրում,
Դու անհանգիստ հեղինակ.
Մեզ խաղալիք շինեցիր,
Ողջ աշխարհի խայտառակ.

Լաց ես լինում, հառաչում,
Գանգատդ անգամ յիմար է,
Թէ աշխարհն իւր գործերով,
Բոլորովին փոխուել է։

Աշխատումես մի կերպով
Խաղաղութիւն վրդովել,
Խլել մեր հանգիստ քունը,
Սրտերիս մէջ դող ձգել։

Չենք կամենում լսել քեզ,
Թող մեր ճաշն ուտենք հանգիստ,
Յետոյ խաղաղ քուն լինինք…
Հեռի գնա մեզանից։

Մի՛ գոռար, մի՛ որոտար,
Մարդ եղիր և դու մեր պէս.
Վերացական խօսքերով
Մի՛ գար միւսանգամ հանդէս։

Մեք առօրեայ բաների
Ծառայումենք անդադար,
Դու ինչե՞ր ես մտածում,
Դրական է այս մեր դար։

Քո բարձր ճշմարտութեան
Ճառագայթները փայլուն,
Չեն տանելի մեր աչքին,
Ատելի են մեր հոգուն։

Ճանաչումենք, հաւատում,
Բայց չկամինք խոստովանել.
Պատճառ, նոքա շփոթումեն
Մեր երջանիկ կեանքի թել։

Մենք կամինք կեանք վայելել.
Ուրեմն ի՛նչ հարկի համար,
Մեզ պիտոյ էր ծառայել
Ճշմարտութեան անպատճառ,

Մինչդեռ և առանց նորան,
Մինչ լոկ սուտի շնորհքով
Այս աշխարհի բարութեան
Մի մասը վայելելով,
Կարելի էր Աստուծոյ
փառաւորել անունը.
Եւ չթուլանալու համար,
Եւ մարմինը պահելու,
Երբեմն մի փոքր զրկել....
Երբեմն մի փոքր գողանալ....։

Չխռովելով մեր խիղճը,
Չաղմկելով մեր հոգին,
Տուր մեզ տաղեր, վէպ, առակ,
Հաճոյացիր մեր սրտին.

Թող դատարկ բաներ լինին,
Մարդու վէրք տալ չունենան,
Թեթև ու ծիծաղաշարժ,
փորերս փոյթ չէ թող շարժ գան։

Հանգստութեան միջոցին,
Մարսողութեան լաւ ժամին,
Դու դատաւոր մի՛ նստիր
Խրատներով մեր գլխին։

Ս՜ շտաբեր ակնարկութիւնք,
Հեռի՜, նեղիչ գաղափարք.
Մի՛ լինիր դահիճ մոլութեան,
Որ չլինիս դահիճ մարդերին։

Մ. Նալբանդեանց՝ Հիւսիսափայլ, 1858 Թ. ե. 374—375։

---

176

Տաղ զատկի։

Մարտըն կուգայ ծաղկըներով,
Յերկնից հաւերըն կարդալով,
Հրեշտակապետ փառըս տալով,
Յորժամ Հայոց Զատիկըն գայր։

Նարկ արեգակըն ծագեցաւ,
Սաստիկ ձըներն հալեցաւ,
Գառն ու մաքին ընծայեցաւ,
Յորժամ Հայոց Զատիկըն գայր։

Ամպ ու երկինըք խիստ գոռաց,
Ողորմութեան ցօղն ցօղաց,
Ծով ու գետերըն խիստ ծըփաց,
Յորժամ Հայոց Զատիկըն գայր։

Աղբերակունքըն յորդորին,
Ծառ ու ճղերըն զարդարին,

Խոտ անատունքըն ճաշակեն,
Յորժամ Հայոց Զատիկըն գայ։

Մարգապէս դաշտ մեղուն,
Փողվէ ծաղիկն 'ի լեռներուն,
Ո՛չ վախենայ 'ի մեռնելուն,
Յորժամ Հայոց Զատիկըն գայ։

Բուլբուլն, զումրին [1]) առաւօտուն
Եկեր դարձեր վարդին մօտուն,
Գանգատ կ'ընէր նա 'ի հողմոյն,
Յորժամ Հայոց Զատիկըն գայ։

---

## 177

Դուն մի վախնալ, Բարփուշքա
Ինչ խելքի բան բռնելուդ,
Մեր մահլան ալ մեկ կուգայ
Տօնախըմբութեան օրըդ։
Նայէ՛ ի՞նչ հարկինք կուտամ,
Ի՞նչպէս կ'ըլլամ բաղդաւոր,
Թէ իմ Օվանէս աղան
Ըլլայ մեզ յօժարաւոր։
Արդըխ ինձ ի՞նչ հարս կուգայ
Հէմ զարդարուած, հէմ սիրուն,
Ճ'եմըկութեան պէս չի կայ
Հեչ մեկ խըմոր շարմաղուն։
Ակռաները պօռի պէս,
Աչքերըն ալ հիլունի,
Կերպը նըկարածի պէս,
Ձանը ասիս պիւլպիւլի։
Մենք կըվայելինք աստեղ,
Զարմացք կ'ըլլանք ամենին.
Սուրբ-Խաչ ալ կ'երթանք մեկ տեղ
Զատկի Կանանչ կիրակին։

---

1). Արտուտ Թռչուն, жаворонокъ.

Գիտակս ծուռ, հալուքս նոր,
Պըլըս՝ կըտրիճի կերպով,
Խէ հարցնում—«աս վո՞վ է որ».
Փուռուռնճի . . . . . կով:

Յովհաննէս Նաւումեան Սարգաթեանց:

---

178

Արեւելք առաջին
Ու արեւմուտք որ է վերջին՝
Նստեալ հային դէմ փարչին,
Ու զանազան ի լի հուչին, [1]
Բարեխօսեա մեծ կարասին
Որ զանազան է իւր գինին:
Բարեխում է գինի
Ու յայս փայլուն սեղան ի լի.
Գւէր գէր հաւեր զանազան,
Ու այլ կարագ խառն ընդ մեղրի:
Բարեխօսեա. և այլն:
Գերագոյն լաւ մազայ [2]
Ողով տապկած ձուկըն թազայ.
Խումար մարդուն բող պտուկ.
Բղվով [3] բռնած սիրուն բազայ:
Բարեխօսեա. և այլն:
Դարձեալ հայի՛ր թէ ի՛նչ կայ.
Հալվայ, բորակ, և փախլաւայ,
Գաւըն դրած ղափամայ,
Ու փորն ի լիք պահարլամայ:
Բարեխօսեա. և այլն:
Սրանեա՛լ հերիսայ,
Ու պատուական փոլլափաչայ,
Սամիթ, թարխուն, ասիդայ, [4]

---

1) Գուցէ ֆըչը կ'իմանայ, տակառ: 2) Մէզէ: 3) Բղուղ. հողէ աման գավանոզ: 4) Նսիտէր խիւս, կամ խաւրծի նման:

Յոլով եփած փալուղայ։ 5)
Նարեխօսեա. և այլն։

Զարդարեալ է սեղան.
Պապլու փըլաֆ մսով եփման.
Յեղուցեղ պիպերով
Եւ քիշմիշովըն միաբան։
Նարեխօսեա. և այլն։

Արևեցաւ օրհասրակն.
Փութով եկեալ լաւհանայ,
Եափրաղ, քուֆթայ ղալիյա 6)
Այխի եկուն և զապուրղայ։
Նարեխօսեա. և այլն։

Ընտրեալ ընտիր ազաւնի
Եւ պըլտըրըչին սեղանոյս իրաք,
Աչխարի միս ի լըկամ,
Փանչչնակօշն 7) է լավ քապապ։
Նարեխօսեա. և այլն։

Թագաւոր է խոռոզն,
Եւս առաւել գեղեցկագոյն
Կարմիրերանգ գոյնզգոյն,
Թագ և պարծանք մեր սեղանոյն։
Նարեխօսեա. և այլն։

Փողովեցան ի սեղան.
Արձակեցին զխորոջայն. 8)
Սուտեն խմեն անուշ գինին
Եւ փառս տան անճառելոյն։
Նարեխօսեա. և այլն։

Ի կաքաւուց բերեալ միս,
Ի սալամուց 9) լաւ նաֆայիս, 10)
Աղաւնոյ ձագ մեզ ընթրիս

---

5) Նարակ խիւսով շինուած։ 6) Պալիէ, անուշահոտ, պատուական։ 7) Պուցէ փէնճէնկիւշթ, հինգոտեբևուկ բանջարն։ 8) Կոկորդ, բերան։ 9) Սալամ կամ Սալամբ, պարարտահամ թռչուն, զոր յիշեն մեր նախնիք առ 'ի Հայաստան։ 10) Նէֆայիս, անուշահամ։

Հաճոյ թուեցաւ բազմականին։
Բարեխօսեա. և այլն։

Լռեցին միաբան
Եւ ննջեցին ամենքեան։
Երբոր քնեցան և զարթեան,
Շուտով հասեալ գաւն [11]) ու կթղայն։ [12])
Բարեխօսեա. և այլն։

Խնդացին և զուարճացան
Երբոր տեսան գաւն ու կթղայն
Նստան բոլոր ի սեղան
Ըմպեն զարաղն [13]) ուրախանան։
Բարեխօսեա. և այլն։

Նաղիկ բերեալ ի սեղան,
Վարդ, մանուշակ և ռէհան,
Գարանֆիլ և սուսան.
Նարկիզ, գիւմիւլ և շուշան։
Բարեխօսեա. և այլն։

Կարմրացեալ գոյնզգոյն
Կանանչ բերեալ զվարդենին,
Մանուշակ թիւ պարանոց
Քաղցրատեսակ հոտոտելի։
Բարեխօսեա. և այլն։

Հազարվարդն այլ բոլոր
Զգունովն դեղ և աղուոր,
Կոկոնին հետ միաւոր,
Ի մէջ նոցա փառաւոր.
Բարեխօսեա. և այլն։

Չևեցան ի սեղան
Պայծառ տեսլեամբն աննման,
Արձակեցին հոտ անուշ
Քաղցրացուցին ըզքիմս մարդկան
Բարեխօսեա։ և այլն։

Գամբարանման փայլէին

---

11) Գաւաթ, բաժակ։ 12) Գինւոյ աման։ 13) Օղը, ցքի, водка.

Պայծառ գունով մէջ սեղանին.
Նոքա առեալ վայլեցին
Եւ փառս տուին պարգևողին։
Նարեխօսեա. և այլն։

Ճիւղաթափ արարին 14)
Զճնճղուկըն մեծ և ահագին, 15)
Նորին յառաջ զենեցին
Զփետուրն իւրմէն կողոպտեցին։
Նարեխօսեա. և այլն։

Մեծամեծք խորհուրդ արին
Նորին ըզսագն ընդ արօտին. 16)
Մանրամասըն կտրատեցին
Եւ ճնճղկան փորըն լցին։
Նարեխօսեա. և այլն։

Յետոյ սինի մեծ կազմեցին
Ընուշահամ զարդարեցին.
Նորեալ յառաջ մատուցին
Մէջ սեղանին բազմեցուցին.
Նարեխօսեա. և այլն։

Նորոգեցան նոր սեղան.
Յերբոր եհաս ըզճնճղկան՝
Ի յայն քառասուն մարդն միաբան
Մէկ թեւըն կերան յագեցան.
Նարեխօսեա. և այլն։

Շնորհեցին ի մրգերաց.
Յառաջ բերեալ մատուցին
Գեղեցիկ և զանազան.
Նորոյ սեղան զարդարեցին.
Նարեխօսեա. և այլն։

Ուղիղ բոլոր և աղուոր

---

14) Ճիւղերը կտրեցին։ 15) Ծաղրածութեամբ կը մեծցընէ ըզճնճղուկը, ապա թէ ոչ՝ ջայլամէն տեվէգուշու մեծ թռչուն մը պիտի ըլլայ, որ քառսուն հոգի մէկ թեւը ուտեն կշտանան։ 16) Սագ կամ զարոշ, սագէ մեծ թռչուն մը, թեւերը գունաւոր, որ գտնուի ի Հայաստան։

Սպիտակ կարմիր և փառաւոր
Համով հոտով լի խնձոր,
Մէջ մրգերացըն թագաւոր։
Նարեխօսեա. և այլն։

Ձամիչ կթուն եկեալ շատ,
Սրմաւ և թուզ մէկ մէկ հատ.
Շաղքալութ 17) լապլապուն,
Խառնեալ ի մէջ նոցա փշրատ.
Նարեխօսեա. և այլն։

Գընդուկն 18) եկեալ ամընեներով,
Եւ նուշն ի հետ անուշ համով,
Պըստուխիկն է մաղարով
Բան զամենայն մրգերն յոլով
Նարեխօսեա. և այլն։

Ջանաց խիեարն յառաջ միննակ,
Եւ յետ նորա խարպիզակ, սեխ,
Եւ շըլընկուն գձըմերուկ 19)
Փուլթով հասուցէք դանակն։
Նակեխօսեա. և այլն։

Ստեռին քաղցրիկ, մանանայ,
Նօզըլն շաքար միայնայ.
Ձագուց մեղր ծաղբ 20) բոլոր
Մէջ սեղանին զօրանան.
Նարեխօսեա. և այլն։

Սերկևիլ թըթուաշիկ.
Նուռն այլ հետ լինի քաղցրիկ,
Ընդյշ մաճռայ տանձ 21) մալաչի.
Երոսսի և մեհրէնիկ։
Նարեխօսեա. և այլն։

Սասըն մեր գայ ղարանֆիլ,
Բաղցըր տարչին և զանջափիլ,

17) Երքակաղնոյ պտուղ, ֆընտըգ. կամ շագանակ։ 18) Ըստ ով վերնոյն նման պտուղ։ 19) Կարծեմ՝ ձմերուկին շըլնըկին՝ այսինքն վըզին՝ դանակ հասուցէք, կ՚ըսէ։ 20) Նշաղմեղր, աղնիւ մեղր՝ նոր ձագուց շինած։ 21) Բաղցրածոր, մեղր կաթող։

Պարապիպեր, ղաղուլայ 22)
Ջուրզ, 23) և բազում տարիֆիլֆիլ։
Բարեխօսեա. և այլն։

Տէրտէրներն և տիրացուքն
Յորժամ սեղանոյս հանդիպին,
Հնչեցուցէք զանգն և ճընճղայն,
Երգեցուցէք տաղ և շարական։
Բարեխօսեա. և այլն։

Բամբ թատերացն սուղան Պաւթի,
Եւ քաղցրաձայն սանտուռ հըզօր,
Մուղնի 24) և փող դանպուրայ,
Նարինհասակ 25) քամանչայ։
Բարեխօսեա. և այլն։

Յաւն էր պատեր զիս չորս դիմաց
Եւ ես տըկար էի մնաց,
Զայչափս կարէ, 26) ժողովեցի,
Արոնելով կամաց կամաց.
Բարեխօսեա. և այլն։

Իւսեալ պատիւըս զուարճացէք,
Մըլ մեծամեծք և տանուտէրք,
Կերէք արբէք ուրախացէք
Այսչափըս բաւ է թէ գիտէք։
Բարեխօսեա. և այլն։

Փառըս տացուք ըստեղծողին,
Այսչափ բարեաց պարգևողին։
Օրհնէ, Տէրտէր, զհայր-մեր-յերկին.
Ելեալ գընայք յեկեղեցին,

Հարիւր տարուայ երգ կը համարուի; Հեղինակութիւն Միքայէլ ատրկաւագի։ Բազմավէպ, 1866 թուակ. ե. 20—22։

---

22) Թեաքիւլէ, զուիրակ խոտ. կիւվէի օթու։ 23) Ընկոյզ Հնդկաստանի, համեմ։ 24) Միւղաննի, երաժիշտ, երգեցողք։ 25) Յօրինակին Նորին կամ Նարին հասակ։ 26) Կարէի, կընայի։

179

## Ուխախոտի երգ։

(Թարգմանութիւն գերմաներէնից)

Թէ ծխաքաշը ձեռիս
Մենեակումըս նստած եմ,
Ջըլթիցս ծուխ հանելիս
Կարծում եմ թէ՝ իշխան եմ.
Երբ քամին ծուխըս փչի,
Ես պինդ ծիծաղում եմ,
Ասում եմ՝ մեր գործերը
Այսպէս անցաւոր են։

Ազնիւ խոտ՝ դու զօրութիւն,
Կեանք ու ուժ ես ինձ տալի,
Ո՞վ կարնայի քեզ գովել,
Ինչքան սիրտըս է տալի.
Մէկ երկինք՝ տո՛ւր էս խոտին
Դու արև և անձրև շատ,
Եւ սորա մըշակողին
Օրհնութիւն, կեանք ու բաղդ։

Մենակութեան ժամանակ
Դու ինձ լաւ ընկեր ես.
Թէ իմ սիրտըս նեղանայ՝
Քեզ կ՚առնեմ ես ձեռըս։
Թանկ ես. Թուրքի ծըխախոտ,
Հարուստներու բան ես,
Հոգիս-էլ տամ՝ քեզ կ՚առնեմ
Ու կ՚ածեմ գըրպանըս։

Ինչքան էլ դատարկ լինի
Փողերիս քըսակը,
Պէտք է անպակաս լինի
Բերնիս ծըխաքարշը։
Ուսանո՛ղ՝ ա՛ռ ծըխաքարշըդ,
Շուտ կ՚անցնի քու կեանքը.

Ու ծըխելով միտք արա,
Ունայն է աշխարքը։

Ք. Ց—Գ. Պատկանեան։

---

180

Յորժամ եղև գարուն՝ արև ծագեցաւ,
Հարաւ հողմն հընչեաց, սառն հալեցաւ,
Երկիր կանանչեցաւ, ծառըն ծաղկեցաւ,
Խըմենք, եղբարք, գինի՝ մեզ անոյշ լինի;
Ածէք, խըմենք գինի. բանն Աստուած չինի։

Ով եղբարք, նըստեալ էք ծաղկեալ ծառի տակ,
Ձեռներիդ է գինին կարմիր ու յստակ,
Թասի մէջ անկանի ծաղիկ ըսպիտակ. խմենք և այլն։

Առէք կարմիր գինի և լցրէք շուտով,
Բերէք թազայ գառն սինի սարփուշով,
Պաքլու փլաւ ձգէք մեխակով նըշով. խմենք և այլն։

Թող չիման տեղ նստիմք, ջուր լինի և խոտ,
Կարմիր գինի խմենք մէկամէկի մօտ,
Միմեանց նուիրեմք զվարդ անուշահոտ. խմենք և այլն։

Վաղուան ոչ գիտեմք՝ թէ զի՞նչ ծընանի,
Մարդուս կեանքն վայրի ծաղկի նըմանի,
Որ այսօր բացուել է՝ վաղուան անցանի. խմենք, և այլն։

Նոր գարուն, նոր արև, ծաղիկ շնորհազարդ,
Այսուհետև բացուի մանուշակ ու վարդ,
Ձայն բիւլբիւլին, տատրակին լսէ ամեն մարդ. խմենք և այլն։

Այլ և խաղաղութեամբ խըմելն է հալալ,
Ո՛չ հարբել, գոռալ և ո՛չ բարկանալ,
Ուրախութեամբ խըմել, սիրով զուարճանալ. խմենք, և այլն։

Գնա՛, լա՛ց քո մեղքն, Նախաշով Ադամ.
Աշխարքս անցաւոր է, չէ՛ մընացական.
Դուք կերեցէ՛ք, խմեցէ՛ք, եղբարք սիրական,
Եւ օրհնեցէ՛ք զԱստուած այժմ և յաւիտեան։

Ադամ Նախաշով, աշըղ։

---

## 181

Տաղ ուրախութեան։

Պայծառ արփին արդ բարձրացաւ,
  Կարմիր վարդին ոտն կակղացաւ,
  Հալման սառին ժամ է արդէն,
  Ծաղկման ծառին ժամ է արդէն։
Նըկն էհաս բարեկենդան,
  Քաղցրիկ գարնան դրունք բացան,
  Ծնունդք մաքեաց արձակեցան,
  Զենման գառին ժամ է արդէն։
Տալ զբաժին 'ի միշըանաց,
  Լնուլ զծոցս տնանկաց՝
  Սփոփել կարօտ խեղճ աղքատաց,
  Տուր զձեռին, ժամ է արդէն։
Բամեալք եղբարք 'ի միասին,
  Ըանուլ զբաժակ գինւոյ թասին
  Եւ ամօքել մարմնոյ մասին,
  Կեանքս տառին ժամ է արդէն։
Ուրախութեամբ ուտել զհաց,
  Զուարճանալ անուշ գինեաց,
  Վարել զկեանս ընդ սիրելեաց,
  Զզուրբ տառն ժամ է արդէն։
Սիրել ներել աշակերտաց,
  Կոչել զդասս երաժշտաց,
  Ունկն դնել եղանակաց,
  Քաղցրաբանիլ ժամ է արդէն։

Պետրոս վարդապետ Ղափանցի։

---

## 182

— Ինչո՞ւ կու լաս դուն, գառնիկ։
  «Խիստ ծեծ կերայ ես, մարիկ»։
— Ո՞վ ծեծեց քեզ, գառնիկ.
  «Մ՛էկ ծեր կախարդ մը կընիկ»։

— Ընտո՞ր ծեծեց քեզ, գառնիկ.
«Ուռային տակը ես, մարիկ»։
— Ինչո՞վ ծեծեց քեզ, գառնիկ.
«Մէկ պասթօնով մը, մարիկ»։
— Ո՞ր տեղդ զարկեց քեզ, գառնիկ։
«Ոտուըներուս, իմ մարիկ»։
— Ինչպէ՞ս լացիր դուն, գառնիկ։
«Մէ՜, մէ՜, մէ՜, մէ՜, իմ մարիկ»։

---

## 183

### Հայոց գինի։

Լեցրէ՛ք, եղբարք, ձեր բաժակները
Ու քաջ պարպեցէ՛ք.
Այսպէս գինի բոլոր աշխարքումը
Դուք գըտնելու չէ՛ք։
Ո՛չ Թուրքի է այս և ո՛չ Մաճառի,
Ո՛չ Ֆրանսիայի։
Թո՛ղ ուրիշն օտար գինի խմի,—
Մերն է հրաշալի։

Շամպայն գինին—կանացի գինի է,
Այդ մեր գինին չէ՛,
Խմել, կոնծել թէ և կարելի է,
Բայց սիրելու չէ։

Խըրիմի գինին լաւ գովված գինի է,
Բայց այս էլ այն չէ՛,
Ճաշից յետ խմել կարելի է,
Բայց երգելու չէ՛։

Կախէթու գինին պատուական գինի է,
Թէև Հայոց չէ.
Բայց, ափսո՜ս, որ օտարի է,
Նոյեան ընկած չէ՛։

Արասխի մօտ՝—այնտեղ է մեր գինին,
Օրհնեա՛լ է Արասխ,

Տրասխի մօտ ամէնքն են գեղեցիկ,
Ամէնքն են ուրախ,

Այդ գինին պարգեւեց մեզ Աստուած
Ու դրախտից հանեց.
Երբ Նոյ Նոն աշխատանքից մաշուած
Նորան աղաչեց:

Նոն իմաստուն մարդ եղած պիտի լինի,
Որ այդպէս ճարտար
Նա ճմլեց, քամեց, խմեց մեր գինին
Ու շինեց տակառ:

Ուրեմն, եղբարք, բաժակըն լցրած է՝
Քամեցէք անվախ,
Թէ լսենք որ՝ մէկը շատ տըխրած է՝
Նորան գինի կ՚տանք:

---

184

Փութա՛ առ մեզ, նաշխուն կաքաւ,
Սարերն ամէն կանանչացաւ,
Զարդ զգեցեալ պայծառացաւ:

Յայդ լեռներէն ՚ի վայր փութաս
Յաւուրս գարնան պարեալ ցընծաս.
Նախշուն ձագերով շուրջ կու գաս.
Արագ արագ ոստոստելով,
Ծաղկանց վերայ թաւալելով,
Վասն ո՞յր թըռչիս.
Ընդէ՞ր փախչիս
Կամ զի թագչիս,
Կողկողալով՝ ձայն արձակես
Ճաղկղա՞, շաղկղա՞,
Կաղկղա՞, կաղկղա՞,
Միշտ հառաչես
Ու կարկաչես:

Ոսկիափայլ փետուր քոյին

Զանազան գունով շողշողին
Որպէս զլոյս բոլորովին. Յայդ և այլն։

Փառօք ճեմես որպէս իշխան,
Լերինքըն քեզ յարկ սեփհական.
Պաշտերըն ամեն համանգամայն։ Յայդ և այլն։

Ոսկեծաղաձայն քաղցրիկ թըռչուն,
Զքնաղատիպ և յոյժ սիրուն՝
Ի մէջ ծաղկանց ննջես 'ի քուն։ Յայդ, և այլն։

Քեւ ճոխանան ամեն լերինք
Եւ համօրէն մարգագետինք,
Զքեզ գովեն ազգ և ազինք։ Յայդ և այլն։

Արդ՝ բարձրացո՛ զձայն քո ընդ իս,
Եւ փարատեա՛ ըզսուգ սրտիս
Հայցմամբ քոյոյ երգաբանիս։ Յայդ և այլն։

Կարկաչաձայն այդ ձայն քո սուրբ
Տոչորէ զիս սիրոյ քո հուրբ.
Չես զովանալ արտասուաց ջուրբ։ Յայդ և այլն։

Այդ լեռներուն հուպ առընթեր
Պէպ զառ ի վայր և զառ՝՝ի վեր
Թեւրաբաց թեւօք ճեմ առեր։ Յայդ, և այլն։

Պետրոս վ. Ղափանցի։

---

185

Վարդը բացուել ա ծաղկոցին,
Ամպի ցօղը շողայ ծոցին,
Ա՜յ իմ վարդին, կարմիր վարդին
Պատտայ Պըրախտին։ (2)

Թերթիկները գուզ փըռել ա,
Նախշուն գըլուխը ծըռել ա։
Ա՜յ իմ վարդին, և այլն։

Չ՛ես համբերել, վարդ Մայիսին,
Պուրս ես եկել Մարտի ամսին։

Ո՜յ իմ վարդին, և այլն։
Կու թառամիս, կու չորանաս,
Մինչ Մայիս թէ չի դիմանաս։
Ո՜յ իմ վարդին, և այլն։
Տաժան քամուն չ'ես համբերի,
Զազիր ճըճուին կ'ըլլես գերի։
Չ'ես տեսներու թիթեռնակին,
Ոչ աւետման ծիծեռնակին.
Կու գայ բլբուլը թեմանէն։
Քեզ կու կանչէ գերեզմանէն.
Կու գանգատէ իր սև բաղդէն,
Թէ որբ մընաց կարմիր վարդէն։

---

186

Գինի։

Խաղող՝ զքեզ գովել պիտի,
Բոլոր պըտղովդ ես հաւասար,
Զի դու միայն ես գեղեցիկ,
Ամէն պտղոց թաջ ու ըշվար։
Թելդ քաղած է յոսկոյն միջէն,
Դու մարգարիտ յոսկոյն շարաց
Քու մէկ պտուղդ աժէ ջուհար,
Տպազիոն ակն ու գոհար։
Ազգ մի թուխ, ազգ մի՛ սպիտակ,
Ազգ մի կարմիր, որ լուս կուտար,
Ազգ մի դեղին խունկի նըման,
Ընուշահոտ մուշկ ու ամբար։
Դուն 'ի Դրախտէն մեզ արմաղան
Ի յԱրարչէն պարգևեցար,
Հոտով անուշ, գինով յիմար
Մարդիկս սիրով որ յագենայր։
Անմահութեան պըտուղ դու ես,
Որ աշխարհիս մէջն բուսար,

Զքեզ հրեշտակ եբեր Նոյին,
Որ քո պըտղովդ ուրախանայր։

Զքեզ քաղեն, տանին հընձան,
Ճըմլեն զքեզ, ուտեն յիրար,
Վարդի նըման ջուր կու բըղխես,
Գետի նըման յորդոր գընաս։

Տանին լընուն զքեզ կարաս,
Առանց կրակի քու եռըդ գայ,
Շատ թագաւորք ժողւին առ քեզ,
Մե՛ծ մեծ իշխանք և հուքմարարք։

Զթագաւորաց սիրտն բանաս,
Եւ տէր անէս քաղքի հազար,
Թէ ունէիր հազար չարկամ,
Նա քու սիրովն մոռանար։

Թէ բարկացեր լինի մարդոց,
Կամ խոցել զինքն դիժար.
Յորժամ խըմէր կաթ մի քենէ՝
Բաշխէր զամենն և հաշտենայր։

---

187

Երգ, սէր և գինի։

Ուրախ լինինք, եղբարք, քանի որ կըտրիճ ենք,
Թէ չէ՝ շուտով կ՚անցնի մեր մանկութիւնը,
Կու գայ մեզ կու կոխէ ծերութեան ցաւը,
Ապա ի՞նչ պիտ՝ անենք մենք ան ատենը։

Արտորանք երգելու՝ քանի որ շունչ ունինք,
Թէ չէ՝ գարնան ծաղկի պէս շուտ կու թառամինք
Ափսոս է, ափսոս է մեր ոյժն ու սիրտը,
Ցաւ կ՚լինի մեր սրտին անցած օրերըս։

Ե՛կ սիրենք, եկ սիրենք, եղբարք, մեկզմեկու,
Մեր մէջից դէն ձըգենք չար բամբասանքը,
Բաց սիրտով, պարզ աչքով մեկ մեկու նայինք,
Թող սիրով անցկացնենք մեր մանուկ կեանքը։

Եղբարք՝ խմենք գինին Հայ ազգի կենացը,
Որ ամուր պահպանէ իւր սուրբ հաւատը,
Քաջ սրտով, վառ սիրով սիրէ իւր հաւատը.
Ուրեմն դատարկենք մենք մեր գաւաթը։

---

## 188

Ջուպուխիս թեթև ծուխ, երանի քեզ,
Որ բարձրանումես օդի մէջումը.
Քամու հետ թռչելով հեռու տեղեր,
Ազատ գնում ես պարզ հովերումը։
Քեզանից խնդրում եմ աղաչանքս լսես,
Կատարես քո թռչելումը,
Գնա մօտ սիրեկանիս պատմիր ինչ որ
Ինքդ տեսնումես սրտիս միջումը։

---

## 189

Շատ եղանակի

Кубокъ янтарный
Полонъ давно.
Пѣною парной
Блещетъ вино!

(Пушкинъ).

Խնդրեմ վեր կացէք,
Եղբայրք անգին,
Դաս դաս կանգնեցէք
Ուրախագին։

Ահա բաժակներ
Ոսկեզօծած
Առէք, ընկերներ,
Իմ զուարթացած։

Ահա՛ խնդութեան
Եւ գինիներ,
Գոյն գոյն, զանազան
Շամպայն, Մադէռ։

Ահա կախեթին
Կովկասեան մեր,
Ահա թանգագին
Խերէս, Սոտերն։

Առէք բաժակներ
Ուրախալի,
Լցնենք 'ի նըւէր
Մեր Հայ ազգի։

Կեցցե՛ն, երգեցէ՛ք՝
Հայ աղջիկներն,
Կեցցե՛ն, հնչեցէ՛ք,
Հայ զաւակներն։

Լացէ՛ք, կոծեցէք
Դարձեալ, կրկին,
Ե՛ւ մի՛ խնայէք
Պաշտվող փողին։

Խմեցէ՛ք խնդագին
Սիրոյ համար,
Սէրն է ձեր հոգին,
Ձեր բաղդն պայծառ։

Տրված է վաղուց·
Կեանք մեր կարճ է,
Այսօր կանք — էգուց
Կըմեռնենք գուցէ։

Այսօր կենդանի —
Էգուց գետնում,
Անելանելի
Պինդ դագաղում։

Ուրեմն գաւաթներ,
Շխկացնելով,
Առէք եղբայրներ
Անոյշ պաչով։

Սմբատ Շահազիզեանց, Աշտարակեցի, ուսուցիչ Լազարեան ուսումնարանի, կանդիդատ արեւելեան լեզուաց եւ այժմ վարժապետ հայոց լեզուի նոյն ուսումնարանում։

## 190

Մատռուակ, գինի տո՛ւր, շրջանն էսպէս չի՛ մնալ միշտ,
Հողից ստեղծուած է, ինսանն էսպէս չի՛ մնալ միշտ,
Փոքր ինչ դիմանաս՝ դիւանն էսպէս չի՛ մնալ միշտ,
Ի հարկէ կուղղուի՛ միզանն էսպէս չի՛ մնալ միշտ,
Կու առանձնանայ՝ մէյդանն էսպէս չի՛ մնալ միշտ։
Ո՛չ ոք չի՛ կարող ինքն իրան անուանել անբաղդ՝
Յայտնի գիտելով, որ շատ նուագք եղել են անյաղթ.
Էշ պտտողն արքայ եղև՝ յայտնի նստաւ 'տախտ,
Ամօթ կու կրէ անհամբերն և՛ կու մնայ անբախտ,
Ուժով չի՛ լինիլ, ամէն բանին կարգած է մին վախտ,
Մատռուակ, գինի տո՛ւր, շրջանն էսպէս չի՛ մնալ միշտ։
Երկար չի՛ մնալ էս աշխարհքի մէջ չար ու բարին,
Իմաստ է պէտք, որ մէկ բոպէից հասկանայ տարին,
Խրատ առնելով՝ խեղճ գլուխը չի՛ զարկի քարին,
Ամէն բարիքն իսկի չարժի քաշած ազարին,
Կենաց լաւ օրն՝ դառն ու լեղի է, վատն՝ արին,
Հողից ստեղծուած է՝ ինսանն էսպէս չի՛ մնալ միշտ։

Գիշեր ու ցերեկ մերձ 'ի մահ տանումէ Ֆէրեադ,
Ո՛չ ոք չի անում նորա ցաւերին ճար ու իմդադ,
Թէև գնումէ հոգւով նա միշտ առ Տէրն գանգատ,
Յօժար չի լինում, նորա բանն որ լինի ապատ,
Յայտնի երևի, խղճմտանքի հետ ընկել են ի՛նատ,
Փոքր ինչ դիմանաս՝ դիւանն էսպէս չի մնալ միշտ։
Անցաւ ամէնի ճշմարիտն, մին սուտն մնաց,
Նախնիք լաւութեան իսկը տարին, մեզ տուտն մնաց,
Բարեկամութեան մարմինն թափվեց, կուտն մնաց,
Բարեգործութեան մեծերն կորան՝ ճուտն մնաց,
Վերջն մօտեցաւ՝ տարիների էլ մուտն մնաց,
Ի հարկէ կուղղուի՝ միզանն էսպէս չի մնալ միշտ։
Սէյեադ, մի՛ ասիլ՝ դէպ ժամ չկայ, բանս խարաբ ա,
Չէ հարկաւոր դէպ ժամն քեզ՝ գործդ շարաբ ա,
Էս կեանքումն, ինչ ունենաս, է փուչ՝ խարաբայ,
Հոգին սատանից ազատողս միայն սէվաբ ա,
Էս ժամանակ լաւ մարդ ճարելն մեծ հիսաբ ա,
Կու առանձնանայ՝ մէյդանն էսպէս չի մնալ միշտ։

Գ. Ց—Ց. Մոգաթեան։

---

191

Կաժդիյ դեն՝ կաժդիյ շաս, դուշա մայեա, պօմիդու վաս,
Ինչ կուլի՝ ղադամ փոխես, լայեադ անես՝ մօտս գաս,
Եադ օղլու համդամ օլայ՝ գեալ՝ արան մաննեան քեռս,
Սարի Խուդա, համշարի, սուխան միգույեամ ռաս։
Րէնի ճիրի մէ, աք մօ, էխլա շէն սմ՞դ միդիխար,
Եա՛դինան աշնա օլինջա՝ օլ մանըմ իչուն աղեար,
Վիպեօմ կրասնիյ վինօ, ըազիգրայեմ գիտար,
Էյ զալում, եք շար բիեա՛ թու մարա մեհմանի դէգեար,
Ծըծերդ դե՛ր բերանս, թէ չէ՞ ես կուլիմ անմաս։
Րաբ ու րուզ գիւլիշանդա լալ էյլադըմ բիւլբիւլէ,
Որ իմ կամքը կատարես, տամ տեսնեմ ի՞նչ կուլի,
Բէղափլ էշխա դուշարմ՝ դաղըթարմ գունեա փուլէ,
Էխլա մէ մօկուդէ՝ ա՞րարիս շէնի սուլէ,
Վէյ նի Բօղ, վէյ նի անգէլ, ըշտօ խատեատ աս նաս։

Զուն բէլա բազանուփսան, բուխուր՝ ղարաղջա եբի,
Կրակի պէս շափաղդ դիփուն աշխարհքս կու էրի,
Կուդա պայդեօշ, պրաշու, մենեա սոաբօյ բեբի.
Ինք սահաթ սաբր բըքուն՝ բխանամ ղազալի շէհրի,
Նըրթի՝ օրի պռօշտի էխլա միեցի ամաս։
Խոէյլի հարիֆ մարդ պիտի՝ որ խօսքերըս իմանայ,
Պադի սիւդա, սկազալդյ մընէ ադին բաղ անա,
Մօտի էրթի դաբձանդի, գենացվալէ, չեմ թանայ,
Դուրբանի թու, դարդիմանդ, բիձ միրիմ զամխանա,
Միսկին-Բուրջի էյլիիր ինդի սամա իլթիմաս։

Միսկին-Բուրջի։

---

## 192

Ամէն սազի մէջըն գօված դուն թամամ դասն իս, քամանչա.
Նաքազ մարթ քիզ չի կանա տէսնի դուն նըրա պասն իս, քամանչա.
Դաստ արա՝ էլ լալ օրերուն էգիվըն հասնիս, քամանչա.
Քիզ ինձնից օվ կանայ խըլի՝ աշուղի բասն իս, քամանչա։
Ընգաձըդ էրծաթէն պիտի, գըլուխըդ ջավահիր քարած,
Կութըդ շիրմայէմէն պիտի, փուրըդ սադափօվ նախշ արած,
Աղմըդ օսկէն քաշած պիտի, էրկաթըդ փանջարա արած
Օչ օվ ղիմէթըդ չի գիդի՝ լալ ու ալմասն իս, քամանչա։
Ճիպուտըդ վարաղնած պիտի՝ թահր ունենայ հազար ռանգօվ.
Զարըդ ռաշի կուդէն պիտի՝ վուր դուն խօսիս քաղցըր հանգօվ.
Շատին զարթուն կու լուացցնիս, շատին կու քընէցնիս բանգօվ՝
Ընուշահամ գինօվ լիքըն դուն օսկէ թասն իս, քամանչա։
Ածօղիդ էրկու կու շինիս, առաջ չայի ղափա գ՚ ուզիս.
Կու մէձըրվիս այիմունըն, պարապ վախտի րափա գ՚ ուզիս.
Եփ վէր գու գաս մէջլիսումըն քաղցըր զօղ ու սափա գ՚ ուզիս.
Բօլօրքըդ գօզալնիր շարած մէջլիսի կէսն իս, քամանչա։
Շատ տըխուր սիրտ կու խընդացնիս, կու կըտրիս հիվընդի դուղըն.
Եփ քաղցըր ձայնըդ վիր կօնիս՝ բաց կու՚լի հիդըդ խաղօղըն.
Խալխին էս իլթիմազն արա՝ ասին. «Ապրի քու ածօղըն»։
Քանի սաղ է Սայեաթ-Նօվէն, շատ բան կու տէսնիս, քամանչա։

1759 Թ. Սայեաթ-Նօվայ, աշըդ։

Սազ—նուագարան։ Թամամ—կատարեալ։ Դաս—orchestre, մի տեղ դասած զանազան նուագարաններու զուգակշիռ հնչումն։ Իս—ես։ Նաքազ—ցած և վատթար, ժլատ մարդ։ Պատ անիլ—ջանալ։ Աշուղ—պարսկերէն ա՛շըղ, բառն իսկապէս նշանակում է սիրահար. բայց սովորաբար աշըղ կամ աշուղ՝ ասում են էն ազգային բանաստեղծներուն, որք նուագարանն ածելով երգում են իրանցմէն գեղջուկ լեզուով շարադրած, երբեմն եւ յանկարծ ասած խաղերն. շատ անգամ երկեքի աշուղներն բազմութենի առջեւն, հրապարակում կամ ուրիշ պատահած տեղ, բռնում են իրար հետ հանճարեղ վիճաբանութիւն. սազն ձեռին վառվռուն ոգւով ներդաշնակելով մէկ մէկու տալիս են դժուար լուծանելու չափական ձեւում բերած, սիրուն խօսքերով զուգած և կոկած խորին իմաստներ. որանցմէն կապօղն (յաղթօղն) առնում, խլում է իւր յաղթանակ իւր հակառակորդի ձեռից նուագարանն, որն որ սովորաբար հետ են դարձնում պայմանով՝ որ յաղթվածն երբէք չը համարձակվի յաղթօղի առջեւն, ինչ տեղ գ'ուզէ ըլլի, խաղ ասելն։ Բաս—վէճ, գործիք վիճոյ։ Ճերմայի—փըղօսկր։ Փուր—փոր. Նախշ—նկար։ Սիմ—պողովատիկ կամ պղընձէ թել, որն որ գործ են ածում նուագարանի համար։ Քաշած—քարշեալ։ Փանջար արած—fen-fenes estré, ciselé à jour. Երգիչն նկարագրում է Պարսկաստանի և Սրաստանու մէջ գործ ածած քամանչէն (ջութակ)։ Դիմէթ—գին։

Ղ'իպուտ—archet de violon. Սարաղնած—ոսկեզօծ։ Թահր—տեսակ։ Ռանգ—երանգ։ Ռաշ Ռուստէմի հռչակաւոր ձիու անունն է. էս տեղի բնակիչներու աւանդութենով, ռաշ՝ ասում են՝ թեւաւոր ձիուն (hippogriffe). Կուզի—Սրաց բառ նշ. պոչ։ Սուր—ոչ։ Հանգ—նուագ, եղանակ. եւ՝ ձև, տեսակ. ասում են էս տեղ՝ ինչ հանգի մարթ իս էլի, այսինքն՝ ինչ տեսակ մարդ ես եղել։ Բանգ—Hyosciamus բոյսն և նրանից շինած դեղն է. արևելցիք առ հասարակ, էս տեղի բնակիչներն էլ՝ ամէն տեսակ քնեցնող դեղին ասում են՝ բանգ, որն որ Արաբացւոց հռչակաւոր գիտնականի Իպն Բայթարի խօսքով պատրաստվում էր տերևից և սերմից երեք տեսակ Hyosciamus բոյսի՝ H. albus, H. aureus և H. reticulatus. Էս վերջի տեսակից շինում են եղել ամէնից թմրեցնող ու քնեցնող բանգն.

Ածօղ—նուագածու։ ածիլ բայն նշ. մէկ նուագարանի վրայ խաղալ, սազ ածել. էլի նշ. հեղուլ (ջուր, գինի ածիլ) քար ածիլ (գերեզմանի վրայ քար դնել, քար գցել)՝

«Մեռնելուս օրն քեզ գ'ուզիմ՝ վրէս քար ածիս ինձ ամա»։

(Նաղաթ-Օղլան)։

Մեծըրվէլ—մեծարիլ։ Սախտ—ժամանակ, ասում են եւ՝ վախտ։ Բափայ—պր. բաֆ նշ. հին տարազով շինած տներում, սենեկի ա-

առաստաղից (աձօռք) մի քանի կանգուն ներքև, պատից պատի պէս դուս բերած բաց տեղն (corniche), սրան Վրաստանում սովորաբար ասում են Թարէք, որն որ է՝ տան պատուաւոր տեղն, ուր դնում են եղել՝ զարդի համար, Թանգագին Ճինական ամաններ ու սակաւագիւտ մրգեր։ Եփ—երբ։ Վէր դու գաս—վայր կու գաս։

Դուղ—դող։ Վիր կօնիս—վեր անիլ։ Հիդդ—հետդ, քեզ հետ, ընդ քեզ։ Խալխ—արբ. բազմութիւն, ժողովուրդ։ Իլթիմազ—աղաչանք, հայցուած. միջնորդութիւն։ Սաղ—կենդանի։

---

## 193

Ես չեմ ուզում էս Թավուր [1]) փիս [2]) մահուտը,
Ինձ խաբելայ պարոն Խոջո [3]) ահուդը, [4])
Սուրթը տեղը կարեց՝ չիմացայ փուտը,
Պէտք է որ անիծեմ նորա մօր սուդը, [5])
Ղարծանով երդում կերաւ՝ ասէց սուտը։

Որ լաւը տաս՝ քեզ համար բաւ կու լի,
Բոլոր աշխարհի միջումը չաւ [6]) կու լի,
Էս ստօլի [7]) երեսքաշին լաւ կու լի,
Ստօլ չունիմ՝ կոտրովելայ չորս ոտը։

Մի՛ ասէ՛ք պարոն Բարին՝ էս ինչ ղա՛լ [8]) այ,
Որ տուելայ Ղզբարին՝ էս ինչ մա՛լ [9]) այ,
Կատանաս թէ ներկած բարդանի [10]) շալ [11] այ,
Պաշ [12]) էլ կըլի, որ մէջը ճըխտես խոտը։
Խաբար. տուի՝ ըստուր [13]) գինը նէչա՞ [14]) այ,

---

1) Թավըր—Պէս, տեսակ, գունակ։ 2) Վատ, անպիտան։ 3) Խոջատուր կամ Խաչիկ։ 4) Ահահուտ կամ Ահեհուտ, Ահահուտի կամ Ահեհուտի—Հրեայ. երբայեցի, յուդայեան։ 5) Սուդ, Սուլթ կամ Սիտ — Կաթն։ 6) Չավ — Համբաւ, հռչակ, անուն. քարոզ։ 7) Սեղան։ 8) Մէճ. կռիւ խօսակցութիւն անտեղի։ 9) Ապրանք, գոյք, վաճառք։ 10) Փուրձ, ապրուստ կամ խորդ մեծ՝ անկեալ 'ի մազից այծու։ 11) Չխփսի։ 12) կամ Պաշկյէ — Բեռնաբարձ գործի 'ի Թիկունս բեռնակրաց։ և՛ գաշ — Համետի, կորդնի և փալանի ճակատն։ 13) Սորա. այսր կամ այսորիկ։ 14) Նէչէ կամ Նիչէ — Որչափ, որքան, քանի, քանիօն։

Էս մահուդ չէ՝ թալքա 15) մահուտ՝ բէչա 16) այ,
Տեսնողները հենց իմացան քէչա 17) այ,
Խարար 18) ըլնի ըստրայ էլ զաւօդը։ 19)

Էս մահուդի Թարիֆը 20) ես շատ արի,
Տուր դերձակին՝ լայաղ 21) չարաւ՝ որ կարի,
Ասէց՝ էս ինչ այ, չի արժի մի փարի, 22)
Լեզւով նամ 23) տուէց՝ նամ չի տուաւ մի տուտը.

Մունաթ 24) եմ անում՝ առաջ էն լաւը տաս,
Փոփռալէն՝ 25) շաւաղ 26) տալէն խաւը տաս,
Աստառն ու քօրէն, 27) շըլնքի մաւը 28) տաս,
Խիաթին 29) ու դուկմէն 30) ու մէրամուտը։ 31)

Ազբար Ադամն եմ Թահրզ 32) կանեմ,
Աղա երեսըս քեզ փիանդազ 33) կանեմ,

---

15) Նէլքի կամ Նէյքիաէ—Գուցէ, իցէ թէ, թերևս։ 16) Բէչէ—Ձագ. ձուտ։ 17) Քէչէ—Կայծ, Թաղիք։ 18) Աւեր, աւերակ, քանդեալ։ 19) Գործատուն, գործարան։ 20) Պատմութիւն. գովք, գովաբանութիւն, գովասանք։ 21) Լայըղ—Արժանի, արժանաւոր, պատշաճ։ 22) փարա կամ փարէ—Աստակ, փող, դրամ, կէս կօպէկ։ 23) Նէմ—Գէջ, Թացութիւն կամ Թաց. խոնաւ. տամկութիւն։ 34) Մինէթ—Խնդիրք, աղաչանք, աղերսանք, Թախանձանք. Մինեթ անել—Շնորհս, երախտիս, բարիս, բարերարութիւն կամ բարեկամութիւն համարել։ 25) Փէր կամ փէր—փայլ, բոց, շող. ֆէրֆէր կամ փէրփէր—փայլուն, շողաւոր, բոցաճաճանչ,—փայլ. Փէրփէրալ, փէրփէրալ (և ֆըռֆըռալ)—փայլել, փայլատակել, բոցափայլել, շողալ, փողփողել։ 26) Շավգ—Ճառաճանչ, շող. Նշոյլ. Շէֆագ—Լոյս երեկորեն. կարմրութիւն երկնից երևեալ ընդ երեկս 'ի մտանել արեգական. շողք։ 27) Մերջաւորք. ծոպք. կերպասեայ ժապաւէն՝ կարեալ 'ի ծայրս կամ յեզերս հանդերձից։ 28) Մախմուրեայ կամ դիպակագործ ժապաւէն՝ կարեալ յօձիս կամ 'ի փեղպատս հանդերձից։ 29) Խայթ—Թել, ասղանի. խիաթ — ասեղ։ 30) Դուկմէ—Կոճակ. ճարմանդ. աղխ։ 31) Օղ կոճկաց կամ ճարմանդից։ 32) Թահրիզ — Գրգիռ, հրապուրանք. գրգռել. յորդորել. յուզումն, շարժումն, 'ի հաւանութիւն։ 33) Փայենդազ—Պաստառ կերպասեղէն. դիպակին մետաքսին, զոր տարածանեն 'ի գետնի ընդ ոտիւք արքայի 'ի մտանել նորա 'ի քաղաք ուրեք.—զինչ և իցէ իր՝ որ ընդ ոտիւք տարածանի, զայս կրէ անուն

Թէ որ չի տաս՝ Պօլկօվնիկին 34) արզ 35) կանեմ,
Ընտրանից 36) կառնեմ ամէն եկամուտը։

Աղբար Ադամ։

---

194

Ես մի սիրական կուզեմ դարդից խաբարդար 1) ըլնի.
Համ խելօք՝ համ դանանդայ 2) ոչ թէ խելագար ըլնի,
Կեանքիս հետ կեանք ունենայ՝ ահըլի 3) վաֆադար 4) ըլնի;
Մեր երկըսիս պայմանը՝ էս թավուր իգրար 5) ըլնի

Ամէն փուչ սիրականի համար՝ մի ջիվան պըտի 6)
Հաւատարիմ սիրելու փիանդազ ու ջան պըտի,
Ճանփումը ղուրբան անես օմրըդ բիրդան 7) պըտի,
Քաղցր խօսալ ունենայ՝ անուշ սիրական պըտի,
Սրտով սիրի սիրելույս՝ սիրով սիրահար ըլնի։

Մի խօսքը սահհ 8) եար կուզեմ՝ որ աշխարհս հաւանին,
Իմանաս էլ ինչ պէտք այ վաֆալու 9) սիրականին,
Պէմքդ փիանդազ անես՝ ջանըդ ղուրբան ջանին,
Որ հոգի տաս՝ չի կորած՝ էս թավուր գուլականին,
Թէ դրուստ 10) միտք ունենայ՝ քեզ հետ մուղարար ըլնի։

Վաֆալու սիրականին պէտք է քէմալ 11) ունենայ,
Ուրիշներին չի լսի էս թավուր հալ ունենայ,
Իրան սիրականի հետ քաղցր խօսալ ունենայ,

---

34) Գնդապետ։ colonel։ 35) Յանդիման լինելն. մատուցումն. առաջի առնելն.—գանգատ. գիր աղերսանաց. խնդիր, խնդրագրութիւն։ Արզ անել կամ իլ — աղերսել, աղերսամատոյց լինել, գանգատել, աղերսանօք յայտնել։ 36) Ի նմանէ։

1) Տեղեակ, գիտակ. ծանօթ. հմուտ։ 2) Գիտակ, հմուտ, հանճարեղ։ 3) Ահըլ—Տէր. կարօղ. հմուտ. գիտակ. կից, կցորդ։ Ահլի— Ընտանի, սովորական։ 4) Վէֆադար — Հաւատարիմ, մտերիմ, կատարիչ խոստմանց։ 5) Հաստատութիւն, խոստումն. դաշն. պայման։ 6) Պէտք է, պիտոյ է, պիտի։ 7) Միանգամայն, ի բովանդակ, բոլորովին, գլխովին, ողջ ՚ի միասին։ 8) Ճշմարիտ, ուղիղ, ստոյգ։ 9) Վէֆալը—Հաւատարիմ, մտերիմ. հաստատ բարեկամ։ 10) Դուրուստ—Ուղիղ, ճշմարիտ, արդար։ 11) Կատարելութիւն, լրութիւն։

Ինձնից ուզէց դէմի՛խնան 6) սալ 7) էծը։
Դուրս բերեցի սօկխւտուղի 8) դզերը, 9)
Սըրէս Թափեց կասաբխանի 10) շները,
Փախաւ՝ մտաւ մաթուշկեքանց տները,
Միտքըն ունէր դառնալ ղուռումսաղ 11) էծը,
Երկու յետի ոտներիցը դըքեցինք,
Ըն երկար ականջներիցը ձըգեցինք,
Ուշունց տուինք՝ անիծեցինք՝ Թըքեցինք,
Չէր ամաչում՝ ինձ անումէք լաղ 12) էծը։
Էս չի՛ տեսել մի էսԹավուր օյունբազ, 13)
Փողեր ունէր՝ որ ամէնն էր մի գազ,
Համ քոսոտ էր՝ համ ղօԹուր 14) էր՝ համ անմազ,
Ոտներիցը էլել էր դարբաղ 15) էծը։
Էս չ՚տեսայ սև խծի մէջի համը,
Դժուարինումըն ընկի չԹողուց քեամը, 16)
Ընդուր համար Թարխին արեց Եզբար Եդամը,
Արտխս վըէն գըըտւց գուգխւն 17) գաղ 18) էծը։

Եղբար Եգամի

---

6) Դէմի՛ խլէ — Դէմով հանդերձ. (դէմի — նաւ. և խլէ — հանդերձ, ընդ)։ 7) Լաստ, լաստափայտ։ 8) Սէօյխւտլխւք — Ուռիք, անտառ ուռեաց։ ուռատատան։ Սէօյխւտ կամ Սէօյխւթ — Ուռի։ 9) Դխազ — Ուղիղ, հարթ հաւասար, տափարակ (տեղի, տարածութիւն), դաշտ։ 10) Կասաբխանէ — Սպանդանոց, մսավաճառանոց, սպանդարան. (Կասաբ — Մսագործ, մսավաճառ, սպանդագործ. և խանէ — Տուն, տեղի)։ 11) Կաւատ, պոռնկախառնիչ։ 12) Խաղ, կատակ, ծաղր. բանք ծաղու, խաղոյ և զուարճութեան։ 13) Խեղկատակ, հոպիտ, միմոս, խաղաւէր։ 14) Նոթոտ, ուրուկ, քոսոտ։ 15) Կամ Տապախ — Տապակ կամ Տապաստ. Հյաւ արջառոց փոխադրական, ուռուցիւք ոտից և կճղակաց մինչև ՚ի նեխութիւն որդնալից։ 16) Քէմ — Սակաւ, պակաս, փոքր։ 17) Դխւյխւմ — Ճանգոյց կամ կապ (վերաց). խարան. աղբխւբիկ կամ աղբխւրակ (վերաց)։ 18) Խայտան։

196

Վանահայր Արքունեաց Կուսին Շողակաթի վանիցն՝ Յովհաննէս Վարդապետ, ճաշ պատրաստելով վասն միաբանից, զայս գովասանութիւն ընկալաւ առ ժամն 'ի 10 Յունիսի 1854 ամի, 'ի Վաղարշապատ։

Ա՜խ, Յովհաննէս Վարդապետ, ի՞նչ ասեմ ձեր աքլորին, [1]
Արի, ճշմարիտն ասա. ո՞րքան էր սրա [2] տարին,
Աւա՜ղ ձեր յարգութեանը, ամօթ դրա [3] կատարին, [4]
Դեռ ճաշը չի վերջացած՝ աշչըքը [5] օջաղ [6] արին,
Իստակեցին աքլորը, պղնձոյ մէջը դրին,
Մինչեւ էն տեղն հասաւ, որ փափագեցինք փօնարին։ [7]
Պղինձը ջուր լցնելով՝ կուժ ու գիւյիւմ [8] չի մնաց,
Աքլորի յոյսն ունենալով՝ ո՞վ արդեօք ծում [9] չի մնաց,
Նաղչուան արքաս, [10] վանքումը սպիտակ մում չի մնաց,
Սովածութեանն յաղթելով՝ խելքս ինձնում չի մնաց,
Երբ շըհանոց մուճն իջաւ, ասինք, թէ հում չի մնաց,
Մեք վռազիլ, համբերէք. աշչիքըն էս լուրը բերին։
Վարդապետէն հարցրի աքլորի թուականը,
Ասաւ. իմ պապս էր գիտում դրա կենաց սահմանը,
Երբ ՝Նոյ էր որդիքովը մտնել ուղեց տապանը,
Էս աքլորն էր տապանի ձայն տալողը՝ դեսպանը,
Էն վռանդից ապրելով, հիմա մնաւ ղազանը, [11]
Յանկանուժէր Բաբունիս առարկայից երկարին։
Տեսան կէս գիշեր դառաւ, պղնձիցը հանեցին,
Կտրեցին մէկ հատ թեւը, կերան՝ հում անուանեցին,
Ճարահատեալ հաց բերին, աքլորը բաժանեցին,
Որքան կերան, լիացան, էնքան գովաբանեցին,
Ընդեղ երես առ երես ինձ ուղղախօս չինեցին,
Մէկ էս տեսակ տեսարան քիչ կճարվէր աշխարհին։

---

1) Աքաղաղ։ 2) Սորա։ 3) Դորա։ 4) Ըպուկ։ 5) Աշչը կամ Աշչը-խոհակեր, խորտկարար, խոհարար։ 6) Ծխահանք, ծխան, կրակարան։ 7) Լապտեր, մոմակալ. Ֆանօս կամ Ֆանուս։ 8) Անօթ ինչ պղնձի վասն ջրոյ. սափոր պղնձի։ 9) Ծոմ։ 10) Յօշ. ուռք որթոյ չորացեալք։ 11) Սան, կաթսայ, պղինձ կերակրոյ։

Միսը երբէք չկերվավ՝ էնքան, որ անպիտան էր,
Մահմուզները [12]) Թզաչափ՝ մորթին դաբաղի [13]) բան էր,
Ունեցած ոսկորների ամէնքը մէկ գերան էր,
Թէև սրա գլուխը փթից պակաս կլինէր,
Բայց ճնազը [14]) մէկ աղքատ տան համար նէրգիլան [15]) էր,
Պահարաններ՝ մաղազէք [16]) կար էս աքլորի փորին։
Քու սրտացաւ ընկիլը, ով դու, յետոյ իմացան,
Թէև էն քիչ ատենին մասնաւոր ուրախացան,
Աքլորի դօվլաթիցը [17]) շատերը հիւանդացան,
Միջոցը երկարելով, հազիւ որ առողջացան,
Տեսայ, որ իմ յոյսի ինձ տուած վիշտքը բազմացան
Միանգամայն տուր տուի ինձ վստահութեան լարին
Յայտ լեցի վեհանձն հոգի տեղակալ Սրբազանին,
Որ Յովհաննէս Բարունին չի մնաց իր պայմանին,
Զատէր Նուեմիս քահանայն, ազգաւ Նորարատեանին,
Նրաշխաւոր կամ վկայ տուաւ Աշըղ [18]) Շիրինին,
Մէկ գառը ինչ էր արդեօք. աւաղ ձեր աստիճանին,
Խոստմունքի կատարումն է ամենալաւն ու բարին։

Աշըղ Շիրին:

---

## 197

### Վասն գինւոյ և արբեցութեան.

Գինի խմիր կու հարբեցնէ, գինի է՝ ոչ թէ թթու թան,
Խմողին կ՚լրբացնէ, թէ իշխան լինի, թէ Սուլթան։

Ինչ մարդ խմելուց հազ արաւ, նորա քիսէն ծակ կու լինի,
Զունքի խմիչքն փողի հետ, կասեն, հակառակ կու լինի,
Արբեցողի որդիքն գող՝ կինն անառակ կու լինի,

---

12) Կարթ, բիտ աքաղաղի։ 13) Կամ Դէբբաղ — խաղախորդ, կաշեգործ։ 14) Ջանահ — Թեւ։ 15 Կամ Նէրգիւլան — Սանդուղք, աստիճան, վերելեակ, ելանելի։ 16) Ռամկօրէն՝ Մաղազա. — Մախզէն՝ յգ. Մախաղին — Շտեմարան, մթերանոց, նկուղ, մառան։ 17) Ողորմութիւն, բարերարութիւն, բարեյաւութիւն։ 18) Կամ Աշըկ — Երգիչ, գուսան, բանաստեղծ ազգային։

Ինչքան պատուելի մարդ լինի՝ վերջն խայտառակ կու լինի,
Ահեղ ատենի օրն նա սևերես կերթայ դատաստան։
Արբեցողի տան միջից՝ վրդովմունքն անպակաս է,
Եթէ մին ծածուկ խօսք ասես՝ հրապարակի մէջ կասէ,
Նորա հետ ընկերանալն մարդոյ պատուին շատ վնաս է,
Որ ակլ մէջն փոս բան տեսնի՝ կու կարծէ թէ գինոյ թաս է,
Թէ կինն նամուսով էլաւ, սաղ կու մնանէ գերեզման։
Մեր Փրկիչն գինին էնդուր դրաւ իւր արեան փոխանակ,
Որ քրիստոնեայքն խմելիս նորան չափ դնեն և քանակ,
Խելօք մարդին բաւական է ամենայն օր մէկ ըմպանակ,
Անչափ խմողն Քրիստոսին յայտնի մորթումէ անդանակ
Արբեցողն՝ ըստ իմ կարծեաց, է բնակիչ դժոխական։
Արբեցողի հետ ով ոք որ ունենայ հաշիւ, առ ու տուր,
Այնպէս կարծէ իւր փողն մէջ կապեց մին սաստիկ վազկան ջուր,
Նորա դէմքն չի ծիծաղիլ, միշտ գառնացեալ կուլի, տխուր,
Թէ գիտուն ես, այս մասին, դու, իմ խրատներիս ականջ տուր,
Եթէ ո՛չ՝ վերջն կափոսես, երբ որ կուլիս թշուառական։

Գ. Ց—Ց. Մաղաթեան։

---

198

Անցեալ գիշերն երազում
Դովլաթ բաժանողն մինակ
Ըշտապով ինձ մօտ էր վազում,
Ձեռին բռնած փողի տոպրակ։

Հարցրի. ուստի՞ ես գալիս,
Մ՛ոռացել ես բէիղբալիս,
Ասաց. սրան քեզ եմ տալիս,
Թէ որ կուտաս ինձի մուրհակ։

Ընկայ վիզովն՝ պաչ արի,
Ասամ. գալըդ հազար բարի,
Ո՞ր տեղ էիր անցեալ տարի,
Որ ընկայ ես մեծ պարտքի տակ։

Ասաց. առատաձեռն էիր,
Ինձ համար ծանր բեռն էիր,

Փող չ՚ի տալ քեզ. թէ մեռնէիր,
Առատ մարգին շատ եմ ներհակ։
Ես եմ գովեալ բաժանողն,
Որ քեզ տամեմ էսքան փողն,
Զեմ սիրել ես փող տւողն,
Պիտի ման գաս սանց գտակ։
Խօրակըդ սօխ ու հաց արա,
Ջացն ջրումն թաց արա,
Բանն ինքդ վէր կաց, արա,
Զիլի փող տար՝ բանես մշակ։
Որ չի կատարես խօսքերըս,
Թէ լինիս իմ ծնող հէրս
Դռնեզանից կու կարեմ սէրս,
Կ՚քցեմ մին խոր հորի բակ։
Ասամ. ինձանից հեռացիր,
Ո՛ւմ կամենաս, տա՛ր՝ նորան տուր,
Որ ծառայէնա քեզ ՚ի զուր,
Դռանը բեռնդ՝ իբրև իշակ։
Ես Սէյեադն եմ՝ գիշեր և տիւ,
Զեմ տուել հէչ փողին պատիւ,
Այսուհետև քոյ մինաթիւ
Պէտք է ման գամ կօշիկս ծակ։

Գ. Տ—Ց. Մաղաթեան։

---

## 199

Ի հանդէպ ասացելոյն ՚ի Հայ Կաթոլիկ Աղէքսանդր վարդապետէ Ալէքսանդրապօլցւոյ «Բայց ինձ հաւատա, Շիրին, բովանդակ մէջ աշխարհին».

Պատուելի Աշըգ Շիրին, չէ՞ս գիտում էս չար դարն,
Որ լեզուի տակ ես ձգել մեր Աթոռի աքլարն։
Աքլարիդ պատմութիւնն մէկ կիսահայից լուայ,
Զի հաւատացի, զի անհաստատ վկայից լուայ,
Անհաւատ, անյոյս, անսէր, գործն երկբայից լուայ,
Գլուխ կեղծաւորութեան՝ անհարս փեսայից լուայ,

Լաւ էր՝ թէ չէի լսել, սա էլ ձեր ասլից լսայ,
Լսած օրիցս կորաւ սրտիս միջի գաղափարն:
Ասացի. ով պատանեակ, մեր Հայքն կա աքլորին
Մինչ էսօր ընդունիլն՝ սրբոց նախահարց շարքին,
Սոքա չորս աքլոր էին՝ միջներն սա էր բարին,
Որ մեք արժանի տեսանք սաղ նմա խաշած գարին,
Մնացեալ երեքիցն մէկն ՚ի Հռոմ տարին....
Որ՝ ըստ կարեաց, պահպանէ Առաքելոյ տաճարն:
Երբ հասաւ այն քաղաքն, իրան կիրքն արծարծեց,
Գլխի երկար փետուրն թագ կայսերական կարծեց,
Որոնելով՝ քանի մի իրան պաշտօղներ վարձեց,
Վերջումն այն խեղճերին մեռանելի բեռ բարձեց,
Նորանց միջից մէկն ասեց. արի, չար ճամբից դարձեց,
Թէ ոչ, կուտով կ՚սպանեմ գլխիդ կարմիր կատարն:
Երբ անպատեհ գործերն Հռոմեայ մեծ աքլորի
Սկսան անթիւանալ՝ ծավլանալ տարէ ցտարի,
Խորակն չափից արաւ, չուզեց տեսանել գարի,
Սակոնից մէկ Լոր էլաւ՝ խիստ քաջասիրտ և արի,
Չի կամեց՝ մեծ աքլորին ըստ արժանւոյն մեծարի,
Վասն որոյ նա էլ կամեց գտնել այս ցաւի ճարին:
Կռուեցին երկար միջոց Լորն ու տաճարի տէրն,
Աքլորների միջիցըն վերացաւ նախնի սէրն,
Իս մասին տրտնջացին էն կողմի գլխի հաւերն,
Աքլորի կողմից վատն՝ Լորի կողմից լաւերն,
Վերջապէս կոխեցին, հանեցին մեծ աքլորի աչքերն,
Կուրացաւ, էլ չկարաց ընթանալ ճանապարհն:
Խեղճ աքլորն կուրացաւ, եղև անպէտ և անշահ,
Հաւերն բողոք տուին, թէ չէ արժան սրան գահ,
Չի թողին տաճարումն, արտաքսեցին ՚ի սրահ,
Քիչ մնաց՝ որ մեռել էր աքլորն անցաւ՝ անմահ,
Ով որ տեսնումէր նրան, ձայնիւ ասումէր՝ վա՜հ վա՜հ,
Հպարտութեամբ վեր ընկաւ փառք ու պատուից էս չարին:
Վերջն տեսան աքլորն օր օրից լղարումէ,
Միաբանքն ասացին. շուտ մորթելն զատում է,
Մորթեցին, ղազանն դրին, մինչի այսօր եփվումէ,
Ամէն Հռոմ քաղաքն նրան սպասեալ ծում է,

Բայց նա Փրկչի թուլիցն մինչ ցարդ չի՛ եփվել, հում է,
Աստուածն. պնտութիւնով էլ չկայ բարեբարն:
Ինքն Կովկասու սարն, ամպն նորա թևերն,
Գագաթն՝ կատարն է, երկինք է հասել ծէրն,
Ձորերն երակներն, քրտինքն է գետերն,
Անտառքն նորա հերն, Եղևնիքն ոջիլներն,
Ինչպէս բանի եփվելուն ո՞նց դիմանայ համբերն,
Նորա մսից շուտով է կարող եփվել սև քարն:
Այս աշխարհի մի՛սն՝ որ քար էլ լինի, ձէրն է,
Միսն մէկ ունայն բան է, թագն ազգի սէրն է,
Միշտ մեծ պատուի արժան է՝ ով ինչ բանի ծէրն է,
Ո՛վ լաւ բանին վատ ասի, սխալն աչքերն է,
Աստուածն՝ էս աշխարհն նախահօր ընկերն է,
Կամ թէ՝ նա կար, երբ ձգին աշխարհքի հիման լարն.
Միաբանքն կտրեցին կացնով փոքր ինչ կատարէն,
Կամեցան որ նրանով մին հացկերոյթ կատարեն.
Կերան, էլ չեն հեռանում միշտ ոտաց ճանապարհէն.
Փորացաւի ձեռիցն չեն կարենում դադարեն,
Լաւից լաւ բան դուրս կուգայ, վատ բան կուծնի չարէն,
Աքլո՞ր կու լինի կոչել էսպէս տպաւած սարն:
Վերջն ժողովք արարին հաճութեամբ միաբանաց,
Միսն ղազանից հանին՝ բաժանեցին գազանաց,
Գազանների բերանում երբէք տաամ չի՛ մնաց,
Այս աշխարհի էս լուրն՝ մինչի յաւիտեան գնաց,
Վասն որոյ մեր աշխարհի բնութիւնն ե՛կ՝ մնաց,
Թէ ո՛չ՝ ձերի վարքերով կու լցնեմ աշխարհն:
Պատմաբանն զայս լուեալ՝ իրան քաշեց սուր լեզուն,
Վասն զի ծածուկ տեղն կոչումէր իրան գիտուն,
Պատասխանեց ինձ՝ թէ մեք մէկ ընտանի եմք, մի տուն,
Ասացի՝ որ այդպէս է, չէ՛ պարտ միմեանց զի տուն
Շարժեցընենք հաւատոյ հիմունքն տեղից բիթուն,
Որն որ մեզ տուեալ երկնային Բարերարն:
Շիրին, էլ այսուհետև խօսքիդ մէջ ամուր եղի՛ր,
Մեզ շահ չէլած բաներն մի՛ տեսանել, կոյր եղի՛ր,
Ազգի աղտն սրբելոյ՝ կամ ջուր և կամ հուր եղի՛ր,
Ընդ թշնամեաց կռուելոյ՝ թրոյ նման սուր եղի՛ր,

Մի՛ երկնչիր մահիցդ՝ կամաւ անձնատուր եղի՛ր,
Հաւատա՛, սէրն է ամէն բանի գերակատարն։
Թէեւ մեր հին աքլարի միսն անհամ էլ լինի,
Նրան այլոց հազարին չեմ փոխել, որ ճար լինի,
Միսն ի՞նչ մեղք ունի, որ ուտողն ակար լինի,
Խօսքն երեսին կասեմ, թէ ծնող եղբայր լինի.
Մէյխադն եմ, մեր աքլարն թո՛ղ հոգւոյս սատար լինի,
Որ լինի ինձ բնակարան երկնից բուսոյ կամարն։

Գ. Տ—Ց. Մողաթեան։

---

200

Մին քանի դարդիմանդ տղերք (Օրթաճալայ [3]) քէփ՚ինք անում, [1])
Խորոված հետ կարմիր գինին խմում՚ինք լաղաթ՚ինք տանում։ [2])
Ընկերիս մէկն Գիքօն էր, երկրորդն զուռափ Պէպանն,
Երրորդն դերձիկ Միխակն, չորրորդն ղաղաղ Իվանն,
Հինգերորդն մեր Գիգօլին, վեցերորդն Գարսեւանն,
Աղալօյենց տղայի հետ նստել՚ինք բաղվանի տանն,
Ջան՚ինք ասում, ջան՚ինք լսում, օրներս լաւ էր անցանում։
Փլաւի բրինձն քցած, քափն քաշուել էր բօղբաշի,
Մեր Աղալօն դառել էր մէջլիսումը թօլուբաշի,
Տաք տաք պռօշտի անելով՝ քիչ մնաց սիրտներս խաշի,
Մեր խմելոյ շըփշըփոցին թռչունքն՚ին եկել թամաշի,
Չեմ գիտում էն հէյվաններն նրանից ի՞նչ՚ին հասկանում։
Վեց թունգի գինի՚ինք տարել ամէններիս-քոռացրուց,
Աչաւ խելքներս մեզանից՝ էշի նման գօռացրուց,
Աշխարհը դիփ մերը շինեց՝ դիւան գարէն մոռացրուց,
Նա՛ վեր քցեց մեռելի պէս, եա ծռեց՝ աթոռացրուց,
Մեր մէջումն մին Պէպանի խելքն էր մնացել իրանում։
Մին ափիցար քանի մարդով գալիս է՝ տեսնում մեր հալն,
Ասումէ. էս կէս գիշերին է՞ր էք անում ղալմաղալն,
Ըսկսումէ մեր կռները իր մարդկանցը կապել տալն,
Անիրաւն՝ տեսանելով խեղճ Աղալօվի ողբալն,
Չի խնայում արտասունքին, մեզի ողորմութիւն չ՚անում։

---

1) և 2) Ամենայն տանց վերջումն կրկնեա՛ ղայըոսիկ տողս։
3) Տփխիսում։

Պաշքաշելով մեզ տանում մինչեւ պօլիցիայի դուռն,
Այն տեղ հրաման է տալիս մարդկանց՝ բացումեն մեր կուռն,
Պցումէ էշլի՛ բաղնիքը՝ չի պահպանում մեր տաքուն,
Ասումէ. դուք առաւօտն կը յայտնէք դրուատն ու ծանօթն,
Հիմա կիմանաք՝ ձեզ պէտն ինչպէս պատիժ է ստանում:

Այն գիշերն արիւններս ծծեցին գազան լուերն,
Բանտի պէս փիս տեղ չի լինիլ՝ քանզի նրան միայն Տէրն,
Կէս գիշերին սալդաթներն բլոքեցին մեր ոտներն,
Ամէնքս մին բերան ասանք՝ խարաբայ ՚լինի բաղերն,
Որ նրանցում սէյր անողի բանն էստեղ է հատանում:

Առաւօտն ութ ժամին մեզ քաշեցին զերցակի տակ,
Տերեւի պէս դողում էինք՝ իբրեւ մարդասպան աւազակ,
Սեկրետարն ասեց. «Արմեա՛նչկի, սը վաժի նաչօբնօ վօտ կակ».
Ասեցի. «վաշէ բլագորոդիէ». ասեց «մոլչի՛ պոդլեց, դուրա՛կ».
Խօսքերիցն իմացայ, որ փողի թամահ կայ նրանում:

Քաշեց մեզի մին ջոկ սենեակ, հրամայեց, «ըստօ՛յտէ տուտ».
Թուղթն ու գրիչն հաղիրեց՝ հարցրուց, թէ «կա՛կ վաս զաւուտ».
Ինքն մին չորչոր մարդ էր՝ հագի հանդերձն դիփ կապուտ,
Այնպէս կարծեցի՝ Նեռն է՝ կամ թէ նոր մկրտուած Ջհուտ,
Որով՝ դէպ ՚ի մեր գրպանըն աչքերը խօշոռ էր բանում:

Պասկո հանեցի գրպանէս՝ ցոյց տուի սեկրետարին,
Հենց գիտենաս՝ հաց ցոյց տուիր որբ երեխին սովի տարին,
Օփիցարն ու ինքն մնացին՝ մնացող մարդկանց դուրս արին,
Մ՚ին գիր բերին՝ մեր առջեւը դրին, մեզ համար բաց արին,
Ասեցին. տեսէք, օրէնքն ձեզի Սիբիր է խոստանում:

Վերջապէս մենք տուինք նրանց ամէն մէկս երկու թուման,
Երբ որ փողերն ստացան՝ մեզի ազատութիւն տուան,
Գրիչները զըռաղ դրին՝ թուղթը պատռոտիլ սկսան,
Կեանքիս մէջ չէի տեսած էլ էսպիսի արդար դիւան,
Սրանից լաւն էլ կուլինի՝ մեզի օրէնքն է պահպանում:

Երբ որ պօլիցեից դուրս եկանք՝ ինքս ինձի բամբասեցի,
Այս ի՞նչ էր՝ մին սէհր անելոյ համար կորչում ինք, ասեցի,
Քաղաքի էս վատ աղաթն մանկութեան կարգին դասեցի,
Նոյն ժամայն էսպէս բաներից հրաժարուիլ սկսեցի,
Հենց հեռացայ նրանցից, որ շուաքն էլ չի կայ ինձանում:

Ինչ մեզաւորի փող ունի՝ վախենալն հարկաւոր չի,

Մ՛ին ժամանակ չեմ տեսած՝ որ փող ունեցող մարդն կորչէ,
Փրթամ բառն միշտ ելևելայ, Սէյբաղ, մի՛ զարմանալ՝ Նոր չէ,
Որ պատահի՝ ինքդ էլ կե՛ր, հոտը չ՚իմանուալ՝ սխտոր չի,
Էնպէս գիտես՝ մեծաւորքն դօնլուղով են հարստանում:

Գ. Յ—Ց. Մաղաքեան:

---

## 201

Պարտական մնայ նա օր դատաստանին,
Որ ծանկի՝ չէ՛ գովլի պատուոյ արժանին,
Ընդադար աշխարհքի վերայ ման եկայ՝
Տեսի, որ քեզանից արժան բան չ՚կայ:
Ո՛վ գինի, որ արեան նման կարմիր ես,
Երդեօք մի բան կա՞յ, որ նրան չ՚սիրես.
Ո՛վ գինի, դու անհուն զօրութեան տէր ես,
Մանկանց հետ մանուկ ես՝ ծերոց հետ ծեր ես.
Ո՛վ գինի, քո թասը ով ձեռին պահի,
Նա տէր է, համարեա, կեանքի և մահի.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմէ սատանէն,
Չի վախիլ նա ահեղ սուրբ դատաստանէն,
Ո՛վ գինի, քեզանով շատերն մարդ եղեն,
Շատ մեռած կերպարանք լոյս զուարթ եղեն.
Ո՛վ գինի, թէ մանես փոր չքաւորի,
Նա զենքն նման կանի մեծ թագաւորի.
Ո՛վ գինի, թէ խմի քեզ իմաստունն,
Մեծ պատուոյ չի՛ հասած՝ չի՛ տանիլ քունն.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի յիմարն,
Նըղընգով կու քանդէ Կովկասու սարն.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի թշնամին,
Աշխարհքն աւեր կանի բերանից քամին.
Ո՛վ գինի, թէ խմի քեզի հպարտն,
Հազար դամ՚ կաւելնայ իւր սրտի դարդն,
Ո՛վ գինի, թէ խմի քեզ աւազակն,
Կու կամենայ գողանալ լոյս արեգակն.
Ո՛վ գինի, երբ խմեց քեզի սատանայ,

Պէտք է յաւիտեան խօսքին չի լռած.
Ո՛վ գինի, թէ խմի քեզ բամբասողն,
Թշնամի կու լինի մարդոյ հետ հողն.
Ո՛վ գինի, որ խմի քեզ բէկիկբալն,
Մ՝ոքից կու ձգի իրան ումհալն.
Ո՛վ գինի, թէ քեզի խմի սպաւոր,
Կասէ՝ թէ սա ի՞նչ լաւ օր է շնորհաւոր.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի պարտական,
Կուկարծի՝ թէ պրծաւ պարտքերի տական.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի մահապարտ,
Գիտենայ թէ կապանեն, չի անիլ նա դարտ.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի զարդեարն,
Կասէ՝ իմ ձեռքիս է երկնքի լարն.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի մաշկակար,
Ամէնին իրանից կուկարծէ ակար։
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի փինաչի,
Կուկարծի՝ թէ երբէք փինաչին նա չի.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի սովդաքար,
Գարեհին նա իրան կու կոչէ նաքար.
Ո՛վ գինի. եթէ քեզ խմի բազզազն.
Գայիսան կու կարծէ իրան կէս դազն.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի շիշատաղ,
Ադամանդ տաշողին կանի նա անազ.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի տան հատն,
Աղուեսի հետ կանի համարձակ դաւն.
Ո՛վ գինի, եթէ քեզ խմի տաւարն,
Չի՛ թողուլ՝ որ մէջքին դնեն նաւարն.
Ո՛վ գինի, թէ որ քեզ խմի աւանակ,
Ճ՛արտասան կու լինի անթուղթ՝ անթանաք.
Ո՛վ գինի, դեղերի գլուխն դու ես,
Տեսել եմ հրաշալի գործերդ քո ես.
Ո՛վ գինի, որ խմի քեզ կոյրն աչօք,
Աշխարհքն մեան կու գայ մին օր չորքչոք.
Ո՛վ գինի, թէ հոտդ առնի չօլաղն,
Կասի՝ մի ոչինչ մարդ էր Թէյմուր կաղն.
Ո՛վ գինի, եթէ որ քեզ խմի քառն,

Իմ ցաւիս փրկիչն նա է յարաժամ.
Իմ մատաղուակ մին մօտս բե՛ր էն գինին ծածուկ,
Որ խմեմ՝ կուլինիմ մին հրեշտակ յատուկ.
Մ՚ատաղուակ, մին մօտս բե՛ր երկնային ջուրը,
Պ՚ուցէ, նա փարատէ սրտիս տխուրը.
Մ՚ատաղուակ, մին մօտս բե՛ր ծերոց մահակը,
Կայսերաց աթոռը՝ իշխանաց թագը.
Մ՚ատաղուակ, մին մօտս բե՛ր խելքի բանալին,
Խմեմ և բաց անեմ անիմանալին.
Մ՚ատաղուակ, մին մօտս բե՛ր փառքն աշխարհի,
Խմելով՝ զուարճանամ մին քանի տարի,
Մ՚ատաղուակ, մին մօտս բե՛ր փրկչի արիւնը,
Քաւարանք մեղաց հաւատոյ սիւնը.
Կուլէն՝ Հայր Աստուած է, Մ՚ատաղուակն՝ Սուրբ Հոգին,
Գինին՝ Քրիստոս, որով հոգիք նորոգին.
Այեաղն խմէ և փառք տայ իւր Տէրին,
Ողորմի՛ տայ միշտ իւր հայր տէրտէրին։

Գ. Տ—Ց. Մագսեթեան։

202

Լծ։

Փող եմ տուել՝ դուն չի՛ գալիս չալ էծն [1]),
Խօսացնումեմ էլ, չի՛ խօսում լալ էծն [2])։

Այ հազարաթ, էլ ինձ չի՛ էլաւ մալ էծն,
Իմ գլխիս բերեց մեծ ղալմաղալ էծն.
Աշխա հանդին խիստ լաւ կասեց կալ էծն.
Ինձնից չուզեց կամ ու մալ՝ էծն։
Մ՚արդ էլ փողը կ՚տա՞յ էս թավուր մալի,
Ընկերս նստելայ ճամբումն՝ լալի,
Ինչ անումեմ՝ չե՛մ անում, տուն չի՛ գալի,
Չե՛մ գիտում՝ ինչ է արել խիալ էծն։
Ռուսօտէնց հէնց թարս անկաւ իմ բանըս.

1 և 2) Ամենայն տանց վերջումն կրկնեա՛ ղայտսիկ տողս։

Գիլանոցն նաւթը էր անում ջանըս.
Ասի. ինչ թէ անաէր ձեռաց խիզանըս,
Գլխիս էլաւ պատուհաս մալ էծն։
Ինչ փիսլիկով հասցրեցինք Աղնատուն,
Երիշ արեց, ընաեղ սրախս էլաւ սիւն,
Երեաց Գիրամիէն, ասի, հասանք տուն,
Սամաշ էլաւ, ինձնից ուզեց նալը էծն։
Ինձի չի՛ ունեմ անեղիցն՝ նեաիցն,
Ըսաւ եմ ծեծել, հարցրեցէք փէտիցն,
Ինչ որ արի, ինչ չի կացաւ գետիցն,
Ինձնից ուզեց գէմի-ինան սալ էծն։
Ըսաւ անեցի, լաղզաթ չի տուայ սաղեցը,
Չալ չուխթայով կապել տուի պօզիցը,
Սուր մկրատով՝ որ խուզեցի մազեցը,
Կարմյ կանչեց, արեց ղալմաղալ էծն։
Ասի. զարար կանենք, տանք էլ ղասաբի,
Սաստա եկանք գադ ու ղամի արբաբի,
Մեր աղերքը հասան փողի հիսաբի,
Բուկդ կապենք կանաչ, կարմիր, ալ էծն։
Գիականակով չըւել գեղը բըրթեցինք,
Տարանք՝ դարվազի դրանը մորթեցինք,
Չորս օքմինով անջաղ սրան քերթեցինք,
Կասէս ընէր մէկ դավա ու քեալ էծն։
Օբումը սրան մի ուրիշ տեղ ունէր,
Գեան ինց կենալիս խիստ սիրուն լեղ ունէր,
Քարով՝ կշիռքով հինգ լիտր եղ ունէր,
Իրանու գեօրայ ունէր աչվալ էծն։
Որ մորթեցինք, տոռմը քանդեց հողը,
Օգնողներին բաշխեցի երկու կողը,
Փոշմանեցի, յետ դառայ՝ տուայ փողը,
Խիսար արի, էլ արեց զարար էծն։
Մի քիչ ունէր էլ կաղ ինծին մուրուվվաթ,
Ես չեմ տեսել չալ ինծի պէս բիմուրուվվաթ,
Իշատոնց հասար Աղամի արեց թարիֆաթ,
Գլխիս էլաւ պատուհաս՝ ամալ էծն։

Ողբար Սգաւոր

## 203

Ուլ էիր և տիկ [1]) դարձար.
Տկահան չարչարվեցար.
Ճալվարրի դարիդուսին
Տուինք մշակի ուսին։
Ո՛վ ով սուրբ տկճոր
Լուլէդ բա՛ց մեզ ողորմեա։

Մեսրոպ Թաղիաթեանց.

---

## 204

Առաւօտեան քաղցր և անոյշ հովերըն,
Մերձեալ հընչեն մեղմով Թըփոցդ քովերըն.
Արդ ծածանին աչացըս լըցեալ ծովերըն.
Բացի՛ր, բացի՛ր, իմ կարմիր վարդ աննըման.
Գեղըդ նըման արեգական վառվառման։
Տեսեալ զծաղկունս՝ զամէնն ինձ փուշ վարկանեմ.
Թէեւօք բախեալ՝ զսիրտ իմ քնքուշ հարկանեմ.
Ըզցաւ սըրտիս՝ ահա՛ քեզ յուշ արկանեմ.
Բացի՛ր, բացի՛ր, իմ կարմիր վարդ. և այլն։
Քանի՛ ողբամ՝ նոր ՚ի նորոյ խոցոտիմ.
Ըզփայլուն գեղդ ՚ի միտ բերեալ բոցոտիմ,
Յորդ արտասուօք՝ ցայգ ու ցերեկ թացոտիմ,
Բացի՛ր, բացի՛ր, իմ կարմի՛ր վարդ. և այլն.
Արքայարանն Բիւզանդիոյ մեծ չինի,
Տեղ և բընակ յարմարեալ քեզ յարկ չինի.
Նաւակատեօք՝ յիշատակ քո յա՛ր տօնի.
Բացի՛ր, բացի՛ր, իմ կարմիր վարդ. և այլն։
Արարից քեզ հովանի մի կերպասեայ,
Արծաթակար և ոսկեհուռ մարգարտեայ.
Ականահիւսեալ շուրջանակի երփներփեայ.
Բացի՛ր, բացի՛ր, իմ կարմիր վարդ. և այլն։
Պետք ամենայն՝ հոգեկանք և մարմնականք,
Նշեալ են վասըն քո իբրու լալականք.

---

1) Տկճոր։

Բանաստեղծք և դըպիրք երգոց երգարանք.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Լեզուս քընար՝ սիրտըս ջընար՝ քեզ երգեն.
Թևք իմ մտաւունք՝ որք միշտ ըզլանջս հարկանեն.
Թռչունքըն ամէն՝ քեզ բաղմականք ըսպասեն.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Ջուր ոռոգման՝ քեզ արտասուքս ընծայեմ,
Ամպ հովանի՝ զթև 'ի վերուստ տարածեմ.
Ի սէր սիրոյն՝ սեռըն սիրով վառած եմ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ, և այլն։
Յորդ արտասուօք՝ թևօք բարձեալ սընուցիր.
Ի գիրկս 'ի լանջըս հանգուցեալ պահեցիր.
Շաղով ցօղով՝ յար ոռոգեալ արբուցիր.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Առաւօտըն բանիլ փութայ վաղվաղէ.
Օդն ըզցօղեկ՝ 'ի վերայ քո շաղշաղէ.
Խոնջեցայ յոյժ՝ ճըռչատելով թաղ թաղէ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Բարձրաձայնեալ զօր ամենայն վայվայեմ.
Մագլըվք զերեսս պատառոտեալ քայքայեմ.
Անճարացեալ ըզտերևսըդ փայփայեմ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Գանձ ես սըրտիս՝ 'ի կոկոնի թագուցեալ.
Շաղոտ ցօղոտ տերևներով հանգուցեալ.
Ի տօթոյ և տապոյ լինիմ պակուցեալ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Լալով կոծով և արտասուօք լընանիմ.
Խոր հառաչմամբ և սուր սըգով սընանիմ.
Խելագարաց համանմանեալ դեգերիմ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Ի սար 'ի ձոր շըրջագայեալ վարանիմ.
Միշտ թագնաբար և աստ և անդ դարանիմ.
Անկեալ յերկիր ախով պարան պարանիմ.
Բացիր, բացիր, իմ կարմիր վարդ. և այլն։
Այս զօրն 'ի բուն՝ գիշերն 'ի գլուխ արտասուեմ։
Քուն և հանգիստ ոչ գիտելով սըգւորս եմ.

Զթռչունս երկնից՝ ինձ լալականս աղերսեմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ողբով սրտով և արտասուօք ծովանամ.
Այրիմ կիզիմ և ոչ երբէք հովանամ,
Ես մի միայն՝ գեղով քոյով զովանամ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Եթէ ըղձեղդ երևեսցես՝ երանիմ.
Նորոգ սիրով եռանդնոտեալ ջեռանիմ.
Թէ յամիցիս սակաւ մի ևս՝ մեռանիմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Որս 'ի վերայ իմ առանց քո՝ վատանայ.
Ի բերկրութեանց՝ անձն իմ իսպառ զատանայ.
Եւ ոչ սրտով՝ հոգիս երբէք շատանայ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Առ 'ի վերուստ և 'ի ներքուստ կոչեցից.
Զհաւքերն ամէն՝ ինձ արարից ողբակից.
Գետոց նըման՝ դառն արտասուօք միշտ լացից.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ողբակից կեանքն տարընվորիս դառնացաւ.
Զօրէն ալեաց՝ 'ի վերայ իմ լեռնացաւ.
Անձն իմ արդէն՝ արդ ընդ մեռեալս խառնեցաւ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Երգով քոյով գեղազարդեալ նարօտիմ.
Նոր նոր սիրով բոցակիզեալ կարօտիմ.
Սաստիկ գանիւ՝ 'ի չար լեզուաց քարոտիմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Սիրտըս փութայ՝ 'ի սուգ ու՝ 'ի լաց մըտանէ.
Եւ ժամ առ ժամ՝ յոյսն յինքենէ հատանէ։
Հայցէ ըղձեղ՝ և ոչ երբէք գըտանէ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Գարունն էանց՝ ես քեզ կարօտ մընացի.
Այրիմ տապիմ՝ որպէս 'ի հուր հընոցի.
Քեզ շատ օրեր՝ ես 'ի ձեռաց գընացի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Արտասուագետ լացահեղեղ կառաչմամբ,
Բարձրակական մեծահեծեծ հառաչմամբ.

Ընկեալ յերկիր մինչ պաղատիմ աղաչմամբ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Զերգըս սրտոյ՝ սիրտըդ լսելիս կարկառէ,
Ներանս ունեալ՝ զօր ամենայն բարբառէ,
Մերթ ըղձոգիս՝ իբրու հըրով վառվառէ,
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ոմանք ոսկւոյ՝ ոմանք պատուոյ՝ անդադար,
Աշխէրս իւրեանց տան նոցա՝ յոր քըղձան յար.
Իսկ ես միայն՝ քում թերթիցդ եմ սիրահար.
Բացի՛ր. բացի՛ր, և այլն։
Իցէ՜ որդեօք՝ եթէ տեսից փայլեցեալ
Կարմիր գունով անոյշ հոտով այլեցեալ
Նաև գերիս՝ գեղով քոյով զմայլեցեալ.
Բացի՛ր. բացի՛ր, և այլն։
Գեղըդ նըման արեգական վառվառի.
Ի մէջ ծաղկանց՝ զէտ մարգարիտ շարշարի.
Լոյս ծագեա ինձ՝ նըստելոյս ներ խաւարի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Արդ կիսամեռ անկեալ դըրնիմ անբարբառ.
Իւ եմ աչամ ես մերձ 'ի մահ հոգեվար.
Զիս բժըշկել ոչ ոք կարէ եմ անճար.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ես ու վախով զօրս անցուցի ներ արգոյ,
Կեանք իմ լըքաւ՝ անց. և գընաց զէտ փըքոյ,
Ընկայ աչամ ես 'ի փառաց և շըքոյ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ճ՛անապարհս է խիստ մանէման ոլորուն.
Յաքուստ փըշուստ յոյժ մացառուստ մոլորուն.
Վախիմ մընամ կարօտ դեղոյդ բոլորուն.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ծովլ սիրոյ քոյ՝ եղերօք ոչ անձկանայ.
Միշտ յարաձեւ ալեօք 'ի վեր բարձրանայ.
Ի ծըփելոյ՝ զիս ոչ երբէք մոռանայ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Յայս աչքերուս՝ սաստիկ հեղեղք իջանեն.
Ծովուց գետուց՝ նմանելոյ 'ի ջանեն.

Յորդին հոսին՝ և ո՛չ երբէք զիջանեն.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ո՛չ մի կարէ զիս ըսփոփել բընաւին.
Մարգագետինք և բիւր պարտէզք դեր քոյին.
Ես քո գերին՝ դու իմ սրտին լոյս բաժին.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ուր ուրեք իսկ՝ որ չունիցիս դու՛ բնակ.
Թէ պարտէզ և Թէ այգի է աւերակ.
Լո՛յս ես գարնան՝ և աշխարհի հասարակ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Քո ալաքներդ՝ ագռաւուց փուշ երեւի.
Բայց քո գերւոյս՝ մահիճ քընքուշ տեսանի.
Թարց որոյ ինձ՝ աշխարհս է բանտ ցաւալի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Թաւխպ և մրշուշ՝ շրջապատեալ ժողովին.
Սարերն ամէն՝ չանկակալեալ լընանին.
Քեզ ցօղ ու շաղ այգուն այգուն պատրաստին.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ընդյշ անդյշ՝ պաղուկ ջրերն աղբերաց.
Թեւօք բարձեալ՝ բերեմ առ քեզ ՚ի լերանց.
Յա[illegible]եմ ցօղեմ՝ քոյդ Թրփերուդ եզերաց.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Գիշերն էանց՝ զիւր շամանդաղն եզերեաց.
Եւ արուսեակն ճառագայթեալ յառաջեաց.
Արտասուքս իմ արդ ծովացեալ զիս ծածկեաց.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ի կարօտոյ՝ կեանք իմ այսօր աւարի.
Սրգով սիրտ իմ լարի ՚ի խոր խաւարի.
Փափագանօք և երկիւղիւ շիւարի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Փչեր փըշուր, մանրիկ Թերթերդ ՚ի տափի։
Տեսանելով անձն իմ ՚ի խելաց Թափի։
Կարօտով քով մաշի և միշտ տապտապի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Հաւքերն ամէն եղանակօք երկնային.
Երամ երամ գան ճախրելով ՚ի յայգին.

Զիս ըզմեռեալս ուշաբերեալ յարուցին.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Հոգեվարի գերւոյդ փութա՛ ժամանեա.
Թևերթիւք քոյին զիս պարփակեալ ամփոփեա.
Մէկիկ մէկիկ սրտիս ցաւերն փարատեա.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Շարժիլ մերձիլ առ քեզ կամիմ՝ ոչ կարեմ.
Ուշագնացեալ յուժոյ Թափեալ՝ անճար եմ.
Յայգ ու ցերեկ՝ 'ի լալոյ ոչ դադարեմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Աչացս գետերն արդ ծովացեալ ծաւալի.
Առ որ անկեալ անձն իմ Թաւալ Թաւալի.
Ո՛վ բերկրեցո՛ զայս քո գերիս ցաւալի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ամպերն ամէն՝ 'ի ծովերուց դարձեր են.
Յօղ ու անձրև՝ քեզ համար շատ բարձեր են.
Մարիչ ինքեանց՝ զհովերն հեզիկ վարձեր են.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Գարունն էհաս ծաղկունքն ամէն երևին.
Բոլոր աշխարհս երփնազարդեալ տերևին.
Լինիմ գերի քո ամէն մէկ տերևին.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Կոկոնքներդ է՝ փունջ մարգարտի և ական.
Ծորանահոս՝ անուշահոտ պալասան.
Ապաքինիչ հոգւոյս վիրացն ամենայն.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Աղբիւրք և գետք յորդեալ յաչացս արդ յարեան.
Շրջապատեալ ընկըղմեցին զիս յարեան.
Զօրութիւնք իմ պակասեցան և կորեան.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ի բանտ սիրոյ քոյ մատնեցայ գերենման.
Յորում տապիմ լալով մինչև 'ի վախճան.
Տևել տանիլ ոչ բերէ կար յաւիտեան.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Բիւրաբեկբեկ գեղգեղանօք ձայն բարձեալ.
Աղաղակեմ յորդ արտասուօք ծովացեալ.

Լուսաւորեմ զայս իմ սրտիկս մըթացեալ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ծիծաղելոյ և բերկրութեանց շարժեցայ.
Կամ այն 'ի սուգ և յարտասուս շարժեցայ.
Լալեաց բանից միայն և եթ վարժեցայ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Մինչև ցըմահ ոչ ողջանայ խոցերըս.
Ո՛չ շիջանի սըգաբորբոք բոցերըս.
Դու ժամ առ ժամ տաւելուս լացերըս.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Սև օրեր ինձ՝ այս քո գերւոյս վաղվաղեն.
Օ՛խոցեալ սըրտիկս՝ զմիտս և զհոգիս քաղքաղեն.
Աչացս ամպերն՝ արեան ցօղեր շաղշաղեն.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Դու ծովային անդիւրագիւտ մարգարիտ.
Անաղտ ամբիծ լուսափայլուն և վըճիտ.
Մի մոռանար զայս քո գերիս լալամիտ։
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ի գահոյս քոյ արքայական նոր խըննկեալ.
Օ՛այս խղճալի քո սիրահարս առ ընկալ.
Ի գուճս անկեալ աղաչանօք կամ ծընգեալ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Նախագահին 'ի յիս լալոնք հեծութեանց.
Քան ըղձհրճուանս և քան զփառս մեծութեանց.
Դու անկելոյ սըրտիս նեցուկ յեցութեանց.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Տասանորդեալ ըղձիւքս ոգեմ համառօտ.
Կական բարձեալ՝ դէմ քեզ ամէն առաւօտ.
Ողբամ սըգամ՝ դարձեալ մընամ այնց կարօտ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Գիշերն արդէն հալածական լեալ վանի.
Ցօղուտ շաղուտ քաղցր առաւօտըն բանի.
Խերթերուդ կոկոնքդ թերեբաց արդ թանի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Հըրով սիրոյդ՝ տակին բոլոր տապակիմ.
Իբր եղջերու՝ խոր ծարաւով պապակիմ.

Մայիսն եհաս՝ բացման քոյին փափագիմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Երկարեցաւ սրտոյ օրերըս լալագին.
Զունիմ հանգիստ՝ ցայգ ու ցերեկ բընաւին.
Մերձի ամառն՝ և աշունք իւր տօթագին.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Երկին 'ի վեր՝ երկիր 'ի վայր հայեցայ.
Դիմել առ քեզ՝ յորդ արտասուօք համեցայ.
Ահա անկեալ՝ ցաւօք վըշտօք մահեցայ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Անտակ ծովերն՝ ինձ արտասուս. ոչ բաւէ.
Շիջուցանել՝ զայս իմ բոցերս ոչ հաւէ.
Այդքան յամիլդ երկարապէս՝ ինձ ցաւ է.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Անձն իմ 'ի ցաւս և հառաչանս հարհարի.
Իբրև բարւոյ՝ ըղձիրկս ածեալ յարյարի.
Տարին ինձ դար՝ ժամըն տարի արարի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Արփիափայլ գեղ վառիվառ անընման.
Փառք և պարծանք՝ իսկ և պըսակ դու գարնան.
Հըրով սիրոյդ՝ այրիմ գերիս լալական.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Տառապանօք՝ սիրով քոյին դեգերիմ.
Ի սուգ 'ի լաց՝ կալեալ կապեալ ես գերիմ.
Հալիմ մաշիմ՝ և բիւր ցաւօք երերիմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ի սէր քո սուրբ՝ ես հըրացեալ բորբոքիմ,
Սասն ոչ կանուխ բորբոքելոյս մորմոքիմ.
Ես գեղով քո՝ 'ի հնութենէ նորոգիմ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Երդնում 'ի գլուխ և յարև քո տիրական.
Ոչ ծիծաղիլ և ոչ բերկրիլ յաւիտեան,
Մինչև տեսից ըզքեզ բացուած 'ի լըրման։
Բացի՛ր, բացի՛ր, և այլն։
Ըզքեզ խորշակ՝ զիս կարօտ քո չարչարէ.
Զօրէն ծովուց՝ յայս կոյս յայն կոյս հարհարէ.

Ի սար 'ի ձոր՝ հողմավարեալ տատրակէ:
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Անոյշ անոյշ՝ անմահութեան հոտք հընչէ.
Ի յեզերաց մահու 'ի կեանս զիս կոչէ.
Նոր զօրութիւն 'ի հոգիս իմ ներփըչէ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Սէրգ ըղձերս իմ՝ սիրով ընդ սէրգ ոլորէ.
Պարաբարձեալ՝ առ քեզ միայն բոլորէ.
Ըզփափագ քո՝ խաղաղ 'ի յիս ջօլորէ,
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Ըզբոց սրտիս՝ Ովկիանոս ոչ մարէ.
Տալ զովութիւն տապոյ սորին՝ ոչ կարէ.
Իւրաքանչիւր ժամ գիշերոյս՝ ինձ դար է.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Յար հոլովմանց՝ պարուց բանից յօդուածոց.
Փափագեցայ ներհիւսելոց մանուածոց.
Տեղի տուեալ՝ ձըմեռն էանց յօծելոց.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Թշնամին քո՝ ընդոստնեցաւ 'ի գանի.
Զօրէն խըռուոյ՝ 'ի խիստ հողմոց տար վանի.
Պաղատելով մատչիմ 'ի նոյն ոտ բանի.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Ես մեռելոցն եմ 'ի հաշուի՝ հարազատ.
Գերեալ կապեալ՝ 'ի մահուանէ անազատ.
Ծաղկանց արքայ՝ գարնան պարծանք՝ պայազատ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Գարնան արև և շողաբեր առաւօտ.
Խաւարացիր հով զովարար հետազօտ.
Տապ 'ի խորշակն՝ եղեն արդէն մահամօտ.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Փըշոտ անտառքն՝ 'ի դիմաց քոց կորացան.
Ընկլան սուզան՝ արմատախիլ չորացան.
Երեսք դաշտաց՝ այլազանեալ նորացան.
Բացի՛ր, բացի՛ր, և այլն:
Ողբակենցաղս և լալակոծս բազմամեայ.
Սըգաւորաց լըրմանն եղէ առարկայ.

Եթէ յամիս՝ բողոք կանչում առ արքայ.
Բացիր, բացիր. և այլն:
Որդն և ուտիչ՝ պակասեցան տեսակաւ.
Փոքունք մանունք և մեծամեծք աւագաւ.
Յար պաղատիմ աղաղակաւ նըւագաւ.
Բացիր,- բացիր. և այլն:
Եթէ չէցեն քեզ փափագողք՝ նազելի.
Անասունք են 'ի յանտառի աշխարհի.
Զքեզ ծանօղաց՝ ցո՛յց ըղձէմ քո՝ փարելի,
Բացիր, բացիր. և այլն:
Լուսափայլուն մարգարտատիպ սուրբ շաղերս.
Լաց գիշերոյս և լաց աւուրս քեզ աղերս.
Ընդ այնց ընկա՛լ հաճոյապէս և զտաղերս.
Բացիր, բացիր. և այլն:

Գէորգ վարդապետ Ղափանցի:

---

205

Արտուտիկն գընէր վեղար
Զերդ աբեղայ աղօթարար:
Յանձըն հագէր կարմիր կապայ
Եւ 'ի ներքուստ դեղին աստառ:

Ձագուկն 'ի բունկին
Ձայնէր քաղցրագին:
Ագռաւն ոտիւք քորէր զգետին
Կռռայր ձայնիւ զվզն իւր դարձին:

Կարդան երգհաւք քաղցրաձայն
Լընուն զանտառն ամենայն.
Իսկ Թըխկատարն 'ի գագաթան
Ունի վեղար սևագունեան:

Իսկ Լըսեռնիկն իբր խելագար
Տայ զվիզն 'ի շուրջ ինքն անդադար:
Սալամըն գայր իբրև զկաքաւ
Պէսպէս պուտիւք զարդարանաւ:

Յոպոպիկն էր զարդարեալ
Գլուխն ունէր թագ ու կատար։

Ստեփաննոս Լեհաստանցւոյ (պօլօնիացւոյ, պօլեակներէ երկրէց) ձեռագրէ մէջն է գտած։ Բազմավէպ, 1852 թ. ե. 95։

---

## 206

### Տաղ ուրախութեան

### Ասացեալ ի Նաղաշէ [1].

Նստէք 'ի մէջլիս,
Հարբք և եղբարք
Եւ մեծ պարոնայք։
Գոհանամք զՏեառնէ,
Որ ունիմք սեղան.
Եւ դուք չէ՛ն կենայք։
Խնդրեմք որ այսօր
Քան զամենայն օր
Լա՛տ ուրախանայք։
Թասերըն չինի
Կարմըրիկ գինի
Ձեզ անո՛յշ լինի։
Նտա՛ [2]) Կարապետ,
Տանուտէրին
Գընա՛ իմա՛ց տուր։
Կարասներըն բա՛ց,
Ե՛կ՝ խաբար բեր մեզ,
Եւ ուրախացո՛ւր։
Միւրահիքըն տա՛ր,
Լուշէքըն լի՛ց, բե՛ր,
Թա՛ս տուր, խըմեցո՛ւր։
Պալապալո՛ւխ է,
Քէֆերս է հասեալ
Այսօր խի՛ստ աղէկ։
Սեղանըս լըցեալ
Մրգեր և ծաղիկ
Ձկնի վե՛ր քաղէք։
Նտա՛ հո՛վ կերէք,
Մըրտո՛վ խըմեցէք,
Ուրա՛խ ծիծաղէք։
Թասերըն չինի, և այլն։
Նպա ո՛վ սըրտի
Քէն ունի՝ հանէ՛,
Հաշտութեամբ մընայ։
Լաւ մարդըն այն է,
Որպէս եկեալ է,

---

1) Հեղինակ երգոյս կարծի Մկրտիչ եպիսկոպոս Նաղաշեցի՝ Առաջնորդ Ամդայ՝ ձեռնադրեալ 'ի Կոստանդեայ Ե. Կաթողիկոսէ, յամի Տեառն 1430, որ և 'ի պատճառս հմուտ գոլոյն նկարչութեան արուեստի՝ Նաղաշ անուանէր յայլազգեաց։ Կան սորա և այլ երգք և բանք հատակոտորք. յորոց մի է և Ողբն յօրինեալ չափաւ 'ի վերայ կոտորածի մարդամահուն եղելոյ 'ի Միջագետս յամին 1469։

2) Նտա՛ թուի կրճատեալ 'ի բառիցս ա՛յ տղայ։

Ինչ այնպէս գընայ։
Թասերն չինի, և այլն։
Շոր մազէն [3]) համեղ,
Գինին է զօրեղ.
Դուք անո՛յշ արէ՛ք։
Մինակ մի՛ ուտէք,
Նա՛ւ բաժանեցէք.
Հաւասար շարէք։
Տաղե՛րըն կանչէ՛ք,
Սազե՛րըն ածէք.
Ծա՛փ տուէք, պարէ՛ք։
Ի՞ր չէք խնդալի.

Այսօր ունինք մեք,
Նաւ գինի սա՛ռըն։
Պապլու խորովլու,
Հաւու քապապներ
Ու խաշլա՛մայ գառըն։
Իս մէջլիսումըն
Տըխուր և դառըն
Մարդ չ՞ըլինի խառըն։
Թասերըն շարած
Ո՛ղջ ոսկեջըրած,
Խըմօղն է օրհնած։

Ճռաքաղ, 1860—1861 Թ. Ե. 216.

---

207

Այսօր տօնեմք, ձեզ աւետիս.
Ահա՛ ցընծամք յայսըմ տօնիս.
Բարո՛վ տեսայ գաւաթն յափիս.
Աւետիս տամ Հայոց ազգիս։
Գաւաթն որ եկ՝ մեծ ապխորն յիս՝
Գինիս անոյշ՝ երբ ճաշակես՝
Դու այլ խըմէ ըզգաւաթնիս։ Աւետիս տամ և այլն։
Ես քեզ կարաս բանամ գերիս,
Եւ քեզ բերեմ անոյշ գինիս,
Օ՛ի դու խըմես և կարմըրիս։ Աւետ. և այլն։
Երէց, տանուտէր, զոր կամիս,
Եպիսկոպոս, աբեղանիս,
Ընդ ձեզ խըմենք եօթն ութ ամիս. Աւետ. և այլն։
Թէ դու լըսես իմ խըրատիս,
Թո՛ղ դու հազար տարի ապրիս.
Ժամ ժամ խմէ հանգչի հոգիս։ Աւետ. և այլն։

---

3) Գուցէ՝ չոր մազէն. զի մէզէ՝ 'ի Պարսիկ լեզուի նշանակէ չոր խորտիկ, տաճկերէն չէրէզ։

Ինձ մեծ ամեն տուր՝ թէ ունիս.
Ի քեզ նայիմք երկցանիս.
Լից տուր, եղբայր, ինչ կունայիս. Ս.ւետ. և այլն։
Խնդամք ամէն շուրջ կարասիս,
Խորվենք հող տակ ոչխարի միս.
Ծաղկունք բերենք մէջ ժողովիս։ Ս.ւետ. և այլն։
Կամկար կերէք զամէն բարիս։
Կաւաթ լցէք շուրջ սեղանիս։
Հիւրեր բազում և գլըացնիս։ Ս.ւետ. և այլն։
Ձայն գայ պաշտաման 'ի ձեր մէճլիս.
Ձեզ շատ էրէց գայ յայս տարիս։
Ղարիպ շահրիս զորս ընդունիս։ Ս.ւետ. և այլն։
Ճ'երմակ գինի լաւ դեղ սրտիս,
Ճ'աշակն անոյշ, համն առ ու տես.
Մեք այլ այտից խըմենք այտից։ Ս.ւետ. և այլն։
Յարի 'ի վեր հաշտեաց ընդ իս.
Յարի խըմէ համբուրէ զիս.
Նոյնպէս ամէն ժողովրդիս։ Ս.ւետ. և այլն։
Շուտով խըմէ որ դու օրհնիս.
Շատ մի խըմեր, քուն չըլինիս.
Որ դու գինւոյն պահակ նըստիս։ Ս.ւետ. և այլն։
Չորս մեծ գաւաթ տուր՝ թէ ունիս
Չափով մի' տար քո ծառայիս։
Պըղտոր մի' տար քընքուշ լերդիս։ Ս.ւետ. և այլն։
Ջուր մի' խառներ, որ չըյտ հարբիս.
Ջարդես քարղէն և գըլորիս.
Ռամկաց շատ տուր յայսմ ատենիս։ Ս.ւետ. և այլն։
Սիրով, խըմէ, վեց թաս 'ի յիս.
Սէրն Աստուծոյ կամ սուրբ Սարգիս.
Վեց տաս, ու վեց հարիւր շահիս։ Ս.ւետ. և այլն։
Տանձ և խնձոր, նուռն իմ առջիս.
Տասըն դեռ կան 'ի գըրպանիս.
Րամեալ գինի բերեմ հարկիս։ Ս.ւետ. և այլն։
Ցընծման արժան արար Տէր զիս.
Ցուօք մաշիմ յայսմ աշխարհիս։
Իւսբն պըսակ տուր կարօտիս։ Ս.ւետ. և այլն։

Փըրկեա՛ խընդրեմ՝ զաղօթելիս։
Տ.ո Մարտիրոս Խալըաաարցիս։ Նուեա. և այլն։

Մարտիրոս Խարահիսարցի։ Ճռաքաղ, 1859 Թ. Է. 45—46.

---

## 208

Երգ բաքոսի կամ բարեկենդանի։
Ակոռիի խորհուրդը։

Ակոռիքն մեծ կարասին
Բոլորակքն են բազմեր.
Նուագ իշխանք, մեծ պարոնայք
Ժողովք են հոն կազմեր։
Այո՛, այո՛ ժողովք են հոն կազմեր։
Սաստիկ է վէճն. մեծ է խնդիրն
Զոր հոնտեղ կը խորհին,
Թէ ինչ կերպով դարման մ'ընեն
Հիւանդ մեր աշխարհին.
Այո՛, այո՛, Հիւանդ մեր աշխարհին։
Մէկն աս կ'ըսէ, մէկն ան կ'ըսէ
Կը ծագի լոյսն առաւուն.
«Ինձ լսեցէք, պէո՛րք, կը կանչէ
Նանիին պետն արթուն.
Այո՛, այո՛, Նանիին պետն արթուն։
«Թող թագն առնու, կ'ըսէ, Բաքոս
Ու փառօք ապրի շատ.
Իսկ ցընծութիւնն ըլլայ դըշխոյ
Ու գահն ալ յԱրտաշատ.
Այո՛, այո՛, Ու գահ նաւ յԱրտաշատ։
Այսպէս մեզի նոր զուարթութեան
Արեւներ կը ծագին.
Առողջ կ'ըլլայ մեր ժամանակն
Ու նոր մեր աշխարհ հին
Այո՛, այո՛, Ու նոր մեր աշխարհ հին։

Հ. Եփրեմ Վ. Զաքըճեան, Կ. Պոլսեցի, Վիեննայի Մխիթարեան ուխտէն։ Եւրոպա, 1858 Թ. № 2. եր. 13—14։

209

Բարեկենդան։

Սեղանի երգ։

Զե՜ն օրերս մեզ՝ որ խնդութեան
  Օն եկէք մեք միաբան,
Երբ արդէն եմք բազմած սեղան
  Երգենք զարնենք նուագարան.
Կազմենք երգոց ժողով սիրուն
  Նուագենք գինիս այս պաղպաջուն,
Տես սիրուն սա փրփուր
  Ընկեր դուն ալ լեցուր։
Առ, բարձրացուր գինւոյդ բաժակ,
  Ահա իմս ալ բարեկամ.
Զարնենք բաժակ տանք երկար կեանք,
  Սեղանակցացս հազար ամ։
Զուարթութիւն սա կը բերէ,
  Գինիս տըխրած ոգիներէ.
Սրտիկ կ'ընէ զուարթ,
  Ողջ ընկեր խմէ արդ։
Տեսա՞ր ուրեմն, խնտումերես
  Թախծութենէդ եղար արդ.
Գինիս կ'ելլէ ուր ասպարէզ,
  Խրախութեանց կ'ըլլայ զարդ։
Հապա մանուկ լեցուր նորէն,
  Սեղանակցացըս համօրէն.
Արդ վայել է խնդալ,
  Ընկեր պարպէ մէյ մ'ալ։

Հ. Ներսէս Վ. Շիւքիւրեան կ. Պոլսեցի, Վիեննայի Մխիթարեան ուխտէն։ Եւրոպա, 1859 Թ. № 4, Ե, 29.

210

Երգ 'ի վերայ

«Սահման անսահման խորոց հաստչին անօրէնութեան»,

Սիրով Սուրբ Հոգւոյն կապակցեալ Նոր Նախչեւանցիք.
Արտիւք եռանդուն միաբան և բարեկեցիք
Ազնիւ իշխանք անուամբք արդեամբք և յատկութեամբ.
Ատենակալք իրաւաբանք և անաչառք
Վաճառականք և ոսկականք ծերք և տղայք.
Հարք և եղբարք քորք իմ և մարք դուք հաւասարք:

Ես եմ Թարգմանիչ, պատգամաց և Նոր աւետեաց.
Բարեկենդանին որ զձեզ յայտնել ինձ հրամայեաց.
Ասէ հասի ահա առ ձեզ ընդ սուրհանդակի.
Բայց չեշտակի դառնալ խորհիմ ուստի եկի.
Ըստ օրինակի կոչեալ հոգւոց մարդկան ազգի.
Որ փափագի Թռչիլ յերկինս յանկարծակի:

Րոպէք հոսանուտք տուան ձեզ առ գործոց բարեաց.
Լինել քաջ հմուտ մթերելոց զպտուղս արդեանց:
Բայց ձօնեցան ձեզ սոյն աւուրք խորհրդական.
Նշան ծննդեան Նորոյ մանկան բարեկենդան.
Զորմէ մարդկան խորհիլ պատկան է և արժան.
Զի և մահուան բակլախորան է յոյժ նման.

Օրէն է ուրեմն նոյն խորհրդով սկիզբն առնել.
Ընձնիւր ումեմն զտուն տեղին սրբել մաքրել.
Զազգականս կոչել պարտ է 'ի բնակարանս:
Զբարեկամս հրաւիրել 'ի խրախճանս.
Զօտարականս նաև զաղքատս 'ի ձեր սեղանս.
Զի աւուրք իմ լեցին Տեառն հաճոյականս.

Բարի է եահնեին զկնի սուփին փոքր ինչ ուտել.
Պալեան էքշիլին և բորանին անուշ անել.
Կեր խաշլամայն, քիֆտէ, ղապլուն յետոյ դօլման.
Քապապ, պիւրեան, սազ բաթ դոռել ընդ սալաթան.
Խնջէ մանջան փիլաւ խորտիկ ֆիլան ֆալան.
Թողէք խթման պալը չորպայն և տապակայն.

Էհաս ժամանակ բանալ զփեչատ պօւթիլկայից,
Առնուլ զճաշակ 'ի յըմպելեաց զանազանից,
Նախ զտօնցկին սակաւ ըմպել և մոլտովցկին,
Զքպոցկին, վիմոոցկին և ալընցկին,
Զվենկեոցկին զշամպանցկին և զանդուրցկին,
Զքրմցկին և մին մին թաս գումարտարցկին.
Խոնարհ պաշտօնեայ, խորհիմ ասէն նոր խորհուրդ տալ.
Անկէ 'ի ներկայս զսազերուն նիզամն տալ.
Զթամպուռն ածէք՝ զքեմանէն և զթէֆն հարէք
Սանթուրն հնչէք և զփիլեասրն փչեցէք.
Լաւ պարեցէք և դէմ առ դէմ կաքաւեցէք.
Տաղ երգեցէք և ոստոստմամբ ծափս հարէք.
Ծառայ եմ տէրանցդ՝ բաւական է այսքան խրախճան.
Պատշաճ է մեծարանցդ՝ սեղանոյն ձեր տալ զվախճան.
Ուտիքն էանց սրբիչ մաքրիչ մեծ պաքն էհաս.
Ահա Աստուած զԱդամ ներքուստ արտաքս վարեաց.
Որ և ելաց վասն այն մահուան իւրոյ փրկեաց.
Լացցուք և մեք՝ զի Յարութեանս հասցուք փառաց։

---

211

Առիւծ և էշ։

(Թիֆլիզեցւոց լեզուաւ)։

Առիւծն աքլորից խիստ շատ կու վախի,
Նրա ձենէմէն՝ չուստ կու սըլքըվի;
Էշն էլ խօմ գիտիք՝ ինչ խասեաթ ունի
Ու ինչպէս ախմախ՝ աղքատ է խելքի։
Դէ անկա՞ջ դրէք՝ էս կարճ առակի
Ոչ ո՞վ խեղճ իշին՝ մասխարայ չանի։
Մէկ օր առիւծը խիստ շատ սովեցաւ՝
Շատ դէս դէն ընկաւ՝ շատ չալիշ էկաւ,
Անօթի փորով՝ մէկ մեծ գեղ մըտաւ
Մէկ չաղ շուն ճանկեց՝ սըրբել սկսաւ,
Խառաստ աքլորը՝ կտրին վեր ելաւ

Կիգլիկօ կանչեց՝ ճաշն հարամ արաւ.
Առիւծն աքլարի՝ երբ ձէնը լսեց
Պոչը հաւաքեց՝ գեղէն դուս փախեց,
Գիժ էշը տեսաւ՝ անկաջնին սրեց
Իր անուշ ձէնով՝ տաաթին զռեց,
Առիւծի ետքէն՝ երիշով վազեց։
Գօչչաղ տղի պէս՝ վախցնել ուզեց։
Առիւծն որ աքլարն հեռացած տեսեց
Ձիքականջ իշէն՝ իր թաթով զարկեց,
Վեր կոխեց ջարդեց, պատանը ձեւեց
Այ անխելք հայվան անկաջքէն առեց,
Զալում առիւծը քեզմէն չի վախեց,
Աքլարի ձենէն զլուեց ու փախեց։

—

Եթէ խելք ունիս, դէ չուստ իմացիր
Ով է առիւծը՝ ո՞վ իշի ընկեր։

Նիկողօս (Նիկողայոս) Տէր-Ղմուամեանցի, Յարութիւն վ. Ալամդարեանի աշակերտի, հեղինակութիւն կը համարուի; ոմանք էլ Յարութիւն վ. կը կարծեն

# ԳԼՈՒԽ Ը։

---

## ՍԻՐՈՅ ԵՐԳԵՐ։

### 212

### Եղբայր եմք մեք։

Ի բեւր ձայնից բնութեան շըքեղ
Ո՛չ երգք Թռչին սիրողաբար,
Ա՛ստունք կուսին ամենագեղ
Ո՛չ որ զարնեն փափուկ քընար,
Չունին ձայն այնքան մի սիրուն
Քան զանձկալի եղբայր անուն։
Տուր ինձ քու ձեռքդ, եղբայր եմք մեք,
Որ մրրկաւ էինք զատուած,
Բաղդին ամեն ոխ չարանենգ
Ի մի Համբոյր ցրուին ի բաց։
Ընդ աստեղօք ինչ կայ սիրուն,
Քան զանձկալի եղբայր անուն։
Երբ ալեոր Մայր Հայաստան
Տեսնէ զորդիս իւր քովէ քով,
Արտին խորունկ վէրքըն դաժան
Քաղցր արտասուաց բուժին ցօղով։
Ընդ աստեղօք ինչ կայ սիրուն,
Քան զանձկալի եղբայր անուն։
Մէկտեղ լացինք մենք ի Հընում...
Եկէք դարձեալ յար անբաժան
Խառնենք զարտօսր և զխնտում,
Որ բազմածնունդ ըլլայ մեր ջան։
Ընդ աստեղօք ինչ կայ սիրուն,
Քան զանձկալի եղբայր անուն։

Մ՚էկտեղ հոգնինք, մէկտեղ ցանենք,
Մ՚էկտեղ Թափին մեր քրտինքներ,
Ըղձունձ բարեաց յերկինս հանենք,
Որ կեանք առնուն Հայոց դաշտեր։
Ընդ աստեղօք ի՞նչ կայ սիրուն,
Քան զանձկալի եղբայր անուն։

Մ. Փէշիքթաշլեան։

## 213

Սիրոյ եղբայր, ինձ մտիկ տո՛ւր, խօսքիս դրութիւնն է սէր,
Ասութեանս լրումն է սէր, ասա եղած կանոնն է սէր.
Նախատանացն յօժարամիտ՝ մահին անձնատուր եղև,
Աւետարանին նայելով, իմ փրկչիս անունն է սէր։
Սէրն է գլուխ պատուիրանին և օրինաց լրումն,
Մարգարէից և նախահարց ասութեանց կատարումն,
Համայնից հաստատութիւնն, անկեալ բնութեան նորումն,
Տասնաբանեայ սուրբ խրատուց բովանդակութիւնն է սէր։
Սիրոյ մէջն կեանք եմք տեսնում, իսկ 'ի մեղս-վիշտ ու մահ.
Սէրն օտարաց խնամարկու և ընկերաց անխնայ —
Ներող, գթած, երկայնամիտ, օգտամատոյց, բազմաշահ,
Այն վերստին ծնանիլն՝ սուրբ նորոգութիւնն է սէր։
Սէրն հանդարտ բարենախանձ՝ ամենայնի գոհ վիճակ
Անչարաչար կեանք կ'վարէ ազատօրէն՝ անփափագ.
Սիրով նայեա՛ քոյ Շնորհալիդ, ո՛վ Դու սիրոյ հեղինակ,
Վասն զի Ամենազօրիդ մեծ այցելութիւնն է սէր։

Աշըղ Շիրին։

## 214

(Թարգմանութիւն Լերմոնտովից)

Վկա՛յ է աստղը կէս գիշերային,
Վկա՛յ են ելքն ու մուտքն արևու,
Որ ոչ մի իշխան Պարսից աշխարհին

Չէ տուել համբոյր այդպէս աչքերու;
Տաք օրերի մէջ, ոչ մի ժամանակ
Հով շատրուանը Շահի հարէմում
Չէ զովացրել այդպիսի հասակ,
Մարգարտանման ցօղովն իւր փայլուն;
Դեռ ոչ միանգամ երկրային՝ ձեռներ
Չեն հիւսել այդպէս գեղեցիկ մազեր։
Քանի որ դրախտը աշխարհից գնաց,
Երդվումեմ որ դեռ, ոչ մի ժամանակ,
Այդպէս գեղեցիկ մի կոյս չէ ծաղկած
Հարաւոյ կողմի արեգական տակ։

Մ. Սադաթեան։

---

## 215

### Գնչի երգումը։

(Թարգմանութիւն ռուսերէնից)

Երդվումեմ ահա ստեղծագործութեան
Առաջին օրով,
Երդվումեմ ահա նորա կատարման
Եւ վերջին օրով,
Նշաւակութեամբ մեղապարտութեան
Տալիս եմ երդում,
Եւ յաղթանակը սուրբ ճշմարտութեան
Վկայ եմ բերում.
Երդվումեմ անկման դառն կսկիծով
Եւ յաղթանակի կարճատև ցնորքով,
Քո հետ տեսութեամբ երդվումեմ նոյնպէս,
Եւ հրաժեշտով, որ գալոց է մեզ.
Ողջ հոգիների ժողովարանով
Եւ իմ հպատակ միաբանների
Ճակատագրով,
Անաչառ և սուրբ հրեշտակների,
Այն է, իմ արթուն թշնամիների
Սուր սուսերներով.
Երկինք ու դժոխք վկայ են խօսքիս,

Երկրի սրբութեամբ երդում եմ ուտում.
Երդվում եմ և քո վերջին հայեացքով,
Եւ քո առաջին ջերմ արտասուքով.
Ընչառութեամբը անչար բերանիդ,
Եւ մետաքսեղէն քո գանգուրներով.
Երդվում եմ երկնի երանութենով,
Երդվում եմ նոյնպէս դառն տանջանքով,
Վերջապէս և իմ բորբոքուած սիրով.
Հրաժարուեցայ ես հին վրէժից,
Հրաժարուեցայ չար խորհուրդներից.
Այլ այսուհետև թոյնը նենգութեան
Ոչ ոքի միտքը չունի շփոթել,
Այլ այսուհետև ես միանգամայն
Կամիմ երկնի հետ հաշտութիւն կապել,
Կամիմ ես սիրել, աղօթել կամիմ,
Առաքինութեան հաւատալ կամիմ.
Եւ զղջում տալով ես արտասուաթոր,
Ճ՚ակատից քեզ արժանաւոր
Երկնային հրոյ հետքը կը սրբեմ.
Եւ թող առանց իմ աշխարհ համօրէն
Ծաղկի իւր խաղաղ անգիտութեան մէջ։
Ահ, հաւատա ինձ, ես միայն ցայսօր
Քեզ ճանաչեցի, գնահատեցի։
Եւ քեզ ընտրելով սրբուհի ինձ նոր,
Իշխանութիւնս ոտքիդ տակ դրի։
Քեզանից պարգև սէրդ եմ սպասում,
Նորա րոպէին կը տամ յաւիտեան։
Հաւատա, որ ես միշտ եմ հաստատուն
Նոյնպէս սիրոյ մէջ, ինչպէս չարութեան։
Ես, որ եթերքի ազատ որդին եմ,
Քեզ աստղերից վեր կը թռուցանեմ,
Այն տեղ աշխարհի կը լ՚նիս թագուհին
Եւ նախամեծար իմ ընկերուհին.
Առանց գթութեան և մասնակցութեան
Կը սկսես նայել դու երկրի վրայ.
Ուր ոչ ճշմարիտ բաղդ կայ կենսական,

Եւ ոչ յարատև գեղեցկութիւն կայ,
Ուր միայն պատիժն ու մեղքն են լիուլի,
Ու կեանքն անցնում է փոքրիկ կիրքերով.
Եւ ուր չգիտեն առանց երկիւղի
Ոչ արհամարհել, ոչ սիրել հոգով։
Գուցէ չգիտես, թէ արդեօք ի՞նչ է
Կարճատև կեանքը մարդկային սեռի,
Միայն արիւնի նա վրդովմունք է,
Օրերը կ՚անցնին և այն կը սառի։
Ո՞վ կարէ տանել հրաժարումը,
Հրապուրանքը նոր գեղեցկութեան,
Ծանր վաստակը և ձանձրութիւնը,
Կամակորութիւնը երևակայութեան։
Չէ, իմանաս դու, ընկեր քաղցրունակ,
Ճակատագիրդ չէ սահմանել քեզ,
Որ նախանձաւոր բրտութեանը տակ
Իբրև մի ստրուկ, անյայտ թառամես,
Կեղծ ընկերների, թշնամիների,
Կամ թէ փոքրոգի և սառ մարդոց մէջ,
Ունայն և ծանր աշխատանքների,
Անպտուղ յուսոյ և երկիւղի մէջ։
Դու չես շիջանիր առանց կիրքերի
Բարձր պատի տակ լուռ և թախծալից,
Աղօթք անելով մարդերից հեռի,
Նոյնպէս և հեռի Աստուածութենից։
Ահ չէ, աննման արարած սիրուն,
Այն չէ քո համար դրել օրհասը,
Քեզ ուրիշ կիրք է այն տեղ սպասում,
Ուրիշ ցնծութեան խոր զգացմունքը.
Ճակատագրին թող դու ուրեմն
Թշուառ աշխարհը, իղձերդ նախկին,
Եւ քեզ կը բանամ, նոցա փոխարէն,
Բարձր գիտութեան անդունդը խորին։
Եւ սպասաւոր իմ հոգիների
Բոլոր ամբոխը ոտքդ կը բերեմ.
Թեթև նաժիշտներ և սքանչելի,

Ո՛վ իմ գեղեցիկ, քեզ կը պարգևեմ.
Եւ արևելեան աստղից կը խլեմ
Քո համար շքեղ պսակը ոսկի,
Եւ բոլոր-շուրջը նորա կը ցանեմ
Փայլուն ցօղովը թարմ ծաղիկների,
Արևամտի կարմիր նշուլով.
Կապուտէնի պէս մէջքդ կը պատեմ,
Բաղցրահոտութեան մաքուր բուրմունքով
Բոլոր շրջակայ օդը կ'ոռոգեմ,
Եւ հիանալի նուագ հնչելով,
Նուրբ լսելիքդ միշտ կը փաղաքշեմ,
Եւ մեծ պալատներ փառաւոր շէնքով
Ադամանդներից կը կառուցանեմ,
Ես մերթ կ'իջանեմ ծովի յատակը,
Եւ մերթ կը թռչիմ աստղերից վերև,
Ողջը քեզ կը տամ, ողջ երկրայինը,
Միայն սիրիր ինձ... այս է քո պարգև։

Հիւսիսափայլ, 1863—1864 Թ. ե. 126—128։

Լերմօնտով, ռուս բանաստեղծի, «Դևը» հեղինակութիւնից, Մ. Սաղաթեանց, երբեմն աշակերտ Լազարեան ուսումնարանի, ապա ուսանող Մոսկվայի կայսերական համալսարանի։ Այս վաղամեռիկ քանքարաւոր երիտասարդի մահը, ակնաւոր կորուստ պիտոյ է համարել մեր այժմեան բանաստեղծական աղքատ գրականութեան համար։

---

## 216

### Կամադիր տեղի։

Մօնմօրանսի անտառին
Մօտ, երազներ զիս տարին։
Օդ էր հանդարտ և զեփիւռ
Մեղմիկ հնչէր համասփիւռ.
Բայց հեշտութեան հոն մէկէն
Ձայն մը եկաւ ինձ հեռուէն
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

Ծառի մը քով շքեղ կին
Կը մըրմնջէր կաթոգին։
Սիրտի թունդէն ո՛հ վեր վեր
Իր լայն կուրծքը միշտ կ'ելլէր.
Եւ չորս կողմը նայելով
Ո՞ւր ես կ'ըսէր աչերով,
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

Վարդ մը ունէր ի ձեռին.
Եւ ակնապիշ և լռուին
Պէպ ի ճամբան կը դառնար։
Իր նուրբ քօղը կը բառնար.
Բայց ոչ մէկ զանձ կը տեսնէր
Եւ յուսաբեկ կը կրկնէր
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

Ո՞ւր ես արդեօք, որո՞ւքով
Դու կը բազմիս հրապոյրքով։
Մի՞թէ աղջիկ սրիկայ
Օձերզ մոգեց ճամբու վրայ.
Մի՞թէ սրտի քու ւաւին
Պատաւ արդէն պաղութիւն.
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

Ինչ որ երեկ կամք ըրիր
Տըւիր հոգւով սիրալիր,
Եւ դու այսօր...։ Ահ կասկած
Ձեռու ինէ. չեմ խաբած,
Իս կը սիրէ անիկա
Թէ և լինի հեռակայ,
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

. . . . . . . . . . .

Այսպէս մինչև իրիկուն
Աչամաշ սիրտով և նկուն
Զոն կ'սպասէր այս կին հէգ։
Եւ երբ եկաւ մութ և մէգ,
Վերջին անգամ նայելով
Ճամբայ ելաւ փայելով
Իմ սիրատու,
Տու, տու, տու։

Ո՜ Մէր ըղձերգ տակաւին
Չ'էի տեսեր բընաւին
Ասանկ դիրքով և դէմքով։
Ահ, ինչ մրրիկ, ինչ վրդով։
Նոր մեռելի մը երես
Տժգոյն, տմոյն չէ այսպէս։
Ե՛կ սիրատու,
Տու, տու, տու։

Ո՛չ վարդ ունի ոչ շղարշ.
Կը դողդղայ վայրաքարշ։
Եւ սրտաբեկ և այրի
Մէրէն որով նա կ'այրի,
Իր տուն մինակ կը դառնայ
Եւ մահ անձին կ'սպառնայ։
Զաս սիրատու,
Տու, տու, տու։

Ս. Ոսկանեանինը կը համարուի։ Արեւմուտք, Ա տարի, 1858 թ. և. 39։

---

## 217

(Տփխիսումը երգումեն վրացւոց «Ախ դիլաւ, դիլաւ», երգի եղանակաւ)։

Զայոց աղջիկներ՝ ձեր հոգուն մատաղ,
Երբ միտս էք գալիս՝ ասում եմ ես ա՜խ,
Զալվում եմ, հալվում օտարութեան մէջ,
Ախ, սիրտըս խորվում, ցաւիս չիկայ վերջ։

Երբ կարմիր գինին բաժակումս ածած
Սեղանիս վըրայ առաջս է դըրած,
Մէջքըս ակամայ վըրան եմ ձըգում,
Ձեր սիրուն պատկերն եմ մէջը տեսնում.

Տեսնում եմ եւ, ա՜խ, միտքս է մոլորվում,
Դառն արտասունքով աչքըս պղտորում;
Կարծում եմ բոլոր աշխարն մըթնեց,
Արեւն-էլ խաւրեց, էնդուր որ տխրեց։

Հայոց աղջիկներ, ձեր հոգուն մեռնեմ,
Ձեր սիրուն աչերն էլ ե՞րբ կըտեսնեմ,
Էն սեւ սեւ աչքերն՝ սեւ ունքով պատած,
Կարծես՝ երկնային ղալամով քաշած.

Էն սեւ սեւ աչերն, որ շատին սպանեց,
Բայց էլի շատին դըժոխքից հանեց,
Ես-էլ կենդանի տեղո՛վս եմ մեռած,
Նրանց կըրակի էրուած, խորովւած։

Էլ ե՞րբ կըտեսնեմ ես ձեզ մօտ-գալիս.
Նազ ու բաղչայում սէյրան անելիս,
Ինչտեղ ամօթից վա՛րդն-էլ է դեղնում,
Երբ-որ ձեր կարմիր թըշերը տեսնում։

Բըլբուլն-էլ վարդից ձեր ձայնը լսելիս՝
Թըռչում է, թըռչում, ամպերում՝ կորչում
Եւ իր Արարչի տեսածն ասելիս
փա՜ռք քեզ, Տէր Աստուած, փա՜ռք քեզ է կանչում։

Հայոց աղջիկներ՝ ի՞նչ անուն տամ ձեզ,
Թէ հրեշտակ ասեմ՝ հրեշտակ չ'եմ տեսել,
Թէ մարդ անուանեմ՝ բէգամաղ կ'անեմ,
Ուրեմն ի՞նչ անեմ, մոլորուած եմ ես.

Մոլորուած եմ ես օտար աշխարում,
Հաւատն-էլ օտար, օտար եւ լեզուն,
Աղջիկն-էլ օտար ու ձեզ չի նըման,
Հայոց աղջիկներ՝ դուք էք աննըման.

Ձեր սէրն է միայն սըրտումըս պահած,
Ձեր սիրով միայն եմ ես կենդանի,

Ձեր սէրը միայն էս կեանքըս մաշուած
Օտարութեան մէջ դեռ կըպահպանի։

Գէորգ Միրիմանեանց, աշակերտ Լազարեանց ուսումնարանի, ետոյ ուսանող Դորպատեան համալսարանի, վախճանեցաւ իւր ծննդեան տեղը, Տփխիս, բարակացաւից, երիտասարդութեան հասակում։

---

## 218

(Թարգմանութիւն ռուսերէնից)

Մա՛յրի՛կ իմ աղաւնիկ, լոյս արեգակն,
Խղճա՛, իմ ծընող քաղցրիկ, ինձ՝ քու աղջըկան։
Նախ՝ օձ մի Թիւնաւոր սիրտըս է խայթում,
Ու միշտ գիշերը բոլոր քընել չի Թողնում։
Անհանգիստ երազներից քունըս չի տանում.
Նընջելից եւ յառնելից սիրտըս է մաշվում։
Մէկ տեսնես՝ Թըռչուններ երգեր եմ լըսում,
Սիրտըս այդ քաղցրիկ ձայնից վեր-վեր է Թըռչում։
Ի՞նչ է այս, իմ ծընողըս, որ ինձ պատահեց,
Երեւի այս իմ ցաւըս չարից հանդիպեց։
Ախ՞Թէ չի կայ, մայրիկս, իմ դարդին մի ճար.
Հեռացուր այս տանջանքըս, գըտի՛ր մէկ հընար։ —
«Իմ նազելի դըստրիկըս մի՛ մաշուիր լալով,
«Իմ սիրտըս-էլ մի՛ խոցիլ քեզ չարչարելով.
«Իմացի՛ր, այդ ցաւերը քեզ անվընաս է,
«Հասել է ժամանակըդ, այդ սիրոյ դարդն է.
«Փոքըր ինչ-էլ համբերէ՛, դըստրիկ իմ սիրուն,
«Կու գայ փեսան, կը տանէ, կ՚ինես հանգիստ քուն.»

Ք. Տ—Պ. Պատկանեանց։

---

## 219

Ասի Թէ սիրեմ զքեզ.
Դու ՚ի քեզ ՚ի նազներ ելար.
Քա՛ւ ալ. Թէ անցաւ աշխարհս,
Որ այլ տեղ չ՚կայ սիրոյ ճար։
Երթամ մեկնիմ այլ սիրեմ,
Որ աչուերն քեզ նմանի
Զանունըդ նորա դընեմ.

Որ լսես՝ սիրտըդ նուաղի։
Թէ նուշերն աչացս ելար,
Թէ շաքարն ինձ անպիտանացար,
Թէ դուն սիրելու խընծորն,
Այլ իմ աչքիս մի՛ երեւնար։
Երթամ սուրբ Սարգիս մտնում,
Ընծեմ, որ դուն իմանաս.
Ոչ կաղնաս, ու ոչ կուրանաս,
Սարկարտան մնաս քան զիս։
Քանի՞ ու քանի՛ ասեմ —
Վարդ մի՛ սիրեր, փուշ ունի,
Գնա մանուշակ սիրէ,
Փուշ չ'ունի, անուշ հոտ ունի։
Վարդին բացուած մի՛ սիրեր,
Որ գայ 'ի ծոցդ թոռմի,
Վարդն բուլբուլեկ սիրէ,
Որ գայ 'ի ծոցդ բացուի։

---

## 220

(Թարգմանութիւն ռուսերէնից)

Մերթ խօսակցիս, մերթ լուռ կաս դու,
Մերթ հովանաս, մերթ բոցոտիս,
Մերթ մարդատեաց, մերթ մարդասէր ես
Մերթ լքանիս, մերթ զգածիս.
Դու ո՛չ հաւատաս (3) 'ի գեղդ քո։
Է՛ զի անքուն, է՛ զի նիրհես,
Է՛ զ'ի ցասման, է՛ զի խայտաս,
Է՛ զի վանես, է՛ զի կոչես,
Է՛ զի ճըգնիս, է՛ զի ցընծաս,
Դու ո՛չ հաւատաս (3) 'ի գեղդ քո։
Ո՞րպէս խընդամ՝ այն ինչ ժըպտիս,
Մինչ զերթ զգարուն դու ծիծաղիս,
Զամէն զփառսդ նըշմարեմ յաչսդ,
Յորս հայեցեալ միշտ հառաչեմ.
Դու ո՛չ հաւատաս (3) 'ի գեղդ քո։

Գորպաս։ Գրիգոր Աղաքիրեանց։

221

Յերկու ձեռին երկու մոմ՝
 Ինձ ընդ առաջ ել 'ի տուն
 Մի՛ հարցանէք—ո՞վ էր նա,
 Հրեշտակ, թէ կոյս լուսագեղ։
Ամօթն ըզնա վարդ արար,
 Ես հիացեալ դարձայ քար,
 Այն ինչ օր էր և ինչ ժամ,
 Յորում տեսի ես կեանք նոր։
Ի խաճըրագ յայնմիկ տան;
 Ի մարդաշատ բազմութեան,
 Ի մէջ աղջկանց և հարսանց
 Յոտին կայր ոմն անդ յանկեան։
Այն օրիորդն էր պարկեշտ
 Ինձ պատահեալ առ դրամբ տան,
 Զոգիս գրաւեաց յիւր 'ի սէր,
 Ի նմա տեսի ես կեանք նոր։
Մարգարտափայլ մարմինն էր,
 Հասակն էր յոյժ վայելուչ.
 Զոտիւքն վարսք քարշ գային,
 Ի գոյն քըրքմոյ փայլէին։
Դիմաց շըքեղ երևոյթ,
 Յօնից, աչաց, այտից գեղ,
 Շըրթանց, լեզուին համանոյշ
 Խոստանային ինձ կեանք նոր։
Ախ ասացի, թըմրեցայ,
 Սիրտս սկսաւ դողդողալ։
 Զաշխարհ համայն մոռացայ
 Ի գեղ կուսին ափշեցեալ։
Բամք կոչելոցն յայն հանդէս
 Ընդ իմ մեծ բաղդ մախային,
 Զի մերձաւորք այն կուսին
 Փեսայ զանձն իմ ձայնէին։
Եթէ զաշխարհ լի գանձիւք
 Ինձ ոք բաշխէր 'ի պարգև՝

Ո՛չ տեսանէր այնքան բախ,
Որքան 'ի գալը առ կուսին։
Արդեօք՝ գուցէ յաշխարհի
Սիրոյ նման ինչ հզօր,
Սէր 'ի ձեռաց Արարչին
Մեզ մահացուացս է ձիր նոր։
Մանրախորհուրդ ազգ մարդկան՝
Շատ մի՛ սիրեր դու զաշխարհ,
Նա թըշնամի է անգութ,
Չար քան զքարբ մահաթոյն։
Ցանցիւ սիրոյ զքեզ կարթէ,
Ի հաղբ անել ըմբըռնէ.
Ապա զսիրոյդ առարկայ
Ի քէն արագ կողոպտէ։

Յարութիւն վարդապետ Ալամդարեան։

---

222

Իմ սիրտըս աղ ես արել,
Ջիգեարըս 1) դաղ ես արել,
Ինձանից հեռացել ես,
Ինձ բէդամաղ 2) ես արել։
Դու ես իմ սիրահարը,
Քաշկա 3) տանեմ քու ճարը,
Գըլխիս տըւել ես քարը,
Կիսակենդան ես արել։
Շատ մարդկանց ես խաբել,
Սիրոյդ ես եմ կրակվել.
Ինձ-հօ թօկով 4) չ'ես կապել,
Ամա դուստաղ 5) ես արել։
Սիրելիդ՝ ինձ առել ես,
Առել ես, նախատել ես,
Ջիգեարըս կտրատել ես,
Արնաշաղախ ես արել։
Ինձ տեսնելուս տուր բարով,
Խորհուրդդ առա՛ գրով,
Ինձ-հօ մորթել չ'ես սրով,
Անսուր մատաղ ես արել։
Ես եմ աղիզ աղբերդ,
Ինձնից մի՛ կտրիլ սերըդ,
Երկնից կամար ունքերդ,
Ինձ վերայ թաղ 6) ես արել։
Դու միշտ կամեցիր բարիս,
Ուրախանալ մի՛ չարիս,
Ես քըրքըրված ջիգեարիս
Քափով 7) արաղ ես արել։

---

1) լեարդ, печенка. 2) անբաւական. 3) երանի թէ. 4) չուան. 5) թակարթել. 6) սփռել, պարզել, տարածել։ 7) փրփուր։

Ի՞նչ է, տօ՛, իմ մեղը,
Ջալուել է սրտիս եղը,
Երկու ծըծիդ մէջ տեղը
Բաղչա ու բաղ ես արել։
  Ջամդուղի[8]) ես համ լաչէն[9]),
Ես մեռնում եմ քու պաչէն,
Գոօլթ[10]) ու դուշմանի[11]) միջին
Եմօթապարտ ես արել։
  Մուրվաթ[12]) արա՛, սիրահար,
Մի՛ չարչարիլ չարաչար.
Ինձ քըցել ես քարէ քար,
Գըրրուած սարսաղ[13]) ես արել։
  Կարօտըդ քա՛շում եմ քու,
Չ'եմ կարնում ասել ահու,
Կերպարանքըդ տեսնելու
Ինձի արգելք ես արել։
  Բօյըդ շամշու սուրայի,
Խարաբա սիրտըս շահի,
Ինձ դու տար մօտըդ քաշի,
Ջերբք է, եազ ես արել։
  Գնա ես իմ սիրականըս,
Մի՛ մաշիլ ջիվան ջանըս,
Երեք տարուայ դուշմանըս,
Նոր բարեկամ ես արել։
  Մայիլ եմ դօշիդ խալին,[14])
Անուշ խելք ու քեամալին,
Խըղճալի Գուրջիմալին
Կարկըտահար ես արել։

Գուրջի Նավէ, աշըղ։

223

Առ սիրականն։

Ինձ վատութիւն արի, մատաղ, մի՛ անիլ,
Ջանս քեզի կուրբան՝ սաղաղ մի՛ անիլ,
Մի փուչ բանով ինձ բիզամաղ մի՛ անիլ,
Արտասուքս վարար բուլաղ մի՛ անիլ,
Աստուած սիրես՝ խոց սիրտս դաղ մի՛ անիլ,
Դարդ ու դուշմաններս օյաղ մի՛ անիլ։
Քո ճամփումըդ ջիւան օմրըս փուչ արի,
Կու խնդրեմ Աստուածանէ՝ տայ քեզ միշտ բարի,
Մուրվաթ արա՛, կանգնի՛ շարթ ու իկրարի,
Ինչ որ ասեմ, խօսքս լսի, կատարի,
Չէ՛ մի՛ ասիլ, ունքերդ թաղ մի՛ անիլ։
Ի՞նչպէս անեմ, ո՞ւմ ասեմ դարդ ու սարս,
Օր բէ օր աւելնում ահ ու զարս,

8) քաղդ. 9) թաչնոց. 10) բարեկամ. 11) թշնամի. 12) ողորմութիւն. 13) խելագար. 14) կոծիծ, գորտնուկ։

Մխկըտուք, եռ է գալիս ջիկեարս,
Աշխիդ սիրով ճըղճըղել ես խուբարս,
Աստուած սիրես՝ մըհլամ դիր, աղ մի՛ անիր։
Եւրոպացւոց թագաւորն ես դու շքեղ,
Նոր զարդարուած թախտիդ վերայ փառահեղ,
Պահիճներդ կանգնացրու դու ահեղ,
Թէ սուչ չունեմ, անմեղ դուլթսաղ մի՛ անիր։
Լաց ու արտասուքս գետոյ նման ա,
Թուրինջի պէս հէր մարդ դժուար դիմանայ,
Ո՛վ ընկելայ, ո՛վ քաշելայ, կիմանայ,
Նա քեզ կասի, եշխի հետ հաղ մի անիր։

Թուրինջ, աշըղ։

---

224

## Աղջիկ։

Աղջիկ, արի՛ մէկ պաչ տու՛ր, ջանիդ մատաղ.
Ես մեռնումեմ, քեզ ու քու նանիդ մատաղ,
Մատներումդ ոսկէ մատանիդ մատաղ,
Նախշ ես անում՝ քարգահ ու բանիդ մատաղ,
Կարմիր սուրաթ՝ սպիտակ կուլ չանիդ մատաղ։
Լաւութիւնը լաւ կուլի աշխարհումս,
Քեզնից աւել էլ ճար չունեմ ճարումս,
Թէ Մարալ ես, եկ, ման արի սարումս,
Ես կաղնած եմ իմ տուած իղըարումս.
Հարսանիքդ կու նստի այս տարումս,
Ոըծիդ վըէն կախած նշանիդ մատաղ։
Աշխարհումս չի՛ ճարվիլ քու գօլիցը,
Թէկուզ բերեն Հինդ ու Ստամբօլիցը,
Խելքս գնաց՝ դուրս եկար էն ղօլիցը,
Ջէյրանի պէս, տեսայ, եկար չօլիցը,
Կաքաւի պէս ձայն ես տալիս քօլիցը,
Անոյշ խօսքիդ՝ ճարտար բերանիդ մատաղ։
Ես քեզ համար մեռած եմ թաղուածի պէս,
Գիշեր ցերեկ մալըուլ եմ շաղուածի պէս,

Խելքս գլխէս դառել է քաղուածի պէս,
Ջիգեարս էլաւ Նարին մաղուածի պէս,
Նարգիզ, սուսան, սումբուլ ես քաղուածի պէս,
Բե՛ր հոտ առնեմ, վարդ ու բէյհանիդ մատաղ։
Լշխի բանը, խօմ գիտես, ինչպէս կուլի,
Մինչի իրան հասնի, ջանը կէս կուլի,
Մէկ պաչ չի՛ տաս՝ Թէհրանը ինձմէն դես կուլի,
Երկնքի մալաքները քեզ պէս կուլի,
Ապա տեսնենք՝ ո՞ւմ հագուստը էդպէս կուլի,
Կարմիր շաբիկ՝ կանաչ մինթանիդ մատաղ։
Թէ բուլբուլ ես, բաս ինչո՞ւ չես բաղումը,
Կարմիր վարդ ես, բաց էլած եարփաղումը,
Լուսնիակ ես չարխի մաղալլաղումը,
Կայսերի պէս կանգնել ես օթաղումը,
Միսկին-Բուրջուն պահիլ մի՛ գութսաղումը,
Թամբահ արա, թո՛ղ՝ քու դիւանիդ մատաղ։

Միսկին Բուրջի։

---

225

Ո՛հ, թո՛ղ փորձէ, ով իւր անձը միշտ կապումէ,
Արդեօք սիրտը սրտի հետ լաւ յարմարվումէ, —
Դառն զղջումն հետեւումէ ծուռ ընտրութեան։

Թէ սէր ու սէր երկու կողմից չեն հանդիպում,
Քահանայի օրհնութիւնը նզովք է դառնում,
Հարսանիքը սուգ և աղբիւր թշուառութեան։

Բայց եթէ ձեր սիրտ և հոգի են ձայնակից,
Ապա սուրբ է սիրոյ դաշն և օրհնալից,
Այդպիսի սէր կը խորտակէ վշտի խայթը։ —

Ուրեմն փորձէ, ով իւր անձը միշտ կապումէ,
Արդեօք սիրտը, սրտի հետ լաւ յարմարվումէ.
Ապա թէ ոչ, ամուսնութեան չդնէ դաշը։

Շիլլեր։ Հիւսիսափայլ 1861 թ. № 8, ե. 125։

---

226

Նոր բահար [1]) ես գովելի,
Թազա [2]) նուբար ես գովելի,
Դու աննըման ես, գեղեցիկ,
Նախշ [3]) ու նըկար ես գովելի։
Թայ [4]) չ'ունես աշխարքումըս,
Աջարաք [5]) դու ի՞նչ օրինակ ես,
Բլբուլ ես գարնանային,
Ճ'արտարախօս ծիծեռնակ ես.
Բաց արա արքայութեան
Բաղի դուռը քանի՞ փակես,
Գիտեմ՝ հոտով անուշ ես,
Վարդ ու մեխակ, մանուշակ ես,
Կամ՝ Խաթայի-Խութայի [6])
Մուշկ ու ամբար ես գովելի։
Որ տեղանց որ տեղ, Թուրինջ,
Ըռաստ եկար [7]) էս բահարին,
Դէս ու դէն պըտուտ գալով,
Ախար ընկար էշխի [8]) ճանկըն. [9])
Պըրծընելու ճար չի կայ,
Չոգիս կ'առնի զալում [10]) մահըն,
Թէ հազար դարդ ունենաս,
Ի՞նչ կ'անի հէքիմ [11]) ջարրահն,
Ինձ համար անմահական
Դու դեղ ու ճար ես գովելի։
Լուսով ես պատկերովդ
Դրան զարեգակի վերայ.
Փայլում ես մաշադի [12]) պէս,
Գունով ես կրակի վերայ,
Վառվում ես ճրագի պէս,
Ոսկի աշտանակի վերայ,

---

1) գարուն. 2) նոր. 3) նկար. 4) նըման, զոյգ. 5) արդեօք. 6) Չինաստան, Китай, 7) հանդիպել, պատահել. 8) աշխոյժ. 9) մագիլ. 10) անողորմ. 11) բժիշկ. 12) աշտանակ։

Օրինակ ես կայսերաց,
Թագաւոր թագի վերայ,
Թրաշ արած [13] անգին եաղութ, [14]
Ջավահիր [15] քար ես գովել։

Թուրինջ, երգիչ։

---

227

Ես սիրում եմ ձեզ, ցնորված եմ, տխուր,
Թէ և աշխատանքս և հոգս են ի զուր,
Եւ յիմարութեամբ ձեր առաջն ընկած
Խոստովանում եմ. ձեզնով եմ այրուած։
Գիտեմ, չէ վայել ինձ այս իմ տարօք.
Ինձ պէտք է լինել աւելի խելօք,
Բայց ամեն շարժմունք, ամեն գործ սրտիս
Բորբոքեալ սիրոյ կայծ է ցոյց տալիս։
Եթէ միայնակ—ես նեղանում եմ,
Եթէ այլոց հետ—միշտ յօրանջում եմ,
Այլ երբ ձեր հետ եմ, տխուր եմ լինում,
Եւ ցաւ եմ ըզգում միշտ ես իմ սրտում։
Չկայ զօրութիւն. պէտք է ասեմ ձեզ.
Ահ....ի՜նչպէս սաստիկ ես սիրում եմ ձեզ։
Երբ ես մի տեղից լսում եմ ձեր ձայն,
Ձեր ոտների գնացք, և ձեր թեթև քայլ,
Կորցնում եմ յանկարծ ես իմ միտք համայն,
Տեղումըս կանգնած, մնում եմ ձեզ միայն։
Ձեր ժպիտ, ծիծաղ—ինձ ուրախութիւն,
Ձեր արհամարհանք—ինձ ցաւ տրտմութիւն.
Յաւիտ դեղ բուժիչ կարող է լինել
Ինձ ձեր սիրուն ձեռք—ոչինչ առաւել։
Քաղցրատես հայեացք, աչքերըդ անգին
Կապոյտ և պայծառ, իբրու ջինջ երկին

---

13) ողորկած, տաշած. 14) յակինթ, яхонтъ. 15) անդամանդ, брилліантъ.

Տեսնումեմ հեռուից, և գրեթէ ծածուկ
Մ՚ինչև զմայլվումեմ իբրև մի մանուկ.
Մ՚իշտ տխուր կամ ես և անմխիթար
Եւ անյայտ է ձեզ իմ նախանձը չար։
Երբ թողնումէք ինձ և գնումէք ուր....
Ես մնումեմ միայն, տխուր, ո՜հ տխուր....

. . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . .

Երբ՛ դու խղճա՛, ինձ մի՛ չարչարիր,
Քեզնից չեմ կարող պահանջել ես սէր,
Գուցէ, իմ հրեշտակ, ես մեղացս համար
Պէտք է մնամ տխուր և անմխիթար.
Գուցէ քո սիրոյ ես չեմ իսկ արժան.
Կեղծաւո՛ր եղիր. այս ինձ բաւական։
Աւա՜ղ, ինձ խաբել երբէք չէ դժուար.
Ես ուրախ կ՚լինիմ խաբուելուս համար։

Իշխան Բագրատունի։ Հիւսիսափայլ, 1860 թ. № 8, ե. 168—169։

---

228

Ուստի՞ դու քաս, ղարիբ բլբուլ,
Դու՛ մի լաց՚լի, ես իմ լալու.
Դու վարթ պըտուէ՛, ես գօղալին,—
Դու մի՛ լաց՚լի, ես իմ լալու։
Ասի՛, բլբուլ, խօսի՛ բառըն,
Օխնըվի՛ քու էկած սարըն,—
Քի վարթն էրից, ինձ իմ եարըն,—
Դու մի՛ լաց՚լի, ես իմ լալու։
Մ՚ան իմ գալի դիդարի հիդ,
Մ՚ունց ղարիբ բլբուլ խարի հիդ.
Դու վարթի հիդ, ես եարի հիդ,—
Դու մի՛ լաց՚լի, ես իմ լալու։
Յալբուփ նըման կանանչ իմ,
Ե՛կ, խօսի՛՝ ձայնըդ ճանանչիմ,
Դու վա՜րթ կանչէ՛, ես եա՜ր կանչիմ,—

Դու մի՛ լաց՚լի, ես իմ լալու։
Դարիս բըլբուլ՝ ձայնիդ մալում,
Ես ու դու էրվինք մէ հալում.
Սայաթ-Նովէն ասաց՝ զա՛լում,—
Դու մի՛ լաց՚լի, ես իմ լալու։

Սայաթ-Նովա։

## Արութինի ասած թասլիս։

Ուստի՞—Թիֆլիզեցիք սրան համեմատ ասում են վո՞ւր դղանց, վո՞ւր տիղանց (ո՞ր տեղաց)։—Լաց՚լի—լաց ըլի։—Օխնըվիլ—օրհնիլ։—Եկած—էն սարն՝ որ տեղից դու եկել ես։—Դիդար—պր. նշ. դէմք, երես. բայց էս տեղ նշ. սիրեկան. երբեմն գործ է ածվում idèal բառի տեղ։—Հիդ (յետ)—էս տեղ նշ. էգնէն, զհետ, զհետ դիդարի։ Ունց—որպէս։—Խսար—պր. նշ. փուշ. փուշ վարդենուոյ։—Սալբու—պր. սէրվ նշ. նոճի։ Կանանչ—կանաչ։ Ճանանչիլ—Թիֆլիզում սովորաբար ասում են ճանչնալ, սրա կատարեալն՝ ճանչըցայ։ Մալում—Թրք. նշ. յայտնի։ Էրվինք—Ներկայի տեղ՝ էրում ինք. կարելի է հասկանալ եւ պիտի էրվինք խօսքի մտքով։

---

## 229

Դուն էն գլխէն իմաստուն իս, խելքդ յիմարին բաբ մի՛ անի,
Երազումըն տեսածի հիդ՝ միզի մէ հէսաբ մի՛ անի,
Ես խօմ էն գլխէն էրած իմ, նուրմէկանց քաբաբ մի՛ անի,
Թէ վուր, գիդիմ, բէզարիլ իս, ուրիշին սաբաբ մի՛ անի։

Ձըր կայ քիզ պէս հուքմի հէքիմ՝ դուն Ռոստոմի Զալը, թա՛քավուր.
Ասկըրդ ասկէրումըն գօլած, համ դուն իս գօզալ թաքավուր.
Թէ էսանց էլ սուչ ունենամ՝ գըլուխս արա՛ տալ, թա՛քավուր.
Մըտիկ արա՛ քու Ստեղծօղին՝ նահախ տիղ ղազաբ մի՛ անի։

Եարալուն հէքիմն էնդուր գ՚ուզէ՝ դիղ տալու է, ցաւ տալու չ՚է.
Քանի գ՚ուզէ արբաբ ըլի՝ ղուլըն աղին դավ տալու չ՚է.
Դու քու սիրտըն իտակ պահէ՛ եադի խօսկըն ավտալու չ՚է.
Աստուծու սէրն կանչօղի պէս դըռնէմէդ ջուղաբ մի՛ անի։

Ամէն մարթ չ՚ի կանա խըմի իմ ջուրըն՝ ուրիշ ջըրէն է.
Ամէն մարթ չ՚ի կարթա իմ գիրըն՝ ուրիշ գըրէն է.

Բունխաթս ավաղ չ'իմանաս՝ քարափէ քարուկըրէն է՝
Սէլավի պէս՝ առանց ցամքիլ, դուն շուտով խարաբ մի՛ անի։

Քանի գ'ուզէ քամին տանէ՝ ծովէմէն ավազ չ'ի պակսի.
Թէ կու պակսիմ, քիզ կու պակսիմ՝ աշխարհս մէ մազ չ'ի պակսի
Թէգուզ ըլիմ, Թէգուզ չըլիմ՝ մէջլիսներուն սազ չ'ի պակսի.
Սայաթ-Նօվու գերեզմանըն Հինդ, Հաբաշ, Արար մի՛ անի։

1758 Սայաթ-Նօվա։

(Նըսպէս ԱրուԹինի տսած քրօնիկօնի 441-ին)։

Բար—պր. նշ. համեմատ, հաւասար. բար անիլ նշ. համեմատել։ Քաբաբ—պր. նշ. խորով։ Բէզարիլ, բէզըրիլ—ձանձրանալ։ Սաբաբ—պր. նշ. պատճառ. սաբաբ անիլ նշ. մեղադրել։

Ռոստոմի Զալ—Ռուստէմի Զալ. Զալի որդի Ռուստէմ՝ որոյ քաջութիւններն գովաբանում է Ֆիրդուսին իր Շահնամէ-ումն։ Ասկ—ազգ. մէ քանի բառերում գրոց ուղղագրութենով դըրած «գ» (Գերմանացւոց g) գիրն՝ հընչում են որպէս «կ», չեն առում ազգ, անզգամ, և այլն. բայց ասկ (ask), անսկամ։ Համ—պր. նշ. ևս։ Ըսանց էլ—սրանից աւէլ, բաց 'ի սմանէ։ Մուշ—Թրք. նշ. մեղք, յանցանք։ Արա տալ—արա, հրամայեա՝ որ կտրեն, կտրել տուր. հին ժամանակն տալ բայն Թիֆլիզու բարբառում ունեցել է կտրել բայի նշանակութիւնն, և այժմ ևս տալ, վէր տալ նշ. խփել (զարկանել). հաւի գլուխը տըվին նշ. գլուխը կտրեցին. ուրիշ խաղերումն՝ տուր դանակըն ինձի, սպանէ (խ. ժէ), տուր ինձի. սպանէ, իխտիար ունիս (խ. իէ), և խօսքերումն՝ զանգակը տվին, գլխին տըվին, բայն տալ նշ. զարկանել. Թէպէտ գլուխ տալ բայն ինկապէս նշ. գլուխ վէր բերել, ողջունել, saluer. տալ անիլ բայի միայն անիլն է խոնարհվում։ Նահախ—պր. նշ. զուր, 'ի զուր։ Տիղ— տեղ (tégh)։ Ղազաբ—Թրք. նշ. պատիժ, բարկութիւն. ղազաբ անիլ նշ. պատժել։

Եարալու—Թրք. նշ. խոցեալ։ Հէքիմ—բժիշկ։ Ընդուր—կարճացրած է էնդու համար բառից, նշ. վասն այնորիկ. առում են ևս էտուր, էստուր։ Դիղ—դեղ (dégh)։ Աբրար—արբ. նշ. մեծ, գլխաւոր. աբրար ըլիլ նշ. ևս՝ զըկած ըլիլ։

Ղուլ—Թրք. նշ. ստրուկ։ Դավ—պր. նշ. դատախազութիւն, ամբաստանութիւն, բողոք. դավ տալ նշ. դատախնդիր լինիլ, բողոքել։ Ավտալու—հաւատալոց։ Ջուղաբ—պր. նշ. պատասխան. ջուղաբ անիլ էս տեղ նշ. մերժել, congédier, refuser.

Բունիաթ—պր. նշ. հիմն շինուածոյ։ Սէլավ. պր. սէյլաբ. նշ. ուղխի ջուր։ Առանց ցամքիլ—երգիչն մուԹն է նկարագրում իր զգացմունքն. կարելի է՝ կամեցել ըլի ասել. Մ'ի խարաբ անիր,

մի՛ ընկնիր շատապով սէլավի պէս՝ չը տալով ժամանակ՝ որ ցամաքի, զօրանայ պինդ հիմնեալ սէրս։ Խարար անիլ—Նշ. աւերել։

Հինդ—երգիչն խնդրում է իր սիրեկանից՝ չը տայ նեղութիւն, և պատճառ հեռանալու իր հայրենի երկրից՝ որ. չը ընկնի սար ու ձոր և չ՚ըլլի օտարամահ (ղարիբաթաղ) յԱրաբստան, ՚ի Հաբաշ, և այլն։

---

## 230

Արի՛ ինձ անգաճ կա՛լ, ա՛յ դիվանա սիրտ,
Հայա սիրէ՛, ադաբ սիրէ՛, ար սիրէ.
Աշխարքըս քունն ըլի, ի՛նչ պիտիս տանի՝
Աստուած սիրէ՛, հօքի սիրէ՛, եար սիրէ՛։
Էն բանն արա՛ վուր Աստուծու շարքումն է,
Խըրատնիրըն՝ գըրած Հարանց վարքումն է,
Երիք բան կայ՝ հոգու մարմնու կարքումն է՝
Պիր սիրէ՛, ղալամ սիրէ՛, դավթար սիրէ՛։
Ե՛կ արի՛, սի՛րտ, մի՛ կէնա դուն մէ դամաղի,
Հալալ մըտիկ արա՛ հացի ու աղի,
Հենց բան արա՛ մարթ վըրէդ չը ծիծաղի՝
Խըրատ սիրէ՛, սաբըր սիրէ՛, շար սիրէ՛։
Հընպարտութին չ՚անիս՝ դուր դու քաս Տէրիդ,
Խօնարութին արա կանց քիզ դէվէրիդ,
Աստուած դիփունանցըն մին հօքի էրիտ՝
Աշկատ սիրէ՛, ղօնաղ սիրէ՛, տար սիրէ՛։
Սա՛յա՛թ-Նօվա, էրնէ՛կ քիզ, թէ էս անիս՝
Հօքուդ խաթրի մարմնուդ ումբրը կէս անիս.
Թէ գ՚ուզիս վուր դադաստան չը տէսանիս՝
Վանք սիրէ՛, անապատ սիրէ՛, քար սիրէ՛։

Սայաթ-Նօվա։ 1753։ Մայիսի 1։

Ուշլամա Արութինի ասած Մայիսի 1-ին քրօնիկօնի 441-ին։

Արի՛—Թիֆլիզեցիք գալ բայի հրամայականի եկ բառի տեղ բանեցնում են արի՛, թէպէտ չ՚են պատահում յառնել բայի ուրիշ ձևերն։ Դիվանա—պր. նշ. խելագար։ Հայա—արբ. նշ. ամօթ։ Ադաբ—պր. նշ. համեստութիւն։ Քունն—քրդ. քաղցրաձայնութեան համար կրկնվում է դիմորոշ յօդն։ Ար—պր. նշ. ամօթ։ Վուր—որ. է դերանուն յարաբերական։ Հարանց—է ձև գրոց. Թիֆլիզու-

բարբառում մէ քանի բառերն յոգնակի սեռական և տրական հոլովներում պահպանել են գրոց անց վերջաւորութիւնն, և ասում են իրանց, դիփունանց, տղէրանց, պապանց, հօրանց և այլն. Հօքու—հոգւոյ. գրոց եզական սեռական հոլովի ոյ վերջաւորութիւնն, և առ հասարակ գրոց ոյ վանկն՝ Թիֆլիզու բարբառում դարձել են ու, չ'են ասում մարմնոյ, մարդոյ, լոյս, կոյս, քոյր, անոյշ, և այլն. բայց՝ մարմնու, մարթու, լուս, կուս, քուր, անուշ։

Մէ դամաղի—միակերպ. մէկ եղանակի, մէկ մտաց դրութեան մէջ. պր. դամաղ նշ. քիմք։ Հալալ—արդար։ Մըտիկ անիլ (մտ առնել?)—դիտաւորութենով՝ նայիլ։ Հէնց կամ էնէնց—այնպէս. ասում են և ս էտէնց (այդպէս), էսէնց (այսպէս)։ Վըրէդ—քո վրայ։ Սաբր—արբ. նշ. համբերութիւն։ Հար—արբ. նշ. արդարութիւն. դատաստան։

Հնպարտութին—հպարտութիւն. գրոց թիւն վերջաւորութենի «ւ» տառըն բաց են թողնում և ասում են թին. առհասարակ Թիֆլիզու բարբառում գրոց իւ վանկն դարձել է «ու» կամ լոկ «ի», չ'են ասում. արիւն, հիւր, ալիւր, հարիւր, հիւանդ, իւր, և այլն. բայց արուն կամ արին, հուր, ալուր, հարուր, հուանդ, իր։ Դուր գու քաս—դուր գալ (դիւր գալ?) նշ. հաճոյանալ։ Խօնարութին—էս օրինակից տեսնում ենք ինչպէս Թիֆլիզեցիք շատ անգամ չ'են հնչում գրոց ուղղագրութենով-դրած «հ» տառըն, չ'են ասում աշխարհ, խոնարհ, և այլն. բայց աշխար, խօնար։ Կանց—նշ. քան զ. մէ քանի բառերում գրոց ուղղագրութենով դրած «ք» գիրն հնչում են որպէս «կ» (Գաղղիացւոց k), չ'են ասում խօսք, միտք, ուշք, աղքատ, և այլն. բայց խօսկ, միտկ, ուշկ, աղկատ։ Դէվէր—կրճատեալ է դէպ 'ի վայր խօսքից, և նշ. նուաստ, կրսեր, ասում են դէվէր գալ—նշ. դէպ 'ի վայր գալ (իջանել). դիվէր գնալ—նշ. դէպ 'ի վեր գնալ, ելանել 'ի վեր, monter.—Դիփուն—ամեն. սեռ. և տրկ. դիփունի, բացռ. դիփունէն. ուղ. դիփունանք, սեռ. և տրկ. դիփունանց, բացռ. դիփունանցմէն։ Դիփ—նշ. համակ, ողջ։ Էրիտ—տալ բայի կատարեալն է տըվի, տըվիր, էրիտ, տըվինք, տըվին. անց. ընդնթ. տըվիլ, տըված. հրամայական տու, մի' տա, տըվէք, մի' տաք։ Դօնաղ—թրք. նշ. հիւր։ Տար—օտար։

Էրնէկ—Էրանի։ Ունբր—արբ. նշ. կեանք։ Քար—քարայր։

---

231

Առանց քիզ ի՞նչ կօնիմ սօյբաթըն ու սազըն,
Չէռնէմէս վէր կօծիմ չանգիրըն մէմէկ.
Չունքի ուշկ ու միտկըս իրար շաղէցիր,
Փահմէս կու հիռացնիմ հանգիրըն մէմէկ։

Մ՛է զուգունըն երկու գաղին ի՞նչ անէ,
Մ՛է նօքարըն երկու աղին ի՞նչ անէ,
Մ՛է բաղմանչին երկու բաղին ի՞նչ անէ,
Փէյվանդ գ՚ուզէ թազա տընգիրըն մէմէկ։
Պուրթ ին ասի. փիր ուստաքար դադիրըն.
«Ճաղ շինեցի, վարթն քաղեցին վադիրըն».
Ջափէն ես քաշէցի, սափէն եադիրըն.
Բաղիփէն էկաւ միզ էս բանգիրըն մէմէկ։
Առանց քիզ ի՞նչ կօնիմ աշխարհիս մալըն.
Զ՚իմանաք քալագըն, չ՚իմանա ղալըն,
Կու հաքնիմ մազէղէն, կու հաքնիմ շալըն,
Կ՚էրթամ ու ման գու քամ վանքիրըն մէմէկ։
Իըլքամ մէ մարթ ռաստ գայ, վուր ինձ խըրատէ.
Գօզալ, քու էշխէմէն սիրտըս ազատէ.
Կանց եօթըն իմաստնաւորացըն շատ է՝
Ե՛ս քու, Սայաթ-Նօվա, բանքիրըն մէմէկ։

Սայաթ-Նօվա։

Պափիա եարանա։

Սօհբաթ—արբ. նշ. մեջլիսում նստիլն, խօսակցութիւնն. սիրելութիւն առնելն։ Վէր կօծիմ—վայր կու ածիմ. վէր ածիլ նշ. jeter en bas, jeter à terre. և մէկ ամանից միւս ամանն հեղուլ (գինի վէր ածիլ, verser). ածիլ բայն մէ քանի բառերու հետ միաւորվելով գոյացնում է զանազան բայեր՝ փուլ ածիլ, ման ածիլ, դէն ածիլ (verser dehors, вылить), վիր ածիլ (փսխել), հիդ ածիլ (reverser, վերստին հեղուլ)։ Զանգ, չանգիր—պր. նշ. castagnette։ Մ՛է մէկ—մի մի։ Զունքի, չուն—պր. նշ. որովհետև։ Իրար—յիրարս, մէկու հետ։ Փահմ—պր. նշ. ուշ։

Անէ—անիլ բայի ապառնի ձևն է. երբ որ ապառնին է հարցական, յայնժամ կու մասնիկն բաց է թողնվում, և շատ անգամ բայն վեր է առնում աներևութի նշանակութիւնն, որ տեղ մտքով իմացվում է, բաց թողած պիտի բայն՝ ի՞նչ անիմ նշ. que faire? que dois-je-faire? ի՞նչ ասեմ նշ. que dire, que dois-je dire? ի՞նչ անէ նշ. que faira-t-il, que doit-il faire? Նօքար—պր. նշ. սպասաւոր, ծառայ։ Բաղմանչի—պր. նշ. այգեգործ։ Փէյվանդ—պր. նշ. պատուաստ, la greffe։ Թազա—պր. նշ. նոր, նորահասակ։ Տունգ, տնգիր—տունկ։

Պուրթ—ուղղորդ։ Փիր—պր. նշ. ծեր, գլխաւոր։ Ուստաքար—պր. նշ. ուսուցիչ, վարպետ։ Դադա—վարպետ, իմաստուն։ Վադ—վատ։ Ջափա—պր. նշ. աշխատանք։ Բանգ—պր. էս տեղ նշ. խարդախութիւն։

Մալ—պր. նշ. ինչք։ Հաքնիլ—հագանիլ։ Շալ—բրդեղէն հանդերձ ցփսի։ Կ'էրթամ—էրթալ (երթալ) բայի միայն ապառնիի ձեւն է պատահում Թիֆլիզու բարբառում։

Բըլքամ—պր. նշ. գուցէ։ Ղասդ գալ—պատահիլ։

---

## 232

Արի համով ղուլուղ արա՛, խալխի նօքար Սայեաթ-Նօվա.
Ամէն մարթ չ'ի կանա ճանգի շահօվ շըքար, Սայեաթ-Նօվա.
Օ՛վ քեզի լեզի պարքիվէ, դուն տու շաքար, Սայեաթ-Նօվա.
Պասա արա՝ շուշէդ չըկոտրին, չը խըփին քար, Սայեաթ-Նօվա։
Թէգուզ դըպրատանըն պահ տաս՝ ծեծօվ չ'ի խըրատվի խիվըն,
Ինչըռու անձնէն չը դուս էհայ անախտելի էն չար դիվըն.
Բէգասըլըն՝ ասըլ չ'ի դառնա. թօլօվ չ'ի սիպտակի սիվըն.
Ծ՛ուռըն փէտըն չ'ի դըրըստի ռանդան, դուրգար Սայեաթ-Նօվա.
Թէգուզ իմանաս, գիդէնաս աստղէրու համբարքըն սիրուն.
Անբարի գուրձըն կօրած է՝ կարթա՛ Հարանց վարքըն սիրուն.
Ավիտարանի խօսկիրըն՝ մարքարիտէ կարքըն սիրուն.
Մի՛ ածի խուզի առչիվըն լալ ու գօվար, Սայեաթ-Նօվա։
Թէ էս կինաց փառքըն չ'ուզիս՝ էն կինաց ալմասըն կու տան.
Թէ հօքուդ խաթիր շալ հաքնիս՝ զար քաշած ատլասըն կու տան.

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Խօստօվնիս արած մինկըդ. չ'անիս ինքար, Սայեաթ-Նօվա։
Վուր տիղ հանիք, վուր տիղըն սուք, վուր տիղ սօյբաթ խաղ է ըլում.
Վուր տիղ ժամ, վուր տիղ պատարաք, վուր տիղ սիրօվ տաղ է ըլում.
Թէ վուր հօքուդ կամքըն իս անում, մարմինդ բէգամաղ է ըլում.
Վո՛ւր մէ դարդին կու դիմանաս դո՛ւն ջըրատար Սայեաթ-Նօվա։

Սայեաթ-Նօվա։ 1758։

Էսպէս Արութինի ասած քրօնիկօնի 446-ին։

Շքար—պր. շիքեար նշ. որս. ասում են էս տեղ եւ՝ սակաւագիւտ և թանգագին, չնաշխարհիկ բանին կամ իրին։ Լիզի—լեզի։ Պարքիվէ—պարգեւէ։ Շուշէդ—սիրտդ. պր. շիւշ նշ. թոք. շէյշէ նշ. ապակեղէն աման։ Պահ տալ—յաշակերտութիւն, յուսումն տալ. placer. նշ. եւ՝ տալ պահելու՝ յանձնել։ Խիվ—խեւ, խելագար։ Ինչըռու կամ ինչու—մինչեւ, մինչեւ «ց»։ Անախտելի—

անյաղթելի։ Գուխլ—գլ. պր. գլուխ։ Ռեզասլ—պր. նշ. վատթարազցի. ասլ—քաջատոհմիկ։ Թօլայ—կալաքարի ջուր (lessive), որով թափինք սպիտակեցնումն կտաւն։ Սիպտակիլ—սպիտակիլ։ Սիվ—սև։ փէտ—փայտ։ Ռանդա—պր. նշ. քերիչ հիւսանց, varlope։ Գուրգար—պր. նշ. հիւսն։ Համբարք—համար. համբրիլ նշ. համարել։ Սիրուն—էս տեղ նշ. լաւ. ուշադրութեամբ։ Գուրձ—գործ։ Ովխտարան, աւետարան։ Խուզ—խոզ։ Ռուչիվ—առջև։ Կինք, կինաց—կեանք, կենաց։ Միխկ—մեղք։ Ինքար—պր. նշ. ուրացութիւն։ Հանիք—հարսանիք։ Ջրատար—գետատար, ջրից տարած, ջրում ընկղմած. Ջրատար ասումեն՝ ողորմելի, անհանճար, ապուշ մարդուն։

---

233

Բըլբուլի հիդ լաց իս էլի,
Վարթի նըման բաց իս էլի,
Վարթաջըրով թաց իս էլի,—
Թաց իս էլի.
Չ՛կայ քիզի նման, չ՛կայ քիզի նման.
Քիզ նման, քիզ նման.—
Դուն իս աննըման։
Սիրունութինդ էլաւ արբաբ.
Սազիր ունիս՝ սիմ՝ ու շարբաբ.
Քի սազ գու քայ ղուշլու ղարբաբ.—
Ղուշլու ղարբաբ,
Չ՛կայ քիզի նման, չ՛կայ քիզի նման.
Քիզ նման, քիզ նման.
Դուն իս աննման։
Նըրէսըդ է շամս ու ղամար.
Ջանըս դուս գու քայ քիզ ամար։
Մէչկիդ ունիս օսկէ քամար.—
Օսկէ քամար,
Չ՛կայ քիզի նման. չ՛կայ քիզի նման.
Քիզ նման, քիզ նման.—
Դուն իս աննման։
Հաքիդ ղարըն՝ ալ իս արի.
Բըլբուլի հիդ լալ իս արի,

Նարկ երեսիդ խալ իս արի,—
    Խալ իս արի.
Չ'կայ քիզի նման, չ'կայ քիզի նման.
    Քիզ նման, քիզ նման.—
    Գուն իս աննման։
Գարդըս ասիմ՝ կու լան սարիր.
Էս ինչ բան էր, վուր դուն արիր.—
Սայեաթ-Նովուն՝ ջունուն արիր,—
    Ջունուն արիր.
Չ'կայ քիզի նման, չ'կայ քիզի նման.—
    Քիզ նման, քիզ նման.
    Գուն իս աննման։

1752 Թ. մարտ։ Սայեաթ-Նովա։

Քրոնիկոնի 440-ին, Մարտի վերջին. Էսպէս բէլիր ղափի հանգում Թաալիք Օսմանցւոց մուղամի։

Նըբաբ—արբ. նշ. մեծ. վեհագոյն. նշ. եւ՝ զըկիչ. Շարբաբ—(Շիրվանու) նուրբ մանած մետաքս։ Ղուշլու զարբաբ—Քեաշանու՝ Թռչուններու (ղուշերու) նկարներ ունեցող մէկ ոսկե-թել կերպասի անունն է։ Սազ գալ—յարմարիլ, պատշաճիլ, aller. Հաքիդ—քո վրայ հագած զար շորն. հաքի (սա պիտի ըլի սեռական կամ տրական հոլովը բառին հաք կամ հագ՝ որն որ իսկի չէ պատահում) բառն գործ է ածվում դիմորոշ յօդով կամ անյօդ, և ունի հագած (հագեալ) բառի նշանակութիւնն։

---

234

Սիրի հոգի, ջան, 1) ինձի եադ 2) մի՛ անիլ,
Լաւութիւնիս փոխանակ վատ մի՛ անիլ,
Վարդը քաղած բուլբուլ եմ դադ 3) մի՛ անիլ,
Ինձի աչքից քցածի հատ մի անիլ,
Չարակամների սիրտը շադ 4) մի՛ անիլ։
  Հագուստըդ, եարաբ, 5) ինսանի՛ 6) կարածայ,

---

1) Ոգի, կեանք. գեղեցիկ։ 2) Օտարական, օտար, անծանօթ։ 3) Դատ դատաստան. արդարութիւն. իրաւունք. վրէժ. տուրք։ 4) Ուրախ, խրախ, խնդալից, ուրախալից։ 5) Եարէբբ—Եա՛րբի. ով տէր, տէր իմ. Աստուած իմ. արդեօք։ 6) Մարդ։

Գուլգազ 7) եախէզ 8) գուլաբաթինով 9) արածայ,
Ակռիքներըդ մարգարըտով շարածայ,
Սարսարի 10) եմ՝ խելքըս գլխէս տարածայ,
Էշխիդ 11) հիւանդն եմ՝ դեղ ու ճար 12) մի՛ անիլ։
Կոներըդ շիմշադ 13) է բոյըդ 14) սուրահի, 15)
Բաշքա 16) հոգիս, եա՛ր, 17) քու գրկումդ տայի,
Մէկ պռօշտով 18) խարաբայ 19) սիրտս շահի,
Գուլթսաղի 20) պէս միշտ ինձ դրանըդ պահի,
Էս ցաւիցըն ինձի ազատ մի անիլ։
Թուխ մազերիդ փունջը չի գալ համարի,
Աչքերըդ նման է շամս 21) ու ղամարի, 22)
Ունքերըդ նման երկնային կամարի,
Գեղեցկութեան նշաններըդ ջամ 23) արի,
Տանէրկուսն թայ 24) արա բադ 25) մի՛ անիլ։
Նոր մազան ես անգին քարի բարեբար, 26)
Աստուած սիրես՝ հալիցըս 27) իլ 28) մի խաբար,
Վերջիս նաֆասն 29) է՝ անիրաւ՝ ինձ մի ճար,

7) Գիւլգազզ—Վարդագոյն մետաքս, վարդերանգ կերպաս. ծիրանեգոյն. զուտ կարմիր. խաս ալ։ 8) Օձիք. փողպատ կամ փողպատ։ 9) Ոսկեթել, արծաթաթել։ 10) Սէրսէր և սէրսէրի — Ապուշ, վարանեալ, ցնորեալ։ 11) Էշգ և Աշգ — Սէր. ախոյժք հոգւոյ։ 12) Ճ՛ար, դեղ. պարէն. դարման։ 13) Շիմշար, Շիմշիր և Չիմշիր—Տաւսախ. կամ տօսախ։ 14) Հասակ իրան, կամ իրանք. չափ մարդոյ երկայնութեան կամ բարձրութեան։ 15) Կամ Սուրահի — երկայնաձև. փեղամիկ (է՛ աման գինւոյ երկայնավիզ, թէ իցէ ապակեղէն և թէ այլ)։ 16) Բեաշ,—շա, Բէշքէ և Բեաշքի — Երանի՜ թէ. ա՜ւշ թէ։ 17) Սիրելի. մտերիմ. ընկերակից. բարեկամ. նազելի։ 18) Համբոյր շրթանց։ 19) Խարաբէ կամ—բի — խանգարեալ. աւերեալ. տրտմեալ. աւերակ. փլեալ։ 20) Թուլթսազ—Կալանաւոր, գերի. բանտարկեալ։ 21) Շէմս—Արեգակն. արեւ։ 22) Կամէր—Լուսին։ 23) Ջէմ—Գումար. գումարութիւն. ժողով. ջամ անիլ — գումարել, ժողովել, ՚ի հաշիւ ածել։ 24) Նման. հաւասար. հանգոյն. թայ անել—նմանեցուցանել, հաւասարել ընդ միմեանս. հանգոյն կամ միատեսակ անել։ 25) Ոչինչ, չէք. հպարտութիւն, ամբարտաւանութիւն։ 26) Բէրաբէր—Հաւասար. նման։ 27) Հալ—Հանգամանք կենաց. որպիսութիւն. դրութիւն վիճակի։ 28) Լեր։ 29) Նէֆէս — Շունչ. հագագ. ոգի. տուրեւառ շնչոյ. շնչումն։

Ազբար Ազամըն աղաչումէ մուկարրար, 30)
Խնդրում սիրտըս մէկել բէրբադ 31) մի՛ անիլ։

Ազբար Ազամի

---

235

Աստուածս դիմացիր՝ ինչ դիմանամ—մի թէ ես եմ քար՝
դարդիս 1) արա մէկ ճար,
Կեանքըս մաշել ես բոլորովին՝ անձնը իսպառ՝
էս ցաւըն է դժուար,
Այքան նեղութիւնը ինձի մի՛ տար անողորմաբար՝
ով դու իմ սիրահար։
Անգին պարգևիցըդ պարգևէ՛ ըստ քոյոց գքոյս՝
բողբոջ ես նորաբոյս,
Եկ՝ սէր իմ աղնիւ, աղաչումեմ, խղճա՛ խղճալոյս՝
տուր բաւականին յոյս,
Ուլ ինքըդ էս անտանելի ցաւին գտի հնար՝
ինձ մի՛ թողուլ անճար։
Շատ վախտ 2) է քաշումեմ կարօտդ՝ չես գալի երես՝
մինչ ե՞րբ դիմանամ ես,
Իմ դժբախտութիւնըս բաւ է ինձ՝ մի՛ անիլ էդպէս՝
կեանքըս արեցիր կէս,
Ողորմութիւն արա՛ աղքատիս՝ քաշի մօտըդ տար՝
տանջիլ մի՛ չարաչար։
Վախտ որոտումես, վախտ ամպումես, վախտ մթնումես շատ՝
անձրևումես կաթ կաթ,
Վախտ հարաւային հողմոյ նման հչումես խիստ սաստ՝
ես ընկնումեմ զգաստ,
Վախտ բարկանումես, վախտ նեղանում, կամենում ինձ չար՝
սարսափումէ աշխարհ։

---

30) Մուկարրար, մըւկարրար և մուկարրէր — Անդադար, անընդհատ, յար և միշտ, հանապազ. հաստատուն։ 31) Բէրբադ — Զքացեալ, աւերեալ, խանգարեալ. բէրբադ անել — Աչնչացուցանել, չքացուցանել. աւերել, խանգարել. հողմոյ տալ։

1) Դէրդ — Ցաւ, ախտ. վիշտ. կսկիծ, տրտմութիւն կամ նեղութիւն հոգւոյ։ 2) Վախթ և Վախըթ — Ժամանակ. ժամ. պահ։

Իխթիարըս [3]) կորել ես, հալել է իմ սրտիս եղը՝
էդ քու փայլուն գեղը,
Խոցւած սրտիս նշան է դրել՝ ունքիդ անեղը՝
դու իմ-ճար ու դեղը,
Սափսափ [4]) կապած թարթափներիդ պէս՝ չի լել քէմանդար՝ [5])
սուր սուր քան զնշտար։
Զարակամների խօսքերը քեզ խրատ ես արել՝
խիստ շատ վատ ես արել,
Ուրիշների հետ մին գալը՝ քեզ ադաթ [6]) ես արել՝
ինձի եադ ես արել,
Ես իմ բախտիցն եմ գանգատաւոր միշտ և մուղարար՝ [7])
ինձ չէ՛ տալիս դադար։
Ցաւըդ ինձ ես տալիս, ուրիշներին քաղցր խօսքերդ՝
ինձ է՞ս այ քու խէրըդ,
Ինձնից աւելի, ասա՛ տեսնեմ, էլ ո՞վ այ տէրդ՝
ինձ նա տայ քու սէրդ,
Դու քու դարդերդ լաւը գիտես՝ խեղճ Ադամ Աղբար՝
խալխըն [8]) ի՞նչ այ խաբար։

Աղբար Ադամ

---

## 236

### Ռուսկայ երգ

(Ըստ եղանակին. Ты душа-ль моя,
Красная-дѣвица,
Ты звѣзда-ль моя
Ненаглядная)

Հանգիստ իմ անոյշ
Անցար գնացիր.
Միայն վէրք անբոյժ
Սրտումս թողեցիր։

Սոխակն գեղեցիկ
Կանաչ պարտիզում,
Երգելով քաղցրիկ
Ինձ չէ գրաւում։

---

3) Իրաւունք, իշխանութիւն. ազատութիւն. կամք. անձնիշխանութիւն։ 4) Սափ—Կոթ. ցօղուն. կոթուն. ծղօտ։ 5) Աղեղնաւոր։ 6) Ադէթ—Սովորութիւն, սովորոյթ. բնութիւն. բարք. օրէնք։ 7) Տե՛ս 234 երգ.—30 ծանօթ։ 8) Խալկ—Արարածք. մարդիկ. ժողովուրդ. օտարք, այլք։

Քեզանով միայն
Երջանիկ էի.
Տիկին ինքնիշխան
Ինձ կարծումէի:
Ցերեկը մենակ,
Փակուած սենեկում
Ողբումեմ անյագ,
Ոչ ոք չէ լսում:
Գիշեր է գալիս —
Մահիճ եմ մտնում.
Տրտմումէ հոգիս,
Քունս չէ տանում.

Մազեր թուխ, երկայն,
Աչեր դրաւիչ.
Ի՜նչ հասակ, ի՜նչ ձայն
Ի՜նչ հոգի կտրիճ:
Ո՜հ, սիրտըս այրուած
Ողջ քեզ է կանչում.
Ողջ քո անմոռաց
Անունդ է յիշում,
Անգո՜ւթ. ինձ խաբեց,
Ուրիշին սիրեց,
Ախ, նա ինձ դեռ վաղ
Պատրաստեց դագաղ:

Ս. Շահազիզեանց: Հիւսիսափայլ, 1861 Թ. Ե. 342—843:

---

## 237

### Մուխամբազ.

Քու մասին, իմ աչքի լոյս, ինչ ասումեմ՝ լաւ եմ ասում,
Ցաւումեմ՝ ափսոսումեմ, ունելով իրաւ եմ ասում,
Ամէն տեղ, ամէն բանում՝ քեզ քաջահամբաւ եմ ասում,
Քու խորհուրդըդ ամէնի մօտ մի անիլ չաւ [1]) եմ ասում,
Քու անզգոյշ միալըդ՝ ինձ համար մեծ ցաւ եմ ասում:
Գանձը ժանգի համար է՝ մարդուս անունն է գովելի,
Բարի ընթացքը՝ կատարեալ կեցութիւնն է գովելի,
Անունի տարածվիլը՝ անհատ արդիւնն է գովելի,
Դու մի կարծիլ՝ թէ միայն գեղեցկութիւնն է գովելի,
Պակասամիտ սիրունին՝ ես մին դատարկ գաւ [2]) եմ ասում:
Բայց ասեմ՝ գեղեցկութիւնն Արարչի մէկ պարգևըն է,
Հողանիւթ գոյացելոց՝ մէկ բարեբեր անձրևըն է,
Բայց շուտով կ'թարշամի՝ արմատը չէ-տերևըն է,
Գիտութիւնն ով աչքի լոյս՝ մարդուս երկրորդ արևըն է,
Ո՛չ գիշեր կ'ընդունէ՝ ո՛չ կըսիրէ սեաւ եմ ասում:

1) Հուչակ, համբաւ. Չաւ անել-հուչակ հարկանել, համբաւել, հուչակել, քարոզել: 2) Խեցեղէն երկայնավիզ անօթ ինչ գինույ:

Ինձանից միտք ծախու տա՝ անհոտ բուրաստան մի՛ լինիլ,
Խրատի միշտ կարօտի՝ շատ ինքնահաւան մի՛ լինիլ,
Դու բարեյն լե՛ր փափագող՝ չար սովորութեան մի՛ լինիլ,
Ընկայել լուր մի՛ հանիլ՝ կամ վատաբերան մի լինիլ,
Մի թողուլ թանգ օրերդ վատնեցութեան գրաւ եմ ասում։
Գիտումեմ, որ յարգի է իմաստութեան քա՛րը քու մօտ,
Շատախօս չէ՛ երևիլ՝ ինձ նման անճարը քու մօտ,
Տեսնումեմ շնորհաց ոգին՝ և գիտութեան բարը [3]) քու մօտ,
Ամենևին չեմ ուզում՝ որ զօրանայ չարը քու մօտ,
Էս Շիրինըս ահա՛ քեզ խորհուրդըս լեզուաւ եմ ասում։

ՍԷԼԴ ՇԻՐԻՆ։

---

238

Թամամ աշխարհքումն չկայ մին, աննման ջան, քեզի պես,
Ճ'ակատն մէյտան, քեզի պէս,
Ունքերն քեաման, քեզի պէս,
Աչքերն մաստան, քեզի պէս,
Պռօշն մարջան, քեզի պէս,
Սուրահի կեարդան, քեզի պէս,
Կինն ո՞նց է կարող ծնանիլ մարալ ու ջէյրան, քեզի պէս։

Քեզ տեսանողն ասումէ. սա հողեղէն չի, հրեշտակ է,
Կերպարանքն արեգակ է,
Ծար թուշն մին լուսնիակ է,
Աչքերն վառած ճրագ է,
Լեզուն դժոխքի կրակ է,
Բուխաղն մեղր ու կարագ է,
Որքան վարավուրդ եմ անում՝ չկայ էլ ինսան քեզի պէս։

Երեսիդ մտիկ անողն ասումէ. քաշած պատկեր ես,
Ոտից ցգլուխդ դիփ սէր ես,
Ամէն բանից գեր 'ի վեր ես,

---

3) Բարք, ճանաչմունք, սկըզբունք. պտուղ։

Իմաստակէր գլխի տէր ես,
Նշարիչըդ թէ կու սիրես,
Սխալմունքս պիտի ներես,
Որ կամենումեմ ասել՝ չկայ մեհրիբան քեզի պէս։

Ինչ տեղով որ անցանումես, ասումեն. եարաբ՝ սա ով է,
Զանդերձն դիփ կարմիր մով է,
Երեսն մախմարի խով է,
Զանգարուլթիւնով մին ծով է,
Ներան պիտումէ՝ որ գովէ,
Նըպատմելի շնորհքով է,
Կենացս մէջն չեմ տեսած Սուլթան ու Խաղան քեզի պէս։

Գեղեցկութիւն բաժանողից շատ փայ ստանողն դու ես,
Միշտ ուրախանողն դու ես,
Նման իմանողն դու ես,
Գաստաստան անողն դու ես,
Մարդոյ ջան առնողն դու ես,
Սէյրեադ սպանողն դու ես,
Քեամանդարների միջումն չկայ մին որսկան քեզի պէս։

Գ. Յ—Յ. Մոգաթեան։

---

## 239

Այմէն միտս ընկնելով էն եարս իմ,
Կորցնումեմ դողրու ճանապարհս իմ,
Թալաղ չունեմ, ծոցս ընկաւ քարս իմ,
Նախ քաշելով կորաւեց ջեկեարս իմ,
Նստուած սիրես ինչպէս կուլի ճարս իմ։

Աշխի մէջն ընկնողն կուլի ծումի պէս,
Թէկուզ աշխարհք անի կեր ու խումի պէս,
Վառվեցի՝ հալեցի թափած մումի պէս,
Ջրերի հետ խառնըւեցի ղումի պէս,
Ջունուն Վարդան աշըղի Մաջնունի պէս

Լէյլու համար ման եմ գալիս սարս իմ։
Խնահր ա տուել՝ չուխ բօյիդ սումբուլ կասեն,
Փայլուն ջամալդ ծովի հուլ կասեն,
Զանիդ տակին թուշ չե՛ն ասիլ, կուլ կասեն,
Որ դռանդ կանգնեմ՝ ինձի ղուլ կասեն,
Սարդի կարօտ մայիսվայ բիւլբիւլ կասեն,
Գիշեր՝ ցերեկ չի՛ գալիս ղարարս իմ։

Հօգէն մօտիկ մին աղալաթ Խան կուզեմ,
Օրինաւոր վճռող դիւան կուզեմ,
Էս հագաղս եարս ինձի տան՝ կուզեմ,
Եարիս հետ քէփ անելու սաղ ջան կուզեմ,
Էս աշխարհումս մին լաւ սիրական կուզեմ,
Անսիրական ի՞նչ կանեմ աշխարհս իմ։

Ողորմի մեռնողներուն, ապրին էլ սաղերը,
Գարունք բացուի՝ դաստով գնանք բաղերը,
Կանաչ տեղը մո՛րթենք գառի չաղերը,
Արնոտ լինի մանուշակի թաղերը,
Միսկին-Բուրջին ասումայ էս հաղե՛րը,
Զէք հաւատում՝ կարդացէք դաւթարս իմ։

Միսկին-Բուրջի։

---

## 240

### Առ սիրականն։

Ո՛վ անողորմ եար,
Քաշի՛, մօտդ տար.
Քեզնից առաւել
Զունիմ սիրահար։
Տեսակով գեանջ ես,
Սիրոյ նահանջ ես.
Ինձ բա՛ւ է տանջես
Սիրովդ չարաչար։
Ինձ արա՛ խնամ,
Քիչ ուրախանամ.
Մինչև ե՞րբ մնամ
Էս անմխիթար։
Լո՛ւր պաղատանքս,
Ասեմ անցանքս.
Լուսաւոր կեանքս
Մի՛ անիլ խաւար։
Ողորմեա՛ թերի,
Կարօտ եմ սէրի.
Դառել եմ գերի
Քեզ միշտ՝ անդադար։

Մեռայ հաւասու,
Ի սէրն Աստուծոյ
Գիւրջի Նաւասու
Յաւէտն մի հնար։

Գիւրջի-Նաւէ։

---

## 241

### Ծիծեռնակ ծիծեռնակի ոճով։

Սիրակ՛ան, սիրակ՛ան,
Դու իմ սէր պատուական,
Մինչև ե՞րբ վշտահար,
Էս մաշվիմ սիրավառ։

Քո սէրը ինձ մաշեց,
Էւ կեանքս խարշատեց.
Մի՞ թէ դու, օվ անգութ,
Չե՞ս ըզգում սիրոյս ուխտ։
Սիրակ՛ան սիրակ՛ան, և այլն։

Ախ մինչ ե՞րբ ես այսպէս,
Տագնապիմ տատկապէս,
Մինչև ե՞րբ անընդհատ.
Հառաչեմ յուսահատ։ —
Սիրակ՛ան սիրակ՛ան,
Դու իմ սէր պատուական,
Մինչև ե՞րբ վշտահար,
Էս մաշվիմ սիրավառ։
Գիշերը քուն չունիմ,
Ցերեկը վիշտ ունիմ,
Բոլոր կեանքս անհանգիստ,
Ինձ չկայ կաց ու նիստ։
Սիրակ՛ան սիրակ՛ան, և այլն։

Մի՞ թէ դու սէր օտար
Որ պաշտես քո սրտում...
Իսկ և ինձ այց կ՚առնես,
Սեաւ մահուան դագաղո՞ւմ։
Սիրակ՛ան սիրակ՛ան, և այլն։
Ահ խղճա՛ սիրակ՛ան...
Տուր ինձ յոյս հարսնական.—
Թո՛ղ կապվինք մի հոգով,
Վայելենք սէր սիրով..։
Սիրակ՛ան սիրակ՛ան,
Դու իմ սէր պատուական.
Մինչև ե՞րբ վշտահար,
Էս մաշվիմ սիրավառ։

Ց. Դ. Հիւսիսափայլ, 1862 Թ. ե. 262:

---

## 242

Կապոյտ երկնքում
Աստղեր են փայլում,
Այլև լուսնակը.
Ամենից սիրուն,
Ամենից փայլուն
Էն արեգակը։

Կանաչ դաշտերում
Էւ այգիներում
Ծաղիկներ կան շատ.
Բայց չէ ոչ մինը
Վարդի նմանը,
Նա է բնութեան զարդ։

Սիրուն աղջիկներ,
Ինչպէս ծաղիկներ,
Շատ տեղ շատ կան.

Բայց իմ ընտրածը,
Սրտիս սիրածը
Հրեշտակի է նման։

Գ. Բարխուդարեանց։ Հիւսիսափայլ 1863—1864 Թ. ե. 603—604։

---

## 243

Ի Ննջմանէդ արքայական, զարթիր նազելի իմ, զարթիր,
Ինչպէս Նշոյլն արեգական, զարթիր նազելի իմ, զարթիր։
Պատկեր սիրուն տիպ բոլորակ,
Լրացելոյ լուսնոյն քատակ,
Ո՛չ գտանի քեզ օրինակ. զարթիր. և այլն։
Այդ քո տեսիլդ զոր դու ունիս,
Արար ծառայ քեզ զգերիս,
Արևակէզ գուցէ լինիս, զարթիր. և այլն։
Դառին սրտիւ քանի կոծամ,
Ե՞ս վարդ կարմիր և անթառամ,
Տես թէ զիարդ խղճալի կամ, զարթիր. և այլն։
Տապ և խորշակ ժամանեցին,
Զթերթք գեղոյդ այրել կամին,
Քանզի էանց գիշերն մթին, զարթիր. և այլն։
Ես աննման իմ գովելիս,
Ի մէջ ականց գեղ քո մատնիս,
Ի ռահեակ սոյն թուականիս, զարթիր. և այլն։

---

## 244

### Տաղ վարդի և պիւլպիւլի։

Պիւլպիւլն նստել էր լալով,
Վայ կանչելով,
Վարդին համար, վարդին համար։
Շատ աղաչէր եասամանին,
Մէկ խապար չունիս իմ խանէն,

Ղուրպան լինիմ նորա ջանէն, վայ կանչ. և այլն։

Ջինքն լէր յինքն վայ կանչէր՝
Մանուշակ ծաղկին աղաչէր,
Խոնարհէր ոտքըն պաքէր, վայ կանչ. և այլն։
Սարի սնպուլն բացուեցաւ՝
Պլպուլի աչքն թացուեցաւ,
Արիւն արտասուօք լցուեցաւ, վայ կանչ. և այլն։
Գոյնն քո թոռոմեցաւ լալով,
Վարդին հետ այսքան շուրջ գալով,
Պիւլպիւլն շրջէր ողբալով, վա՜յ կանչ. և այլն։

---

## 245

Ո՛վ իմ սիրելի մէկ մօտս արի
Զարգամ քու դուռն, գալս իմացիր.
Երկու աչքիցս արիւն է կաթըմ,
Գլխիս վա՜յ տալով լալս իմացիր,
Զերիք է, մուրվաթ արա,
Եա՛ր, հերիք է, մուրվաթ արա.
Նահախ տեղան մի՛ չարչարիր,
Մէկ ռահմ արա, եար քեզի ղուրբան։

Սրտիս դարդերն չո՞ւմ չես իմանըմ,
Ինձ նահախ տեղան չո՞ւմ ես սպանըմ.
Աչքիդ տակովն մտիկ ես անըմ.
Անմռունջ բարով տալս իմացիր։
Զերիք է. և այլն։

Մէկ խալվաթ օթաղ, մէկ ես ու ես եմ,
Արի դու իմ մօտ, քեզ հետ մէկ խօսեմ.
Բացեմ դարդերս, անկաջ դիր ասեմ,
Իմ քոռ անբաղդ եղբալս իմացիր։
Զերիք է. և այլն։

Էկ մին բան արա իլնեմ քեզ ռազի,
Ինձ նահախ տեղան եկ մի՛ տալ ջազի.
Ինքդ ֆիքր արա, եար, քեզ ու քեզի,

Սրտիս մէջի խիալս իմացիր։
Ջերիք է. և այլն։

Էշխիդ կրակն սրտումս վառ այ,
Դերդ ու չիկեարս դառելայ եարայ.
Աստուածդ սիրես մէկ ըռահմ արա,
Խեղճ Թուրինջն եմ ես, հալս իմացիր։
Ջերիք է. և այլն։

Թուրինջ։

---

## 246

Տասնուհինգ օր եկած բոլորված լուսին,
Կապել այ ունքերդ կամարի վերայ.
Պուռնիցն դուրս կը գաս ղառով զարդարված,
Թամամ շողքդ կնկնի աշխարհի վերայ։
Բերանդ աղբիւր այ, աբուհայաթ այ,
Աջ ու ձախ ունքներդ շարբաթ ու կաթ այ,
Պռոշներդ ղանդ այ, լեզուդ նաբաթ այ,
Խօսուածքդ այ քաղցր շաքարի վերայ։
Թուրինջն եմ, ման եմ գամ դավրիշի նման,
Խմած, դիւահարված սարխոշի նման.
Մնացել եմ մոլորված բայղուշի նման,
Նստած եմ վայ տալով չոր քարի վերայ։

Թուրինջ։

## ԳԼՈՒԽ Ը.

### ՏԽՈՒՐ ԵՐԳԵՐ.

247

*Երգ մեռանող հայրենասիրի։*

*Ազնիւ ընկեր, մեռանումեմ,*
*Բայց հանգիստ եմ ես հոգով.*
*Իմ թշնամիքս ես օրհնումեմ,—*
*Օրհնումեմ քեզ Աստուծով։*
*Մեռանումեմ, անգին ընկեր,*
*Չ՚գնահատած ոչ ոքից.*
*Բայց հաւաստեաւ անձնանըւէր*
*Ազգիս մշակ կ՚հաշուիմ։*
*Ազնիւ ընկեր, չը՛ մոռանաս.*
*Անդաւաճան, ջերմ սիրով*
*Ես սիրել եմ իմ հայրենիք,—*
*Գնա՛ և դու նոյն շաւղով։*
*Խեղճութիւնը Հայոց ազգի*
*Կարեկցաբար մտածիր.*
*Ոսկէ գրքոյկն Եղիշէի*
*Քաջ առաջնորդ քեզ ընտրիր։*
*Այնտեղ սուրբ կրօն, ազգ միաբան*
*Ազատ կամքով ու խիղճով;*
*Այնտեղ Վարդան, անմա՛հ Վարդան,*
*Իւր խնկելի Քաջերով։*
*Հայրենիք, — սեղան սրբութեան —*
*Ես Աստուծոյ առաջև*
*Շատ կ՚աղաչեմ, շատ կ՚արտասուեմ,*
*Որ ծագէ քեզ նոր արև։*

Իմ մանրիկ, մահըս մօտ է,
Բայց հանգիստ եմ ես հոգով.
Որովհետեւ խիղճս արդար է,
Ճշմարտութեան ջատագով։ —

Ս. Շահազիզեան։

---

## 248

### Վայր ընկնող աստղեր։

(Թարգմանութիւն)։

«Հայրիկ, տեսաց դուստրը հօրը,
Կապոյտ երկնքի վերայ
Որքան աստղեր փայլուն վառ,
Ասես համար, թիւ չը կայ.
Ասում են որ ամենայն մարդ
Աստղիկ ունի երկնքում.
Ճշմարի՞տ է սա, հայրիկ,
Իմը ո՞ր տեղ է փայլում»։
— Այո՛, դստրիկ, այդ աստղերը
Ունին հաշիւ ու համար,
Եւ մեզանից իւրաքանչիւր
Մի աստղ ունի իւր համար։
«Հայրիկ, տես տես, աստղը թռաւ,
Երկնքից պայծառ գիծ թողեց.
Աստղիկն ընկաւ երկնքիցը,
Միւս անգամ այլ չերեւեց»։
— Ո՛վ իմ դստրիկ, հանգիստ կացիր,
Դա մեծատան մի աստղ էր,
Որ իւր օրում, իւր կեանքումը
Խիղճ ասածը չը գիտէր.
Աղքատները նորա դռնից
Գիշեր ցերեկ հալածւած.
Մի մարդ չը կար նորան ծանօթ,
Որ չը լինէր վշտացած։
«Հայրիկ, տես տես, աստղը թռաւ,
Երկնքից պայծառ գիծ թողեց,

Աստղիկն ընկաւ երկնքիցը,
Միւս անգամ այլ չերևեց»։
— Ով իմ զաւակ, մի՛ վրդովվիր,
Դա աղջկայ մի աստղ էր,
Որ իւր հօր ու մօր խօսքը
Իւր կեանքումը յարգած չէր.
Նա փախել էր իւրեանց տնից....
Մուր էր քսել տան վերայ....
Իւր ծնողքը լացուցել էր,
Ինչքը վատնել անխնայ։
«Հայրիկ, դարձեալ թռաւ մի աստղ,
Վայր ընկաւ նա երկնքից.
Հայրիկ, ո՞ւմ աստղն էր արդեօք,
Որ զրկվեցաւ իւր տեղից»։
Ո՛հ դստրիկս, հանգիստ կացիր,
Կեղծաւորի դա աստղ էր,
Որ իւր օրում ուղիղ մի խօսք
Մարդու երբէք ասած չէր.
Փարիսական իւր ձևերով
Աշխարհք խաբեց, զարմացուց,
Այդ պատճառով Աստուած նորա
Աստղի լոյսը խաւարցուց,
«Հայրիկ, տես տես, մի աստղ թռաւ
Եւ գիծ անգամ չը թողեց,
Աստղիկն ընկաւ երկնքիցը,
Միւս անգամ այլ չերևեց»։
— Ո՛հ, սիրական, խաղաղ քնա՛,
Բռնակալի դա աստղ էր,
Որ աշխարհը իւրեան գերի
Ծնած օրից կարծել էր.
Շատ հալածանք, շատ նեղութիւն,
Պատճառեց նա իւր կեանքում.
Շատ տուն քանդեց, շատ մարդ զրկեց,
Գութ չունեցաւ իւր սրտում։
«Ապա այն ինչ աստղ է, հայրիկ,
Որ այնպէս պարզ վառվում է,

Նորա մաքուր պայծառ լոյսը
Չորս կողմը բակ բռնել է»։
— Ո՛հ իմ դստրիկ, աղօթք արա
Դա ծերունու մի աստղ է,
Որ իւր կեանքում ոչինչ մարդու
Ոչինչ վնաս տուած չէ.
Այն լուսաւոր բակն է նորա
Առաքինի գործքերը.
Աղօթք արա, որ երկարվին
Նորա կեանքի թելերը։

—

Շատ օր չանցաւ, երկնքից
Մի այլ վառ աստղ պակասեց.
Ովլի աստղիկն էր որ ընկաւ,
Իան հարցանող չերևեց։
Մինչ դեռ լուսինը արծաթափայլ
Լոյս էր տալիս գիշերին,
Խորհրդաւոր մինչ տիրել էր
Անվրդով խոր լռութիւն,
Մի արտաթափ, մազերն արձակ
Վազեց աղջիկ սգաւոր
Գնաց ի գեղի գերեզմանքը,
Ծունկ չոքեց մի շիրմի մօտ։
«Հայրիկ, աստղիկդ չէ փայլում,
Դու յաւիտեան քնեցիր.
Առ ինձ քո մօտ, քո ծոց, քո գիրկ,
Ինչո՛ւ անտէր թողեցիր։
Իմ աստղիկն ասա՛ նոյնպէս,
Որ չը փայլի. հերի՛ք է.
Այս աշխարհը ինձ առանց քեզ,
Մութն ու խաւար մի բանտ է»։

—

Մի մարդ չը կար, որ նկատէր,
Որ հետևեալ գիշերին
Պակասեցաւ երկնքից
Մի պայծառ աստղ խնդագին։

Երրորդ օրը շատ սգաւորք
Փորեցին մի գերեզման,
Ուր թաղվեցաւ իւր հօր մօտին
Մարմինը խեղճ աղջկան։

—

«Հայրիկ, տես տես, աստղը թռաւ,
Յետքից պայծառ գիծ թողեց,
Աստղիկն ընկաւ երկնքից
Միւս անգամ այլ չերևեց....»

Կոմս Էմմանուէլ (Միքայէլ Նալբանդեանց)։ Հիւսիսափայլ, 1858 Թ. Ե. 130—133։

---

## 249

### Հառաչանք։

Սա տխուր վիճակ տարաբաղդ ազգիս
Ինչ արիւն արցունք կ՚հոսեցնէ,
Նորնոր յոյս տածող Հայոցս աչերէ։
Սա մեր անողորմ բաղդին հարուածներ
Քանի սրտառուչ հառաչանքներով
Ա՛մըեն Հայ սրտերն, գող տան ու երեր
Ո՞վ Տէր, բաւ չէ՞ն ինչ որ մինչև ցարդ
Կրեցինք սուր, ցաւ, աւար ու աւար՝
Ո՛չ դու հաշտութեան ծիածան զուարթ։
Մեր սուրբ հայրենեաց երկինք պարզեցեր
Եւ դեռ չշնորհած զԱրևն Հայրենի
Կը զրկես զմեզ Աստղէն Հայրենի։
Մէկ սիրտ, մէկ ոգի. ամենքս մէկ անուն,
Մէկ յոյս, մէկ հաւատք կըրող, մէկ արիւն,
Մէկ ապագայի և ակնկալու
Ի՞նչու չմիանանք 'ի մի յօդ սիրոյ։
Մի՛ զմեզ, Տէ՛ր, մի՛ պատժեր անաչառ,
Կեցուր քու շանթերդ բարկութեան արդար,
Զիրար սիրելու, օգնել իրարու
Կ՚ուխտեմք աւասիկ ուխտ սուրբ 'ի սրտէ

Ու խաղաղութեան թող գայ հըրեշտակ
Միութիւն և սէր պահել 'ի սիրտ մեր։

Ս. Գ, Գ, Փափազեան:

---

## 250

Ողբալից բանք Անի քաղաքին Հայոց առ Հայազգի ոմն,
որ գնացեալ էր նմա 'ի տեսութիւն։

Անի քաղաք նստեր՝ կուլայ, չ'կայ ըսող՝ մի՛ լա, մի՛ լա.
Կսես՝ քիչ է, թո՛ղ, ձայն՝ լայ. ափս, ե՞րբ լսեմ՝ մի՛ լա, մի՛ լա.
Շատ ցաւերով կ'այրիմ՝ տապիմ, չունիմ մէկ մարդ հաւատարիմ,
Որ խղճալույս գայ՝ մօտանայ, հէշ չէ՛ ըսէ՛ մի՛ լա, մի՛ լա.
Ա՜յ Հայ տղայ, խղճա՛ ինձի, տե՛ս՝ թէ քո Անին ինչպէս է,
Հերիք՝ ես լամ, դու չ'գթաս, չէ՞ քոյ Անին ափսոս է։
Ա՛խ ու վախով օրերս անցաւ, լալէն աչքերս կուրացաւ,
Որբ մնալն ինձ վըճակեցաւ, բախտս բնաւ զիս մոռացաւ.
Կորուցեր եմ թագաւորներ, ժողվեր եմ գլխիս քօռ բուվեր,
Որք միշտ կ'երգեն «Անին անցաւ, Անին աւերեցաւ»։
Անին եմ շատ մարդաբնակ, մնացեր եմ դատն աւերակ.
Իմ լացն, իմ կոծն, իմ աղաղակ՝ անտէր որբերու նմանակ.
Երբեմն էի շատ աննման, Հայոց քաղաք արևելեան.
Աւերեր եմ սեփահատակ, նստեր՝ կուլամ ես միայնակ։
Եկար՝ տեսար, դարձեր՝ կերթաս, լալով կ'սես՝ «բարեաւ մնաս»
Աստուած սիրես՛ չ'մոռանաս, Մասիս սարին երբ մօտենաս,
Ըսես իմ քա՛ջ Արարատին. «Նստեր՝ կուլայ քո խեղճ Անին»,
Կ'սէ. ե՞րբ աւետիք կ'տաս, թէ՝ «իմ Անի, հերիք է լաս։»

Հայասէր ոմն:

---

## 251

Իմ երգը...։

Հեռացել եմ իմ մայրենի աշխարհից,
Սերտ բարեկամք անջատած են ինձանից.
Թափառում եմ ես այս օտար երկրումը,

Մենակ բըսած ծաղկի նըման դաշտումը։
Կամաց կամաց տարիները անցնում են,
Մեզ նորոգած գարուն, ամառ դարձնում են.
Միայն իմ խեղճ կեանքը չունի ոչինչ նոր,
Ինձ երեկը կըրկնըվում է միշտ այսօր.
Ասպարիզիս նեղ է ճանփան ու փըշոտ,
Խեղճութիւնըս համարում են ինձ ամօթ,
Իմ վիճակին կարեկցութիւն մարդ չունի,
«Դա, ասում են, իր կեանքումը դարդ չունի»։
Ես դարդ ունիմ, պարգըս մեծ է ու պէսպէս,
Բայց չեն տեսնում ձեր աչքերը կարճատես։
Երբ ես մըտայ անհիւրընկալ այս աշխարհ,
Քանի րոպէ բաղդը ժըպտաց ինձ պայծառ.
«Հա, ասացի, դարձել է իմ անիւը,
Լըրացել է իմ վատ բաղդի չար թիւը»։
Յանկարծ՝ փըչեց անտուժելի հիւսիսին,
Թառամեցուց վարդ, մանուշակ մայիսին.
Այսպէս չորցուց իմ նազելի հասակը,
Իմ անողորմ, անագորոյն վիճակը։
Ա՜խ, մօտեցի՛ր օրհասական օր մահուան,
Բե՛ր քու հետը սև հող ու նեղ գերեզման,
Թո՛ղ սառ լինի իմ նոր տանը յատակը,
Ծանր քարէ վըրաս ծածկած վերմակը։
Բայց ա՜խ՝ երբ որ կանցնի ամիս ու տարի,
Կըմամռոտի գերեզմանը այն քարի,
Հետքը անգամ չի մընալու իմ խաչին,
Իմ անունը, իմ յիշատակ—կըկորչին.
Բայց կ'ուզէի թողնել այստեղ մի արձան,
Որ դարէ դար մընար ամուր անկործան...
Ես երգեցի երգ ողորուն ու անուշ,
Իմ քընարի ձայնն էր մեղմիկ ու քընքուշ.
Մի՞թէ այնքան անգութ կ'լինի Լետա գետ,
Որ անունըս անգամ կ'անէ նա անհետ։

Թ. Ց—Գ. Պատկանեան։

---

252

## Երգ բանտարկելոյ

(Թարգմանութիւն)

Ո՜վ դու նրժգեհ ծիծառն անմեղ,
Ի վարանաց դարեալ բունիկ,
Զի՞ տրտմագին յընդհատ գեղգեղ
Նուագս հընչես, ողորմ հաւիկ։
Թէ տարանջատ քոյդ վարուժան
Ըղձքեղ միայն աստէն ելիք
Յանմըխիթար սուգ ինձ նըման,
Ողբա ողբա, ողորմ հաւիկ։
Բայց երանի՜ քեզ բիւր հազար
Զի թռիչս հարեալ ընդ սար ընդ ձոր,
Ազատ յայերս յածիս կոծիս
Կրկնեալ ըղձքո զերգ տարփաւոր։
Յանկարծ և ես....այլ զիս եղո՜ւկ.
Դառն արտասուք են իմ բաժին.
Հեծեմ տխուր ՚ի յարկս անձուկ
Յիշեալ ըզփառս իմ զառաջին։
Ոչ ինձ արփւոյն ծագէ նըշոյլ
Յաղջամըղջին յայս օթևան,
Եւ ոչ հողմիկ հեշտին ՚ի սոյլ
Հասուցանէ զիմս առ քեզ ձայն։
Յառաջ խաղայ և այս աշուն,
Եւ դու կազմիս յերկայն ուղին.
Շէնք և աւանք և ծովք անհուն
Քաղցր ՚ի ձայնէդ ողջունեսցին։
Իսկ ես այգուն այգուն ՚ի կոծ
Զաչս իմ բացեալ արտասուալից,
Եղերական քոյին երգոց
Յանժամ մըտօքս ՚ի լուր կացից։
Մինչ տարափով ՚ի խիստ մըրրիկ
Թօթափեսցի ձիւն փըքալից,
Ես կարծեցից թէ քո ձայնիկ

Ինձ և յայնժամ է ողբակից։
Ո՛վ դու ներժդեհ ծիծառն ազատ
Ըզքեզ տանեմ ես երդմընի.
Գընա ողջամբ յերկիր ՚ի զատ.
Ողջամբ դարձցիս ՚ի գարնայնի։
Խաչ մի գըտցես դու աստանօր,
Ի նմա հանգիր զայն երիկուն.
Տուր ինձ զյետին ձայնիդ համբոյր,
Եւ երթ ողջամբ հաւիկ սիրուն.

Գրաւոր։ Բազմավէպ, 1847 Թ. Ե. 226։

---

## 253

### Ա՛րշակ։

Ծլինքը արևառ, քրտինք երեսին, բեռը շալակած,
Գարիբ Արշեցին մայդանի միջին կանկ առաւ յոգնած.
Կոշտացած ձեռքը երեսին տարաւ, քրտինքը սրբեց,
Բայց երբ որ աչքը չորս կուման դարձուց՝ ծանր ախ քաշեց.
Տեսաւ նա շըքեղ մեծ մեծ դարբասներ գոյնզգոյն ներկած,
Պատշգամբի վրայ գօզալ հայ կանայք շար ՚ի շար նըստած,
Գումաշ հովհարով մարմառ թըշերին, հով ու զով տալիս,
Փրփուր շորերը թեթև քամիէն քըրփռան գալիս,
Ջուխտակ արտասունք ջուհար ակի պէս աչքին ցոլացին.
«Արշակ, չիլի՞ թէ միտքըդ բերիր քու կարօտած եարին».
Արշակը լուռ էր, նա ինձ չի տըւեց ոչինչ պատասխան,
Գարբասը թողած՝ աչերը դարձուց նա դէպի մայդան.
Երկլուծ կառքի մէջ տեսաւ թէք ընկած մէկ նիհար տըղայ,
Չաշմակը աչքին, բերնին նարգիլէ՝ զինչ թուրքի աղա,
Արշակի շըթին աններըմարելի մէկ ժըպիտ խաղաց
«Արշակ՝ այդ ինչ էր, որ սիրտդ խօսեց՝ ծաղրը, թէ նախանձ».
Արշակը ինձի պատասխան չի տուեց, ասես թէ լալ էր,
Բայց հոգեբանը իսկոյն կ'իմանար հոգին ինչ հալն էր.
Մայդանը թողած նա աչքը դարձուց լայն մեծ փողոցին,
Աչոք չիմանալ թէ այն րոպէին ի՛նչ խօսեց հոգին.
Գունդ գունդ գալիս էր ձիով ու հետի տղատօքէն լաշքեար.

Առջևը առած հարուր ու հազար թմբկահար, փողար.
Ցնծալից երգով զօրքը տօնում էր իր յաղթութիւնը.
Վա՜յ քեզ խեղճ....... քանդել էր քու ազգի տունը.
Արշակը լուռ մունջ մէկ դի քաշուեցաւ, դողդոջուն ոտքով
Իր ճանփան գընաց ծանըր տնքալով, կամաց երգելով.

Բահարն էկաւ՝ ծառը ծիլ ծիլ ծաղկեցաւ,
Ձիւնը փախաւ, երբ արեւը ծագեցաւ,
Երնե՜կ արեւն կամ բահարը մեր Հային
Խելք, միտք, նոր բարք, եա քի նոր վարք շնորհէին.
Հա՜յ բաց աչքըդ, քու կորուստը մօտիկ է,
Չիմանաս որ տրին տարին զատիկ է,
Եալփաղանը, ղումաշ շորը քու եարի
Սանդուկներէդ շատ հազարներ դուս տարին.
Ի՞նչ զարար որ՝ կընկադ փէշը կարճ ըլայ,
Տափն աւլելու համար ասեմ աւել կայ,
Բան կ'ասէ՞ի քեզ անօսր շորի դէմ,
Երբոր եարիդ բուդը չերևնար տակէն.
Քեզ ո՞վ ասաց, որ ուտումը հագուել է,
Օխտն տարի հետը գաղտուկ պագուել է,
Թէ որ տա էր՝ տայիր զաւակըդ Սուլօին,
Նա քեզ մուֆթա կըհասցնէր քու մուրազին։
Աս ինչ տեսնամ — սէլավ կուգայ հիւսիսէն։
Հա՜յ մարդ՝ թէզով ժողվէ քու փաս ու փուսէն;
Ա՛ռ գըլօխդ, քօչէ դէպի քու աշխարհ,
Քանի օրէն ունքդ բունըդ չես ճանչնար։

Ռ. Ց—Գ. Պատկանեան.

---

254

Երազ։

Ես լսեցի մի անուշ ձայն, —
Իմ ծերացած մօր մօտ էր։
Փայլեց նշոյլ ուրախութեան,
Բայց ափսո՜ս, որ երազ էր։
Կարկաչահոս աղբիւր այն տեղ

Թաւալումէր մարգարիտ. —
Նա յստակ էր որպէս բիւրեղ,
Նոյն երազ էր ցնորամիտ։
Եւ մեղեդին տխուր, մայրենի
Յիշեց մանկութեան օրեր. —
Մօրըս համբոյրն ես զգացի. —
Ո՛խ, ափսոս, որ երազ էր։
Կուրծքին սեղմեց կարօտագին.
Աչքերս սրբեց—շատ թաց էր,—
Բայց արտասուք գնում էին
Ո՛խ, այդ ինչու երազ էր։

Ս. Շահազիզեան։ Հիւսիսափայլ, 1863—1864 Թ. ե, 399։

---

255

Իմ սոխակին։

Սոխակ՝ ինչո՞ւ դադրեցար քու անուշ երգն երգելից,
Որ քամում էր արտասունք շատ իմ էրված աչերից,
Մի՛տըդ է երբ ծագում էր արշալոյսը գարնային,
Քանի՜ դու միտս բերիր իմ տարփան ցանկալին...
Նոյն յիշատակն անոյշ էր, ինչպէս երազ վաղանցիկ,
Որ գէ՛թ վայրկեան թշուառին դարձնում էր նա երջանիկ.
Համակ աշխարհ մոռացած, ունկս քու ձէնին յառած,
Մըտքով թռչում էի ես իմ հայրենիքն կարօտած...
Գիտեմ, դու էլ ես կարօտ մշտագարուն այն դրախտին,
Որից հեռու մեզ չիկայ քաղցր ժըպիտ մեր բաղդին.
Ո՞վ կուտայ ինձ թև թռչնի, որ խոյանամ սըլանամ,
Օդն ու ամպերը ճեղքեն ու տանին ինձ Հայաստան.
Թէ նորա օդը շնչեմ, այն կենսատու սուրբ օդից —
Գիտեմ, փրկուելու եմ անբուժելի իմ ցաւից...
Գարուն անցաւ, ա՜խ սոխակ, խոսուն լեզուիդ կապ դըրաւ,
Ու խեղճ վարդի թերթիկի հետ շարականդ էլ տարաւ։
Կբանամ դուռը վանդակիդ, ազատութիւն քեզ կուտամ,
Բայց աղաչում եմ քեզի, թռիր դէպի Հայաստան.
Վարդ ես ուզում՝ այնտեղ է, անամպ երկինք, մեղմ հովեր,

Ճաճանչափայլ արեգակ, կարկաչասահ առուներ։
Ես էլ քեզ պէս կարօտ եմ բնութեան պայծառ օրերին,
Մէգ, մառախուղ, հեղձուկ օդն հալեց, մաշեց իմ հոգին.
Փըչեց հողմը Հիւսիսին, փոշին երկինք բարձրացուց,
Կտրի վրայից ագռաւը խռպոտ ղաղան հնչեցուց.
Ահա Հիւսիսի սոխակն, ահա Հիւսիսի այեր...,
Ի՞նչ էք կորցրել Հիւսիսում, ա՛յ խելացնոր խեղճ Հայեր
Ա՛խ, ես առել եմ նորա կեանք ու վայելքը պատիր,
Տուէք օդը իմ երկրին, դալար դաշտն ու վարդ կարմիր։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

---

256

Աշխարհումս ամենայն բան մին դատարկ ձայն է, իմացէք [1]),
Դիփ անհիմն են, իսկ հիմնաւոր Աստուած միայն է, իմացէք [2])։

Ութսուն տարի կեանք ունենաս՝ քառասուն ամն գիշեր է.
Մինչ 'ի քսանն երեխայ, վաթսունամեայն յատուկ ծեր է.
Ասէք՝ տեսնեմ, մարդն էլ այս աշխարհումս ինչի՞ տէր է.
Տասն տարուայ համար քաշած ջաֆան ունայն է, իմացէք։
Շատ մարդ կայ, որ յիսուն տարի չարչարվելով՝ փող է կուտել
Յայտնի գիտենք, որ կու մեռնի՝ չի՛ կարիլ այն փողը ուտել.
Այնպէս մարդոյ սրտի մէջ սատանայն սենեակ է գտել.
Էն փողն դիփ, յետ ու առաջ, դժոխքի փայն է, իմացէք։
Երդում ուտելն մեզ համար եղել է պարտաւորութիւն.
Ստութեամբ էլ է ուտում այն, որ ունի հարկաւորութիւն.
Եկեղեցի գնալ գալն՝ դարձելայ կեղծաւորութիւն.
Ում գործն երդումի անկաւ՝ էնպիսոյ վայն է, իմացէք։
Ինչ մեղք սիրեմք՝ թո՛ղ անենք, վերջն առանց տեղ չենք մնալ,
Դժողք էլայ խօմ կու գնանք, թէ արքայութիւն չենք գնալ։
Մեր կամքերից երևումէ, որ սիրումենք գողանալ՝ շնալ.
Դարդ մէք անիլ՝ տարտարոսն երկայն ու լայն է, իմացէք։
Թէ Հռոմ, թէ Ռուս, թէ Յոյն, թէ Թուրք, թէ Մօլթանի,
Մէկս մէկու օգնական են՝ իբրև իւրեանց ազգականի.

1 և 2) Ամենայն տանց վերջումն կրկնեա՛ զայսոսիկ տողս։

Այս կանոնս էլ չի՛ խախտվիլ, Սէյեադ, ցօրն դատաստանի.
Մէկ մէկու անհաշտ թշնամի միմիայն Հայն է, իմացէ՛ք։

Գ. Ց—Ց. Մադաթեան:

---

## 257

### Գ. ա ն գ ա տ։

Ղարիբի սիրտն է խոց, ջիգէրն է վէրէմ,
Խըմած ջուրն է լեղի ու հացը հարամ։

«Կռունկ» երգ։

Հալածում է այլազգին ինձ իր բընիկ աշխարքէն,
Հիւրասիրութեան պարտքը իսպառ հանել է մըտքէն.
Ասում է «հէ՞ր ես ունայն երկրէ երկիր թափառում,
Մի՞թէ փոքրիկ խորշ չիկար քու հայրենի աշխարում»։
Ասացի թէ՝ անօրէնն կողոպտեց մեր հայրենին,
Հայաստանի մէջ փոքրիկ խորշ էլ չի մնաց Հային։
Ասաց «եթէ մարդ չունի իր աշխարումն կայարան,
Չէ՛ նա մարդու հաշւումը, նորա կեանքն էլ է ունայն»։
Ասացի թէ՝ ես մահին շատ եմ կանչել, չի լըսում,
Ասաց «դարձի՛ր հայրենիդ, թէ դու մահից չես սարսում։
Պանդխտութեան օրերըս անցնում եմ լաց արցունքով,
Իմ հայ լինելուս համար մարդ չի տալիս ինձ քարով.
Մատով վրաս նշանց են տալիս, վըրաս թափում են բիւր կատակ,
Իրար հարցանում են «Հայը ինսա՞ն է, թէ՞ նապաստակ.
Հայի երակների մէջ ջո՞ւր է վազում, թէ՞ արուն,
Թուր տեսնելիս զինչ մահից սարսափած հէ՞ր է վազում.
Հայի բայրաղի վրայ ի՞նչ էր գըրած՝ իմացէ՛ք.
— Թշնամին տեսնելիս արագ ու հեռու փախէ՛ք. —
Մէկն ասում է՝ «Կըռուփ մէջ հայի ՛ո՞ր տեղն է խոցած»
Ճակատը բերնին միւսը — մէջքն է անշուշտ անկասկած —
Մէկն ասում է «Հայ ազգի ի՞նչ էր զէնքը սոսկալի»
— Ամա՛ն, կեանքըս խնայէ՛ աղաղակելն խըղճալի։ —
«Բաս ասում են որ հայը օր մի եղել է խիստ քաջ»
— Հա հիմի էլ էդպէս է, միայն...իր կնկայ առաջ —

Անխում հընում հայը հըզօր էր յիշվում...»
— Ի՞նչ զարմանք, երբ կուրերին միականին է իշխում, —
Այսպէս կըծու խօսքերով ինձ բարեւում են օտարք.
Զընդան բանդ է իմ համար պանտխութեան լուս աշխարք։

Ռ. Տ—Գ. Պատկանեան:

Ռափայէլ Տէր-Գաբրիէլեան Պատկանեան, ծնեալ 1830. ի . է ստրկաւագութեան հօր նորա՝ ի Նոր-Նախիջեւան քաղաքի Հայոց. անուն մօր նորա Եղիսաբէթ Մելքոնեան, ի տանէ Սանդուկեանց՝ յԱստրախանայ։ Զառաջինն աշակերտեալ ի մանկավարժարանի հօր իւրոյ՝ չոգաւ ի Մոսկուա ի ճեմարան Վ. Լեհազնեայ Լազարեանց ի 1840 ամի. ուստի ի 1850 դարձեալ ի Տփխիս՝ կատարեաց զժամանակ ինչ զպաշտօն մանկավարժութեան ի Ներսիսեան դպրոցի. եւ ապա դիմեաց ի Դորպատեան համալսարան ի 1852: Անտի յետ քանի ամաց եկեալ ի Սանկտպետերբուրգ կատարելագործեաց զիւր հրահանգս ի Կայսերաքաղաքական համալսարանի. եւ ապա վարեալ զայլեւայլ պաշտօնս արքունի ծառայութեան՝ չուեաց ի Նոր-Նախիջեւան եւ անդ ի 1867 եբաց զդպրոց ի կրթութիւն Հայ մանկանց: Ի գրուոր երկանց նորա ի լոյս ընծայեալ են «Գամառ Քաթիպայ» եւ «Վարք Մեծին Պետրոսի»: Ունէր զհայերէն, զռուսերէն եւ զայլոց լեզուաց տարբան, եւ հրատարակէր ի 1865 ամի զշաբաթագիրն «Հիւսիս», զորս ի պատճառս տեղափոխութեանն խափանեաց: Ունի յամուսնութեան զդուստր վարժապետին Արաբացւոց լեզուի պարոն Յոհաննէսի Ամիտի՝ զՕլղայ, յորմէ ծնեալ է ի Սանկտպետերբուրգ զդուստր մի Սանդուխտ եւ ի Նոր-Նախիջեւան զորդի մի Գաբրիէլ անուն: Այս Օլղայ Պատկանեանն է, որ ի Գերմանական լեզուէ փոխադրեաց ի Հայ աշխարհիկ բարբառ զհամաշխարհական Պատմութիւն համառօտ, որ եւ տպագրեցաւ ի տպարանի նորին իսկ։

---

Տէր-Գաբրիէլ Պատկանեան, որդի Սերոբէի Տէր-Պետրոսեան Պատկանեան, Վարժապետ մականուանեալ, ծնեալ ի Տփխիս ի 1802 ամի. փետրվարի 26։ Անուն մօր նորա Մարիամ Միքայէլեան ի տանէ Կալէկայ Պապոյ։ Աշակերտեալ հօր իւրում եւ ապա ի Սեմինարիի ուսմաց Աստրախանայ, ի 1817 ամէ մինչեւ ի 1827. վարեաց զպաշտօն վարժապետութեան ի հոգեւոր դպրատան Հայոց եւ զատենադպրութեան ի կոնսիստորիային Հայոց Աստրախանայ, պարապեալ ընդ նմին ի թարգմանութիւնս եւ պէսպէս շարադրութիւնս. եւ ապա ի նմին ամի փոխադրեալ ի Նոր-Նախիջեւան, մինչեւ ի 1845 ամն շարունակէր զիւր մանկավարժութիւն, կատարելով եւ զպաշտօն քահանայական զոր առացեալ էր ձեռնադրութեամբ Մեծանուն Ներսիսի արքեպիսկոպոսի ի Գրիգորիոպօլիս, ի 1832. յունվարի 17։ Ի 1845 ամի տեղափոխեալ ի Տփխիս, քահանայագործեաց ի Նորաշէն եկեղեցւոջ եւ ամ մի եւ կէս վարեաց զպաշտօն Ինսպէկտորի ի Ներսիսեան դպրոցի։ Ապա ի 1851 վերադարձեալ ի Նոր-Նախիջեւան, հանդիպեցաւ չարաբաստիկ վիճակի եւ կորոյս զամենայն ինչ զոր ունէր. եւ ի 1863 ամէ մինչեւ այսօր կայ ի Սանկտպետերբուրգ յաննախանձելի դրութեան: Ի գրուոր աշխատութեանց նորա սակաւ ինչ գտանի ի լոյս ընծայեալ. Ի 1845 ամի էր գործակից «Կովկաս» Հայերէն Լրագրին ի Տփխիս. եւ ապա ի 1840—1851 ամսն յիւրում սեպհական տպարանի խմբագրէր զԱրարատ շաբաթագիրն իւր: Ի 1820 թուի ի լոյս էած զհամառօտ քերականական տետրակ «Ուղղափառութեան վարդա-

պետութիւնս անուանեալ. եւ ի 1825 զպատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ թարգմանեալ ի հեղինակութենէ Դիոդորի Սիկիլիացւոյ: Յերգոց նորա տպեալ են միայն՝ 1) Հայրենասէրք Արամեան. 2) Քընէ, քընէ՝ սիրուն որդի. 3) Գեղեցիկ Նախիջեւան. 4) Քրանաչան այգեպան. 5) Յուլոնեան Համբարձմայ. 6) Գեղգեղի. 7) Գեղապատակ պայծառանայ:
9) Վարդան Մամիկոնեան, 10) Համարչ Բ: 11) Միջնադէպք՝ Սեզք Հայոց ընդ Երասխ. եւ հիմնարկութիւն Նոր Նախիջեւան քաղաքի Հայոց. 12) Նեկօլ. 13 Ուսումնասիրութիւն եւ ուսումնարանք Հայոց:

---

## 258

### Աղքատ կին:

(Գաղղիերէնից)

Ցուրտը փչեց. ձմեռ սաստիկ.
Ձիւնը ծածկեց գետինը,
Ամենայն մարդ մնալ իւր տուն,
Պատսպարվիլ ցրտիցը:
Ժամի դռնում դողդողալով
Կանգնած է մի աղքատ կին.
Նորա հանդերձը պատառ, պատառ,
Չունի շալիկ իւր հագին.
Անհամարձակ նա իւր ձեռքը
Պարզում է անց կացողին —
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»:
Ձեզ, սիրելիք, ասե՞մ ով էր
Այս խղճալի աղքատը,
Այն ցրտումը, ոտաբոկիկ
Կանգնած, ժամի դռնումը.
Շատ ժամանակ դեռ չէ անցել,
Երբ նա փառքով ու պատուով
Ման էր գալիս փողոցներում
Իւր սեպհական կառքերով.
Այժմ, վախով նա իւր ձեռքը
Պարզում է անց կացողին —
«Ողորմութիւն արէք, պարոն,

Անտուն, անտէր աղքատին»։
Մինչ թատրոնում յայտնվումէր,
Մինչ խաղումէր հանդիսում.
Դղրդումէր թէատրոնը,
Նա դափնիք շատ էր հնձում.
Ժողովուրդը հաւաքվումէր
Մօտ թատրոնի պատշգամբին.
Չէր կշտանում նայել նորա
Քնքոյշ չքնաղ երեսին.
Այժմ նորան չեն ճանաչում,
Մոռացել են բնաւին —
«Ողորմութիւն արէք, պարոն
Անտուն, անտէր աղքատին»։
Ամենայն օր նորա դռնում
Կանգնած էին շատ կառքեր.
Միշտ հացկերոյթ, ընթրիք, գինի,
Նուագարան ու տաղեր.
Ամենայն ոք ցանկանումէր
Լինել նորան բարեկամ.
Ամենայն ժամ նորան բաց էր
Շռայլ քսակը մեծատան.
Այժմ զրկված ամեն բանից,
Չունի անգամ հացի գին —
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին»։
Ամենայն օր իւր մարմինը
Անուշահոտ ջրերով
Լուանումէր, մազը սանրում
Կրիայի սանրով.
Նա հագնումէր բեհեզ, կերպաս,
Դիպակ, թաւիշ թանգագին.
Նա չգիտէր ինչ ասել է
Արծաթի կարօտութիւն.
Այժմ անլուայ, մազերն արձակ,
Չունի հագուստ թէև հին —
«Ողորմութիւն արէք, պարոն,

Անտուն, անտէր աղքատին։»
Նորա շքեղ ննջարանում
Բնակվում էր Աստղիկը.
Նորա որդին փայփայում էր
Նորան ամբողջ գիշերը....
Ախտաբորբոք երիտասարդք
Իւրեանց անձը երջանիկ
Կը համարէին, թէ լինէին
Նորա ձեռքում խաղալիկ....
Այժմ փողոցում քնում է նա
Խոնաւ պատերի տակին —
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին։»
Ժամի դռնում նա կանգնած է,
Աչքերը կոյր, վիզը ծուռ.
Նորա նախկին բարեկամքը
Չեն ասում նորան, «խղճուկ,
Եկ դու մեր մօտ, մեք կ'ամոքենք
Քո վիճակի դառնութիւն,
Կը թուլացնենք ճակատագրից
Խիստ հարուածի սաստկութիւն։»
Նա տանում է տառապելով.
Այս սոսկալի վշտերին —
«Ողորմութիւն արէք, պարոն,
Անտուն, անտէր աղքատին։»

Կոմս Էմմանուէլ (Միքայէլ Նալբանդեանց)։

---

259

## Հայ մարդու հայրենիքը։

Հայ մարդ, հայ ազգ, աւա՜, արդեօք
Ո՛ր տեղ է քո հայրենիքդ.
Կամ ունի՞ս դու ուր և իցէ,
Ո՛վ են արդեօք ազգակիցքդ։

Հայ մարդ, ասա, ուր է տունդ,
Հայ մարդ, որ տեղ քո կենտրոնդ,
Ունի՛ս մի բան քեզ սեպհական.
Ցոյց տուր ինձ դու քո պարծանքդ։
«Ի՞նչ հայրենիք, յիմար զքեզ.
Հարցանումես դու ինձանից.
Ուր եմ ծնած, ա՞յդ ես քննում.
Այս տեղ եկած եմ Թիֆլիզից։
Ես տուն ունիմ և այն քարեայ
Երկու յարկով շէնք փառաւոր.
Ծառաներիս թիւը չը կայ,
Իմ հիւրերը հարիւրաւոր։
Եղբարք ունիմ, ունիմ որդիք,
Պատերք ու այլ շատ ազգական,
Ընտիր ծանօթք, շատ մեծատունք,
Ունիմ փեսայ և այն իշխան։
Իմ պարծա՛նքը, յիմա՛ր զքեզ.
Ցոյց տուր ինձ դու յառաջ քոնը.
Ճ՛աշ եմ ուտում, ազնիւ ընթրիք,
Որ չէ կերել Լուկուլլոսը։
Ես խմումեմ Շամպայն, Մադեռ,
Ալցնումես դու փորդ ջրով.
Ունիմ քանի տեսակ կառքեր,
Բայց դու ման ես գալիս ոտքով։
Ոսկի, արծաթ, քօհարեղէն,
Իմ պարծանքը, իմ գանձերը.
Թէ գոցանով չես բաւական,
Տե՛ս իմ երկու պատուի նշանքը։
Դու ի՞նչ կենտրոն ես հարցանում,
Իմ կենտրոնը է իմ փորը.
Ոսկի, արծաթ, հարստութիւն,
Ահա կեանքիս լոկ խորհուրդը։
Բան էք յուսել, յիմար զքեզ,
Թէ հայրենիք պիտի սիրել.
Բայց թէ ի՞նչպէս հարկաւոր էր,
Ամենևին չկամիք լսել։

Ես սիրում եմ հայրենիքը,
Նորան միշտ ու միշտ գովում եմ.
Օտար ազգի առաջևը
Պակասութիւնքը ծածկում եմ։
Թէ մի աղքատ կը գայ իմ մօտ,
Նորան կը տամ ողորմութիւն.
Բայց թէ որքան, կամ ինչ չափով,
Այդ քո գործ չէ, Ներողութիւն։
Միեւնոյն օր դուք մեր ազգը
Համբաստանէք անխղճմտանք,
Ազգի գլխից ձերպէսներով
Եկաւ անցաւ այնքան փորձանք....
Ողորմելի, դու կարծում ես,
Թէ հայրենիքդ սիրելով
Բան կը շինես. սխալվում ես,
Այդպէս յիմար մտածելով։
Քո ուսումը չէ կշտացնում
Իմ, կամ իմպէսների փորը.
Մեզ պիտոյ է հարստութիւն,
Որ պարարենք մեր մարմինը։
Հոգու համար ուսում պէտք չէ,
Ո՛ր սուրբերը ուսեալ էին.
Կրօնի ծէսերը պահելով,
Անշուշտ կ'երթամ արքայութիւն։»
Ուրախացի՛ր, դու Հայաստան,
Լսելով քո որդու խօսքը.
Փառք ու պատիւ քեզ կը բերեն
Քո մարմնապաշտ մեծատունքը։»

Կոմս Էմմանուէլ (Միքայէլ Նալբանդեանց)։ Հիւսիսափայլ. 1858 Թ., է. 186—190։

---

260

## Երկու քոյր։

Մեզնից շատ առաջ կար մի թագաւոր,
Հոգւով դեռ արի, գլխով ալեւոր.
Մեծ ծով էր պատել նորա աշխարհը,
Ոսկի ասացին գիտունք այն դարը։
Ունէր նա երկու մատաղհաս աղջիկ,
Մինը խիստ տգեղ, միւսը գեղեցիկ.
Մի օր տգեղը ասաց միւսին.
«Երթանք ծովի ափ, քուրիկ միասին»։
Սիրունը գընաց առաջից տրտում,
Տգեղը ետնից ոխ պահած սրտում.
Հազիւ թէ ծովի ափին էր հասած,
Իր սիրուն քըրոջ գլորեց նա ցած։
Կանչեց կիսամեռ սիրունը ջըրից.
«Քուրի՛կ իմ, քուրի՛կ փրկէ՛ ինձ մահից.
Ես ունիմ տանը գեղեցիկ մանեակ,
Նա, էն քե՛զ լինի, պարգեւէ՛ ինձ կեանք»....
— Ես առանց քեզ էլ կարող եմ ստանալ,
Ինձնից փրկութիւն դու բնաւ մի՛ յուսալ։—
«Քուրի՛կ, թէ այդ էլ քեզ չէ՛ բաւական
Կուտամ քեզ ոսկի պըսակ պատուական».
— Ես առանց քեզ էլ կարող եմ ստանալ,
Ինձնից փրկութիւն դու բնաւ մի՛ յուսալ։—
«Քուրի՛կ, մի՛ թողնիլ դու ինձ անտէրունչ,
Քեզ սիրուն փեսա կուտամ անտրտունջ»։
Տգեղի սիրտը դարձել էր ժեռ քար,
Քըրոջ խնդիրքը թողեց անկատար։
Ձկնորսը ծովը ձըգեց մեծ ուռկան,
Բըռնեց մարմինը սիրուն աղջկան.
Ջըրիցը հանեց, դըրեց ափի մօտ,
Շատ ծաղիկ ցանեց վըրան ու շատ խոտ։
Մի աշուղ անցաւ, տեսաւ աղջկան,
Լացեց ու առաւ, դըրեց ուսի վըրան.

Տարաւ իրա տուն այդ անգին գիւտը,
Չորացուց նորա մարմնու դիփ հիւթը։
Գեղեցիկ տաւիղ շինեց ոսկերից,
Քաղցրաձայն լարեր հիւսեց մազերից.
Երբ որ ամէն բան պատրաստեց կարգին,
Գընաց արքունիք տաւիղը ձեռքին.
Երբ մըտաւ դահլիճ շըքեղ զարդարած,
Տեսաւ ոըրգեղէն փեսի մօտ կայնած.
Բացեց բերանը, լարերին խըփեց,
Հիւրերի առջև քաղցրաձայն երգեց.
«Հընչէ՛ իմ տաւիղ, հընչէ՛ համարձակ,
«Հարազատ քոյրըս խըլեց իմ պըսակ.
«Լըսէ՛ իմ ծընող, լըսէ՛ սիրական.
«Հարազատ քոյրըս խըլեց իմ փեսան.
«Լըսէ՛ ժողովուրդ, լըսէ՛ անխըռով,
«Հարազատ քոյրըս գըլորեց ինձ ծով».
Միւս օր դահիճք խարոյկ շինեցին,
Անհաւատ քըրոջ մէջը գլորեցին։
Հուրը պըլպըլաց, աղջիկը կանչեց.
«Իմ մեղաց համար Աստուած ինձ պատժեց»։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

---

261

## Աղքատ աղջիկ։

Վաղ առաւօտուն, զարթեցայ մի օր
Ահեղ երազից, որ մարդ բաղդաւոր
Երբեք կարող չէ կեանքում տեսանել.
Եւ մինչ արեգակն դեռ ևս չէր ծագել,
Իմ սովորական լեառն ես գնացի։
Երբ բնութեան հետ նորից զարթելով,
Մանուկ թռչունը քաղցր երգերով
Փառաբանումէր իւր տեղ բնատուր
Եւ մայրն բերումէր նորան կերակուր,
Աչքըս լցուեցաւ դառն արտասուքով։

Ո՜հ, ինչո՞ւ չունիմ ես էլ մի մայր,
  Ո՜հ, ինչո՞ւ ոչ ոք չէ դառնում ինձ հայր,
  Ո՜հ, ինչո՞ւ ես չեմ այս թռչնիս նման,
  Ինչո՞ւ աշխարհումս չունիմ ոչ մի բան,
  Ինչո՞ւ ինձ այսպէս զրկել է բնութիւն։
Օրօրոց անգամ ես չեմ ունեցել.
  Մի քարի վերայ մանուկ են գտել
  Ինձ փոքրիկ գիւղում, եկեղեցու դրան,
  Ցրտում, միայնակ, անտէր, անպաշտպան,
  Այն քարն էլ իմ չէ. այս ինչ պատիժ է։
Ծնողներիցս հեռու գոլով աքսորուած,
  Չգիտեմ ճաշակ ծնողի գգուանաց.
  Եւ փոքրիկ մանկունք, որ գիւղումս կան
  Չեն խօսում իմ հետ երբէք ոչ մի բան,
  Եւ ինձ քոյր անուն երբէք չեն տալիս։
Երբէք ինձ իւրեանց ընկեր չեն շինում
  Այն երեկոյեան քաղցր խաղերում.
  Երբէք երկրագործ ինձ ընտանեբար
  Չէ տանում իւր տուն. աղջիկ, հանգիստ առ.
  Նա է որդւոց հայր, ես միայն մնակ.
Պէտք է մարդատէր մատուռն հիւրընկալ
  Ուղղուեմ լալով իմ հանդարտիկ քայլ.
  Այս երկրիս վերայ մի հատ ապաստան,
  Որի մէջ արդէն չեմ օտարական,
  Միակ է որ ինձ չէ փակվում երբէք.
Շուտ շուտ եմ զննում ես այն ուխտի քար,
  Ուր սպասեցան օրերս թշուառ,
  Այն տեղ եմ խնդրում նշան արտասուաց,
  Որ գուցէ մայրըս իմ լինի թափած,
  Երբ ինձ միայնակ թողնումէր այն տեղ։
Շուտ շուտ եմ գնում ողջիս բնակարան,
  Որ գտնեմ այն տեղ ծնողիս գերեզման.
  Այն տեղ չեմ գտնում ես նոյնպէս ոչ ոք.
  Ո՛հ աղքատ աղջիկ, դու չունիս ծնողք,
  Թէ երկրիս վերայ, և թէ գետնի տակ։
Ես լաց եմ եղել տասն և չորս գարուն,

Հեռու անձնից, քաղցած և անքուն,
Ե՛կ, քեզ եմ սպասում, մայր իմ սիրելի,
Նոյն քարի վերայ, ուր ինձ թողեցիր։

Ստեփանոս Ստեփանեանց, Ուսումնասէր։ Հիւսիսափայլ, 1860 թ. № 7. ե. 20—21։

---

## 262

### Վերջին գարուն։

Գարունն է եկել նախշուն թևերով,
Նախշուն թևերը պէսպէս ձևերով,
Գոյն գոյն ծաղիկներ՝ կարմիր ու սպիտակ,
Վարդ, մեխակ, շուշան անուշ հոտերով։
Երկինք ու երկիր քեզ տօնեն, գարուն,
Զ՛ի ես քան զամեն եղանակ սիրուն.
Նա անձրև ցօղէ առատ ի վերէն,
Գա օրհնել տայ քեզ եկւոր հաւերուն։
Ոսկի արևը փայլէ քեզ վերէն,
Կենսաբեր հովը փչէ 'ի լերէն.
Ա՜խ, ազնիւ գարուն, եղանակ սիրուն,
Արդեօք դու ի՛նչ բաղդ բերիր ինձ Տէրէն։
Գլխաքարշ երթամ ի պարտէզ այգուն,
Ա՜խ ու վախ քաշեմ ես անդ օրն ի բուն.
Չիկայ ինձ հանգիստ, ցնծութիւն սրտիս,
Եա վաղ եմ մոռցել զի՞նչ արդօրը է քուն։
Մեռած պատանքած գետնին կեանք տուար,
Տերևթափ ծառին ստուերախիտ արար,
Քեզ թռչնոց երամ հանդէս կանչեցիր,
Ինձ մենակ խղճիս էապէս մոռացար։
Առա՛ջ դնա, գարուն, դէպ ի հիւսիսն ի խոր,
Գնա՛, կանանչցո՛ւր դու անդ սար ու ձոր.
Որոյ անհամբեր քեզ կան՝ տո՛ւր բարև.
Ք՛ ուրախ գալստեամբ նոցա զուարճացուր։
Կուգաս գալ տարի, դու ինձ կըգտնիս
Ո՛չ ի մեր այգին և ո՛չ ի պարտէզ,

Այլ անզարթ քընով հողի տակ պառկած,
Գերեզմանաքար մի վրաս կը տեսնիս։

Թ. Տ—Գ. Պատկանեան։

---

263

Վախճան մահու Կաթուղիկոսին ամենայն Հայոց Տ. Տ. Ներսիսի Ե. 'ի 13 փետրվար ամսոյ, 1857 փրկչական ամի։

Զարթի՛ր 'ի քնոյ, ո՛վ Հայաստան, տե՛ս՝ ո՛ւր է քոյ Ներսէսն.
Ժամանակը պառաւելայ. էլ չի՛ ծնիլ կնքէսն։
Ըստ թանգագին գա՛նձ է ազգի՝ հաւատարիմ Տնտեսն.
Նա՛ էր քո որբ որդւոց համար՝ Աստուածառաք Մովսէսն։
Ծնունդը մեծ, սնունդը մեծ, անկեղծ ասեմ՝ յատո՛ւկ մեծ.
Իւր մեծութեանը հաւասար՝ Ազգին եղաւ Նա շուք մեծ.
Որոյ կեանքն էր երջանկութիւն Հայոց, իսկ մահը՝ սուգ մեծ.
Աշխարհ գիտէր՝ որ Նա յայտնի մեծ էր, ո՛չ թէ անյայտ մեծ։
Մինչ Աբեղայ էր Նա՝ եղև Դանիէլեան առաջնեակ.
Իբրև հարազատ որդեգիր՝ անկաւ չարչարանաց տակ.
Հնոց խօսք է թէ հանապազ չարն բարեաց է նեղհակ.
Բայց ամպը երկար չէ՛ կարող թագուցանել զԱրեգակ։
Ըստ վիճակին Հայր հոգևոր, բայց ըստ նախնեաց Զօրավար.
Նա ընդ Կոմսին Երևանու՝ բազում սքանչս արար.
Հալածելով զՊարսիկ զօրս իբրև Փեբոս զխաւար.
Կնճիռք բանից 'ի մէնջ ծնելոց՝ ձգեցին զ՛Նա վա՛ղ 'ի տար։
Տարագրութիւն Նորա յայնժամ լրումն ըղձից էր ամանց.
Բայց այս անուշ երջանկութիւն Նոցա իբրև ստուեր անց.
Բաղդ 'ի շրջանն իւր առաջի դարձաւ կամանց և կամանց.
Քանզի զպատառ մանկանց Աստուած ըստ առակին՝ չէ՛ տալ շանց։
Հազար ութ հարիւր քառասուն երեք թուին փրկչական.
Նա բազմեցաւ ըստ արժանւոյն 'ի Գահ Լուսաւորչական.
Փախեաւ խաւար անյուսութեան՝ ծագեաց լոյս արեգական.
Տրտմեալ ճակատք Հայկազնեից զուարթագեղ փայլեցան։
Արժան մարդը ադամանդ է՝ մաքուր ոսկւով պատելի.
Միայն Նորա ճաճանչըն է ցաւոտ աչաց տանելի.
Բամբասանքն է մանրիկ հոգւոյ չարեաց անանջատելի.
Որչափ որ անարատ լինիս՝ նոյնքան ունիս գանգատելի։

Բազմեալ 'ի Գահ յայտնի ետես զանազան զրկողութիւնք.
Նկատելով 'ի Հոգեւորս՝ անտեղեաց յարգողութիւնք.
Ջնջեաց յամենից ատենից աններելի գողութիւնք.
Եւ յանցաւորս 'ի Նմանէ ծագէին միշտ թողութիւնք:
Թէպէտ յայտնի խիստ երեւէր, բայց էր մեկ խաղաղ հրեշտակ.
Ազգի պայծառութիւնն էր միշտ Նորա համար նպատակ.
Որովհետեւ միմիայն էր՝ չունէր երբէք օժանդակ,
Ո՛չ մարթացաւ՝ որչափ ցանկայր թողուլ Ազգին յիշատակ:
Դու փետրվար նահանջն ամիս՝ թուք լինի քո երեսին.
Միանգամայն բարօրութեան նշան չունի քոյ ծէսին.
Յիսուն ու հինգ թուին առեր դու Մեծ Նիկողայոսին.
Յիսուն ու եօթին խլեցեր Նորա ընտրած Ներսիսին:
Պատմութեանց մէջ անհաշիւ է՝ փետրվար քոյ գործերդ.
Վերջապէս մեր Հայոց առեր Ազգին կպաւ քոյ խէրդ.
Ջեռս ընկնէիր՝ անխնայաբար կապոտէի ոտներդ.
Մուր քսելով աղտեղէի քոյ անամօթ պատկերդ:
Որ դու մեր խեղճ Ազգին թողեր 'ի դառնութեան վիճակի.
Թո՛ղ զի ագահ սիրտ քո՝ Հայոց դժբաղդութեամբն յագի.
Կամեցեր տալ անհոտ ծաղիկ՝ մեզ փոխան մանուշակի.
Գիտելով զի մեռելոյն ո՛չ տայ լոյս արեգակի:
Մա՛յր Հաւատոյ, քոյ անարատ փեսայէդ ի՞նչ լիացար,
Որ այդպէս յոյժ վաղվաղակի ես հագար՝ այրիացար.
Չիցէ՞ թէ դու մեծամեծաւ՝ մոլութեանց որդիացար.
Զի 'ի պատիժ յետ ընկրկեալ՝ Նախկին դրութեան միացար:
Ղեւոնդ սուրբ՝ որ ցարդ պահես դու զՆոյեան Տապանն,
Իսկ ընդէ՞ր ո՛չ պահպանեցեր զքոյ Ազգիդ պահապանն.
Մի՞թէ չէիր գիտում՝ զի տէր չունի որբ Հայաստանն.
Կամ թէ պիտի անդրադառնայ յառաջին աստիճանն:
Եղո՛ւկ Հա՛յեր, ընդէ՞ր ո՛չ լայք զմա՛հ ձեր սուրբ Ծնողին.
Գերի մարդը ո՞նց չէ զգալ կորուստը իւր փրկողին.
Շատ օր չէանց որ դուք զՆա աւանդ տուիք սեւ հողին.
Ինչպէս Ներսէս չէք տեսանել ցգալ արդար Դատողին:
Մինչի վախճան Նա ամենից Նախախընամող եղեւ.
Արժան մարդկանց՝ ովք և իցեն՝ արդար գին գնող եղեւ.
Որովհետեւ 'ի Հողոյ էր ստեղծեալ, կրկին Հող եղեւ.
Մինչ կենդանի էր Նա, զնա ընդ սրբոց յարգող եղեւ:

Անհարազատ մարդկանց համար այսօր է ցնծութեան տօն.
Այնպէս մարդկանց արարեց Տէր՝ ըստ սուրբ գրոց՝ օն և օն.
Այս մեծ գործիս հարկաւոր էր Հոմերոս կամ Կիկերոն.
Այլ ո՛չ թէ Աքեաղի նման անտաշ կոպիտ, անզգօն:

Գ. Ց—Ց. Մաղաքեան:

---

## 264

### Ինձ համար չէ՛:

Թարգմանութիւն:

Ինձ համար չէ՛ գարնան գալը,
Ինձ համար չէ՛ ծառի ծաղկելը,
Ուրախութեան սրտի գրգիռը,
Ո՛չ մի բերկրանք չեն ինձ համար:
Ինձ համար չէ՛ կենաց բաղդը,
Ինձ համար չէ՛ երջանկութիւնը,
Եւ մրայօն կուսի աչքերը,
Նոցա արցունք չ՚են ինձ համար:
Ինձ համար չէ՛ փայլուն լուսնի
Անտառ ու սար լուսաւորելը,
Գարնան վարդի երգչի տաղերը,
Սոխակ ու վարդ չե՛ն ինձ համար:
Ինձ համար չէ՛ բարեկամաց
Մեկտեղ սիրով տօն կատարելը,
Զատիկ օրուայ ուրախ ասելը
«Քրիստոս յարեաւ» չէ՛ ինձ համար:
Ինձ համար չէ՛ ծնողաց լացը,
Ինձ համար չէ՛ աղջկայ տըխրիլը,
Գերեզմանիս վրայ արտասուիլը
Բարեկամաց՝ չէ՛ ինձ համար:
Բայց ինձ համար կուգայ ժամը,
Կ՚երթամ թըշնամեաց պատերազմը,
Եւ մահառիթ սպանիչ գընդակը
Անդ պատրաստած է ինձ համար:

Ք. Ց—Գ. Պատկանեան:

---

265

# Մի բուռն հող։

(Գերմաներէնից)

Մի բուռն հող ինձ կը ծածկէ միանգամ,
Երբ վաստակած, դէպ ի հանգիստ ես կ՚երթամ.
Այնուհետև ցաւից, վշտից ազատված,
Մահու քնով կը ննջեմ ես մեղմ, հանդարտ,
Մինչև գանչէ գերեզմանից Եհովան։
Մի բուռն հող ինձ կը լինի պատուական,
Աւելի քան մի փառահեղ ծանրութիւն,
Ճարտարագործ ձեռքից շինած, քարանիւթ.
Որդէն ցաւեր շատ օրերի ճնշեցին
Կեանքս, հոգիս ծանըր ծանըր բեռներով։
Մի բուռն հող ինձ հերիք է, բաւական,
Գիտեմ ահա, լինելու եմ ես անշուշտ
Որդների ու ճճիների կերակուր.
Բայց խաղաղ է գերեզմանի խորքումը,
Ցաւն ու վիշտը այն տեղ լուռ է և հանգիստ,
Քունը քաղցր և անխռով հանապազ։
Մի բուռն հող գուցէ ձըգէ իմ վերայ
Բարեկամըս տրտում դէմքով ու լացով.
Եթէ միայն ունէի ես մի անձըն,
Որ գալու էր գերեզմանիս տեսութիւն.
Այնուհետև կ՚թեթևանար իմ վերայ
Աստծու հողը գերեզմանիս միջումը։

Վարդան Սուլթանեանց: Հիւսիսափայլ 1859 Թ. և. 167:

---

266 1854

# Երգ պանդուխտ պատանեկի։

Ծիծեռնակ, ծիծեռնակ,
Դու գարնան սիրուն թռչնակ,
Դէպի ո՞ւր, ինձ ասա,
Թռչում ես այդպէս արագ։

Ա՜խ, թըռիր ծիծեռնակ,
Ծընած տեղըս Աշտարակ,
Անդ շինիր քո բունը
Հայրենի կըտուրի տակ։

Անդ հեռու ալևոր
Հայր ունիմ սգաւոր,
Որ միակ իւր որդուն
Սպասում է օրէ օր:

Երբ տեսնես դու նորա՝
Ինձնից շատ բարև արա՛,
Ասա՛, թող նըստի լայ
Իւր անբաղդ որդու վըրայ:

Դու պատմէ, թէ ինչպէս
Աստ անտէր ու խեղճ եմ ես,
Միշտ լալով, ողբալով
Կեանքս մաշուել, եղել կէս:

Ինձ համար ցերեկը
Մութ է շըրջում արեգը,
Գիշերը թաց աչքիս
Քունը մօտ չի գալիս:

Ասիր, որ չի բացուած
Թառամեցայ մնացած,
Ես ծաղիկ գեղեցիկ՝
Հայրենի հողից զըկած:

Գնա՛հ, սիրուն ծիծեռնակ,
Հեռացի՛ր, թռիր արագ,
Դէպ 'ի Հայոց երկիրը.
Ծնած տեղս—Աշտարակ:

Ծանօթ. Այս երգի հեղինակի մասին զանազան կարծիքներ կան, ոմանք կարծումեն թէ հանգուցեալ երջանկայիշատակ Ներսէս Ե. էր սորա հեղինակը, իւր Բեսարաբիա եղած ժամանակը; միւսները այս երգը ընծայումեն Դորպատու-ուսանող հանգուցեալ Ասկարեանցին, որ աւելի հաւատալի է; երրորդները ասում են թէ Պ. Գոդոխեանցի հեղինակութիւնն է, և այլն:

---

## 267

### Երգ աղքատին:

(Գերմաներէնից)

Ահ, աղքատիկ եմ ես այր,
Ամենեւին ամայի.
Այլ իմ սրտիս մըխիթար
Անգամ մի գէթ ըղձայի:

Ի ծընողացս անդ ի տան
Էի մանուկ հեշտածին,
Այլ արդ նոքա թաղեալ կան,
Եւ ինձ գառինք են բաժին:

Ճոխին պարտէզք ծաղկեն հոյլ,
Եւ զհասկ դիտեմ ոսկեթուռ.
Այլ իմ շաւիղս է ամուլ,
Որ վիշտս եւեթ տայ արխուր:

Սիրեմ ցաւովք լըռելեայն
Բերկրելոց կալ յերախան,
Որոց սըրտիւս ամենայն
Մաղթեմ աւուրս բարութեան:

Սակայն, ո՛վ Տէր, ոչ թափուր
Ի բնաւ թողեր զիս հեշտից,
Քաղցր ըսփոփանս ընդհանուր
Յաշխարհ սըփռեալ քո յերկնից:

Ահա յամէն գիւղօրէք
Ամբառնայ սուրբ քոյին տուն,
Եւ երգեհոն, սաղմոսերգք
Համայն զականջըս լընուն:

Ո՜հ այդ արփի եւ լուսին
Եւ ինձ ծագեն գըթասէր,
Եւ ի զանգակ գիշերին
Եւ ես խօսիմ ընդ քեզ, Տէր։

Բացցին երբեմըն բարեաց
Դուռք բարձր ի խինդ տաճարեդ,
Եւ ես ի զգեստ Հարսանեաց
Առբազմեցայց սեղանիդ։

Ուհլանդ։ Բազմավէպ, 1856 թ. ե. 295.

---

268

Ի վերայ ունայնութեան աշխարհի։

Հարբած էի ես սիրով աշխարհի,
Մասն այն խաբուեցայ սուտ բարեկամի,
Ես շատին համար կեանքըս կու տայի,
Արդ՝ չիկայ մէկ մը, որ վրաս նայի։
Մե՜ղք որ խաբուեցայ սիրով աշխարհի,
Հոգիս, մարմինըս չարին մատնեցի։
Անցան՛ օրերըս օտարի համար,
Անոնցմէ ինձի օգուտ մը չի կար.
Ցաւի տիրացայ, մեռնիմ չարաչար,
Չի կայ բարեկամ, որ պուտ մը ջուր տար։
Յատուկ գիտէի՝ հոգիս անմահ էր,
Մարմինըս սիրել ինձի ի՞նչ պէտք էր,
Կերպ կե՛րպ մեղքերով զիս կորուսանել,
Անմահ փեսայէս այսպէս բաժնըւել։
Թընդիկ-ալ եմ ես, ինքըս կըսէի,
Հայլին նայելով՝ կը հըպարտանայի,
Մեռնիլս մտքէս չ՚էր անցընէի,
Բայց դեռ չի մեռած եղայ գանելի։
Մարդ էի բացուած, գոյնըս կըփայլի,
Անուշ հոտովս շատին խաբեցի,
Երբ-որ ծերացայ՝ դարձայ չոր խոտի,
Կորուցի տեսքըս, չ՚ին հաւնիր ինձի։
Ոսկեհան ու Նարգիզ, զիւմբիւլ, մանուշակ,
Չըքնաղ փայլէի որպէս զարեգակ,
Ես զիս կարծէի որպէս գոհար ակ,
Չի կար յաշխարհիս ինձի նըմանակ։

Թոռմեցայ, ընկայ, գոյնըս փախուցի,
Տեսօք աչքերուս լոյսը կորուցի,
Ո՞ւր այն զարդարանքս, որ զարդարուէի,
Արդ՝ չ'ունիմ ես ոյժ կայնելու ոտքի։
Աշխարհք՝ խաբուեցայ, ի՞նչ ասեմ քեզի,
Որ մէկ օր մըն ալ կուշտ չի խընդացի,
Աչքերս միշտ արցունք, սիրտըս կը հալի,
Հալած մոմի պէս կեանքըս կը հատնի։
Նըմանեցայ ես քըքրուած նաւի,
Որ իմ մեղքերովս զիս կորսընցուցի,
Ահա կորնըչիմ 'ի խորըս ծովի,
Անտէր, անտերունչ, խեղճ ողորմելի։
Երնէ՜կ էր ինձի, թէ զիս ճանչնայի,
Իմ Ստեղծողիս սէրըս ձըգէի։
Ի՞նչ օգուտ եղաւ՝ մարդիկ սիրեցի,
Սիրուեցայ մարմնով՝ հոգիս կորուցի։
Սէր իմ, Աստուած իմ, Յիսուս—փրկիչ իմ,
Անուշակ Տէր իմ, Աստուած իմ, Սէր իմ,
Դու մենակ յոյս իմ, գթած փրկիչ իմ,
Քեւ միայն, Յիսուս, մեղքէս կ'ազատիմ։

---

## 269

### Վերջին վարդ։

(Գերմանականից)

Վերջին վարդ, վերջին վարդ,
Սիրականիս վերջին զարդ,
Նա քեզ հանեց իւր կրծից, } կրկնէ։
Ինձ պարգեւեց, վերջին վարդ։
Մանկութեան ոսկի ժամերն
Անցել են անդառնալի,
Կորած սիրոյս յիշատակ } կրկնէ։
Դու ես միայն, վերջին վարդ։
Գարնան օրերն անցել են,
Տօթ ամառն է ինձ էրում,
Միշտ սպասում եմ քու տեսքին } կրկնէ։
Դուն ամառուայ, վերջին վարդ։

Երջանիկ կեանքիս օրերը
Ցաւ են դառել առաջիս,
Ուրիշ օրեր, ուրիշ կեանք
Միտքըս բերիր, վերջին վարդ։ | կրկնէ՛։
Շատ չի տեւիլ՝ կըքացուէ
Առաջիս սեւ գերեզման,
Ես աշխարհից միայն քեզ
Հետըս կ'առնում, վերջին վարդ։ | կրկնէ՛։

Ք. Ց—Գ. Գաղկանեան.

---

270

## Երազ։

Թարգմանութիւն

«Ա՛հ, լոկ երազ էր, մի՛ խռովէք ինձ,
«Իմ մոլորութեան քաղցր պատկերներ.
«Ինձ չէ թոյլ տուած երկաթի կեանքում
«Խնդալ, վայելել ոսկի րոպէներ։
«Մի՛ յիշեցնէք, մի՛, այն զգացմունքը,
«Որով լցուած էր սիրտս և հոգիս,
«Որով շնչեցի, որով ապրեցայ,
«Ինչպէս մի ծաղիկ գգուած զեփիւռից։
«Այդ մի երազ էր....կամ գէթ առաջօք,
«Որ կրակ ձգեց սրտիս մէջ անմար.
«Թշնամի վհուկ, երևի, կախեց
«Աչքերիս վերայ բժժանք անհամար։
«Ինձ այն ժամանակ քանի՛ ու քանի՛
«Երևեցաւ «նա» այն ծառերի տակ,
«Մինչ, լիալուսին խոր գիշերի մէջ,
«Երգումէր ուրախ, անհոգ, միայնակ։
«Ես տեսայ «նորան,» բայց մի այլ տեղում,
«Յաւերժահարսնի ունէր կերպ ու ձև,
«Թռչումէր, շարժում օդի մէջ, այնպէս,
«Ինչպէս մի փետուր. առաւե՛լ թեթև։
«Մի անգամ տեսայ Աթենասի պէս
«Զրահաւորված զինուորի զէնքով,

«Մի ամբողջ խմբի տալիս էր հրաման,
«Իւր ձեռքի բռնած թեթև հրացանով։
«Ես տեսայ դարձեալ, մի ուրիշ անգամ,
«Մ՚ինչ անհոգ, ուրախ, խաղացած տեղից
«Նորան բռնեցին, որպէս մահապարտ.
«Ի՞նչ անմեղութիւն, ի՜նչ հայեացք աչքից։
«Մ՚ինչ ոտքից գլուխ սպիտակ հագած
«Գնումէր տխուր դէպ ի պատժարան,
«Անհոգ արձակած սաթի պէս մազերը,
«Արտասուք թափելով հեղեղի նման։
«Մ՚ինչ զրպարտողը խոստանումէր կեանք,
«Թէ միայն հաճէր.... լինել համաձայն։
«Այն ինչ շնորհք էր, որ կաթեց մատից,
«Որով ցոյց տուեց երկինք ժանտին այն։
«Ո՛հ, մի այլ անգամ, ինչպէս փրկեց «նա»
«Աւազակներից մի անմեղի կեանք.
«Նրանց խօսելու, համր նշանով,
«Վտանգի ժամը յայտնեց բացարձակ։
«Ի՛նչ կարեկցութեամբ, ի՛նչ անմեղ սիրով
«Թունալի բաժակը տեղափոխեց «նա,»
«Որով դաւաճանը թունաւորվելով
«Թմրեցաւ մնաց, աթոռի վերայ։
«Ո՛ր մինը յիշեմ. ես տեսայ դարձեալ,
«Մ՚ինչ դուրս էր գալիս ծովից լայնարձակ.
«Հազար պչրանքով, քնքուշ շարժմունքով,
«Ձկնորս էր որսում, սրտով համարձակ։
««Նա» խոստանումէր նորան անմահ կեանք.
««Նորան» սիրելը էր անմահութիւն.
«Ես տեսայ, ինչպէս ձկնորսը ուրախ
«Վայելումէր մի ճոխ արքայութիւն։
«Վերջին անգամն էր, աւել չտեսայ,
«Գնումէի ծովով հեռաւոր աշխարհ....
«Երկինքը մթնեց, մրրիկը սուլեց,
«Որոտ, փայլակը անթիւ փայլակեց։
«Սարերի նման մեծ մեծ ալիքի
«Կատաղած ծովին եղած խաղալիկ,

«Գալիս էր մի նաւ, ջարդված կայմերով,
«(Յառաջ մեր նաւից տեսան նաւաստիք):
«Եկաւ մօտեցաւ նաւը մեր նաւին.
«Ի՛նչ սիրտ կտրատող մի պատկեր էր այն,
«Թշուառ յուսահատ իբր անխել նաւորդք
«Կորուսել էին և յոյս փրկութեան։
«Նաւորդների մէջ ես տեսայ «նորան,»
«Բռնել էր կայմից խելքը կորուսած,
«Ինչպէս յուսահատ անմեղ աղաւնին,
«Բազէի աչքից անգութ հալածված։
«Անդունդի վերայ այսպէս քանի ժամ,
«Օրօրաց ճօճաց տարաբաղդ նաւը.
«Գիշերը կոխեց....կայծակը թնդաց....
«Կուլ տուեց բոլոր անյատակ ծովը....
«Կայծակի թունդը, մրրկի ձայնը,
«Խուլ աղաղակը կատաղի ծովի
«Միախառնվեցան վերջին ձայնի հետ,
«Որ արձակեցին այնքան շատ հոգի։

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

«Մրրիկը անցաւ, ծովը հանդարտեց.
«Շատ հեռի չէինք մեք ծովեզերքից....
«Ջրեղէն դաշտում, դեռ նոր խաղաղած,
«Մի ապառաժուտ կղզի երևեց։
«Ահա՛, «նա» դարձեալ՝ ծովում լողալով
«Դիմում էր դէպ ի քարքարուտ կղզին.
«Մեք տեսանումենք....բռնեց քարերից
«Եւ շուտ վեր ելաւ իբր աննիւթ մարմին։
«Յոգնած, ուժաթափ, մինչ վեր բարձրացրեց
«Իւր արտասուքով լցուած աչքերը,
«Եւ ահա լուսինը ամպերի տակից
«Դուրս սողաց տեսնել «նորա» երեսը։
«Ես շատ նայեցայ....բայց մեր նաւն արագ
«Սլացեց դէպ յառաջ....կորաւ իմ աչքից....
«Եւ այլ միւս անգամ մինչև այս րոպէս,
«Կամ գուցէ յաւէժ զրկվեցայ բաղդից։
«Չէ. այն երազ էր....հեռի՜ ինձանից,

«Խօլական ցնորք, հոգի գիշատող.
«Թողէ՛ք ինձ հանգիստ մաշել իմ կեանքը
«Ու խաղաղ սրտով մտնել դէպ ի հող»։

Միքայէլ Նալբանդեանց։ Հիւսիսափայլ. 1859 Թ. Ժ. 705—707։

---

## 271

### Տաղ 'ի Ռոստոմ-Բէգ։

Մունետիկն 'ի ձայն բարձր աղաղակէ,
Քանա դահիճն սուր 'ի ձեռին անյագ սըրէ,
Սագեր հանգոյն զիմ կենաց թել կըտրել խընդրէ,
Ի կախաղան և կամ ի սպանդ, ո՞ւր զիս տանէ,
Քաղաքս համայն մահմետական զի՞ խուռն գան,
Զիմ մահ սըգան,
Դառնագին լան զիս Աբովեան քաջ ախոյեան։

Մի՞թէ չիք ով աստ Քրիստոնեայ զիս փըրկեսցէ
Յայս ամենի և մահագոյն վայրագ դահճէ,
Ընդէ՞ր զանմեղ արիւն թափել յերկիր ցանկայ.
Նուիրական զենման իմոյ լերո՛ւք վըկայ,
Մեր հայրենեաց 'ի թըշնամեաց ձեռն մատնեաց,—
Ուրախ մեռայց,
Ու դասեցայց ընդ դիւցազանց իմոց նախնեաց։

Փշրանք մնացեալ իմ սիրելի Հայոց ազգի,
Որք գտանիք 'ի ձեռս Պարսից յայս քաղաքի,
Մի՛ մոռասջիք պատմել և զայս յորդւոց որդի,
Թէ քաջն Ռոստոմ վասն հայրենեաց 'ի սպանդ վարի.
Թէպէտ ցաւիմ զի մեռանիմ 'ի մարտ ընդդէմ
Թըշնամեաց իմ,
Այլ յօժարիմ, զի զոհ լինիմ այսպէս վսեմ։

Այս քաջ բազուկք յարեաց Պարսից հօկայս հըզօրս
Տապաստ արկին 'ի բազում նուագս հարիւրաւորս.
Աւա՜ղ կնատ անգութ դահճի եղէ ես որս
Պատմեսջիք զայս վէհ դիւցազին զառամեալ հօրս.
Քաջ նահատակ որդիդ միակ 'ի ձեռս վայրագ

Պարսից էանկ.
Իւր յաղթանակ մահ դժընդակ էառ պըսակ.
Անձդ յարեաց արքայորդիդ Աբբաս-Միրզա,
Սուր 'ի ձեռին գահիճն սէգ առընթեր կայ,
Զիս թշնամիս քոյոյ ազգի տապաստ 'ի մահ
Զիմբդ կամիս սպանանել՝ շուտ հրամայեա,
Միայն սրգամ, զի կապեալ կամ. թէ միւս անգամ
Հրացան, սուր իմ
Ի ձեռս ունիմ՝ ըզըաղուկ իմ ձեզ ցուցանեմ։

---

272

Մ տ ա ծ ո ւ թ ի ւ ն ք։

Խորին տրտմութիւն և դառն վիշտը
Ճնշում է անձս և մաշում հոգիս.
Արիւն է պատում իմ զգայուն սիրտը,
Տեսնելով թշուառ դրութիւնը ազգիս։
Ո՛վ իմ հայրենիք, խղճուկ Հայաստան,
Մինչև ե՞րբ արդեօք այդպէս պիտի մնաս,
Եւ երգիչներից դու միշտ յաւիտեան
Միայն լաց և ողբ պիտի իմանաս։
Եւ դու ազգ Հայոց, պաշտած ինձանից,
Ե՞րբ այն երջանիկ կը գայ ժամանակ,
Որ և դու զարթես այդ քո խոր քընից,
Որ այսքան հարիւր տարիք շարունակ
Կապում է աչքերդ, քեզանից ծածկում
Քո տկար մարմնի անթիւ վէրքերը,
Սուտ երազներով է վարագուրում
Նուաղած հոգուդ ծածուկ վշտերը.
Հերիք է, ազգ իմ, հերիք է, զարթիր,
Թօթափիր քունը, աչքդ բաց և տես.
Նայիր չորս կողմդ, քո վերայ նայիր,
Ինչ էիր երբեմն և այժմ ինչ ես։
Կար ժամանակ երբ և դու ունէիր
Ազգերի շարքում անուն պատուական,

Հաւատով, ուսմամբ դու ծաղկումէիր,
Ունէիր քեզ գահ, թագ արքայական։
Բայց այդ ազգային պարծանքն ու փառքը
Դու գնահատել սակաւ իմացար,
Հայկից, Արամից քեզ տուած աշխարհքը
Օտարի ձեռին եղել է աւար.
Կորուսել ես քո ազնիւ բնութիւնը,
Երկպառակութեամբ կեանքդ խանգարվել,
Եւ խաւար, մռայլ տգիտութիւնը
Խելքիդ չորս կողմը ծանր քօղ ձգել։
Բայց քեզ չէ պիտոյ միշտ մնալ այդպէս,
Այդ թմրութեան մէջ, քեզ կորստաբեր.
Երկինքը նոր կեանք է վիճակել քեզ
Ապագայումը և պայծառ օրեր։
Այժմ փոխվել են հանգամանքները,
Ունիս դու բարի և հզօր պաշտպան.
Քանդիր տգիտութեան թոյլ կապանքները,
Դիմիր դէպ ի լոյս ազատ, անխափան։

Գէորգ Բարխուդարեանց։ Հիւսիսափայլ, 1859 Թ. ե. 806—807։

---

## 273

### Անուրջք [1]։

Յամսավերջն Ապրիլի զպատուհանս բացի,
Զձիւնաթաղ դաշտորայս ծաղկազարդ տեսի։
Արտասուք եռանդունք զայտս իմ այրեցին,
Զիմ անդարձ գերութիւն յուշ իմ մուտ ածին։
Լեղուապէս դառնացան վէրք վըհատ հոգւոյս.
Թըմրեցան զգայարանքս հատան ելք շնչոյս։
Ափսոս ինձ, ասացի, բիւր անգամ յայն օր,
Շատ անէծս թափեցի 'ի ծննդեանս վատ օր։
Մաշեցայ, թոշնեցայ, մըտի խոր 'ի քուն,
Զչար կսկիծ հէք գերւոյս արկ'ի ծով անհուն։

---

[1] Հայրապետ Սուքիասեանցի ձեռագրումը. «Դարուն»։

Գըրչխոյն մեծ անմահից եւ ինձ յայց տեսլեամբ,
  Որպէս թէ 'ի փոսոյ զիս ելոյծ ձեռամբ։
Ընթերկմիտ մօտ մատեայ 'ի համբոյր ատին
  Գերբընապէս սքանչելեօք զիս ազատողին։
Բամք ձայնեղ թըռչնակաց ծոխ դայլայլեցին,
  Կենսածին Տիրամօրն փառս վերերգեցին։
Նըրանք ասացէ՛ք, կարմրացայտ վարդիս.
  Բաջալերս տուք նըմա 'ի գով պաշտպանիս։
Նուաղ իմ նեղասիրտ կարճամիտ լալոյս,
  Ոչ իմ՞րդ զիս կարծեցի կորուսեալ անյոյս։
Նախատինք իմ նեղչաց նետք եղեն ինքեանց,
  Նանրացան դաւք նոցա, անկան յիւրեանց ցանց։
Յաւագնեալք՝ օրհնեցէ՛ք զանուն Տեառն յաւէտ,
  Գիք զլոյս ձեր յօգնութիւն խաչին փըրկաւէտ։

Յ. վ. Ալամդարեան.

27 Ապրիլի 1821 թ. Հաղպատու վանքի մէջ, երբեւ երբ հեղինակը, կարծեմ, ժամանակաւոր աքսորանք էր ուղարկուած Տփխիսէն, Ներսէս վիճակաւոր առաջնորդի հրամանով (յետոյ կաթուղիկոս, Ներսէս Ե. Աշտարակեցի, Շահազիզեան ազգիցը): Այս դիպուածքը պէտք է գիտենան Յարութիւն վարդապետի աշակերտքը։ Ցանկալի էր որ նորա թողէն այս ակնատւոր, ժիր եւ գրեթէ Ներսէսեան ազգային վարժարանի առաջին քանքարաւոր վարժապետի բանաստեղծութիւնքը եւ անկեղծ կենսագրութիւնը, որ այժմ ազգային պատմութեանը է պատկանում։ Անխնայ ժամանակը անհետացնում է շատ ականաւոր աշխատութիւններ; պէտք է նորա մոռացութիւնից ազատել սորանց։

---

## 274

Ես գիտէի զաշխարհս ինձ մուլք է տուած,
  Ուտէի խըմէի հետ իմ սիրելեաց.
  Այս մահն յանկարծի հասաւ եռեանց.
  Ոչինչ թէպտիր ունէի կիսկատար մընաց։
Գիտէի թէ բերդ էի 'ի յայսմ աշխարհիս,
  Մահուան ցաւն պատեց բոլորով զմարմինս,
  Նա շարժեցաւ փըլաւ իմ բոլոր պարիսպս,
  Ոչինչ հասարաթ ունէի մընաց 'ի սրտիս։
Երեկ վարդի նըման ես կու փայլէի,
  Միրամարգի նըման 'ի շուրջ կու գայի.

Սիրելեացըն հետ զրուց կու տայի.
Ես այս աւուրս իսկի խապար չունէի։
Ես գիտէի մարդ թէ չի մեռանիր
Եւ աստենի կենացըս չի բաժանիր.
Իսկի աղօթք չէրի կամ հոգւոյս թէպտիր,
Համ լեզուս կապուեցաւ 'ի բերանս ղափիլ։
Եկաւ մութն տիրեց իմ ծովաչերուս,
Գընաց խելքս 'ի գըլխոյս, գոյնս երեսուս.
Իմ սիրելիք եղբարք ժողովեցան եզերս,
Կու հարցանեն թէ զմեզ կու ճանաչե՞ս։
Աչեր լոյս չիգայ որ տեսնեմ ըզձեզ.
Լեզուս չի բարբառիր որ զրոյց տամ ձեզ.
Ա՜յ իմ սիրուն եղբարք, հալալ արէք ինձ
Որ կերայ անպակաս աղուհաց հետ ձեզ։
Այս իմ լուսով աչերս է՞ր խաւարեցաւ,
Եւ իմ արագ լեզուս վասն է՞ր կապեցաւ.
Միթէ մեռանելո՞յս օրըն մօտացաւ
Եւ հոգիս 'ի մարմնոյս բաժնիլ կամեցաւ։
Դեռ հասեր էի իմ հօր փաւազան
Շուտով կը հասնէի 'ի յամենայն բան.
Խապտիր կու անէին որ դընէին նըշան,
Նըշանին փոխարէն դրին զիս գերեզման։
Ինձի հալալ արէք ո՛վ իմ սիրելիք,
Այսօր թէ ես մեռայ՝ դուք այլ տի մեռնիք.
Աշխարհս անցաւոր է, չիլինի թէ խաբուիք
Մահըն ղափիլ կու գայ, հա՛նց իմացիք։
Այսօր ես կու հեռանամ 'ի ձեզանէս,
Ի տան և յընտանեաց կու բաժանիմ ես.
Ի ձէզանէ կը խընդրեմ չիմոռանայք զիս,
Ասէք զՀայր մեղայն, տէր ողորմի ձեզ,
Եւ քան զմահն լեղի իսկի չըկայ վատ
Որ բաժնէ զփեսայն ու զնոր հարսն 'ի զատ.
Երբ բաժանողն Աստուած է ո՞ւմ անեմ գանգատ,
Շատ իմաստուն խելացիք որ կը մընան մաթ։
Աստուած մխիթարէ ձեզ սիրելիք,
Միաբան ժողովուրդք որ իմ հետս եկիք.

Տայ ձեզ տէր Աստուած զինչ խնդիրք ունիք,
Հաւատար ժողովուրդք որ դուք զիս լացիք։
Հոգևոր քահանայք դուք մի՛ ձանձրանէք
Զկարգս բոլոր ատէք 'ի տեղ մի՛ թողէք.
Եւ զաշխարհն ձեր հալալ արէք.
Ես ձեզնէ հեռացայ, դուք բարով կացէք։
Զիմ աստեննի հանդերձս յինէ հանեցէք։
Եւ անտեննի պատանքն ինձի հագուցէք.
Ի հող 'ի գերեզման շուտով իջուցէք,
Ընդ հրեշտակին իմոյ զիս ուղարկեցէք։
Երկար ճամբու պաշար պատարագ դրէք
Աղօթք ու աղաչանք, պաղատանք արէք.
Զձեզ ես աղաչեմ, զիս չիմոռանաք,
Ըզկոյս Մարիամ բարեխօս առնէք։
Մահն հանդիպելոց է ամենեցուն,
Զայն ընդ մտաւ ածեմ, չունիմ դադարումն.
Ողբամ հառաչելով ես զօրն 'ի բուն
Թէ ինչ ճուապ տի տամ ես իմ Աստուծոյն։
Մեղօք եմ ըմբռնեալ, տոռամբ թշնամւոյն,
Որսայ և ընկըրկէ զիս 'ի գուբ տղմոյն.
Զի միշտ և հանապազ ընթանամ 'ի նոյն,
Գընամ որպէս զվարազն 'ի ժահահոտոյն։
Մեղայ գոչեմ առ քեզ Աստուած ամենի,
Զի ոչ թողցես իմ անձ որպէս գնայի.
Ձըգեա յողորմութիւն ունկանաւ շնորհի,
Եւ հան զիս անդընդոց 'ի խորոց մեծի։
Գըրեմ առ քեզ Հեթում խըրատ հոգևոր։
Թէ ես մանուկ ուշիմ մաքուր մտաւոր.
Ընկալ առ քեզ զխրատս իմ որպէս խընձոր,
Իմաստութեամբ և ուսմամբ լեր դու զօրաւոր։

Բազմավէպ, 1853 Թ. Ե. 212—213

---

275

Սուգ դստեր Յեփթայեայ։

Յառաւօտ կենաց հուսանիս,
Յարշալոյս աւուրց անմեղիս,
Խարշակ մահուան տարածի,
Եւ լոյս աչացս պակասի։
Ով ծանօթ լերինք և հովիտք,
Ով պայծառ դաշտք ծաղկափթիթք,
Ահա՛ ՚ի ձէնջ հրաժարիմ,
Փութով երթայց ՚ի շիրիմ։
Լացէ՛ք զիս, ո՛վ անտառք, բըլուրք,
Լացէ՛ք հարք, մարք, եղբարք և քորք,
Զիս փոյթ զենցէ սուր ուխտին,
Յօդուածքս այժմէն սարսափին։
Արիւն իմ է գին փրկութեան,
Դիցամոլ տանն Իսրայէլեան
Մեղապարտքն ազատ մնան,
Անմեղ կեանք իմ չքանան։
Մայր իմ, ա՜խ դու մի՛ շատ ցաւիր,
Հօրս ուխտին բնաւ մի՛ ներհակիր։
ՅԱստուած բարձրեալն զյոյս քո դիր
Դե՛ր զգարդս իմ, մի՛ տըխրիր։
Դուք դստերք տոհմին Յակովբեան,
Շուրջ զինև կացէ՛ք միաբան,
Երգեցէ՛ք զերգս հարսնութեան,
Միշտ տօնեցէ՛ք զիմ վախճան։
Աստուած մեծ՝ փառք Իսրայէլի,
Ընկալ զիս իբր զհոտ կընդրկի,
Իբրև զզոհն Աբէլի,
Իբրև զորդին Սարրայի։
Բարունեաց վըճիռ համաձայն
Ո՛չ կարաց տալ մահուս խափան.
Լե՛ր դու, Տէր իմ, օգնական,
Դու հեշտ արա՛ զիմ վախճան։

Եղկելոյս ծընողք ցաւալի
Մնացեն առանց զաւակի,
Տէր, տո՛ւր, նոցա սիրտ արի.
Մեղմեա՛ զմորմոք դառն վըշտի:
Աւանիկ՝ երամք հրեշտակաց
Առ երկնիւք կան թեւատարած,
Զ՚իս հրաւիրեն յԱդին բաց,
Զ՚իս կոչեն հարսն Հօր փառաց:
Նըկարեն քօղն իմ հարսնութեան
Փոխարկի 'ի պատան թաղման.
Իմ պճնազարդ հարսնարան
Եղև այս խոր գերեզման:
Ցուցէ՛ք ինձ զիմ մահու գործի,
Զսուրբ զէն զոհիս արժանի,
Արդ՝ ողջ լերուք, սիրելիք,
Օրհնեա՛լ է Տէր, պիղծ են դիք:

Յ. Վ. Ալամդարեան.

---

## 276

### Աղասիի երգը:

Սար ու ձոր ընկած մէկ չոր թփի տակին,
Գետնին նայելով մնացել եմ նըստած.
Ձեռս ծոցումըս, գլուխս մէկ լուռ քարի
Տըւած՝ լալիս եմ օրըս խաւարած:
Ամպերն առաջիս, սարերն ետեւիս,
Քեզ մտիկ տալով, ո՜յ իմ քաղցր Մասիս,
Աչք արցունքով էրուած, խորոված,
Երեսիդ նայեմ՝ մընամ քարացած:
Ծընողք, ազգականք հեռու ինձանից,
Լուսնին նայելով, ձեր սէրն յիշելով,
Եարաբ երբ կըլի, որ ես ձեզանից,
Իմ կարօտս առնեմ՝ ձեզ ջան ասելով:
Աչքըս ծով դարձաւ ճամբին նայելով,
Մէկ ղուշ որ գլխիս պըտիտ է գալիս,

Թէ երբ մէկ խաբար կ՚հասնի ինձ բարով,
Հոգոց հանելով առում եմ լալիս.
«Նազլու իմ, Նազլու, աննըման Նազլու,
«Սիրտս խորովէ անունդ յիշելով
«Նազլու իմ, Նազլու, հրաշալի Նազլու,
«Եղասին քեզ տայ իր յետին բարով:
«Սարերի գօշին, ձորերի միջին,
«Ս՝այ գլխին տալով քու խեղճ Եղասին,
«Արեսից զրկուած, քու սիրով մաշուած՝
«Տառրակի նըման փշի վերայ նըստած:
«Նազլու իմ, Նազլու, մէկ շունչս է մնացել,
«Ոսկերքս քըքըվել, աչքերս խաւարել,
«Թող մէկ շունչդ առնեմ, յետոյ հող մտնեմ
«Դժոխքն-էլ տանեն՝ ես հանգիստ կ՚լնեմ:
«Քեզ եմ մընում, քեզ, քու ջանին մեռնեմ.
«Հող ու գերեզման ես վըրես ունեմ.
«Քանց իմ սառը մարմին էլ ինչ գերեզման
Ինձի պէտք կուգայ, երեսիդ ղուրբան:»

Խաչատուր Աբովեան: 1840, Թիֆլիս:

---

## 277

Անցեալ օրն դու ման էիր գալիս —
Մարդկանց միջում՝ առողջ և կենդան,
Այժմ կոչումեն, դու ձայն չես տալիս,
Կամումես մտնել մութն գերեզման:
Ազգականքդ քեզ անչափ սիրէին,
Մանուշակի պէս մէկ մէկու տալով.
Ընդ քեզ մեռնելոյ ուխտադիր էին,
Հիմայ թաղել են տանում՝ ողբալով:
Քամհարն շուտ շուտ զքեզ լուանայ,
Հիւսն զարդարէ փայտեայ դագաղն.
Մայրդ գնացեալ՝ կոչէ քահանայ,
Օհ մի՛ մնացես տան մինչ՚ի վաղն:
Ո՛ւմ դու հայր էիր՝ և նա քեզ որդի,
Որ չէիր ուզել՝ աչքէդ հեռանայ.

Այժմ տեսնելով՝ քեզ մին անշարժ դի,
Ո՛չ կամի վերէք մէջքէն կեռանայ։
Ո՞ւր է, ո՞ւր կորաւ սէր ազգականաց,
Որ նախ քեզանից նա անբաժան էր.
Ողջ փախան 'ի քէն՝ մօտդ ո՛վ մնաց,
Տե՛ս, որ ամէնն էլ մին դատարկ բան էր։
Այս է բնական վարքն աշխարհի,
Մ՝ինչ իմանումենք՝ միայն չե՛նք տանում.
Սիրումենք՝ իբրև աննման բարի,
Մ՝եռանելիս ենք նրանից զանգատում։
Աշխարհքն՝ բաժակ, հրեշտակն՝ մատռուակ,
Մ՝ահն՝ գինի է. մենք՝ խրախ անողն.
Պիտի խմենք, որ առնումք ճաշակ,
Ո՞վ է նրանցից զերծ մնացողն։

Գ. Տ—Տ. Մադաթեան։

---

278

Մեկնեցայ հայրենեացն իմ աստ մընալով,
Օտար աշխարհ թափառելով մաշելով.
Պանդուխտ եւ նըժդեհ վըշտակիր մարմնով,
Ի յընտանեաց եղբարց կարօտ մընալով։
Օտար աշխարհ թափառ՝ չունիմ դադարում,
Տարաբերեալ ծըփիմ նըման ծովերուն.
Ահ եւ կասկածք եւ վիշտք անթիւ անպատում,
Ի յընտանեաց եղբարց կարօտ մընալով։
Վիշտս ի աւազակաց, վիշտս ի սուտ եղբարց,
Վիշտս ի հրապուրանաց անօրէն ազանց.
Արհաւիրք ահարկուք զետ ջուրց հոսանաց
Պաշարելով անձն իմ, մնացի կարօտով։
Սորագլուխ կարկամեալ կամ երկիւղալից,
Խանգարեցի ուսումն ի դէմս ամենից.
Թէպէտ կամ ենթադրեալ յերկիր բարելից,
Բայց ոչ ունիմ հանգիստ, մնացի կարօտով։
Երերեալ դեգերիմ ի յայս կենցաղում,
Պահ մի ուրախանամ, հազար պահ տըրտում.

Յայգ եւ ցորեկ տագնապ ահ եւ հառաչումն,
Ապաղելով ի հոգս, մնացի կարօտով։
Սրբուհի կոյս, օգնեա ինձ տառապելոյս,
Կըսկըծագին տառապելոյս ցաւելոյս։
Բարեխօսեա առ Տէր ողորմիլ գերուս,
Հանել զիս ի բանդէ, մնացի կարօտով։
Ինձ ողորմեա, Յիսուս բանըդ հայրական,
Ապաւինիմ ի քեզ, կենաց գաւազան.
Թէպէտ եմ մեղաւոր, գոլով անարժան,
Մի թողուր զիս ի սպառ, մնացի կարօտով։

Բազմավէպ, 1858 Թ. ե. 135:

---

## 279

### Իտալուհիք և Իտալացիք։

(Յիշողութիւն դէպ ի անցածը)

I

Ինչո՞ւ, ինչո՞ւ Իտալացիք
Չէ թնդում քաղցր երգեհոն;
Ինչո՞ւ քնքուշ Իտալուհիք,
Թողել էք ձեր պիանօն։
Մոռացել են դոքա, ասես
Փափուկ սէրը կանացի.
Սրտում վրէժ, կորիճի պէս
Գիմումեն վրա՛նը ոսոխի.
Որպէս տան մէջ, նոյնպէս կռւում
Կանգնած են հեզ և հպարտ;
Գնդակներին կուրծք են ուղղում,
Եւ շըթունքից չէ՛ գնում վարդ։

II

Զարմանո՞ւմէք, ինչ ասումեմ.
Թէ դուք նոցա տեսնէիք
Խաղաղ օրով, երբ քաղցրադէմ
Բռնած կիթառն գեղեցիկ,

Փափուկ մատներն արծաթելար
Նուագարանին դիպչելով,
Պարտէզի մէջ ծաղկադալար, —
Դուք կ'լսէիք անխռով
Սիրոյ ձայնը, սիրոյ հոգին,
Հիւսած սրտի թելերից.
Սիրե՛լ գիտէ Իտալուհին,
Զրկուած բոլոր աշխարհից:

III

Շուրջ ճակատով շուշանագեղ
Ծածանվումեն թուխ մազեր;
Եւ սաթի պէս յօնքեր շքեղ,
Սեւ աստղի ջուխտ աչեր:
Դուք լսեցէք, երբ զրուցումեն.
Ամբողջ դրախտ փափկութեան
Ձեր սրտերը կախարդումեն
Որպէս տաւիղը Էօլեան:
Եւ ոսոխի գոռոզ հոգին
Մի՞թէ չ'պէտքէ նուաճի,
Եւ յաղթութեան արմաւենին
Դոցա առջև տարածուի:

IV

Իտալուհի՛ք, և ձեզ նման
Արևելքում մի անգամ,
Ձեր քոյրերը զինուորեցան
Թշնամու դէմ անզգամ;
Արեան գնով Հայաստանին
Դնեցին նոքա փրկութիւն,
Եւ թաղեցին հողի ծոցին
Անմեղ ծաղկած կուսութիւն:
Մեռան նոքա. բայց կ'մեռնի՞
Նոցա գործի յաղթանակ;
Դուք դէ՛պ ի դաշտ. մեք կենդանի
Ունինք նոցա յիշատակ:

V

Իտա՜լիա, ա՛շխարհ փառքի,
Դու, քո կուրծքը զրահով
Ամրապնդած, յա՛ղթանակի
Կամիս պսակուել դափնիքով,
Մի՞թէ իսպառ պէտք է ճնշվի
Այդ ազգային զօրութիւն,
Եւ առուի պէս արիւնդ թափվի,
Հերոսներիդ սուրբ արիւն։
Մի՞թէ ձեռներն, մի՞թէ սրեր
Քո ոխերիմ թշնամու
Պէտք է բերեն քեզ նոր աւեր,
Եւ ստրկանաս դարձեալ դու։

VI

Ինձ ասացէ՛ք. ո՞վ ձեզանից,
Որի մէջ մարդու սիրտ կայ,
Չ'խեղդուելով արտասուքից,
Կարող է մնալ անզգայ,
Տեսանելով այս ողբալի
Սրածութեան աւերած,
Եւ սրբութիւնն Իտալիայի
Նշաւակով անարգած։
Անիծուեմ չար ժամանակ,
Երբ Բուրբոնը գիշատիչ,
Տնկեց այստեղ իւր դրօշակ
Եւ խաբեբայ և մատնիչ։

VII

Մի՛ կա՛մք, մի շո՛ւնչ ձեզ օգնական;
Առէ՛ք սուսեր—և յառա՛ջ.
Դուք սիրտ ունիք ասպետական,
Յարձակուեցէ՛ք ձախ ու աջ։
Ազնիւ գործին ինքը Աստուած
Ուղարկումէ իւր վահան;

Իտալիա՛, փա՛ռք անմոռաց.
Կ՚թնդայ ձայնը փրկութեան։
Նորից, նորից անուշահոտ
Կ՚արձակուի քո մրտենին;
Նոր արշալոյս, նոր առաւօտ,
Եւ աւետեաց ձիթենին։

VIII

Եւ անցածիդ գեղեցկութիւն
Իւր դագաղից կ՚զարթնի,
Միայն աւե՛ր և պղծո՛ւթիւն
Աւստրիան կընդունի։
Իտալիա՛, դու զօրաւոր,—
Եւ կեցցե՛ն քո զաւակներ;
Իտալիա՛, ես հոգւոր
Ներումեմ քեզ իմ տաղեր.
Եւ Հայի մէջ կայ կենդանի
Ազատութեան արձագանգ;
Եւ թո՛ղ չասեն, որ Հայն չունի
Ո՛չ ազատ կամք և ո՛չ կեանք։

Ս. Շահազիզեան։

---

280

Կեցցէ սուրբ գործը։

Եւ ես երբեմն երգումէի
Անհոգ քնարիս լարերով
Գեղեցկութիւն միայն սէրի,
Վառուած նորա յուզմունքով;

Եւ իմ մուզաս ինքնահաւան
Կամէր այդպէս ինձ պահել,
Եւ միշտ երազ, ցնորք քաղցրութեան
Հոգուս առջև ժողովել։

Ես զօրացայ... խորտակեցի
Այդ մուզայի բռնութիւն;

Եւ սերտ սիրով ողջունեցի
Քրտնաջա՜ն աշխատութիւն։

Ես լսեցի խոր հառաչանք,
Եւ վիշտ հոգու, և գանգատ;
Եւ լաց, և սուգ, և աղաչանք,
Այն էր «Ազգ իմ հարազատ»։

Ես ուխտեցի լինել մշակ
Հասարակաց պիտոյքի․
Երգել ուսայ «գործ և վաստակ,
«Արդար հացը այս կեանքի»։

Ս. Շահազիզեան։

---

281

Հայաստան և Նորա որդիքը։

Եւ գեղեցիկ է Հայաստան աշխարհ,
Բայց գեղեցիկ չեն նորա մարդիկ․
Հայաստան կանաչ, Հայաստան դալար,
Բայց չոր ու ցամաք նորա խեղճ որդիք․
Ահա սթափուած ազգեր ամենայն
Դիմումեն յառաջ հզօր քայլերով;
Ահա՜ բարձրացաւ դրօշը ազգութեան,
Բայց Հայն քնած է կորստեան քնով։

Ս. Շահազիզեան։

---

282

Լուսին։

(Ռուսերէնից)

Ո՛հ, լուսին, լուսին, արդէն քանի՜ դար
Դու երկնքումը փայլումես պայծառ․
Բայց ո՛րքան ստէպ լուսաւորումես
Ուրախ դէմքի տեղ, մի տխուր երես։

Քեզ խոր տխրութեամբ չէ սպասում նա,
Որ չէր ստացել բաղդից մի հարուած.
Որ գոհ իւր օրից հասած գիշերին,
Աղօթք է առնում վերև առ Աստուած.
Այլ քո ծագելուց մինչև մտանելդ
Աչքը քեզանից չէ հեռացնում նա,
Որի կորուստքը անչափ են կեանքում,
Որ արտասվումէ իւր բաղդի վերայ։
Ո՛հ, պայծառ լուսին, դու պայծառ լուսին,
Վկայ չես միայն լոկ արտասուքի.
Դու որքան յաճախ քո խաւար գահից
Տեսող ես լինում լուռ զարհուրանքի։
Քո ճառագայթով որքան փայլել է
Պողպատեայ սուրը ծխված արիւնում....
Ինչ հնար լինէր քեզ այդ րոպէին,
Խաւարվիլ իսկոյն գիշերի մթնում,
Լցվել արիւնով, և այդ նշանով
Դողդոջուն աչքին այդ մարդասպանի
Երևել դարձեալ կապոյտ երկինքում։
Թո՛ղ գէթ իմանար այդ չարագործը,
Որ կայ մի վկայ և խաւար գործքի.
Որ երկնքիցը նորան նայումէ
Մի դատապարտող խիստ, անմերժելի։
Բայց այս երազ էր... ո՛վ գիտէ, գուցէ այս երեկոյիս,
Դարձեալ կը թափվի մի մարդու արիւն.
Բայց նոյնպէս պայծառ, դու նոյն սառնութեամբ,
Կը լուսաւորես արիւն ու սուրը,
Ու սպանվածին և մարդասպանին
Քու լուսից կը տաս հաւասար բաժին։

Կամս Իմանուէլ (Մ. Նալբանդեանց)։ Հիւսիսափայլ 1858 թ. ե. 264:

Միքայէլ Ղազարեան Նալբանդեանց, ծնաւ 27 Հոկտեմբերի, 1830 թ. Նոր-Նախիջևան, Դոն գետի վերայ։ վախճանեցաւ 36 տարեկան հասակում, թոքախտից (թոքախտութիւնից, чахотка) 1866 թ. մարտի 31, Կամիշին քաղաքում, Սարատովի գուբերնիումը (gouvernement de Saratow), Վոլգա գետի վերայ; Թաղուեցաւ 14 ապրիլի Նոր Նախիջևանու Սուրբ Խաչի վանքի դրան առաջեւ, ձախ կողմը։ Մանկութեան հասակում աշակերտեցաւ Տէր-Գաբրիէլ Պատկանեանցի մօտ, մինչև 1846 թ. ետոյ, 1867 թ. եղև դրագիր և ետոյ քարտուղար Նախիջևանայ և Բեսարաբիոյ Վիճակաւոր առաջնորդ Մատ-

թէոս արքեպիսկոպոս Վեհապետեանի մօտ: 1853 Թ. գնաց Մոսկվա եւ եղաւ Պետերբուրգ; ստացաւ համալսարանից վարժապետական աստիճան; սկսեց հայոց լեզուի դասատուութիւն Մոսկվայի Լազարեան ուսումնարանում; եղաւ Մոսկվայի համալսարանի բժշկական բաժնում սկսեց պարապել, բայց չը վերջացրուց իւր պարապմունքը: 1858 Թ., երբ Ս. Ն. Նազարեանցը սկսեց հրատարակել «Հիւսիսափայլ» ամսագիրը, Նալբանդեանցը նորա քաջաքարաւոր աշխատակիցներից գլխաւորն եղաւ: Իւր գրած յօդուածները կը ստորագրէր «Կոմս Էմմանուէլ», «Փառոս Ցոլակեան», եւ այլ անուններով: 1856 եւ 1858 Թ. ճանապարհորդեց Եւրոպա եւ տեսաւ. Կ. Պօլիս, Վիէննա, Վենետիկ, Փարիզ, Լոնդոն եւ այլ տեղեր: 1860 Թ. Պետերբուրգի համալսարանում ստացաւ արեւելեան լեզուագիտութեան կանդիդատի աստիճան: 1861 եւ 1862 Թ. Թ. ճանապարհորդեց, Պետերբուրգից, Մոսկվա, Նոր-Նախիջեւան, Տիֆլիս, Երեւան, սուրբ Էջմիածին; վերադառնալով Տիֆլիս, Կ. Պօլիս, Փարիզ, Լոնդոն; Էնտեղից, Փարիզու եւ Սուէզի ճանապարհաւ, Կալկաթա, Հնդկաստանի մեծատուն հայերից մօտ 70 տարի առաջ թողած Նոր-Նախիջեւանի համար կտակած գումարը ձեռք բերելու: Նալբանդեանցի բացի չափաբերական աշխատութիւններից, որոնք տպած են մեր երգարանումը, յայտնի են Հիւսիսափայլի 1858 Թ. կրկնակի «Հանդէս Նոր Հայախօսութեան» 1 հատորի վերայ: Դիքսուհի դը Շեվրէօզ: Մահացուցակ Գէորգ Գեղամեանցին: Դամբանական ճառ: Աշխարհի կազմածը եւ նորա հրաշքները: Պրօպերցիա Ռօսսի: Նամակ առ Հիւսիսափայլ հրատարակողը: Յիշատակարան կոմս Էմմանուէլի օրագրական թերթերից; Նոյնը: Մխիթար Սեբաստացի եւ Մխիթարեանք: Կրկնակի Գամառ Քաթիպայի ժողովրդական լեզուով գրած, թարգմանված եւ տպված Ռօբինզօնի պատմութեան վերայ: Յիշատակարան կոմս Էմմանուէլի օրագրական թերթերից; Նոյնը: Սոսջարկութիւն (բանաստեղծութիւն): Յիշատակարան կոմս Էմմանուէլի օրագրական թերթերից: Նկատողութիւնք: Յիշատակարան: Նամակ առ Հրատարակողն: Թալիսմաններ:

1859 Թ. Յիշատակարան Կ. Է. Օ. թերթերից: Մահացուցակ Աբրահամ Գաղտնեանց փաստաբանի: Յիշատակարան: Ազգային ժառանգութիւնք Նոր-Նախիջեւանին կտակած ժառանգութեան մասին. 1794 եւ 1795 Թ. Կալկաթայի Մաւէհ Բաբաջանեանցից): Յիշատակարան; Նոյնը: Մեռելահարցուկ: Յիշատակարան: 1860 Թ. Յիշատակարան: Մանկութեան օրեր (բանաստեղծութիւն): 1862 Թ. Յայտարարութիւն Հայաստանի աշխարհագրական կարտի մասին:

Բաց ի սորանից Նալբանդեանցը թողել է քանի մի ձեռագիր աշխատութիւնք եւ նամակներ: Իւր վերջի տարիները շատ աշխատասիրեց Ղազարոս Փարպեցւոյ Թուղթը առ Վահան Մամիկոնեան իշխանը աշխարհաբար թարգմանելու: Այս աշխատութիւնը իւր լեզուի պարզութեամբ, կանոնաւորութեամբ, ոճի գեղեցկութեամբ, եւ զանազան քննադական ծանօթութեամբ պիտոյ է համարվի հանգուցեալի գրաւոր աշխատութեանց պսակը: Հանգուցեալը այս գործը թողեց ամենեւին պատրաստ տպագրութեան համար եւ շատ կարելի է որ քանի մի ամսից տպվի: Այն ժամանակ հասկացողքը թող համեմատեն Նալբանդեանցի այս աշխատութիւնը Մ. Էմինի մի եւ նոյն տպագրութեան թեան հետ: Բաց ի սորանից մնացել է. Շերամագործութիւն, Սկիզբն քերականութեան աշխարհաբար լեզուի եւ քանի մի բանաստեղծութիւնք:

Նալբանդեանցի մահացուցակը տպուած է Տիֆլիզու «Մեղու Հայաստանի» լրագրի 1866 Թ. № 19, մայիսի 21:

---

## 283

### Միայն երազ էր։

Եւ ծանր է վիշտս, և ես քնումեմ, —
Ու ահա երազ խորին գիշերով.
Միայն մեծ երազ է. ես տեսանումեմ.
Հայի մութ աստղը փայլեց մի լուսո՛վ։
Ու ահա Հայերն, նախանձով վառուած,
Գիտութեան յառաջ, որպէս այլ ազգեր,
Ու մտանումէ նոցա մէջ Աստուած,
Բերելով իւր հետ միաւորիչ սէր։
Ու կարծես, այդ սէրն պէտք է հաստատուի,
Որ վարձատրէ արիւնով հոսած
Նոցա արտասուք, և ոգևորուի
Անծաղիկ կեանքը Հայ-հասարակաց։
Զարթնումեմ քնիցս. — ինձ պաշարումեն
Նոյն իսկ հոգեկան ցաւի սև օձեր,
Ու Հային չար բաղդ ինձ գուշակումեն.
Ցաւեցէք, Հայեր. տեսածս — երա՛զ էր։

Ս. Շահազիզեան։

---

## 284

### Գերի Հայի աղօթքը։

Գո՛հ ենք Քեզնից, ո՜վ Բարերար,
Օրհնեա՛լ լինի միշտ Քո անուն։
Թո՛ղ արդար արևըդ այդ լուսավառ.
Բերէ իւր հետ մեզ փրկութիւն։
Ա՜հ, ուրախ օր շընորհիր, Տէ՜ր,
Մեր խղճալի հայրենիքին;
Նորա սիրուն սարեր, դաշտեր
Օրհնումեն քեզ եռանդագին։
Մի՛ տար, Աստուած, որ կործանուի
Կուսակըրօն Հայոց աշխարհ.

Թո՛ղ քաղցր անուն Հայաստանի
 Մնայ կենդան միշտ մեր համար։
Բա՛ց մեզ դուռն քո ողորմութեան,
 Յեսու, Մովսէս մեզ ուղարկէք,
Որ այս դժնեայ Եգիպտոսից
 Տանեցէ՛ք մեզ տանեն երկիր։
Ա՛հ, այն աշխարհ, ուր առաջին
 Քարոզեցաւ Աւետարան.
Փայլեց դրօշը ծիրանածին;
 Կանգնեցաւ խաչ քրիստոսական,
Ուր նուիրական Նահատակներ
 Դէմ վիշապին զինուորեցան.
Պատերազմի կանաչ դաշտեր
 Նոցա արիւնով ներկուեցան։
Ուր Հայրեր մեր երանելի.
 Գրիգոր, Ներսէս, Մեսրոպ, Սահակ,
Մեծարեցին անուն ազգի,
 Եւ ննջեցին ծաղկապսակ։

Ս. Շահազիզեան:

---

285

Յովհաննայի հրաժարվիլը։

(Գերմ. Շիլլերից)

Մնաք բարով լերինք, սիրուն արօտներ,
 Հանգիստ, խաղաղ հովիտք, մնա՛ք դուք բարով.
 Այլ շրջելու չեն ձեր վերայ իմ մեղմ քայլեր,
 Յովհաննայից առէք դուք այժմ վերջին բարով։
 Իմ ջրած դաշտեր, իմ տնկած ծառեր,
 Աճեցէք զուարթ, շատ ու շատ օրեր.
 Մնաք բարով ծմակներ և ցուրտ աղբիւրներ,
 Այլ չեմ լսելու հովտիս արձագանգ, քեզ ով անոյշ ձայն,
 Որ այնքան յաճախ երգերս կրկնէր.
 Երթայ Յովհաննան, անդարձ յաւիտեան։
Տեղեր, ուր միշտ ես խնդայի հանդարտ,
 Ձեզնից յաւիտեան այժմ հեռանումեմ.

Ցիր եղէք գառներ, սար, ձոր, անապատ,
Անտէր, անհոգիւ ես ձեզ թողնումեմ.
Այժմ մի ուրիշ հօտ պիտի հովվեմ,
Վտանգի դաշտում արիւնով ջրած.
Այսպէս մի Հոգի հրաման է տուած.
Ունայն ցանկութեամբ ես բորբոքված չեմ։
Նա որ բոցավառ Թփի մէջ իջեց
Առ Մովսէս երբեմն Քորեբի ծայրին,
Դէպ ի փարաւոն դիմել հրամայեց,
Որ երբեմն համեստ պատանի Դաւթին,
Հովվին իւր համար զէնուոր նա ընտրեց,
Որ միշտ ողորմած էր հովիւներին,
Նա ինձ հրամայեց ծառիս ճիւղերից.
«Գնա, ասելով, վկայիր դու ինձ։
«Մարմինդ պատիր ծանր զրահով,
Պողպատով ծածկիր քո փափուկ կուրծքդ.
Մարդկային սէրը ունայն իղձերով
Չվառէ երբէք անարատ սիրտդ.
Երբէք չծաղկի ճակատդ պսակով,
Սիրուն երեխայ չխաղայ գոգումդ.
Բայց կը պսակեմ փառքով յաղթութեան
Բոլոր կանանց մէջ ես քեզ յաւիտեան։
«Երբ կը վհատվին քաջերն ես կռվում;
Երբ մօտ է ահա Ֆրանսիայի վերջը,
Յառաջ կը տանես դրօշակը դաշտում,
Եւ ինչպես այն ժիր, քաջ հնձարարը,
Գետին կը ձգես հպարտ յաղթողին,
Կը քանդես նորա բաղդի անիւը,
Կ'ազատես Ֆրանսիան, դու այլև Ռէյմսը,
Ուր կը թագադրես արքայ Կարլոսը։»
Երկինքը նշան էր ինձ խոստացել,
Ահա ուղարկեց այս սաղաւարտը.
Երկնային ուժով, նրան շօշափելուց,
Վառումէ սիրտս նորա երկաթը,
Դէպ ի պատերազմ քարշումէ նա ինձ,
Մղումէ բռնի դէպ կռուի դաշտը.

Կռուի գոռոցը լռումէ արդէն,
Եւ թմբուկները սաստիկ հնչումեն։

Բարխուդարեանց։ Հիւսիսափայլ, 1859 թ. ե. 572—573։

---

286

Առանձնութիւն։

Այլ չէր սփոփում պայծառ առաւօտ
Վրդոված հոգուս ցաւեր կրակոտ.
Աւերակի մօտ, կանաչ ծառի տակ,
Մտքի մէջ կորած էի բովանդակ։
Չէին պակասում վշտերըս յոլով,
Հոգիս ու սիրտս միշտ խռով էր խռով.
Սգաւորի պէս, անխօս լուռ ու մունջ,
Զգումէի շատ ներքուստ դառն մրմունջ։
Բարձր սարի տակ, փայլուն ու կապուտ
Մի գէտ փրփրադէզ վազումէր շուտ շուտ.
Լողումէր նորա վերայ մի նաւակ,
Ձկնորսն երգումէր իւր քաղցր նուագ։
Գետի միւս կողմում այգիներ, արօտ,
Փողփողումէին թփերով ցօղոտ.
Բնութեան նուրբ գեղով ծածանում մունջ մունջ
Կոյս ծաղիկներով յասմիկի փունջ փունջ։
Թխաչք աղջիկներ, լուացք շալակին,
Վազում գնումէին ափերով գետին.
Այն տեղ մի ջրաղաց պտտումէր արագ,
Ցօղեր մարգարտեայ շաղ տալով բարակ։
Կար այն տեղ հնուց աւեր աշտարակ,
Իսկ նորա մօտին խուց մի փոքրաբակ.
Կազմ ու զինավառ մի զինուոր բրդոտ
Երթում գալիս էր, կանգնում խցի մօտ։
Խաղ զինուորական առնումէր փոյթ փոյթ,
Ուսից ուս դնում հրացանը շոյտ շոյտ.
Երբեմն պարզումէր, երբեմն ուղղում,
Մերթ արձակումէր, մերթ նուրբ նկատում։

Այս բնական ու պարզ համեստ տեսարան
Չկարաց տանել վէրքերիս դարման.
Յաւիտ բժիշկը այն տեղ չպատահեց,
Սիրտս և հոգիս այրեց, խորովեց։

Ն. Հիւսիսափայլ, 1861 Թ. ե. 505։

---

## 287

### Երգ 'ի վերայ աւերման և խորասուզման Արկուռի գեղջ 'ի 23 յունիսի 1840 ամի։

Ո՞վ էր տեսել էս[1]) աշխարհս էս օրին,
Մեր մեղացն շարժը քանդեց Ակոռին։

Զարհուրելի՛ էր շարժի եկած օրը,
Սար ու ձոր իրար դիպաւ՝ ասեմ որը,
Մերը որդուն՝ որդին մոռացաւ հօրը,
Սարսափանք էր նայելիս Մասիսայ[2]) ձորին։
Էս պատիժն ամենն էր մեր մեղիցը,
Արարատեան սարը շարժեց տեղիցը,
Տակովն արեց՝ մարդ չի պրծաւ գեղիցը,
Ո՛չ Հայ, ո՛չ Թուրք, ո՛չ Ջըհուտ[3]), ո՛չ Ասորին[4])։
Վերին քակեալ, Թընդաց որոտաց ձորը,
Ախմիշ[5]) էլաւ՝ եկաւ ձիւնաբեր ջուրը,
Հոսեաց՝ տարաւ վանքն աւազան աղբիւրը,
Գիփ[6]) հաւաքեց՝ ածեց յանդունդս խորին։
Բարկացել էր մեր Արարիչն էս հետին,
Իրար դիպաւ՝ շարժեց Երկինքն ու գետին,
Չի՛ խնայեց Սուրբ Յակովբ Հայրապետին,
Որ քեռի էր Լուսաւորիչ Գրիգորին։
Ակոռին էր աշխարհիս մի նշանը,
Չի պահելով Աստուծոյ պատուիրանը,
Անմեղ տեղը կորաւ չորս հազար ջանը[7]),

---

1) Այս։ 2) Մասիս, որ և Այրարատ կամ Արարատ լեառն։ 3) Հրէայ կամ Եբրայեցի։ 4) Կամ Նասրանին։ 5) Հոսել, վազել։ Ախմիշ կամ Ագմըշ էլաւ—վազեց։ 6) Բոլորն, միանգամայն, բոլորովին, ընդ ամենն, ողջ։ 7) Ջան—Հոգի (զգայական) անձն, մարմին։

Թէ լսէին Աստուածային Սուրբ բանը,
Թէզ կու լսէր դարձ եկած մեղաւորին։
Խրատ առէք՝ կարդացէք Աստուծոյ Գիրը,
Եւ ճանաչէք ձեր ճանապարհն ու փիրը[8]),
Փառք տուեցէք՝ մէկէլ չ՛գայ էս Թիրը[9]),
Պաղատեցէք Աստուածածնու Աթոռին։
Նոյ վայր իջաւ տապանովն այս Սարումը,
Յակովբ Հայրապետն աղօթեց քարումը,
Հազար ութ հարիւր քառասուն տարումը,
Էս պատիժն էլաւ Յունիսի քսան օրին։
Մարդ չիմացաւ խեղճ Ակոռու հնարը[10]),
Գարբէդիար[11]) ընկաւ ամէն մի քարը,
Խրատ առէք՝ դուք էլ[12]) մեք գործիլ չարը,
Էս նասիհաթն[13]) արաւ Աղամ Աղբարը[14])։
Միշտ փառք տուէք ձեր անմահ Թագաւորին։

Աղբար Ադամ

---

288

Ողջոյն հրաժարական։

Մնացիր խաղաղութեամբ՝ ով իմ հոգի ջան[1]) սիրելի,
Այսօր ինձ տուր ձեռովդ՝ բաժակ անջատման սիրելի,
Սէրի ծովումն եմ էլած՝ նաւ ալէկոծման սիրելի,
Կենդանի ջոկնըվիլը՝ նման է մահուան սիրելի,
Երկու մեծ լուսաւորքն ինձ՝ խաւար փոխեցան սիրելի,
Երկու կամ երեք տարին՝ մեզ լիցի պայման սիրելի,

---

8) Գլխաւորութիւն հաւատոյ կամ դենի. գլխաւոր կամ առաջնորդ բազմութեան իրիք։ 9) Ցասումն, բարկութիւն. պատիժ (յերկնուստ). նետ, փքին, ալաք (բարկութեան)։ 10) Պատճառ, առիթ. հանգամանք, որպիսութիւն։ 11) Տանէ 'ի տուն, դրանէ 'ի դուռն, ձորոյ 'ի ձոր։ 12) Այլ, և, ևս, դարձեալ, և ևս։ 13) Խրատ, խորհուրդք, յորդորումն։ 14) Սերտած. կիրթ 'ի բերան։ Զայս մականուն ստացաւ յայլոց Երգիչն հանգուցեալ, որովհետև առանց իրիք պատրաստութեան բանաստեղծութիւնս առնէր կամ յանկարծ խաղս ասէր յոր և իցէ բնաբանի վերայ կամ առարկայի։

1) Հոգի—զգայական. գեղեցիկ. կեանք։

Չի խախտվինք՝ միայն սիրով լինինք բաւական սիրելի,
Մինչև կրկին տեսութեան՝ Տէրն անէ արժան սիրելի։
Խնդրումեմ այսուհետև՝ համարձակ ման գալ չունենաս,
Անմտին աննամուսին [2]) երբէք մտիկ տալ չունենաս,
Խորամանկ քաղցրաբանին՝ խորհուրդ տալոյ հալ [3]) չունենաս,
Անվայել բարեկամի՝ տուները երթալ չունենաս,
Քու վիճակէն գոհանաս՝ բարձրութեան ցանկալ չունենաս,
Աղքատութեան միջոցէն տրտմիլ՝ նեղանալ չունենաս,
Նամակով կամ յիշելով՝ ինձի մոռանալ չունենաս,
Ինձ լսես չես ունենալ՝ ստոր աստիճան սիրելի։
Քեզանից բաժանվելով՝ հեռու տեղեր պէտք է գնամ,
Քաջ սէրդ միտ բերելով յատուկ քեզ ինձ մօտ իմանամ,
Լսելով պարզ [4]) անունդ՝ քեզ ինձ տուողէն գոհանամ,
Հարազատ բարեկամով՝ սիրոյ նամակըդ ստանամ,
Ել ուրիշ սէր չի ճարեմ՝ շուտ քեզի դառնալու ջանամ,
Մահէն Աստուած խնայի՝ մինչ տեսութեանդ արժանանամ,
Փոքր ինչ ապրուստ տայ Տէրս՝ որ կարօտութիւն չունենամ,
Վայելենք այնուհետև՝ վիճակ քաղցրութեան սիրելի։
Անթարշամեալ [5] սէրերով՝ վայելենք վիճակ միասին,
Ազնիւ սէրն ունենալով՝ անխախտ և անքակ միասին,
Վայելենք էս աշխարհս՝ երկար ժամանակ միասին,
Ո՛չ ստոր անուն թողունք՝ ո՛չ թերի փափագ միասին,
Չարակամ ոսոխներին [6]) կանգնինք հակառակ միասին,
Աւետարանը ունելով՝ մեզ կենաց մուրհակ [7]) միասին,
Հոգիէն նորոգվելու՝ կազմենք նպատակ միասին,
Շիրինի [8]) խնդիրը իր տիրոջմէն այսքան սիրելի։

ՍԼԸԴ Շիրին։

---

2) Աննամուս—անամօթ, անառ, նախատ. (Նամուս—ամօթ, առ, փոյթ)։ 3) Միտք։ դիտաւորութիւն, կամք։ 4) Լաւ, քաջ, բարեհամբաւելի։ 5) Անթառամեալ. չթոռոմած, միշտ դալար։ 6) Թշնամի, հակառակորդ. 7) Պիտակ, ձեռագիր. գրած՝ ձեռք դրած՝ կնքած թուղթ։ 8) Շիրին—քաղցր։ Նա՛ անուն սիրականի Փէրհադին, որ՝ վառեալ սիրով Շիրինի, փորեաց և ծակեաց զլեառն՝ բիսիւթուն (անսիւն, այսինքն՝ անծառ) անուանեալ, առ 'ի տեսանել զդէմս սիրելւոյ իւրոյ։ Յոյր սակս և կոչեցաւ Փէրհադի քիուհքէն. այսինքն՝ Փէրհադն լեռնափոր։ Երգիչք մեր՝ 'ի Պարսիկ բանաստեղծութեանց անտի ուսեալք, յաճախակի յիշատակեն զսէր սոցին յասացուածս իւրեանց։

## 289

### Մուխամբազ[1]։

Երեկը՝ ինձի այսօր՝ թըվումէ երազի նման,
Օրերըս՝ տարիներըս անցնումէ վըռազի[2]) նման,
Աշխարհիս փառքը բոլոր՝ կարծվումէ տընազի[3]) նման,
Մէկ րոպէ չի՛ մնում՝ սահմանումը սազի[4]) նման,
Մենք վազող ջուր սըընթաց՝ ինքն է աւազի նման։
Շատ առաջ աշխարհը մեզ՝ դատարկ մէկ յոյս տալ կուննենայ,
Երբեմն մեզ կըլլէ՝ հոգ տանելու հալ կուննենայ,
Եթէ քիչ բախտ ունեցար՝ քեզ մօտ գնալ՝ գալ կուննենայ,
Իսկ թէ ոչ՝ քեզ յաւիտեան թողուլ՝ մոռանալ կուննենայ,
Հաստատ յոյսդ մաշելով՝ կ'թողայ մէկ մազի նման։
Իրաւի աշխարհը մենք՝ մեր հետը մէկ բան չի՛ բերինք,
Հայրերից չի՛ ծնած առէնը՝ մենք ինչի՞ տէրինք,
Երբ ծնանք, էն րոպէին՝ մեզ մահի մօտ գրաւ դրինք,
Արբութեան բարքիցը զուրկ՝ և բարութեանն աննըվէրինք,
Մեղսասէր սիրտ ունէինք՝ այն թիւնաբեր վազի[5]) նման։
Ի՞նչ էր, որ մեկնաբանեց Փրկիչը հրէից իշխանին,
Ասելով. թէ մարդիկը՝ պէտք է վերստին ծնանին,
Հոգւոյ աչքով նայումեմ՝ էս ամենաշա՛հ հրամանին,
Հուսկ յետոյ մտիկ տալով՝ ինձ պէս չարացեալ արձանին,
Մինչ անուշ կեանքիցս էլ՝ դառնումեմ օտկա՛զի[6] նման։
Քեզ ասեմ՝ էս անցաւոր վիճակի. ո՞ր հա՛լն[7]) է լաւ,
Մարմնեղէն կամքի նաև՝ աշխարհի թող տա՛լն է լաւ,
Քեզ միայն իւր մահովը՝ փրկողին յուսալն է լաւ,
Էլ ուրիշ լաւ չի կայ, բայց նոր սիրտ ունենալն է լաւ,
Շիրինը սուրբ ժողովոյս մէջն՝ է նուազի նման։

ՍԷԵԴ ՇԻՐԻՆ:

---

1) Նուագ, երգ, եղանակ։ 2) Շուտ, շտապ, երագ։ 3) Այպն, կատակ, ծաղրալի։ 4) Է՛ յայտնի նուագարան ինչ, որ ՚ի գործ ածեն երգիչք (աշըգք) յԱրևելս։ 5) Որթ խաղողոյ։ 6) Մէկ բանից հեռի լինելն, ՚ի բացեայ կալն։ 7) Դիրութիւն, որպիսութիւն հանգամանաց կամ պարագայից։

## 290

### Վարդի ոստ։

(Ռուս բանաստեղծ Լերմոնտովին է հետեւած):

Ասա՛ դու ինձ, ո՛ստ վարդի,
Ո՞ւր ես ծլել, ո՞ւր ես ծաղկել,
Ո՞ր հովիտի կամ ո՞ր դաշտի
Զարդարա՛նք ես դու եղել։
Արդեօք ծլե՞լ ես Եդեմում,
Ու ջրել է քեզ Եփրատ,
Թէ սնուցել է իւր գոգում
Քեզ ծերունին Արարատ։
Ո՞ր անգութի ձեռն է քաղել
Քեզ քո թփից մայրենական,
Կամ ո՞ր անգութն է քեզ տնկել
Այս աշխարհում պանդխտական։
Կամ թէ այն թուփ, քո օթեւան,
Թառամեցա՞ւ քեզ համանման,
Թէ սոխակները քաղցրաձայն
Մխիթարումեն միշտ նորան։
Բայց դու չունիս մխիթարիչ,
Ով թագուհիդ ծաղիկների,
Չունիս դու քեզ սիրոյ երգիչ,
Թառամումես երկրիցդ հեռի։
Ահ մի ագռաւ վատահամբաւ
Գուշակումէ նոր գոյժ, նոր ցաւ,
Իսկ դու տխուր, վիրաւորուած
Կախել ես գլուխդ թառամած։

Զօլլալեանց: Հիւսիսափայլ, 1861 թ. ե. 339—340։

---

## 291

Ըստ եղանակի «Գիւղական աղջիկ եմ ես» տաղին։

Ես Տապան նստեալ ՚ի գագաթ սարին,
Իբրեւ պահապան Հայոց աշխարհին,

Գուշեր և ցերեկ կոչեմ և ողբամ,
Իսկ Հայք զիս թողեալ, պաշտեն օտարքն.
Ո՞ւր է Հայ, ո՞ւր է Հայ, ո՞ւր է Հայ,
Ո՛ր ասէ՝ վա՜յ, վա՜յ։
Կորուսեալ զգահ, գայիսօն և թագ,
Այրի մնացի, անզարդ, անպսակ.
Մտի յանկողին զանազան արանց,
Եղէ անպատիւ ես տեսակ տեսակ. Ո՞ւր է Հայ, և այլն։
Զիս թողին անտէր, եղեն ցիր ու ցան,
Հայաստան մնաց այլոց ապաստան,
Թշնամիք զնա կոխան արարին,
Վէմք հիման նորա, տե՛ս, թէ ո՞ւր հասան։ Ո՞ւր է Հայ, և այլն։
Արուսեակ բաղտիս յանդունդն իջաւ,
Ճրագ փառաց իմոց ՚ի հողմոյ շիջաւ,
Որդիքն իմ՝ նման անմռունչ գառանց,
Ի սպանդ մահու տարան դահիճաւ։ Ո՞ւր է Հայ, և այլն։
Գարունն իմ կորոյս զիւր տաք եղանակ,
Չեբեր զշուշան, վարդ և մանուշակ,
Աէյեադ, արիւն իմ սառուցեալ մնաց,
Զի ո՛չ ծագեցին լուսին, արեգակ. Ո՞ւր է Հայ, և այլն։

Գ. 8—8. Մագաթեան։

---

## 292

Ի բերանոյ Հայաստանի, ըստ եղանակի

«Անի քաղաք նստեալ՝ կուլար» տաղին։

Թէպէտ ես մեծ տան նշան եմ,
Ամենից ազնիւ իշխան եմ,
Ո՛չ մեռած եմ, ո՛չ կենդան եմ,
Օգնական չունիմ, ի՞նչ անեմ։
Ո՛վ անցաւոր, ինձի նայիր,
Անբախտութեանս խնայիր,
Ի՞նչ կուլէր՝ փոքր մնայիր,
Իմանայիր, թէ ի՞նչ բան եմ։

Խաշնամիք մարդս մեռուցին,
Մէջքս ծանրութեամբ կեռուցին,
Որդիքս ինձնից հեռուցին,
Այժմ այլոց ապաստան եմ։

Ձեռումս կոտրվեց սուրըս,
Մնասուեցաւ ձի ու տուրըս,
Լեղի դարձաւ քաղցր ջուրըս,
Խաս ես ո՞նց չի յոգւոց հանեմ։

Առաջ կէի անձամբ անձին,
Այժմ կարօտ այլոց գանձին,
Մէյսադ, քեզ ասեմ առանձին,
Այրիացեալ Հայաստան եմ։

Գ. Ց—Ց. Մադաթեան։

293

Ի բերանոյ Հայաստանի։

Ես դալար ծառ մի տնկեալ 'ի Հայկայ,
Պտղաբերութեամբ ինձ նման չկայ.
Չեմ ես սնափառ իբրև սարդենի,
Հողմ ատելութեան փչեաց ես անկայ.
Ո՛ւր է սէր, ո՛ւր է սէր, ո՛ւր է սէր, զի նորոգեցայց։

Քաղցրահամ պտուղ իմ էր անքանակ,
Զաշխարհ լիացոյց երկար ժամանակ,
Ոստք իմ և արմատք 'ի բնէ խզեցան
Կռուն ատելութեամբ՝ անսուր, անդանակ։ Ո՛ւր է սէր, և այլն։

Տերևք իմ կանաչք վաղ թառամեցան,
Երակք անդամոյս 'ի ջրոյ քամեցան.
Կեղևն իմ քնքուշ որդնակեր եղև,
Գուցէ այգեպանք այսպէս կամեցան։ Ո՛ւր է սէր, և այլն։

Ի գալ ամարան ազգ իւրաքանչիւր,
Ցնծալով փութայ քաղել զայգին իւր.
Իսկ ազգն Հայկայ ձեռն 'ի ծնօտի
Նուաղէ, հոսէ արտասուաց աղբիւր։ Ո՛ւր է սէր, և այլն։

Աէյեազն ազգասէր զանգէն բամբասէր,
Գիշեր և ցերեկ ողբալով ասէր.
Հայք զի՞արդ կարեն ճաշակել զպտուղ,
Զի չունին հաստատ հաւատ, յոյս և սէր.
Ո՛ւր է սէր, ո՛ւր է սէր, ո՛ւր է սէր, զի նորոգեցայց:

Գ. Յ—Յ. Մագաթեան:

---

## 294

Ի դիմաց Անի քաղաքին, ըստ եղանակի «Գիւղական աղջիկ եմ ես» երգոյն:

Ո՛վ դու անցաւոր, Հայ երիտասարդ,
Տե՛ս Անի մայրաքաղաքս Հայոց.
Նախ շքեղ էի յաշխարհի, իսկ արդ՝
Եղէ աւարկայ ծաղու տղայոց.
Ո՞ւր էք դուք, ո՞ւր էք դուք, ո՞ւր էք դուք, դիւցազունք Հայոց.[1]

Բնակիչք իմ էին արքայք մեծաշուք,
Այժմ եղեալ են մաշկաթեք և բուք.
Արբատաշ հիմունք իմ քայքայեցան,
Զգիտեմ, զի՞արդ Հայք իմ չառնեն սուգ:

Այլազգիք աւերեալ զիմս դրութիւն՝
Տիրեն, անկանին 'ի խոր արտմութիւն.
Իսկ Հայք ո՛չ կամին հարցանել ցաւն իմ,
Զի կորուսեալ են զազնիւ բնութիւն:

Ի թշուառութեան խիղճն քարանայ,
Նշոյլ զգացման իսպառ վերանայ.
Անբախտն է ծառայ ամէն մոլութեանց,
'Բարեաց խաւարի, չարեաց տիրանայ:

Գ. Յ—Յ. Մագաթեանց:

---

1) Ամենայն տանց վերջումն կրկնեա՛ զայս տող:

295

Ո՛վ արդարադատ, աշխարհի սարքն է՞ր է ծռուել,
Ո՞ւր է առաջվան սրբութեան վարքն, է՞ր է ծռուել,
Մի՞թէ թողել ես դիփ արարածքն իւրեանց կամքին,
Որ չե՛ս հարցանում՝ թէ նախնեաց կարգն է՞ր է ծռուել։

Բարւոյն հետեւող՝ քառասնից մէկն լինի, վատ չէ,
Չարին հնտեւող՝ թէ տասնից մէկն լինի, վատ չէ,
Քեզնից երկնչող՝ չորս մասնից մէկն լինի, վատ չէ,
Ո՛չ ոք չի գիտէ՝ գործերի շարքն է՞ր է ծռուել։

Որին բանական մարդ ես կարծում, լինումէ անբան,
Որին գովումես, երեւումէ կողոպտիչ մարդկան,
Ճշմարտութիւնն անյայտ եղեւ, չ՚կայ դատաստան,
Ընդդէմ քոյ կամաց մարդկային բարքն է՞ր ծռուել։

Ո՛չ ռամիկն է ռամիկ, ո՛չ իշխանն է իշխան,
Ո՛չ անշունչն է անշունչ եւ ո՛չ ինսանն է ինսան,
Այժմեան բազարի ո՛չ քաշն՝ ո՛չ միզանն է միզան,
Արդեօք՝ կշեռքի էն ուղիղ լարն է՞ր է ծռուել։

Ի՛նչ որ լինումէ աշխարհումս՝ ամէնն գիտես,
Քոյ էդ անսահման համբերութեամբ վերջն կ՚դիտես.
Գոնեա՛ մին անգամ ինձ գթալով հարցանել պիտես,
Ա՛էյեադ, քո քրտամբ աշխատած փառքն է՞ր է ծռուել։

Գ. Տ—Տ. Մաղաթեանց:

---

296

Փչուր էսպէս ժամանակն, յոյս ու հաւատ տէր չկայ,
Աշվիլ է ճշմարտութիւնն, մէ իմանող տէր չկայ.
Բանիլինք մի միղաց ջիդէքն, մէկ մէկու բամբասելով.
Գիտորվեցաւ իստակութիւնն, հաւատով հէրն ու մէր չկայ։
Հասաւ մի միղաց պատիժն, իմացէք ինչպէս բան է.
Իչլ մարթուն հաւատալ չկայ, էս ինչպէս դադատան է.

Տանջանք ունինք դժուխկումը, ծով լեզուով սթամ կօնէ.
Ահալը վարպիտն պատիւ չունէ, մէկ ժանակ տէր չկայ։
Խափանուից բարելու միտկն, սէրով սալամ տալ չունինք.
Պէտկէ մէկսմէկու բանբասինք, աւելի ափալ չունինք.
Ճշմարիտ յուսով մարթ սիրինք, միասին ման գալ չունինք,
Քիչ է մեր միղաց հարցմունքը, էլ քուր ու ախպէր չկայ։
Սիրավուրութեցանք հաւտիցն, օրէնքն խաւարումէ,
Շատ մարթ կայ հոքուն չէ հոքում, մարմինը զարթարումէ.
Քիչիկ-Նովայ միսկդ լաց, ինչ անձդ բաշարումէ.
Աւելցաւ շատն աշխարքիս, այսուհետև խէր չկայ։

Քիչիկ Նովայ, աշըղ։

---

## 297

### Ողջոյն Հրաժեշտի զաւակաց իմոց։

Հայր.

Հօր համայն սրբոց՝ փրկչին Քրիստոսի
Յանձն առնեմ զձեզ՝ դստերք նազելի
Սուրբ աջոյ Նորա. անտես հովանի
Ի գլխոց ձերոց՝ մի՛ պակասեսցի։
Երթամ ես յաշխարհ ի ձէնջ յոյժ հեռի,
Երթամ որոնել՝ զայն զոր կորուսի,
Արտասուօք ողբովք՝ ձայնիւ սգալի
Խնդրեսցից ես զայն՝ յամենայն երկրի։

Մարիամ.

Զի՞նչ խօսիս հայրիկ՝ զի՞նչ դու կորուսեր
Եւ զի՞նչ գտանել՝ յանծանօթ երկիր
Կամիս. ասա՛ մեզ մի՛ թագուցաներ
Տա՛ր և զմեզ ընդ քեզ. հա՛յր մի՛ արտասուեր։

Աննա.

Հայր մեր, ես գիտեմ, զմայր մեր ողբաս,
Զմահ նորա յիշեալ մորմոքի սգաս.
Ե՞րբ սա մոռասցէ զանուն, զկերպ նորա
Ե՞րբ հանգիստ տեսցուք՝ մեք զհոգի սորա։

Կատարքն. 1)

Մի՛ արտասուէր Հայր՝ մի՛ սգար ողբար,
Արտասուք զքեզ մաշեցին ի սպառ
Զիս ո՞ սիրեսցէ զԿատարինէ քո թշուառ
Թէ զքեզ տէր տարցի՝ յիւր երկնից գաւառ:

Յ. Վ. Ալամդարեանց:

---

1) Յարութիւն վ. երեք դստերքը. Մարիամը, ամուսնացած Աշտարխանցի Յովակիմ Աւետիքեան Պոլիակօնովի (սարկաւագեան) հետ, վախճանեցաւ; Աննան ամուսնացած է Տէր Պետրոս Ստաւրոպոլու աւագ քահանայ Պատկանեանցի հետ; Կատարինէն նոյն Ստաւրոպոլու քահանայ Տէր-Մատթէոսի հետ է ամուսնացած։

# ԳԼՈՒԽ Թ.

## ԽԱՌՆ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆՔ։

### 298

### Տաղ 'ի Սուրբ Աստուածածին Մարիամ։

Մայր ցանկալի հրաշալի, յոյժ անճառելի աննման,
Ծաղիկ լուսոյ անթառամելոյ դու երկնայնոց օթարան,
Մայր գովելի երանելի միշտ սիրալի Մարիամ.
Մայր գովելի ելի լի լի լի լի Մարիամ....
Անապական մայր իսկական կոյս եղական տիրուհի,
Անհամեմատ և անարատ սուրբ գթառատ թագուհի.
Կոյս գովելի երանելի միշտ սիրալի Մարիամ.
Մայր գովելի լի լի լի լի Մարիամ....
Աւէտ բարի փայլուն տեղի միշտ բերկրալի իսկուհի,
Դու գերազանց համայն ազանց լուր բերկրութեանց դշխուհի,
Կոյս գովելի երանելի միշտ սիրալի Մարիամ.
Մայր գովելի լի լի լի լի Մարիամ....
Մայր սուրբ յուսոյ և սուրբ սիրոյ գերպայարգելոյ մաքքասուն,
Լոյս բնակարան ցոլց օթարան, դու աննման սիրազան,
Մայր գովելի երանելի միշտ սիրալի Մարիամ.
Մայր գովելի լի լի լի լի Մարիամ....
Քեզ աղերսեմ յոյժ վեր երգեմ աղաղակեմ սիրուհի,
Գրկեալ հայցեմ ի քէն մաղթեմ միշտ հառաչեմ մայր բարի,
Մայր գովելի երանելի միշտ սիրալի Մարիամ.
Մայր գովելի լի լի լի լի Մարիամ....
Տաճար փայլեալ խորան կազմեալ միշտ փայլեցեալ սրբուհի,
Անեղ բանին մայր Յիսուսի թագուհի,

Կոյս գովելի երանելի միշտ սխրալի մարիամ.
Մայր գովելի լի լի լի լի Մարիամ....

Յ. Վ. Ալամդարեանց։

---

299

## Աբեղայ։

Ցուպը ձեռին, գլխին վեղար, տէրողորմեան համրելով,
Սուրբ աթոռից դէպի մի գեղ գնում էր նա շտապելով,
Միջօրէի հեղձուկ տօթը տեղի տուեց մեղմ զովին,
Բայց հայր սուրբը անզգայ էր բնութեան անգին պարգևին.
Թո՛ղ և թռչնոց երամակքը պար բոլորած երգէին,
Հազարերանգ դաշտի ծաղկունք բուրումն 'ի վեր խնկէին,
Թո՛ղ զեփիւռը զերթ հրեշտակի բերնէն ելած շունչ՝ շնչէր,
Նորա սիրտը չէին գրաւիլ, նա բնութիւն սիրող չէր։
Ալոր մոլոր ճանփայ բռնած դէպի մի գեղ մենաւոր,
Աշխարհք էլ գար տակնուվրայ՝ բնաւ փոյթը չէր տէր սուրբ հօր.
Սեւին տըւած մի 'տընակ կար՝ նա այնտեղ էր վըճարում,
Գուցէ բուրկէն, զով, դայլայլիկ էր անդ նորա սպասում....
Գնա՛ հայր սուրբ, ուր ձըգում է թափը բնութեան քու հոգին,
Միայն Աստուած է սրտագէտ, մարդ չիմանայ քու գաղտնիքն.
Շատ շատ՝ պիտի բամբասուիս դու՝ այդ քեզ համար չէ՛ նոր վիշտ,
Մարդկան ազգը չարլեզու է, էր, և կ'լինի այդպէս միշտ։
Հողե՛մ գլուխը բամբասողին, ճշմարտութիւնն բարւոք է.
Խոնարհեցո՛ ունկդ, հայր սուրբ, երկմըտութիւնս իմ ահնէ.
Քեզ ո՛վ ստիպեց աշխարհ մոռնալ, ուրանալ տուն, ազգական,
Արհամարհել անմեղ վայելք, կեանքդ սևցնել յաւիտեան.
Քու ամուլ մօ՞ր ուխտի զոհն ես—զոհ գովանի հըլութեան,
Թէ՞ դու կամաւդ խոստմունք արիր—զոհ կարճամիտ մանկութեան.
Կրօնէն աւել չունենալով հըզօր պաշտպան աշխարհքում—
Արդեօք կեանքիս վի՞շտք ստիպեցին պատսպարուել քեզ վանքում,
Թէ՞ Սիկստոսի օրինակէն հրապուրելով քու հոգին,
Դու կամեցար նոր ուղղութիւն, նոր կեանք շնորհել քու ազգին.
Թէ՞ (ա՜խ լեզուս կարկամվումէ), էիր պղերգ պատանի,
Ու այրական հասակդ առած՝ չեղար մարդոց պիտանի,

Ընուս, անփինչ, անգործ մնալով՝ ծածք ծիծաղի նշխարանկ.
Թշուառ գլուխդ վայ կարդալով՝ շատոնց ննջման մըտար վանք.
Թէ՞ քու հոգին ծարաւի էր մի այլ աղբիւրի ջըրերին.
Որի ակը պահած գտնցար եռեն վանքի պատերին,
Զուր եմ ասում, որ խըմեցին սուրբք՝ Եղիշէ ու Մովսէս,
Ղազար, Մամբրէ, Կորիւն և Գիւտ, նոցա հետ էլ շատ Ներսէս։
Գըտա՞ր արդեօք որոնածդ, նըպատակիդ քու հասա՞ր,
Թէ՞ ոսկի ցնորք փարատեցան և դու ուխտիդ փոշմանցար
Գո՞հ ես վանքի սուրբ աղբերքէն, երջանի՞կ է քու անձը,
Գերդաստանի հօր ժխտակը չի շարժում քու նախանձը....
Բայց երբ մենակ խըցիդ մէջը նըստած՝ մաշտոց ես կարդում,
Ո՞ւր աչերդ գըրքին յառած՝ միտքըդ հեռու է թռչում,
Ինչո՞ւ գիրքըդ վէր է ընկնում, մութ կոխում է աչերըդ,
Ինչո՞ւ յանկարծ պէծպէծի են տալիս գողնած թերթերըդ....
Ո՞վ սուրբ՝ ես քու սիրտն ղուրբան, թէ յոյսերդ չես խաբուել,
Ու աշխարքս ուրանալով՝ դրախտի շաւիղն ես գըտել,
Երբ դու մի օր հանդիպանաս հօրն երկնաւոր աթոռին,
Բարեխօս լեր վասն հոգւոյ քեզ այս խօսքերս մաղթողին։

Ռ. Յ—Գ. Պատկանեան։

---

## 300

Դիփ սուտ ասող՝ մարդ խաբող՝ աղքատ զըկող են, փող ուտող,
Դիփ մուրացող՝ ուրացող՝ լոյս ատող են, խաւար սիրող,
Դիփ արբեցող՝ սիրտ որսող՝ շողոքորթող են, մխասող,
Դիփ ծուռ դատող՝ տուն քանդող՝ քըթամ ուզող են, մոռացող,
Դիփ բամբասող՝ զուր խօսող՝ արիւն խըմող են, վըդովող,
Դիփ անյաջող դեղ տուող՝ բան չիմացող են, յայտնի գող,
Դիփ գանձ կուտող՝ սուտ երդւող՝ հաց չուտող են, գաղտարկ մնացող
Դիփ տէր մատնող՝ մեռանող՝ հող մտնող են, դժոխք գնացող։
Մ՚ին ժամանակ հոգևոր անձանց քարոզներն լսամ,
Ոտս աշխարհքից քաշամ՝ նրանց հետևիլ սկսամ,
Մ՚անքերումն չօքաչօք՝ երեսըս քարերին քսամ,
Ինքս ինձի լոյս տուի՝ երկնային ժառանգ եմ, ասամ,
Արտներն մտանելով՝ նոցա ամէն սիրրին հասամ,
Իմ նրանց մօտ կորցրած կեակքիս համար շատ ափսոսամ,

Բայց տեսմ՝ նրանցումն աստուածակոյս բան չի՛ անում,
Դիփ սուտ առող՝ մարդ խաբող՝ աղքատ զրկող են փող ուտող։
Թէ ատամներին նայես՝ կըտրտա նրանց հազիր շարքն.
Աշխարհքըն որ կըլանեն՝ չի՛ յագիլ նոցա որկորըն,
Պատահի՝ ուղղակի նման կըլանչկեն ճղջորըն,
Երեսօք պատիւ կըտան՝ չեն նախաչիլ հօրն ու մօրն,
Ասքա են փրկչի տած փարիսեցի՝ կեղծաւորն,
Ահա՛ այսպէս է իլել յաւիտեան ժամ հագեւորըն,
Նաւ նայես՝ կհասկանաս, որ սէ հոգևոր բաշըրն
Դիփ մուրացող՝ ուրացող՝ լոյս առող են խաւար սիրող։
Ա՛յնն գիշերվան կեսին զարթնումով՝ զանգ է տալիս,
Ա՛յնն առեան մեջոլումը ասնկաց խըրատ է տալիս,
Ա՛յնն իւր օթաղումը ընդ սիրելոյն է սրախալիս,
Ա՛յնն շուտ լուսածագին ձեռքին աղօթք է կարդալիս,
Ա՛յնն կերոն վառելով՝ մարդասէր է երևալիս,
Ա՛յնն՝ ում որ տեսնումէ, իւր մեղաց ձեռքըն է լալիս,
Իւր թալաքներով նոքա միամիտ մարդ են որսալիս,
Դիփ արքեցող՝ սէրտ աղատ՝ շողոքորթող են միասող։
Հոգևորից փախչելով՝ դարձայ առ-իշխանն աշխարհի,
Տունից՝ տեղից հեռացեալ, ծառայեցի քանի տարի,
Տափին՝ դօշակ, երկինքն, լէհէպ, նազբալիշըս՝ քար՚ի,
Ինչ դժուար բան յանձնեց ինձ, յաջողութեամբ գլուխ տարի,
Որքան որ ծառայեցի՝ հաց էր տալիս մարդաւարի,
Երբ ծերացայ՝ դուրս արաւ գործից, մնացի անճարի,
Մ՚էկ իշխան չի՛ տեսայ, որ առանց թամահ բան կատարի,
Դիփ ծուռ դատող՝ տուն քանդող՝ քրթամ ուզող են մոռացող։
Օճինաւորքըն տեսայ, որ իրանց պէս մարդն են սպանում,
Ինտուր համար՝ որ նոքա նրանով փառք են ստանում,
Օրկոզութեան բան չկայ՝ որ նրանք չի՛ լինին անում,
Չեմ տեսած նրանց արած գործերը երբէք խնամում,
Իմ աչօքս եմ տեսել՝ զուր տեղից չեմ ամբաստանում,
Նոցա վատ վատ գործերն ջան չի՛ թողեցին ինձանում,
Օճինաւոր բառիցն, դուք, չի՛ գիտեմ՝ ի՞նչ էք հասկանում,
Դիփ բամբասող՝ զուր խօսող՝ արիւն խմող են վրդովող։
Բժիշկներն հիւանդի համար ցաւում են՝ եղբօր պէս,
Երակն բռնումեն, յետոյ յոյս են տալիս նրան պէս պէս,

Ռուսմէն՝ պիտի, Փլան խօռակն մնաց է, ջուտես,
Կերածըդ մին օրումն պիտի ըլնի մախաղ՝ ու կէս,
Եթէ փահրիզ չէ՛ անես՝ չէս լռանալ, խարաբ կըլես,
Երբ հիւանդն լռացաւ. եկ՝ նրա թալանքին տես,
Իսկն ասեմ՝ նորանցում ճշմարիտ բան չեմ տեսել ես,
Գիտի անյաջող դեղ տուող՝ բան չխմացող են յայանի դաղ:
Փոքր ինչ գովել կամիմ վաճառական մարդկանց դասն,
Մ՚ին փող իրանք ունենան՝ ուրիշներից կառնեն տասն,
Հարստանալոյ համար իրար հետ կըքռնեն քասն,
Քօռի պէս չեն տեսանել իրանց առաջի միասն,
Խորվումեն պարտքի միջին՝ կոտր է մեռանում - ամէն մասն,
Հարստանալոյ մազեար չեն ճարում թանէ սրղան,
Իմանաս՝ աշխարհքումն ի՛նչ դաս է այս դասն,
Գիտի գանձ կուտող՝ սուտ երդուող՝ հաց չուտող են դատարկ մնացող

Գ. Յ—Ց. Մազալթեան:

---

301

Խրատ Հայ հեղինակին:

Դեռ չի գրած՝ առաջ դու լա՛ւ միտք արա,
Մ՚վ է խեղճիդ գըրուածները առնողը.
Յետոյ՝ և այն մասին փոքր ինչ հոգս արա,
Որ քեզ սիրէ քու յարգելի կարդողը:
Դու այս երկու հանգամանքը լա՛ւ յիշէ,
Քու քանքարի վըրայ շատ յոյս մի՛ դնիլ,
Եղէ՛ր Թէկուզ Խորենացի, Եղիշէ,—
Չըսիրելով քեզ՝ գրքերըդ չեն գընիլ:
Գրքիդ մէջը պարսաւանք մի՛ տալ Հային,
Հայը խըրատ (Թէև) խելօք առում է.
Մ՚ի ծիծաղիլ նորա տխմար գործերին,
Որ նա աւանդ հօրենական կարծում է:
Մ՚ի դու Հային իր խօր քընէն արթնացնիլ,
Խարոյական քունը նորա անուշ է.
Կամ անցեալը նորա աչքև մի՛ յիշել,—
Ամդ անցեալը նորա աչքին սուր փուշ է:

Գովէ՛ Նորա այն սիրալիր արարքը,
Որ խեղճ հայը երազումն էլ չէր տեսել,
Նորա առաջ ազնուութիւնը ու բարքը,
(Սուտ պարծանքը հայերի խելքն է տարել)։
Գրէ՛, թէկուզ լեզուս լինի սանսկրիտին,
Հայը շատ ուշք կարդացածին չի դընում.
Նա լըսումէ մի քանիսի պատմունքին,
Թէ ի՞նչ կերպով պարոն Օհանն է դատում։
Օհաններն են Հայոց դատմանց փորձաքար,
Որոնց խօսքը ու վըճիռը անփոփոխ
Մի՛իշտ մընում են Նոցա համար դարէ դար.
Օհաններին քեզ սիրել տո՛ւր, խեղճ գըրող։
Այդ երկնածիր քու քանքարը ի՞նչ օգուտ,
Թէ խօսածըդ անապատի բարբառ է.
Հայի համար քու առածը խիստ է մութ,
Նորա սիրտն էլ քու զգացմանցը սառ է։
Սո՛ւտ ըսփոփանք, թէ դու կ՚ասես, որ մի օր,
Նա կըսթափի իր դարևոր խոր քընէն,
Թարմ զօրութիւն հոգու մէջէն ու կեանք Նոր
Պիտի վազին երբէք Նորա երակէն։
Եւ դո՛ւ, պօվէտ, ընկճուել ես, վըհատել,
Երկինք թողած՝ երկիրումն ես քարշ գալի,
Սիրել գիտես, գիտցի՛ր դու տանել,
Ինչ որ հոգիդ վըկայում է տանելի։
Դու Նըմանի՛ր ազատասէր թռչնակին,
Որ երգումէ անանձնասէր յոյսերով.
Ինչո՞ւ ձիրքը քու երկնային ու հոգին,
Զբաղեցնում ես երկրի չնչին գործերով։

Ռ. Տ—Պ. Պատկանեան։

---

302

Ազատ Աստուածն այն օրից,
Երբ հաճեցաւ շունչ փչել,
Իմ հողանիւթ շինուածքին
Կենդանութիւն պարգևել.

Ես անբարբառ մի մանուկ
Երկու ձեռքս պարզեցի,
Եւ իմ անզօր թևերով
Ազատութիւնն գրկեցի։

Մինչ գիշերը անհանգիստ
Օրօրոցում կապկապած
Լալիս էի անդադար,
Մօրս քունը խանգարած,
Խնդրումէի նորանից
Բազուկներս արձակել.
Ես այն օրից ուխտեցի
Ազատութիւնը սիրել։

Թոթով լեզուիս մինչ կապերը
Արձակվեցան, բացվեցան,
Մինչ ծնողքս իմ ձայնից
Խնդացին ու բերկրեցան,
Նախկին խօսքն, որ ասացի,
Չէր հայր, կամ մայր, կամ այլ ինչ.
Ազատութի՜ւն, դուրս թռաւ
Իմ մանկական բերանից։

«Ազատութի՜ւն», ինձ կրկնեց
Դաստիարակերը վերևից.
«Ազատութեա՜ն դու զինուոր
Կամիս գրվիլ այս օրից։
Ո՛հ, փշոտ է ճանապարհդ,
Քեզ շատ փորձանք կը սպասէ.
Ազատութիւն սիրողին,
Այս աշխարհը խիստ նեղ է»։

— Ազատութի՜ւն, — գոչեցի, —
Թող որոտայ իմ գլխին,
Փայլակ, կայծակ, հուր, երկաթ,
Թող դաւ դնէ թշնամին,
Ես մինչ ի մահ, կախաղան
Մինչև անարգ մահու սիւն,
Պիտի գոռամ, պիտ՛ կրկնեմ
Անդադար. ազատութի՜ւն։

Մ. Նալբանդեանց։ Հիւսիսափայլ. 1859 թ. ե. 749—750։

---

303

Պ ա շ ն ա կ

Յառաջին ներկայացուցման հայկեան թատրոնին որ ի Խասգիւղ։

Ժամանակաց՝ անցից՝ վսեմ կրթարան
Եւ նոր դիպաց՝ նոր զգացմանց կարգադիր
Ահա մեզ նոր՝ արդ կկանգնի տեսարան
Թէ կրթութեան՝ թէ հաճոյից արգադիր։
Հոս ձայն կուտանք մենք ծաղկալից
Հայաստանի սուրբ դաշտերուն,
Եւ կցրուի արտից թախիծ
Երբ հայրենեաց յիշեմք զանուն։
Ո՜վ սուրբ Հայաստան
Փառաց օթեւան
Որբ զաւկըներդ հոս
Քեզ պիտի ողբան։

Հաց երազ՝ անմահ
Քո նախնի փառաց
Մեզ պիտի վառէ
Ի սէր հայրենեաց։
Մայրիկ Հայաստան
Փառաց գերեզման
Որբ որդիքդ այրիդ
Հոս պիտի ողբան։
Կվերածնին հոս ոսկի դարք
Հոս տեղ մտքեր կրնան սրուիլ:
Կշտկուին հոս անկիրթ բարք,
Հոս եւ ծիծաղ կրնայ գտուիլ։
Ով սուրբ Հայաստան
Քաջաց օթեւան
Հոսկէ որդիքդ հոն
Գիրկդ պիտի գան։
Հոս ով Հայ լեզուին
Նոր զարդ՝ ձեւ կառնու
Կեանք անմեղ ու՝ երկինք
Կազդեն սրտերու
Քաղցրիկ Հայաստան
Մեր հարց օթեւան,
Ծոցդ որդիքդ որ գան
Ո՞ր պիտի ողբան։

Գ. Գ. Չ:

---

304

Մայրաքաղաքում կրթած հայ աղջիկ։

Տուշան՝ շուտով դէմքըդ ծածկէ, ձիւն դու՝ թուխիր մըրոտած,
Տես, սիգաճեմ ման է գալիս Հայ աղջիկը մեր կրթած.
Վարդի գոյնը ужъ не въ модѣ: то-ли дѣло блѣдный ликъ!
Այստեղումը блѣдный են դիփ՝ հա՛մ աղջկանք, համ կնանիք.
Ի՞նչ է գաղտնիքն блѣдныйութեան — այդ յայտնի չէ՛ ոչ ոքին,
Միայն կ'ասեն, որ շատուց է կաւիճն ունի բարձր գին։
Հաւաստ է. մեր աղջիկը հայլից չէ հեռանում,

Նորա ծընողք այնօր ճաշի гвардеецъ են սպասում.
Гвардеецъ է, լա՛ւ միտք արէք, Հայ չէ, անշնորհ ու տգէտ,
Гвардеецъ է՝ փայլուն շորով, ուսին դըրած эполетъ.
Տուն կըմտնի, գլուխ կըտայ այնպէս սիրուն, շնորհաշուք,
Որ մեր կրթած Հայ աղջկայ սիրտը կ'անէ тукъ-тукъ-тукъ!
Ընտուր համար 'նա հայլեից օրն 'ի բուն չի պուկ գալի,
Гвардеецъին դուր չի գալը խիստ է նորան ըզգալի։
Ո՛չ լոկ դէմքով պիտի դուր գայ, այլ և անուշ խօսքերով,
Ի՞նչպէս, ի՞նչկերպ, դուք կը հարցնէք, այդ էլ չըգիտէ ոչով։
Բարձի տակը պահած ունի նա George Sandeի romanը,
Գիշերները մօրից թաքուն կարդում է մինչ չորս ժամը։
Ընհատական այդ աղբիւրից նա քամում է անդադար
Սիրոյ զգացմունք, սիրոյ խօսքեր—կանանց սրտին մըխիթար։
Նա գըտաւ իր идеалъը, այսօր ճաշին կըտեսնէ
Նա իւր անտես սիրահարին, ում որ սիրտը տուել է։
Հայո՛ց աղջիկ, Հայո՛ց աղջիկ՝ գնա՛ առաջ, մի վախիլ,
Блѣдный դէմքըդ, շինծու խօսքըդ ովի՞ն ասես չեն խաբիլ։
Гвардеецъին դուր չես գալի,—ի՞նչ ափսոսանք, ի՞նչ վընաս,
Քեզ սիրահար гусаръ, уланъ, артилеристъ կ'ունենաս։
Դու փո՛րձ փորձէ նորից դուր գալ, անոյշ ժպտա՛ ու խօսէ՛,
Քըսած դէմքըդ արդէն մօտ է, տես, առաջըդ մեծ փոս է։
Բայց մի թողնիլ դու Georg Sandeին, идеалъից մ'ուրանալ.
Թէ ոչ ջահիլ, գոնէ ծերուկ կ'առնու քեզ Մուսա генералъ.
Բայց զգուշացիր դու Հայերից, գին չեն դնիլ, չեն սիրիլ
Քեզ, ինչպէս դու ցանկանում ես. դու քեզ Հային մի՛ մատնիլ.
Փորձ փորձեցիր ու դուր չեկար ոչ уланъին, гусаръին,
Քըսանհինգըդ մօտենում է. Հա՛յ աղջիկ՝ վա՜յ քու հալին։
Հայո՛ց աղջիկ, Հայո՛ց աղջիկ, գնա՛ առաջ, մի՛ վախիլ,
Блѣдный դէմքըդ, սիրուն խօսքըդ ովի՞ն ասես չեն խաբիլ։
Տարիներըդ ակօս ձըգեց քու շնորհալի երեսին,—
Սընաս չի կայ,—подругներըդ դորա համար ճար ունին
Երբ որ տանն ես՝ մի՛ հրամայիլ տղոց քեզի մօտենալ,
Դուրս գընալիս ликъից ձըգէ՛ դու կրկնածալ հաստ вуаль,
Հարցնողներից ուշք ուշով ծածկէ՛ տարիդ ծընընդեան,
Ու ամենին հաւատացո՛ւր, որ տասնութ ես տարեկան։

Ռ. Ց—Դ. Պատկանեան.

305

Մայրաքաղաքում կրթած հայ երիտասարդ։

Տեղը եկած՝ Հայ է նա, տեղը եկած՝ այլազգի,
Իրօք ոչ այդ և ոչ այն է, այլ ծընունդ մի նոր ազգի.
Հագնըվում է նա միշտ en grand, ման է գալիս à la chique,
Ճաշ է ուտում, ուր էք կարծում, chez Dusset կամ Dominique.
Կարդում է նա Morning, Debats, ոչ Նաղամակէպ, ah! fi, donc!
Ֆրանսերէն էլ կոտրատում, Հայերէնն է movais ton;
Զարթում է նա ուղիղ մէկին, անկողնի մէջ թէյ խըմում,
Նախաճաշիկն է երեքին, գաղղիացի պանդոկում.
Վեցին քառորդ ճաշի ժամ է չընաշխարհիկ մեր Հային,
Ո՛չ թէ ստիպուած է այդ անել, այլ որ վերան շատ խօսին։
Ուշի ուշով հետևում է Պետերբուրգի լուրերուն,
Դերձիկից էլ միշտ տեղեակ է НОВОМОДНЫЙ շորերուն,
Թէև զուրկ է մուզիկայից, բայց опера սիրում է,
Бозioի անուշ ձէնից նորա խելքը գընում է;
Պինդ խօսում է, ինչ որ կանխաւ feuilletonումն է կարդել,
Խօսքով աշխարհ կործանում է մեր պարոնը անարգել;
Նէպիր, Գունոդաս ու այլ անձինք են նիւթ նորա զըրոյցին,
Պախարակում է Hugoին, ու սիրում է Դիկէնսին։
Նա սիրում է, նա ատում է ոչ սեպհական իր խելքով,
Նա խըմում է, նա ուտում է ոչ իր բերնի ճաշակով։
Նորա խելքը feueilletonնէ, прейсъ-курантъնէ ճաշակը,
Ու գիտութեանց ճեմարանը է ո՛ր սեխս պանդոկը։
Քանի տարի քաշ է գալիս Պետերբուրգում այս կերպով,
Ու յետ դառնում իր հայրենիք, դատարկ խելքով ու ջիբով;
Նոյնուհետև պահանջմունքը նորա մեծ են անհեթեթ,
Միայն ինքն է խելօք, գիտուն, իսկ այլք կոպիտ ու տըգէտ։
Էյդ ինչ զարմանք, որ յիմարը ուզէ պատիւ իր անձին,
Նա՛ յիմար է, որ անարժան տայ պատիւը յիմարին.
Բընութենէն խելազուրկին Պետերբուրգը խելք չի տալ,
Մեծ յունար չէ փողոցներում աննըպատակ միշտ ման գալ։

Ռ. Ց—Դ. Պատկանեան.

## 306

### Յիշողութիւն։

Աստղիկ ունէի ես իմ երկնքում,
Փայլում էր լուսով իւր շրջապատում.
Երբ գալով գիշերը, ծածկում էր խաւար,
Սիրուն գեղեցիկ էր այն իմ գոհար։
Խուշնիկ ունէի իմ մութ անտառում,
Ոչ մինը չկար այնպէս կարկաչուն.
Ծառերի տակին, հովիկ ստուերում,
Սիրում էր նա միշտ երգել իւր գարուն։
Ծաղկիկ ունէի իմ անապատում,
Խնդութիւն կեանքիս տխուր և տրտում.
Նորա քաղցր ժպտման, զուարթ երեսին
Կ՚նախանձէր վարդը Եդեմայ դրախտին։
Բայց խաւարեցաւ աստղիկս երկնային,
Սոխակս թռաւ իւր բունը մթին,
Խլեց իմ վարդը սառն հիւսիսային,
Խոր խոցոտելով ծնողիս հոգին։

Ն. Բուդաղեանց. Հիւսիսափայլ. 1860 Թ. № 12, ե. 518.

---

## 307

### Օրօրք Հայաստանի։

Քընէ՛, քընէ՛, իմ հայրենիք,
Իմ կաթոգին Հայաստան,
Ես քեզ օր օր կ՚ասեմ մեղմիկ,
Որ չըզարթիս անգուման։
Քանի՞ դարեր այդ խոր քունը,
Քեզ կաշկանդել, կապել է,
Քընի սերմունք, ասես, Մորփէն,
Լոկ քու վըրայ թափել է։
Ու ի՞նչ զարմանք. ազգ ու ազինք
Միշտ լաւակամ քեզ համար,

Քունըդ վըրդովել չուզելով՝
Օրօրում են անդադար:
Քեզ...Թուր ձեռը բռնած,
Մարդ չի թողնում քեզի մօտ.
Թէ մօտ եկան՝ դարձեալ չէ փոյթ,
Ունի շատ ռումբ, շատ վառօդ:
Իր աչքերըդ չի խոտղեն
Սև շողերը արեգին՝
Անթափանցիկ ու մեծ ասպար
Ունի բռնած իր ձեռքին:
Կամ թէ՝ անուշ քընիդ խափան
Չլինին նաև քու որդիք,
Ասպառազէն պահապաններ
Նոցա վըրայ կան հերիք:
Թէ ճիչ բառնան՝ այն ժամանակ

. . . . . . . . . . .

Այդ պատճառաւ հենց քու որդիք
Ե՛ւ երկչոտ են, և՛ զգաստ:
Արդ՝ դու ննջէ՛ ծանր քընով
Ու մի՛ զարթիլ շատ դարեր.
Պարտքն աշխարհի դու տուել ես,
Կատարել ես շատ բաներ:
Ունիս քաջեր (թէև մեռած),
Ունիս գրքեր անհամար,
Սխրալի գործք քու զաւակաց
Կ'անցնեն, կերթան դարէ դար:
Աստուածախօս քու լեզուն է,
Ծոցդ՝ Դըրախտ երկրաւոր,
Նոյայ սերունդք են քու որդիք,
Դէ՜հ, Հայաստան իմ, օ՛ր օ՛ր:
Երբեմն դու խիստ լաւ կ'անես
(Այս քեզ խրատ իմ բարի,
Հաւատացի՛ր, սրտով բաղձամ,
Իր այդ ճշդիւ կատարի):
Թէ սեպհական զաւակներիդ
Տաս խըրատներ մայրական,

Որ կործանած իրանց գահը
Վերականգնել չի ջանան։
Շուտ շուտ ղրկէ քարողիչներ,
Աւագըլուխ, մրքաւոր,
Որ յորդորեն ապրել նոցա,
Թէև ստրուկ, բայց անդորր։
Խաղաղասէր կեանք քարոզեն,
Մեծ մեծ յոյսեր երկնային,
Ազնիւ զգացմանց ցընորք ասեն,
Անօգտաւէտ բընաւին։
Չի հասկանան վախճան կենաց,
Կոյր են եկել՝ կոյր երթան,
Կրօնքն էլ ինչպէս հարք կը մեկնեն,
Նոքա այնպէս հասկանան։
Մաքուր կրօնն է, ասեն, պասը,
Ժամուց տալը յարգոյ հարց,
Կուշտ ուտելը, ճոխ ապրելը —
Այս է վախճան մեր կենաց։
Դիւրահաւան մեր Հայերը։
Բարի խրատը լըսելով՝
Չեն վրդովել, ու քեզ կուտան
Լաւ կշտանալ խոր քընով։
Դէ՛հ, իմ պառաւ մայր Հայաստան,
Քընէ՛ անոյշ ու անդորր.
Այսպէս յաւէժ քեզ կը կարդան
Ազգ ու ազինք օր, օր, օր։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

308

Գ ա բ ր ի կ։

Մօրուօք Գաբրիկ ուսկէ գաս.
— Արըը քէնի սենեակէ։
Մէկ ժամ օրհնել և փակաս
Կրել, քրտնիլ հերիք է։

Արդ ժամ եհաս աշխարհական,
փեղոյր և վարտիք հագնիլ է արժան.
Յոյս բնաւ չէք ա՛լ օրհնենքէ,
Ոստելու նայինք, հոն է շահ հիմա:
Գուբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Ու որ կողմ դառնայ նոր դէմք ցոյց կուտայ:

Սնտուկ Գուբրիկ ի՞նչ է այդ.
— Իմ հինօրեայ պարզ դիմակ:
Նայէ իր գոյն ա՛լ չէ յայտ,
Տանիմ ներկել տամ հիմակ:
Մինչև այսօր այն կը բուէր
Ու անյայտ էին մեր ամէն դաւեր.
Հարկ է փոխել և նոր տեսակ
Գտնել ձև, շպար և զարդ բազմերփնեայ:
Գուբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Ու ո՛ր կողմ դառնայ նոր գոյն ցոյց կու տայ:

Գուբրիկ ըսէ՛ իձեռին
Ի՞նչ կը տանիս սրբօրէն.
— Հնարքներու տուփ մ՚անգին,
Ու Հայ ազգին համօրէն,
Ճակատագիր անդ ներփակի.
Երկինքէ ինձ այն եկաւ ուղղակի.
Ու երբ ուզեմ այն փոքր տուփէն
Բոլոր Հայերուն լոյս պիտի շողայ:
Գուբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Ու որ կողմ դառնայ նոր լոյս կը ցոլայ:

Գուբրիկ ինչո՞ւ կ՚ըսպասես
Հապա զայն տուփ բանալու:
— Ես պատրաստ եմ ահա տես,
Այլ բանալին չէ հլու.
Ոսկի բալլիք է հարկաւոր,
Որ դիւրաւ բացուի այն տուփ հրաշաւոր:

Յառա՛ջ մատիր զաւակ Հայոց,
Ոսկի տո՛ւր մեզ շատ, որ քեզ շատ լոյս գայ։
Գաբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Եւ որ կողմ դառնայ ոսկի կը մուրայ.....

Գաբրիկ ոսկի ի Պօլիս
Դու կը գտնես շատ դիւրաւ.
— Երթամ ուրեմն և ազգիս
Նուիրեմ զիմ լոյս անբաւ.
Այս Նոր տեսակ է առևտուր
Օ՜, որ ես հնարեմ աշխարհիս իլուր։
Ա՜յ ձեզ Հայեր, որ չկյտէք ընաւ
Թէ սա՛նկ առուտուր կայ երկրի վրայ։
Գաբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Եւ ո՛ր կողմ դառնայ բան կ'առնէ կուտայ։

Այսպէս կ'ըսէ Գաբրիկ այն
Եւ ժպտելով կը մեկնի։
Ահ ո՛րչափ կոյր զկուրայն
Պիտի երթան ըզկընի,
Ապուշ Հայեր, որք տակաւին
Այսքան փորձէ ետք, հաւտան Գաբրիկին։
Գնա՛ Գաբրիկ մեծագընի,
Գնա՛, լոյս ծախէ, հասկըցող չիկայ։
Գաբրիկ ահա գայ,
Ահա կը դառնայ
Եւ ո՛ր կողմ դառնայ Նոր սուտեր կ'ործայ։

Ս. Ոսկանեան. Արեւմուտք, 1859 Թ. Ա տարի, № 3, փետրվարի 1։

---

309

Հայ եւ հայութիւն։

Ո՞վ է Հայը. մի՞թէ նա է, որ խօսում է հայ լեզուով,
Եւ կամ՝ որի մականունը յանգում է «եան» մասնիկով,

Որ ուտում է ամենայն օր ճաշին տոլմա ու փիլաւ,
Կամ՝ պարծանօք միշտ հագնում է հայի գդակ ու հալաւ։

Ո՞վ է Հայը. մի՞թէ նա է, որ գընում է հայի ժամ,
Եւ տարէնը հաղորդվում է խիստ սակաւից՝ չորս անգամ,
Որ կեանքումը պաս չի կերել, ծոմ էլ պահում է նոյնպէս,
Յօրանջելիս խաչ է կնքում բաց բերանն ու երես։

Ո՞վ է Հայը. մի՞թէ նա է, որ տեսնելիս տէրտէրին
«Օրհնեա 'ի տէր» պատրաստ ունի ամեն րոպէ իր բերնին,
Որի համար մեծ ամօթ է, նաև մեղք է մահացու,
Թէ Զատիկի թաթախմանը չուտէ թերխաշ կարմիր ձու։

Ո՛չ, սիրելիս, ազգութիւնը չէ՛ արտաքին արարմունք,
Հայ ծընելդ անգամ չի տալ քեզ հայութեան իրաւունք,
«Ով» է կամ «եան» մականունիդ վերջի վանկի մասնիկը,
Կարմիր ձուով կամ թէ անձու կատարում ես Զատիկը։

Քալլա-փաչա կամ թէ բորշ է ամեն օրուայ կերածդ,
Սերտուկ, պայլտօ կամ թէ չուխայ է վրայի հագածդ —
Ողջը մին է. ծէսով չես տալ ազգիդ վնաս կամ օգուտ,
Տեղը մընայ ազգութիւնը, այդ նաև վարձ չէ՛ հոգուդ։

Թէ դու Հայ ես՝ հայութիւնդ պիտի յարգես անպատճառ,
Հայաստանը պիտի լինի յուսոյ աստղ քեզ համար.
Օտարինը դու մի՛ ատիլ, մի՛ էլ սիրիլ կուրօրէն,
Բայց քու Հայի օգուտները միշտ վե՛ր դասէ ամենէն։

Արուեստ, ուսում, շըքեղարուեստ տարածէ՛ Հայ ազգի մէջ,
Բայց բռնութեամբ միշտ հեռացո՛ւր նորա մէջէն կրօնի վէճ.

. . . . . . . . . . . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . .

Թող, սիրելի, այդ խնդիրքը, անքըդ դարձո՛ւր դէպ հարաւ,
Բիւր բիւր հոգիք դու կը տեսնես կորած՝ դորա պատճառաւ.
Բայց մինչ այսօր այդ խնդիրքը մընացել է անվըճիռ,
Թող խելքո՞վդ աշխատում ես քակել անքակ այդ կնճիռ։

Սիրէ՛ ազգըդ ո՛չ լոկ խօսքով, սիրէ՛ ինչպէս քու անձը,
Նորա օգտին, թէ պէտք լինի, զոհէ՛ բոլոր քու գանձը.

Մի՛ խնայել կեանքըդ անգամ, արիւնըդ տո՛ւր նորան զոհ,
Ո՛չ այն յուսով, որ քու ազգը իսկոյն լինի քեզնի գոհ։

Իստակ սէրը չի պահանջում ամենևին տըրիտուր,
Թէ տուածը յետ առնուի՝ դորան կասեն առուտուր.
Բայց վա՜յ նոցա որ անըզգայ են իւր ազգի վիճակին,
Հազա՜ր անէծք նոցա վերայ, երնե՛կ շան պէս սատակեն։

Թէ դու Հայ ես՝ գիտե՞ս արդեօք ո՞վ էր ազգիդ նախահայր,
Ո՞ր տեղ, ո՞ր կողմ նա ընտրել էր ազգին համար Հայ աշխարհ.
Քանի՞ տարի անկախ մընաց Հայը օտար ազգերից,
Ի՞նչ էր պատճառ, որ նա ընկաւ իր առաջուայ փառքերից,

Ո՞ւր ցըրուեցաւ քու խեղճ Հայը, ունի՞ այժմ օգնական,
Կա՞յ մի հնար, միջոց, կամ յոյս նորա կրկին նորոգման.
Թէ կայ հընար՝ դու պարտաւոր ես անձըդ ազգիդ զոհ անել,
Խիստ կըտըտանք, սաստիկ տանջանք, սով ու ծարաւ միշտ տանել։

Դու պատրա՞ստ ես թողնել կայքըդ, ծընողք, եղբարք, սիրական,
Սիրելույդ տեղ կրծքիդ սեղմել միշտ մահառիթ հըրացան.
Դու պատրա՞ս, ես անվախ երթալ թշնամիի սուրի դէմ,
Սարսափելի մահըդ տեսնել դու կարո՞ղ ես ծաղըադէմ։

Այդ ժամանակ քեզ Հայ կ՚ասեմ. . . . . . . . . .

. . . . . . . . . . . . . . . . . . . .

Բայց թէ փորըդ տօլմաներից, կամ փըլաւից տըռաքի,
Հաւատացի՛ր՝ ուտելովըդ օգուտ չես բերիլ ազգի։

Ռ. Ց—Գ. Պատկանեան:

---

## 310

### Առաւօտեան երգ շինականաց։

Ա՜յ մարդ՝ այսօր շատ քընեցար նընջեցիր,
Առաւօտեան հով ժամանակն անցուցիր.
Արեգակը ծովի ծայրէն ծագեցաւ,
Ջերմութիւնը ձորն ու դաշտը փըռուեցաւ։
Ընկերներըդ վաղ արտերը գընացին,
Ցորեն գարին գերանդիով հընձեցին,

Խուրձ կապեցին, բարդ բարդեցին դաշտումը,
Նըստած հանգչիլ կաղնիներու հովումը։
Ո՜վ մարդ՝ վեր-կաց սառը ջրով լուացվիր,
Գոտիդ կապէ, գերանդիդ առ դաշտ հասիր.
Քանի հով է՝ հունձըդ արա արտումըդ,
Հունձըդ հընձէ, մի՛ ծուլանար գործումըդ։
Հունձըդ կապէ՛, բարդըդ բարդէ՛, տուն արի,
Հանգըստացիր, երբ քո հունձըդ կատարի.
Բե՛ր գերանդիդ, կախէ՛ պատին քո տանը,
Ես իրիկուան կըպատրաստեմ սեղանը։
Ո՜վ մարդ՝ հերիք ինչ-որ այսօր քընեցար,
Աչքըդ մէկ բա՛ց, տե՛ս թէ ո՛րչափ ուշացար.
Մեր գըղացին վաղ անց-կացաւ կամուրջէն,
Վաղ լըռել է մեր գըզիրը [1]) ձայնելէն։
Ի՞նչ ես պառկել, ի՞նչ ես քընել, սիրական,
Արեգական շողը հասաւ մեր գըղան,
Մի՛ ծուլանար, ժամանակըդ խընայէ՛,
Այն պիտի մեզ բոլոր ձմեռը կերակրէ։

Ռ. Ց—Գ. Պատկանեան։

---

## 311

### Մ ա ր գ ա ր է։

(Թարգմանութիւն ռուսերէնից)

Սկսեալ այն օրից, երբ Հայրն երկնքում
Ինձ տուեց շնորհ մարգարէական,
Ընթեռնումեմ ես մարդերի աչքում
Նոցա չար հոգին ամբարշտութեան։
Ես այնուհետև սկսայ քարոզել
Սուրբ ուսմունք սիրոյ և ճշմարտութեան,
Ընկերքս բոլոր ինձ քարկոծ առնել
Վեր կացան իբրև կատաղած գազան։
Ցանեցի մոխիր ես գլխիս վերայ,
Քաղաքներից դուրս փախայ չքաւոր,

1) Գիւղացիներու մէջ գլխաւորը, староста.

Անապատի մէջ ապրումեմ ահա
Աստծոյ սեղանից, իբրև թեաւոր:
Այն տեղ, խորհրդով տեսչութեան վերին,
Հնազանդ է ինձ հողեղէն ստեղծուած,
Ունկնդիր են ինձ աստեղք երկնային,
Շողշողուն փայլով ուրախազգեստուած:
Բայց երբ դէպ քաղաք այն աղմկային
Լինումէ ուղղել իմ շտապ քայլեր,
Այն տեղ ալևորք ժպտմամբ անձնասէր,
Ասումեն այսպէս երեխաներին.
«Նայեցէ՛ք ահա, օրինա՛կ դա ձեզ,
Իւր հպարտութեամբ անհաւան էր մեզ.
Մեզ հաւատացնել տխմարը կամէր,
Թէ նորա շրթամբք Աստուած խօսումէր:
«Նայեցէ՛ք, տղայք, այդ մարդու վերայ
Խոժոռ ու նիհար, գունատ տեսութեամբ;
Տեսէ՛ք, ինչպէս մերկ և աղքատ է դա,
Դորանից փախչումեն արհամարհութեամբ»:

Լերմոնտով: Հիւսիսափայլ, 1868—1864 Թ. Ե. 52:

## 312

Սարսեցուցիչն զօրաց երկնից,
Սուրբ փեսայն իմ և ձեր գահից,
Ազդէ ինձ զի ողբ երգեցից,
Զբողոքս յունկս ձեր հասուցից,
ՈՀ ինքնակալ կայսր համայն ռուսաց,
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Գաւլթի ժանեաց:
Եօթնագլուխ այս սեւ գազան,
Եցել զքօղ իմ գեղազան,
Փախոյց զՏեառն տէր սրբազան,
Եբեկ զկարգաց հին գաւազան,
Ո՞Հ միահեծան սուրբ կայսր ռուսաց,
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Գաւլթի ժանեաց:

Ղուկասն ազդէր ազգին ընտրել,
Յաջորդ ինքեան զտէր Դանիէլ,
Զոր խոստացաւ կայսրդ հաստատել,
Հրովարտակաւ անշուշտ վճռել.
Ա՜հ ինքնակալ կայսր համայն ռուսաց,
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Դաւթի ժանեաց:
Ով ապառում ժպրհանաց,
Յանկարծ վարեալ 'ի Նախանձ փառաց,
Լից զդուքսն տրովք կաշառաց.
Սասանեցոյց զխումբս Երհեաց,
Ահ միահեծան սուրբ կայսր ռուսաց.
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Դաւթի ժանեաց:
Վիթխար գազանն այն կատաղէր,
Զմահմետական պահակս բերէր.
Զերհիսն բոլոր բռնաբարէր,
Ախուռնակէզ վարազ լինէր.
Ահ ինքնակալ կայսր համայն ռուսաց,
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց.
Զերծո՛ զիս 'ի Դաւթի ժանեաց:
Բորենաբար զգանձս իմ բրէ.
Զսրբազան անօթս կրէ,
Ահմէտ Խանին միշտ նուիրէ,
Զիս մերկ այրի կացուցանէ,
Ահ միահեծան սուրբ կայսր ռուսաց.
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Դաւթի ժանեաց:
Լուսակիկլոն մրրիկ յարոյց.
Զբդեշխս զդուքս նոր լիացոյց,
Զիմ պատրիարգն աստ վարեցոյց,
Զենճեռն յօհան անդ գճեցոյց,
Ահ ինքնակալ կայսր համայն ռուսաց.
Յոյս փրկութեան իմ 'ի վշտաց,
Զերծո՛ զիս 'ի Դաւթի ժանեաց:

Տփղիս, 1805 թ. Սերովբէ Վ. Պատկանեան:

Գլխատառք սորա յօդեն զայս ինչ. Սերովբէ տէր Պետրոսեան պօլսեցի խոնարհ ծառայս ասացի. յորս պօլսեցին է յետագայ երգն՝ Պաշտելի: Բայց ՚ի մէջ Սարսեցուցչին և Պաշտելւոյն պակասի աստանօր երգն, որոյ խորագիրք բաղհիւսեն զհայրանուն երգաբանին՝ տէր պետրոսեան. Նոյնպէս յետ Պաշտելւոյն չիք երգն, յորոյ ՚ի գլխագիրս ընթեռնանի՝ խոնարհ ծառայս ասացի: Զայլ կարևոր գիտելիս զառաջիկայ երգոյս տես ՚ի ծանօթութեան Պաշտելի երգոյն:

## 313

### Անտօն:

Մէկ Հայ մարդ ունէր գեղեցիկ մի կին,
Ասացին մէկ օր նոքա մէկ մէկին.
«Թէ որ Աստուծով մենք որդի ծնենք,
Ի՞նչ անուն դընենք, տօնը ե՞րբ կատարենք»:
Կինը ասաց. «Յարութիւն դընենք,
Հօրըս տօնի հետ Զատկին կըտօնենք»:
— Չէ՛, ասաց մարդը, Կարապետ կոչենք,
Յովհաննէս Մկրտչի անունը յիշենք: —
Մէկ տարի անցաւ, կինն որդի ծնեց,
Հօրը անունով Յարութիւն անուանեց.
Տղան շուտ մեռաւ, նորից տղայ բերեց,
Եւ մարդու կամքով Կարապետ կոչեց:
Սա-էլ շատ շուտով աշխարքըս թողաւ,
Հօրն ու մօր սիրտը կըտոր-կըտոր արաւ.
Մի քանի որդիք էլի ծընեցին,
Բայց մինը միւսից յետ մեռան, գնացին:
Այս կերպով սոքա վեց եօթը տարի
Մնացին երկուսը անտոհմ, անորդի.
Շատ մատաղ արին, շատ ուխտ կապեցին,
Ու տարուայ պասերը բոլոր պահեցին:
Մի օր-էլ ասաց մարդը իր կընոջ.
«Գուցէ տէր Աստուած կու պահէ ամբողջ,
Թէ որ մեզ երկինք էլ մի որդի տայ՝
Այնպէս անուն տանք, որ տօն չ՚ունենայ»:

Տարին չ՚էր անցել՝ կենն որդի ծընաւ,
Ոչ մի սուրբ մարդու անուն չէ ստացաւ.
Ծոն չ՚ունենալով՝ Անտօն կոչուեցաւ։
Անտօն անունը ո՞ր ազգից եկաւ։

1851 Թ. Դորպատ։ Ք. Պատկանեան.

---

314

Պաշտելի, տօնելի՝ գահ սուրբ Գրիգորի,
Լուսալի, հրաշալի՝ պարծանք աշխարհի,
Իջման Յիսուս՝ Միածնին տեղի, հարսնդ Քրիստոսի.
Անմահ փեսայի, և Դանիէլ մեծ պատրիարգի։
Օգոստոս, Սեւաստոս՝ կայսր համայն ռուսաց,
Աղեքսանդր՝ բայց օն անդր՝ ահարկուս բազմաց,
Յուսամ առ Աստուած, որ զմեզ աստ առ ած, 'ի բանիլ տազմաց.
'Ի վերայ Պարսկաց՝ հաստուցանել զձեզ բաղձանաց։
Լիապէս, վաղապէս՝ կամիմ հաստատել
Մեծ կոմսիս՝ ասպետիս՝ պատգամ առաքել,
Սատիկ հրամայել, գունդ զօրաց սփռել, զԵրևան պատել.
Եւ տիրապետել, զորս 'ի նմա՝ ընդ բռամբ նուաճել։
Սերաբիի քան զարփի՝ սուրբ եկեղեցի,
Արդ խնդա՛ և ցնծա՛՝ ահա՛ վճռեցի,
Փեսայ փառացի, Սանահընեցի, Լոռագէթեցի,
Չէ լեալ, մի՛ լիցի. այլ յազգէն և 'ի մէնջ ընտրեսցի։
Երկնալիր՝ տիրակիր՝ փեսայիդ ազգեա՛,
Հայրապետ վեհապետ սուրբ հօրդ աւետեա՛,
Այլև զայս ասա՛, զազգ Լեզկեաց յիշեա՛, զԳանձակ խորհեա՛,
ԶՋաւաթ մտածեա՛, յորոց զԵրևան մակաբերեա՛։
Յամենական զայրացական վճիռք իմ ելցեն,
Զեր ոսոխից համախոհից վաղ ժամանեսցեն,
Որք բարեսէրք են, կարեկիցք ձեր են, հաւատարիմք են,
Հարազատք մեր են, զքաղցրութեան շնորհ մեր տեսցեն։
'Ի վերջոյ 'ի կարճոյ ես բացագանչեմ,
Որք ուտեն վայելեն զգանձ ձեր՝ ճանաչեմ.
Հաշուապահանջ եմ, և զանցառու չեմ, ընդ Դուլթի տանջեմ,
Եւ վտարանդեմ, նա գրէր մուլթ՝ բայց ես ճաճանչ եմ։

1805 Թ. Տիֆլիս: Ներսէս վ. Պատկանեան.

Այս տաղ է կցորդ նախընթաց երգոյն «Սարսեցուցիչ», որ ողբ բողոքախառն վասն անցից կաթուղիկոսացն Դանիէլի և Դաւթի. զորմէ ո՛չ տարադէպ թուի աստէն ասել սակաւուք ի գիտութիւն բարեմիտ ընթերցողաց նոյն և 'ի պարզաբանութիւն ինչ ինչ աղօտ բանից որ յայսմիկ երգի: Յորժամ 'ի 1800 ամի վախճանեցաւ 'ի Տփխիս Սանահնեցին Յովսէփ' ընտրեալն 'ի կաթողիկոսութիւն. Սիւնհոդոսն Էջմիածնի և ազգն ընտրեցին յաթոռ Լուսաւորչի զԴանիէլ, որ էր յայնժամ պատրիարգ Պօլսոյ, և առաքեցին հրաւիրակ զԷնակէթեցին Դաւիթ: 'Ի Պօլիս միւսանգամ եղև ժողով, և Դանիէլ վերստին ընտրեցաւ կաթողիկոս: Դանիէլ եդ զԴաւիթ 'ի տեղի իւր պատրիարգ Պօլսոյ և ինքն յուղի անկաւ գալ յԷջմիածին: Մինչ չև էր Դանիէլի հասեալ յԻւչքիլիսէ, Դաւիթ դրդեալ յանզգամաց, եհան հրովարտակ 'ի տէրութենէ Տաճկաց, և այնու վառեալ եհաս յԷջմիածին, և ձեռնադրեցաւ կաթողիկոս: Իբրև լուան կուսակիցք Դանէլի զայս չար համբաւ, 'Ներսէս (որ յետոյ կաթողիկոս) և Մանուէլ վարդապետք' օծին զԴանիէլ յԻւչքիլիսէ: Յորժամ եղեն երկու կաթողիկոսք, ազգն ևս պառակտեցաւ յերկուս. ոմանք էին Դաւթեանք, և ոմանք' Դանիէլեանք: Սերոբէ վարժապետն էր Դանիէլեան. վասն որոյ և զայն ամենայն, որ ինչ երևին յերգսն 'ի Սարսեցուցիչ և 'ի Պաշտելի' գրեալ է ընդդէմ Դաւթի: Սարսեցուցիչն է բողոք ի դիմաց Էջմիածնի, առ Կայսրն Ռուսաց' առ Աղէքսանդր Պաւլովիչն, որ էր յայնժամ 'ի տիս պատանեկութեան և նորապսակ արքայ: Դանիէլ հրովարտակաւ կայսերն, ըստ հայթայթանաց Եփրեմի և Լազարեվեանց, ընտրեցաւ և հաստատեցաւ 'ի 1802 ամի: Դաւիթ ևս դիմեաց առ Կայսրն. այլ խնդիր նորա չեղև ընդունելի, և մնաց Դանիէլ: Պաշտելին է բարձրագոյն հրովարտակի զօրութիւնն կամ բովանդակութիւն. յորում կայսրն տայ պատասխանի առ բողոք Էջմիածնի և յետ ողջունելոյ զաթոռն' զգահն Սրբոյն Գրիգորի ծանուցանէ և զհաստատութիւն Դանիէլի և յաւելու ասել, թէ յայսմ հետէ ո՛չ Սանահնեցի ոք, որպիսի էր Յովսէփն, և ո՛չ Էնակէթեցի, որպիսի ոք էր Դաւիթ, զօրօրինակ ցարդ չէ ոք եղեալ կաթողիկոս յայնց գիւղից, և ո՛չ ևս յայսմ հետէ ևս լիցին: Դաւիթ 'ի թղթի իւրում որ առ կայսրն, գրէ, թէ վասն ամենեցուն եղեր լոյս, բայց ինձ միայն' մութ. ուստի աստ կայսրն զանձնէ ասէ. Դաւիթ զիս մութ գրեաց, բայց ես ճաճանչ եմ:

Դաւիթ կոչէր «Էնակէթեցի» նախ' զի էր յԷնակէթ գեղջէ, որ է վաղնջուց անուն 'Քեբրոնի, քանզի բազում տեղիք 'ի Վրաստան կոչին յանուն տեղեաց երկրին աւետեաց: Երկրորդ' էնակէթ նշանակէ տեղի էնակացւոց, կամ էնակացիք:

Բնակացիք էին միթխարի, սկայք, յորոց յառաջ Դաւթի արքային Իսրայէլի մնացեալ էին Գողիաթ և եղբարք իւր։ Դաւիթ կաթողիկոսն եւս էր այր սկայանձն և ահագնատեսիլ, որում սակաւք ոմանք 'ի հոգեորականաց կարեն հաւասարել, գեղով անձին և փառաւոր տեսլեամբ։

---

## 315

### Ո սրբազան արհին Ներսէս։

Ի կանխագէտ տեսչութենէ Անեղ Էին սահմանի,
Յայտանուն այր ծնունդ սնունդ Արարատեան սահմանի։
Ակն արեւու, ո՛հ։

Ոլորտացեալ անդստին անդ յԷջմիածին անուանի,
Ատակարգու իմաստութեան ըստ ընտրելոց պայմանի։
Ոոշն ռահացոյց։

Զամածորան հոգւոյն աղբիւր գետահեռեալ 'ի սրտէ,
Ադինայն տունկ իմանալի լիակատար առոգէ։
Սէր սրբամիտ, ո՛հ։

Նոյն և ոսկին եւ ազազունս թարմացուցեալ բողբոջէ,
Նախանձելի զհեռակայս մեծ համբաւոյն իւր գործէ։
Բախ բենամբարձ։

Այական կամք զիւրն ցուցեալ առ Արամեանս սուրբ սէր,
Սերմանահան 'ի հին Տփխիս նպաստ Նունեայ հատանէր։
Բարձր բարձրընտիր, ո՛հ։

Ուլք դժնկի սերմանահեղձ ըստ իւր թափոյն պարուրէր,
Գուրակացիր մակամացառ խնքնաբորբոք հուրբ առնէր։
Այր արփաձեմ։

Իրաւանց տես՛ նուրբ քննութեամբ վճիռ շրթանց և գրչաց,
Սողոմոն կամ Արիստոգեան յատեան բազմեալ զնա վարկեաց։
Զգոն զարդացեալ, ո՛հ։

Կարգաւորեալ հին կանոնաց խաց բարձրելոց յայլ ազանց,
Ողջմտութեան դաստիարակ հոգևոր կարգ կրողաց։

Տէր առաջնորդ։

Պիտանութեանց ազգի բրգունք 'ի քաղաքի հիմնեցան,
Աշխատակցութեամբ սուրբ Միանձնին շնորհարանք կերտեցան։

Նախ ներհմուտ, ո՞հ։

Սանդուխք ելից՝ մանկանց յԵդեմ յանհնարից կանգնեցան,
Եռախոհին ճարտարութիւնք համահոչակ գովեցան։

Նաւ նուիրաբեր։

Բացատրանաւ առ Ձեզ վեհանձն բարեհանճար և արի,
Արժանապէս վերուստ ներքնուստ Հիպոստազիսդ[1] զարդարի։

Ալք եթերեան, ո՛վ։

Նորապարգև 'ի ձրից ձրից տեարց հոգւոյ և աշխարհի,
Բայլէ նորոգ ձօնից նոցին վաղ ընդունիլ՝ երևի։

Բեռ բարունի։

Համանուանց Ձեր հասիք 'ի չափ երկաքանչիւր սուրբ հարանց,
Ինքնայօժար 'ի սէր ազգին յանձնառու լեալ ծանր իրաց։

Միրտ սրբափայլ, ո՞հ։

Իւծեալ մարմնով անախտ հոգւով ըստ Ներսէս մեծ բարունեաց,
Սեպհականեալ զկոչումն յԱստուածուստ ըստ արժանեաց։

Այն է 'ի քեզ։

Ողջագուրմամբ շնորհաւորեմ զիր և զձայն շնորհալի,
Իւեսեալ պսակ նոր գովեստից վեհանձնութեանդ պանծալի։

Մտօղջ սրտաջան, ո՞հ։

Թարգմանելով զանթարգմանս զձիրս կայսեր տօնելի,
Իսկավայել զխաչ ճակատուդ կշտապանակդ փարելի։

Ինձն անբաղայ։

Իւսոք ներբողից բանաստեղծից զփառաց չեն բաւական,
Նա զի անցնիւր նշանք սիրոյ ձեր ոչ դառին բնական։

Բեն բախարար, ո՞հ.

Եկեղեցւոյն մեր և Կայսեր երեւելեաց սիրական,
Բախացուցիչ վեհապետին և հանուրց հարց տիրական։

Հայր հայրենեաց։

Կոհացաբար աղերսարկեմք օրհնել զծագս աշխարհի,

---

1) ипостась, անձն։

Երկարակեաց լինել կայսեր և հօգևոր առաջն ազգին.
Իսկ խմբասան. ո՜հ.
Մի՛ և հաստատ՝ անյաղթելի սուրբ Գրիգորեան մեծ գահի,
'Ի վերջէ մեզ հանդերձ մանկամբք արքայութեան արժանի.
Նոր Ներսէս մեծ։

Սերովբէ վ. Պատկանեան։

Ազգեալ 'ի խնդրոյ Յովհաննէս եպիսկոպոսի՝ վիճակաւորի Թէմին Աստրախանու 'ի դիմաց Նորուն Սրբազնութեան առ Ներսէս Թէմական արքեպիսկոպոսն վիճակին Աստրախանու և այժմ նոր Նախիջևանու և Բեսարաբիոյ և կաթողիկոս ամենայն Հայոց, զոր յայտ առնեն և գլխատառքն, որք բազմօքն զայսոսիկ բանս. 'ի Յովհաննէս եպիսկոպոսէ բանահիւսութիւն երգելի առ Սրբազան Ներսէս Արհին։

---

316

Հանգիստ յաւիտենից տեառն Ներսէսի վեհափառ կաթողիկոսի ազգիս Հայոց։

Ձայն գուժեաց յԱյրարատայ, եւ հնչեցին բեւեռք կըրկին,
Նընջեաց հովիւըն մեր արթուն, եւ սուգ պատեաց զամենեսին,
Ահագինըս մըռընչեաց սպիտակափառըն մեր Մասիս,
Սեպուհ Կովկաս եւ Արագած ընդ Տորոսի հառաչեցին։

Ո՛հ, այս քանի՜ցս այրիացար, Եկեղեցիդ Հայաստանեայց,
Այս քանի՜ արտօսր հեղուս ի քոյդ չըքնաղ ականողեաց,
Ձ՞ուր վիժես դու քաղցրահամ յագինատիպըդ դարատից,
Եթէ դառն ուխս արտասուաց մինչեւ ի ծով լայնատարած։

Երթ շուրջ հայիս կոյսդ աչագեղ ի բաց ըզքօղըն պարուրեալ...
Ահ մինչեւ ցե՞րբ յաջմէ բոսոր՝ ընդ ահեկէ ծուխ մըրըրկեալ
Տեսանիցես եւ սարսիցես եւ թալացեալ անկանիցիս,
Մինչեւ անդրէն սիւգ արփենւոյն ի դէմսըդ սուրբ առնու ծաւալ...

Լուսածնունդ քո զաւակունք ընդ տիեզերս-վայրավատին,
Քեզ ողբակիցք են ի սըրտէ, ընդ քեզ ի ջայլըս գումարին.
Հօտապետքըն զաթոռով քօղ սեւաթոյր տարածանեն,
Եւ խաչանց հոյլք խուռներամ դըրօշմ ըզքեւ տալ խուճապին։

Ե՞ն են ո՞հ եւ խորթացեալք ի սուրբ գրկացըդ մայրենի,
Որոց վայրք եւ ժամանակք եռեան գոգցես սիրտ վայրենի,
Եւ խընդան ընդ վիշտըս քո եւ ընդ պարծանըդ տագնապին,
Ո՞րպէս ուսան ի Նաւրոն, ո՞րպէս յորդւոց Ալբիոնի....

Բայց քեզ յո՜ւշ, Մայր անարատ, պայծառ աւուրքն այն առա-
ջինք,
Յորս հոգւոց մեր Լուսաւորին ցուցաւ տեսիլ, բանք ահագինք,
Ե՛րբ օդիք ոչ նոյնգունակ անցին ընդ հուրըն եւ ընդ ջուր,
Մինչեւ ելին ի սուրբ հանգիստ, մինչեւ բացան նոցա երկինք։

Նընջեաց Ներսէս արժանընտիր աթոռակալ սուրբ Ներսիսեանց,
Ազգակիցեալ առ Տէր ու առ Հայս սիրոյ բոցովըն գերազանց,
Մեհից սասան անակնկալու, եւ կըռատերաց հայր խընամոտ,
Եւ սըրտին կորով ըզհուր վառէր յալիս գլուխ հերապանծ։

Դու, ո՜վ Հայր, կառքդ Իսրայէլեան, յափըշտակեալ յանկարծ ի
մէնջ,
Յո՞ դիմես ի մնայլ երկիր շողեալ ի լոյս փողփողենէջ,
Ո՞ւր քոյին Եղիսէոս, ո՞ւր Մովսիսին յաջորդ Յեսու,
Ո՞ւմ տացէ եւ Եղանեիս զբերանոյն շիղ քոյինատենչ....

Այո, չիք ի բերանին դարձ ի տապանդ Էջմիածնի
Եղանեակս առնէր Նոյեան փութալ ի գիրկըդ հայրենի,
Սասանեալ եւ սըրտաբեկ արդ առ ափամբ Ախնեայ մընջէ,
Գուժկան՝ ոչ աւետաբեր կացեալ, աւա՜ղ, Հայաստանի։

Այլ այժմիկ հուպ դու Էջին կաս աթոռոյ մեծ Գրիգորի,
Քաղցր ակնարկեա ի Գահ քոյին, ուր պայազատ զոք քեզ
հանգէտ,
Շող լուսոյն բորբ ծագեսցէ ի պաշտօնէին Էջման տեղի,
Եւ Ներսիսեան թէ ոչ անուամբ՝ հոգւով տացի մեզ Հայրապետ։

Յայնժամ սուգ ի ցընծութիւն դարձցի ազգիս Թորգոմական,
Հօտք եւ հովիւք ըզթինդ տացեն խունկ ի գաւիթըս սըրբութեան
Երգնուլ զուխտ սըրբանըւէր քում յաջորդին արժանաւոր,
Կալ անսասան ի քոյդ հաւատ, ի լոյս ու ի սէր եղբայրական։

Մասեաց Աղաւնի, 1856 թ. Գ. տարի, յունվար, ե. 25—27:

317.

Ի վերայ աւերման Տփխիս քաղաքի գալստեամբ Աղա Մուհամմէդ խանի։

Էհայ ու հարգիզ չ'գայ էն թաւուր զարման քաղաքիս,
Հարիւր հազար մարդով եկաւ նա էս Գիւրջիստան քաղաքիս։
Պարսից մի անիծեալ լէյս ընկաւ դուշման քաղաքիս,
Մամմադ խան՝ եկաւ տուաւ մի նիզամներ էս քաղաքիս,
Եսիր անող, կրակ տուող՝ չէր մէ զարման քաղաքիս,
Հարիւր հազար մարդով եկաւ, չ'կարաց առնել քաղաքիս։
Մելիք Մէջլումն չուն դառնայ, Ջաւաթ խանն պստի կուշի,
Քաղաքն վիրանա արին, տեղի չինեցին Բայղուշի,
Մելիք Մէջլումի ազգէմէն մէկ չուն էլ չ'հաշի 'Շուշի,
Թանգ դօշում 'ինք մետ արել խուսուր, Չարբաք, Թուշի,
Աջէյիբ չալիշ կուգ'ին, կու լին'ին միզան քաղաքիս։
Ախտա խանն փալն իմացանք, մենք ասում'ինք՝ Շահ եկաւ,
Թէ չէ քաղաքն քանդելոյ տասն հազար թի ու բահ եկաւ,
Բերդեցիք պատւմէին. մեզ համար կըրլէգեահ եկաւ,
Նորա տուն չար նշան էր, ազալ սով իժում մահ եկաւ,
Մնացողն ղադում արին, ընկաւ բարէբան քաղաքիս։
Քաղքեմէն տարած եսիրն որն Արաբիստան է հասի,
Որն Շաքի, որն Շիրվան, որն Դաղիստան է հասի,
Որն Գուբա, որն Բաքի, որն Դարբանդ է հասի,
Որն Թավրիզ, որն Թէհրան, որն Խորասան է հասի,
Նրանց նաչար հէրն ու մէրն ո՞ր մինն վայ տան քաղաքիս։
Քաղքի ծոկած տղէքներ'ին, որ դաստերով ման կուգէին,
Մէկ մէկու ղարդաշ կ'ասէին, տե՛ս ինչ սիրով ման կուգէին,
Ով որ կարողութիւն ունէր՝ նոքարներով ման կուգէին.
Քէթխուդա՝ Աղա մարդիկն չախչուրներով ման կուգէին,
Նրանցմէն մէկն էլ չեմ տեսնում հիմի մէ նշան քաղաքիս։
Քաղաքն որ նեքսւ եկաւ հարիւր հազար Ղըզըլբաշն,
Մէկ մէկուց այրիլմիշ արին, դիփ մէտի, զովում՝ ղարդաշն,
Քահանէքը չունն էր ուտում, ոչ մինն չ'մտաւ նաշն,
Գետի պէս արիւն էր գնում, բօսթան էր ադմորդւոյ լաշն,
Որդին մօրիցն 'ին խլում, էլ սուգ ու շիւան քաղաքիս։

Արդարներ, դուք մօտ եկէք, Աստուածնէն ձեր ուղեցէք,
Փառք տուէք, աղօթք արէք, քաղ՚քի համար խէյր ուղեցէք,
Մեռնողներուն հիսաբ չ՚կայ, կենդանիներուն տէր ուղեցէք,
Քուր ու աղբեր հաւատացէք, հալալ սրտով մէր ուղեցէք,
Ո՞ւր է էն զուգ ու սաֆէն, էլ չ՚կայ գամով՝ քաղաքիս։
Խելէթու Ռ՚աշնաբաթն մօտ գնացէք, օրն արէք,
Ս՚աթաններեցն աւարայ՝ փօթոլներին օրս արէք,
Մեզ համար լաւ խրատ է, վատ բաներն թօղքա արէք,
Սիրեցէք Աստուծոյ ճամբէն, մէկս մէկանց մատաղ արէք,
Ջ՚ան ասացէք, ջան լսեցէք, մէկ մէկու կամով քաղաքիս։
Նաչարա ղարիբ տեղն դարդիս համար հաղ եմ առում,
Չեմ գիտում՝ ո՛վ է մեռել, ո՛վ կենդանի՝ սաղ եմ առում,
Մոլորած քաղ՚քի բանն սրտիս մէջն դաղ եմ առում,
Կարօտ եմ ճամբորդեմէն ոնց մէ խաբար սաղ եմ առում,
Քիչիկ Օղլանը աղատես քեաշքի եօ գամով քաղաքիս.

Քիչիկ-Օղլան.

---

319.

Սահակ և Մեսրոպ։

Թարգմանեց կանոններով Հայոց համար զօրաւոր,
Տեսութեանդ կարօտ եմ, շամն ու ղամար զօրաւոր,
Հրամայեց զօրքերին՝ կայծեն սամար զօրաւոր,
Ողխումէ լոյսն ՚ի բերնէն ձեռ՝ ամեն զօրաւոր։
Հայոց հայրապետն, սուրբ Մեսրոպ Թարգմանիչն է,
Որ հայկական տառերի միակ հնարիչն է,
Յարեւելից յարեւմուտ ամենին պահպանիչն է,
Սահակ իշխանն է ղեկուար, էն էլ մէկ սահմանիչ է,
Քառասուն կանգուն հեռի, ասեց, մէժ ա՛ռ զօրաւոր։
Երեք Թագաւոր եկան, ամենն մէկ կերպարան,
Մէկ մատն մատուցք տուին, երկրէ ցերկիր անցան,
Որ Մըշու հրամանից Օշական հանգստարան,
Եօթն կանգուն լեռ քարից կարեցին, արին խորան,
Կապեցին գերեզման լուսին կամար զօրաւոր։

Յօթն ղարար թագաւոր ասկէրովն սուր եկաւ,
Չէր լինում հիսաբ քաշիլ՝ հարիւր հազար բիւր եկաւ,
Մէկ խաչով խաչակնքեց՝ գիփ ամէնն կոյր եկաւ.
Գորւոյ ոտն դիպաւ, լեռ քարից աղբիւր եկաւ,
Մէկ ծառն նշան առեց.... տէր զօրաւոր։
Հոգին մեծ ու փոքրի ամէնն իւր բարբումն,
Պատաստանին ի՞նչ կասեմ, ճար չ՚կայ իմ ճարումն,
Խուրին հազար ութ հարիւր քառասուն և չորս տարումն,
Ջերգեր Օղլի Մէյխադն չի՛ մնալ աշխարհումն,
Որ գնումէս առ Աստուած, հոգւոյս մէկ ճար զօրաւոր։

Մեյխադ՝ Ջերգեր Օղլու։

---

## 320

### Մարդկային հայեցուածք։

Սակաւ է այս աշխարհում
Արժանութեան յարգ ու գին,
Որովհետև չեն պատվում
Իմաստութեան տուրք վերին։
Մարդիկ մի տեղ նայումեն
Լոկ քսակի քո վերայ.
Եթէ լիք է, պատվումեն,
Չեն հարցանում, ո՛վ է սա։
Միւս այլ տեղում համարվումէ
Զարդ և հագուստ մի մեծ բան.
Պատճառ, զգեստով կարծվումէ,
Լինելու են պատուարժան։
Բայց կան տեղեր, ոչ արծաթը
Եւ ոչ զարդը յարգ ունին.
Պատճառ խե՛լքը, գիտութիւնը
Այդ տեղերում գին ունին։

Յարութիւն Ոստանիկ: Հիւսիսափայլ 1863—1864 Թ. ե. 607։

---

321

Ամենայն արարածք ունին աստիճան,
Նոյնպէս էլ աստիճան գոյ 'ի մէջ մարդկան.
Ոմն սուրբ, ոմն պիղծ, ոմն չար գազան,
Ոմն առողջ հոգւով և ոմն տկար։
Մարդ գոյ, որ սրբի պէս պէտք է որ պաշտել,
Մարդ գոյ, որ խօսելիս կուզէ ամաչել.
Մարդ գոյ, որ կամենումէ շան նման հաչել,
Օյի վատ է խրատած, կամ թէ սեւն է չար։
Մարդ գոյ, որ աշխարհին տիրէ՝ չի՛ յագիլ,
Մարդ գոյ, որ ոչ ոքի խօսքով չի՛ ծակիլ.
Մարդ գոյ, որ չի՛ ուզիլ՝ իրան հռչակիլ,
Անմռունչ կու շրջի՝ իբր հեզ ոչխար։
Մարդ գոյ, որ ամէնի հետ ունի նախանձ,
Մարդ գոյ, որ հոգին է իրան համար գանձ,
Մարդ գոյ, որ անխելք է, միայն մնապանծ,
Մինչի մահ չի՛ տեսնիլ նա հանգիստ՝ դադար։
Մարդ գոյ, որ աղքատ է, չի՛ սիրում կաշառ,
Մարդ գոյ, որ պատրաստ է ուտել ապառ.
Մարդ գոյ, որ թէ ձմրան խնդրես ձիւն, կամ սառ,
Կու կարծի, թէ սրով գլուխն հատար։
Մարդ գոյ, որ ինքն իրան խելօք է կարծում,
Մարդ գոյ, որ գոլորշոյ պէս է համբարձվում,
Մարդ գոյ, որ վատ ճամբից չի՛ ուզիլ դարձում,
Եթէ որ խրատես, կասի՝ ծուռ խօսար։
Մարդ գոյ, որ յիմար է՝ բարձրաստիճան,
Մարդ գոյ, որ չ'իմանալ՝ թէ ի՛նչ գոյ իր տան.
Մարդ գոյ, որ չի՛ կարում սատել մէկ կնկան,
Կոչվումէ ամենաքաջ սպասալար։
Մարդ գոյ, որ տխմար է՝ ինքն վարժապետ,
Մարդ գոյ, որ Յուդայ է՝ կոչմամբ վարդապետ.
Մարդ գոյ, որ յայտնի գող է՝ մեծ գանձապետ,
Ահա՛ քեզ ընտրութիւն ուղիղ և արդար։
Մարդ գոյ, որ բժիշկ է բայց ինքն հիւանդ,
Մարդ գոյ, որ ինչ տեղ հաց ուտեն՝ նա է անդ,

Մարդ գոյ, որ Էր սնոյց Նրան մօր արգանդ.
Այնպիսոյն արժան է խեղդուելոյ մէկ լար։
Մարդ գոյ, որ ստութեամբ փառաց տէր եղև,
Մարդ գոյ, որ անտերև պտղաբեր եղև.
Մարդ գոյ, որ աւաղակ էր՝ տէրտէր եղև.
Ինչ ասեմ էնպէսին ես գերամեծար։
Մարդ գոյ, որ մինչի մահ չ՚խօսի՝ շահ է.
Մարդ գոյ, որ մարդկային բնութեանը մահ է,
Մարդ գոյ, որ պատառող գայլից ագահ է.
Պիշատել կուզէ քեզ՝ թէ տուրքից խօսար։
Մարդ գոյ, որ երեսօք է արդարադատ,
Մարդ գոյ, որ 'ի ծածուկ է ամենավատ.
Մարդ գոյ, որ ձեւիցն դիփ կոչումն դադ,
Նոքա չեն բանական, այլ են անբան քար։
Մարդ գոյ, որ հայրենեաց ցաւը չիմանալ,
Մարդ գոյ, որ կու պահի ծածուկ՝ չի՛ բանալ,
Մարդ գոյ, որ սրբութիւն երբէք չի՛ ստանալ,
Այնպիսին մարդ չի՛ այլ անասուն՝ տաւար։
Մարդ գոյ, որ ընտանեաց մէջ մինն է յոյսը,
Մարդ գոյ, որ կամ քոյրն, կամ կինն է յոյսը.
Մարդ գոյ, որ միայն Միածինն է յոյսը,
Ինչ անեմ Վերջինն առաջնոց յարմար։
Մարդ գոյ, որ գազան էր՝ յետոյ մարդացաւ,
Մարդ գոյ, որ մարդ էր իսկ՝ բայց ամարդացաւ.
Մարդ գոյ, որ իրան մարդ առնել մարթացաւ,
Մարդկային վարուցը չէ՛ք հաշիւ՝ դաւթար։
Մարդ գոյ, որ սիրուն էր՝ ախտաւորուեցաւ,
Մարդ գոյ, որ իւր գեղով բախտաւորեցաւ.
Մարդ գոյ, որ անառակ էր՝ յաղդաւորեցաւ,
Աշխարհի ո՞ր բանին ունի էհտիբար։
Մարդ գոյ, որ յայտնապէս մեծ ստեղծուած է,
Մարդ գոյ, որ մաքերն փարդով ծածկուած է.
Մարդ գոյ, որ մարդ է՝ բայց յատուակ Աստուած է,
Վէյեադի հոգւոյն նա թող լինի սատար։

Պ. Տ—Տ. Մաղաթեան:

322

Ասացեալ 'ի հանդէպ «Աշով Գաստարեան չէ՛ լինիլ» պարն Սէյեադի խաղին։

Այգեբան ի՞նչ ես անում՝ շամբը [1]) բուրաստան չէ՛ լինիլ,
Օձի որքան գեղեցիկն ընի՝ սիրական չի՛ լինիլ,
Կատուին ուտացնես օրը հազար նազ [2]) ու նամաթ, [3])
Տիրասէր և բարեսիրտ, յայտ է, իբր շան չէ՛ լինիլ։
Ագռաւին շուշի [4]) միջում պահես շաքար ու նաբաթով, [5])
Վատաբախտ բուլբուլի պէս վարդի սիրաբան չի՛ լինիլ,
Մանկական ուսումն ունի միլիոնի [6]) չափ արժողութիւն,
Ապտակով սընւած տղէն առանց ատիճան չէ՛ լինիլ։
Ղուռանը [7]) ասում է. թէ ջաննաթումը [8]) շատ հուրի [9]) կայ,
Ինչ Վրաստանին է-ջաննաթին էլ էնքան չի՛ լինիլ.
Խաղողի վազովը շատ տեղ պարապած մարդ կայ-միայն
Կարծումեմ, թէ ոչ մէկը Ներզէն [10]) Ալէքսան չէ՛ լինիլ։
Նախարարներ շատ ունի Օգոստափառ Կայսրը, բայց
Մէկն իր անձին չ'խնայող՝ իբրը Արղութեան [11]) չէ լինիլ.
Թէև էս գործերիս էլ ազգասէր իշխանք շատ ունինք
Կարծումեմ, թէ ո՛չ մէկը Սմբատ ու Վարդան չէ՛ լինիլ։
Շիրակայ չնաշխարհիկ [12]) դա՛շտն է լալիս աղիողորմ,
Ասելով. թէ որբութեամբ ո՛չ տեղ Հայաստան չէ՛ լինիլ,
Դու, Շիրին, որը հարիւր քաղցր և ախորժ բան մտածես,
Քո Հայերէն խաղերը՝ Սէյեադի նման չէ՛ լինիլ։

Շիրին։

---

1) Եղէգ, եղէգնուտ տեղի, զամբըշլըկ։ 2) և։ 3) Բարիք, կերակուրք, համադամք, ուտեստ։ 4) Ապակի, շիշ։ 5) Պաղշաքար։ 6) Հազարից հազար, հազար անգամ հազար։ 7) Կուրան. ժողովածոյ, հիմն կամ գլխաւորութիւն հաւատոյ մահմետականաց։ 8) Արքայութիւն երկնից, դրախտ, եդեմ։ 9) Յաւերժահարսն, յաւերժական հարսն։ 10) Յոյն։ 11) Իշխան Մովսէս Զաքարեան Երկայնաբազուկ Արղութեանց, որ երբեմն ահարկուն էր լեռնաբընակ թշնամեաց 'ի Կովկասեան սահմանս։ 12) Աշխարհիս վերայ չի տեսնուած, չի գտնուելու և չի լսուած բան կամ իր։

323

Ինչանդէպ «Աստուծոյ՝ աշխարհը դէփ ինձի գովական են ասում» պարոն Շիրինի խաղին։

Աստուծոյ՝ խեղճ մեռն գալով, բոլորն ինձ արդար են ասում,
Չես գիտում վատ համբաւդ՝ ուրիշ տեղ, հազար են ասում,
Լեզուդ չի պահպանելով՝ բնութիւնդ չար են ասում,
Խէնց գիտես շատ խօսացող մարդերին ճարտար են ասում,
Ծաղր են առնում, խնդում են, անմիտ՝ խելագար են ասում։
Այլոց լաւ սեննակիցն քու փոքր տունն է գովելի,
Աշխատիր վատ չի՛ լինիս, մարդու անունն է գովելի,
Աչով քեզ գրօշ [1]) չի տալ, թէ ունիս՝ քունն [2]) է գովելի,
Անզգամ կնոջմէն՝ էն տիրասէր շունն է գովելի,
Որքան թակես՝ չի փախնիր, նրան հաւադար [3]) են ասում։
Շատ մարդ դատարկ խօսալով՝ ամենայն տեղ, աչքից էլաւ,
Թէ քանի՞ դատարկ խօսքեր եփեցին, չէլաւ մին փլաւ [4])
Արովհետև աննիւթ այ, ոչ հաց կ՚լինի՝ ոչ հալաւ, [5])
Դրան շատ մի՛ հետևիլ, վերջը կանես քոյ գլխին ցաւ,
Դու քու դարդերդ լացիր, որ քեզի անճար են ասում։
Դովլասանք շատ ես ուզում՝ Նրա [6]) համար, որ անբան ես,
Դովլասանքի նայելով՝ չես իմանում, թէ ի՞նչ անես,
Քու տունդ լաւ պահելու ամենայն վախտ պարտական ես,
Ուելի փող կիտելով՝ աշխարհէն ի՞նչ պէտք է տանես,
Չե՞ս գիտում մարդոյ կեանքը հողին հաւասար են ասում։
Շնորհակալութիւնը ըսկի [7]) մարդոյ տուն չի՛ շինիլ,
Դու դրան հաւանելով, քեզ սեպհական կայք մի՛ անիլ,
Հազար բեռը ունենաս՝ ոսկի ու արծաթ չի՛ լինիլ,
Շիրանի, դուն փող մի՛ տալ էդպէս դատարկ բաներ գնել,
Էդպէս բանին հաւանող մարդերին յիմար են ասում։

Շիրանի։

---

1) Երկու կոպէկ պղնձադրամ։ 2) Քոյ, քուն։ 3) Սիրահար, խանդակաթ, հաւատարիմ, մտերիմ. յարելն յոք, թիկունք լինելն ումեք։ 4) Չոր ապուր. կերակուր ինչ յօրինեալ յորիզոյ։ 5) Հանդերձ, զգեստ, զգենելիք։ 6) Նորա։ 7) Բնաւին, ամենևին։

324

Ալավերդու ժամանակակցին կարդացի։

Ըռանգ ըռանգ խօսք եմ լսում, մէկն ուղիղ՝ քսանն սուտ.
Ականջ յոյժ զարմանալ, ինչու կասէ իննսունն սուտ։

Ո՞ւր է նախնեաց ժամանակն՝ որ մարդիկն սուտ չունէին,
Ընական կարգով շարժելով՝ առատութեան փուտ չունէին,
Մտքներն ճշմարտութիւն էր, զի սրտից օգուտ չունէին,
Սուտ գործերն ճշմարտից մօտ՝ համարձակեալ մուտ չունէին,
Հիմա հազար խօսք որ լսես, կասես՝ սրանց տուտ չունէին,
Ռամիկն սուտ, քաղաքացին սուտ, ազնիւն սուտ, իշխանն սուտ։
Մարդ՝ գովելքն միշտ կու ատէ, և միշտ կու սիրէ տեսլքն,
Գործերի վարերն կանէ, աչքէն կու ձգէ յարգելքն,
Մեղքին էնպէս կու բռնէ՝ որ ինչպէս երեխայն ածելքն,
Գիշեր՝ ցերեկ կու ցանկանայ սէր եղջօրն անջատելքն,
Չարի գործելոյ համար էր՝ Կայեն սպանեց Աբելքն,
Քոյրն սուտ, եղբայրն սուտ, որդին սուտ, ազգականն սուտ։
Լաւ մարդոյ չէմքի վատ մարդն է գլխաւոր մահտարաժամ,
Նորա ձեռքումն՝ էն լաւ մարդն՝ կու սկանայ յամենայն ժամ,
Էնպէսներից հեռու կենալ հայ եղբարցս խրատ կուտամ,
Նրանցով Հայաստան կորաւ, որոյ մասին միշտ կու ողբամ,
Նրանք անուամբ հայ էլ լինին, բնութեամբ են լիրբ անզգամ,
Նրանք սուտ, իւրայինքն սուտ, մեռածն սուտ, կենդանն սուտ։
Ինչ մարդ որ կամենումէ այլ մարդից պարտ առնալ,
Սկսումէ նորա մօտին ճշմարտութեան դուռն բանալ,
Իւր կողմանէ միշտ հանապազ առ նա էհթիբար խոստանալ,
Նա էլ նրան ցանկանումէ մէկին մէկով փող շահով տալ,
Տուածն չի կարում առնուլ, սկսումէ հետքից ման գալ,
Պարտատուն սուտ, մուրհակն սուտ, վկայն սուտ, պարտականն սուտ։

Ով հետն գործ ես ունենում, կամենումեն քեզի խաբեն,
Օղի էն բանումն քեզանից աւել առնին՝ իրանք լափեն,
Մարդոյ բարքն ապականելայ, կուրեկյայ խեղճ նախնեաց ճամփէն,
Մեռնող կու մեռանին՝ թէ ծախելիս պակաս չի չափեն,

Մի՛ խօսք բանիր՝ մեզ հաւատալ, որ հենց դիւթ էլ բերնալ են,
Կրակն սուտ, կէս գազն սուտ, ջայրն սուտ, միջամն սուտ:

Սատանէք մարդն բազմացաւ, ճշմարտին թաղով փախցրին,
Ով ճշմարտասէր երևաց, նրան վռաղով փախցրին,
Կուսեթի քնարին հնչիկեայ լռթիկը՝ սաղով փախցրին,
Եղբայրասէր սուրբ կեղծութեան՝ անձուաք նաղով փախցրին.
Անմեղութիւնն օրհնեցին, անօթն անաղով փախցրին,
Չայիլն սուտ, նայիլն սուտ, գինն սուտ, խմանն սուտ:

Մի՛ զարմանայք, արդարամիտք, անձնբգործութեան օրինաց.
Թէ օրէնքն լաւ գործ դրուին, չար մարդ չունենալ աղ ու հաց,
Որին դատաւոր են շինում, սկսում կամաց՝ կամաց
Ծածուկ աշխարհն կլանել, յայտնի երևիլ սրբակեաց.
Այնպիսի աւազակին պիտի կոչել գլուխ աւազակաց.
Խորհուրդն սուտ, վճիռն սուտ, խօսքն սուտ, կատարումն սուտ:

Հին ժամանակի նաւերն մարդոյ ծովումն լանք չէին անում,
Արգասուն բանալ բանին նաւահանգիստ էին տանում,
Այն աղացաւ առ և ուրբի բանզարն յոյժ լաւ էր բանում,
Հիմա հաւնումէին նպատակի, վաստակելով շահ տանում,
Այժմեան նաւերն իւր միջի մարդկանցն տեղ չեն անում,
Փայտն սուտ, երկաթն սուտ, կիկն սուտ, եղբայրն սուտ:

Սուտն էնքան շատացել այս, եթէ գրեմ, թուղթ չի տանիլ,
Կամ ստասէր մարդիկն դիտի ինձ չէին մտաբանիլ,
Գրուէի անմեղ ծեղիցն բամբասանաց տակ անկանիլ,
Դիտի գիտումն իրանց սուտն, չի հարկաւոր պարզաբանիլ,
Մէյեան, դու էլ ստախօս ես, ինչպէս կարեմ խղալթ անիլ,
Կետն սուտ, աներն սուտ, որսն սուտ, որսկանն սուտ.

Գ. Տ—Ց. Մողալեան:

325

Ս˘ասն գովասանք սիրող մարդկանց:

Ասումես՝ ինչ որ անումեմ, դիտի ասումեն լաւ ես անում, [1)]
Տեսնանք էս լաւ բանդ, դու փոխան թէ հաքու ես անում: [2)]

Այլոց սասծ լաւ բանիցն մէն նաղա գրոշն է գրվելի,
Խոստացած թանգագին շորից հագիդ հին քօշն է գովելի,

1) և 2) Ամենայն տանց վերջում կրկնեա զայսոսիկ տաղս:

Ուրիշէ լաւ նկրտակութեամբ քու միտն չար բերն է գովելի,
Մատ մարդոյ քաղցր մուրացիկ լաւ մարդի մօշն է գովելի,
Ես քեզի խրատ եմ տալիս, դու աշխարհըքին չար ես անում։
Հազար մաշալաքեան հուպաքեա՝ չես կարող մին գտակ կարել,
Շատ մարդ մաշալըայեին քանոնով ծախելու թազար է տարել,
Մին փող գին տուող չի իւել զատարկ իւր տուն է յետ դառել,
Դուն՝ որ եղջեւի ժողովուրդ, արդեօք ինչ կամիս կատարել,
Զօռով անելոյ բաներն ինքդ քու կամաւ ես անում։
Որն միլիոն մարդ գովէ քեզ՝ խելք չէ՛ կուշտանալ փորըդ,
Արժած կպարկես գիշերն, 'ի զուր անց կուկենայ օրըդ,
Գովասանքին որոնելով՝ կմաշվէ քու իլած շորըդ,
Կինըդ ակլոր կըմնայ՝ քուֆր կըտայ հօր ու մօրըդ,
Խօշ բաներին հետեւելով քեզ համար մեծ ցաւ ես անում։
Խարիֆին էնտուր ես սիրում, որ բնութիւնդ հպարտ է,
Հպարտ մարդոյ ցանկութիւնն իրան համար ծանր դարդ է,
Ինչպէսին ուժհմ անօգն նրանից շատ նամարդ է,
Քանի քշող մարդն իրան կեանքն թաշուիշով կուպարտէ,
Տեսնում ես գովասանքն, դու, բօզբաշ՝ թէ փլաւ ես անում։
Քանի քանի իշխանութիւնք հպարտութեամբ ոչնչացան,
Ընթիւ անձինք՝ գովասանաց ետքից շըջելով, փչացան,
Խանականութիւնքն շաղվեց, ցիր ու ցան եղեն՝ քիչացան,
Այս բանի մին իսպաթն է աւերակ եղեալ Հայաստան,
Մէյեան, նստել ես նաւումն՝ Նօգմանի հետ զաւ ես անում։

Գ. Յ—Յ. Մաղաթեան։

---

326

Առան այնոցիկ, որք ակնոց դնելով և ֆրանսիարէն խօսելով՝ զինքեանս գիտուն համարեն։

Քիթդ թամքել ես չէշմակով,
Աշարժ խօսումես ֆրանկի լեզուն,
Մտօք յիմար ես՝ որպէս կով,
Բայց քեզ կարծումես իմաստուն։
Չէշմակն՝ թէ խելք ունենար,
Շինող ջհուդներին կուտար,

Որ շրջում են իրիկ. սար.
Չունելով օթեւան և տուն։
Չէշմակն գիժին ի՞նչ անի,
Որ իսկ նման է անբանի,
Նորանից լաւ է Շաբիանի [1])
Հաւատարիմ որսկան կատուն։
Մի՞թէ համայն Ֆռանգստան,
Ուր Փռանգերէն կու խօսան,
Երբեք յիմար մարդիկ չ՚կան,
Որ ասեն՝ է իսկ անասուն։
Ի՞նչ մեղաւոր է չէշմակն,
Որ կոյր լինի մտաց ակն.
Մի՞թէ խօսելով թութակն
Ֆռանգաւոր, կուլի գիտուն։
Ակյոգ, ե՞ր չես չէշմակ դնում,
Գիտունների շարքն մտնում.
Խալխի միննաթից պրծնում.
Մի՞թէ լաւ է կոչվիլ նըկուն։

Գ. Տ—Ց. Մադաթեանց։

327

կամիմ փոքր ինչ քեզնից խօսել՝ աշխարհաւեր գարշելի մեղք, [1])
Քեզանով մարդին պատահեց անճար ցաւեր, գարշելի մեղք։ [2])

Ադամ որ իւր նպատակին չեհաս. դու եղեր պատճառն,
Ո՞նց չի՛ ամաչար. խաբեցեր Եւայի պէս անմեղ գառն.
Նրանց լուսից զուրկ թողողն դու էիր. ո՛չ թէ չար ծառն,
Քո սկիզբդ շատ համեղ է՝ իսկ վերջդ մահաբեր դառն,
Գժոխքը քեզ վիճակ տուին՝ յոյժ սակաւ էր. գարշելի մեղք։
Թէ քո արարմունքդ պատմեմ՝ աշխարհի թուղթն չի՛ տանիլ,
Ինքան ծանր ես, քո մողալըք՝ թէ բեռնես, ուղտն չի՛ տանիլ.

---

1) Շաբիան՝ է 'ի Շամախու երկրի գիւղ, յորում գոն կատուք յաղթանդամք և անխնայօրէն սատակիչք մկանց։
1) և 2) Ամենայն տանց վերջումն կրկնեսն զայսոսիկ տողս։

Քո քսած մուրը մարդից Յորդանու ջուրն չի՛ տանիլ,
Լուծդ թեթև կ'երևայ, բայց գոմէշի ճուխան չի՛ տանիլ,
Նախահարց ոտին դրածդ վա՛յ բլխուն էր, գարշելի մեղք։
  Քո գլխաւոր հնարներդ գինում և կինարմատում են,
Քեզանով թագաւորներին հպատակներն ատումեն,
Քո սիրականիդ ամենայն խրատարանում դատումեն։
Մարդ չի՛ տեսայ՝ որ քեզ գովի, դիփ ձեռիցդ գանգատումեն,
Էգ վատ անունը ընտրեցիր՝ մի՞թէ լաւ էր, գարշելի մեղք։
  Քեզ հետ բարեկամ չինողն կենաց մէջ պտղոր չի՛ տեսաւ,
Նորա ատելի գործերն յաւիտեան կատար չի՛ տեսաւ,
Մեղսագործութիւնից բաշխայ գովանի մաղար չի՛ տեսաւ,
Աշխատանքը ջուրն տարաւ՝ չոր հացի պատառ չի՛ տեսաւ,
Չի՛ թողար՝ որ ողորմելին ապաշաւէր, գարշելի մեղք։
  Մարդն՝ եթէ յոյս չունենար, Նորա օրն ո՞նց կուլինէր.
Քո ձեռիցդ չէր զերծանիլ՝ անիրաւ տնտես կուլինէր,
Սատ արարմանց կանոններն Նորա համար ծէս կուլինէր,
Կըփորէր մեղաց գետինը՝ զզուելի մողէս կուլինէր,
Եթէ Քրիստոս չի՛ գար, Նրան ո՞վ կու քաւէր, գարշելի մեղք։
  Սէյեադն եմ՝ առ ժամանակ ես էլ քեզ հետ ընկեր եղէ,
Արդարութիւնը կորցրի՝ բազում յանցանաց տէր եղէ,
Կարճն ասեմ, մեղք գործելում սատանից գեր 'ի վեր եղէ,
Տեսի քեզ հոգւոյ թշնամի, դարձայ՝ Նորա հետ սէր եղէ,
Յետոյ իմացայ՝ որ Նաւըդ կոտրած Նաւ էր, գարշելի մեղք։

Գ. Տ—Ե. Մադաթեան։

---

328

Սան յանիրաւի ուտողաց։

Սկիզբն իմաստութեան երկիւղ Տեառն է, սիրական,
Ո՛չ ոսկին, ո՛չ արծաթն և ո՛չ ականքն պատուական.
Ինչ բանում որ հարամ եղև, Նա կուկտրէ քունդ,
Կամաց կամաց կսկսէ աւերել հոգևոր տունդ.
Մին կտոր հացդ, եթէ պատահեց, որ հարամ եղև,
Լաւ է, փոխանակ Նրան, ուտես քար, կամ ծառոյ կեղև.

«Քանզի հարամ՝ պատառն ամէն բանդ հարամ կանէ,
Հարամի զօրութիւնը լաւ հասկացիր, որ մեծ բան է.
Մ՚ին կտոր հացը՝ թէ որ համարեցիր կասկածելի,
Եթէ հայր Աբրահամու սեղանից մնացած լինի,
Թէկ նորա ձեռօք լինի ցանած էն հացի թօխումը,
Թէկ երկնային եղներով ծրուած լինի նորա շումը,
Թէկ նոր լուսնի մանգաղով եղև նրա հասկն հնձած,
Թէկ Փրկչի գերեզմանի քարիւ լինի նա աղացած,
Թէկ որ նորա խմորի, յատուկ իմանաս, ունցողն
Եղել է կոյս Մարիամն, որ է Յիսուսի ծնօղն,
Թէկ դրախտի փայտիւ էրուած լինիցի թոնիրն,
Թէկ հրեշտակ իրան ձեռօք վառած լինի նորա հուրն,
Թէկ հազար անգամ վըրէն ասած լինես դու Հայր մեր,
Հարամն չի՛ սրբանալ, էն պատառը երբէք մի՛ կեր.
Յետ ու յառաջ նորա վատ բնութիւնն չի՛ մնալ ծածուկ,
Կանի քեզ դժոխային, հաւատա՛ այս խօսքիս յատուկ,
Դարձի՛ր հարամ ուտելուց՝ ազատիր քեզ, մարդ Աստուծոյ,
Եթէ ո՛չ՝ հարամն շուտ քամոյ կուտայ զհաւատն քո.
Յանկութիւնը դէ՛ն ձգիր, մի՛ որոնիլ փառք ու պատիւ,
Աստուծոյ երկիւղից մի՛ հեռանալ գիշեր և տիւ.
Թէկ չ՚ունենաս հագնելոյ ոսկենկար բեհեզ պատմուճան,
Կաշիյից շորեր հագիր, որ է պինդ և դիմացական.
Թէկ չի՛ գտնես խմելոյ, ծարաւ ժամուդ, ջուր շաքարի,
Կարող ես գետի ջրով կառավարուիլ բազում տարի.
Թէկ չի՛ լինի քեզ համար ջուր խմելոյ Մինէացի բաժակ,
Բան չկայ, երկու բուռդ մինչի մահդ քեզի բաւ վո՛րկ.
Թէկ չունենաս շրջելոյ համար երիվար զարդով,
Բան չկայ, լաւ կարող ես ամենայն տեղ գնալ ոտով.
Թէկ չի՛ լինի քեզ համար բնակուելոյ զարդարած տուն,
Մ՚ի նեղանալ, կարող ես սարի ճեղքում բնակուիլ դուն.
Թէկ չունենաս տօսախի սանտր սանտրելոյ մազերդ,
Բան չկայ, լաւ սանտրն է էդ Աստուածատուր մատներդ.
Ամէն բան աշխարհքումս ունի միշտ իրան փոխանորդ,
Եթէ որ փոխանորդում լինի կամքդ՝ միտքդ ըղորդ.
Թէկ ուզես իմանալն՝ անփոխանորդ ինչպէս բան կայ,
Հոգիդ է, վատ գործերով մի՛ կորցնիլ, որ շատ թանգ ա.

Սեյեա՛դ, քո էս խօսքերդ մրով չի՞ ոսկւով գրած՚ է,
փրկիչ է էն մարդին, որ միշտ հարամի մէջ կղրած է։

Գ. Տ—Ց. Մաղաթեանց։

---

329

Գաղթականութիւն ՚ի 1828 ամի։

Հասան խանի դարդ ու բալէն մեզ բերուց, աման, Բայազիդ,
Փիքր արուց մտքի միջին, որ տանի Թէհրան՚ Բայազիդ։
Ռուսն եկաւ Ապարանն, առաջն կտրեց բօրանն.
Բարձեցինք քօչ ու քուրանն՚ եկանք քեզ սէհրան՚ Բայազիդ։
Եկանք Քեօրփալուի դուզն, ղարղ էլան գոմէշն ու եզն.
Անց կացանք Սև ջրի սազն, բաթլախն էր եաման՚ Բայազիդ։
Որ եկանք Արազի ափն, կտըրուեց ճռներիս թափն.
Վառեցինք եաւշան ու չօփն՚ ծուխն արինք դուման՚ Բայազիդ։
Ե՛րբ որ հասանք Խալըֆալին, մոխկ տո՛ւր աղքատի հալին.
Եկաւ էն շ՛ուն Սաֆար Ալին, մեզ տարաւ հուրեան Բայազիդ։
Վա՛յր եկանք Արհաջու տակին, Թասլիմ էլանք Հէյդար Բէկին.
Ապրիլ ամսոյ տասնումէկին սարերդ էր բօրեան՚ Բայազիդ։
Եկանք Օրգովու սարերն, բացուել էր կարմիր քարերն.
Այրեցինք սալլի Թառերն՚ ծուխն արինք մարխան՚ Բայազիդ։
Վայր իջանք Օրգովու սարէն, շատ հորթ ու ձագ անկաւ քարէն.
Չի գտնուիլ մանր փարէն՚ ոսկուցն դիւման Բայազիդ։
Ելանք Զագեանլուի դօշէն, վայր եկանք Արծափու քեօշէն.
Ամուտ տվուց Բահլուլ փաշէն, որ չ՛լինի Թալան Բայազիդ։
Ես՛ի ու մէկ բարձկան ուլախ, դօշակս էլաւ կակուղ փալախ.
Երբ անց կացանք Ղարա-Բուլաղ, արխային էլան Բայազիդ։
Այրածդ ղամիշ ու եաւշան, չի՛ գտանվում հացի նշան.
Գեւրիդ երթայ Հինդ ու Քեաշան, դուն երթաս Թէհրան՚ Բայազիդ։
Տավարն ղըկեցինք արօտ, սարեր ունես անջուր՚ անխոտ.
Մեք մնացինք մածնի կարօտ, կտրեցի մէրան՚ Բայազիդ։
Շատ մարդ գնաց Զանգեազօռն, ճամբին զօռեց ճանճն ու բօռն.
Բարձր տեղ է Ա՛դլիգեօռն, աղբիւրդ էր Թառլան՚ Բայազիդ։
Կովն ու հորթն տուի տէրտէրին՝ ինչ որ կթեց իմ հօր խէյրին,
Տասն օրից յետոյ յետ բերին, ի՞նչ կ՚լինի չարան՚ Բայազիդ։

Ասի՝ տամ մի բարձկան իշխ, Նախիք չ՚լինի ղուրդ ու ղուշի.
Վերջն տուր վեց ղուռուշի, էն էլ տառն տալիան՝ Բայազիդ։
Կարապետն ասեց խօսքի սաղն, չորացաւ բաղչան ու բաղն.
Քանդեցին այվան օթաղն, ափսոս Երևան՝ Բայզիդ։

Կարապետ։

---

330

Վասն անդուլթ արծաթոյ։

Ինձանից ի՞նչ տեսար, կամ ի՞նչ լսեցիր,
Որ խօպառ հեռացար, պատուական արծաթ.
Ի՞նչ միջոց ճարեցիր, ի՞նչ սկսեցիր,
Կամ ո՞ւր գտար անդուլթ քեզ նման արծաթ։
Ահա՛ քսան ու եօթն տարիս լրացաւ,
Քսան տարին ամբողջ քեզ ետու գրաւ,
Երբեմն բազմաշխատ, երբեմն ծարաւ՝
Եղէ անմիտ սիրոյդ սիրաբան, արծաթ։
Եթէ դո՛ւ ես բաղդն, ասա՛, քեզ գովեմ.
Դու ո՞վ ես; վասն զի գիտեմ՝ ես ո՛վ եմ.
Թէ որքան ձեզանով ես ապահով եմ,
Ձեզ գովութեան արժէք տամ այնքան՝ արծաթ։
Չէ՝ չէ, դու բաղդն չես, Նորան մօտ բան ես,
Կարծիքով քեռորդի, մօտ ազգական ես.
Դու քեռուցդ աւելի փախստական ես,
Երկուսդ էլ մէկմէկու համանման, արծաթ։
Ահ, սէրդ որքան առատ, որքան ահագին,
Որ ունէր անթերի կորստեան որդին.
Արժէք համարելով զքեզ քո Արարչին,
Միասին ստացայք անարգանք՝ արծաթ։
Ա՜խ, ինչ ասեմ. շատ անբախտ ես, անիրաւ.
Գրաւներիդ մինչ ե՞րբ յաղթես, անիրաւ.
Անհարազատ և ապերախտ ես, անիրաւ.
Այսօր ինձ մօտ, էգուց այլոց տան արծաթ։
Տո՛ւր իմ վերոյիշեալ քսան տարին, տո՛ւր,
Կամ քո ինձ խոստացած առատ բարին, տո՛ւր.

Տա՛ր այս իմ գանգատն սաղ աշխարհին տո՛ւր,
Տե՛ս որքա՜ն կ'անուանեն անպիտան, արծաթ:
Մէկ անտիքա գոտի հազար տարեկան,
Պատկերն անճաս, գիրն անխափան.
Իսկ յայն տեղին տեսի մէկ հատ գերեզման,
Չունէր ինչ ազդարար մէկ նշան, արծաթ:
Հիմա, եղբա՛յր, ես մարդ մահուան ենթակայ,
Իսկ դու տարով լցուած ամէն կէտ ներկայ.
Քո խնամութիւնդ մինչև որ ինձ գայ,
Իմ թոռս կ'ստանայ թոռ իրան, արծաթ:
Քո մէկդ ինձ մօտ երկու չէ՛ դառաւ,
Ձեռքս ո՛ւմ որ տուաւ, կրկին յետ չ'առաւ.
Մէկն աշխատելով, վաստկելով մեռաւ,
Մէկին յանկարծ տուիր աստիճան, արծաթ:
Տո՛ անհոգի՝ անգո՛ւթ, քանի՞ մի քանի,
Արի, ինձ էլ քեզ բարեկամ անուանի.
Ե՛կ, այս աստուածոյս հետ միաբանի,
Ո՛չ դու մնայ անմարդ, ո՛չ ես-անարծաթ:
Կանչէ՛ իմ դրացիս, գոչէ՛ իմ տունս,
Քննելով ստուգէ՛ ողջ կեցութիւնս.
Թէ կարեն փկայել շռայլութիւնս,
Թո՛ղ՝ քոյ տեղակ ինձ պատասխան տան, արծաթ:
Երանի՜, թէ լսելիքդ բանայիր,
Դու էլ ինձ պատասխանի տալ ջանայիր.
Թէ Շիրինին հաւատարիմ մնայիր,
Մնէիր դու դրուատ՝ գովասան, արծաթ:

Աշըղ Շիրին:

---

331

## Շիլլերի մի քանի խօսքը:

(Գերմաներէնից)

Դուք կամենումէք յետ տանել մեզ, և
Չգել երեխայական անմիտ օրերի մէջ.
Զո՛ւր է ձեր կամակորութիւնը անցածի վերայ,
Դուք կարող չէք ապագայի ոտքերը կոտրել:

Ունայն և անօգուտ վաստակ է
Դադարեցնել ժամանակի շարժուն անիւը.
Առաւօտը լուսանումէ, Հալածումէ խաւարը,
Եւ լուսապայծառ դուրս է գալիս արևի կառքը։
Դուք թէև ունիք աչք և ականջ, բայց կոյր և խուլ,
Չկամիք լսել ձայներ, և ոչ տեսանել նշաններ.
Ես երկիւղի մէջ եմ ձեր համար, թուլամիտ տխմարներ։
Այնու ամենայնիւ հաստատ կը մնայ Աստուծոյ խորհուրդը,
Ժամանակի պտուղը կը ծնանի իւր ժամանակին,
Եւ ինչ որ հարկաւոր է ժամանակին, յառաջ կ'երթայ։

Թարգմ. Թ. Ղալղարեանց: Հիւսիսափայլ 1859 Թ. Ե. 416.

---

332

Հ ր ե շ տ ա կ։

Ընդ երկնիւք հիւսիսոյ հրեշտակ թռանէր,
Եւ մեղմիկ զնուագըս երգէր.
Եւ լուսին, և աստեղքըն և ամպըք մթին
Սուրբ երգոցն ունկնդիր լինէին։
Նա երգէր զնուագ փափկութեան սուրբ հոգւոց՝
Ընդ հարկաւ երկնայինըն ծառոց,
Եւ զմեծըն Աստուած նա առնէր փառաւոր,
Եւ գովեստ նորա չէր կեղծաւոր։
Նա բերէր ընդգրկեալ զհոգի մի մատաղ՝
Արտասուաց 'ի յերկիր բազմաւաղ.
Եւ երգոց նորա ձայնք 'ի հոգւոջն նորածին
Անլեզու՝ կենդանի մնացին։
Եւ հոգին յաշխարհիս տառապէր ընդերկար,
Լիուլի ցանկութեամբ աննկար.
Եւ 'ի յերգըս երկրիս գտանել ո՛չ կարաց
Փոխարէն երկնայինն նուագաց։

Լերմոնտովից (ռուս բանաստեղծ) թարգմանեաց Յ. Համազասպեանց Աշտարխանցի, նախկին աշակերտ Լազարեանց ինստիտուտի արևելեան լեզուների:

---

## 333

### Ե Ղ Ե Ւ Ի Ն։

Ի սահմանս Հիւսիսոյ 'ի վերայ լեռնակին
Կանգնեալ կայ եղեւին միայնակ.
Եւ ննջէ՝ տատանեալ, և 'ի ձիւն ցրտագին
Զգեցեալ՝ զերթ 'ի քօղ սպիտակ։
Եւ երազ տեսանէ՝ յանապատ 'ի յերկրի,
Ուրանօր արեգակըն ծագի,
Միայնիկ և տրտում 'ի վերայ ջերմ ժայռի
Արմաւոյ սիրուն ծառ մի ծաղկի։

Լերմոնտովից Թարգմ. Ց. Համազասպեանց։

---

## 334

### Կ Ա Լ Ա Ն Ա Ւ Ո Ր։

Ուստի՞ գաս, բնակդ եթերական.
Ասա՛ պատմեա՛ երկնայի՛ն հիւր,
Աւէ ո՞ր եբեր զքեզ զեփիւռ
Յայս իմ տխուր բընակարան։
Ո՛հ. զչքինչ նշոյլ լուսաբերի
Չէ՛ իմ տեսեալ յայսմ վայրի.
Բնակարան է տխրութեան,
Ո՛չ գոյ շաւիղ իսկ ցնծութեան։
Զի՜ սիրելի է քո գալուստ։
Արդեօք լուա՞ր դու 'ի վերուստ
Զհառաչանըս վշտակրիս
Եւ գութ սրտիդ եբեր առ իս։
Աւա՛ղ, հոգի իմ վիրաւոր
Ի քեզ եգիտ զաշխարհ համայն.
Ընդ քեզ ճախրեաց և յոյսն այն
Ի բանդ առ իս կալանաւոր։
Ասա՛, 'ի նո՞յն՝ ընկե՛ր բնութեան,
Իցեն երկինք գեղեցկութեան.

Ծաղիկք 'ի մարգս ծաղկի՞ն նոյնպէս,
Անտառք զուարթք և ջուրք յստակ.
Ի գիշերի առաջնոյն պէս
Երգէ՞ յանտառս քաղցրիկ սոխակ.
Ասա՛ ինձ, ո՞ւր է արշալոյս,
Եւ զի՞ եղև ընդ գարուն լոյս։
Տո՛ւր ինձ զհամբաւ ազատութեան.
Լուեա՞լ իցես զայն 'ի լերինս.
Տեսե՞ր զնա կամ 'ի հովտին՝
Ի զուարճացեալն կաքաւման։
Տեսե՞ր արդեօք զիմ հայրենիս,
Ուր բաղդըն միշտ փայփայէր զիս։
Ասա՛, ունի՞ այժմ անդ բնութիւն
Զանցեալ ամաց գեղեցկութիւն։
Գարունն զկամարս զայս չէ՛ տեսեալ.
Ասա զծաղիկս դու ո՛չ գտցես.
Զպատմութիւն միայն տեսցես
Չարչարանացըն նկարեալ։
Եւ ո՛չ երբէք 'ի կողմնս այս
Զիւր թեթև շունչ փչէ զեփիւռ.
Զհառաչանս լսես, իմ հիւր,
Գտցես միայն աստ զշղթայս։
Խնդի՛ր 'ի դաշտ յազատութիւն,
Խո՛ղ զխորխորատ՝ զիմ խաւար տուն.
Փութա՛ գարնան 'ի զուարճութիւն,
Զի ո՛չ տեսցես դու զայլ գարուն։
Փութա՛ դու, գե՛ղդ արարածոց,
Կոչեն զքեզ հովիտք յիւր ծոց.
Անդ հեշտութիւնք՝ շղթայք են քեզ,
Քեզ բանդ՝ երկինք և կանաչ սէզ։
Ճիւրդ ոսկեթև, ուրախ, զուարթ
Անցո՛ զկեանսդ 'ի դաշտորայս.
Գուցէ զերկուս անդ զերեխայս
Տեսցես ընդ մօրն իւրեանց վհատ։
Եթէ իցէր հնար յայտնել
Նոցա զիմ ցաւըս՝ ասելով,

Թէ ողջ է նա, ձեր աղօթով
Եթ կեայ... բայց դու չկարես խօսել։
Եւ կամ թեւովքդ ոսկիաթեւ
Գտնէ զմանկունս դու զիմ պատրեա՛,
Վերայ խոտոց հանդարտ ճախրեա՛,
Զի ցանկասցեն զքեզ ունել։
Զկնի քո վազըս առցեն.
Իսկ դու նոցա ռահ հորդելով,
Ուր իս՝ առ. քանդս զնոսա բերցես
Ծաղկէ 'ի ծաղիկ ճախր առնելով։
Իսկ խնդութեան նոցա նկատիչ՝
Ընդ նոսա մայրըն եկեսցէ.
Զշաւիղ նոցա զուարճացուսցէ
Ուրախ, թեթեւըն քո թռիչ։
Նոցա է սէրն իմ պաշտըպան,
Մխիթարիչ ցաւոտ հոգւոյս.
Որբոց խնդրոյն զիջցի, է յոյս,
Այն խստասիրտ իմ պահապան։
Այս երկաթեայ շղթայք անկցեն,
Եւ աչըք իմ կրկին տեսցեն
Զհայրենիս և զամուսինս,
Զմանկտիս, զըլուրս, զերկինս։
Բայց զի՞նչ. շղթայք յոտս շաչեն.
Կորեաւ տեսիլն.... ով դու պատրիչ.
Եթերական թռեաւ բնակիչ...
Դարձի՛ր... բայց նա գնաց արդէն։

Ժուկովսկիից (ռուս բանաստեղծ) թարգմ. Յ. Համազասպեանց:

Յարութիւն վարդապետ Ալամդարեան ծնաւ 1796 թ. սեպտեմբերի 25, Աշտարակ; հօր անունը բաշմախչի (մաշկակար) Մանուկ, մօր անունը ; պապը—հօր հայրը—բօշա Յովսէփ, Խոյայ (Հեր եւ Զարեւանդ, կամ Պարսկահայք) խանի մօտ դրօշակակիր, պարսկերէն «ալամդար», այս բառից Ալամդարեան ազգանունը: 14 տարեկան հասակի սկսեց աշակերտութիւն անել երեւելի հայկական լեզուի վարժապետ Սերովբէ Պատկանեան Գօլսեցւոյ մօտ, մականուանեալ վարժապետ: Ալամդարեանի աշակերտակիցք էին. Մկրտիչ Ղազարեան Ներոյեանց, յետոյ ուսուցչապետ հայկական լեզուի Ս.-Պետերբուրգի կայսերական համալսարանում, և այժմ դատաքննիչ Հայ տպագրութեանց; տիրացու Աստուածատուր «Նուղդաշկա» մականուանեալ, երեւելի ձայնաւոր, յետոյ ականաւոր վարդապետ, վախճանեցաւ ի սուրբն Էջմիածին; Տէր-Մելքիսէթ, առաջ տիրացու Մարտիրոս Խազբաշեան; Ալամդարեանի եղբայր, տիրացու, յետոյ տէր-Խաչատուր, և այլք:

Յարութիւն վարդապետին շատ սիրեց Եփրեմ կաթուղիկոսը, իւր Աշտարակ առաջնորդութեան ժամանակ, իսկ Սերովբէ վարժապետը հայրական խնամօք աշխատումէր զարգացնել Ալամդարեանի հանճարը: 1813 թ. Ալամդարեանը պսակուեցաւ Յարութիւն Արղանդիւլի (Արղանդուլեան) դստեր Մարգարիտի հետ, որոյ հարսնութեանը ընծայեց իւր «Յերկու ձեռին երկու մոմ» երգը: Մէկ ամսից յետոյ գնաց Մոսկվա; 1814 թ. 19 տարեկան հասակում, աղա Յովակիմ Եղիազարեանցի միջնորդութեամբ, ձեռնադրուեցաւ քահանայ, Յովհաննէս արքեպիսկոպոս Գռայլակերեան (տառուժէին եւ Գռանակերեան) առաջնորդից հայոց ռուսաստանի; 1822 թ. այրիացաւ Մոսկվա; 1824 թ. խնդրեց Ներսէս եպիսկոպոսից, Վրաստանու առաջնորդից (յետոյ Ներսէս Ե, կաթուղիկոս ամենայն Հայոց) գալ Տփխիս, և եկաւ: Այս ժամանակից սկսվումէ Ալամդարեանի լայնաքայլ և արդիւնաւոր գործունէութիւնը Ներսիսեան Ներսիսեան ազգային և հոգևոր դպրոցի մէջ:

Երբ որ արհին Ներսէս գնաց ռուսաց զօրաց հետ Պարսից դէմ, Ալամդարեանը, արդէն աւագ երէց, մնաց կառավարիչ բոլոր Աստրախանու վիճակի։ 1828 թ. վարդապետական կարգ ստացաւ Ներսէս արքեպիսկոպոսից, որ այն ժամանակը կոչվումէր «ծայրագոյն կառավարիչ բովանդակ հոգևոր իշխանութեան հայոց»։ Այս անցերի և մանաւանդ Ներսէսին վերաբերեալ այն ժամանակուայ պատմութիւնը առանձին և շատ հատոր գրքերի նիւթ է և երանի ժամանակակիցքը ծուլութիւն չանեն գրել իւրեանց տեսածը և լսածը այս մասին։ Երբ որ Ներսէսը, 1828 թ., գնաց Բեսսարաբիա, Ալամդարեանը շատ վիշտեր կրեց, մինչև բանդարկեալ էր Ղաղբառու և հիւանդ մերձ ի մահ։ Այս ցաւալի դրութեան մէջ, միմիայն մէկ երիտասարդ, Ղաղբառու եւ Սանահնու սարկաւագ, գտնուեցաւ, որ գաղտնի գալիս էր և սպասաւորում մերձ ի մահ Ալամդարեանին։ Կարելի է ասել, որ եթէ այս երիտասարդ սարկաւագը չը լինէր, Յարութիւն վարդապետը պիտոյ է մեռանէր։ Այս սարկաւագը այժմ Սարգիս արքեպիսկոպոս Ջալալեանցն է, Էջմիածնայ տեղապահ կաթուղիկոսի և առաջին անդամ Սինոդի։ . . . . . . . .
Մենք ճշմարտութիւնը ծածկելու իրաւունք չունինք։ . . . . . .

1831 թ. Ալամդարեանը կորզեցաւ բանտից, Ներսէսի թախանձանօք, և գնաց, օգոստոս ամսին, Քիշինեվ քաղաք Բեսսարաբիոյ։ 1833 թ. գնաց Նոր-Նախիջևան, սուրբ Խաչ վանից վանահայր; 1834 թ. մայիսի 14, աւազակաց մատնուեցաւ եւ նոյն ամսին վախճանեցաւ և թաղուեցաւ սուրբ Խաչ վանից եկեղեցւոյ աջակողմեան դրան աջակողմը (ձախ կողմը, նորա հանդէպ, Մ. Նալբանդեանցն է թաղած)։ Ալամդարեանը երևելի հանճարոյ տէր էր, լեզուագէտ, եռանդուն ազգասէր եւ վեհանձն, բայց, իբրև հողեղէն մարդ, ունէր իւր պակասութիւնն էլ։ Շատ մեծ և զանազան վշտեր պատճառեց իւր բարերար եւ երկրորդ, ո՛չ թէ հայր, այլ կարելի է ասել, արարիչ Ներսէսին, աւելի քան «եօթանասնեկին եօթն անգամ»։ Այս էր պատճառը, որ 1845 թ. երբ Ներսէսը, մեծ Ներսէսը, նորընտիր կաթուղիկոս, անցանելով Պետերբուրգից Նոր-Նախիջևան, եկաւ այցելութիւն Ալամդարեանի գերեզմանին, սաստիկ արտասուեց եւ հեկեկալով ասաց. «Յարութիւն վարդապետ. թէպէտ դու ինձ շատ վշտացուցիր, բայց Աստուած քեզը անէ դատապարտող», բայց, ասումեն, թէ ետոյ աւելացրուց. «եթէ Ա-

տուած ինձ գրիչ բաշխած լինէր, ես քեզ իմ ձեռօք կը ձեռնադրէի կաթուղիկոս, որ ետոյ իմ տեղս դու նստէիր»:

Մեծն Ներսէսը, մոռանումէր Նալբանդեանի պակասութիւնքը եւ միմիայն միտն էր պահում նորա ուժեղ եւ եռանդուն ազգասիրութիւնը, ահագին քանքարը եւ անյագ գործունէութիւնը:

Մենք խոնարհաբար կը խնդրէինք ամենայն ազգասէր մեր հայրենակիցներից, մանաւանդ նորա աշակերտներից, ծանօթներից և ժամանակակիցներից հաղորդել մեզ,—եթէ բարեհաճին,—իւրեանց լսածը, տեսածը, գիտցածը եւ ամենայն ձեռագիր եւ տպած տեղեկութիւնք, թէ Ներսէսի եւ թէ Նալբանդեանի վերայ, որովհետեւ մտադիր ենք նոցա ընդարձակ եւ կանոնաւոր կենսագրութիւնը հրատարակելու: Տեսնենք կը լինի լսող եւ կատարող մեր խնդրուածքը թէ ոչ:

---

Սայաթ-Նօվա—վերջին ժամանակների ժողովրդական, ռամկական երգիչների ականաւորներից մինն է: Սորա հայրը Հալէպցի էր, եկած Տիֆլիս, մօտ 160 կամ 165 տարի մեզանից առաջ: Թուրքերէն ասած երգի մէջ ինքն ասել է.

Վաթանըմ Թիֆլիզ դուր, սամթի Գուրջիստան,
Նամ Հավլաբարըլու, աթամ Հալապլու,
(Հայրենիքս Տիֆլիզն է, կողմն Վրաստանի:
Մէրս Հավլաբարցի (Տիֆլիզու թաղ), հայրս Հալէպցի):

Մանկութեան հասակում եղել է ջուլհակի աշակերտ, ի մանկութենէ սկսում է երգեր յօրինել, շարունակելով կտաւ գործելու արհեստն: Իւր երգերով և բանաստեղծական քանքարով երեւելի է լինում բոլոր ժողովրդի առաջեւ եւ Վրաց Իրէկլէ թագաւորի արքունեաց սիրելի երգիչն և նորա խրախճանեաց զարդն: Մօտ 1759 թ. կրօնաւորվում է, մօտ 58 տարեկան հասակի; սպանուեցաւ, մօտ 80 տարեկան, 1795 թ., Տփխիսու Հաղպատու առաջնորդարանի եկեղեցում, Պարսից ձեռքից, Աղա-ՄէՀմէդ-խանի արշաւանաց ժամանակը: Նորա քանի մի Հայոց երգերի տպագրութիւնը, պատուական և հետաքրքրական կենսագրական, քերական-

կան և այլ ծանօթութեամբք արել է Գ. Հախվէրդեանը: Տես մեր յառաջաբանութիւնը:

---

## Աշքար Ադամ:

Աշքար Ադամի հայրը ծնաւ Պարսկաստան; երբ որ Ռուսք տիրապետեցին Հայաստանի մէկ մասը, գաղթեցաւ Երևան և ամուսնացաւ Փարաքար գիւղի հայ քահանայի աղջկայ Մարիամի հետ; այս ամուսնութիւնից ծնաւ, 1816 թ. Ադամը: Մանկութեան հասակում, Ադամը ուսանում էր կարդալ և գրել զանազան անձանց մօտ, ետոյ սկսեց կօշկակարի արհեստ ուսանել, վերջը ինքն իւր սեփական կօշկակարի կրպակ (դուքան) բաց արեց և ընտրուեցաւ ուստաբաշի, այսինքն Երևանայ կօշկակարների արհեստաւորաց գլուխ: Ազատ ժամերը Ադամը պարապումէր բանաստեղծութեամբ հայերէն, պարսկերէն և թաթարի լեզուաւ: Ժողովուրդը շատ էր պատվում Ադամի բանաստեղծական քանքարը; Ադամին հրաւիրումէին, համարեա թէ, ամենայն հարսանիքները, և նա յօժարութեամբ գնումէր ինչպէս ունևորի, այնպէս էլ չքաւորի մօտ; 1843 թ. 28 տարեկան հասակի, ամուսնացաւ Երևանայ բնակիչ Շահնազարեանի դստեր հետ. այս ամուսնութիւնից ծնաւ մի աղջիկ: Վախճանեցաւ 1846 թ.: Այժմս նմանապէս վախճանած են նորա աղջիկը, երեք եղբայրքը և ծերունի մայրը, որ 1857 թ. դեռ ողջ էր: Տես մեր հատուածը. Русскій Инвалидъ, 1857 г. № 28; այլ տեղեկութիւն մենք չկարողացանք գտանել Աշքար-Ադամի մասին:

---

Յօհաննէս Կարապետեան, մականուանեալ Շիրին, ծն. 1827 թ. Կողբ, ուր որ աշխարհահռչակ աղահանքներ կան, Երևանայ գաւառումը: Նորա հայր մահտեսի Կարապետը, Ուլուր գիւղիցն էր, Էջմիածնից մօտ 30 վերստ (մղոն), Երասխի հարաւային կողմը; նոյն գիւղիցն էր և նորա մայր Շահխաթունը: Երկու տարեկան հասակում Շիրինը կուրացաւ, ծաղկացաւից; վեց տարեկան էր,

որ վախճանեցաւ նորա մայրն։ Այսպէս՝ որբութեան և մանաւանդ անմայրութեան դառն վիճակը նա պիտոյ է զգար մանկական օրերից; բայց, բարեբաղդաբար, նորա հայր Կարապետը ուղարկեց նորան Ալէկսանդրապօլ, աշակերտել երևելի աշըղ Նաբայի մօտ, որովհետև Յովհաննէսը շատ պատուական և քաղցր ձայն ունէր։ Շիրինը երեք տարի մնաց Նաբայի մօտ, յետոյ գնաց Էրզըում (Կարին), կատարելագործուելու աշըղ Ալի էֆէնդու մօտ; վեց ամսից յետոյ, երկուսն էլ, գնացին Տիֆլիս, ուր վախճանեցաւ Ալի էֆէնդին։ Մէկ տարուց յետոյ, 1839 թ., Շիրինը վերադարձաւ Կողբ, իւր հօր մօտ, որի գործերը վատ դրութեան մէջ էին; յետոյ երկուքն էլ գնացին Վաղարշապատ։ Շիրինը՝ իւր և այլոց բանաստեղծութիւնքը երգումէր թաթարի լեզուաւ, բայց այս տեղ, Գ. Խ. Ախվերդեանի, Գրիգոր Ներսոյեանի և այլ ազգակիցների խորհրդով սկսեց իւր բանաստեղծութիւնքը հայերէն լեզուաւ անել։ (Տես վերոյիշեալ մեր հատուածը)։

---

Յովհաննէս Սիրանի, ծնաւ 1822 թ. Վաղարշապատ գիւղաքաղաքում; հօր անունը Գալուստ Շարամանեան, մօր անունը Մանուշակ։ Կարդալ գրել սկսեց ուսանիլ պ. Մալինցօվից, յետոյ ականաւոր հայագէտ Մեսրոպ Թաղիաթեանցից, 'որ գիտէր թաթարերէն, պարսկերէն և անգլիարէն, և վերջը պատուական, խոհեմ և աշխատասէր Յովհաննէս Շախաթունեան արքեպիսկոպոսի մօտ։

Սիրանին լաւ ոսկերիչ էր, և այդ արհեստը ուսաւ Կարապետ Իսրայէլեանի և Ստեփաննոս Մելիք Մելիքմեանցի մօտ։ 1835 թ. առանց վարժապետ, ուսաւ սազ ածելը; 1842 թ. չոնգուր ածելը և բանաստեղծել հայերէն և թուրքերէն; գիտէր խօսել տաճկերէն էլ, բայց ոչ կարդալ և գրել։ 1840 թ. մականուանեցաւ «Շահրի», իսկ 1842 թ. «Սիրանի»։ (Տես, նմանապէս, մեր վերոյիշեալ հատուածը)։

---

Պետրոս Տէր Յովսէփեան Մաղաթեանց, մականուանեալ Սէյեադ (պարսկերէն որսորդ, որսական), աւագ քահանայի որդի, Ղարաբաղցի (Արցախ), ռոտմիստր (կապիտէն, կապիտան) ռուսաց հեծելազօրաց, ծնաւ 1810 թ., 1822—1827 թ. աշակերտեցաւ Տփխիսու Ներսիսեան ազգային և հոգևոր դպրոցի մէջ, Յարութիւն վ. Ալամդարեանի մօտ։ Բաց ի հայերէնից գիտէր վրացերէն, պարսկերէն և ատրպատական բարբառ։ Վերջին տարիքը աննախանձելի դրութեան մէջ էր։

---

# ԱԶԳԱՅԻՆ ԿԱՄ ՀԱՅԱԽՕՍ ԱՌԱԾՔ։

---

Ազգաց և ժողովրդոց մտաց կարողութիւնը և բարուց բնաւորութիւնը պարզաբանելու համար հարցասէր գիտնականք, նոցա գրաւոր յիշատակներից յետոյ, միշտ իրանց հետաքրքրութեան աղբիւր ճանաչել են նոյն ազգաց և ժողովրդոց բերանացի աւանդութիւնները, որոնց կարգումը համարուած են և առածները, երգերը, առակները և ուրիշ սրանց նմանները։ Անգիր և անուսում մասը ժողովրդեան իւր դատողութեանց վճռողական հիմն և արարմանց իբրև իրաւացի կանոն ամէն անգամ կրկնում է իւր պապերից և իւր հայրենակիցներից իրան հասած վճռողական առածները այնպիսի մէկ վստահութեամբ, որպէս թէ նրանց ամէն մինը մէկ մէկ անհերքելի ճշմարտութիւններ լինէին։

Այս առածները տպվում են երեք նպատակաւ. 1) ընթերցասիրացը մտաւոր զբօսանք պատճառելու համար; 2) առաւել հարցախնդիր ուսումնականաց ազգիս այսօրինակ կենդանի աղբիւրներից նիւթ հաղորդելով, ազգային բարուց և հանճարոյ վերայ բանադատութիւններ յառաջ բերել տալ և 3) առիթ տալ՝ այլ ուսումնասիրաց այս փոքր հաւաքածուն աւելցնել այն հայախօս առածներով, որոնց գործ է ածում մեր ցրուեալ ազգը զանազան տեղ և որ ժամանակով կարելի լինի ի լոյս հանել կանոնաւոր և առանձին տպագրութիւն հայախօս ասացուածների, պատշաճաւոր գիտնական մեկնութեամբ, ինչպէս որ արդէն ունին այդպիսի տպագրութիւնք գերմանացիք և այլք։ Մեր առաջարկած հաւաքածուն առած է Գ. Միքայէլ Բոշարեանցի հաւաքած առածներից, որ տպած է «Կռունկ» ամսագրի, 1860 թ. Գ. և Ժ. համարներում և Հ. Աբէլ վարդապետ (այժմ եպիսկոպոս, սրբոյ Էջմիածնայ միաբան) Մխի-

## II

Թարխանցի հաւաքածից, որ տպած է «Բազմավէպի» 1850 և 1851 թուակ. համարներումը; մէկ հարիւրի չափ էլ աւելցրել ենք մեր յիշողութիւնից և Պետրբուրգի աւագ քահանայ Տէր Գրիգոր Տէր-Գրիգորեանցից առածներից։

---

Ագռաւին ասին ղշերի [1]) մէջին որն ա սիրուն՝ ասեց. իմ ճուտը [2])։

Ագռաւի ձէնը [3]), թէ որ Աստուած լսէր, Վարդևորին (Վարդավառին) ձին [4]) կը գար։

Ագռաւի տեսած սերմը կանանչիլ չի։

Ալընի [5]) գարտը փլած էր։

Ահը դժար ա քանց մահը։

Աղէն որ ձէթ տայ, գոգդ դէմ արա։

Աղբէրն ասեց քիր չունիմ, քիրն ասեց աղբէր ունիմ։

Աղբէրն աղբօրն ասաւ՝ դեռ հեռաց տեսնինք, էլի աղբէր ըլինք։

Աղուէսը մորագումը [6]) ճուտ ա հանել, մեր թազու [7]) հզութիւնիցն ա [8])։

Աղուէսի դունչը խաղողին չի հասաւ, ասեց խակ ա։

Աղքատ ու հպարտ։

Աղքատը ունէր հաց ու պանիր, գիշէրը քունը չի տանիր։

Ամառ ձմեռը մի խելքն ի՞նչ անի։

Ամառուայ փուշը ձմեռուայ նուշը։

Ամէն բանը իրա տեղն ունի։

Ամէն բանի սիպտակցնիլը լաւ չի։

Ամէն թուրքանող [9]) աղայ չի դառնալ։

Ամէն Ղազար ղազար չի ըլնիլ. ամէն տակուի գազար չի ըլնիլ։

Ամէն կլօրը խնձոր չէ։

Ամէն ջուր գերան չի բերիլ։

Ամէն տեղ լիս ընկնիլը լաւ չի։

Ամէն փորձանքին մին մին խրատ։

Ամէն օր կուժը ջուր չի բերիլ։

---

1) Թռչուն։ 2) Ձագ։ 3) Ձայն։ 4) Ձիւն։ 5) Ալի, յատուկ անուն։ 6) Խոռոնոց։ 7) Որսի շուն, гончая, борзая собака. 8) Հեզ-զութիւն։ 9) Մահմետական դառնող։

## III

Ամէն օր տատը գաթայ չի ուտիլ:
Ամպ օրը գէլը կուրախանայ:
Ամպի գոռալն ու փէօրայ անձրև չի գալ:
Այս օրվան գործդ վաղվան մի թողուր:
Անբանը հաց ուտելիս ատամը ա, բանելիս հիւանդ:
Անփը տես, կտաւն առ, մէրը տես, աղջիկն առ:
Անգն ընկայ, մանգն ընկայ, ագռաւների ճանգն ընկայ:
Անէծքն անիծողին կըդառնայ:
Անէծքն երկու բերնանի թուր ա, համ դէսն ա կտրում, համ դէնը:
Ականջն ընդուր չի մեծանում, որ շատ բան ա լսում:
Անհունկա՝ մարդի լեզուն երկար կըլնի:
Անձրև օրը հաւերին ջուր տուող շատ կըլնի:
Անղամի ղամը Աստուած ա քաշել:
Անճարը կերել ա բանջարը:
Անունը կայ, ամանումը չկայ:
Անունը տուր, տեղը քցի:
Անուստայ փեշակը հարամ ա:
Անջուր մի բոբիկանալ:
Անցկացած բանին մի՛ ափսոսալ, անհաւատ բանին մի՛ հաւատալ:
Անցկացած օրին օր չի հասնիլ:
Աշխարհքս դմակ, միջի մարդը դանակ:
Աչքն արդար լաւ ա, քանց միտքը մեղաւոր:
Ապրիլ կայ երկաթ ա, ապրիլ կայ երծաթ ա:
Առաջի ասողը չի գիտում, թէ ետինը ինչ պտի ասի:
Առաջ մտածէ, ետոյ սկսէ:
Առանց իշէ գլուխ հարսնիք կըլլի՞:
Առաւօտուայ շարը լաւ ա քանց իրիկուայ խէրը:
Ասել են ա՛ռ ու տո՛ւր, ոչ թէ ա՛ռ ու կո՛ւլ:
Աստուած կանչողը մաղթուն չի մնալ:
Աստուած հալալին կըտայ:
Աստուած սարը կը տեսնի, ձիւնը կը դնի:
Աստուած փլաւն ու՛մ ա տուել, իշտահն ու՛մ:
Աստուծու (Աստուծոյ) պահած գառը գէլը չի ուտիլ:
Ատամը կհանի անդամը:
Աստուած արու և էգ արար, վարդապետներուն ո՞վ արար:
Ատամ քչփորելով փոր չի կշտանալ:

*

Արած ցխին մի փարչ ջուրն էլ հերիք ա։
Արինն արնով չեն լուանալ։
Արջը գիլի փայ գառաւ, նրա բանը խարաբ էղաւ։
Արջն իր ահէն կը գոռայ։
Արջը խաղով էլաւ՝ տանձը մէջն ընկաւ։
Արջը որ տանձին չի հասնում, ասում ա, կէնայ իմ հօր խէրին։
Բանը շինելով, էշը քշելով։
Բանն արա՛, յետոյ պարծեցիր,
Բանն ինչ անենք. տղրդ ա, բամբակը կարդղաս ա, գուլփալ պէտ որ մանենք, մաստակ պէտ, որ ծամենք. կտերը տոտիկ անենք, տղերանցը մօտիկ անենք, ուտենք, նստինք, մրթնի նստանք։
Բանն ո՛վ անի, ես ու դու՛ն, հացն ո՛վ ուտի, ես ու դուն։
Բարեկամի հետ կեր ու խում արա՛, առուտուր մի՛ անիլ։
Բարկացող մարդը շուտ կը պառաւի։
Բզի գլխին բունցկով տալ չի ըլնիլ (չի տրվիլ)։
Բլբուլը իր դարտը կը լայ, ագռաւը ղա՛ռ ղա՛ռ կանչի։
Բողա՛զ, ինչ կը տեսնես, կը դողաս։
Բողկի նօսրը կաժի։
Բողկը որքան աժհրակ ըլի, էնքան գլուխը մեծ կը բռնի։
Բրուտը կժի ունկը որ դիհը ուզի, էն դիհը կը շինի։
Բըրդոտին կուլա չի ըլնիլ։
Բօշէն փաշայ չի դառնալ։
Գառը գարնան, ձինը ձմռան։
Գարնան գառն է գովելի, աշնան հաւը։
Գայլը կը սիրէ տուման (туманъ) հաւայ (մռայլ եղանակ)։
Գտակս թողոտ տեսար, հէնց իմացար ջաղացպան եմ։
Գեղ կանչի, գերան կը կոտրի։
Գեղ կը նստես, գաւառ կը հաչես։
Գեղի գլուխը որ հասնես, երեխեցը խաբար ա։
Գիժը գնաց հարսնետուն (հարսանիք), ասեց էս լաւ ա քանց մեր տուն։
Գիժը դատի, խելօքն ուտի։
Գիժը իւրեան ձգել է հօրը, քառասուն խելօք չեն կարողացել հանել։
Գժի աղանը Աստուած կազայ։
Գժի հացը խելօքի փորը։

Գիւղի գլխին աւետարան կարդացին, ասեց՝ Թէզ արա, ոչխարը գնաց։

Գիւղի շլինքը ընդուր ա հաստ, որ իր բանն իր ձեռքին ա բռնում։

Գիւղացը տամազլղ չի ըլիլ։

Գինի խմողը կը հարբի, կախ գնացողը կը մեռնի։

Գլխիս տալու վէքիլն ես, աչքս դուս՝ գալու վէքիլը չեմ։

Գող՝ սրտումը դող։

Գողը մի մեղքը տարաւ, կորցնողը հարիւրի։

Գողը գողէն գողացաւ, Աստուած վերեվէն զարմացաւ։

Գողն ինչ կուզի, մութը գիշեր։

Գոմշատիրոնջը կաշեգինը կը տան։

Գոմշատիրոջը կաշի փոխ կը տան։

Դանակը կովի կուշտը կը տանին, ոչ Թէ կովը դանակին։

Դարմանի տակի ջուր ես։

Դարտակ կարասի ձայնը բարձր դուրս գալքայ։

Դարբնին դանակ չի ըլնիլ, ջուհլակին պատանք։

Դեռ չծնած երեխին շոր մի՛ կարիլ։

Դու ինձ պահի բողչամիջին, ես քեզ պահեմ մարդամիջին։

Դու տու, ջուրն իր ճամբէն կը գտնի։

Դուռդ փակ պահիր, հարեւանդ գող մի՛ բռնիլ։

Դրացիի պագածը չեն առնում, օտարի . . . . . . ք կ՚առնեն։

Դրուստ խօսողի գտակը ծակ կըլլի։

Դրուստ խօսողին մի ձի, որ ասի ու փախչի։

Եադը գնալով՝ գալով բարեկամացաւ, բարեկամը չգնալով՝ չգալով եադացաւ։

Եղբօր որդի, խեր որդի; քրոջը որդի, շան որդի։

Եղն էլաւ, մոխիրը տարաւ։

Եղ ու մեղրը շան տկումը։

Ես փաշայ, դու բօշայ. բարեկամացանք, բարեպարացանք։

Երազումը սոված հաց կը տեսնի, ծարաւը ջուր։

Երկաթը տաք տաք կը ծեծեն։

Երկար խօսելով փլաւ չի եփուիր, բրինձ և իւղ հարկաւոր է։

Երկար բօյով մարդը ախմախ կը լինի, կարճ բօյովը չախմախ։

Երկու մերկը բաղանիքի մէջ կը վայելին։

Երեխին բան դիր, հետը գնա։

Երեխին ասին. ինչէ՞ս լալիս. ասեց. խօսքս անց ա կենում, ընդուր։

# VI

Երեխէն մհանայ, մէրը կշտանայ։

Երկնքի պարտքը գետնին չի մնալ, գետնինը երկնքին։

Երկու գժին մի կերպը։

Երկու ձեռն եմ արել մի գլուխ։

Երուսաղէմ գնացինք, քօռ վարդապետի ձեռը պաչեցինք։

Երուսաղէմ շուն չի կօյ։

Եօրղանիդ գեօրայ ոտդ մեկնիր։

Զանգակի ձէնը հեռուանց լաւ ա գալի։

Զարարի կիտիցը յետ դառնալը խէր ա (օգուտ է)։

Զուռնաչու կնկանը հարցրին, թէ կենդապար գիտես. ասեց, ես որտեղ եմ պառաւել, որ կենդապար էլ չգիտենամ։

Էդ քեզ խրատ, էլ չցանես կուաւհատ։

Էժան միսն համ չի ունենալ։

Էժան մսի խաշուն շունն ա կերել։

Էժան մսին խաշու չի ունենալ։

Էլն ինձ խօջայ ա առում, համա իմ հալն ինձ այան ա։

Էծը սատանայ կըլի։

Էծը իր ոտիցը կախ կտան, ոչխարն իր։

Էծն իծի համար լաւ ա, քանց մի սուրբ ոչխարը։

Էն կուշտին ինչ անեմ, որ քառասուն թիքա չի դնի։

Էն հանաքին ինչ անեմ, որ կէսը ղորթ չըլի։

Էն ջրիցը վախեցիր, որ ոչ թշշում ա, ոչ խշշում։

Էն վաղ էր, որ էշը հաղ էր։

Էշը մատաղ չի ըլնիլ, իշագինը հօ կըլնի։

Էշը դատի, ձին ուտի։

Էշը ընկաւ գարու հորը, ասեց էս լաւ ա քանց իմ ախոռը։

Էշն ինչ գիտի, նուշն ինչ ա։

Էշն իշի մօտ որ կապես, եա առոցը կառնի, եա փառոցը։

Էշը կերած, պոչումը խառնեցին։

Էշ կերել ա, էշ մեծացել։

Էշը որ տեղ մի հետ ցեխն ընկաւ, էլ դէնը չի անց կենալ։

Ընկերդ գեղիցը վեր կալ, հացդ տաշտիցը։

Ընչանք երեխէն լաց չըլնի, մէրը ծիծ չի տալ։

Ընչանք հասար բարակի, բարակի հոգին դուս կը գայ։

Ընչանք հերթը մեզ հասաւ, լիսը վրայ էկաւ։

Ընչանք չի գայ յետինը, չի յիշուիլ առաջինը։

Ընչանք դու էդ կը հասկնաս, ուղտի պոչը գետնին կը հասնի։
Թագաւորն էլ թագի լայեղ պէտի։
Թագաւորութիւնը իրանից կը քանդուի։
Թանը կերար, արդարացա՞ր։
Թէ կուզ էրած, թէ կուզ մրկած։
Թունդ քացախն իր ամանը կը ճաքացնի։
Թոնդիրը տաք տաք հացը կողը կպցրու։
Թուրքն անիծած՝ խօսքն օրհնած։
Թուրքերն անիրաւ, խօսքերն իրաւ։
Թուրքին ընչանք չի ծեծես, խոնարհ չի դառնալ։
Ձեռի կոտրածը կը սաղանայ, լեզուինը չի սաղանալ։
Ժամի դուռը բաց, շանը նամուս։
Ժամիցը ես եմ գալի, ողորմի Աստուածը դու ես առնում։
Իմաստունի հետ քար կրի՛, յիմարի հետ փլաւ մի՛ ուտիլ։
Իմացել են Ալին մեռել ա, չեն իմանում թէ ո՞ր Ալին ա։
Իմ հալին, նրա տունիցը տալիս։
Իմ ու քուն տուն ա քանդում։
Իմ ու քու քէֆը իրար չի ընկնում։
Ինձ տես, քեզ լա՛ց, որտեղ որ ես, պայիմ կա՛ց։
Ինչ էծն արաւ թիփիկին, թիփիկն արաւ ծիծին։
Ինչը ո՛չ բերնին համ կը տայ, ո՛չ հաւատին ցաւ։
Ինչ կասես, էն կը լսես։
Ինչ կը բրթես, էն կը խրթես։
Ինչ կը ցանես, էն կը հնձես։
Ինչ չէր տեսել պառտէն կախ, հիմի տեսաւ ճակտէն կախ։
Ինչ տեղ գինի, ընտեղ քնի։
Ինչ տեղ հաց, ընտեղ կա՛ց։
Ինչ տեղ պանիր, ընտեղ բանիր։
Ինչ տեղ միրգ կայ, դիրք չկայ․ ինչ տեղ դիրք կայ, միրգ չկայ։
Ինչ տեղ քթոց, ընտեղ կոթոց։
Ինքն ըստեղ չի, իրայ փայ Աստուածն ըստեղ ա։
Իշի վրէն նստիլը մի ամօթ, վէր գալը երկու։
Իշէցը վէր ա ընկել, չօշ չօշը չի թողում։
Իշի քացուցը բեդամաղ մի՛ ըլնիլ։
Իշտահն ատամի տակին կըլնի։
Իրա համար քնում ա, ուրիշի համար երազ տեսնում։

Իրա հացն ուտում ա, դարիչը վրէն խօսում։
Իրն էրի միսը կերաւ, ոսկորը դէն չքցեց.
Իր ոտով էկած ղօնաղը պատիւ չունի։
Լա՛ լացող, խնդա՛ խնդացող։
Լալուն մեր էշն ա, որ ագի (պոչ) չունի։
Լաւ եզը լծան տակին բէլլու կըլլի, լաւ կնիկը օջաղոցնը.
Լաւ լեղնորդը վերջը ջէք փայն ա.
Լաւ հաւը իրա ճուտերի վրայ ման կըգայ.
Լաւ տանձը արջն ա ուտում։
Լէնին ճար կայ, նեղին ճար չկայ։
Խալխի աչքը քեզ համար լիս չի տալ։
Խաղ շատ գիտեմ, ամա ձէն չունիմ։
Խելօքին մին, յիմարին քանի կուզես։
Խելօքը մինչև մտածել է, գիժը իւր օրը տեսաւ։
Խաչը տէրը զօրաւոր կանի։
Խեղճ գիլի անունն ա կոտրած, աղուէսը աշխարհք քանդեց։
Խեւին խրատն ինչ անէ, սևին սապօնը։
Խեւ աղջիկը խեւ հարս կըլլի, խեւ հարսը խեւ տան տիկին։
Խլնքոտին ծուխն էր մհանայ,
Խոզն ասեց. ինչ ճուտերս աւելցան, պարզ ջուր չկարացի խմել
Խոփդ սուր ա, հանդը բաժանովի ա։
Խփած աչքին բաֆայ չկայ։
Խօսքը մենծին, ջուրը պստիկին։
Խօսքը վաղ վեր կենալը չի, Աստըծու յաջողալն ա։
Խօսքը ցան (сѣяніе, ensemencement) փռելը չի, ցան թափ անիլն ա։
Ծաղիկը թփի տակին վէր կընկնի
Ծառը որ վէր ընկնի, կացնաւորը կը շատանայ։
Ծառը քանի բար շատ ունենայ, գլուխը կախ կը քցի։
Ծառն ասեց կացնին, ընդուր ես ինձ կարենում կտրել, որ կոթդ ինձանից ա։
Ծերանաս, ծերի ղադրն իմանաս։
Ծիտն ինչ ա, թէ իրա եղն ինչ ըլի։
Կանց հա ասեմ, մէջը մնամ, հաղիր չէ ասեմ ու պրծնեմ։
Կանց պուտը կարմիր չկայ, որ ճղես սիրտը սև ա։
Կաշառքը մութը տեղը լիս կը տայ։
Կատուընները դուս էլան, մկները հախս էլան։

Կատուի դունչը մսին չէ հասաւ, ասեց, էս օր ուրբաթ ա։
Կատուին ասին կճիրդ դեղ ա, տարաւ խորը թաղեց։
Կատուին ասին հէրդ ա լաւ թէ մէ՞րդ, ասեց. նոյն, նոյն (ոչ նա, ոչ նա)։
Կատուին խաղ ա, մկանը մահ ա։
Կատուի մէզը (փասխը) ընչանք մարագն (СѢННИКЪ, fenil) ա։
Կարմիր ձուն զատկին կը սազի (կամ զատիկ օրվայ է)։
Կէտուրդ մեռաւ, տեղդ լեհացա՞ւ։
Կիրակուայ դանդանը երկուշաբթի էլ պէտքը կը գայ։
Կծողի ետևը կանչի, քացի տուողի առջևը։
Կկուն բերաւ, ճճուն կերաւ։
Կճուճը թօլ էլաւ, խուփը գտաւ։
Կնիկ արմատի մազն երկէն կըլի, խելքը կարճ։
Կնիկ արմատին լողն էլ կնիկ ա։
Կոզնու գլուխը խալիչին կենալ չի։
Կոշտը նստել ա, քարի գլուխը լալի։
Կովը հորթին, հորթը կովին, գլուխը ցաւի (ցաւեց) նախրարածին։
Կուժ քեզ ասեմ, կուլայ դու լսի։
Կուժը արևի զօրութիւնը չի իմանալ։
Կուժը ջրի ճամփին կը կոտրուի։
Կուշտը սովածին մանր կը բրթի։
Կռուի վերջը փոշիմանութիւն (փոշմանութիւն) ա։
Կտրած հացը չի սաղանալ։
Կտրած մատի դեղ ես հա՞։
Հազար թուման պարտքս ըլի, մարդամիջի մարդս ըլի։
Հալալ մալը գէլը չի տանիլ։
Հալալը մաղ էլ ըլի, չի կորչիլ, հարամը գերան էլ դառնայ, կկորչի։
Համըշայ տարը գաթայ չի ուտիլ։
Հայի յետի խելքն իմ ըլի։
Հայի խելքը գլխումն ա, Վրացու խելքը աչքումը։
Հանաքը չանաք կը դառնայ։
Հաստ ու բարակն մի գին ա, վա՜յ գալ բարակ մանողին։
Հարևանի ոչխարը գէլը տարաւ, հարևանին իրին մուղայիթ կացաւ։
Հարևանիս կսիրեմ, որ ձուկս աղ անի։
Հարևանիդ մի կովն ուզի, որ Աստուած քեզ երկուսը տայ։

Հարիւր հոգի քամբախ կայ, հարիւր ու մէկ ծակ կայ։

Հարիւր մարդէն որ մի մի մազ հանեն, մի միրուք կդառնայ։

Հարսանիքը աղքատ ըլի, մահերնիքը պարպինա։

Հարսանիք գնամ ինչ տուն տանեմ, մաստակ ծամեմ ինչ կուլ տանեմ։

Հարուստ մարդը օձ կերաւ՝ ասին դեղ ա, խեղճ մարդը կերաւ՝ ասին քաղցած ա։

Հացը համով ըլի, թէ չէ եփողը Գ. Հոհա ա, թէ թոնիրը՝ հողաթերս չէ։

Հաց ու պանիր՝ կեր ու բանիր։

Հացը հացարարին տուր, մէկն էլ աւելի։

Հա՛ց, հա՛ց ասելով փոր չի կշտանալ։

Հացի կտրածը թուրը չի կտրել։

Հաւի կռկռալիս իմացիր, որ փորացաւ ունի։

Հաւը տանը կենայ, կուտն ուտի։

Հաւը ջուր ա խմում, Աստծուն ա մտիկ տալիս։

Հէնց արա, որ կարմինջի տակի ջուրը չփախցնես։

Հէնց արա՛, որ ոչ շամփուրն էրվի, ոչ խորովածը։

Հէնց բան ես ասում, որ էշն ախոռէն գնում ա։

Հէնց գիտեմ մարդ ես դառել, մէկէլ անգամ չարթ ես դառել։

Հէնց դարտ տամ, որ դարտդ մոռանաս։

Հետևակը ձիաւորին մղախտարում ա քցում։

Հպարտին դրսեր ծեծեցին, տանը չասեց։

Հորթիս ակը տալու եմ գնում։

Հորթը որ կովի առաջն ընկնի, գէլը կուտի։

Հիւանդը որ գնալիս ըլի, մատաղը չի օգնիլ։

Հիւրն էկաւ, հիւրը գնաց, տեղը դարդակ չմնաց։

Հիւրն էկաւ, հիւրը գնաց, աւելն աւլողի աչքը։

Հօրն ողորմի կայ, որ շան որդուց (այսինքն շան որդի ասելուց) լաւ է; շան որդի կայ, որ հօրն ողորմուց (այսինքն՝ ողորմի ասելուց) լաւ է։

Ձին ու ջորին կռուեցին, մէջ տեղը էշը սատկեց։

Ձին բէհիրը պոկեց, առաջ իրան դիպաւ։

Ձիու ոտները որ ջրում ըլի, շուացնել չի ուզիլ։

Ձիուց վէր էկաւ, իշի վրէն նստեց։

Ձկանը հարցրին ծովիցը ինչ խաբար. ասեց բան շատ ունիմ ասելու, համա բերանս ջրով լիքն ա։
Ձմեռը համամչի դառնաս, ամառը բաղմանչի։
Ձմեռը կատու ըլնիս, ամառը շուն։
Ձմեռուայ վարդը կրակն ա։
Ձուկը գլխիցը կհոտի։
Ձուկը ծովումը բազար չի ըլիլ։
Ձուկը ջրումը գին չի ըլիլ։
Ձուկը ձկանը ասեց՝ դէնը գնա. ասեց դու՞րը գնամ, երկուսս էլ մի թաւումն ենք։
Ձուկն ու միսը մի պղնձումը չի եփուիլ։
Ձուածեղի խաթեր, թաւի կոթը կը պաչեն։
Ձուի գողը ձիու գող կդառնայ (ձուագողը ձիագող էլ կ՚ըլի)։
Ձուի գողն ու ձիու գողը մին ա։
Ձու ածան հաւը կըչկըչան կ՚ըլի։
Պայիմ մարթի աչն աւլի հեռ կերթայ։
Պօնաղը տան տիրոնջ էշն ա։
Ջամիից դուրս էկողի աչքը դուռ կգայ։
Ջուտը ձուումը մաշուր կըլի, մանուկն օրօրոցումը։
Ջրագն իր տակին լիս չի տալ։
Մածուն ա թան չի, ամէն մարդու բան չի։
Մալը գնայ տէրը հետը, որդին գնայ հէրը հետը։
Մանկուց դադումը (վաստակ), ծերուց գաւազան ա։
Մայրը տես աղջիկը առ, եզերքը տես կտաւ առ։
Մարագը հորթը կըհատացնի, մնդուկն երեխէն։
Մարդը չէր մարդանման, խօսքն էր մարդասպան։
Մաշակարի մաշիկը ծակ կըլի (կը լինի)։
Մարդ մարդի իգի (այգի) կը տայ, մարդ մարդի պտուղ չի տալ։
Մարդ մարդի դարդ չէր իմանում, կէս գիշերին ժամ էր կանչում։
Մարդին, ջուր խմելիս, օձն էլ ձեռը չի՛ տալ։
Մարդիս աչքը դուս գայ լաւ ա, քանց թէ անունը։
Մարդի աչքը մէնակ հողով կկշտանայ։
Մարդի նամուսը գդակն ա, կնկանը լաչակը։
Մարդ մարդու քահանայ, մարդ մարդու սատանայ։
Մարդ կայ հազար աժէ, մարդ կայ մէկ չ՚աժէ։
Մարդ պտի՝ որ փլաւ ուտի։

Մ՝եղր ծախողը մատը կըլպստի (կը լիզի)։
Մ՝եղքը լալով՝ պարտքը տալով։
Մ՝եծ էշն ախոռումն ա մեծացել։
Մ՝եմենծ դռներ՝ սոված շներ։
Մ՝ենծի տված, պստիկի լսած։
Մ՝եր շեմքը շլորի, ով գայ կըճլորի։
Մ՝էկը հազարի անուն ա կոտրել։
Մ՝էկ մի՛ տալ, որ երկու չուզի։
Մ՝էկ խելքը լաւ է, երկուսը եւս առաւել։
Մ՝էկ կայ հազար ածի, հազար կայ, որ մէկ չածի։
Մ՝ի բան էի ուզում ասել, համա փախեցայ թէ խիարը ծուռ դուս գայ։
Մ՝ի ձեռը ծափ չի տալ։
Մ՝ի ձեռով (ձեռքով) ձմերուկ չի բռնուիլ։
Մ՝ի ղայիմ երեսը լաւ ա, քանց տասնու գուլթանը։
Մ՝ի մարդի փողերը որ ատելնայ, տան սները ծուռը կերեւան։
Մ՝ի տանից չէինք, համա մի ձէնով էինք։
Մ՝ի գիժ քարը թօլ արեց քցեց ծովը, հազար խելօքը չկարողացա հանիլ։
Մ՝ի ծաղկից օձը թոյն ա շինում, ճանճը մեղրը։
Մ՝ի ծաղկով գարունք չի գալ։
Մ՝ի ծառից թի էլ կըլլի, հորալի (փորալի) էլ։
Մ՝ի հենց տղայ ա, որ պղտոր ջրի հետ կըխմվուի։
Մ՝ի մուկն օխտը կարաս ա մուտատել։
Մ՝ինչեւ թուրն եկաւ, լիզուն գլուխը կարեց։
Մ՝ինչեւ հերթը մեզ հասաւ, լիսը վրայ հասաւ։
Մ՝ինչեւ լեպլեպու ասելը, դուքանները փակվեցաւ։
Մ՝ինչեւ քուրք ասելը, ձմեռը անց կացաւ։
Մ՝ինչեւ հաստի բարակելը, բարակի հոգին դուրս եկաւ։
Մ՝ինչեւ Շուշանը զարդարուեց, ժամերն արձակուեց։
Մ՝ինչեւ չիրը կթրջի, հիւանդի հոգին կթռչի։
Մ՝ինչեւ սէլը շուռ չի անցնի, ճամփէն չի դրստուիլ։
Մ՝իսը միս ա, խաշուն աչքի լիս ա։
Մ՝իրուք չունիմ, որ խօսքս անց կենայ։
Մ՝կան շեռը ջաղացին փայտայ ա։
Մ՝նջի լիզուն տէրը կիմանայ։

Մուկը ծակն չէր մտնում, ցախ աւելը պոչիցը կապեցին։
Մանելուց առաջ միտք արա, թէ ինչպէս դուրս գաս։
Մօտիկ հարևանը լաւ ա, քանց հեռու բարեկամը։
Յոպոպը ինքը հոտած ա, հէնց գիտի իրան բունն ա հոտած,
Յետի շունը վազկան կըլի։
Նեղութիւնին լէնութիւն կայ, լէնութիւնին նեղութիւն։
Շանը տէր ունի, գիլին էլ Աստուած։
Շանը քանի քար քցես կհաչայ։
Շունն իրանց տանը ղոչաղ կըլի։
Շան կաղալուն մի՛ հաւատալ։
Շունը շանից, երկուսը մի տանից։
Շան հաչալն էլ մի փեշակ ա։
Շան հետ աղպերացիր, փէտը ձեռիցդ վէր մի՛ քցիլ։
Շան պոչը քառասուն տարի մանկանէն դնես, դուզուիլ չի։
Շան սատկիլն որ գայ, ջամու դռանը կը պառկի։
Շանիցը լակոտ վէր կալ։
Շանը տուր, տիրոնջը խաթր արա։
Շատ անգամ հանաքը չանաք ա դառնում։
Շատ լաւին ման էկողը միջին առատ կգայ։
Շատ հօ՛, հօ՛ն կովին կգժուացնի։
Շատ մի՛ սիրիլ, ատիլ կայ. շատ մի՛ ատիլ, սիրիլ կայ։
Շատ փարչեր կժի աչքին թոլ կըլեն։
Շէն տան հարսն ես գնացել՝ թամամ հացի կարօտս.
Շիտակախօս մարդի գտակը ծակ կըլի։
Շներն իրար հետ կռուում են, գէլի դէմը միանում են։
Շները կռուեցին, բօշի բանը յաջողեց։
Շողոմքոր գառն օխտը մէր ա ծծել։
Շունը կաղալով չի սատկիլ։
Շունը կը հաչայ, քարվանը կը քօչայ։
Շունը շան թանթլիքը չի ծամիլ։
Շունը շան միսը կերաւ, ոսկորը չդէն քցեց։
Շունը գնաց ղասսապխանէն թէ ոտը բերի, իր ոտը կտրեցին։
Շունը սպանողին քաշ տալ կտան։
Շուշանը շփոթ չէր գիտի, վանքին խաւծարար դրին։
Ողորմի բաթողին, ոչ ողորմի խաթողին։
Ո՛վ սիրէ վարդ, ո՛վ մանուշակ։

Ոչ կուտեմ ձեր կոճկէն, ոչ կըչեմ ձեր գոմշէն։

Ոչ խաչին խաշիլ (մատաղ.) տար, ոչ երեխային բախթ.

Ով ալարի, ոչ դալարի։

Ով կհաղայ, նա կկաղայ։

Ով կը կարդայ, նա մարդ ա։

Ով որ փող ունի՝ խելք չունի. ով որ խելք ունի՝ փող չունի։

Ով չուստ, նա կուշտ։

Ոսկին պստիկ ա, համա գինը մեծ՛ ա։

Որ գնաս մի երկիր, տեսնիս քոռնիս քոռ են, դու էլ աչքդ խփի։

Որբ գառն եթէ մեծացնես, բերանդ ու շրթունքդ կը եղոտի; որբ երեխին թէ պահպանես, բերանդ շրթունքդ արիւն կընէ։

Որդին որ բանումը ձուաձեղ չինի, մօր պորտաքիցն էլ չի կարալ դուրս գալ։

Որդին գնայ հերը (հայրը) հետը, մալը գնայ տէրը հետը։

Որ տեղ որ գնաս, էն տեղի գտակը ծածկի։

Որ հեռանայ սաղն ու սայրուն հարցրու, էլ էն խոյն ա, էլ էն խասեաթը։

Ով ոք փքանայ, շուտով չքանայ։

Որ ջուրն ինձ կը խեղդի, ես նրան ծով կասեմ։

Ուզողի մի երեսը, չի տուողի երկու (սև կընեայ)։

Ուղտը գտալով ջէն ջրիլ։

Ուղտը որքան էլ սատկի, կաշին մի իշաբեռն ա։

Ուղտին ասին՝ աչքդ լիս, քեզ քուռակ ելաւ. ասեց. ինչ անեմ որ իմ բեռն ինձանից վէր. չի ընկնիլ։

Ուղտին ասին, շլինքդ ինչի՛ ա ծուռը. ասեց. ինչն ա դզուած, որ վիզս դրուստ ըլի։

Ուղտը կորցրել ես, քեօշակին մէն ես գալիս։

Ուղտի քեանդրբաղութիւնը մազէ կարմնջի վրէն կերեւայ։

Ուղտը վէր ըլողը, կուզէ կուզ մէն չի գալ։

Ուղտին քուշ ա հարկաւոր, վիզը թող ծռի։

Ուրագն իւր կոթը չի տաշիլ։

Ուրիշի ձեռավը օձ բռնել։

Ուրիշի զաւակը որդի չի լինի։

Ում ասացի իմը դու ես, ասաց իմ դեւը դու ես։

Ուրիշի ձեռքով փուշ քաղի։

Չաղ օձ տեսնողը, չալ չաթուից կը վախենայ։

Զունիս փող, մտիր հող։
Պանիր ու հաց, կերաւ գնաց։
Պապը ժուռը կերաւ, թոռի ատամն առաւ։
Պառաւն իր թանին թթու չի ասիլ։
Պաս ուտեմ պաս, էն էլ թանէ սպաս։
Պղինձը վէր ընկաւ, չկոտրուեց, ամա ձէնը վեր էլաւ։
Պստկից սկսի, որ մեծին հասնիս։
Ջան ունիմ անելու, պահուեմ բաժանուելու։
Ջուխտ աղպէրով մի շալվարի վրայ կըտորվում են։
Ջուրը ընկնողը անձրևից չի վախենայ։
Ջուհլակին պատառն չի ըլիլ։
Ջուրն իր գնացած տեղովը կերթայ։
Ջուրն իր ճամփէն կըգտնի։
Ջուրը մի տեղ որ շատ կենայ, կը հոտի։
Ջուրը պատիցը վերև մի՛ տանիլ։
Ջրին չմօտացած, մի՛ բոբկանալ։
Ջրի տարածը ծեղն է բռնում ազատուելու։
Ռանչպար մարդը լաւ ա քանց չինովնիկը։
Սառած օձն առաջ տաքացնողին կծի։
Սատակած իշին գին չի ըլիլ։
Սատակած ձիու եա նան գալի, որ նալը քաշես։
Սատանէն ոչ մեռել ա, ոչ կմեռնի։
Սարերի տեղ ձորերն են որոտում։
Սարը սարին չի դիպչիլ, համա մարդը մարդին կդիպչի։
Սերը սովորը կուտի, թանը մոլորը։
Սար ու ձոր մեղլի փոր։
Սարը փուլ եկաւ, հորը (փոսը) լեցրեց։
Սևին սապոն, խեւին խրատն ի՞նչ անի։
Սև կովը վէր ընկաւ, դանակաւորը շատացաւ։
Սև ու սպիտակը բաղնսումը կջոկուի։
Սև սիրտ, սպիտակ ատամ։
Սէլը գնաց մէտի, բերուց՝ բերուց. չի բերուց, ինքը մէտ ա ու մէտ։
Սէրը սիրով կըլլի, քաշ քաշելով բան չի դառնալ։
Սերը սովորը կ՚ուտի։
Սպիտակ միսն երևալուց, սև կարկատանը լաւ ա։
Սպիտակի անունը կայ, սևին համը։

Սիպտակ շունը բամբակ ծախողին միսն ա։
Սիրտս սուփրա չի, ամեն տեղ բաց անեմ։
Սոխի տեղ սխտոր են ծեծում։
Սոխի քաղցրը չի ըլիլ։
Սոխ ու հաց, սիրտը բաց։
Սովորին մի պակասցնիլ, անսովորին մի՛ սովորցնիլ։
Սուփրէն քցելու վախտը գնա, ժամը դուս գալու։
Սուտը կը ոտնաւորի, բայց չի երթալ։
Սուտ ասողի տունը էրվէց, չի հաւատացին։
Սրի տունը կրակ ընկաւ, ոչով հաւատաց ոչ։
Վախտը վախտին, թէ չէ ժամանակն անց 'ա կենում։
Վատ բանը վատից ա դուս գալի։
Վարդապետին ասին, որդիդ մեռնի. ասեց. ես որդի չունիմ, համ
լողաբդ լողաք չի։
Վիրև թքեմ՝ երեսս ա, ներքև թքեմ՝ միրուքս ա։
Տանձն ի՞նչ արաւ, թէ կոթն ինչ անի։
Տանձ չեմ, որ հասնեմ, խնձոր չեմ, թէ կարմրեմ, ինչ կամ, կամ։
Տանու խօսքը դուսը չի անցկենալ։
Տանուտէրի վկէն (շհատը) գզիրն ա։
Տանու տէրտէրին «օրհնեա տէր» չկայ։
Տանտրոնջ վրայ լիս վէր եկաւ, ով տեսաւ, գզիրը։
Տանը սատանայ, դուսը քահանայ։
Տաշած քարը, գետին չի մնալ։
Տասը չափէ, մին կտրէ։
Տարին մի զատիկ, էն էլ նաւակատիկ։
Տեսնիս, որ ջուրը քեզ հետ չի գալի, դու նրան հետևիր։
Տէրը տարածին էր ափսոսում, գէլը մնացածին։
Տէրտէր արա՛ գեղը քցի՛, թէ չի ապրի, գետը քցի։
Տիրաւորին տէրն ա պահել, անտէրին գէլն ա կերել։
Տկլորի մտքից օ՛րը տասնուհինգ գազ կտաւ էր անց կենում։
Տկլորը սարը էլաւ, սարի անունը բէդնամ արաւ։
Տուն քանդողի տունն Աստուած կքանդի։
Ցաւն իր գլուխը լիս կքցի, թէ որ դու վրէդ չես գնիլ։
Փախչիլն էլ մի հունար ա։
Փէտը վեր ունես, գող շունը կիմանայ։
Փիս մարդը զատկին էլ փիս կըլի։

Փիս ասողին լաւ լսողին։
Փիս շանը մի քարն էր պակաս։
Փիս շունը ոչ ինքը կուտի, ոչ ուրիշին կուտացնի։
Փորը հորի նման ա, ինչ որ գեվէր ածես՝ չի երևում։
Փորը փողին շահ չի։
Փորձած սատանէն լաւ ա, քանց անփորձ հրեշտակը։
Քամին ասեց մարագին. դուռդ բաց արա, գարման տուն ածեմ.
ասեց, ոչ քու բերածը կուզեմ, ոչ քու տարածը։
Քամու բերածը քամին կտանի։
Քաչալը, քօռը, չօլախը, կարճը խարամազ կըլեն։
Քաչալը, որ դեղ գիտենայ, իրա տաղ կատարին կանի։
Քաչալը դեղ գիտենայ, իր գլխին կ՚անի։
Քարը տեղը ծանր կըլի։
Քիչ խօսա, շատ կըլսես։
Քնածն ու մեռածը մին ա։
Քոսոտ էծը աղբրի ակնից ջուր կըխմի։
Քոսին ով տնազ անի, լաւ մըրուք պտի ունենայ։
Քու պարկուկիցն Թանձրիկ արա, իմ պարկուկիցն Նօսարիկ արա։
Քօռ եզը խփալով ա մանգալի։
Քօռի ինչ վէջն ա, թէ մումը թանկ ա։
Քօռն ինչ կուզի, ջուխտ աչքով լիս։
Օխտը մենք էինք, օխտը մեր հէրանք, մի մոծակի կաշայ կերանք։
Օխտը ծովից մի կովից։
Օձը իւր շապիկը կը փոխէ, բայց բնութիւնը չի փոխիլ։
Օձն ամէն տեղ ծուռն ա մանգալի, իր բունը մտնելիս դըրուստ։
Օձի գլուխը որ ցաւի, ճամփի մէջ տեղը վէր կընկնի։
Օչով չասի, թէ իր ճրագն ընչանք առաւօտը լիս կըտայ.
Օչով չի ասիլ, թէ ես գիժ եմ։

---

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ Ձ Ղ Ճ Մ Յ Ն Շ Ո Չ Պ Ջ Ռ Ս Վ
Տ Ր Ց Ւ Փ Ք Օ Ֆ

ա բ գ դ ե զ է ը թ ժ ի լ խ ծ կ հ ձ ղ ճ մ յ ն շ ո չ պ ջ ռ ս վ տ ր ց ւ փ
ք օ ֆ

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ Ձ Ղ Ճ
Մ Յ Ն Շ Ո Չ Պ Ջ Ռ Ս Վ Տ Ր Ց Ւ Փ Ք Օ Ֆ

ա բ գ դ ե զ է ը թ ժ ի լ խ ծ կ հ ձ ղ ճ մ յ ն շ ո չ պ ջ
ռ ս վ տ ր ց ւ փ ք և օ ֆ

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ Ձ Ղ Ճ Մ Յ Ն Շ
Ո Չ Պ Ջ Ռ Ս Վ Տ Ր Ց Ւ Փ Ք Օ Ֆ

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ Ձ
Ղ Ճ Մ Յ Ն Շ Ո Չ Պ Ջ Ռ Ս Վ Տ Ր Ց Ւ
Փ Ք Օ Ֆ

Ա Բ Գ Դ Ե Զ Է Ը
Թ Ժ Ի Լ Խ Ծ Կ Հ
Ձ Ղ Ճ Մ Յ Ն Շ Ո
Չ Պ Ջ Ռ Ս Վ Տ Ր
Ց Ւ Փ Ք Օ Ֆ

# ՎԵՐՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ։

---

## ՄՏԱԾՈՒԹԻՒՆՔ ԱԶԳԱՅԻՆ ԼՈՒՍԱՒՈՐՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ։

**Ամբոխը** (толпа, foule, multitude) *սովորաբար ընդունում (ճանաչում, խոստովանում) երկու զօրութիւն կամ ոյժ, որոնք, նորա կարծիքով, ամենից հզօր են, այն է գանձի (դրամի, փողի, ոսկու կամ արծաթի) և թրի, թնդանօթի, հրացանի սլաքի* (штыкъ, baionnete) *ու հասարակ զէնքի զօրութիւնը։ Բայց յայտնի է որ գանձը, զէնքից զօրաւոր է, պատճառ որ դրամով միայն կարելի է ձեռք բերել կատարելագործեալ և ամենալաւ զէնքը։ Բայց գանձը, ինքն իրան, ոչինչ նշանակութիւն չունի, պատճառ որ գանձը խելացի կերպիւ կառավարելու, նորանից կանոնաւոր, առաւելագոյն և ամենապահով օգուտը քաղելու համար, հարկաւոր են զարգացած բանականութիւն և խելք; իսկ մարդոյ բանականութիւնը և խելքը զարգանալու համար մի հնարք կայ միայն, այն է կանոնաւոր լուսաւորութիւն և կանոնաւոր դաստիարակութիւն; այս պատճառաւ էլ ամենից հզօր, ամենից հարուստ և ամենից շատ ազատութիւն վայելող ազգերը նոքա են, որոնց մտաւոր լուսաւորութիւնը և դաստիարակութիւնը, համեմատաբար, առաւել կատարեալ է։ Այսպէս, կայ այնպիսի զօրութիւն, որ տալիս է կեանք և ոյժ, և՛ գանձին, և՛ թնդանօթին, և՛ հրացանին, և՛ սլաքին, և առանց որոյ ամենայն ինչ ոչինչ է; այսպիսի ամեն բանի կեցութիւն և ոյժ տուող զօրութիւնը «իդէայի», (գաղափարի, մտաց,* idée, pensée, мысль *բարոյական, հոգևոր հաստատամտութիւնն, յամառութիւնն (պնդութիւն,* (упорство, opiniâtreté) *է, կամ մարդոյ ներքին, մտերիմ և հոգևոր*

կատարեալ համոզմունքը, թէ անշուշտ պիտոյ է որ և իցէ կերպիւ պաշտպանել, զարգացնել, աճեցուցանել, և իրագործել այս կամ այն իդէայն, գաղափարը։

Միենոյն կերպ մրցութիւն (վէճ, կռիւ, մրցումն, lutte, combat, борьба, соперничество), փողոցների և պողոտաների (grand rue, большая улица) վիճից սկսած մինչև երևելի տիեզերական պատերազմները, բոլորը մի և նոյն բարոյական վէճն, դատն (тяжба, procès) են երկու հակառակորդների մէջ, մի և նոյն առարկան տիրապետելու, իւրեան սեփականելու համար։ Այսպիսի վէճը վերջանում է ոչ թէ այն ժամանակ, երբ որ հակառակորդներից մէկի ֆիզիքական զօրութիւնը կամ միջոցքը առ ժամանակ նուազումեն, այլ այն ժամանակ միայն, երբ որ, այս կամ այն պատճառաւ թուլանում է, կամ ամենևին անկանում է հակառակորդներից մինի բարոյական և հոգևոր յամառութիւնը յառաջ վարելու (poursuivre, преслѣдовать мысль) այն գաղափարը, այն իդէան, որի համար վիճում, մրցումէին։ Այս պատճառաւ, շատ անգամ, երևելի արտաքին յաղթութիւնը իրապէս այնպէս երևելի չէ, ինչպէս որ թւում է սկզբէցը; բարոյապէս տկար հակառակորդների համար այդպիսի յաղթութիւնը, շատ անգամ, անչափելի դառն հետևանքներ է բերում, որպէս որ չէին կարող բերել սաստիկ կոտորածքը, որովհետև, թէպէտ այդպիսի յաղթութիւնը, առ ժամանակ, նուազեցնում է միւս հակառակորդի զօրութիւնը, բայց, մի և նոյն ժամանակ, օգնում է, օգնում է բերում բարոյական ուժ ունեցող հակառակորդին, ցոյց տալով նորան, թէ ինչպէս և՛ ուր պիտոյ է նա յետոյ ուղղէ իւր հարուածքը և այնպէս պատրաստում է նորա համար, ապագայում, կատարեալ և լի ու լի յաղթութիւն և պարծանք։

Այսպիսի բարոյական յամառութեամբ ոչ ոք այնքան զարգացած չէ, որքան կին մարդը։ Կին մարդու այս յատկութեան մէջ, նորա գաղափարի և իդէայի յամառման մէջ պարունակվում է գաղտնիքը այն տիրապետութեան, որ ունին կանայքը արու մարդոց վերայ,—արքունի պալատներից սկսած մինչև աղքատի խրճիթը։ Ըստերը այս տիրապետութիւնը մեկնումեն արու մարդոց բնական թուլութեամբ առ կանայս, կանանց գեղեցկութեամբ, և այլն։ Այդպիսի մեկնութիւնը կը լինէր ճիշդ այն ժամանակ միայն, եթէ բոլոր կանայքը, կամ նոցա մեծ մասը, լինէին գեղեցիկ; միւս կողմանէ, մեք շատ անգամ տեսանումենք, որ քանի մի կանանց տգեղութիւնը,

մերպարդյականութիւնը, ազնուութիւնը մինչև, ստրապետութեան միա-կողմանից գերիշխողութեան, ծայրայր բարոյականութեան և խելամտութեան վերայ, վասն որոյ վերջիշեալ մեկնութիւնը անտեղի է:

Կանանց բարոյական, նոցա ներքին յամառութիւնը, կամ, եթէ կարելի է ասել, յամառութեան տարածականութիւնը (la ductilité, тягучесть), հլութիւնը (souplesse, гибкость) կազմում են նոցա զօրութիւնը և ոյժը:

Տղամարդը ընդունակ է մեծ սխրագործութիւններ անել, բայց այդ սխրագործութիւնքը երկայն ժամանակ չեն տևում, յարատև չեն, անընդհատ չեն շարունակվում; միմիայն կին մարդը, կինարմատը ընդունակ է շարունակել անդադար, երկար ժամանակ, սկզբից մինչև վերջը մի և նոյն համբերատարութեամբ և ուժով, թէ սխրագործութիւն, թէ այլ գործ, որին նա ձեռնամուխ կը լինի: Երբ կին մարդը ընդունեց, սեփականացրեց իւրեան մի գաղափար, իդէա, այդ գաղափարը տիրապետում է բոլոր նորա կազմուածքը և միտքը; նա անդադար հետամուտ է լինում, պնդում այդ գաղափարի, մտածմունքի ետևէն; նա հանգստութիւն չէ տալիս ոչ ոքի, ոչ իւր էրիկին (այրին), ո՛չ զաւակներին, ոչ ծանօթներին; չէ լսում ոչինչ բանաւոր, իրաւացի խորհուրդի; տանում ամենայն վիշտ և զըրկանք, մինչև տանջանք ևս — և վերջը յաղթում, հասանում իւր նպատակին, կատարում իւր համոզմունքը: Այս պատճառաւ է, որ այն պատերազմունքը, որի մէջ հաղորդակից, գործակից են եղել կանայքը, միշտ ամենասաստիկ, անվերջ և անգութ պատերազմունքն են եղել:

Կանանց այս յատկութիւնը առաջի աչաց ունենալով, պիտոյ է մեր բոլոր և առանձին ուշադրութիւնը դարձնենք կանանց դաստիարակութիւնը տարածելու, գերազանցելու, որ նոցա հոգևոր հաստատմութիւնը բարի ուղղութիւն ստանայ, թէ հայոց ազգի գերդաստանական և հասարակաց բարեբաղդութեան համար և թէ որ ապագայումը մեք, այր մարդոց հետ միասին՝ նոր, հզօր և անդադար մշակակիցք և ընկերներ ունենանք մեր ազգայնութիւնը ամրացնելու, բարելաւացնելու և կատարեալ աստիճանի գերազանցութեան հասուցանելու համար: Չի մոռանանք, միշտ և հանապազ, անդադար ի մտի ունենանք, որ, եթէ հայազգի կանայքը մեր օգտին օտար ուղղութիւն ստանան, այն ժամանակ կըկայ հայ գերդաստանի կործանումը և, գերդաստանի հետ,—ազգութեան կործա-

նուէր էր. այն ժամանակ մեր սեփական տանը օտար ազդեցութեան ստացած աղջիկունք և կանայք կը դառնան ցեցեր, որոնք օրէց օր կը քանդեն մեր ազգայնութեան հիմունքը։

Այդ կանանց կանոնաւոր և ազգային ոգով դաստիարակութիւնը, կրթութիւնը և լուսաւորութիւնը այլ կողմանէ ևս շատ ամբողջական և կարևոր վճռելու և կատարելու առաջնակարգ խնդիր է, մանաւանդ մեզ նման ցրուեալ և աննախանձելի դրութեան մէջ գտնուող ազգի համար։ Աղջկանց ուսումնարանները հաստատելու, նոցա թիւը բազմացնելու, այն ուսումնարանների մէջ գրադարաններ հաստատելու համար պէտք է գործածենք մեր ամենայն ոյժը, որ եթէ այր մարդիկը անցուցանում են բոլոր իւրեանց ժամանակը նիւթական աշխատանաց մէջ, նիւթական միջոցք ձեռք բերելու իւր գերդաստանի ապրուստի և ապահովութեան համար, երբ որ այրմարդիկը, տունից դուրս, կրում են նիւթական և բարոյական զրկանքներ իւր գերդաստանի համար, գոնեա իւր տան մէջ ունենան նոքա հաւատարիմ, խելացի, մտաւոր զարգացած ընկերներ, որոնց մէջ կարողանան գտանել բարոյական ոյժ, զօրութեան աղբիւր, կեանքի արգելառիթներին հետ պատերազմելու, և, առ հասարակ, իւր սեփական գերդաստանի մէջ կարողանան այրմարդիկը ստանալ այնքան բաւականութիւն և զուարճութիւն, որ տունից դուրս եղած զուարճութիւնքը և բաւականութիւնքը չնչին երեւին նոցա աչաց առաջև։ Պէտք է օգնել քայլել և ազգի օգտի համար գործածել այն հզօր հոգևոր զօրութիւնը, որ պարունակում է իւր մէջ կանացի սեռը։

Կանայք այն պատճառաւ էլ ունին մի և նոյն որքան և անհերքելի իրաւունքը ստանալ այնքան դաստիարակութիւն, որքան ստանում են տղայքը, որ կանայքը մի և նոյն մեզ պէս մարդիկ են. մենք այրմարդիկ, նոքա կին մարդիկ։ Կին մարդիկը մի և նոյն մարդկութեան, հասարակութեան, ազգութեան և եկեղեցւոյ անդամքըն են, որպէս և մեք, և ունին մի և նոյն իրաւունքը և պարտականութիւնը, ինչպէս և մեք ստանալ կանոնաւոր դաստիարակութիւն և ուսում, որ կարողանան վայելել լուսաւորութեան բոլոր հոգևոր և նիւթական պատուական հետևանքները և պտուղները։

Բայց կին մարդը ունի մի իրաւունք ամենակատարեալ, ամենալաւ դաստիարակութիւնը ստանալու համար, որ չունինք մեք. այն է—«մայրական իրաւունք», ամենայն իրաւանց ամենասուրբը. ամենախորհրդաւորը և մարդկութեան բաղդի համար ամենադրգե-

նուարը։ Մենք ամենքս ունինք (երանի ունեցողներին) կամ ունեցել ենք մայր, վասն որոյ գիտենք և հասկանում ենք, այդ մայրական ամենասրբազան, ամենավեհափառ խրատները և խորհուրդը, վասն որոյ, առանց երկար, ձանր ու բարակ խօսելու, կը հասկանանք, թէ որքան պէտք է աշխատենք մեք, առանց որ և իցէ յապաղման, ամենայն տեղ, ուր կան հայեր, աղջկանց ուսումնարաններ հաստատելու, նոցա թիւը բազմացնելու, այդ ուսումնարանները կանոնաւոր կերպի ուղղելու, կատարելագործելու և նոցա նիւթական պիտոյքը ապահովացնելու։

Երեխայից կեանքը մինչև 12—14 տարեկան հասակը, իսկ աղջկանցը մինչև մարդու գնալը, անցանում է գերդաստանի մէջ, հանապազ և ամենայն րոպէ մօր հսկողութեան և ներգործութեան ներքև; մինչև այդ հասակը կերպաւորվում են մեր բոլոր հոգևոր ընդունակութիւնքը և մարմնաւոր կազմուածքը; մօր զարգացման և լուսաւորութեան աստիճանից և զօրութիւնից, նորա ուղղութիւնից է կախեալ զաւակաց ապագայ բաղդը և պիտանիութիւնը, վասն որոյ աշխատենք պատրաստել որքան կարելի է շատ բարի, կրթուած և ազգասէր մայրեր, որ ունենանք բարի, կրթուած և ազգասէր զաւակներ։ Կանայքը և, մանաւորապէս, մայրերը են սնուցիչ արմատը և հիմքը, որից պիտոյ է առաջ գայ, զարգանայ և ծաղկի ազգի ապագայ հոգևոր, բարոյական և նիւթական բաղդաւորութիւնք և ամենայն բարեկեցութիւնք. վասն որոյ աշխատենք որքան որ կարելի է կանացի սեռի ամենայնս դաստիարակութեան համար, որ ունենանք բաղդաւոր և ապահով թէ հոգևոր, թէ բարոյական և թէ նիւթական պիտոյից կողմերից։

Յայտնի բան է, որ մի և նոյն աշխատանքը պիտոյ է գործ դնել տղայոց դաստիարակութիւն տալու համար, բայց չը մոռանանք, որ երբ տղայքը, որ և իցէ ուսումն առնելով իւր ծննդեան տեղը, կարող են գնալ օտար երկիրներ (Հիւսիսային Գերմանիա, Մասկվա, Պետերբուրգ, և այլն) կատարելագործել իւրեանց ուսումը, աղջիկունք պիտոյ է բաւականանան այն ուսմամբ և դաստիարակութեամբ, որը կարող են տալ նոցա ծնողքը և տեղական ուսումնարանքը։ Բայց գործը միշտ այսպէս մնալու չէ, ոչ աղջկանց համար, որ նոքա բաւականանան միմիայն այն ուսմամբ, որ այժմս կարող են տալ առ հասարակ հայ գերդաստանումը և տեղական ուսումնարաններումը թէ աղջկանց և թէ տղայոց։ Պիտոյ է աշխա-

տեղ, որ և մեր աղջկունքը կարողանան իւրեանց ծնած երկիրներում ստանալ առաւել կանոնաւոր, առաւել գերազանց դաստիարակութիւն և ուսումն և մեր տղայքը չլինին հարկադրած, տասն և հինգ տարեկան մատաղ հասակում, կամ առաւել ևս վաղ, հեռանալ իւրեանց գերդաստանից և ծննդեան տեղից և գնալ օտար երկիրներ ստանալ ուսումն, օտար լեզուաւ և, որ առաւել ևս ցաւալին է, օտար ուղղութեամբ։ Այսպիսի մանկական հասակում օտար երկիր գնացող տղաներից շատերը յաւիտեանս մնում են այն տեղ, սովորելով և չկամենալով թողնել այն յարմարութիւնները, որ առաջարկում — կեանքի համար օտար, բայց առաւել կրթեալ և լուսաւորեալ երկիրները; սիրումն օտար աղջիկ, ամուսնանում օտարների հետ, որոնց վարքը և բարքը իւրեանց սեփականացրել են; Հայ աղջկայ ամուսնութիւնքը այդպիսի տղայոց այնքան ախորժ չէ թուում; նոքա երկնչումն որ հայ աղջիկը չի հասկանալ ո՛չ նոցա զգացմունքը, ո՛չ նոցա մտածողութիւնքը, ո՛չ նոցա հոգու դարդերը և այլն։ Այսպէս, այն փոքր քանակութեամբ հայ տղայոց ուսումն ստացած մասիցը, որոնք կրթվումն և լուսաւորվում Եւրոպայ յառաջադէմ տեղերը, շատերն էլ օտարանումն իւրեանց ազգի և գերդաստանի համար...... և այլն։

Բոլոր վերոյիշեալ պակասութեանց դեղթափը, բոլոր ապագայ և ներկայ ազգային վտաններու ճանապարհը կտրելու հնարքը, մեծ բանիւ, ազգի թէ հոգևոր, թէ բարոյական և թէ նիւթական ամենայն բարեաց միակ, էական, շօշափելի, և ո՛չ թէ երևակայելի, հընարքը և միջոցքը կանոնաւոր լուսաւորութեան և դաստիարակութեան մէջն է։

Առանց ազգային լուսաւորութեանը կանոնաւոր ուղղութիւն և միջոցներ տալու, մեք միշտ կը թափառենք (s'errer, блуждать) այն վիշտերի մէջ, որոնց մէջ այժմ ընկղմեալ ենք և, ապագայում, այն վիշտերը առաւել ևս կատարելանան, որովհետև, քանի գնում, ապրուստը թանգանում և դժուարանում, օտար ազգերը առաջանում; յայտնի բան է որ մեք, եթէ ոչ թէ միայն շուտաքայլ առաջ չգնանք, այլ մնանք այժմ մեր կեցած կէտի վերայ, պէտք է մեզանից առաջ գնացող, մեզանից լուսաւոր ազգերի մէջն, ստրուկ, ծառայ լինենք և մնանք։

Ուսման համար, ազգային ուսման համար, պիտոյ են ազգային ուսումնարաններ, կանոնաւոր կերպիւ ապահոված, ամենայն

գիտութեանց սկզբունքներ և վարժապետներ։ Ամենից լաւ սկզբունքներ կարող է գրել աշակերտաց և աշակերտուհեաց համար այն անձը, որ նոցա ուսուցանում, գիտէ նոցա լեզուն, նոցա բնաւորութիւնը, նոցա գիտութեան և զարգացման աստիճանը, այսպիսի անձը վարժապետն է; բայց որ վարժապետը կարողանայ գրել այդպիսի սկզբունքներ, նա ինքն պիտոյ է լինի քաջահմուտ, ոչ միայն այն գիտութեանց, որը ուսուցանում, և հայոց լեզուին, գրաբարին և աշխարհաբարին, որ կարողանայ պարզ, մաքուր հայ լեզուաւ դասատուութիւն ունել և ծանօթ լինի այն ժողովրդի դրութեանը, պիտոյից, զարգացման հասկացողութեան հետ, որի մէջ և որոյ զաւակներուն նա ուսուցանում։

Առանց կանոնաւոր ուսումն ստացած, վարժապետական ուսումն գիտցող վարժապետների մեր ուսումնարանների օգուտն շատ փոքր կը լինի։ Այս պատճառաւ պիտոյ է պատրաստել վարժապետական վեհ և խորհրդաւոր կոչման համապատասխան անձինք, որ ազգային յառաջադիմութիւնը և մեր ապագայ սերնդի դաստիարակութիւնը առաջ տանեն կանոնաւոր կերպիւ և մեք էլ քաղենք մեր ուսումնարաններից այն բոլոր հասուն և օգտաւէտ պտուղները, որ վայելում են Եւրոպիոյ ամենալուսաւորեալ և կրթեալ ազգերը։ Յայտնի բան է, որ այդպիսի վարժապետներ պատրաստել կարելի է և պիտոյ է այն տեղ միայն, ուր ազգային դաստիարակութեան գիտութիւնները և միջոցները ամենածաղկեալ դրութեան աստիճանին են հասել.— այսպիսի տեղն հիւսիսային Գերմանիան (Սեմջաստուն) է։ Հարաւային Գերմանիան էլ բաւականին չափ լուսաւորուած է, բայց հիւսիսային Գերմանիայից շատ յետ է ընկած։ Երբ որ բոլոր Եւրոպացիք, թէ ֆրանսիացիք, թէ անգլիացիք, թէ ռուսք և թէ հիւսիսային ամերիկացիք այնպիսի խորին յարգանօք խօսում են գերմանացոց գիտութեան վերայ, պիտոյ է իմանալ, որ նոքա հիւսիսային Գերմանիայի վերայ են խօսում; ուր որ կան Բէրլին, Հէյդէլբէրգ. Գէօտտինգէն, Իէնա և այլ պատուական ուսումնարաններով, համալսարաններով, ակադեմիաներով և այլ ուսումնական թանգարաններով, գրադարաններով (գրատուններով) և բոլոր ուսումնական և ուսման վերաբերեալ միջոցներով և գրականութեամբ լի և ճոխ քաղաքները։ Թէատրոնները, զուարճութիւնքը, շռայլութիւնքը և սորա հետևանքները առաւել են Փարիզ, Լոնդրա, Վիեննա և այլ տեղեր, իսկ առողջ և առանց նախապաշարմունքի

ուսման՝ Հիւսիսային Գերմանիա և Զուիցերիա: Ֆրանսիայի, Նապոլէոն III-ի այժմեան գիտնական և ազգային լուսաւորութեան և դաստիարակութեան ոգևորիչ և ականաւոր ուսուցչապետք պաշտօնեութեան պ. Դիւրիւին, Ֆրանսիայի երեսփոխանական ժողովի բազմութեան առաջև, երկար և ազդու առեւտրականութեամբ խոստովանեցաւ Ֆրանսիայի ժողովրդի և առ հասարակ Ֆրանսիացոց ուսման թերութիւնները և յետ ընկնելը և Հիւսիսային Գերմանիոյ լուսաւորութեան և գիտութեան գերազանցութիւնը, և իւր առաջնութիւնը վերջացրուց ասելով, թէ միակ հնար Ֆրանսիայի ապագայ ներքին փրկութեանը յամենայն չարեաց այն է, որ կատարելագործվի Ֆրանսիացոց դաստիարակութիւնը Հիւսիսային գերմանացոց պէս և խնդրեց երեսփոխանական ժողովից նոր ականաւոր գումար, և Ֆրանսիայի վարժապետական դպրոցների համար և որ կարգադրուեն Ֆրանսիացոց վարժապետներին ուղարկել Հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցները կատարելագործվելու, որ, երբ նոքա վերադառնան Ֆրանսիա, կարողանան կատարելագործել Ֆրանսիայի վարժապետական դպրոցները ևս Հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցների նման [1]:

---

[1]) Դիւրիւին ուղարկեց առանձին ուսումնականներ Գերմանիա, Բէլժիա, Հօլլանդիա և Անգղիա, որ նոքա նայեն և քննեն և տեղեկանան այն երկիրների տեղական ուսումնարանները և տեսնեն թէ ինչ պիտոյ է այն տեղի ուսումնարաններից օրինակ առնուլ Ֆրանսիայի ուսումնարանների դրութիւնը, «ուղղութիւնը» և դաստիարակութիւնը կատարելագործելու համար: Այդ անձանց նկատողութիւնքը տպած են Դիւրիւիի հրամանաւ: Le l'enseignement secondaire en Augleterre et en Ecosse, adressé à S. Ex. M. le ministre de l'instruction publique par m. m. Demogeot et H.Montucci (Դեմօժօ և Մօնտուչչի) Vol. 8° Paris, 1868 շատ հետաքրքրական և ամենայն ուշադրութեան արժանի գիրք է:

Դէմօժօի և Մօնտուչիի գրուածքի քանի մի եզրակացութեանց (conclusion, заключеніе) հետ ամենքեան չեն համաձայնիր. երբ որ նոքա իրեանց կառավարութեան հաճոյանալու պատճառաւ, ընդդէմ են անգղիացոց ուսումնարանների քանի մի ուղղութեանց, զորօրինակ, անգղիացիք, համոզուած լինելով, որ ուսումնարանի ուղղութիւնը և պրոգրամման համապատասխան պիտոյ է լինի կեանքի պահանջմունքների հետ, այսինքն, ուսումնարանը պիտոյ է. ա) տայ այն ուսումն, որ ամենահարկաւոր է կեանքի համար և բ) զարգացնէ պատանեակների բոլոր ընդունակութիւնքը, ամենայն կերպ

Եթէ Ֆրանսիայի պէս հզօր և առաջնակարգ աէրութիւնը հրապարակաւ խոստովանում է իւր ժողովրդական ուսման և դաստիարակութեան թերութիւնքը և հիւսիսային Գերմանիայի պէս կանոնաւորուած վարժապետական դպրոցների մէջ է ցոյց տալիս Ֆրանսիայի բաղդը և յառաջադիմութիւնը, ուրեմն մեզի պէս յետ ընկած և խեղճուկ ազգին էլ խօսելու բան չկայ, այլ բոլոր հնարքը և միջոցքը գործ դնել հայազգի վարժապետներ պատրաստելու հիւսիսային Գերմանիայի վարժապետական դպրոցներումը: Հինգերորդ դարու մեր բազմերախտ և հանճարեղ ազգի մնացոր լուսաւորիչները էլ շարժեցին նոյնպէս: Դոքա առաջ կարգեցին ուսումնարաններ Հայաստանում, ընտրեցին աշակերտներ, տուին նոցա այնքան և այն ուսում, որքան և որը որ կարելի էր տալ հայրենիքումը, և, որովհետև, լաւ հասկանումէին, որ Հայաստան լուսաւորելու և գիտու-

---

աշխատութիւն, որ երիտասարդքը, ուսումնարանի մէջ եղած ժամանակից սկսած, սովորին «ինքնագործունէութեան»: Այս պատճառաւ անգղիացոց ուսման և դաստիարակութեան գլխաւոր նպատակներից մինը այն է, որ որքան և կարելի է շատ զարգացուցանէն ինքնէակ, ինքնագոյ, ինքնագործ, ինքնագործունեայ, (самобытный, existence indépendante) ինքնազօր էակներ, որ ժամանակաւ ինքիրան, առանց այլոց, ծնողաց, ազգականաց կամ օտարների խնամակալութեան, հոգածութեան, պաշտպանութեան կարողանան կեալ, շարժիլ, աշխատել և ներգործել, թէ իւր անձնական և թէ հասարակաց գործերի մէջ: Այս խորհրդաւոր հարցմունքը արժանի է ամենամանրամասն մեկնութեան, քննադատութեան և հետևելու որքան մեր ուսումնարանների դրութեանը համապատասխան կարող է լինել: Անգղիացին պահանջում է իւր ուսումնարաններից ինքնակաց, ինքնաշարժ, ինքնատէր, ինքնարար էակներ: Այն տեղի նոր ուսումնարանները աշխատումեն զարգացնել աշակերտաց մէջ. հաստատութիւն, զօրութիւն կամաց, արութիւն (քաջութիւն), համբերութիւն, հաստատամտութիւն (պնդութիւն, pérséverence, fermeté, настойчивость) իւր նպատակին հասանելու: Այս րոպէիս, որ մեք գրումենք մեր մտածմունքը (18 (25) յուլիսի) կարդումենք, որ 5 (17) յուլիսի ֆրանսիացոց երեսփոխանական կամ օրէնսդրական ժողովումը, Գիւրիւին, ժիւլ-Սիմօնը և ժիւլ-Ֆավրը մեծ վիճաբանութիւն են անում Ֆրանսիայի դաստիարակութեան պակասութեանց մասին և երեքն էլ կրկին խոստովանումեն ուսումնարանների պակասութիւնքը: Այսուհետև Ֆրանսիայի բոլոր վարժարաններում կուսուցանեն մարմնամարզութիւն (ժիմնաստիկ, гимнастика): Մեք, հայերս, երբ կ'սկսենք հետևել սոցա օրինակին?

Թէական ծաղկեցնելու համար առաւել հաստատ, առաւել կատարեալ գիտութիւն պէտք է, քան թէ ինչ որ կարող էր տալ Ճեմարանը, նոքա այն աշակերտներից, ընտրեցին հարիւրի չափ ամենից ընդունակ և յառաջադէմներին և ուղարկեցին օտար երկիրների այն քաղաքները, որ տեղ որ, այն ժամանակ, ուսումնարանները և ուսման բոլոր միջոցները ամենածաղկեալ դրութեան մէջն էին։ Նոքա ընտրեցին աշակերտներ արդէն բաւականին պատրաստած իւրեանց հայրենիքումը, բաւականին տեղեակ իւրեանց հայրենի լեզուին, ազգի պէտքին և դրութեանը։ Այսպէս պատրաստուած երիտասարդներին առանց երկիւղի կարելի էր ուղարկել օտար երկիրներ, որովհետև ա) նոցա մտաւոր կազմուածքը բաւականաչափ զարգացած գոլով, կարող էր տանել օտար երկիրների օդափոխութիւնը. բ) նոքա սովորած լինելով հայրենեաց լեզուն, օտար երկրի մէջ, որքան էլ որ այլ և այլ օտար ազդեցութեանց տակ լինէին, միշտ կը մնային հոգով հաւատարիմ որդի հայրենեաց և ազգին։ Այս բոլորը մեր աչքի առաջ ունենալով և շարժելով և տրամաբանելով բնականապէս, պիտոյ է որ մեք ևս շարժենք նմանապէս, վասն որոյ, եթէ կամենումենք ունենալ. 1) կանոնաւոր պատրաստուած վարժապետներ և 2) մեր սեփական և ազգային վարժապետական դպրոցներ, պիտոյ է առաջ պատրաստել այդպիսի վարժապետներ, որ, ժամանակաւ, նոքա ինքները դառնան հիմնող և ուսուցիչ մեր ազգային վարժապետական դպրոցների։ Նայելով մեր ազգի ցրուեալ և չքաւոր դրութեանը և այլ զանազան անյաջող հանգամանքներին (որոնց պատճառը մեր սեփական կարճատեսութիւնն է) պիտոյ էր, սկըզբիցը այսպիսի գործին ձեռնամուխ լինել երեք կամ չորս տեղ. զորօրինակ. Զմիւռնիա, Կ. Պօլիս, Տիֆլիս։ Զմիւռնիա, ընտրել Մեսրոպեան վարժարանը, Կ. Պօլիս—Նուպար-Շահնազարեան կամ միւս վարժարաններից մինը, Տփխիս—Ներսիսեան ազգային և հոգևոր դպրոցը։ Այս վարժարաններում իւրեանց ուսումն աւարտած աշակերտներից ընտրել որ և իցէ թուով, (որքան դրամագլուխը կը թոյլ տայ) ամենընդունակ, կազմուածքով քաջառողջ և ազնիւ բարուց, բնաւորութեան տէր և մանաւանդ ազնիւ և ազգասէր ուղղութեամբ տրամադրած աշակերտներ։ Պիտոյ է որ այսպիսի աշակերտները լաւ քաջահմուտ տեղեակ լինին հայոց գրաբառ լեզուին; այն երկրի աշխարհաբառին; մեր հին և նոր գրականութեան ընտիր հեղինակների գրուածոց հետ, թէ բուն հայերէն

լեզուաւ գրած թէ թարգմանութիւն օտար լեզուներից. Մովսիսի Խորենացւոյ, Եղիշէի, Ղազար Փարպեցւոյ, Ագաթանգեղոսի, Ստեփաննոսի Օրբէլեան, Յովհաննու Կաթողիկոսի, Փաւստոսի; Մովսիսի Կաղանկատուացւոյ, Ղեւոնդի, Սեբէոսի, Վարդանայ, Եւսեբիոսի, Սմբատայ և Կիրակոս Գանձակեցւոյ պատմագրութեանց հետ; սոցա ընտիր թարգմանութեանց այն օտար լեզուներու, որոնք որ աշխարհս ծանօթ են; մանաւանդ այդ թարգմանութեանց ծանօթութեանց և մեկնութեանց հետ; զանազան ժամանակագրութեանց նոր հեղինակների, որոնց գրուածքը տպուած են ամսագիրներում, զորօրինակ. Յովսէփ կաթողիկոսի Արղութեանց, Մանուէլ վարդապետի Կիւմիւշխանեցւոյ, Կոստանդ ամագրումը, և այլն, և այլն; նոր, այժմեան ընտիր զանազան հայ բարբառներով գրուած շարադրութեանց և հատուածների հետ (Խաչատուր Աբովեան և միւսները); հայոց եկեղեցւոյ պատմութիւնը, դաւանութեանը, արարողութեանց և ծիսից պատմութիւնը և հին և նոր կտակարանին սկզբից մինչև վերջը [1]), թուաբանութեան, ալ-

1) 1800 թուականին, Եկատերինէ II-ի անդրանիկ զաւակը, Պօղոս Պետրոսեան (Պաւէլ Պետրովիչ) բազմեցաւ կայսերական բոլոր Ռուսիոյ գահը: Իւր թագաւորութեան առաջին օրերը Պօղոս կայսրը սկսեց շնորհել հոգևորականաց ևս զանազան պատուանշաններ (օրդէն, орденъ): Այս նորաձևութիւնը անհանգստութիւն պատճառեց (agiter, troubler, смутить, смущать, խռովել, շփոթել, վրդովել, անհանգիստ առնել) այն ժամանակուայ Պետրբուրգի ռուսաց մետրոպօլիտ ծերունի Գաբրիէլին և նա եկաւ արքունի պալատը, հանգուցելոց պաշտօնը (requiem, service) կատարելու, առանց սրբոյն Անդրէի նորան կայսրից նոր պարգևած աստղի (շքանշանի) և ժապաւէնի (ծոպք, ruban, лента): Միայն կայսր սպառնալի հրամանը հարկադրեց նորան հնազանդել: Բայց Մոսկվայի հռչակաւոր մետրապօլիտ Պլատօնը շարժեցաւ առաւել համարձակաբար, բողոքեց ընդդէմ պարգևատրութեանց հոգևորականաց աշխարհական շքանշաններով և կրեց այս պատճառաւ կայսեր սաստիկ անբաւականութիւնը: Ղազան քաղաքի մետրապօլիտ Ամբրոսիոսը, որ գտնվումէր այն ժամանակ Պետերբուրգ և ամենայն ջանքն էր գործ դնում իւր բարերար, վարժապետ և դաստիարակիչ ծերունի Գաբրիէլի տեղը նստիլ, ներկայացաւ արքունիքը կերպասեայ (velours, бархатъ) հագուստով, աստղով և ձախ ուսից աջ (զինուորների նման) կարմիր ժապավէնով: Կայսեր այս շատ հաճոյ թուեցաւ և նա, վայելուչ չը համարելով, որ հոգևորականք շքանշանի ժապաւէնը

ժէբրա, և այլն.... առ հասարակ գիմնազիական մաթեմատիկայի մասը; ընդհանուր պատմութիւն, ընդհանուր աշխարհագրութիւն, աշխարհագրութիւն և ստորագրութիւն Կովկասի (Հ. Ղևոնդ Ալիշանեան); պատմութիւն Հայոց գրականութեան (Պալասանեան Ս. հատոր, (2 հատ), Գ. Զարբհանալեան; ընտիր բանաստեղծութիւնք (Շնորհալի, Ալիշան, Ռափայէլ Պատկանեան), հին և նոր ընտիր ազգային երգեր; գծագրական նկարչութիւն (черченіе, le dessin linéaire); անկրութեան լեզուն գրականապէս; Ֆիզիկա, բնական գիտութեանց գիմնազիական կուրսը։ Գերմաներէնը — առաջին և երկրորդ մասը քերականութեան, ուղիղ գրել և կարդալ և, առանց բառարանի օգնականութեան, թարգմանել պատմաբանական, ստորագրական, աշխարհագրական և մաթեմատիկայի վերաբերեալ հատուածներ; եթէ կարելի է, գիմնաստիկա; եթէ այն ուսումնարաններում մէջ այս բոլորը չեն ուսուցանում, պիտոյ է վերոյիշեալ պայմանաւ ընտրեալ աշակերտներից կազմել առանձին դասատուն և առանձին վարժապետները պարապեն միմիայն նոցա հետ այս առարկաներով և լեզուներով։ Այսպէս պարտուպատշաճ կերպիւ պատրաստուած աշակերտներին ուղարկել Բէռլին կամ Հէյդէլբէրգ, յանձնելով նոցա այդ քաղաքների բուն համալսարանի ուսուցչապետաց խորհրդի հովանաւորութեանը։ Եթէ որ և իցէ քաղաքի ժողովուրդը, վիճա-

---

կըէն ձախ ուսի (թիկունքի) վերայ, իւր սեփական ձեռօք կախեց ժապաւէնը Ամբրոսիոսի պարանոցի վերայ։

Յովսէփ Երկայնաբազուկ-Արղութեանցը, այն ժամանակուայ Հայոց վիճակաւոր առաջնորդը բուն ռուսաց երկրումը և որին շատ պատուասիրումէին կայսերուհի Եկատերինէ II և կայսր Պօղոսը, առաջինը եղև հայ հոգևորականներից որ նմանապէս ստացաւ պատուանշան նոյն կայսեր ձեռքից և այն ժամանակից սկսեցաւ շարունակուիլ մինչև այժմ։ Երբ առաջին անգամը կայսերուհին Եկատերինէ II կամեցաւ տալ մէկ հոգևորական անձին պատուանշան, Պլատօն, որ դեռ եպիսկոպոս չէր, այլ դաստիարակ էր Պօղոսի, ասաց. հոգևորականաց անվայելուչ է ժապաւէնը, այլ նոցա կրելին՝ խաչն է, և այն օրից սկսաւ խաչիւ պարգևատրութիւնը։ Սիմէոն կաթողիկոսը իւր կոնդակաւ մատուցել էլ Կատարինէ կայսրուհւոյն Նոյեայ տապանի մասն, կենաց փայտն, սուրբ Գէորգայ նշխարքն և Հռիփսիմեանց և այլն։ Այս կոնդակին պատասխան գրած շնորհակալութիւնն, թարգմանած, կոնդակաձև ոսկեզօծ զարդարած, Սիմէոնի ստորագրութեամբ վաւերացուցած, կայր Յովսէփայ թղթոց մէջ։

կաւարը և ուսումնարանների կառավարչութիւնը (հոգաբարձուք և վարժապետաց խորհուրդը) դիմեն պաշտօնաւոր խնդրանօք Եւրօ-պիոյ որ և՛ իցէ համալսարանների ուսուցչապետաց խորհրդին, առանց որ և իցէ երկբայութեան կարելի է գուշակել, որ ամենաջերմեռանդ ընդունելութիւն, համակրութիւն և կատարումն պիտոյ է ստանայ այդպիսի խնդիրքը—որոյ նպատակն է լուսաւորութիւն որ և իցէ ազգի, մանաւանդ մեզպէս ամենահին և ամենից էլ շատ վիշտ և տառապանք կրած ազգին։

Խնդրանաց մէջ պիտոյ է յայտնել այդ վարժապետների պատրաստելու նպատակն, այն ժողովրդի նիւթական և բարոյական դըրութիւնը, որի համար պատրաստվելու են վարժապետները; խընդրել, որ համալսարանի ուսուցչապետաց խորհուրդը ինքը հաստատէ մանրամասն կանոն այդ աշակերտաց պարապմանց և ուր տեղ; նոցա պատասխանատուութիւնը, թոշակը; յանձնէ նոցա վերայ հըսկողութիւնը ում որ հարկն է; կազմէ մէկ տեղ այն աշակերտաց համար հայոց գրեանց գրադարան, ուր որ, ամառ ժամանակ, ամենեքեան հաւաքվին և պարապին, կամ ուր տեղից ստանան գրեանքը և յետ դարձուցանեն, և այլն։ Պիտոյ է գիտենալ, որ առանց հըսկողութեան, առանց առաջնորդի չէ կարելի թողուլ վարժապետ պատրաստվողներին, և ոչ ոք չէ կարող այդ հսկողութիւնը անել և առաջնորդել նոցա այնպէս, ինչպէս այն քաղաքների ուսուցչապետաց ուսումնական ժողովի խորհուրդը։

Դրամի կողմանէ պիտոյ է ասել, որ ամենայն աշակերտի համար պիտոյ կը լինի. 1) ճանապարհի ծախս Տփխիսէն մինչև Բեռլին և նշանակած տեղը գալը, մօտ հարիւր յիսուն մանէթ; 2) տեղաւորելը, հագուստը, գրեանքը, և այլ մանր ծախս, նմանապէս հարիւր յիսուն մանէթ և 3) տարեկան ապրուստը, վարժապետաց և գրեանց վարձը, էլի մօտ վեց հարիւր մանէթ։ Այժմ համարենք, որ այդ վարժապետներ լինելու պատրաստվողները պարապելու են Գերմանիա երեք կամ չորս տարի, ամենայն մէկ աշակերտը կ՚արժենա, մինչև վերադառնալը, 2,700 ռուբլուց մինչև 3,000 ռուբլի, կամ 11—12 հազար ֆրանկ։

Համալսարանի խորհրդին պիտոյ է խնդրել, որ նա նշանակէ քանի անգամ տարին և որքան անգամից դրամ պիտոյ է տալ աշակերտներին; խորհուրդը ունենայ իրաւունք այն ուսանողներին, որոնք չեն աշխատել ինչպէս հարկն է, կամ նորա վարուց կամ բարուց

կազմենք վարժապետական դպրոցի կառավարութիւնը, կամ ում որ յանձնուած է նորա վերայ հսկողութիւնը, անպատճառ կը լինի որ և իցէ կերպիւ, այնպիսիներին իսկոյն յետ դարձնել Հայրենի-քը. իսկ եթէ չի կամենայ, դադարել տալ որ և իցէ դրամ: Ուսա-նողներին պարտաւորել, տարին երկու անգամ, յունիսին և յանուա-րին, ուղարկել այն ուսումնարան, որից ուղարկուած է, մանրամասն հաշիւ իւր պարապմանց, Հայերէն և գերմաներէն լեզուաւ գրուած, և գերմաներէնը պէտք է վաւերացած լինի այն վարժապետական դպրոցի, ուր նա ուսանում է, վերատեսչի և վարժապետների կողմից: Բոլոր չորս տարին, ուսանողները պարտական են պարապել նշանա-կած առարկաներով և գիտութեամբ, և բացի սորանից, չորս տարի ժամանակում, երկու արհեստ և այդ արհեստներին վերաբե-րեալ ամենագիւտքին և կատարելագործեալ գործիքների և մեքենա-ների հետ ծանօթանալը, գործածելը, և, եթէ կարելի լինի, մինչև անգամ, շինելը: Խաչատուր Աբովեանը, երբ Դորպատի գիմնազի-այում ուսում էր առնում, ազատ ժամերը, գնում էր հացարարի (հացթուխ, boulanger, булочникъ) մօտ խմորը ունցում և հաց թը-խում: Երբ որ ուսուցիչներից մինը զարմացմամբ հարցրուց նորան, թէ ինչու համար է այդ բանով պարապում նա, Աբովեանը, ազգասիրական հպարտութեամբ պատասխանեց թէ. «Այս իմ Հայրե-նեացս համար հացագործութեան կատարեալ կերպն եմ սովորում, որ, Հայրենիքս վերադառնալուց, իմ ազգակիցներիս էլ ցոյց տամ»: Եթէ 35 տարի առաջ Խաչատուր Աբովեանը այսպիսի վեհ զգաց-մունքներով ուսում էր առնում և մի և նոյն ժամանակ արհեստ էր սովորում օտարութեան մէջ, մեք յոյս ունինք, որ այժմեան հայ-ազգի երիտասարդութիւնը այնքան զարգացած է, որ առաւել եւս պատրաստ կը լինի գերազանցել, և Աբովեանից, և միւս նախորդ եռանդոտ ազգասէրներից:

Միմիայն աշխատութիւնը սուրբ է և ազնիւ, եթէ յօգուտ ազգին է և մարդկութեան: Տխմար դատողութիւնը ազգաքարոզու-թեամբ՝ յիմարների և տխմարների միջակն է: Իսկ ազնիւը, իսկ պատուոյ արժանի և իսկ վեհանձն և վեհանձնեայ մարդը նա է, որ միշտ աշխատում է կատարելագործուել, ուսանել և որի ուսումից, աշխատութիւնից և գործունէութիւնից օգուտ է քաղում ոչ թէ միայն ինքը և նորա գերդաստանը, այլ և ազգը և բոլոր մարդ-կութիւնը:

Երբ որ այսպիսի ուսանողք յաջողութեամբ, ուսումն առած, վերադառնան այն ուսումնարանները, որից որ ուղարկված էին, այն ժամանակ նոքա կարող կը լինէին. 1) ինքները պատրաստել Հայ-ազգի վարժապետուհիներ[1]) և վարժապետներ այն ուսումնարան-ների ուսումն աւարտած աշակերտների ընտրելագոյններից և համա-պատշաճներից; 2) Տօն օրերը, հրապարակական ընթերցանութիւններ անել բոլոր ժողովրդի համար, մանաւանդ հասարակ ժողովրդի դաստիարակութեան վերաբերեալ հարցմունքների մասին; 3) այն երկրի ուսումնարանների կառավարութեանը օգնել կանոնաւորելու ուսումնարանները; 4) ժողովրդեան պիտոյից համապատասխան զանազան գիտելեաց սկզբունքներ տպել; 5) չորսը կամ հինգը, միա-նալով իրար հետ, կարող էին կազմել ընդարձակ և կանոնաւոր բա-ռարան, այբբենարան և քերականութիւն գերմաներէնից-հայերէն; 6) հրատարակել ամսագիր ազգային դաստիարակութեան; 7) ազգա-յին թանգարան (музей, musée) աշխատել հաստատելու, և այլն։

Դոցա պատրաստած աշակերտներից մի քանիսին շարունակա-բար, տարէց տարի, ուղարկել հիւսիսային Գերմանիա, որ ամեն տարի ազգային դաստիարակութիւնը, քայլ առ քայլ, միշտ միատեղ լինի գնում Եւրոպայի լուսաւորութեան հետ, նորանից յետ չը մնայ, միշտ նորոգվում լինի գիտութեան նոր հիւթերով և նիւթե-րով; իսկ մնացորդներին ուղարկել միւս քաղաքների հայոց վարժա-րանները վարժապետութիւն անելու և վարժապետուհիներ և վար-ժապետներ պատրաստելու։ Եւ հասարակ Գերմանիայի վարժապե-տական դպրոցներում կանոնաւոր կերպիւ կատարելագործուած հայ վարժապետները, վերադառնալուս, ինքները ցոյց կը տան ինչ կայ անելու և ինչպէս պիտոյ է մշակել։

Ժամանակ է նմանապէս, որ մեր ուսումնարանների վարժապետ-ները տարէց տարի ժողով կազմեն այս կամ այն քաղաքներումը, որ, միատեղ խորհելով, իրար հաղորդելով իւրեանց տեսածը, լսա-ծը, գիտցածը, պիտոյքը, ազգի և աշակերտաց դրութիւնը, իրարով

---

1) Հնարաւոր է այժմս էլ, այն միջոցներով, որ ունինք մեր ձեռ-քին, պատրաստութիւն տեսնել առանձին վարժապետուհիներ պատ-րաստելու, մասնաւորապէս գիտցող թէ լեզուներ, թէ առարկաներ և թէ, մանաւանդ և մասնաւորապէս, մանկավարժութեան գիտու-թիւնք։

կատարելագործվէին, առաւել հմտութիւն ստանային ազգի պիտոյից և դրութեան մասին, ազգային դաստիարակութիւնը և դատաւարութիւնը միակերպ և ամենայարմար ուղղութիւն ստանար, և այլն։ Մէկ տարի կարելի է, օրինակ, հաւաքուել Տփխիս, միւս տարի Երևան, ապա Շուշի, Նուխի, Սղնախ, Ագուլիս, և այլն։

Երբ ժողովուրդը կը սկսի նուրբ զգալ իւր օգուտը, երբ նա կը սկսի իւրեան պատուել և կամենալ պատուաւոր մարդոց արժանի ապագայ պատրաստել իւր զաւակների համար, այն ժամանակ վերոյիշեալ և սորա նման առաջարկութիւնները դիւրութեամբ կը կատարուին։

. Այս կամ այն անձին վերայ յոյսը դնելով ոչինչ չի լինել; ինքը ազգը, ամենայն քաղաքների ժողովուրդը պիտոյ է աչքը բաց անեն, հասկանան իւրեանց օգուտը և իւրեանց օգտից համեմատ լուսաւոր և քանքարաւոր վարժապետներ պատրաստեն ազգային դաստիարակութեան և ազգային լուսաւորութեան համար։ Փոյթ չէ, եթէ այսպիսի բանը այսօր կամ վաղը լինելու չէ։ Թող ամենայն Հայ այսպիսի մտքեր քարոզէ ժողովրդեան մէջ; թող ամենայն Հայոց կաթուղիկոսը [1]), բոլոր եպիսկոպոսք, քարոզիչք, քահանայք, խմբագիրք, ատենաբանք, ամենայն տեղ. սուրբ տաճարում, կոնդակներով, հիւրընկալութեան մէջ, կնունքի ժամանակ, պսակի և հարսանեաց ուրախ ժամերը, թաղման տխուր ծէսը կատարելիս, տարէն տասերկու ամիս, անդադար, շարունակաբար այսպիսի բաներ քարոզեն, այսպիսի նպատակներին աշխատեն հասանել և գործը գլուխ կը գայ։ Առաջ կը լսեն, ապա կարելի է մի քանիսը բամբասեն էլ, ապա կ'սկսեն խորհել այս առարկայի մասին և վերջը իւրեանք ձեռնամուխ կը լինին գործին։ Ես ոչինչ էլ չեմ ասում այն փրկաւէտ և արդիւնալից հետեանքներին, թէ այս-

---

1) Ընդհանրական չեմ ասում, այն պատճառաւ, որ մեր ականջը սովորել է ազգային կաթուղիկոսին «ամենայն» ածականը տալ, իսկ կաթոլիկների արքային «ընդհանրական» ածականը, այսպէս կաթուղիկոս ամենայն Հայոց, ընդհանրական արքայ, և այլն։ Ասէն, թէ քերականութեան կողմանէ երկու ածականն էլ, այսինքն «ամենայն և ընդհանրական», այս անգամ մի նշանակութիւն ունին; ես կը պատասխանեմ. այո, ճշմարիտ է, վասն որոյ հարկ չկայ փոխելը և, «ամենայնի» տեղ, «ընդհանրական» կոչելը։ Հասկացողին մէկ, չհասկացողին հազար. Sapienti sat.

պիսի անդադար քարոզը ինչ տպաւորութիւններ պիտոյ է անէ մանկանց նուրբ և զգայուն սրտերին, և որպիսի ազնիւ զգացմունքներով տղայք և աղջկունք պիտոյ է մեծանան այսպիսի սրբազան խօսակցութեան և քարոզների ազդեցութեան տակ:

Միմիայն միշտ ի մտի պիտոյ է ունենալ, որ օգնել, աշխատել կարող են և պարտական են ամենքը, մեծից մինչև փոքրը. ծեր և երիտասարդ, կին մարդ և տղամարդ, ունևոր և չքաւոր, որը դրամով, որը անձնական աշխատութեամբ; իսկ գործին կարգադրութիւն տալը, ուղղութիւն տալը պիտոյ է լինի և պիտի ընտրեն նորան, ով առաւել վարպետ է և ընդունակ այս գործի մէջ: Ով գիտէ միմիայն փինաչութիւն (հնակարկատութիւն) թող դերձակի գործի մէջ տնօրէնութիւն չանէ: Ամենայն բանի մէջ ուղղութիւն տուողը, կառավարիչը, տնօրէնութիւն անողը պիտոյ է լինի ամենից ընդունակը և վարպետը այդ գործի մէջ: Կարճ եմ ասում, բայց կամեցողը միտքս կը հասկանայ, որ կամենում եմ Սողոմոնի խօսքը մէջ բերել, թէ «որ հանճարեղն է՝ զառաջնորդութիւնն նա ստասցի»:

Ցանկանալի էր, որ մեր ազգային ուսումնարանների թիւը լինի որքան կարելի է շատ; ազգի նպատակն լինի որ, ժամանակաւ, հայ չի լինի, թէ աղջիկ, թէ տղայ, որ, գոնեա, կարդալ, գրել, գլխաւոր աղօթքները և քանի մի ընտիր ազգային երգեր չգիտենայ, բայց ամէն գործին պիտոյ է ձեռնամուխ լինին խոհեմութեամբ, այսինքն աղբիւրին, դրամական միջոցներին նայելով. այս պատճառաւ պիտոյ է ուսումնարանների թիւը այնքան լինի, որքան նիւթաւոր միջոցքը ներումեն: Լաւ է ուսումնարանների թիւը լինի փոքր, և այդ ուսումնարանները ամենայն կողմանէ լինին կանոնաւորեալ և ապահոված, քան թէ շատ ուսումնարաններ և բոլորն էլ անկանոն և ողորմելի դրութեան մէջ: Մանաւանդ պիտոյ է բարւոքել վարժապետների դրութիւնը: Մինչև ուսումնարանի վարժապետների և վերատեսուչների ռոճիկը բաւական չի լինի նոցա թէ նիւթական և թէ հոգևոր պիտոյքը ապահովացնելու համար, մեք չենք կարող ունենալ արժանաւոր, իւրեանց վեհ և խորհրդաւոր կոչման «համապատշաճ» ուսուցիչներ և ուսումնարանների վերատեսուչներ: Զանազան հնարներ և միջոցներ կան դրամք ձեռք բերելու ազգային լուսաւորութեան մասին.

1) Գլխաւորն, ինչպէս վերևը ասացի, շարժել ժողովրդի համակրութիւնը քարոզներով, գրքեր տպելով, և այլն:

2) Համոզել ժողովրդին, որ ամենայն առանձին գերդաստան, որքան կարողութիւնը ներում է, ինքնակամ տարեկան հարկ ընդունէ ազգային լուսաւորութեան համար:

3) Ամենայն եկեղեցիների և մատուռների մէջ առանձին արկղ լինի, ուր որ հաւաքուին կամաւոր նուէրք ուսումնարանների համար:

4) Ամենայն եկեղեցիների մէջ առանձին գանձանակ լինի այդ մասին:

5) Ուխտատեղերում, տօն օրերին, կնքատուէքի, պսակի և թաղման ժամանակ առանձին ստորագրութիւններ, ժապաւինեալ մատեաններով:

6) Զանազան նուէրք հաւաքուի, բաց ի դրամից, զորօրինակ. աղիւս, շինութեան ժամանակ; ապակիի մանր անօթներ աղքատ երեխայից թանաքամանի տեղ գործ ածելու (Տիփլիսը և Կ. Պօլիսը, կարծեմ, տարին մօտ 1,000 մանէթի ապակեղէն, շուշէք, կարող է տալ), թուղթ, գրիչ, գրենք գրադարանների և աշակերտաց համար, ուտելիք, հագուստ, և այլն:

7) Հրապարակական ընթերցանութիւնք, թատրոն, վիճակախաղ (лотерея, loterie):

8) Պատուաւոր հոգաբարձուներ և ուսումնարանի անդամ նըշանակելով այն անձանց, որոնք տարեկան նուէր կը տան:

9) Ունևոր աշակերտների թոշակը:

10) Նոր տարին և զատկին, բարեկամաց այցելութեան, վիզիտների տեղ, նշանակած գումար, յօգուտ ուսումնարանների:

12) Ուսումնարանները կարող են տպագրողներից առնել նոցա տպագրութիւնքը և 20% զեղչումն որ տալիս է ամենայն տպագրող, երբ 25—50 օրինակ կառնեն, կը մնայ օգուտ ուսումնարանին, և այլն:

Պիտոյ է անդադար հսկողութիւն ունենալ, որ ելևմուտը կանոնաւոր և միշտ հրապարակական հաշուատուութեան տակ լինի; ամենայն տարի բոլոր ելևմուտքի հաշիւը մանրամասնաբար տպել տալ լրագիրների մէջ և առանձին բաժանել բոլոր քաղաքի ժողովրդեան: Ոչ ոք. ոչ վիճակաւոր և ոչ հոգաբարձուք չունին ոչինչ իրաւունք գաղտնի վարուել հաշուատուութեան հետ: Այն գումարն, որ ժողովրդինն է, հասարակութեանն է, ուսումնարանինն է կամ եկեղեցւոյ, պարտական է առանց այլևայլութեան և ժողովուրդը ունի սրբազան և անհերքելի իրաւունք պահանջել մանրամասն հաշիւ և

ինքն ընտրել այն անձինքն, որոնք պէտք է անեն ծախսը և հաւաքեն գումարը։ Երբ հաշուատուութիւն կը լինի մանրամասնապէս հրապարակական, ժողովրդի հսկողութեան և նորա անմիջապէս կառավարութեան տակ, երբ ժողովուրդը կը ներկայանայ, որ ոչ մի կոպէկ առանց օգտի և անտեղի չէ ծախս արած, այն ժամանակ նա իւր տուրքն էլ և իւր եռանդն էլ կ'աւելացնի ազգային յառաջադիմութեան համար։

Մի և նոյն հրապարակական և մանրամասն հաշուատուութիւնը պիտոյ է լինի և ուսումնարանի բոլոր կառավարութեան մասին։

Բոլոր վերոյիշեալ հարցմունքների մեկնութիւնը և գործ դըրվելը կարող են տարածվիլ ազգի մէջ օգնականութեամբ և բանաւոր ազգասէր և հասկացող մշակների անդադար համբերական (համբերատար, patient, терпѣливый) աշխատութեամբ և ազգային հանդիսագրութեան օգնականութեամբ։

Աւելորդ չենք համարում այս տեղ քանի մի նկատմունք անել ազգային հանդիսագրութեան մասին։

Ինչ մարդ որ փոքր ի շատէ հետաքրքրութեամբ կարդումէ մեր այժմեան հայոց լրագիրները և օրագիրները, չէ կարող չը նկատել, ի միջի այլոց, երկու ականաւոր ուղղութիւն, որ մեր այժմեան հրապարակագրութեան մէջ. ա) չկայ որ և իցէ հարցմունք, որի մասին երկու կամ երեք «արժանաւոր» խմբագրութիւնք ունենան մի և նոյն հայեցուածք և դատողութիւն և բ) բոլոր մեր լրագիրները և օրագիրները դառնապէս գանգատումեն, թէ ժողովուրդը չէ տալիս նոցա խրախոյս, չէ քաջալերում խմբագրութեան աշխատութիւնը և բոլորեքեանը նոքա, ո՛չ թէ չունին ոչինչ օգուտ, այլ և կրումեն վնաս։

Մենք կարծումենք, որ փոքր ի շատէ ճիշդ մեկնութիւնից վերոյիշեալ երկրորդ հարցմունքիցը, բաւական պարզ կը մեկնուի առաջին խնդիրը, վասն որոյ կամենումենք յայտնել մեր նկատմունքը, իբրու թէ, ժողովուրդի սառնութեան վրայ և քննենք, արդեօ՞ք մեղաւոր է այնքան ազգը, որքան որ մեղադրումէ նորան մեր ազգային հրապարակագրութիւնը։

Ամենայն մարդ դատումէ, վճռումէ կամ քննումէ իւր հասկացողութեան համեմատ; այդ հասկացողութիւնը կախուած է ուսումից, կրթութիւնից, խելքի և դատողութեան զօրութեան աստիճանից; հեղինակի հասկանալուց ժողովրդի կեանքը, դրութիւնը և

պիտոյքը։ Մեր անցեալը, ազգի անկախութիւնը կորցնելուց սկսած, այնպէս է, որ մենք չենք կարող ունենալ մէկ փոքր ի շատէ միակերպ հասկացողութիւն մեր պիտոյքը, մեր գրութեանը և այն ուղղութեանը, որով մենք պէտքէ կանոնաւորենք մեր ընթացքը։ Ընթանալ յառաջադիմութեան (պրօգրէ, прогрессъ) հետ, յետ չի մնալ ուրիշ ազգերից, կարող է միայն այնպիսի ազգ, որը որ իւր սեփական, ընդհանուր, ազգային գործողութեամբ մասնակից է ընդհանուր, հասարակաց զարգացման մէջ։ Մէկ ազգ, որ մասն չունի նոր սկզբանց զարգացման մշակելու մէջ, չէ կարող համոզուիլ այն սկզբունքներով։ Այսպիսի ազգը, միայն երկար ժամանակուայ արտաքին գրգռմունքներից ետոյ, կարող է օգուտ քաղել նոր զարգացման հետևանքներից, որի մէջը նա ինքը, իւր սեփական գործողութեամբ, մասնակից չէ եղել։ Մէկ ազգ, որ չունի անկախութիւն, ինքնագլխութիւն, չէ կարող զարգանալ ուղիղ ճանապարհով և էս պատճառաւ այսպիսի ազգը յետ կը մնայ։ Մանաւանդ յետ պէտք է մնայ այնպիսի ազգ, որի մէջ «ազգութեան» հաստատ և ճշմարիտ հասկացողութիւնը չէ պարզուել և չէ հաստատուել, որը որ ազգային միութիւն, համաքնակցութիւն չունի։ Այսպիսի ազգի մտաւոր զօրութիւնը չէ կարող լինել տպաւորուած միակերպ՝ հասկացողութեամբ ազգայնութեան մասին, և գրեթէ ամեն մի անհատի հայեցուածքը այդ հարցմունքի վերայ զանազան կը լինի և բոլոր անհատներ ի միասին չեն կարող կերպաւորել մէկ ազգային հասարակաց դատողութիւն, որի ներգործութիւնը կարող լինի կերպաւորել մեզ բոլոր ազգի մասնակցութիւնը ընդհանուր ազգային յառաջադիմութեան մէջ։ Այսպէս, ազգային ինքնագլխութիւն և անկախութիւն չունենալը պատճառ է, որ չունենք մի և նոյն ազգայնութեան գաղափարը էս։ Ազգի բաժանուած և ցիրուցան լինելը, արգելք են եղել ազգի միակերպ, միակամ և բոլոր ազգային զօրութեամբ համազօր մասնակից լինելուն հասարակաց յառաջադիմութեան մէջ և այս պատճառներն են, որ չեն ներում ազգին համոզուել հասարակաց յառաջադիմութեան հետևանքներով։ Բոլորն այս եղաւ խեղճուկ Հայոց ազգի հետ, թէպէտ մեր ազգը ունի բոլոր նիւթերը, տարրերը համախումբ կեցութեան համար. միութիւն սերնդեան, լեզուի, դաւանութեան և համարեա թէ և ֆիզիկական և մտաւորական բնաւորութեան։ Այսպիսի աննախանձելի դրութեան պատճառքը հին, մաշուած սկզբունքներն են —

որոնց հին ժամանակը մեզ սեփականել են օտար ազգութիւնները, որոնք շինեցին մեզ գործիք, մեզ համար օտար նպատակների, այլակերպեցին մեր կեանքը և արգելք եղան հաստատուելու մեր մէջը ազգի միութեան և ընդհանուր հայոց ազգայնութեան գաղափարի։ Ամերիկացւոց եւ. եւելի ոտոիկան (մինիստր) Սիւարդը ասաց, թէ. «կայ օրէնք, որը որ վէր է, գերազանց է բոլոր ազանց օրինաց վերայ և այս վեհագոյն օրէնքը, աստուածանական և բնութեան օրէնքն է», Մեր ազգի տիրապետողներն և մենք ինքներս միշտ, կամ շատ անգամ, մեղաւոր ենք եղել այս սրբազան և վերին օրինաց դէմ։ Մէկ ազգ, որ համոզուել է և կամք ունի դուրս գալ այսպիսի խեղճուկ դրութիւնից, և կամենում է յառաջ տանել իւր ազգային զարգացման, յառաջադիմութեան դրօշակը, պէտք է հասկանայ, որ ճշմարիտ կենցաղագիտական, քաղաքական (պօլիտիկական) իմաստութիւնը կը դիմէ իւր սրտի կամեցած գաղափարները գոյացնել ըստ իւր կարողութեան, համեմատելով իւր կարողութիւնը և ունեցած միջոցները հակառակորդի զօրութեան հետ և մտաւոր զարգացման այն հասարակութեանը, որի համար գործ է ածում իւր գործունէութիւնը և որի վերայ ներգործումէ, զորօրինակ, եթէ վեր առնենք մեր ազգի դրութիւնը ուսման կողմանէ, մենք չենք կարող չի խոստովանել, որ ազգի ուսման հիմանց տակ պէտք է դրած տարածումն ժողովրդի մէջ «բնական, դրական» գիտութեանց և պատմաբանական ուսումն, այս գիտութեանց ամենամօտ ճիւղերով։ Այժմեան հասարակութեանը չկայ փրկութիւն առանց բնական գիտութեանց, առանց այնպիսի մտաց և խելաց առողջ կերակուրի, որը որ մարդոյ միտքը դաստիարակումէ դրական փաստերով (ֆակտերով), օրինակներով. ակներև և շօշափելի առարկաներով, մօտացնումէ և ճանաչեցնումէ մեր շրջակայ և մեզ պատող և միշտ մեր վրայ ամենահզօր ներգործութիւն ունեցող բնութեան հետ և հնազանդեցնում է մարդս բնութեան անկախութեան առաջև։ Բնական գիտութիւնքն են ամենագերազանց դեղթափը ընդդէմ հազարաւոր մոլար հասկացողութեանց, որոնք յետ են գցում ազգի յառաջադիմութիւնը, պահումեն մեզ կուրութեան մէջ, արգելումեն մեզ տեսանել ճշմարտութեան ճառագայթը, շղթայի մէջ կապած են պահում մեր բանականութիւնը և պատճառ են զանազան վնասակար համոզմանց և պէսպէս վայրենի, անմտական մոլեռանդու-

թեանց [1])։ Վերոյգրեալ իմաստներից երեւում է, որ մենք, ժամանակակիցքս, մեղաւոր չենք, որ չունինք և չենք կարող փոքր ի շատէ միակերպ զարգացում և կատարեալ լուսաւորութիւն ունենալ; սորանից էլ յայտնի է որ, որ և իցէ խմբագրութիւնք զուր տեղ է մեղադրում ժողովրդին նորա սառնութեան մասին առ ազգային օրագրութիւնը։

Այդպիսի մեղադրութիւնը կը լինէր անարդար ազգային օրագիրների և լրագիրների կողմից. այն ժամանակն էլ, եթէ նոքա իւրեանց պարունակութեան կատարելութեամբ, ժողովրդի պիտոյքը, հասկացողութիւնը, մտաւոր և մարմնաւոր դրութիւնը, ախորժակը և ճաշակը ճանաչելով շարժէին ազգային գրականութեան և լուսաւորութեան ասպարէզումը, բայց որքան ընդդէմ է անաչառ արդարութեան առաջև, երբ որ այս կամ այն խմբագրութիւնը բաւական հեռու է այդ կատարելութիւններից։ Թողնումենք հասկացողների դատողութեանը, որ նոքա քննեն, թէ որքանը, կամ որը մեր օրագիրներից կամ լրագիրներից պատասխանում է վերոյիշեալ կատարելութեանց և իւրեանց կոչմանը։

Մենք ասացինք, որ չկան մեր գրականութեան մէջ երկու լրագիր կամ օրագիր, որ ազգային որ և իցէ հարցմունքի մէջ, կամ գիտութեան ասպարէզումը ունենան մի և նոյն և իւրեանց սեփական ուղղութիւն, հայեցուածք և առողջ դատողութիւն [2])։

---

1) Երևելի Անգլիացոց պատմաբանը Մակոլէի, իւր Անգլիայի պատմութեան 1 հատորի, III գլխի մէջ, ասում է. «Ոչինչ սովորական վատաբաղդութիւնք, ոչինչ սովորական վատ կառավարութիւնչեն կարող այնքան վնասել ազգին, որքան որ անդադար յաջողութիւնքը (յառաջադիմութիւնը) բնագիտութեան և ամենայն անհատի (մարդոյ) ճգունքը բարուոքել իւր դրութիւնը կարող են օգուտ բերել նորան։ Յաճախ պատահել է, որ շռայլ ծախսերը, անտանելի հարկատուութիւնքը, անպատեհ հարստահարութիւնը վաճառականութեան, կաշառակեր դատաստանատունքը, տարաբաղդ պատերազմունք, վրդովմունք, հալածմունք, հրդեհք, հեղեղք չեն կարող այնպէս արագ քանդել, ոչնչացնել մարդկան նիւթական գանձը, որքան որ այդ մարդոց ջանքը և ճգունքը կարողացել են ստեղծել, շինել այդ հարստութիւնքը»։

2) Եթէ գտանում է նոցա մէջ ժամանակ առ ժամանակ համակրութիւն, այն էլ միմիայն միւս օրագրին վնասելու, պախարակելու և անվայել ճանապարհաւ իւրեանց նպատակին հասանելու համար միայն։

Սորա պատճառքը երկու են. ա) մեր խմբագիրներից և նորա օգնականներից շատերն չեն ստացել փոքր ի շատէ կատարեալ ուսում և չեն ծանօթ Եւրոպայի գրականութեան զանազան դարերի և այժմեան առաջնակարգ հեղինակների և Եւրոպայի այժմեան հրապարակագրութեան հետ և բ) չեն իմաստասիրել ազգային հին և նոր գրականութիւնը և ծանօթ չեն հասարակութեան դրութեան և պիտոյից հետ: Նուրբ ծանօթութիւնը ազգի դրութեանը, նորա պիտոյից, հին և նոր գրականութեան, կեանքի և այժմեան ժամանակի, հեշտ գործ չէ: Այս պատճառաւ պիտոյ է նախ և առաջ կանոնաւոր ուսում ունենալ, ընդունակութիւն և հմտութիւն, թէ ազգի գրականութեան և թէ նորա պիտոյից և միջոցների հետ և խոնարհել փակտերի առաջև և ոչ թէ առաջուց ստեղծել իւր գլխի մէջ որ և իցէ իդէայ, հասկացողութիւն, գաղափար, որ և իցէ կեանքի, հարցմունքի վերայ, և այդ հարցմունքները բռնադատութեամբ կոխել իւր սեփական նախապաշար գաղափարների սահմանը: Կեանքը գաղափարների բռնաւորութեանը չէ հնազանդում և այդպիսի բռնադատութիւններից ծագում է միայն կորուստ ժամանակի և հոգևոր և մարմնաւոր կորուստ ժամանակակիցներու, և եթէ հանդիսագրութիւնը հասկանար միշտ կեանքի և հասարակութեան պահանջմունքը և ամենահարկաւոր, նախադաս պիտոյքը, վնասի տեղ, մեծ օգուտ կը բերէր ազգին և առաջ կը մղէր ազգային յառաջադիմութիւնը: Երեսնամեայ պատերազմը կաթոլիկների և լուտերականների մէջ Գերմանիայումը (Ալլէմանիայումը), Ալբիգոյեցոց և ուրիշ կրօնամոլ պատերազմները Ֆրանսիայում, և այլն, բոլորն մտաց և գաղափարների բռնադատութեան հետևանքն էին, բայց կեանքը չհնազանդեց այդ բռնաւորութեանը. արեան գետեր թափուեցան, իսկ կեանքը և հասարակութիւնը գնացին իւրեանց ճանապարհով, այն ճանապարհով, որ այն ազանց անցեալ կեանքի հետևանքն էր:

Տեսական գաղափարների (տէօրիայի, théorie, теорія) մէջ բոլորն կանոնաւորուած է, գեղեցիկ կարգով շարած, բայց ողջամիտ քննողը, կրիտիկոսը, երբ որ կեանքի մէջ պատահումէ այնպիսի դիպուածների հետ, որոնք չեն մտանում այդ տէօրիայի գծի տակ, նա թողնումէ իւր տեսական գաղափարը, և նորից սկսումէ ուսանել փակտերից (le fait, фактъ), գործից, կեանքից: Այսպիսի տէօրէտիկները քիչ են մեր մէջը, շատ քիչ, իսկ իւրեանց, առաջուց

ստեղծած տէօրիայի կանոնով քննող, զննող, քանդող և ձևող տէօրէտիկները շատ ու շատ են, էնդուր էլ կեանքը միշտ ընդդէմ է ելանում այսպիսիների դէմ, և սոցա գործունէութիւնը համակրութիւն չի գտանում ազգի և հասարակութեան մէջ; էս պատճառաւ էլ ազգը և կեանքը գնումեն մէկ ճանապարհով, իսկ խմբագրութիւններից շատ մասը այլ ճանապարհով։

Ցանկալի էր, որ մեր խմբագրութիւնը քննէր մանրամասնաբար, թէ ինչ պիտոյ է անել որ մեր լրագիրները, օրագիրները և ամսագիրները, որպիսի ճանապարհով կարող լինէին առաւել օգուտ բերել, թէ ազգին և թէ հանդիսատէրերին, և մէկ մանրամասն պրօգրամմա շինուէր, թէ ազգային հանդիսագրութեան համար, և թէ, մասնաւորապէս, իւր թղթակիցների (correspondant, корреспондентъ) համար, և միջոցներ գտանէր, որ ազգային հանդիսագրութիւնը ունենար, որքան կարելի է շատ և շատ ընդունակ թղթակիցներ։ Նայելով մեր ազգի ցրուեալ դրութեանը, թղթակիցներութիւը բազմացնելու մեծ ջանք պիտոյ է։ Իւրեանց կոչման զուգակշիռ և ընդունակ թղթակիցները ամենամեծ օգուտ կարող են բերել ազգային մտաւոր հաղորդակցութիւնը իրար մօտացնելու, ազգի ցրուեալ մասերը իրար ծանօթացնելու, նոցա դրութիւնը և պիտոյքը, առանձին մասնաւոր հարցմունքից, հասարակաց, ազգային հարցմունք շինելու, և այլն. միով բանիւ ցրուեալ հայոց ազգը, նորա պիտոյքը, նորա նպատակները, նորա ուղղութիւնները բարոյապէս միացնելու, ընդհանրացնելու, միատեղ, միակամ և միաշունչ խորհելու առարկայ դարձնելու։

Այս մասին պիտոյ է, որ ամենայն խմբագրութիւն աշխատէր զանազան տեղեր, ուր կը բնակվին մերազնեայք, առաջաւոր և ուսումնասէր անձանց մէջ իւրեանց թղթակից գտանէր, որ այդ թղթակիցը հաղորդէր խմբագրութեան անաչառ ստորագրութիւն այն անցքերի, որ լինումէ հասարակութեան կեանքի մէջ և ներգործումէ նորա վերայ, որ և իցէ կողմանէ։ Երբ որ ամենայն խմբագրութիւն կունենայ զանազան հայաբնակ տեղեր իւր առանձին թղթակիցներ, այն ժամանակ, որ և իցէ լրագիր, առաջարկելով միւսներին իւր թղթակցութիւնքը, ինքն էլ իրաւունք կունենայ վեր առնել նոցանից բոլոր նոցա թղթակցութիւնքը ազգային դրութեանը վերաբերեալ։ Որքան որ մեր հանդէսների «ազգային» մասը լինէր ընդարձակ և լի, այնքան, կարծեմ որ, այդ հանդէսները, առաւել

համակրութիւն կունենային ժողովրդի մէջ և բաժանորդաց թիւը կը բազմանար։ Պիտոյ է միայն որ այդ թղթակցութիւնքը լինին անկողմնապահ, առանց կրքի գրած, քննութիւնք և մեկնութիւնքը անցքերի խոհեմ, զգոյշ և անկեղծ։ Ո՛չ շողոքորթութիւն պիտոյ է այս կամ այն անձների, ո՛չ էլ անվայել ածականներով պարսաւանք։ Հայհոյելով ոչինչ օգուտ չեն քաղիլ; պիտոյ է նախ և առաջ մանրամասն և դրական փաստերով ապացուցել ստորագրութիւն այս կամ այն անցքի և ետոյ նորա մեկնութիւնը, թէ ինչ պատճառաւ այս կամ այնցքը եղել է և ինչ խոհեմ և գործնական ճանապարհներ և միջոցներ կան, որ ամենայն ինչ, որ վնասակար է, նորա վնասը նուազացնել և ժամանակաւ ամենևին ոչնչացնել։

Առ հասարակ շատ ցանկալի կը լինէր, որ յետագայ լուրերը և տարեկանները հաղորդուէին մեր օրագիրներին, շաբաթագիրներին և ամսագիրներին։

Ա. Որքան հոգևոր վիճակ կայ թէ բուն Հայոց, և թէ Հայ կաթոլիկների, բոլոր տիեզերքումը; վիճակների տարածութիւնը (գլխաւոր քաղաքները և սահմանը), վիճակաւորի նստելու տեղը; նորա իրաւասութիւնը, ռոճիկը և ապրուստի աղբիւրքը; ուր տեղ եւ որքան եկեղեցի կայ; քահանաների եւ վարդապետների թիւը; նոցա ապրուստի աղբիւրքը; վանօրէից եւ եկեղեցեայց ստորագրութիւնը եւ որպիսի դրութեան մէջ են; նոցա կառավարութիւնը, առանին պարապմունքը։

Բ. Բոլոր տիեզերքումը, ո՞ր տեղ, ո՞ր քաղաքում եւ գիւղում ո՞րքան Հայ գերդաստան կայ, որքան արու եւ էգ, նոցա գլխաւոր պարապմունքը, առեւտուրը, ապրուստը; զանազան հարկատուութիւնքը, ինչ օրէնքով են կառավարվում; կենցաղավարութիւնը, տարեկան եկամուտը, որպիսի յարաբերութիւն ունին, թէ կառավարութեան եւ թէ նոյն տեղերի միւս ազգերի հետ; ուղղութիւնը; երկրի օդի բարեխառնութիւնը, ամառուայ, աշնան, ձմեռան եւ գարնան երկարատեւութիւնը եւ նոցա ցրտի եւ տաքի սաստկութիւնը Ռէօմիւրի կամ Ֆարենհէյտեան ջերմաչափի վերայ; այն ժողովրդի լեզուն եւ նոցա օրինակները, այսինքն տեղական ռամկական Հայ լեզուաւ գրած մի առակ, կամ որ եւ իցէ խօսակցութիւն; ժողովրդի ասուածքը, տեղական բառերը, երգերը, խաղալիքը, հագուստը եւ զէնքի հետ վարուելը կը սիրեն թէ ո՛չ, եւ ինչ պատճառաւ; ինչպէս են իւրեանց ժամանակը անցուցանում

տանը, հասարակութեան մէջ; տեղական կառավարութեան հետ որպիսի յարաբերութիւն ունին; ի՞նչ յարգանք ունին կառավարութեան առաջև եւ ինչ է պատճառն, եւ այլն։

Գ. Մանրամասն ստորագրութիւն բոլոր ազգային հասարակաց և մասնաւոր ուսումնարանների, վանքերի, քաղաքների և գիւղօրէից; երբ է հիմնած, ով է հիմնադիրը, ուր տեղ կայ տպած այդ վարժարանների ստորագրութիւնը, որքան դասատուն կայ; ինչ են ուսուցանում և որքան ամենայն դասատունում, աշակերտաց թիւը, նոցա հասակը, որպիսի ծնողաց զաւակունք են, նոցա ունեւորութիւնը; ինչ սկզբունքներով են սովորում; հեղինակների անունը, գրքի մեծութիւնը և ճակատագիրը, արժողութիւնը; վերատեսուչների և վարժապետների թիւը; ո՞վ և ո՞ր տեղ է իւր ուսումն առացել; ինչ հեղինակութիւն ունի տպած; նոցա ռոճիկը; որքան ժամ է պարապում տարին; վարժարանի հարստութիւնը; գրատան ստորագրութիւնը; ինչ կարգաւ են ստանում կարդալու գրեանք աշակերտք և վարժապետները; ուսումնարանների տան կամ վարժատան շինուածոց մանրամասն ստորագրութիւն և հասցէքը (քաղաք, փողոց և տան № կամ տան տիրոջ անունը); աշակերտաց խաղալիքները, սենեակների օդը, մաքրութիւնը, օդափոխութիւնը, և այլն; հաշուատեսութիւնը ուսումնարանի; տեղական ժողովրդի համակրութիւնը, ներգործութիւնը և ուսումնարանի գործերի մէջ խառնուիլը, և այլն։

Դ. Ո՞ւր տեղ, ո՞ւմ մօտ ինչ ազգային ձեռագիրներ, հին դըրամներ, զէնքեր և այլ հնութիւնք կան; նոցա ճիշդ ստորագրութիւնը; զանազան հին աւերակների, արձանների ստորագրութիւնքը։

Վերոյիշեալ տեղեկութիւնքը կարող էին հաւաքել մեր սըրբակրօն քահանայքը, ուսումնարանների ուսուցիչքը և, առ հասարակ, ամենայն ուսումնասէր և ազգասէր հայազգիք։ Թող լիհասկանան, որ այսպիսի աշխատութեամբ մեծ ծառայութիւն կանեն ազգի օգտին և բարելաւութեանը։ Բայց ամենամեծ արդիւնաւոր օգնականութիւն կարող է տալ սորան նախ և առաջ կաթուղիկոսն ամենայն հայոց, եթէ բարեհաճի առանձին կոնդակաւ առաջարկել բոլոր հայազգի վիճակաւոր առաջնորդներին, քահանաներին, ուսումնարանների հոգաբարձուաց, վերատեսուչներին և վարժապետներին ամենայն ջանքը գործ դնել այս տեղեկութիւնքը հաւաքելու և հրատարակելու թէ ազգային հանդէսների մէջ և թէ առանձին; նմա-

նապէս Օսմանեան տէրութեան Կ. Պօլսոյ և Երուսաղեմայ սրբազան պատրիարքները, սրբազան վիճակաւոր առաջնորդները, ազգային ժողովները և, առ հասարակ, ամենայն խելացի և ազգասէր հայք, որոնք սրտով սիրումեն և հասկանում ազգային յառաջադիմութեան խորհրդաւոր և վեհ խնդիրը։ Այսպիսի տեղեկութիւնքը, երբ որ զանազան ազգային օրագիրներում հրատարակվին, պիտոյ է որ ետոյ, տարէց տարի, ժողովվին միատեղ, կարգի ձգվին և առանձին նորից հրատարակվին, թէ օրացոյցների հետ և թէ առանձին։ Մենք զարմանումենք նմանապէս, թէ ինչո՞ւ մեր ուսումնականքը նամակագրութիւն (correspondance, корреспонденція) չեն անում. Ռուսաստանի հայերը Ռուսաց, իսկ Օսմանեան տէրութեան հայերը գաղղիացոց առաջնակարգ օրագիրների հետ, հաղորդելով նոցա զանազան տեղական լուրեր և անցքեր։ Այսպիսի թղթակցութիւնը շատ օգտաւէտ հետևանքներ պիտոյ է ունենայ բոլոր երկրի համար։ Ռուսիաբնակ ազգակիցներուս խորհուրդ կուտանք Տիֆլիզից, Ելիսավէտպօլից (Գանձակ), Շուշիից, Բաքուից, Նուխիից, Շամախիից, Երևանից, Ալէքսանդրապօլից, Ախալցխայից, Աղնախից, և այլ տեղերից, թղթակցել С.-Петербургскія Вѣдомости, Биржевыя Вѣдомости, Голосъ, և այլ օրագիրների հետ։

Ե. Յայտնի է, թէ ինչ մեծ ներգործութիւն ունին մեր մէջը հոգևորականքը; առանց որ և իցէ ապացուցութեան հասկանալի է ամենեցուն թէ որքան պիտոյ է ջանք դնել, որ այդ ներգործութիւնը լինի, որքան որ կարելի է, արդիւնաւոր, յօգուտ ազգային բարօրութեան, ամենայն կերպ բարելաւութեան և յառաջադիմութեան։ Ինչպէս ուսուցիչների նմանապէս և հոգևորականաց,—խօսքս մեր ողորմելի քահանայից և սարկաւագաց վրայ է,—դրութիւնը ամենաթշուառ վիճակի մէջ է։ Ուսումն առած մարդը, այն անձը, որ կարող է իւրեան որ և իցէ կերպիւ ապահով կեանք և ապրուստ գտանել, փախչումէ քահանայութիւնից, որովհետև քահանայի կեանքը, ապրուստը և ապագայն չէ ապահոված, ո՛չ նիւթական կողմանէ, ո՛չ բարոյական։ Քահանան չունի 1) կանոնաւոր, հաստատ իւր և գերդաստանի համար, ապահով եկամուտ; 2) քահանայի յարաբերութիւնը, ստորադրութիւնը ոչ թէ միայն վիճակաւոր եպիսկոպոսի և կոնսիստորիայի առաջև, այլ և առ հասարակ սոսկ եպիսկոպոսների և մինչև վարդապետների առաջև անտանելի ստրկային (рабскій) է։ Թողլով այս հարցմունքի խոհեմ, բայց

անաչառ և մանրամասն քննութիւնք մեզանից առաւել հմուտ տեղեկութիւն ունեցողներին. այս տեղ նկատենք միայն այն, թէ որ և իցէ սովորական յարաբերութիւն անհնարին և հիմնովին ընդդէմ է բոլոր աւետարանին և Քրիստոսի տուած քարոզներին և օրինակներին, ընդդէմ է Տեառն մերոյ այն խոնարհութեան օրինակին, որն կտակեց, յիշատակեց աշխարհին, լուանալով իւր աշակերտաց ոտը և ի խաչ ելանելով բոլոր մարդկութեան փրկութեան համար: Մենք հայերս ճանաչումենք մեր սուրբ և առաքելական եկեղեցւոյ գլուխ՝ միմիայն Քրիստոսին; ոչ մէկը մեր պատուական հայրապետներից չկամեցաւ և չյանդգնեցաւ իւրեան հայաստանեայց եկեղեցւոյ գլուխ կոչել. «մի՛ զոք կոչէք Տէր, զի Տէրն և վարդապետն ձեր Քրիստոս է»: Վասն որոյ, մեր սուրբ եկեղեցւոյ հիմնողի, Գլխի և Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի աւետարանական, փրկական սուրբ հրամանը սրբութեամբ և ճշդութեամբ կատարելու համար, մերժենք, հեռացնենք մեզանից որ և իցէ սովորական յարաբերութիւն: Պիտոյ է որոնել այդ նպատակին հասանելու ամենախոհեմ և ճիշդ ճանապարհները: Այդ համար երեք ճանապարհ կայ. Ա. պիտոյ է միատեղ գումարել և տպագրութեամբ հրատարակել ի գիտութիւն բոլոր ազգի, թէ աշխարհականաց և թէ հոգևորականաց, կանոնագիրքը և մեր սուրբ ժողովների բոլոր կանոնադրութիւնքը, կանոնաւոր մեկնութեամբ, որ ամենայն եկեղեցական անդամի բոլոր իրաւունքները և այդ իրաւունքներին համակերպ պարտաւորութիւնքը և պատասխանատուութիւնքը, կաթուղիկոսից սկսած մինչև եկեղեցւոյ ստորին սպասաւորը, և նոցա ընտրութեան կերպը և կանոնը ծանօթ լինի ամենեցուն: Այսպիսի տպագրութիւնը պատրաստելու կարելի է յանձնել երկու կամ երեք հմուտ հոգևորական անձանց և երկու կամ երեք համալսարանական ուսում ստացած իրաւագիտաց (юристъ), որ նոքա, ոչ թէ միայն ամենայն ազգային աղբիւրների հետ համեմատեն այսպիսի գործը, այլ և Յունաց և Հռովմայեցւոց հոգևորական և եկեղեցական կանոնադրութեանց հետ, որոնց մէջ, ինչ որ գտանվի համաձայն մեր կանոնադրութեանց, համեմատուի, որ այսպիսի համեմատութեամբ առաւել ևս պարզվի և մեկնուի մեր կանոնադրութեանց ձեռագիրների սխալքը: Բոլոր այսպիսի համեմատութիւնքը, մեկնութիւնքը և աղբիւրները պիտոյ է հրատարակ-

վին առանձին ծանօթութեամբք, մեկնութեամբ և աղբիւրները ցոյց տալով։

Այսպէս, երբ որ ազգը կիմանայ հոգևորականաց ամեն մէկի իրաւունքը, պարտաւորութիւնը և հաշուապարտութիւնը, նա կը հսկէ դոցա վերայ, և հոգևորականք ինքները ճիշդ, պարզ և մանրամասնաբար գիտնալով իւրեանց իրաւունքը և պարտաւորութիւնքը առաւել դիւրութեամբ և ճշդութեամբ կը կատարեն երկուքըն էլ։

Բ. Պիտոյ է գտանել որ և իցէ հնար, որ քահանաների նիւթական ապրուստը, որ և իցէ կերպիւ ապահովւած լինի և որ նոցա ստանալիքը, գոնեայ քաղաքների մէջ, մուրացկանական կերպ չունենան։ Ի միջի այլ հնարքներից, կարելի է որ կանոն դրվի և թէ ազգի ամեն մէկ անձը և թէ բոլոր ազգը ի միասին պահանջեն, որ վանական հոգևորականաց թիւը լինի որքան կարելի է փոքր, որովհետև նոցա մէջ շատ և շատ սակաւ հարկաւորութիւն կայ, իսկ քահանաների թիւը լինի այնքան, որքան որ իսկապէս պիտոյ է ժողովրդի թուին համեմատ և ոչ առաւել։ Բայց սորանով չը բաւականալով պիտոյ է քահանայից պիտոյքը և ապրուստը կանոնաւոր կերպիւ ապահովացնել և ազնուացնել։

Գ. Նոանց կանոնաւոր և համապատշաճ ուսման և, մանաւորապէս, հմուտ տեղեկութեան գրաբառ լեզուի, հին գրաբառ և նոր աշխարհաբառ գրականութեան առաջնակարգ հեղինակների գրուածոց հետ, թուաբանութեան, գծագրական նկարչութեան ոչ ոքի չը ձեռնադրել առաց սարկաւագ և ամենևին ոչ քահանայ։ Վարդապետ ձեռնադրվողներից քննութիւնը առաւել խիստ պիտոյ է լինի, և նոցա գիտութիւնը առաւել եւս, որովհետեւ նոքա շուտ ստանումեն եպիսկոպոսական աստիճան եւ ետոյ վիճակի իշխող են դառնում։ Որ եւ իցէ վարչութիւն պիտոյ է տալ այն անձին, որ ունի ընդունակութիւն եւ այդ վարչութեան համապատաշաճ կրթութիւն եւ ուսում։

Ազգային հանդիսագրութեան միջնորդութեամբ եւ օգնութեամբ թէ այս եւ թէ միւս խնդիրները կարող էին բաւականին պարզուիլ, մեկնուիլ եւ կանոնաւորուիլ, միմիայն պիտոյ է որ բոլոր ինչ գրվի եւ տպվի այս մասին, ասուի առանց կրքի, առանց որ եւ իցէ անձնի կամ դասու պատիւը վիրաւորելով։ Սիրով, միաբանութեամբ, համոզելով, քաջալերելով, պարզեցնելով նիւթը, բո-

լոր ազգային զօրութեանը միակերպ եւ միանպատակ ուղղութիւն տալով առաջ կերթայ գործն։

Մենք ասացինք, որ հրապարակական ընթերցանութիւններ լինին ուսումնարանների աղբիւրը աւելացնելու համար եւ ամբոխը լուսաւորելու։ Այսպիսի ընթերցանութեանց ժամերը պէտոյ է ընտրվի այն ժամանակ, երբ որ ժողովուրդը փոքր ի շատէ ազատ է, այսինքն տօն եւ կիւրակէ օրեր, երեկոյեան; իսկ առաւել զարգացեալ լողների համար հասարակ կամ լուր օրերն էլ, երեկոյեան։ Եկեղեցեաց բակերը, ուսումնարանների և հասարակատանց դահլիճները, թէատրոնները կարող են լինել ժողովրդի հաւաքման տեղերը։ Շատ օգտակար կը լինէր, որ այսպիսի ընթերցանութեանց համար պրօգրամմաներ գրվէր և տպվէր ի ծանօթութիւն բոլոր ազգայնոց և մինչև այդ ընթերցանութեանց նիւթերը եւ․ բնագիտութեանց, վաճառականութեան և արհեստների զանազան մասերն պիտոյ է լինին առաջնակարգ առարկաներն այդպիսի հրապարակական ընթերցանութեանց համար, նմանապէս իրաւաբանութեան այն հարցմունքները, որոնք անմիջապէս ներգործում են մեր վրայ։ Մեծ քաղաքներում, ինչպէս, Կ. Պօլիս, Զմիւռնիա, Տիֆլիս, և այլն, հազարաւոր հայաստանցի մշակներ կան, պիտոյ է խորհած նոցա համար էլ; նոցա համար էլ առանձին հրապարակական ընթերցանութիւնք կարգած, մանաւանդ այն հարցմունքների մասին, որի միջին նոքա գտնվում են և որոնք չգիտենալով ժամանակի և դրամի վնասներ են կրում, մինչև անգամ զրկանքներ եւս։

Պիտոյ է հնարք գտնել, որ ազգային լրագիրների, օրագիրների և ամսագիրների, ընտրեալներինը գոնեա, կարդացողներութիւնը բազմանայ։ Սորա համար թող ամենայն ուսումնարան, վանք, կլուբներ և կազինօներ, ուր գնում են հայեր, ստանային հայ օրագիրներ և լրագիրներ; ունեւորքը մասնաւորապէս կարող էին օգնել այս գործին, ստորագրվելով քանի մի օրինակ թէ իւրեանց և թէ չքաւոր ծանօթների եւ ծխական եւ գիւղական հայ ուսումնարանների համար։ Պիտոյ է զանազան երկիրների հայ հանդէսները ստացած, որ ազգը գիտենայ բոլոր հայոց դրութիւնը։ Զոր օրինակ, միայն Տփխիսու «Մեղուն» կամ «Հայկական Աշխարհը» ստանալով, գրեթէ միմիայն Ռուսաստանի Հայոց մասին տեղեկութիւն կ'ունենանք, իսկ ստանալով մի եւ նոյն ժամանակ Կ. Պօլսոյ «Մասիսը», Զմիւռնիայի «Արշալոյսը» եւ միւս, Օսմանեան տէ-

րութեան մէջ հրատարակվող, հայ հանդէսները, մենք կարող ենք ունենալ փոքր ի շատէ մօտ տեղեկութիւն ամենայն հայերու մասին։ Պիտոյ է սովորութիւն շինենք մեզ համար ազգային հանդիսագրութիւնը կարդալու։

Պիտոյ է, . . . . . . . . . . . . . . . շատ բան կայ, որ պիտոյ է, բայց մարմնոյս սաստիկ տկարութիւնը և, գլխաւորապէս, ժամանակս չեն ներում, որ ընդարձակեմ խօսակցութիւնս։ Բոլոր արածըս ըմփոփված եմ արտայայտել, շտապով անել։ Մօտ երեք տարի է, որ հարկադրված եմ, բաց ի անձնային գործերից, դատաստանների երթևեկութեամբ և զանազան արգելառիթ հանգամանքների դիմադրելով, անցուցանել օրերս։

Ս. Սիանասարեանց։

Սեպտեմբեր, 1868 թ.
Ս.-Պետերբուրգ։

---

# ԴՈՐՊԱՏԵԱՆ ՍԵՐՄՆԱՐԱՆ ՄԱՆԿԱՎԱՐԺՈՒԹԵԱՆ։

(Թարգմանութիւն)

Սերմնարանն (սեմինարիա) է՝ թերասքօղեալ[1]) հաստատութիւն։ Սերմնարանի մէջ դաստիարակված աշակերտներէն ոմանք միշտ նորա մէջ են բնակվում, ոմանք միայն գալիս են դասատուները, այլ բընակվում են. և սովորաբար, շատ ընկերք միասին՝ իրանց վարձեալ բնակարաններումը։ Այսու ամենայնիւ երթևեկ աշակերտք սեմինարիայի՝ միշտ սակաւ են լինում թուով՝ քան զկեցունիս։

Սեմինարիի մէջ հաստատուն բնակվողք միշտ ունին լիակատար իրաւունք հեռանալ ուսումնարանէն այն ժամերը, որոնք որ ուսման համար նշանակուած չեն, ի հարկէ՝ հրամանաւ կամ վերատեսչի (ինսպէկտորին) կամ վարժապետաց՝ որ սեմինարիի մէջ են բնակուած։

Այս վարժապետական հաստատութեան նպատակն է այն, որ այս տեղ պատրաստուին գիւղական և քաղաքական մանկավարժք; կարճ ասենք. ժողովրդական վարժապետք. ուրեմն այս վարժապետք միայն պիտի ուսուցանեն ուսման սկզբնաւոր տարրն (էլէմենտար) և աւելի հեռու քան զայն երթալու չեն։ Սեմինարիի մէջ ժամադրեալ կէտն զանազան է Գերմանիոյ զանազան տեղերումը. 3, 4 և 5 տարի; Սակսոնիա՝ 5 տարի է։

Իւրաքանչիւր սեմինարիի մօտ կայ սովորաբար մանկավարժարան, ուր սեմինարիի հասունակեալ աշակերտք (սեմինարիստք), որ վերջին դասատանը արդէն պիտի աւարտեն իւրեանց ուսման ընթացքըն, ընդ տեսչութեամբ դաստիարակաց՝ ուսուցանեն կուսան մանկանց։

---

[1]) Полузакрытое.

Այս գործնական պարապմունքը՝ վարժապետական յատկութեանց մասին՝ ունին մեծապէս ծանր կշիռ, և շատ մեծ կարևոր գործ են։ Հարկաւոր է նկատել, և նկատել ուշի ուշով, այս զբաղանքն, որ կարելի լինի լիապէս համոզուիլ, թէ որքան սերտ է այն դրութիւնը, որն որ հիմնապէս հասկացել են գերմանացիք, թէ թէպէտ ամենայն վարժապետք պիտի պատրաստուած լինին իւրեանց վարժապետական գործոց համար, բայց ժողովրդական մանկավարժք՝ են առաւել։

Այն նման ամեն մէկ սեմինարիի մօտ կան պարտէզ, խաւիղ (огородъ), այգի, ուր սեմինարիստքը՝ դաստիարակաց ձեռնամբածութեան ներքոյ, կկատարեն ամէն աշխատանքը, որոնք որ՝ նախ մէկ կերպով նոցա արդէն ծանօթ գործք են, և երկրորդ՝ ագարակային կենաց անշուշտ մասն են։

Սեմինարիստը զաւակ է ժողովրդեան և, երբ միւս անգամ վերադառնայ ժողովրդեան մէջ, նա պիտի բերէ իւր հետ արդէն լուսաւորուած գլուխ և ագարակային գործոց մէջ փորձուած, հմտացած, պնդացած ձեռներ, որ, երբ հարկաւոր լինի, դիւրաւ կարողանան վարել գութանը (соха) և բռնել տապարը (կացին, топоръ)։

Դաստիարակները ոչ թէ միայն պիտի կենան սեմինարիի մէջ, այլև պիտի ճաշեն և ընթրեն իւրեանց աշակերտաց հետ միասին։ Այսօրինակ աշակերտաց և դաստիարակաց մէջ ընտանեկան միաբանութիւն հաստատելոյ օգուտը ապացուցանելը այնքան դժուար է, որքան դժուար է մանրամասն վերլուծել, ստորագրել կեանքը իւր ամէն փոփոխութիւններով, որովհետև սեմինարիան իւր ամէն կերպափոխութիւններով պատկերացուցանում է մէկ այնպիսի կեանք, որ այլ կեանքերու չէ նման և կայ ինքնուրոյն։ Այս յիշեալ աշակերտաց և վարժապետաց միաբանական բնակակցութենէն յառաջ բղխած օգտի համար խօսելն մի և նոյն է, եթէ որ մարդ խօսի կեանքից յառաջացած մանր մունր դիպուածների, պատահմունքների վրայ. և կա՞յ հնար այս ամեն մանր մունր դիպուածների վերայ և պատահմանց համար խօսիլ։ Մենք մեր կողմանէ կասենք միայն, թէ վարժապետաց բնակակցութիւնը աշակերտաց հետ՝ մեծակշիռ ազդեցութիւն ունի դաստիարակութեան մասին։ Արտաքոյ վարժարանի, արձակ համարձակ ազատ ամեն կարգապահութենէն, (որ համարեա թէ մէկ անպտուղ բան է) աշակերտն սեմինարիի կարող է ինքնագլուխ ներգործել, ուրեմն և զարգանալ, փթթիլ անկախ. այլ

և ընդ նմին՝ նորա վերայ դարձուցած կլինի միշտ դաստիարակաց ուշադրութիւնն, որ միշտ բնակակից կլինին, նոցա հետ զանազան յարակցութիւններ կունենան, և ըստ ամենայնի կարող կը լինին նոցա բնաւորութիւններուն տեղեկանալ և ծանօթանալ նոցա բարուցն և վարուցն յամենայն կողմանց։

Մի միայն այսպիսի յարակցութեանց մէջ են կարող սնունդ առնուլ աշակերտաց բարոյական միտումունքը։ Ճմլեցէք մատաղուրց պատանեկների ինքնագլխութիւնը, պահապան կացէք նոցա ամեն մէկ ներգործութեանց և մտածութեանց, դուք ինքներդ ձեզ համար կստեղծէք ընդդիմագրութիւն, որ կլինի լի ամենայն ստութեամբ, խաբէութեամբ և ատելութեամբ։

Այս ևս աւելացնենք, որ մենք, թէ և սքողեալ վարժարանաց պաշտպան չենք, սակայն ոչ մէկ տեղ և ոչ մէկ ժամանակ մոռացած չենք, որ սքողեալ կրթութիւնը և լիուլի ազատ և անկախ կրթութիւնը այնպէս զարմանալի զուգաւորութեան պայմաններ ունեցած լինին, ինչ որ սեմինարիի մէջ կերևի. և այս իսկ պատճառաւ, մեր խօսքերը, «սքողեալ ուսումնարան», «սքողեալ կրթութիւն» բնաւ երբէք պիտի չհասկացուի այն մտքով, ինչպէս մինչև ցայժմ սովորութիւն ունէինք հասկանալ։

Դորպատեան վարժապետական սեմինարիայն ունի երեք դասատուն։ Երրորդ տարին՝ ըստ մեծի մասին է գործնական։ Սեմինարիի մէջ կայ մանկավարժարան, որոյ աշակերտաց թիւը հասարակօրէն է 50 մանկունք. ըստ մեծի մասին Էստոնք և Գերմանացիք, կամ լաւ ևս՝ գերմանացած Էստոնք։ Մեծ այգին, հանդերձ պարտէզներով, է սեմինարիի պատուականագոյն ստացուածը կամ կալուածը։ Սեմինարիայն աւելի արդիւնաբեր աղբիւրներ չունի, որովհետև արքունական գանձարանի դրամագումարներէն ստանում է նա, միայն 3,500 ռուբլի՝ չնչին գումար. և մանաւանդ, որ մանկավարժարանի աշակերտներէն հաւաքված փողի գումարն ևս առաւել աննշան ինչ է։ Մնում է միայն զարմանալ՝ ինչ ճանապարհներով է սեմինարիայն հասանում իւր նպատակներին. այլ թէ նա հասանում է անշուշտ, այդ մասին առանց երկարաբանութեան՝ մենք հաւաստի ենք առնում զձեզ մեր պատուոյ երաշխաւորութեամբ և մեր վարժապետական անուամբ։ Չենք հակառակում, որ եթէ աւելի արդիւնք ունենար սեմինարիայն, գործը աւելի լաւ կերթայր. այս ինքն ըստ ինքեան յայտնի է։ Մենք կամենում ենք միայն աւել

թէ երբ ուզենաք մեր սեմինարիայն գնահատել, անշուշտ պիտի առաջ մտածենք նորա նիւթական հնարների չափը, թէ որքան են։

Ըստ կարգադրութեան՝ կարող են մտնել սեմինարիա այնպիսի պատանիք, որ 17 տարեկանէն պակաս չլինին. մարմնական պակասութիւններ չունենան, և ռուսաստանի հպատակ լինին։ Ընդունելութեան քննութեան ժամանակը նոցանէն կպահանջվի այնքան տեղեկութիւն, որքան կպահանջվի նահանգական ուսումնարանի մէջ ուսման ընթացք աւարտող աշակերտներից։ Սեմինարիստաց թիւը չէ որոշած՝ որովհետև տեղը նեղուածք է, և սեմինարիայի մէջ քան զ12 կամ 15 հոգի աւելի չեն կարող կենալ։ Արքունական թոշակաւորութեան տեղիք (վականսիա) 10 են։ Իւրաքանչիւր սեմինարիստի ծախքն 120 ռուբլիէ մինչև 150 ռուբլի է լինում տարին։ Այսքան տարեկան ծախքով բաւականանում են և այն աշակերտք, որոնք որ բնակվում են իւրեանց բնակարանների մէջ։ Իսկ այլք՝ որոնք որ կենում են ընկերութեամբ շատերի հետ, հնարը գտանում են տարին 90 ռուբլիով բաւականանալ։ Երբ աւարտում է ուսման ընթացքն, արքունական թոշակաւոր սեմինարիստն պարտաւոր է 5 տարի ծառայել մանկավարժութեան պաշտօնի մէջ։ Իւրաքանչիւր սեմինարիստ ուսումն ստանալոյ համար պիտի հատուցանէ տարին 24 ռուբլի։ Սեմինարիստք, որպէս սեմինարիի մէջ գտնված ժամանակը, նոյնպէս և կրթութիւնը ստանալէն յետ, երբ կստանան մանկավարժ անուն, ազատ են զինուորագրութենէ։

Սեմինարիայի աշակերտք ըստ մեծի մասին են Էստք և Լատիշք։ Նոցա մէջէն լաւերն՝ երբ աւարտեն ուսման ընթացքն, այնքան պատրաստած են լինում ռուսաց լեզուի մէջ, որ կարողանում են առանց դժուարութեան խորին Ռուսաստանի մէջ ժողովրդական մանկավարժութեան պաշտօնն կատարել։ Ափսոս՝ որ մինչև այսօր ոչ ոք պահանջած չէ, որ այն սեմինարիայէն նոցա համար մանկավարժ ուղարկվի. Վարժապետաց խումբը. մէկ վերատեսուչ (ինսպէկտոր) և երեք դաստիարակք։ Ինսպէկտորն՝ բաց ի իւր ուղիղ վերատեսչական պաշտօնէն, ուսուցանում է մէկ քանի առարկայ։ Ռուսաց լեզուի վարժապետը, նոյնպէս և ուրիշ դաստիարակք, բնակվում են իսկ սեմինարիի մէջ, որ մեծ օգուտ է բերում սեմինարիստների համար, ստէպ ռուսերէն խօսելով. այս հանգամանքը այնով է աւելի կարևոր, որ աշակերտք, միայն ռուսաց լեզուի գործնական վարժութեան և խօսակցութեան ունին աւելի կարօտութիւն։

Բայց յայնմանէ, ռուսաց վարժապետն՝ սեմինարիի մէջ կենալով, կունենայ լիակատար կարողութիւն իւրաքանչիւր մանր մունր դիտուածների մէջ ծանօթացնել աշակերտաց ռուսաց կեանքը, ռուսաց պատմութիւնը, որն որ նոքա սիրով են ընդունում։

Սեմինարիի բոլոր կեանքը ցոյց է տալիս մէկ առանձնակերպ, ինքնուրոյն յայտնութիւն, որոյ հետ ծանօթանալ կարելի է միայն այն ժամանակ, երբ գոնէ մէկ տարի ժամանակաւ մարդ կենայ նորա մէջ; այլ նորա երեւոյթներից մէկ քանիսը իւրանց վերայ կանգնեցնում են առանձին ուշադրութիւն. վերջին դասատան սեմինարիստին յանձնվում է մանկավարժարանի երկու դասատուններից մէկը։ Նորա վերայ դրվում է, երեք ամիս ժամանակաւ, մէկ քանի առարկայից ուսումն տալը [1]։ Այս պարապմունքը կոպարաւորած են (այսինքն՝ երեք ամիս ժամանակ է դրած), այն մասին, որոյ պատճառն շատ և շատ յայտնի է. որովհետև վարժարանէն ամեն մէկ դուրս գալու աշակերտաց պիտի տրուի միջոց ամեն մէկ առարկայի մէջ պարապիլ այնպէս՝ որ սեմինարիստը բոլոր տարին զբաղեալ կլինի և, բաց յայսմանէ, իւր տեսական տեղեկութիւնը ամեն մէկ առարկայի վերայ կգործածէ։ Օրօրինակ՝ անցեալ տարի ամեն սեմինարիստաց թիւը էր 17; նոցանից միայն երեքն էին վերջին դասատան մէջ, ուրեմն նոցա պարապմունքը տրամադրելը դժուար չէր։

Սեմինարիստը՝ երբ յանձն կառնու մէկ որ և իցէ առարկայ դասատան մէջ, այն առարկայն առաջ կը տանի վարժապետաց վերակացութեամբ; դասատունն աւանդած է նորան՝ լիապէս, նա վարժապետ է, նա դաստիարակ է։

Երբ նա իւր վարժապետական գործը կատարում է, վարժապետք նորա սխալմունքը քննում են մանրամասն՝ թէ հրահանգութեան կողմանէ, և թէ մանկավարժութեան. (այսինքն՝ նա իւր վարժապետական գործն ինչպէս է կատարում, և ուսումն ինչ ձևով է աւանդում)։ Այս պարապմանց ժամանակն վարժապետն ոչինչ չէ խօսում մանկավարժի հետ; նա, իւր նշմարած սրբագրութիւնն այն ժամանակ է նորան հաղորդում, երբ առանձին են լինում և հարկաւոր է համարում։ Երբեմն շտապել բնաւ հարկաւոր չէ լինում, մանաւանդ որ վարժապետն ինքն լաւ հասկանում է, որ քանի

1) Ուսման առարկայից մէջէն մէկ առարկայ յանձնուում է հասունակեալ աշակերտին, որ երեք ամիս ուսուցանէ. յետոյ մէկ այլ առարկայ՝ նոյնպէս երեք ամիս։

և մանկավարժի ամեն սխալանքը նշան կըլլեն որ չմտածեն, այն սխալմունքը արդէօք տարիքային կվերաբերի; թէ ընդունին, թէ արտասանութեան, կամ սխալմունք է վարժապետական, զորօրինակ՝ աշակերտի հետ կենցաղավարելոյ կողմանէ։ Յետոյ այն վարժապետը, որոյ տարիքայէն էր՝ փորձառական դաստիարակութիւնը, ժամանակ կնշանակէ, երբ դաստաց մանկավարժը և միւս սեմինարիստը՝ որ այն դասատուութեան ժամանակը կային, պիտի հաւաքէին, որ իւրաքանչիւր ոք իւր նկատողութիւնը յայտնէ։ Ի հարկէ այս խօսակցութեան ժամանակը կգտնուէին և միւս վարժապետք ևս, եթէ ժամանակը ներէ։ Իւր նկատմունքը իւրաքանչիւր սեմինարիստ կանէ կարգաւ, վարժապետն ականջ կդնէ, բնաւ խափան չի լինիր նորա վիճաբանութեան։ Երբ որ ամենքը տացին իրանց կարծիքը. վարժապետն այնուհետև կսկսի ամփոփել իւր հայեցուածքը ի վերայ գործոյն. նա կապացուցանէ իւրաքանչիւր նկատման ճշմարտութիւնը և թիւրութիւնը. ինչ որ կարօտ է բացայայտութեան, կբացայայտէ, մանրացոյց կլինի այս կամ այն վարժապետական փութեան վերայ. կամ հրահանգական ձևերու վերայ, և վերջապէս այս խօսակցութիւնը կարող է, ըստ հանգամանացն, դառնալ կենդանի դասատուութիւն վարժապետական։ Որքան օգուտ կայ սորա մէջ, որքան միտք; որքան բարեպատեհ դիպուած վարժապետի համար խօսել սեմինարիստի հետ, ոչ որպէս աշակերտի, այլ որպէս մարդոյ հետ, որոյ սրտի վերայ պիտի ներգործէ իւր խօսք ապառնի համար, և վասն հասարակաց օգտի, որուն նա պիտի ծառայէ։ Նմանօրինակ խօսակցութեանց միջոցը վարժապետն ունի լաւըլի կարգադրութիւն անցեալ անցքերու վերայ ևս խօսել, վերջապէս, եթէ հարկաւոր լինի, կխօսի սեմինարիստի ջանասիրութեան վերայ, և ընդհանրապէս, նորա ջերմեռանդ կամ թոյլ պարապմանց վերայ, նորա ունակութեանց, բնաւորութեանց վերայ, արոմհեան, կրկին ինք ասում, իւրաքանչիւր աշակերտի վարքը յայտնի և ծանօթ է վարժապետին, ինչպէս որ կարելի է քաջածանօթ լինել մէկ այն մարդոյ վարքը, որոյ հետ մենք կեցութիւն ունինք մէկ տան մէջ, և մի և նոյն գործով կպարապինք նորա հետ։ Շատ մեծ և բազմակողմանի ազդեցութիւն կառաջանայ այսպիսի և միայն սեմինարիի մէջ կարելի յարաբերութիւններից. Եւ սրանից ետքը զարմանք չէ, եթէ սեմինարիայն ունի այնպիսի յատկութիւն, որ իւր կեանքի մէջ ներս կքաշէ և իւրեան հետ սիրով կկապակցէ ինչպէս սեմինարիաներուն, նոյնպէս

և վարժապետաց։ Նորա բոլոր կազմութեան մէջ չկայ ոչ ինչ, որ իւր դէպ ի դուրս ցցուած ձեւով, իւր այլատարրակ գրութեամբ հայեցողի աչքի մէջ մտնի։

Առաջին անգամ՝ երբ նորա վերայ ակնարկէք, կերեւի ձեզ մէկ այնպիսի սովորական վարժարան, որ դուք, գուցէ, մօտից կանցանէք և ոչինչ ուշադրութիւն չէք դարձուցանէք նորա վերայ։ Այլ փորձ փորձեցէք փոքր ինչ մտադիւր զննել որ և իցէ սեմինարիայն մէկ քանի ամիս, և դուք կսկսէք ակամայ նկատել, որ, փոքր առ փոքր, դուրս են երեւում այս կարգաւորութեան լաւ կողմերը; այսօր ձեզ դժուար կլինի նորա մէկ երեւոյթը, մէկ քանի ժամանակից յետ՝ մէկ ուրիշը, այս կերպով քիչ քիչ, աստիճան առ աստիճան, կներկայացնի ամբողջ դրութիւն, որ հաստատուած է նորա գործունէութեան հիմքումը, և ձեր սրտի մէջ կխլրտի ճանաչումն՝ թէ ձեր աչքի առաջևը կայ մէկ ուժ։ Այսպէս կլինի՝ քեզ իւր յատկութեան ամեն առողջ և ուժով, և երկարակեցութեան առհաւատչեօք լինելի հաստատութիւն։

Սեմինարիստը դասատան մէջ մանկանց հետ է; երբ մանկունք դուրսը խաղում են, նոցա հետ է; նա նոցա հետ խաղում է ևս; եթէ սիրտը ուզում է՝ նոցա հետ միասին տաղ է երգում։ Պիտի հաստատել, որ երաժշտութեան և երգեցողութեան ուսումն ինչպէս անշուշտ կայ ամեն սեմինարիի ուսումնական առարկայից ցանկի մէջ, նոյնպէս և Դորպատեան սեմինարիի ուսման առարկայից գլխակարգութեան (программа) մէջ։ Նոցա վարժապետական պատրաստութիւնը շատ ժամանակ է որ ճանաչուած է անժխտելի։ Ո՞վ չգիտէ, որ գերմանացոց մէջ ժողովրդական վարժատուն առանց երաժշտութեան անհնար է միտք բերել անգամ։

Երկրորդ երևոյթն ամեն մէկ սեմինարական կենաց, նոյնպէս և Դորպատեան սեմինարիի, որ իւր վերայ կյափշտակէ ուշադրութիւնը, է գաղափարական (образцовый) դասախօսութիւնը, որ ամիսը մէկ անգամ կանեն ամեն վարժապետք մանկավարժական ուսումնարանի մէջ՝ սեմինարիստներու առաջև։

Այսպիսի դասախօսութեանց գլխաւոր նպատակն այն է, որ վարժապետք ցոյց տան սեմինարիստներուն, թէ ինչպէս կլինի լաւ դասատուութիւնը. վարժապետն ջանք կդնէ, որ այս դասախօսութեան մէջ աւելի դարնէ այն թոյլ կողքերուն, որոնք որ մանկավարժ սե-

մինարքիաների դատաստանութեան. ժամանակը աւելի դուրս ցցուած են լինում որ և իցէ դառ տողած ատամնիկայի մէջ։

Եթէ մտաւոր մարդը, թէ և չլինի ինքը վարժապետ, անձնէ ինքը այսպիսի դատաստանութիւն, կհամոզուի, և կհամոզուէր հաստարակապէս, թէ ուսումնատարութեան մէջ չկայ ոչ աւելի դժուար, և ոչ նուազ դժուար դատ. նա կհամոզուի, որ այնքան դժուար է լաւ ընթերցանութիւն սովորեցնելը, որքան դժուար է համալսարանական բեմբէն վարժապետելը։ Սակայն մեկ անգամ գաղափարական դատաստացութիւն անել հրամայելը դեռ ապացոյց չէ. թէ միւս ժամանակները նա կարող է դաս առել Հարկանցի և այն դասերը շատ լաւոր կլինին, քան գգաղափարական դատաստանութիւնը։ Գաղափարական դատաստանութիւնը միայն ապացուցանում է մարդկային բնութեան խորագոյն ծանօթութիւնը և ուսումնարանական պարապմանց պայմանները; ցոյց է տալիս հիմնաւոր հասկացողութիւն, թէ վարժապետի ամեն դատաստանութիւնն, մեկ տարվան մէջ, չէ կարող լինել գաղափարական։ Մեր դատաստանութիւնը կուզէ լինի, թող պիտի չըլինի, մենք այդ բանին համաձայն ենք կատարելապէս, ապա թէ ոչ՝ վարժապետը վատ կհամարուի. այլ չէ կարող ամեն անգամ լինել այնպէս, որ նորա համար կարելի լինի առել, երևի որ վարժապետը այս դատաստանութեան մէջ դրել է իւր ամեն ոյժը, որքան որ ունի։ Թող իւրաքանչիւր վարժապետ իւր մէջ նայի, և ձեռքը սրտի վերայ դրած՝ վկայէ, թէ նա ամեն մեկ դաս տալու ժամանակը՝ իւր ամեն ունեցած ոյժը մսխում է։ Եթէ ասէ՝ թէ այո, մսխում է, այն ժամանակը մեզ ոչինչ այլ և կմնայ պատասխանել, բայց եթէ առել «սուրբմա գրքերդ տակ ձեռքերդ» [1]։ Մենք մեր կողմանէ կարծում ենք, թէ, եթէ վարժապետի ունեցած ամեն կարողութիւնը՝ ինչ որ նա գործ է ածում մեկ տարվայ միջացումը, հնար լինի բաժանել, այն ժամանակ պիտի երևէր, թէ մեկ դասի մէջ իրաւի նա դրել է իւր ամեն ուժը և կարողութիւնը, միւս դասի մէջ՝ փոքր ինչ պակաս, երրորդ դասի մէջ՝ քան դայն եւս նուազ; չորրորդումը՝ փոքր ինչ աւելի; հինգերորդումը՝ դարձեալ սակաւ՝ որքան կարողութիւն ունէր՝ տալ. կարճ ասենք, այս ամենը կախեալ կայ կենաց այն պարագաներէն, որոնց մէջ գտանվում է վար-

1) Այսինքն, մենք (հեղինակը), այն ժամանակ, երևի, այս գործի մէջ էլ ոչինչ չենք հասկանում։

ժամերումը։ Այս կենաց պարագաները վարժապետի գործունէութեան մէջ այնքան կարևոր են, որ նա՛ եթէ իրաւի սիրում է իւր պաշտօնը և անձնատուր է իւր կոչմանը բոլորովին սրտիւ, այնպէս ժամանակ կպատահի, որ նա, զուրկ զօրօրինակ՝ սաստիկ հոգևոր վրդովմամն ազդեցութեան տակ, աւելի խարխլածութիւն կհամարի այն օրը դասատուն չերթալ, քան թէ երթալ, և իւր ցաւագին վիճակի մէջ սխալմունք գործել, որ շատ անգամ՝ վարժապետութեան կեանքն նայելով, լինում է անուղղելի։ Բայց՝ ամեն մարդու կեանքը լի է թէ շատ և թէ սակաւ՝ ամենօրեայ անցքերով, որ ո՛չ չափազանց յաջող են, և ո՛չ չափազանց ձախորդ; կեանքը անցնում է՝ այսպէս ասենք՝ հաւասար, և հետևաբար, և վարժապետի դասախօսութեանց շարքը ցոյց է տալիս աւելի կամ պակաս մխողութիւն ուժոյ և կարողութեան, ինչ որ նա ունի. բայց ո՛չ երբէք միշտ միօրինակ. այլ կամ աւելի, կամ պակաս։ Եթէ ասեմ՝ թէ թող լինի իսկապէս հաւասար, այդ միտք բերելը անգամ անհնարին է։ Նայենք վարժապետի վերայ, առաջ ինչպէս մարդոյ վերայ։ Երբ որ այսպէս նայելու լինինք, մենք կհասկանանք և գաղափարական դասախօսութեան նշանակութիւնը։ Գաղափարական դասախօսութեան ասելը, մեկ խօսք է, խօսքի պոչէն բռնել հարկաւոր չէ։ Նրան գաղափարական դասաւանդութիւն են կոչում, ո՛չ այն պատճառաւ, որպէս թէ կամենում են ասել, միթէ արէք՝ թէ ինչպէս գերազանց դաս պիտի տամ; տեսէք՝ և համոզուեցէք, որ չկայ այնպիսի վարժապետ, որ կարողանայ քան զիս լաւ դաս ասել։ Այլ գաղափարական դաս են ասում այն պատճառաւ, որ կամենում են հասկացնել սեմինարիստներին, թէ ձեր ամեն անցեալ աշխատութիւնները վարժապետը հաւաքել է, այսինքն՝ ձեր դաս տալու ժամանակը արած սխալները՝ արդէն վարժապետին քաջայայտ են։ Այդ առաջիկայ դասախօսութեան մէջ վարժապետը ցոյց կուտայ, թէ ինչպէս պէտքէ ուսում աւանդել, ինչպէս պիտի գործը սկսել, որ այն սխալներից ազատացվի։ Վարժապետը իւր բոլոր ուժը, իւր բովանդակ կարողութիւնը պիտի մեկ տեղ ժողովէ, որ դուք՝ որքան կարող էք՝ յայտնի հասկանաք, թէ ինչ զանազանութիւն կայ նորա և ձեր տուած դասերու մէջ։ Այդ զանազանութիւնը ճանաչէք, ձեր սխալմունքները ևս կճանաչէք։

Երբ գաղափարական դասախօսութիւնը վերջացուց, վարժապետը կսկսի մեկնել, թէ այս ինչ կամ այն ինչ գիտութեան մէջ

ինչ պատճառաւ այս կամ այն եղանակը գործ ածեց; կամ աշա-կերտին ինչ պատճառաւ նկատողութիւն տուաւ (յանդիմանեց) այս կամ այն բանի համար; նա իւր բոլոր դասախօսութեան ժամանակը ինչ պատճառաւ այս ինչ հանգամանքի վերայ աւելի շատ խօսեցաւ։ Դժուար է թղթի վերայ դուրս բերել այն ամենայն, ինչ որ կարող է վարժապետը անել սեմինարիստին իւր գաղափարական դասախօ-սութեան միջոցը, կամ նորա վերայ պարապելու ժամանակը, կամ սեմինարիստի փորձառական դասատուութեան աղագաւ։ Դժ-ժուար է այն պատճառաւ, որովհետև ամեն մէկ դասատուութիւն՝ կեանքի գործ է։ Իսկ կեանքը՝ իւր ամեն մէկ երևոյթներով՝ դիւրաւ չէ հնազանդում, չէ հպատակում վերլուծութեան կամ ստորա-գրութեան։

Դորպատեան սեմինարիի ամեն արտաքին պարագայքը չափա-զանց պարզ են, որ միապէս համապատասխան է իւր նպատակին և այս վարժապետական հաստատութեան վախճանին, որոյ մէջ շատ անգամ կտեսնէք որ վարժապետը կամ այգւոյ մէջ է մշակութիւն անում, կամ սրահում։ Մենք չեշտակի, կամ ուղղակի, ասում ենք, թէ այս պարզութիւնը է նորա մեծ հրահանգական զօրութիւնը։ Ի հարկէ, այս գործերէն երբէք հնար չկայ մակաբերել, թէ 3.500 րուբլիքը լիապէս բաւականութիւն են տալիս սեմինարիի հարկա-ւորութեանց։ Երբէք բաւականութիւն չեն տալիս։ Սեմինարիայն կհասնէր անհամեմատ մեծամեծ արգասեաց, եթէ ունենար աւելի մեծ նիւթական արդեանց աղբիւր։ Սեմինարիի ուսումնական առար-կայից գլխակարգութեան մէջ մտանում է են. օրէնք Աստուածա-յին, կամ կրօնագիտութիւն, ռուսաց լեզու, գերմանացի լեզու, ուսումնականութիւն (մաթեմաթիկայ կամ չափագիտութիւն), բնա-գիտութիւն (Ֆիզիկա), բնազննութիւն, համաշխարհական պատ-մութիւն, վարժապետականութիւն (պեդագոգիա), հրահանգ ուս-մանց (դիդակտիկա), երաժշտութիւն, նկար և մարզք (գիմնաս-տիկա)։

Մանկավարժարանի առարկայից կազմութեան մէջ մտանում են. կրօնագիտութիւն. ռուսաց լեզու, գերմաներէն, թուաբանութիւն, հայրենագիտութիւն (ընդհանուր տեղեկութիւն գաւառի, այսինքն՝ Օստզէյեան նահանգաց), հայեցողական հրահանգ պատկերաց վե-րայ, բնագիտութիւն, բացատրութիւն ընդհանուր դրութեանց երից թագաւորութեանց բնութեան, և ընդհանրագոյն մեկնութիւն մարդ-

կայքն մարմնոյ կազմուածոց, ընդհանուր անդրկութիւն աշխարհի կազմակերպութեան, բնական երևոյթից եռակից և օրինաց բնութեան, նկարչութիւն, պարզագրութիւն, երգեցողութիւն և մարզութիւն:

Հարկաւոր է արդեօք յաւելուլ, թէ բնագիտութեան ուսումնասիրութեան բոլոր նպատակն այն է, որ սակաւ առ սակաւ, սակայն անվրէպ կարողանանք ծակել ժողովրդեան մէջ զօրացած տգիտութեան կեղևը, նորա նախապաշարմունքները քանդենք, և նորա անճոռնի աւելորդապաշտութիւնները վերացնենք, որոց մէջ կան մեր ռուսաց ընդդատէս անփականներ, օրինակ՝ այս, թէ աշխարքը երեք մեծամեծ կէտ ձուկների վերայ է հաստատած, թէ կայծակը և որոտումն Եղիայ մարգարէից են առաջանում, թէ կախարդ կինը վաճառում է սատանային անձրևը, և այս պատճառաւ լինում է երաշտ և այլ այսպիսի անալի բաներ, որ թիւ չունին:

Այս վերջին համոզման շնորհիւ, մեր գիւղականք գաւառների մէկի մէջ քիչ մնաց, որ պիտի սպանէին մէկ թշուառական պառաւի, որ կարծում էին թէ կախարդ է, որոյ աղագաւ վերջին օրերը լրագրաց մէջ ևս կարդացինք: Միայն այն եղև խեղճ պառաւի փրկութեան պատճառը, որ անձրև եկաւ նորա բաղդէն: Ահա այսպէս գիւղականաց տգիտութիւնը պիտի պատճառ դառնայր խեղճ կնոջ մահուն: Նոքա նրան պիտի սպանէին, և պիտի հաւատային թէ բարի գործ են գործել: Լաւ է որ անձրևը եկաւ այն ժամանակ, մինչ՝ նոքա դեռ նրան սպանած չէին:

Ի՞նչ պիտի լինէր ապա այն ժամանակ, եթէ անձրևը նրան սպանելից յետոյ գայր, պիտի այնուհետև համոզուած մնային, թէ. եթէ կուզես երաշտը վերջացնել, կախարդ կնիկ սպանէ. այն պատճառաւ, որ կախարդ կնիկն է սատանային ծախում անձրևը:

Այսպիսի համոզումն մէկ գիւղէն կերթար միւսը, միւսէն՝ երրորդը, և այլն. կմեծանար, կմեծանար, կամրանար, և չէր գտնիր իւրեան հակառակող: Ուստի՞ պիտի դուրս գայ այսպիսի բաներու հակառակորդը: Ի հարկէ, վարժարաններէն, ի. հարկէ նոր սերունդէն, որ իմացած, հասկացած լինի երաշտի պատճառները, այնպէս, ինչպէս յայտնի հասկացուել է արեգական և լուսնի խաւարման պատճառը, որոյ համար դեռ մինչև այժմ ևս շարադրում են ռամիկք զանազան ցնթի մնթի առասպելներ: Լրագիրների թերթերը միշտ նախշած են լինում այսպիսի անճոռնի գիւղականաց գործքե-

## ՅԱՒԵԼՈՒԱԾ։

Մեր տպագրութիւնը արդէն վերջանումէր, երբ ստացանք պ. Մ. Բուշարեանցից, Զաքաթալայ, Տիֆլիսու գաւառի, քաղաքից, Նաղաշ Յովնաթանի բանաստեղծութեանց ձեռագիրը 1705 թ. գրած, որից քաղեցինք յետագայ երկու սատիրիկական երգերը։

Տաղ ի վերայ կատուի, զոր մկներն տանին թաղել։

Կատուն մեռաւ ափսոս ու ախ,
Մկներն այս օր խիստ են ուրախ;
Թէ որ յանկարծ վերկենայ սաղ,
Մկներ կ'անէ արիւն շաղախ։
Էս կատու եմ միան եաղի 1),
Արտումըս դրել են դաղի,
Չարուխ 2) չինեմ Ղարաբաղի
Ով որ եկել է ինձ թաղէ։
Էս արջ կատուն եմ տաղըման (3)
Ձեզ կը քշեմ չուրի 4) մաղզան,
Հիմի կանեմ ախր զաման 5),
Փորս չինեմ ձեզ գերեզման։
Ներ ածէք ալիւր, եղ եւ խին 6),
Որ հոգւոյս համար հաց թխին,
Հիմի ձեզ կոխեմ մէջ ցխին,
Ամեն սեւ անեմ ձեր գլխին։

Նաղաշ Յովնաթան։

---

1) Թշնամի։ 2) Տրեխ։ 3) Մղաւան։ 4) Մինչեւ։ 5) Աշխարհի վերջ։ 6) Дрожжи, օպար, խմորոցի ջրալին։

## Օրհնութիւն գեղացի իրիցի։

Օրհնեսցի չորեքանկիւնի տունս.
Խեցեղէն, պղնձեղէն,
Թուրքատն [1]), մկնատն,
Եզամանն, ձիթամանն,
Մեղրամանն, տխտմորամանն [2]),
Թանամանն, պանրամանն,
Գինամանն, ձկնամանն;
Արահն ու տունն,
Գալն ու հաւի բունն,
Բոշկն ու օթաղն,
Փետանոցն ու օճաղն,
Աղաղէն ու մառանն,
Ծածուկ գաղտարանն; [3])
Մէջլիսն ու սեղանն,
Կուժն ու քեղանն,
Յանդ ու յանդաստանն,
Ձիմանն ու բոստանն,
Գոմն ու մարագն,
Մածոնն ու կարագն,
Տոլապն ու թախչէն [4]),
Այգին ու բաղչէն;
Կարասն ու տուճըն [5]),
Գազանն ու կճուճըն,
Ջանաղն ու թաբաղն,
Թօրօնն ու օջաղն,
Տաշտըն ու մաղն,
Ճիբարն ու աղն;
Ապրանք ու մալն,
Սուփրէն ու շալն;
Սարն ու վաստակն,
Գլուխն ու տակն;
Էշն ու ջորին,
Գարիմանն ու գարին,
Կալն ու ջաղացն,
Ցորենն ու հացն,
Փէտն ու ցանն,
Ամբարն ու հնձանն,
Եզն ու կովն;
Աղբիւրն ու նովն [6])
Հողն ու քարն,
Էծն ու ոչխարն,
Գուռն ու հայեաթն,
Հիմն ու բնեաթն,
Այս նշանաւ սուրբ խաչի։

Նաղաշ Յովնաթան։

---

1) Թուրքի ձեռնամուխ եղած։ 2) Խմորի մայրի անօթը։ 3) Արտաքնոց՝ և պահարան։ 4) Полки. 5) Մեծ կուժ։ 6) Առու։

# ՀԵՏԱՔՐՔՐԱԿԱՆ ԼՈՒՐ։

Ամերիկայումը, պարոն Լ.Յ. Կորնելլի գլխակարգութեանց հեղինակութեամբ, հիմնադրուել է մէկ նոր՝ միւս համալսարաններին չնմանող համալսարան, որոյ կարգադրութեան ծայրագոյն նըպատակն է՝ մարմնաւոր և մտաւոր աշխատանքը այնպէս միաւորել՝ որ մարմնաւորը դիւրացնէ մտաւորի հարկաւոր պիտոյքը։

Ուսանողք (студентъ) իրանք պիտի տնկեն կամ ցանեն ագարակումը այն ամեն խաւարտների սերմը, որոնք որ հարկաւոր են նոցա կերակրոց համար; իրանք պիտի կաթնից հանեն կարագը (կոգին, եղը), և պանիրը պատրաստեն [1]), ցորենը պիտի իրանք կալսեն (կասուլ, հարման անել, молотить) և հացը իրանք պիտի թխեն։

Համալսարանի մեքենաշինութեան կամ մեքենական գործարանի մէջ (механическая фабрика), ուր որ շինուած կլինին 25 ձիոց ուժ ունեցող շոգեշարժ մեքենայք, ուսանողք պարտաւոր են, վարժապետաց և արհեստագիտաց (профессоръ, техникъ) վերակացութեան ներքոյ, գործիք պատրաստել, մեքենաներ, գաղափարներ (модель) և այլ կազմուածներ շինել և, նոյն միջոցումը, ինչ շինուածք որ հարկաւոր լինի Համալսարանի մէջ, պիտի յանձնուի ուսանողաց, որ նոքա շինեն։

Այս դեռաւուրց պատանեակների կրած աշխատութեանց փոխարէն պիտի հատուցանվի նոցա սովորական վարձը, որ նոքա կարողանան ունենալ, իրանց ուսանելոյ տարեւոր ժամանակներումը, ինքնագլուխ կեցութեան հնար, միջոց։

Պարոն Կորնելլը վստահ է այս առարկայի մէջ, և ասում է, թէ ուսանողք անշուշտ կ՚ապահովեն իրանց ուսման և սննդեան ծախքըն, եթէ այն աշխատութեանց՝ ինչ որ ինքն է կատարել պատանեկութեան հասակումը, և ինչ որ այժմ վաթսուն տարեկան ժամանակն է կատարում, միայն չորրորդ մասն կատարեն։

Сынъ Отечества, № 196, 1868 г. Сент. 2.

Թարգ. Տ—Գ. Պ։

---

1) Եւրոպացիք ո՛չ բաղկեթան գիտեն, և ո՛չ չորաթան, և ո՛չ մածուն, որոյ քամածն լաւ կերակուրների համ բերող նիւթ է, իսկ նորն շատ անգամ սերի պատիւը ունի; թողունք այն, որ ասվում է. простокваша (le lait caillé), творогъ (le caillebotte) և сметана (la crème aigre), որ սերից պակաս չէ։

Թէպէտ մենք ամենայն ջանք դրինք և ոչինչ զոհաբերութիւն —ոչ դրամական, ոչ ժամանակի և ոչ անձնական—չը խնայեցինք, որ բոլոր տպագրութիւնը լինի առանց սխալի, բայց տեղական հանգամանքները մեզանից զօրաւոր են։

Առաջի աչաց ունենալով, որ այս գիրքը ընկնելու է զանազան հասակի և զարգացման աստիճանի անձանց ձեռքը, մենք աւելացրինք այս տեղ վրիպակների ցուցակը։

Խորհուրդ ենք տալիս ամենեցուն,—ով որ այս գիրքը գործ կ'ածէ,—առաջ և միանգամից ուղղել բնագրի այս մեր ցոյց տուած բոլոր վրիպակները և ապա ձեռնամուխ լինել գրքի գործածելուն։

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 1 | 16 | ազգեցութեան | ազդեցութեան |
| 23 | 24 | մեղ բոլորովին | մեզ բոլորովին |
| 32 | 24 | Արայի որդին | Արայի որդւոյ Արգամի որդին. |
| — | 25 | Սօս կոչեցաւ | Սօս կոչեցաւ և Սօսանուէր |
| 36 | 26 | կարէլի է | կարելի է |
| 66 | 13 | Ղամքարամբ | Ղամբարաւ, կամ ղամբարմամբ |
| 71 | 22 | ի ջուրցըն | ի ջրոցն (վենետիկցոց տպագրութեան մէջ «ի ջուրցըն») |
| 73 | 27 | Ներսէս Կլայեցի | Նզըր կաթուղիկոս |
| 74 | 26 | Ներսէս Կլայեցի | Նզըր կաթուղիկոս |
| 75 | 21 | Ներսէս Կլայեցի | Նզըր կաթուղիկոս |
| 76 | 11 | Ներսէս Կլայեցի | Նզըր կաթուղիկոս |
| 86 | 20 | Խաչատուր կարնեցի | Խաչատուր Կեչառեցի |
| 89 | 3 | Աստուածըն | Աստուած |
| 91 | 28 | դըժողքըն | դըժոխքն |
| 93 | 20 | . . . . . . . . . | Ներսէս Կլայեցի |
| 99 | 11 | յիշեալըն ի Հօրէ | յիջեալըն |
| 103 | 4 | անշշական | անշունչ կան |
| 104 | 3 | Ներկրին | բերրին |

| Էջ. | Տող. | Սխալ | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 105 | 13 | բնութիւն | բնութեանց |
| — | 25 | . . . . . . . . . . | Մխիթար Սեբաստացի |
| 106 | 15 | զաշխար տարարեր | զաշխարհ փայլեցեր |
| — | 19 | . . . . . . . . . . | Փէշտմալճեան Գրիգոր վարժապետ: |
| 110 | 25 | . . . . . . . . . . | Յարութիւն վարդապետ Ալամդարեան |
| 112 | 5 | Ռափաէլ | Ռափայէլ |
| — | 23 | Հոգւոյդ | Հոգւոյս |
| 113 | 12 | գան | Քան |
| 120 | 9 | . . . . . . . . . . | Տ.—Գաբրիէլ Պատկա-նեան |
| 121 | 6 | Ծա́գուկ | Ձա́գուկ |
| 123 | 2 | Զամէն | Զամեն |
| 125 | 3 | աստեն | աստէն |
| — | 31 | Խօրեն | Խորէն |
| 132 | 30 | Իմ սեւ րե ցաղէ դըն-պէքս | Իմ սեւ բաղդը էնպէս արեց |
| 141 | 27 | . . . . . . . . . . | Յակոբ պատրիարք Նա-լեան: |
| 142 | 23 | . . . . . . . . . . | Յակոբ պատրիարք Նա-լեան: |
| 147 | 8 | տէրտէրն | տէրտէրն (դարդերն, վիշ-տերը) |
| 170 | 31 | . . . . . . . . . . | Սարգիս Տիգրանեան |
| 199 | 28 | Գայլազգեստ գառին | Գառնազգեստ գայլին |
| 204 | 6 | Անշեջ | Անշէջ |
| 211 | 7 | Պայածիս | Պայաքիս |
| 211 | 8 | զի | ի |
| 211 | 14 | նա զօրէն | զՍր էն |
| 216 | 21 | . . . . . | Մսեր Մսերեան: |
| 216 | 30 | . . . . . | Մսեր Մսերեան: |
| 217 | 25 | զԱնի | զ՛անի |
| 217 | 26 | Անոր | անոր |
| 220 | 2 | Զիջան | Ձ՛իջան |
| 223 | 11 | Նոճիններու | Նոճիններու |
| 233 | 8 | Կայեն | Կայէն |
| 233 | 25 | սաբորք | սափորք |
| 233 | 31 | կանդեղ | կանթեղ |
| 234 | 21 | պարծանած | պարծանաց |
| 234 | 26 | Արտասուք | Արտասուօք |
| 235 | 6 | գէտերն | գետերն |

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 235 | 10 | փգաբեր | փքաբեր |
| 235 | 11 | պատէր | պատեր |
| 244 | 6 | յոյս | յուս |
| 244 | 7 | քանդակածի | քանդակած 'ի |
| 244 | 21 | բարօրենքի | բարօրենք 'ի |
| 245 246 | | | 124 երգի (եր. 245) առաջին 16 տողը առանձին հեղինակութիւն է Տ. — Գ. Պատկանեանցինը; Միացորդ 12 տողը (եր. 246) առանձին, մեզ անյայտ հեղինակի գործ է։ |
| 246 | 17 | Գուռ զուարթ | Սարդ իմ, դու զուարթ, |
| 246 | 29 | Արաաշէս | Արտաշէս |
| 248 | 1 | Արտաշէս | Արտաւազդ |
| 248 | 2 | Արտաւազդ | Արտաշէս |
| 250 | 4 | զրադաշտաց | Զրադաշտայ |
| 250 | 9 | Սիրտացուցանեն | Սրտացուցանեն |
| 250 | 31 | յազգս եւ լեզուս | զազգս եւ զլեզուս |
| 251 | 7 | յԱղթամար | Յաղթամար (Ճիշդը Աղթամար է) |
| 251 | 22 | Որովհեաև | Որովհետև |
| 252 | 1 | զուր միացիր | զուրկ միացիր. |
| 254 | 5 | Գոչէն | Գոչեն |
| 258 | 16 | Ինչ ազգ | Ինչ ազգ |
| 259 | 24 | յաղթահար | յաղթահարած |
| 260 | 34 | Սէյանդ | Սէյեադ |
| 263 | 27 | հօտ | հոտ |
| 265 | 3 | փթացած | բթացած |
| 270 | 10 | արդեօք հնարին | արդեօք է հնարին |
| 270 | 20 | Աաւագ | Աւագ |
| 271 | 13 | Սոկունքըն | Ոսկունքըն |
| 271 | 15 | դշխարհիկ | աշխարհիկ |
| 274 | 32 | Խըռէլ | Խըռել |
| 280 | 6 | ակընկորաց | ակընկորած |
| 283 | 23 | դահճին | դահճին |
| 285 | 22 | զհալն | զհողն |
| 287 | 14 | մեռելութեան | մեռելութեան |
| 311 | 28 | սլայնայր | սլանայր |
| 328 | 27 | Ծոցէր | Ծոցեր |
| 334 | 7 | Երդնումք | Երդնումք |
| — | 8 | ՅԱյտարատայ | ՅԱյրարատայ |

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 234 | 27 | ուստեք | ուստէք |
| 336 | 31 | զ՚ի առաքինութիւն | զմի առաքինութիւն |
| 338 | 18 | կոքեցին | կոփեցին |
| 361 | 1 | մէզ | մեզ |
| 362 | 22 | երթնում | երդնում |
| — | 32 | երթնում | երդնում |
| 371 | 26 | Ջ. Ձեւ | Օ՝. Ձեւ |
| 373 | 25 | . . . . . | Պ. Վ. Պ՝ափանցի։ |
| 374 | 13 | . . . . . | Պաղտասար դպիր։ |
| 375 | 19 | . . . . . | Պաղտասար դպիր։ |
| 375 | 23 | մեծամուտ | մեծանուն |
| 379 | 22 | Ո՛եմըկութեան | Ո՛երմըկութեան |
| — | 23 | մեկ | մէկ |
| 380 | 29 | փոլլափաշայ | քալլափաշայ |
| 382 | 22 | Ջ՝գունոյն | Օ՝գունոյն |
| 384 | 19 | Ն՝ակեխօսեա | Ն՝արեխօսեա |
| 385 | 4 | տիրեցուքն | տիրացուքն |
| 388 | 16 | ամօքել | ամոքել |
| — | 19 | անուշ | յանուշ |
| — | 21 | տառն | տառին |
| — | 25 | քաղցրաբանիլ | քաղցրաբանել |
| 392 | 19 | շարաց | շարած |
| 393 | 12 | անէս | անես |
| 394 | 3 | հաւատը | ազգը |
| — | 6 | բարձրանումէս | բարձրանումես |
| 396 | 22 | քետս | քեաս |
| 397 | 14 | լալ | լաւ |
| 398 | 19 | փանջար տարած fen fenes estré | փանջարա արած, fenestré, |
| 401 | 14 | աչխարհս | աշխարհս |
| 410 | 14 | Երրոդն | Երրորդն |
| 411 | 36 | հարկուոր | հարկաւոր |
| 415 | 21 | դուն | տուն |
| 432 | 2 | Երգ ՚ի վերայ «Սահման | Երգ ՚ի վերայ բարեկեն-դանի, ըստ եղանակի երգոյն «Սահման |
| — | 10 | որ զձեզ | որ ձեզ |
| — | 15 | Եօպէք | Եոպէք |
| — | 16 | մթերելոց | մթերելոյ |
| — | 28 | Պ՝ալեան | Պ՝ալեան, |
| — | 29 | Կեր | Պ՝էր |
| — | — | քիֆտէ | քիւֆտէ |

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 433 | 2 | յընպեւլեաց | յըմպեւլեաց |
| — | 3 | մոլտովցկին | զմոլտովցկին |
| — | 4 | Ջքպոցկին | Ջքիպոցկին |
| — | 6 | Ջքրմցկին | Ջքրիմցկին |
| — | 10 | զֆիլեատրն | զֆիլէիտն |
| — | 17 | մահուան իւրոյ | մահուամբ իւրով |
| — | 19 | | Ռ. վ. Պատկանեան |
| 435 | 12 | մըրկաւ | մրրկաւ |
| 436 | 9 | եզած | եղած |
| 446 | 21 | ճարը | չարը |
| — | 23 | սերըդ | սէրդ |
| 450 | 27 | մաշադի | մաշալի |
| 451 | 4 | գովել | գովելի |
| 462 | 25 | հչումես | հնչումես |
| 465 | 13 | պես | պէս |
| 469 | 21 | մեջ | մէջ |
| — | 23 | | Պաղդասար դպիր |
| 475 | 21 | Պ.էպ | Պ.էպ |
| 477 | 25 | Հայասէր ամն | Հ. Աղէքսանդր վ. Արարատեան, ալէքսանդրապօլցի, վենետկու մխիթարեան ուխտէն։ |
| 480 | 12 | կանկ | կանգ |
| — | 18 | քըրփուան | փըրփուան |
| 483 | 10 | Ռ. Տ—Պ. | Ռ. Տ—Պ. |
| 485 | 28 | Պապոց | Պապայ |
| — | 42 | 1840—1851 | 1842—1851 |
| 486 | 5 | Պ.եղգեղի | Պ.եղգեղեալ |
| — | 24 | Չեզ | Ձեզ |
| — | 28 | դէռ | դեռ |
| 489 | 25 | քոհարեղէն | գոհարեղէն |
| 490 | 14 | հայրէնիքդ | հայրենիքդ |
| 491 | 9 | միուսին | միւսին |
| 501 | 21 | . . . . . . . . . | Հ. Արթանէս, վենետկու մխիթարեան միաբանութեան, երբեմն Ղրիմու հայ կաթոլիկների յաջորդ։ |
| 508 | 16 | 1821 | 1831 |
| — | 17 и 18 | Ներսէս վիճակաւոր առաջնորդի հրամանօք | Ներսէսի հակառակորդ Յոհաննէս Կաթուղիկոս կարգեցոյ հրամանօք։ |

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
| --- | --- | --- | --- |
| 512 | 9 | Ներկարեն | Ներկարէն |
| 516 | 13 | Մառ աստղի | Մառ աստղի պէս |
| 520 | 37 | 1867 | 1854 |
| 531 | 5 | գայխօն | գայխոն |
| — | 13 | բաղտիս | բաղդիս |
| — | 15 | անմռունջ | անմռունչ |
| 533 | 10 | Հայ | Հայ |
| 535 | 2 | ժանակ | ժամանակ |
| — | 13 | Հրաժեշտի | Հրաժեշտի |
| — | 31 | մոռացէ | մոռացի |
| 537 | 6 | երկնայնուոց | երկնայնոյ |
| — | 7 | Մայր գովելի | Կոյս գովելի |
| — | 8 | ելի | լի |
| — | 18 | գերայարգուոյ | գերայարգոյ |
| — | 19 | սիրազուն | սիրասուն |
| — | 20 | Մայր | Կոյս |
| — | 22 | սիրուհի | իսկուհի |
| — | 24 | Մայր | Կոյս |
| 538 | 3 | Յ. Վ. Ալամդարեանց | Գրիգոր Քապասախա-լեան |
| — | 5 | Յուպը | Յուպը |
| — | — | վաղար | վեղար |
| 539 | 12 | միտքըտ | միտքըդ |
| — | 34 | կեակքիս | կեանքիս |
| 540 | 16 | աեսնումէ | տեսնումէ |
| 541 | 18 | Հայ | Հայ |
| 542 | 29 | Ո. Տ—Գ. | Ո.. Տ—Գ.. |
| 543 | 20 | Յառաջին | յառաջին |
| 547 | 19 | Ն. Բուդաղեանց | Մովսէս Բուդաղեանց։ |
| 553 | 7 | ո՞վ եր | ո՞վ էր |
| — | 18 | պատրա՞ս | պատրաստ |
| 559 | 2 | որ ողբ | որ է ողբ |
| 561 | 1 | Բարձրելոց | Բարձելոց |
| 563 | 15 | Եղիսեոս | Եղիսէոս |
| 564 | 7 | Մամմադ | Մահմադ |
| — | 18 | աղալ | ավալ |
| — | 20 | Քաղքեմէն | Քաղքէմէն |
| 565 | 1 | քառասուն | քառսուն |
| — | 21 | Աստուածեմէն | Աստուածէմէն |
| 570 | 4 | Այգեբան | Այգեպան |
| 580 | 19 | գոչէ՛ | կոչէ՛ |

| Էջ. | Տող. | Սխալ. | Ուղիղ. |
|---|---|---|---|
| 581 | 19 | հարկաւ | յարկաւ |
| 585 | 1 | 1796 | 1795 |
| — | 3 | անունը | անունը Մ'անուշակ; |
| 587 | 26 | խրախճանեաց | խրախճանաց |
| 590 | 9 | հայերէնից գիտէր, | հայերէնից, գիտէ. |

Նուածք:

| | | | |
|---|---|---|---|
| III | 36 | ով արար: | ով արար,—Հայրապետք: |

Վերջաբանութիւն:

| | | | |
|---|---|---|---|
| I | 22 | Мысль | Мысль) |
| 16 | 31 | Կա՛սէն | Կասեն |
| 22 | 2 | ժամանակակիցքը | ժամանակակիցքս |

Յաւելուած:

| | | | |
|---|---|---|---|
| 46 | 18 | Պ.օմն | Պ.ոմն |
| | 19 | Մ'ածոնն | Մ'ածունն |

ՎԵՐՋ:

# ԱՌԱՆՁԻՆ ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆ։

---

Մեր «Քնար Հայկական» գրքի տպագրութիւնը արդէն բոլորովին վերջացած էր և տուած կազմարարին, երբ որ, այս սեպտեմբերի 18, հասաւ Պետերբուրգ, Պեատիգորսկ քաղաքից, պ. Դոդոխեանցը։ Սորանից իմացանք, որ «Ո՛րդ պանդուխտ պատանեկի. Ծ՝իծեռնակ, ծիծեռնակ» (266 երգը, գրքի 498 երեսին), Գէորգ Դոդոխեանցի սեփական հեղինակութիւնն է, գրած 2 յունվարի 1854 թ., Դորպատ; եղանակն առած է Բաշկիրեցւոց «Մ՝ակլաչկա, մակլաչկա (լաստափայտ)» երգի եղանակից, որ Դոդոխեանցը լսել էր Դորպատ եկած բաշկիր պատերազմողներից։ Աշտարակ բառը այս երգի մէջ, որ շատերին կարծել տուեց թէ երգի հեղինակն է ՝Ներսէս V (իբրև աշտարակցի), կամ հանգուցեալ Ասկարեանցը (թէպէտ վերջինը վաղարշապատցի էր), Դոդոխեանցը գործ է ածել ոտի համար միայն։

Գէորգ Աստուածատուրեան Դոդոխեանցը ծնաւ 1830 թ. 18 փետրվարի, Սիմֆերոպոլ; սկզբնական ուսումն ստացաւ Սիմֆերոպոլ, տիրացուի մօտ, յետոյ արքունի ծխական վարժարանում, յետոյ գիմնազիայում; 1842—1848 թ. Մոսկվայի Լազարեանց ինստիտուտումը; 1848—1851 թ. Պետերբուրգի գեղարուեստից ճեմարանում; 1853—1859 թ. Դորպատեան համալսարանում։

---

266 երգի վերջի երկու տունը, հեղինակը փոխել է այսպէս.

Շուտով սառ հողի տակ
Կը պառկեմ այս տեղ մենակ,
Թողնելով հօրս սրտում
Մի՛շտ ցաւալի յիշատակ։

Գնա՛, սիրուն ծիծեռնակ,
Թռացի՛ր, գնա արագ,
Գնա՛ Հայոց աշխարհը,
Ծնած տեղս Աշտարակ։

---

Գ. Գողթխեանցը հաղորդեց մեզ երկու յետագայ երգեր.

1

Կրամբամբուլի։

(Թարգմանութիւն)

Կրամբամբուլի պատուական օղին
Ամենին լաւ ծանօթ է,
Նորա ատող ուսանողին
Ճշմարիտ շատ ամօթ է։
　　Ահա՛ ինչի իմ պատուելի
　　Ես սիրումեմ կրամբամբուլի,
　　Կրամ, բիմ, բամ բուլի, կրամբամբուլի։

Թէ որ ճանապարհին սոված
Մտնեմ ես մէկ իջևան,
Սերակուրը կողքի թօղած,
Կուզեմ շուտով խցահան.
　　Մէկ էլ տեսար թին, թին, թին, թին,
　　Կածուի շիշից կրամբամբրուլին,
　　Կրամ, բիմ, բամ, բամբուլի, կրամբամբուլի։

Թէ պատահմամբ իմ գրպանը
Փողերիցը թեթևացաւ,
Բուրդ է պարտատէրի բանը,
Բայց ես չունիմ իսկի ցաւ.
　　Որովհետև փող էլ չըլլի,
　　Պարտքով կառնեմ կրամբամբուլի,
　　Կրամ, բիմ, բամ, և այլն։

Այս միտքն է ամեն ժամանակ
Ձօրս նամակներու մէջ.

Յետոյ կանես քէֆ ու հանաք,
Նախ ուսմանդ արա վերջ.
Սովրեմ լաւ և շուտ էլի
Ես խմումեմ կրամբամբուլի,
Կրամ, բիմ, բամ, և այլն։
Թէ որ լինիմ հիւանդ պառկած
Ու ինձ մօտ բժիշկ բերեն,
Ու նա ասի. տես հեռի կաց
Ոգեղէն խմիչքներէն,
Կասեմ. պարոն, ինչ որ ըլլի
Ես կը խմեմ կրամբամբուլի,
Կրամ, բիմ, բամ, և այլն։
Եթէ Նազլուս ինձի խաբի,
Ես չեմ անիլ իսկի դարտ,
Իսկի արտասունք էլ չեմ թափի
Այլ կասեմ նորան հանդարտ.
Այժմ քո տեղ իմ նազելի
Կը սիրեմ ես կրամբամբուլի,
Կրամ, բիմ, բամ, և այլն։
Եթէ մէկ օր ես լինէի
Թագաւոր ծիրանակիր,
Նոր պատուանշան կը հիմնէի
Վրան էլ այսպէս մակագիր.
«Անհոգս, ուրախ, իմ սիրելի,
Կրծիր դու միշտ կրամբամբուլի»,
Կրամ, բիմ, բամ, և այլն։
Իսկ որ, կեանքիս վերջի ժամին,
Տեսնեմ ես հոգեհանիս,
Կ'ասեմ. գիտեմ այս անգամին
Եկելես որ ինձ տանիս,
Բայց նախ արի, իմ պատուելի,
Կոնծենք մէկ մէկ կրամբամբուլի,
Կրամ, բիմ, բամբուլի, կրամբամբուլի [1]։

---

1) Այս երգի միւս թարգմանութիւնը (Ք. Տ—Գ. Պատկանեանինը) տես երգարանի 359—360 էջերը։

## 2

*Ես Հայոց ազգին մէկ բան եմ ուզում,*
*Եւ այդ մէկ բանն է—Հիմնաւոր ուսում։*

Հայոց երգերը, սէրն և գինին
Մեր շրջանիցը անպակաս լինին;
Երգինք պարզ սրտով, միաբան, ուրախ,
Միայն չար բանից ունենանք մենք վախ։

Եղբարք սիրելիք, մեր սրտերու մէջ,
Ինչպէս երկնային արեգակ անշէջ,
Թող պահէ հաստատ Երկնային Տէրը
Անգին հայրենեաց բոցավառ սէրը։

Կեցցէ՛ մեր հաւատ, երգենք միաբան,
Մեր ազգայնութեան միակ պահապան,
Նորա մոռացող, ուրացող հային
Անուանենք ընկեր մատնիչ Յուդային։

Կեցցէ յաւիտեան մեր գանձ թանգագին—
Մեր Հայոց լեզուն քաղցրիկ նորածին,
Թո՛ղ նա զօրանայ, ծաղկի և աճի
Ապահովութեամբ Աստուծոյ աջի։

Հայոց երգերը, սէրը և գինին
Մեր շրջանիցը անպակաս լինին;
Երգինք պարզ սրտով, միաբան, ուրախ,
Միայն չար բանից ունենանք մենք վախ։

---

Ծանօթ. Գրքի յառաջաբանութեան ա երեսի և տողի երկրորդ բառը «արտայայտում՛ է» պիտոյ է լինի։

